# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1931 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 12 ՅՈՒՆՈՒԱՐ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԻՆ 75 Ե. ԴՀԿ.

عدد رقم ١٩٣١ الخميس ١٢ يناير ٢٠٢٣


# ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԸ՝ ԽՕՍՔԱՅԻՆ ԱՌԵՒՏՈՒՐԷ ՄԻՆՉԵՒ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱԶՄԱՄԱՏԱԿԱՐԱՐՈՒՄ

Ամէն մարդ գիտէ՝ որ տակաւին շարունակուող Լաչինի միջանցքի փակումին ետեւը կանգնած են շատ աւելի խոր տնտեսական-քաղաքական պատճառներ: Ինչ փոյթ եթէ 120 հազար արցախցիներ մնան անօթութեան մէջ:

Հետաքրքրական պիտի ըլլար դիտել Լաչինի ներկայ հարցը, սկսելով հայ-ռուսական միքրօ յարաբերութիւններէն՝ մարմնաւորուած երկու երկիրներու խօսքային փոխադարձ մեղադրանքներու մէջ, հասնելով մինչեւ ռուս-ազրպէյճանական մաքրօ յարաբերութիւնները՝ մարմնաւորուած միջազգային կազմամատակարարումի անգիջող մրցակցութեան մէջ, անցնելով միջանկեալ օղակներէ՝ կապուած Արցախի եւ Հայաստանի սահմաններու հանքային ոլորտի մրցակցային տեղաբաշխումին հետ:

## ՀԱՅ-ՌՈՒՍԱԿԱՆ ԽՕՍՔԱՅԻՆ ԱՌԵՒՏՈՒՐ

Արդէն տեսանք, թէ ինչպէս Դեկտեմբեր 23-ին, Մոսկուայի մէջ Ռուսաստանի արտաքին գործոց նախարար Սերկէյ Լաւրով բացասական գոյներով կը ներկայացնէր Հայաստանը (տես *Ջահակիրի* անցեալ թիւը):

Դեկտեմբեր 26-ին, Սենթ Փեթերսպուրկի մէջ Նիկոլ Փաշինեան կը մասնակցի ԱՊՀ մասնակից պետութիւններու ղեկավարներուն ոչ-պաշտօնական գագաթնաժողովին, որուն կը մասնակցէր նաեւ Իլհամ Ալիեւ: Տեղի կ՛ունենայ չնախապատրաստուած Փութին-Փաշինեան-Ալիեւ արագ հանդիպում, որուն արդիւնքներուն մասին յայտարարութիւն չի տարածուիր, քանի որ պարզապէս արդիւնք չկար: Եռակողմէն ետք Ալիեւ կը մեկնի Պաքու եւ Դեկտեմբեր 27-ին տեղի կ՛ունենայ Փութին-Փաշինեան երկկողմ հանդիպում, որուն ընթացքին Փաշինեան կը յիշեցնէ Փութինին. «Գիտէք, որ արդէն մօտ քսան օր է՝ այդ [Լաչինի, Ա.] միջանցքը փակ է: Դա ռուս խաղաղապահ առաքելութեան պատասխանատուութեան գօտին է Լեռնային Ղարաբաղում», աւելցնելով՝ որ «հիմա ստացւում է, որ Լաչինի միջանցքը ռուս խաղաղապահների վերահսկողութեան ներքոյ չէ»:

Համատեղաբար, Դեկտեմբեր 27-ին, Հայաստանի Անվտանգութեան Խորհուրդի քարտուղար Արմէն Գրիգորեան հարցազրոյց կ՛ունենայ Հանրային Հեռատեսիլէն Պետրոս Ղազարեանի հետ: Կ՛ակնարկէ՝ որ Ռուսաստան կը ստիպէ Հայաստանին արտատարածքային միջանցք տրամադրել Ազրպէյճանին, ինչպէս նաեւ կը խօսի Ռուսաստան-Պելառուս ձեւաւորուող միութենական պետութեան անդամակցելուն ուղղութեամբ տեղի ունեցող ճնշումներուն մասին: Ռուսաստանի նախագահի խօսնակ Տմիթրի Փեսքով Գրիգորեանի յայտարարութիւնները կ՛անուանէ «սադրիչ» (վտանգաւո՛ր արձագանգ), հերքելով ճնշումները արտատարածքի եւ դաշնութեան նկատմամբ: Դժուար է ըսել, թէ Գրիգորեանի յայտարարութիւնները Փութին-Փաշինեան հանդիպումի նախօրեակին համաձայնեցուած էին Փաշինեանի հետ թէ ոչ:

Փաշինեան կը վերադառնայ տուն եւ Դեկտեմբեր 29-ի կառավարութեան նիստին կը յայտարարէ՝ թէ Ռուսաստանն ու ռուս խաղաղապահ զօրախումբը պէտք է հանդէս գան Լաչինի միջանցքի շրջափակումին վերաբերեալ յստակ պարզաբանումով, աւելցնելով. «Եթէ Ռուսաստանը օբիեկտիւ կամ սուբիեկտիւ պատճառներով չի կարողանում ապահովել կայունութիւն ու անվտանգութիւն ԼՂ–ում, կարծում եմ՝ ինքը պէտք է քննարկում նախաձեռնի ՄԱԿ-ի ԱԽ-ում, ու ԼՂ խաղաղապահ զօրախմբին ՄԱԿ-ի լրացուցիչ մանդատով օժտելու կամ ԼՂ լրացուցիչ բազմազգ խաղաղապահ զօրախումբ ուղարկելու հարց բարձրացնի»: Արդէն բնաւ ալ զարմանալի չէ, երբ Ռուսաստանի Արտաքին Գործոց Նախարարութեան խօսնակ Մարիա Զախարովա նոյն օրուայ յայտարարութեամբ անընդունելի համարէր ռուս խաղաղապահներու հասցէին եղած քննադատութիւնը, քանի որ Ռուսաստան իբր ամէն բան կ՛ընէ հարցը լուծելու համար:

Այս կէտին, Փեսքով եւ Զախարովա կը խօսին դաշնակցային յարաբերութիւններու մասին, Փեսքով ըսելով՝ «Հայաստանը մեր ամենամօտ դաշնակիցներէն է, Ազրպէյճանը մեր շատ արժէքաւոր եւ թանկագին գործընկերն է», Զախարովա՝ «Ռուսաստանը իր միջնորդական առաքելութեան մէջ հաշուի կ՛առնէ դաշնակցային յարաբերութիւնները ե՛ւ Հայաստանի, ե՛ւ Ազրպէյճանի հետ»:

Դեկտեմբեր 28-ի որոշումով, Արցախի կառավարութիւնը եւ Base Metals ընկերութիւնը ժամանակաւորապէս կը դադրեցնեն Կաշէնի հանքի շահագործումը՝ մինչեւ միջազգային բնապահպանական փորձաքննիչներու ժամանումը եւ քննութեան աւարտը: Base Metals կը հանդիսանայ հանքը շահագործող հայկական ընկերութիւնը եւ Արցախի գլխաւոր հարկատուն: Որոշումին դրդապատճառը յստակ է: Ազրպէյճանցի «բնապահպանները» Լաչինը փակած են՝ Կաշէնի հանքի համար մոնիթորինկ սկսելու պահանջով: Եւ ահաւասիկ հայկական կողմը կը կատարէ իր դիւանագիտական քայլը՝ առաջարկելով փորձաքննութիւն, բայց միջազգային մակարդակով, այլ ոչ ազրպէյճանցիներու կողմէ: Փորձաքննութիւն չէ՞ր Ազրպէյճանի երեւութական պահանջը: Անշուշտ, ոչ փորձաքննիչներ կու գան, ոչ ալ միջանցքը կը բացուի: Փաստ մը եւս՝ որ փակումին նպատակը շատ աւելի ընդարձակ է, ներառեալ նոյն ինքը Կաշէնի եւ Դրմբոնի հանքերուն լրիւ տիրապետութեան ձգտումը Ազրպէյճանի կողմէ (մանրամասն՝ *Ջահակիրի* անցեալ թիւը):

Ըստ երեւոյթին, հայկական որոշումը երկու օր ետք տեղ կը հասնի Ռուսաստանի ականջին եւ առաջին անգամ ըլլալով, Զախարովայի բերանով, Դեկտեմբեր 30-ին Ռուսաստան մտահոգութիւն կը յայտնէ միջանցքի փակումին առնչութեամբ, բնականաբար առանց մատնանշումներու:

Եւ ամենահրաշալին: Յունուար 1-ին Ռուսաստանի Պաշտպանութեան Նախարարութիւնը կը յայտարարէ՝ թէ Հայաստանի տարածքին վրայ Ռուսաստանի ցամաքային զօրքերու ստորաբաժանումները պիտի մասնակցին ՀԱՊԿ խաղաղապահ զօրավարժութիւններուն: Խաղաղապահութիւն որո՞ւն համար, որո՞ւն հաշուին: Տեսանք Լաչինի խաղաղապահութիւնը: Հիմա թող պատեհապաշտները խօսին հայ-ռուսական յարաբերութիւններու վատթարացումի մասին:

Յունուար 10-ի մամուլի ասուլիսին Փաշինեան կը յայտարարէ՝ որ նման զօրավարժութիւններ տեղի պիտի չունենան: Այս անգամ Փեսքով

↳ 3

ՀԱՅԱՍՏԱՆ

# «ԱՆՎՏԱՆԳ ԴՊՐՈՑՆԵՐ» ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀՌՉԱԿԱԳԻՐԸ ՉԻ ԱՌՆՉՒՈՒՄ ՌԱԶՄԱՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ՊԱՐԱՊՄՈՒՆՔՆԵՐԻ ԱՆՑԿԱՑՄԱՆԸ. ԿԳՄՍ ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ՊԱՐԶԱԲԱՆՈՒՄ Է ՏԱՐԱԾԵԼ

Դպրոցներում ռազմահայրենասիրական պարապմունքների դադարեցման վերաբերեալ տարածուող լուրերն ապատեղեկատուութիւն են: Այս մասին հաղորդագրութիւն է տարածել Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարարութիւնը:

Հաղորդագրութեան մէջ նշւում է, որ Ժաննա Անդրէասեանի՝ նախարարի պաշտօնում նշանակուելուց յետոյ «Անվտանգ դպրոցներ» միջազգային հռչակագրի վերաբերեալ որեւէ շրջաբերական գրութիւն Հայաստանի հանրակրթական դպրոցներին չի ուղարկուել: Ընդհանրապէս, նախարարն ի պաշտօնէ շրջաբերական չի ուղարկում: Ժաննա Անդրէասեանը գրութիւնը ստորագրել է դեռեւս որպէս ոլորտը համակարգող նախարարի տեղակալ: Նշուած շրջաբերականը բովանդակային որեւէ առնչութիւն չունի ռազմահայրենասիրական պարապմունքների անցկացման հետ:

Հայաստանը «Անվտանգ դպրոցներ» միջազգային հռչակագիրը վաւերացրել է դեռեւս 2017 թուականին՝ դառնալով միջազգային մարդասիրական այդ փաստաթղթին միացող 60-րդ երկիրը: Ներկայում հռչակագրին միացել է 115 պետութիւն:

Համապատասխան գրութիւն մարզպետարաններին, Երեւանի քաղաքապետարանին եւ ԿԳՄՍՆ ենթակայ դպրոցներին ուղարկուել է յիշեալ հռչակագրի պահանջների ապահովման անհրաժեշտութեամբ պայմանաւորուած, այն է՝ կրթական հաստատութիւնները զերծ պահել թիրախաւորումից: Ուսումնական հաստատութեան թիրախաւորման վտանգը բարձրանում է, երբ դրա անմիջական մօտակայքում կամ հէնց ուսումնական հաստատութեան տարածքում տեղակայւում է ռազմական բնոյթի կառոյց, որը հնարաւոր գործողութիւնների պարագայում դառնում է առաջնահերթ խոցման թիրախ: Ուստի, երեխաների, ուսումնական հաստատութիւնների աշխատակիցների անվտանգութեան ապահովման կարեւորագոյն երաշխիք է՝ զերծ մնալ այդ հաստատութիւններում ռազմական բնոյթի կառոյցների տեղակայումից:

Ընդ որում, լուրջ մտահոգութիւն է առաջացնում այն, որ Ադրբէջանը հրաժարւում է վաւերացնել «Անվտանգ դպրոցներ» հռչակագիրը՝ այդպիսով խաթարելով համաշխարհային կօալիցիայի՝ զինուած բախումների ընթացքում կրթութեան ոլորտը նպատակային յարձակումներից զերծ պահելու ջանքերը: Ընդ որում՝ 44-օրեայ պատերազմի ընթացքում Ադրբէջանն իր յենակէտերը տեղադրում էր նաեւ կրթական հաստատութիւնների հարեւանութեամբ՝ յետագայում հայկական կողմի հասցէին հնարաւոր մեղադրանքներ հնչեցնելու նպատակով», - նշուած է հաղորդագրութեան մէջ:

Ինչ վերաբերում է դպրոցներում նախնական զինուորական պատրաստութեան ուղղութեամբ գիտելիքների եւ հմտութիւնների զարգացմանը, ապա այս առումով նախարարութիւնը հետեւողականօրէն ձեռնարկում է անհրաժեշտ քայլեր՝ առարկայական նոր չափորոշիչի ներդրման շրջանակում: Մասնաւորապէս, 2021 թուականից կազմակերպւում են մարզառազմական ճամբարներ, որոնք, նոր չափորոշիչի ներդրմամբ պայմանաւորուած, 2023-2024 ուսումնական տարուանից պարտադիր կը դառնան բոլոր դպրոցների աւագ դասարանների համար:

# ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

Օղափոխութեան համար Զօրավար Անդրանիկ Գահիրէ եկած է 1909-ին: Բայց իր գլխաւոր այցելութիւնը եղած է 1920 Հոկտեմբեր 26 – Դեկտեմբեր 5-ին, որուն ընթացքին Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մէջ ունեցած է պաշտօնական հանդիպումներ եգիպտահայ գաղութին հետ եւ հնչեցուցած իր խօսքը: Յաւելեալ քանի մը օր մնացած է նաեւ Փոր-Սայիտ՝ այնտեղէն շոգենաւով Ֆրանսա մեկնելու համար:

## ՕԴԱՓՈԽՈՒԹԻՒՆ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

1909 Մարտ-Ապրիլին Անդրանիկ եկած է Գահիրէ արձակուրդի համար: *Լուսաբեր-Արեւ*ի լուր մը կը տեղեկացնէ անոր գալուստը.

«Բաւական օրէ իվեր հանրածանօթ յեղափոխական Անդրանիկ մեր մէջ կը գտնուի: Կը ցաւինք որ այս լուրը մեզի ուշ կը հասնի գուցէ ինքը շրջապատողներուն անձկամտութեան պատճառաւ, եւ այսօր միայն հաճոյքը կ՛ունենանք վեր հանելու այս պատուական Հայուն ներկայութիւնը Գահիրէի մէջ:

«Անդրանիկ՝ որուն կտրիճի համբաւը երբեմն թունդ հանած է Հայ սիրտերը՝ անհանգիստ ըլլալով օդափոխութեան համար տեղս կը գտնուի առժամապէս: Ինքը մօտէն ճանչցողները կը վկայեն թէ այդ անձնուրաց երիտասարդի քաջութեանը կը հաւասարի իր համեստութիւնը, եւ թէ իր խռհական գաղափարներովը էն տաքգլուխներն իսկ սիրաշահիլ գիտէ:

«Որքա՜ն պէտք ունինք այսպէս մոլեռանդ չեղող եւ ինքզինքնին հերոս չի ցուցադրող գործիչներու»(1):

Յաւելեալ տեղեկութիւններ կը պակսին:

## ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ԵԳԻՊՏՈՍ

Անդրանիկի 1920 Հոկտեմբեր – Դեկտեմբերի այցելութիւնը Եգիպտոս եղած է յատկանշական զանազան առումներով:

Այս ընթացքին, մինչ ի պատիւ Անդրանիկին արտասանուած խօսքերն ու գրուած յօդուածները աչքի կը զարնէին հայրենասիրական հռետորաբանութեամբ՝ վերջապէս եգիպտահայութեան առջեւ կանգնողը ազգային հերոս մըն էր, հերոսներուն ամենէն ժողովրդականը, այդ նոյն հերոսին ելոյթները կ՛արտածորէին ի սրտէ բխած խոր դառնութիւն, յուսախաբութիւն եւ գայրոյթ հայութեան նկատմամբ՝ ի տես իր դիտանկիւնէն նայուած ազգային ձախողութիւններուն: Զօրավարին վիշտը ընդգծեցին քիչ մը անակնկալի եկած եգիպտահայ քննախօսները, որոնք բոլոր պարագաներուն ալ չգլացան արտայայտել իրենց լրիւ համակրութիւնն ու աջակցութիւնը դառնութեան տուն տուող պատճառներուն:

Այցելութիւնը այն շրջանն էր՝ երբ Անդրանիկ ամբողջապէս խզած էր իր յարաբերութիւնը Հայ Յեղափոխական Դաշնակցութեան հետ, զայն ենթարկելով չեչտակի քննադատութիւններու: Այս խզումն է որ կրնայ բացատրել Աղեքսանդրիոյ *Արեւ* լրագիրի միահամուռ ընդունելութիւնը Զօրավարին եւ Գահիրէի *Յուսաբեր*ի վերապահ մօտեցումը, ինչպէս նաեւ *Յուսաբեր*ի եւ Անդրանիկի միջեւ ծագած հրապարակային բախում մը՝ զոր *Արեւ* պիտի փորձէր ուռճացնել:

Երկու ամիս առաջ էր՝ երբ Հայաստանի լիազօր պատուիրակ Ալեքսանդր Խատիսեան կը կատարէր իր պատմական այցելութիւնը Եգիպտոս (17-24 Օգոստոս 1920), յաջողութեամբ սկիզբ դնելով Հայաստանի Անկախութեան Փոխառութեան եւ Ոսկի Ֆոնտին: Եգիպտահայութեան մէջ իր ստեղծած խանդավառութիւնը եւ յառաջ բերած լաւատեսութիւնը բացառիկ էին: Այս մթնոլորտի ազդեցութեան տակ էր որ կու գար Անդրանիկ, իր խօսքերով եւ բանախօսութիւններով արտադրելով ճիշդ հակառակ տրամադրութիւնը՝ մռայլութիւն եւ յոռետեսութիւն, ինչպէս նաեւ անվստահութիւն Հայաստանի Հանրապետութեան նկատմամբ: Իր կեցութեան ժամանակ կատարուած պատմական եղելութիւններու զարգացումը չէր պատճառը, քանի որ Անդրանիկ որոշ ժամանակ է արդէն կ՛արտայայտէր նոյն գաղափարները: Մէկ կողմէն՝ հանգամանքները այնպէս դասաւորուած էին, որ ինք ստիպուած (կամ պարտադրուած) դուրս մնացած էր բանակային-զինային գործողութիւններէ, միւս կողմէն՝ կատարուածի մէջ ան կը կանխատեսէր ապագայ ձախողութիւններ:

Անդրանիկի այցելութիւը զուգադիպեցաւ Կարսի անկումի, Ալեքսանդրապոլի Պայմանագիրի, Հայաստանի խորհրդայնացումի շրջանին:

### Ժամանում Աղեքսանդրիա

1920-ին Անդրանիկ Եգիպտոս կու գար Իզմիրէն, ուր հասած էր Հոկտեմբեր 5-ին(2) եւ մնացած առնուազն մինչեւ Հոկտեմբեր 18(3), յառաջացնելով մեծ խանդավառութիւն:

Իզմիրէն դէպի Բիրէա (Յունաստան) նաւահանգիստ, ուրկէ յունական Տաֆնէ շոգենաւով Աղեքսանդրիա կը հասնի Հոկտեմբեր 25-ին, թէեւ քարանթինայի գործողութիւններուն պատճառով ցամաք կրնայ ելլել յաջորդ օրը ժամը 2.30-ին: Անդրանիկ կու գար իր հետեւորդներուն ուղեկցութեամբ՝ հարիւրապետ Հայկ Պօնաբարթեան, տեղակալ Ծիմ Զանքալեան եւ երկու զինուորականներ: Ցամաք կ՛ելլէ նաեւ Մուշեղ Արք. Սերոբեան, որ կը գտնուէր նոյն շոգենաւին մէջ(4):

Զինքը դիմաւորելու համար ազգային իշխանութեան կողմէ շոգենաւ կ՛երթան Աղեքսանդրիոյ Առաջնորդական Փոխանորդ Հայկազուն Քահանայ Ոսկերիչեան, Յարութիւն Քահանայ Գաբիկեան, Տիարք Գ. Գայարեան, Յ. Փափազեան եւ Գ. Ճիյէրճեան: Ստուար բազմութիւն մը լեցուած էր քարափը՝ ազգային հերոսը տեսնելու ցանկութեամբ մղուած:

Զօրավարն ու հետեւորդները, Մուշեղ Սրբազանի հետ, ինքնաշարժներով կ՛առաջնորդուին Սավոյ Օթէլ:

### Աղեքսանդրիոյ Առաջնորդարան

Հոկտեմբեր 26-ին, Եկեղեցիին եւ Առաջնորդարանին բակը խուռներամ բազմութիւն մը ժամեր շարունակ սպասեց Զօրավարին ժամանումը: Եւ յանկարծ, հայ պօյ-սքաութները՝ որոնք երկու շարք կազմելով կը հսկէին կարգապահութեան, շեփորի կանչերով ազդարարեցին ժամանումը: Ժամը 4-ին բակ կը մտնեն Զօրավարն ու հետեւորդները, ամբոխի անընդհատ ծափահարութիւններուն ընդմէջէն:

*Արեւ*ի խմբագրապետ Միքայէլ Կիւրճեան կը նկարագրէ. «Տեսարանը մեծապէս յուզիչ էր, խանդավառութիւնը աննկարագրելի: Ի՜նչ զգաց ժողովուրդը այդ ճշմարտապէս պատմական րոպէին, տեսնելով իր ընդերկար երազած, երգած, բաղձացած եւ կարօտցած դիւցազնը, եւ ի՞նչ զգաց այս վերջինը՝ ի տես, հակառակ իր բաղձանքին, հակառակ պաշտօնապէս ազդարարուած եւ հրաւիրուած չըլլալուն, ինքնաբեր թափով մը զինքը դիմաւորելու եկած այդ յոգնախառն բազմութիւնը եւ ի լուր անոր սքանչացումի եւ պաշտումի սրտաբուղխ աղաղակներուն: Ժողովուրդի մը սիրտը եւ հերոսի մը սիրտը. ո՞վ պիտի կրնայ խորաչափել այդ երկու ովկիանները…»(5):

Առաջնորդարանին առջեւ կանգնած էին նաեւ կարմիր գոգնոցով մանկարպարտէզի երեխաները: Երբ Զօրավարը կը հասնի Առաջնորդարանի դրան առջեւ, պօյ-սքաութներուն նուագախումբը կը հնչեցնէ *Տալւորիկ*ը, որմէ ետք մանկապարտէզի տղաքը ծաղկեփունջով կ՛ողջունեն Զօրավարին գալուստը եւ կ՛ընեն երկու արտասանութիւններ:

Բուռն ծափահարութիւններու տակ Զօրավարն ու հետեւորդները կը մտնեն Առաջնորդարան, ուր զիրենք կը դիմաւորեն Յարութիւն Քհնյ. Գաբիկեան, հայ կաթողիկէ եւ բողոքական համայնքներուն պետերը, քաղաքական կուսակցութիւններուն ներկայացուցիչները, յայտնի ազգայիններ, պաշտօնական անձնաւորութիւններ, առեւտրականներ, մտաւորականներ եւ ուրիշներ, որոնք կարգով կը սեղմեն Զօրավարին ձեռքը:

Հայկազուն Քհնյ. Ոսկերիչեան՝ որ Զօրավարին ընկերացած էր Սավոյէն մինչեւ Առաջնորդարան, կ՛արտասանէ բարի գալուստի ուղերձը, ուր, ի միջի այլոց, կ՛ըսէ. «զՁեզ մեր մէջ ունենալու ուրախութիւննիս այնքան մեծ է, որքան բուռն էր մեր փափաքը առ այդ: Այո՛, Զօրավա՛ր, մենք անձկանօք կը սպասէինք Ձեր գալստեան: Մի՛ն մեր երէկի եւ այսօրուան փառքերէն, ոչ միայն կը փափաքէինք երջանիկ պատեհութիւնն ունենալ պանծացնելու Ձեր անմահ անունը եւ Ձեզմով դիւցազնական կեանքը բոլոր անոնց որոնք դարբնեցին եւ կերտեցին մեր այսօրուան ազատութիւնը, այլ մանաւանդ իբր մեր այսօրուան եւ վաղուան *Յոյսի Ջահերէն* մին, պէտք ունէինք առաջնորդուելու Ձեր լոյսով՝ մեր բիւրիցս պաշտելի հայրենիքը պատող եւ չարաշուք վտանգներով յղի, համատարած ու թանձրամած խաւարին ընդմէջէն: Ստոյգ է որ մեր հայրենի երկնքին վրայ, մին միւսէն փայլուն աստղեր ծագեցան, ճշմարիտ է թէ, նոր արեւներ բարձրացան մեր մռայլ հորիզոնին վերեւ, բայց Ձեր լոյսին վարժուած մեր աչքերը, Ձեր հրապոյրէն կախարդուած եւ շղթայուած մեր հոգիները, չգիտեմ բնազդական ի՛նչ շարժումով, միշտ Ձեզի դարձան, միշտ զՁեզ որոնեցին: Ճշմարիտ հայրենասէրի մեծ եւ զգայուն Ձեր հոգին, խորհրդաւոր համակրութեամբ իմն, զգաց զայս եւ ընդառաջ եկաւ մեր բաղձանքներուն – բի՛ւր բարի գալուստ»(6):

Բարի գալուստի հեռագիրներ ղրկած էին Գահիրէէն Եգիպտահայ Առաջնորդ Թորգոմ Եպս. Գուշակեան եւ Զակազիկէն Յ. Քարբերթեան՝ տեղւոյն Հայ Ռամկավար Կուսակցութեան կողմէ(7):

Երկրորդ խօսողը կ՛ըլլայ Մուշեղ Արք. Սերոբեան: Սերոբեան եւ Անդրանիկ ծանօթներ են, ինչպէս ցոյց կու տայ Արա Ահարոնեանի յօդուածը.

«1920-ի Յունուարին կը գումարուէր ազգային համագումարի լիակատար նիստը, ուր Սերոբեան կը ներկայանայ ու կը ներկայացնէ իր պատրաստած տեղեկագրով Կիլիկիոյ ինքնապաշտպանութեան անհրաժեշտութիւնը: Իրեն կը վստահուի Պոլսոյ մէջ կատարել ընդհանուր հանգանակութիւն մը՝ ապահովելու նիւթականը, որպէսզի կարելի ըլլայ գնել պատշաճ զինամթերք Կիլիկիոյ համար: Նախ կը մեկնի Իզմիր ու կը հանդիպի Զօրավար Անդրանիկին, որ եկած էր Կիլիկիա անցնելու համար ու կազմակերպելու ինքնապաշտպանութիւնը հայ կամաւորներով:

«Անդրանիկի հետ խորհրդակցելէ ետք Սերոբեան կ՛անցնի Յունաստան ու նիւթական ներդրումով ձեռք կը ձգէ 5,000 հրացան եւ 2 միլիոն փամփուշտ ու գաղտնաբար առեւտրական շոգենաւով կ՛ուղարկուի Կիլիկիոյ ծովեզերեայ քաղաք Մերսին: Բայց դժբախտաբար շոգենաւը պիտի հասնէր 10 Օգոստոս 1920-ին՝ հինգ օր ետք Կիլիկիոյ միօրեայ անկախութենէն, ու կը գրաւուի ֆրանսական իշխանութեանց կողմէ, որոնք իբրեւ բարեկամ ու վստահելի կարծուած, արդէն Իզմիրէն արգիլած էին Զօր. Անդրանիկի եւ Սերոբեան Սրբազանի մուտքը Կիլիկիա:

«Սերոբեան կը վերադառնայ Եգիպտոս ու որոշ ժամանակ մը կը զբաղի Մելգոնեանի կտակով, որ այդ օրերուն առաւելաբար պիտի նպաստէր որբահաւաքի գործին»(8):

Մուշեղ Արքեպիսկոպոսի հռետորային ճառը կը գրաւէ ներկաները: Իր «հզօր ու բամբ ձայնը եւ աւիւնոտ ոգեւորիչ պերճախօսութիւնը շատոնց է որ չէր լսած Աղեքսանդրիացին», դիտել կու տայ Կիւրճեան:

Կ՛ըսէ. «Ինծի կ՛ըսեն, ի՞նչ ունի զօրավարը. տկա՞ր է արդեօք. ո՛չ, բարեկամներս, զօրավարը տկար չէ…: Անիկա կը նմանի առիւծի մը… որուն բնական միջավայրը լեռներն են եւ անտառները… Արդ, առիւծը ի՞նչ կրնայ ընել քաղաքներու մէջ, կաշկանդուած, շղթայուած… շատ շատ մռնչել մերթ ընդ մերթ, եւ յաճախ լռել, հոգին լի կորուսեալ վայրենադեղ բացաստաններու կարօտովը…»(9):

(Շար. 1)

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. «Անդրանիկ մեր մէջ», *Լուսաբեր-Արեւ*, Գահիրէ, 25 Մարտ 1909, Ե. տարի, թիւ 653-35, էջ 3:

2. «Զօր. Անդրանիկ Իզմիրի մէջ», *Արեւելեան մամուլ*, Իզմիր, 6 Հոկտեմբեր 1920, 41-րդ տարի, թիւ 2366, էջ 2:

3. «Բանախօսութիւն», *Արեւելեան մամուլ*, 16 Հոկտեմբեր 1920, 41-րդ տարի, թիւ 2375, էջ 3:

4. «Զօր. Անդրանիկի ժամանումը», *Արեւ*, ➪ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՋԱՀԱԿԻՐԻ ՅԱՒԵԼՈՒԱԾԻ ՇՆՈՐՀԱՆԴԷՍԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

*Ջահակիրի* 51-րդ Յաւելուածը՝ *Վահագնի ծնունդը 50 լեզուներով*, ունեցաւ իր շնորհանդէսը Երեւանի Աւետիք Իսահակեանի անուան Կեդրոնական Գրադարանին մէջ, Դեկտեմբեր 15-ին:

Ցերեկոյթը վարեց Իսահակեանի Գրադարանի աշխատակցուհի՝ դերասանուհի Գայեանէ Սամուէլեան, որ կարդաց նաեւ բանաստեղծութեան հայերէն տարբերակները:



*Վահագնի ծնունդը 50 լեզուներով* գիրքին շնորհանդէսը Երեւանի մէջ: Ձախէն աջ՝ Դաւիթ Գրիցենկօ, Նանէ Ծերահեան, Ռուզան Խոջիկեան, Թեհմինէ Թումասովա, Արծուի Բախչինեան:

Թարգմանիչներէն հինգը անձամբ կարդացին գիրքին մէջ տեղ գտած իրենց թարգմանութիւնները՝ ասորուհի Թեհմինէ Թումասովա (ասորերէն), Լատվիա ծնած ռուս Օլգա Արզումանեան (լատվիերէն), չինագէտ Դաւիթ Գրիցենկօ (չինարէն), տարիներ շարունակ Հոլանտա բնակած Զարենցի ծոռնուհի Նանէ Ծերահեան (հոլանտերէն) եւ ճաբոնագէտ Ռուզան Խոջիկեան (ճաբոներէն):

Այլ լեզուներու մասնագէտներ եւ կրողներ եւս կատարեցին ընթերցումներ՝ Իտալիա ծնած Սառա Մխիթարեան (իտալերէն), մօր կողմէ ուքրաինական լեհուհի Գալինա Ադամեան (լեհերէն, ուքրաիներէն, ռուսերէն), մօր կողմէ յոյն Դիանա Սմբատեան (յունարէն), Ֆրանսա ապրած իրանահայուհի Լուսանա Յովհաննիսեան (պարսկերէն, ֆրանսերէն), Սօնա Մարտիրոսեան (արաբերէն), Ալիսա Եփրանոսեան (վրացերէն): Հատորի պատրաստութեան հեղինակակից Արծուի Բախչինեան կարդաց անգլերէն, շուէտերէն եւ ափրիկեան լինկալերէն լեզուներով: Ճիշդ է, ան չի տիրապետեր լինկալերէնին, բայց այբուբէնը լատինատառ ըլլալով, գայն կարդաց՝ ներկաներուն գաղափար տուած ըլլալու համար թէ ինչպէս հայկական բանաստեղծութիւնը կրնայ հնչել ափրիկեան լեզուով:

Ձեռնարկի աւարտին հանդէս եկաւ գրող, երգիչ, երգահան Արսէն Համբարեան, որ մեներգեց իր բանաստեղծութեամբ եւ երաժշտութեամբ յօրինած *Վահագնի ծնունդը* ստեղծագործութիւնը:

## 1 ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԸ՝ ԽՕՍՔԱՅԻՆ ԱՌԵՒՏՈՒՐԷ ՄԻՆՉԵՒ...

սադրանք չի համարեր Փաշինեանի որոշումը: Ընդհակառակը: Կը պատասխանէ, որ թէեւ ասիկա վարչապետին կողմէ բաւական նոր յայտարարութիւն է, բայց ՀԱՊԿ գործընկերները կապի մէջ պիտի մտնեն եւ պարզեն Հայաստանի դիրքորոշումին մանրամասնութիւնները: «Ամէն պարագայի, Հայաստանը մեր շատ մտերիմ դաշնակիցն է», կ'աւելցնէ: Խօսքային ոճի կտրուկ փոփոխութիւն:

Դեռ աւելին: ՀԱՊԿ մամուլի քարտուղար Վլատիմիր Զայնեդտինով կը յայտնէ՝ թէ «մենք ըմբռնումով կը մօտենանք Հայաստանի մէջ այսօր ստեղծուած իրավիճակին, որ կրող է չթոյլատրել այս տարի լիարժէքօրէն կայացնել ՀԱՊԿ-ի ծրագրաւորուած խաղաղապահ զօրավարժութիւնները»: Ինչպիսի բարի հասկացողութիւն:

### ԿԱՇԷՆՆ ՈՒ ՍՈԹՔԸ՝ ՄԻՋԱՆԿԵԱԼ ՕՂԱԿՆԵՐ

*Ջահակիրի* անցեալ թիւը կը համառօտագրէր Վահէ Սարուխանեանի հետախուզական կարեւոր յօդուածը՝ «Ադրբէջանը Սոթքի հանքի իր հատուածի փոխարէն բրիտանական ընկերութեանը «տուել է» 3 տարածք, այդ թւում՝ Կաշէնի հանքը»: Մեր նիւթի կապակցութեամբ, աւելորդ չէ յօդուածէն քաղել կարեւոր կէտ մը եւս:

Համաձայն Սարուխանեանի տեղեկութիւններուն, 1997-ին, Ազրպէյճանի հետ կնքած համաձայնագիրով, բրիտանական Anglo Asian Mining կը ստանայ հանքարդիւնաբերութեամբ զբաղելու վեց տարածքներ՝ Գեդաբէկ (հայկական պատմական Գետաբակը), Գոշա, Օրդուբադ, Սոյուտլու (Սոթք), Ղզլբուլաղ եւ Վեյնալի, որոնց վերջին երեքը Ղարաբաղի առաջին պատերազմէն ետք կը գտնուէին ԼՂՀ-ի հայկական վերահսկողութեան տակ: Այսպէս, Սոթքի հանքի մէկ մասը Հայաստանի Գեղարքունիքի մարզին մէջ է, մնացածը՝ պատմական Քարվաճառի (այսինքն՝ բաժնուած է Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ), Ղզլբուլաղի տարածքը կը ներառնէ Արցախի Մարտակերտի շրջանի մէկ մասը (Սարսանգի ջրամբարէն հարաւ) եւ հատուած մը Ասկերանի շրջանէն, թէեւ անոր հիմնական աղբիւրը Դրմբոնի հանքն է, իսկ Վեյնալին կը գտնուի պատմական Կովսականի (Զանգելան) մէջ:

2022 Յուլիս 5-ի նորացուած համաձայնագիրով, Anglo Asian Գեդաբէկի ու Գոշայի դրացիութեամբ կը ստանայ երկու նոր հանքային տարածքներ՝ Ղարղար եւ Ղարադաղ: Նոյն համաձայնագիրով ձեռք բերուած երրորդ գօտին Տեմիրլին է՝ Արցախի Մարտակերտի շրջանի արեւելեան հատուածը՝ Կաշէնի հանքով, որ եղած է ու կը մնայ հայկական վերահսկողութեան տակ, եւ այսօր զայն կը բանեցնէ հայկական Base Metals ՓԲԸ-ն: Anglo Asian կը ստանայ այս երեք նոր տարածքները, փոխարէնը հրաժարելով 1997-ի համաձայնագրութեան մէջ գտնուող Սոթքի հանքի Ազրպէյճանի տարածքէն: Սոթքը տարածաշրջանի ոսկիի ամենամեծ հանքավայրերէն է: Հայաստանի կողմի Սոթքի հանքը կը բանեցնէ ռուսական արմատներով GeoProMining Gold ՍՊԸ-ն:

Այստեղ ալ կրնայ երեւան գալ հանգոյցներէն մէկը:

Ազրպէյճան Anglo Asian-ի համար բախումը կը ստեղծէ հայկական 4

ԽՈՀԵՐ

## «ՉԵ՞Ս ԳԻՏԵՐ». ԽՕՍԱԿԻՑԻ ԱՐԺԵԶՐԿՈՒՄԷՆ ՄԻՆՉԵՒ ՀԱՒԱՔԱԿԱՆ ԳՈՅՈՒԹԵԱՆ ԻՆՔՆԱԶՐԿՈՒՄ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Արտայայտութեան կերպ մը՝ զոր անընդհատ խօսակիցդ կ'ըսէ քեզի. «Չե՞ս գիտեր», «Ինչպէ՞ս կ'ըլլայ չէիր լսած», եւ այլն: Խօսելակերպ մը՝ դիմացինը ստորադասելու միջոցով: Հաճոյք մը դիմացինը ստորադաս տեսնելու եւ ցոյց տալու սեփական գիտելիքային առաւելութիւնը: Ասիկա տեղի կ'ունենայ նաեւ ամենամտաւորական դասին մէջ:

Այսօրուայ մարդկային զանգուածը արտայայտուելու եւ արտայայտածը տեղ հասցնելու լուրջ խնդիր ունի: Տեղ հասցնելու կերպերէն մէկը ուրիշին ստորադասուած տեսնելն է՝ սեփական գիտելիք ունենալու վերադասութիւնը հաստատելու միջոցով:

«Չե՞ս գիտեր»: Ասիկա՝ անհատական յարաբերութիւններու պարագային, ուր կը գործէ ինքնի (self) անհատապաշտական-եսակեդրոն տարբերակը: Ինքնի տարբերակներուն ամենատարածուածը մարդոց մէջ:

Ինչ կը վերաբերի ինքնի հաւաքական-ենթակայական տարբերակին՝ որ կը հոմանշուի «ազգային» բառով, այստեղ է որ «չե՞ս գիտեր»-ը պէտք է գործէ՝ իր ողջ տարողութեամբ:

Հաւաքականութիւնը խմբային պատկանելիութեան զգացողութիւն է: Խօսքը կեդրոնացնեմ Սփիւռքի վրայ: Սփիւռքահայը ունի քանի մը խմբային պատկանելիութիւններ: Հայկական առումով, ան ունի երկու շղթայակապ եւ փոխլրացնող պատկանելիութիւններ՝ իր սփիւռքահայ գաղութը, եւ հայութիւնը ընդհանրապէս՝ Հայաստանի տիրական ներառականութեամբ:

Մէկ կողմ ձգենք Հայաստանը, որուն մասին ամէն հայ կը կարծէ բաներ մը գիտնալ՝ իր ձեւով, իր ըմբռնումով: Իսկ Սփի՞ւռքը: Եկէք «չե՞ս գիտեր»-ը հարցընենք եգիպտահայուն՝ իբրեւ հաւաքական միաւոր:

«Չե՞ս գիտեր»՝ որ

- Գահիրէի մէջ հեղինակուած եւ տպագրուած է Տանթէի *Դժոխքի* կարեւոր թարգմանութիւններէն մէկը (թարգմանիչ՝ Հրանդ Վեհակրօն, 1933).

- Գահիրէի մէջ տպագրուած է Շեքսփիրի *Օթելլոյի* առաջին աշխարհաբար թարգմանութիւնը (թարգմանիչ՝ Գարեգին Յ. Բաբազեան, 1904).

- Գահիրէի մէջ կայացած է Յակոբ Օշականի գլուխ-գործոց *Մնացորդացի* առաջին տպագրութիւնը (Թերթօն *Յուսաբերի*, 1932).

- Աղեքսանդրիոյ մէջ գրուած է հայ երգիծական միտքի լաւագոյն արտադրութիւններէն մէկը՝ *Մարտիկ աղա* (հեղինակ՝ Միքայէլ Կիւրճեան, տպագրուած՝ Լոնտոն, 1898-1899).

- Աղեքսանդրիոյ մէջ հրատարակուած է հայկական անարշիզմի կարեւոր գիրքերէն մէկը (Բարսեղ Շահպազ, *Այլասիրութիւն եւ եսասիրութիւն*, 1907).

- եգիպտական առաջին խաղարկային ֆիլմին մէջ եղած է հայուհի մը (Վարդանոյշ Պարթեւեան, *Լայլա*, 1927).

- եգիպտահայութիւնը ունեցած է աստղային սոփրանօ-դերասանուհի մը՝ Վալանթին Ամիրայեան (1920-ականներ), հաւասարապէս յաջող հայ եւ օտար բեմերուն վրայ.

- եգիպտահայութիւնը ունեցած է Եգիպտոսի ախոյեան կռփամարտիկ՝ Հայկ Ասատուրեան (1920ա-ականներ), որ շուրջ 10 տարի մնացած է անպարտելի:

- ելոյթներու համար Եգիպտոս այցելած են այնպիսի կարող արուեստագէտներ, ինչպէս՝ երաժիշտներ Տիգրան Չուհաճեան, Կոմիտաս Վարդապետ, Զապէլ Փանոսեան, Լիւսի Սեւումեան, Բարսեղ Կանաչեան, Մանուկ Բարիքեան, Արամ Խաչատրեան, դերասաններ Սիրանոյշ, Վահրամ Փափազեան, գրողներ Զապէլ Եսայեան, Շիրվանզադէ, եւ անհամար ուրիշներ.

- 1896-1909-ին տարբեր ժամկէտներով Եգիպտոս ապրած են հայ միտքի ու գրականութեան հսկաներ՝ Վահան Թէքէեան, Երուանդ Օտեան, Մառի Պէյլէրեան, Երուխան, Տիրան Քէլէկեան, Տիրան Չրաքեան, Արփիար Արփիարեան, Սմբատ Բիւրատ, Բարսեղ Շահպազ եւ շատ ուրիշներ, որոնք հիմք դրած են եգիպտահայ մտաւորական շարժումին.

- մինչեւ Մեծ Եղեռն, մեծահարուստ անհատներն էին որոնք կը տիրէին եգիպտահայ գաղութին վրայ՝ իրենց նուիրաբերած միաւորներուն ընդմէջէն, իսկ 1920-ականներէն սկսեալ աւանդական կուսակցութիւններն էին որոնք կը տիրէին գաղութին վրայ.

- մինչեւ Մեծ Եղեռն, վերոյիշեալ 1896-1909-ի մտաւորականները կ'արտայայտուէին իրենց հիմնած անկախ մամուլի ընդմէջէն, մինչդեռ 1920-ականներէն սկսեալ անոնցմէ Եգիպտոս վերադարձած վերապրողները արտայայտուեցան բացառապէս կուսակցական օրկաններուն ընդմէջէն.

- Նախաեղեռնեան մեծահարուստներու տիրապետութեան արդիւնքն է 1906-ին Եգիպտոսի մէջ հիմնուած Հ.Բ.Ը.Մ.-ը, յետեղեռնեան կուսակցական գոյութեան յատուկ պայմաններու արդիւնքն է Համազգայինի հիմնադրութիւնը Եգիպտոսի մէջ 1928-ին:

Եւ նման անվերջանալի վիճակներ, թերեւս ուրիշ ձեւերով եւս հարցադրուած, որոնց գիտակցութիւնը կը ստեղծէ հաւաքական գոյութեան իմաստը եւ որոնցմով անձը կը կապուի իր վայրի ու միջավայրի հետ իբրեւ եգիպտահայ, ֆրանսահայ կամ ամերիկահայ: Առանց սեփական անցեալի յիշողութեան, առանց պատմական շարժումի գիտակցութեան, կ'անհետանան իմաստները:

Սփիւռքները կը կորսուին, ի միջի այլոց, սեփական գոյութեան անգիտութեան պատճառով, այլեւ սեփական գաղութի իրազեկութեան գաղափարի յաճախակի վանումին հետեւանքով: Չունենալով սեփական յիշողութիւն, գաղութահայը անընդունակ կը դառնայ ինքն իր մասին մտորելու, մեկնաբանելու, վերլուծելու: Յիշողութիւնը անխուսափելի է հաւաքական եսի գոյատեւումին համար:

Սեփական գաղութի իմացութիւնը գոյատեւումի խորքային գործօններէն մէկն է: Այս պարագային «չե՞ս գիտեր»-ը գոյաբանական հարցում մը կ'ըլլայ, ի տարբերութիւն առաջին «չե՞ս գիտեր»-ին՝ որ եսասիրական հարցում մըն է: Այս պատճառով է որ վերջինն է տարածուածը...:

ՋԱՀԱԿԻՐ

## 2 ՋՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ


Աղեքսանդրիա, 25 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 72 (832), էջ 2: «Զօր. Անդրանիկի ժամանումը եւ ընդունելութիւնը», *Արեւ*, 27 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 73 (833), էջ 1:

5. «Զօր. Անդրանիկի ժամանումը եւ ընդունելութիւնը», *Արեւ*, 27 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 73 (833), էջ 1:

6. Կ[իւրճեան], «Զօր. Անդրանիկի ժամանումը եւ ընդունելութիւնը», *Արեւ*, 29 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 74 (834), էջ 3:

7. *Արեւ*, 27 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 73 (833), էջ 3:

8. Արա Աշարոնեան, «ՌԱԿ-ի երախտաւորները. Մուշեղ Արք. Սերոբեան (1869 Նիկոմեդիա – 1951 Կիպրոս)», *Հայ կեանք*, ելեկտրոնային պարբերական, Աթէնք, 5 Յունուար 2018, էջ 25:

9. Կ[իւրճեան], «Զօր. Անդրանիկի ժամանումը եւ ընդունելութիւնը», *Արեւ*, 1 Նոյեմբեր 1920, Զ. տարի, թիւ 75 (835), էջ 1:


## 3 ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԸ՝ ԽՕՍՔԱՅԻՆ ԱՌԵՒՏՈՒՐԷ ՄԻՆՉԵՒ...

Base Metals ընկերութեան բանեցուցած հանքավայրին նկատմամբ (Կաշէն-Տեմիրլի), մինչ կը հեռանայ ռուսական GeoProMining Gold ընկերութեան հանքավայրին (Սոթք) հանդէպ հնարաւոր բախումէ, նկատի առնելով՝ որ անհաւանական է միեւնոյն հանքի հայկական մասը բանեցնէ ընկերութիւն մը, ազրպէյճանական մասը՝ ուրիշ մը: Հանգամանքները առայժմ կը մնան ամբողջապէս անյայտ:

**ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱԶՄԱՍՏԱԿԱՐԱՐՈՒՄԸ ԻԲՐԵՒ ՏԻՐԱԿԱՆ ԳՈՐԾՕՆ**

Կարելի է սկսիլ վերջին շրջանի երկու անջատ լուրերու շաղկապումով:

Առաջին լուր: Ռուսական հսկայ Gazprom ընկերութիւնը այս տարուայ Յունուար 3-ին կը տեղեկացնէ՝ որ բնական կազի արտահանումի ծաւալները ԱՊՀ պետութիւններու սահմաններէն դուրս 2022-ին նուազած է աւելի քան 45 տոկոսով:

Երկրորդ լուր: Նոյն օրը կը տեղեկացուի, որ ԱՄՆ-էն Գերմանիա հասաւ հեղուկացուած բնական կազի առաջին խմբաքանակը: Վիլհելմսհաւէն նաւահանգստեան քաղաքին մէջ վերջերս կառուցուած լողացող գործարանին մէջ հեղուկ կազը պիտի վերածուի բնական կազի՝ գերմանական սպառումի համար: Նախատեսուած է ԱՄՆ-էն Գերմանիա հեղուկ կազի կանոնաւոր մատակարարում:

2022 թուականի ռուսական կազի մատակարարումի նուազումը հետեւանքն է ռուս-ուքրաինական պատերազմին: Մինչ ԱՄՆ կը շահագործէ այս նուազումը՝ իր կազը յառաջ մղելու համար: Զա՞րմեր արդեօք ռուս-ուքրաինական պատերազմ հրահրել՝ ի նպաստ ամերիկեան կազի ընկերութեան, ճիշդ այնպէս՝ ինչպէս ԱՄՆ-ի փոխ-նախագահ Տիք Չենիի Հալլիպըրթըն ընկերութիւնը հրահրած էր Իրաքի պատերազմը (Հալլիպըրթընի մասին՝ *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ հայոց ցեղասպանութիւնը. մարքսիսթական-անարշիսթական ընթերցում մը*, *Ջահակիր*, Յաւելուած Դ., 2016, էջ 60-75): Միաժամանակ, ասիկա չի հերքեր Ռուսաստանի բուռն ցանկութիւնը տիրելու Ուքրաինայի Արեւելքը յայտնաբերուած, բայց տակաւին չշահագործուած, կազի հսկայ պահեստներուն, ինչպէս նաեւ ապահովելու Ուքրաինայէն անցնող ռուսական հսկայ քարիւղ-կազի խողովակը՝ որ կը հասնի մինչեւ Եւրոպա:

Ասիկա՝ հարցին մէկ կողմը: Կազի պատմութիւնը աւելի ընդարձակ է:

Ռուսաստան կը հանդիսանայ բնական կազի աշխարհի ամենամեծ արտահանողը, եւ քարիւղի երկրորդ արտահանողը՝ Սաուտիա Արաբիայէն ետք: Ասիկա կ'ապահովէ կառավարութեան պիւտճէի 40-50%-ը, իսկ երկիրի ՀՆԱ-ի 30%-ը: Քարիւղի արտահանումին կէսը եւ բնական կազի երեք քառորդը կը հոսին դէպի Եւրոպա, ապահովելով Եւրոպայի քարիւղի պահանջին 25%-ը եւ կազի պահանջին 35%-ը: Ուրեմն, Եւրոպան իր ուժանիւթի ողջ պահանջի 1/5-ին համար կը յենուի Ռուսաստանի վրայ, մինչ վերջինը իր պիւտճէի 1/3-ը կը ստանայ Եւրոպայէն: Հետեւաբար, Ռուսաստանի համար քարիւղ-կազի արտահանումը կենաց-մահու հարց է:

Վերջերս ուժանիւթի այս մենատիրութիւնը սկսաւ սպառնալիքի տակ իյնալ՝ գլխաւոր խաղացողներ ունենալով Ուքրաինան, Ազրպէյճանը եւ քանի մը ուրիշներ: Ուքրաինայի հարցը Ռուսաստան այժմ կը փորձէ լուծել ուղղակի պատերազմով: Մեր նիւթէն դուրս է ան: Մեզի անմիջապէս հետաքրքրողը Ազրպէյճանն է:

Կասպից Ծովու շրջանը ունի 48 միլիառ պարէլ քարիւղ եւ 8,7 թրիլիոն խորանարդ մեթր բնական կազ, ուրեմն, կը պարունակէ աշխարհի քարիւղի 3%-ը եւ բնական կազի 4%-ը: Կասպից Ծովու նախկին Խորհրդային Միութեան չորս երկիրներ՝ Ազրպէյճան, Ղազախստան, Ուզպեքստան եւ Թուրքմենըստան, կը տիրապետեն 16,700 խորանարդ քիլոմեթր բնական կազի պահեստի, որ կը կազմէ Ռուսաստանի Դաշնութեան կազի պահեստի աւելի քան 1/3-ը: Տարբեր պատճառներով, որոնց թուարկումը կ'երկարի այստեղ, առայժմ Ղազախստան, Ուզպեքստան եւ Թուրքմենստան վտանգ չեն ներկայացներ ռուսական մենատիրութեան: Ազրպէյճան՝ կը ներկայացնէ:

2006-ին գործի կը դրուի Պաքու-Թիֆլիս-Սէյհան քարիւղի խողովակը՝ Կասպից Ծովը կապելով Միջերկրականին, գործարկու ունենալով British Petroleum: Խողովակը երկարութեամբ երկրորդն է նախկին Խորհրդային Միութեան մէջ, առաջինը ըլլալով Տրուժպա խողովակը՝ որ ռուսական հսկողութեան տակ կը գործէ մինչեւ այսօր: Պաքու-Թիֆլիս-Սէյհանը ամբողջապէս զերծ է ռուսական ազդեցութենէ: Կարեւոր քայլ մը Ազրպէյճան-Ռուսաստան մրցակցութեան մէջ, որուն համար Ռուսաստան պիտի խուսափէր բախումի մէջ մտնել Ազրպէյճանի հետ, այլ ընդհակառակը, պիտի փորձէր ճշդել իր դրական դիւանագիտական յարաբերութիւնները անոր հետ:

Կու գայ աւելի ազդեցիկն ու կարեւորը, աւելի վտանգաւորը Հայաստանի համար: Արեւմտեան ընկերութիւնները 45 միլիառ տոլլար կը ծախսեն կառուցելու այս անգամ բնական կազի փոխադրութեան զանազան խողովակներ՝ որոնք հռչակուեցան Հարաւային Կազային Միջանցք (Southern Gas Corridor) անունով, Կասպից Ծովի ազրպէյճանական Շահ Տենիզ դաշտի կազը հասցնելու համար Եւրոպա, խողովակ՝ որ կը սկսի Ազրպէյճանէն, կ'անցնի Վրաստան, Թուրքիա, Յունաստան, Ալպանիա, Ադրիատիկ Ծով, վերջանալով Իտալիա: Ասիկա կրկին կը նուազեցնէ Եւրոպայի կախուածութիւնը Ռուսաստանէն: 2019 Նոյեմբեր 30-ին կը կայանայ բացումի արարողութիւնը, իսկ կազը կը սկսի հոսիլ 2020 Դեկտեմբեր 30-ին, ներկայիս կարողութիւն ունենալով 10 միլիառ խորանարդ մեթր կազ հասցնել Եւրոպա, բաւարար ֆինանսաւորելու Ազրպէյճանի կառավարական պիւտճէի 60%-ը:

Հարաւային Կազային Միջանցքը Ազրպէյճանը դարձուց իրապէս անկախ պետութիւն:

Նկատենք թուականը՝ Դեկտեմբեր 30, 44-օրեայ պատերազմի աւարտէն մէկ ու կէս ամիս անց, որ մասամբ կը բացատրէ նոյն ինքը 44-օրեան, ինչպէս նաեւ միջազգային լռութիւնը անոր նկատմամբ, հետեւաբար՝ լուռ աջակցութիւնը անոր:

Հարաւային Միջանքը, նաեւ, բազմապատկեց ռուսական մտահոգութիւնը, որուն հիման սերտացան երկկողմանի փոխշահաւէտ յարաբերութիւնները:

Այսպէս, տարօրինակօրէն, մինչ Ազրպէյճան այդ խողովակով կը սկսի կազի արտահանումը Եւրոպա, Ռուսաստանի հետ համաձայնագրութիւն կը կնքէ կազ ներմուծելու Ազրպէյճան: 2022 Նոյեմբեր 18-ին ռուսական Gazprom-ը կը յայտարարէ՝ որ Նոյեմբեր 15-ին սկսած է կազ մատակարարել (արտահանել) Ազրպէյճանի SOCAR կազի ընկերութեան եւ մինչեւ Մարտ 2023 պիտի մատակարարէ մինչեւ մէկ միլիառ խորանարդ մեթր:

Փաստը կը մնայ փաստ, իսկ պատճառը կարելի է հիմնել հետեւութիւններու վրայ: Հարաւային Կազային Միջանցքի արտահանումի ներկայ կարողութիւնն է 10 միլիառ խորանարդ մեթր, եւ այդպէս էր Եւրոպայի հետ եղած նախնական համաձայնութիւնը: Բայց Եւրամիութեան հետ 2022 Յուլիսին կնքուած նոր յուշագիրով, Պաքու կը համաձայնի արտահանումը բարձրացնել 12 միլիառի՝ փոխհատուցելու համար ռուս-ուքրաինական պատերազմի պատճառով ռուսական կազի վրայ դրուած եւրոպական պատժամիջոցին: Արդարեւ, երբեք չնշուեցաւ այդ յաւելեալ կազի աղբիւրը:

Շահ Տենիզ դաշտի սեփականատիրութեան մօտիկ աղբիւր մը *Eurasianet*-ին կը հաստատէ՝ որ չկան արտահանումի նոր համաձայնագիրներ, իսկ հանքավայրը ներկայիս համաձայնած է տրամադրելու միայն 10 միլիառ (https://eurasianet.org/-azerbaijans-russian-gas-deal-raises-uncomfortable-questions-for-europe): Կը յառաջանայ կարեւոր հարցումը՝ ուրկէ՞ կու գայ մնացածը: Սլաքը կ'երթայ Ռուսաստանին եւ Gazprom-ի համաձայնագրութեան:

Երկարաժամկէտ առումով, Յուլիսի համաձայնագիրով, Պաքու ընդունած է մինչեւ 2027 թուական արտադրութիւնը հասցնել 20 միլիառի: Այս կրկնապատկումը դիւրին գործ չէ, քանզի պէտք է աւելցնել հսկայ ներդրումներ նոր սեղմակներ (compressors) տեղադրելու եւ դաշտի արտադրութեան կարողութիւնը աւելցնելու համար: Շահ Տենիզը բանեցնող British Petroleum-ը անցեալ տարի հաստատեց՝ որ դաշտը անկարող է տրամադրել պահանջուած յաւելեալ 10 միլիառը: Ուրկէ՞ պիտի գայ, ուրեմն, մնացածը: Տրամաբանական առաջին պատասխանն է՝ Ռուսաստանէն:

Վերջապէս նշենք, որ իբրեւ պետութիւններ, Ռուսաստանն ու Ազրպէյճանը կը նմանին քարիւղ-կազի երկու ընկերութիւններու՝ որոնց գործադիր տնօրէններն են Փութին եւ Ալիեւ: Վերջիններս այս հիմքով կը կառավարեն իրենց երկիրները, քանզի քարիւղէն ու կազէն եկած եկամուտներով է որ ոտքի կանգնած են անոնք եւ դարձած հզօր :

Վերջին հարցում: Լաչինի փակումը եւ անոր հանդէպ Ռուսաստանի բռնած յայտնի դիրքը արդիւնքը չէ՞ն արդեօք շատ մեծ ու լուրջ աշխարհաքաղաքական խաղերու եւ սերտաճ շահերու, որոնց մէջ Հայաստանը չունի, եւ չի կրնար ունենալ, խաղաթուղթ, որոնց մէջ կ'աններեւութանայ, այլեւ կը բնաջնջուի բանակցային որեւէ կարելիութիւն: Խօսքային առեւտուրը այն քօղն է՝ որ կը ծածկէ փաստականը, գործողը, ազդեցիկը, հասարակութեան գիտակցութեան մէջ գրաւելով իրականին տեղը եւ դիտաւորեալ իր շուրջը համախմբելով լրատուական աղմուկը:

Ա.

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),


Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1932 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 26 ՅՈՒՆՈՒԱՐ 2023 *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ.* عدد رقم ١٩٣٢ الخميس ٢٦ يناير ٢٠٢٣


## ՂԱՐԱԲԱՂԻ ԱՊԱԳԱՆ՝ ԵՐԿՈՒ ԿԱՐԵԼԻՈՒԹԻՒՆՆԵՐ

44-օրեայէն քիչ ժամանակ անց Իլհամ Ալիեւ սկսաւ անընդհատ յայտարարել՝ թէ այլեւս Ղարաբաղի հարց չկայ, հարցը լուծուեցաւ վերջին պատերազմով եւ Ղարաբաղը մաս կը կազմէ Ազըրպէյճանին: Եթէ սկիզբը այս յայտարարութիւնը կարելի էր ընդունիլ իբրեւ Ալիեւի սովորական ունայն խօսքերէն մէկը, ժամանակը սկսաւ ցոյց տալ անոր «անկեղծութիւնը»:

Ղարաբաղի շուրջ առկայ ներկայ իրադարձութիւնները կը բացայայտեն երկու կարելիութիւններ: Մէկը այն է՝ որ Ղարաբաղը շուտով դառնայ Ազըրպէյճան, միւսը՝ որ Ղարաբաղի հարցը դիտաւորեալ մնայ չլուծուած: Փորձենք մեկնաբանել:

### ՂԱՐԱԲԱՂԸ՝ ԱԶԸՐՊԷՅՃԱՆ

Հարաւային Կազային Միջանցքը (ՀԿՄ) Ազըրպէյճանի Կասպից Ծովու բնական կազը հասցուց Եւրոպա՝ Ազըրպէյճանը դարձնելով կարեւոր միաւոր մը միջազգային քաղաքական-տնտեսական խաղադաշտին մէջ: Երկար նախապատրաստութենէ եւ եւրոպական միլիառներու ներդրումներէ ետք, կազը կը սկսի հոսիլ 2020 Դեկտեմբեր 30-ին, 44-օրեայ պատերազմի աւարտէն մէկ ու կէս ամիս անց:

Միջանցքը նաեւ Ազըրպէյճանը ամբողջապէս անկախացուց Ռուսաստանէն, միաժամանակ Ազըրպէյճանն ու Ռուսաստանը դարձնելով մրցակից երկիրներ, մրցակցութիւն՝ որ պիտի տանէր երկու երկիրներու համագործակցութեան, փոխանակ խզումի, քանի որ 2022 Նոյեմբեր 15-ին, Ռուսաստան կը սկսի կազ մատակարարել Ազըրպէյճանին: Ազըրպէյճան՝ Եւրոպայի կարեւոր կազմատակարարող մը, կազ կը ստանայ Ռուսաստանէն: Ենթադրութիւններուն սլաքը կ՚ուղղուի այն ուղղութեամբ՝ որ Ազըրպէյճան առայժմ անկարող ըլլալով բաւարարել եւրոպական կազի աճող պահանջը, բացը կը լրացնէ ռուսական կազով: Հայերուս համար այնքան ալ կարեւոր չէ պատճառը. կարեւորը՝ ռուս-ազըրպէյճանական այս նոր համաձայնագիրն է, որուն, ըստ երեւոյթին, Ռուսաստան աւելի պէտք ունի քան Ազըրպէյճան, նկատի առնելով որ վերջինս կրնայ իր պակասը լրացնել ուրիշ ԱՊՀ երկիրներէ: Վերջապէս չմոռնանք, որ Ռուսաստանի դէմ Արեւմուտքի կիրարկած պատժամիջոցներուն պատճառով մեծապէս նուազած է Ռուսաստանի կազային արտահանումին չափերը, հետեւաբար, Վլատիմիր Փութին որքան կարելի է երկար ժամանակ կառչած պիտի մնայ Ազըրպէյճանի հետ կնքած նոր համաձայնագիրին: (Այս բոլորին մասին մանրամասն՝ *Ջահակիրի* անցեալ թիւը):

Ասիկա ի՞նչ նշանակութիւն կրնայ ունենալ Ղարաբաղի հարցին համար.

1. Ազըրպէյճան ռազմապէս շատոնց հզօրացած էր Հայաստանի համեմատութեամբ, բայց տակաւին չէր հասած պատերազմելու համար անհրաժեշտ քաղաքական հասունութեան պահը: Այս պահը (44-օրեան) յառաջացաւ ՀԿՄ-ի շնորհիւ, անգամ մը եւս հաստատելով այն իրականութիւնը՝ որ տնտեսութիւնն է քաղաքականութիւն կերտողը:

2. ՀԿՄ-ն եւ անոր յաջորդած ռուս-ազէրիական կազային համաձայնագիրը փոխեցին Ռուսաստանի վերաբերմունքը Հայաստանի նկատմամբ: Մինչ Ռուսաստանը արդէն երկու ու կէս տասնամեակ առաջ ապահոված ըլլալով իր քաղաքական ու տնտեսական անքակտելի գոյութիւնը Հայաստանի մէջ՝ գերակայ տիրակալութեան դիրքերէն ելլելով, եւ ունենալով Հայաստանը իր ծիրին մէջ պահելու բոլոր գործիքները, 44-օրեայէն սկսեալ մինչեւ այսօր կատարուած ազըրպէյճանական յարձակումներուն նկատմամբ պահեց քար լռութիւն, չըսելու համար հրաժարեցաւ դաշնակցային-համաձայնագրային պարտականութիւններէն, միաժամանակ կատարելապէս պահպանելով ու ամբողջապէս անվնաս պահելով Հայաստանէն ստացած տնտեսական ու քաղաքական շահերը: Այլեւ այս առումով Հայաստանի արտայայտած դժգոհութիւնները փոխադարձեց շատ կոշտ յայտարարութիւններով:

3. Ինչո՞ւ Ազըրպէյճան խաղաղութեան համաձայնագիրի շուրջ պիտի բանակցի Հայաստանի հետ՝ եթէ կրնայ առանց բանակցութեան հասնիլ ուզածին: Պիտի բանակցի՝ պարզապէս աշխարհին ցոյց տալու համար իր խաղաղասիրութիւնը: Արդարեւ, 2022 թուականին, իր վերջին կէսդարեայ պատմութեան մէջ առաջին անգամ ըլլալով, Հայաստան մտաւ լուրջ ու երկարատեւ արտաքին եռակողմ բանակցութիւններու մէջ՝ Եւրամիութեան ու Ռուսաստանի միջնորդութիւններով, զորս Ազըրպէյճան ստիճանաբար տարաւ դէպի տապալում՝ անընդհատ աւելցնելով իր պահաջներուն առաստաղը եւ պահանջելով անկարելին: Անկարելիին մասին չեն բանակցիր: Անկարելին կը գրաւեն ուժով:

Հայաստան նաեւ օգտագործեց Ռուսաստանէն անդին այլընտրանքային բանակցութիւններու կարելիութիւնները, ամէն անգամ իր առջեւը գտնելով ռուսաստանեան կաղնին, մէկ կողմէն՝ ռուսական մեծամիտ աղաղակները, միւս կողմէն՝ Արեւմուտքի անտրամադրութիւնը մերժենալու Հայաստանին՝ իբրեւ Ռուսաստանի ամենամտերիմ համաձայնագրային դաշնակից: Ծուղակ մը՝ զոր Հայաստան ինքն իրեն համար սարքած էր 1997-ի դաշնագրային համաձանագիրէն ի վեր: Եւ այս ծուղակը լաւագոյն կերպով օգտագործեց Ազըրպէյճան՝ իր գործերը յառաջ մղելու համար:

4. Ազըրպէյճանի ոսկեայ շրջանն է այսօր, շնորհիւ ուժանիւթի համաշխարհային խաղերուն մէջ ունեցած դիրքին: Կատարեալ շահադիտական յարաբերութիւններ երկու հակառակ կողմերու՝ Արեւմուտքի եւ Ռուսաստանի հետ: Բայց կազն ու քարիւղը երկսայրի գործօններ են: Անոնք երկիրի մը կայուն զարգացումի ազդակները չեն, այլ ժամանակաւոր բարգաւաճումի գրգիռները: Լաւագոյն պարագային, ինչպէս այսօրուայ Ազըրպէյճանը, անոնք որոշ ժամանակի համար երկիրը կը դարձնեն դրամապէս ծաղկուն ու ինքնաբաւ, որմէ՝ քաղաքականապէս անկախ: Բայց անկախութիւն մը՝ որ կախեալ է ուժանիւթէն, ուրեմն՝ կախեալ անկախութիւն մը: Օրինակ, ուժանիւթի գինը կրնայ յանկարծ իջնել համաշխարհային շուկային մէջ, մեծապէս ազդելով արտադրող երկիրին վրայ: Բայց նաեւ ստացող երկիրը կրնայ

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵՄ-Ի ԴԻՏՈՐԴԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

Յունուար 23-ին, Եւրամիութեան Խորհուրդը իր համաձայնութիւնը տուաւ ստեղծել քաղաքացիական առաքելութիւն (EUMA) Հայաստանի տարածքին վրայ:

Հաղորդագրութեան մէջ նշուած է. «Առաքելութեան նպատակն է նպաստել Հայաստանի սահմանամերձ շրջաններու կայունութեան, գետինի վրայ ամրապնդել վստահութիւն, եւ ձեւաւորել այնպիսի մթնոլորտ՝ որ աջակցի Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ յարաբերութիւնները կարգաւորող ԵՄ-ի ջանքերուն:

«Արձագանգելով Հայաստանի խնդրանքին, քաղաքացիական առաքելութիւնը պիտի իրականացնէ կանոնաւոր պարեկութիւն եւ տեղեկութիւններ հաղորդէ իրավիճակի մասին, որ պիտի ամրապնդէ ԵՄ իրազեկումին մակարդակը: Առաքելութիւնը նաեւ պիտի աջակցի ԵՄ Խորհուրդի նախագահ Շարլ Միշելի հովանիին տակ ընթացող բանակցային գործընթացին»:

Այս առիթով, ԵՄ արտաքին յարաբերութիւններու եւ ապահովութեան հարցերով բարձրագոյն ներկայացուցիչ Ժոզէփ Պորէլ կը յայտարարէ. «Հայաստանի մէջ առաքելութեան ստեղծումը կ՚ազդարարէ Հարաւային Կովկասի մէջ ԵՄ ներգրաւումի նոր փուլի սկիզբը: ԵՄ պիտի շարունակէ աջակցիլ լարուածութեան թուլացումին ուղղած ջանքերուն, յանձնառու ըլլալով աշխատիլ երկու կողմերուն հետ՝ վերջնական նպատակ ունենալով տարածաշրջանի յարատեւ խաղաղութեան հաստատումը»:

Քաղաքացիական գործողութիւններու հրամանատար կը նշանակուի ԵՄ արտաքին յարաբերութիւններու ծառայութեան քաղաքացիական ծրագրաւորումի բաժինի ղեկավար Ստեֆանօ Թոմաթ:

Առաքելութեան տրուած է երկու տարուայ ժամկէտ, իսկ կեդրոնակայանը պիտի գտնուի Հայաստանի մէջ:

Պաշտօնական Երեւանը կ՚ողջունէ լիարժէք քաղաքացիական առաքելութիւն ուղարկելու Եւրամիութեան որոշումը: Հայաստանի Արտաքին Գործոց նախարար Արարատ Միրզոյեան կ՚արձագանգէ Թուիթէրի էջին վրայ. «Մենք պատրաստակամօրէն կը համագործակցենք առաքելութեան հետ եւ կ՚աջակցենք նրա գործունէութեանը: Այս առաքելութիւնը կը նպաստի տարածաշրջանի խաղաղութեանը, կայունութեանը եւ անվտանգութեանը»:

## ԼԱՒՐՈՎԻ ԱՍՈՒԼԻՍԻՆ ՃԱՊՈՆԱԿԱՆ ԼՐԱՏՈՒԱՄԻՋՈՑ ՆԵՐԿԱՅԱՑՆՈՂ ՀԱՅԱԶԳԻ ԼՐԱԳՐՈՂԸ ՀԱՐՑ Է ՏՈՒԵԼ ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԻ ՄԱՍԻՆ

Ռուսաստանի Արտաքին Գործերի նախարար Սերգէյ Լաւրովի տարեկան ասուլիսին հայկական եւ ադրբէջանական լրատուամիջոցների լրագրողներին հարցեր տալու հնարաւորութիւն չի ընձեռուել: Ասուլիսի աւարտին արտգործնախարարի մամուլի խօսնակ Մարիա Զախարովան առաջարկել է Ռուսաստանին «ոչ բարեկամ» երկրների լրատուամիջոցների ներկայացուցիչներին տալ վերջին երկու հարցը:

Ճապոնական *Ci-Ci Press*-ից Մերի Գէորգեանը ասելով, որ ինքը հայկական ծագում ունի, հարց է տուել Լաչինի միջանցքի մասին, որն դեռեւս փակ է:

Լաւրովը պատասխանել է. «Ճապոնիայի համար ամենագլխաւորը՝ Լաչինի միջանցքի հարցն է»:

# ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

Երրորդ խօսողը կ՚ըլլայ բողոքական քարոզիչ Պատուելի Քրիստափոր Ճէճիզեան: Յայտնելէ ետք իր եւ եգիպտահայութեան ուրախութիւնը Անդրանիկը տեսնելու եւ լսելու առիթով, կը խօսի վրիժառութեան անհրաժեշտութեան մասին(10):

Վերջապէս ելոյթ կ՚ունենայ Անդրանիկ:

«Ո՛չ մէկ արուեստ, ո՛չ մէկ ճիգ, ոչ մէկ հռետորական, ստացիկ ճարտարութիւն, բայց ամէնէն ազդուն պերճախօսութիւններուն, որովհետեւ ամէնէն *բնականը*...», կ՚ըլլայ Կիւրճեանի տպաւորութիւնը:

Ցաւի ու ցասումի խօսքեր էին իր արտասանածը, կը նկարագրէ խմբագրապետը: Անդրանիկ բարձրաձայնեց դառն ճշմարտութիւններ՝ որոնք կը ցաւցնէին, խարանեց մեր անմիաբանութիւնը, մեր բաժան բաժան ճիգերն ու գործունէութիւնները, մատնանշեց հայրենիքի համար ինչքի եւ կեանքի գերագոյն զոհաբերութեան պէտքը, սրտնեղելով անոնցմէ՝ որ կը փորձեն վրէժ ներշնչել իրեն.

«Ինծի Պատուելին [նկատի ունի Պատուելի Քրիստափոր Ճէճիզեանի խօսքը, Հ.Ա.] վրէժի ոգին կ՚ուզէ ներշնչել, ներարկել, ինծի՛... ինծի հրաւէր կը կարդան հայրենիքիս ծառայելու... բայց յանցանքը ի՞մս է եթէ ես այսօր, ուր հայրենիքը ամէն կողմէ վտանգներով շրջապատուած է, անգործութեան դատապարտուած եմ... յանցանքը քո՛ւկդ է, ժողովուրդ, որ տէր չես կանգնիր քու ճակատագրիդ, որ չես գիտեր, չես կրնար գոյացնել քու մէջդ անհրաժեշտ փրկարար համերաշխութիւնը, որ չես գիտեր հաշիւ պահանջել քու վարիչներէդ... չես գիտեր կիրարկել քու արդար իրաւունքներդ...: Միայն խօսիլ, խօսիլ, խօսիլ գիտես, կը գանգատիս անդադար, կը հայհոյես օտարներուն դէմ: Բայց նախ քու մեղքերուդ, քու յանցանքներուդ անդրադարձի՛ր. քու թերութիւններդ սրբագրէ՛, քու ներքին չարիքներդ ջանա՛ բուժել...: Անդրանիկ մը, տասը հատ Անդրանիկներ, աշխարհի մեծագոյն զօրավարներն իսկ, ի՞նչ կրնան ընել եթէ իրենց հետ, իրենց ետին չունին միաբան, միակամ ժողովուրդ մը...»(11):

Ընդունելութեան ներկայ էր Համբարձում Երամեան, որ քանի մը տարի ետք պիտի յիշէր Անդրանիկի «չոր, մռայլ եւ սառն» բանախօսութիւնը, «ի պատասխան իրեն ուղղուած խանդաբորբ ուղերձներուն», եւ պիտի աւելցնէր.

«Նա տեսնելով ժողովուրդի հայրենասիրական տրամադրութիւնները դէպի Հայաստան, ի միջի այլոց շեշտեց մթին ակնարկներով. «Տուէ՛ք բայց գիտցէ՛ք թէ որի՛ն կուտաք. տուէ՛ք, բայց հակակշիռ մը կազմակերպեցէք ձեր զոհաբերութեանց մատակարարութեան վրայ. տուէ՛ք, բայց առանց կանխակալ կարծիքներէ տարուելու, բաց աչքերով նկատի առէ՛ք հայ կառավարութեան արտաքին եւ ներքին քաղաքականութեան դիմագիծը»:

«Խատիսեանի խանդավառող ճառերէն յետոյ ժողովրդային հերոսի սոյն ազդարարութիւնները կու գային կարծես պաղ ջուր լեցնելու եռացող կաթսայի վրայ եւ սեւ կասկածներ արթնցնելու հազիւ ջերմացած հոգիներու մէջ»(12):

«Տուէ՛ք» ըսելով նկատի ունի Խատիսեանի այցելութեան արդիւնքով սկսած Հայաստանի Անկախութեան Փոխառութիւնը եւ Ոսկի Ֆոնտը, որոնց նկատմամբ եգիպտահայութիւնը ցոյց կու տար մեծ աշխուժութիւն եւ բարձր մասնակցողականութիւն(13):

Ժամը 5 ու կէսին Զօրավարը կը մեկնի Առաջնորդարանէն, միշտ ծափահարուելով ամբոխի մը կողմէ, «որ աւելի ստուարացած էր եւ կը գրաւէր եկեղեցւոյ պարտէզին ամբողջ տարածութիւնը, մարդկային ծովի մը պէս ալեկոծուելով»(14):

***Արեւի* առաջնորդող յօդուած**

Հանդիպումին յաջորդ օրը՝ Հոկտեմբեր 27-ին, Միքայէլ Կիւրճեան կը ստորագրէ *Արեւի* առաջնորդող յօդուածը(15):

Աղեքսանդրիոյ հայութիւնը բնազդական մղումով է որ խանդավառօրէն դիմաւորեց Զօրավարին, դիտել կու տայ ան. «Աղեքսանդրիոյ ժողովուրդը այն ինքնաբեր, ինքնաբուղխ կերպով խանդավառ ընդունելութեամբը զոր ըրաւ մեր ազգային հերոսին՝ արտասանեց թերեւս ամենէն յուզիչ եւ արժանավայել «բարի՛ եկար»ը որ կարենար ժայթքել ազգի մը երախտագէտ եւ հիացիկ հոգիէն»:

Հայրենասիրութեան խորհրդանշան մըն է իր անունը, կը գրէ խմբագրապետը: Ապա կը շեշտէ՝ որ ան ամենէն աւելի ժողովրդականութիւն վայելող հերոսն է.

«Ժողովուրդը երէկ ողջունեց ներկայ ժամանակաց հայ «ազգային հերոսը»: Ո՞վ, ապաքէն, մեր ազատագրութեան մարտիկներէն, աւելի արժանի է այդ շքակոչութեան քան քաջն Անդրանիկ, քան զօրավար Անդրանիկ, հայկական ազատախնդիր ըմբոստութեան, հայկական քաջութեան, հայ ռազմական հանճարին, հայ թրքասպան վրէժին այդ գերագոյն մարմնացումը, մեր ժողովուրդին ամենախոնարհ ընդերքէն ելած եւ բարձրացած մինչեւ «Հայկ Դիւցազն»ի մը մեծութեան ու փառաց կատարը:

«Ժողովուրդը ողջունեց յանձին Անդրանիկի իր ամէնէն «ժողովրդական» հերոսը, արդի մեծագոյն, վեհագոյն զաւակը հայ ազգին»:

**Հանդիպում Համբարձում Երամեանի հետ**

Սավոյ պանդոկին մէջ Համբարձում Երամեան քանի մը անգամ կը հանդիպի Զօրավարին եւ կ՚արձանագրէ իր յիշողութիւնները.

«Առաջին այցիս նա ուղղեց ինձ հետեւեալը. «Դո՞ւ ես Երամեանը որուն անունը լսած էի ստէպ եւ որու գործն ու դպրոցը ինչպէս եւ աշակերտները տեսայ եւ ճանչցայ Վանի ու Կովկասի մէջ: Ո՞ր հողմն զձեզ քշեր բերեր է մինչեւ Նեղոսի ափերը»: - «Տէ՛ր զօրավար, պատասխանեցի, եւ դուք ի՞նչ գործ ունիք Եգիպտոսի տափակութիւններուն մէջ. մեր ամէնուն փափաքն է ընդհուպ տեսնել լեռներու արծուի սաւառնումը Տորոսի բարձրունքներուն վրայ եւ խոյանքը մինչեւ հայկական լեռնապարը, զի այդ վայրերն են ձեր բուն տեղը»: Խոր հառաչանքով մը պատասխանեց. «Այո՛, իմ ալ բաղձանքս այդ էր եւ է դեռ՝ եթէ հանգամանքները նպաստեն»:

«Նոյեմբերն էր եւ ահա սկսաւ լսուիլ հայ-տաճկական երեբայաջորդ ընդհարումները: Անդրանիկ Հայաստանի քարտէսը սեղանի վրայ բանալով կը ցուցնէր ամէնուն ռազմաճակատի կէտերը: Զարմանալի յիշողութեամբ կը թուէր անունները գիւղերու ու բլուրներու, մաթեմաթիքական ճշդութեամբ կը հաշուէր անոնց հեռաւորութիւնները եւ ի լուր դէպքերու զարգացման՝ գառագեղի մէջ փակուած վիրաւոր առիւծի մը հանգոյն կը մռնչէր. «Կարսը պիտի իյնայ. ես լաւ կը ճանչնամ մարդիկն ու իրերը» կը պատասխանէր տրուած հարցումներուն. «մարգարէ ըլլալու պէտք չկայ գուշակելու համար ահաւոր անխուսափելին», եւ այս, աւա՛ղ, տեղի պիտի ունենար քանի մը օրէն: Գահիրէի *Ահրամէն Յուսաբեր*ի մէջ արտատպուած մէկ լուրը՝ հայերու կողմէ Կարսի վերագրաւման մասին՝ կու գար պահ մը բարձրացնելու բարոյական տրամադրութիւնները, եւ սակայն Անդրանիկ անդրդուելի յամառութեամբ կը գոչէր. «Մի՛ հաւատաք, սուտ է, սո՛ւտ այդ զրոյցը»: Արդարեւ յաջորդ հեռագիրները ո՛չ միայն պիտի հաւաստէին Կարսի անկումը, այլ եւ պիտի գուժէին Աղէքսանդրաբօլի աղէտաւոր դաշնագիրը»(16):

**Յօդուածի թարգմանութիւն**

Յառաջացած ընդհանուր խանդավառութեան մթնոլորտին մէջ, Մանսուրայէն Լ. Բամպուքճեան *Արեւի* համար կը թարգմանէ Անդրանիկի Աթէնք կատարած այցելութեան առիթով մայրաքաղաքի *Էլէֆթէրոս Թիփոս* լրագիրի Սեպտեմբեր 21-ի խմբագրականը՝ *Վրէժխնդիրը* խորագիրով(17):

**Ժամանում Գահիրէ**

Նոյեմբերի երկրորդ շաբաթը, Հ. Բ. Ը. Մ.-ի հրաւէրով, Անդրանիկ եւ իր հետեւորդները կը ժամանեն Գահիրէ(18) եւ կը մնան Շեփըրտ պանդոկը(19):

**Գահիրէի Հայկական Սրահ**

Նոյեմբեր 14-ին, Գահիրէի Հայկական Սրահին մէջ կը կայանայ ընդունելութիւն ի պատիւ Անդրանիկին:

Դառնութիւն, դժգոհութիւն եւ յոռետեսութիւն արտայայտեցին իր խօսքերը, կը նկարագրէ ներկայ մը.

«Իրաւ է, ուրախ խապրիկները ան չի տուաւ մեզ, բերկրալի լուրեր չունէր աւետելու. ընդհակառակը, դժգոհ մարդու մը սրտցաւ խօսքերն էին անոնք, մինչեւ բերանը լեփլեցուն բաժակ մըն էր դառնութեան, որ կը յորդէր սրտին մէջ, հոգւոյն մէջ կուտակուած բոլոր ցաւերը, մարմնոյն վրայ կազմուած բոլոր վէրքերը ցոյց տուաւ ան այնպէս մերկ, թարմ տակաւին, ու ի տես այդ վէրքերուն, սիրտ պէտք էր որ դիմանար, հոգի պէտք էր որ համբերէր...:

«Յոռետեսի խօսքեր էին, որոնք պիտի ազդէին ամէն հայրենասէր հայու խղճին վրայ: Անոր ամէն մէկ շեշտը, կապարի նման ճնշիչ, դեղահատի նման լեղի, բայց ամենայն դէպս բարերար, առողջարար ազդեցութիւն յառաջ բերին ներկաներուն վրայ...»(20):

(Շար. 2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

10. Անդ, էջ 1-2:

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ՏԱՐԱԾՔԱՅԻՆ ԵՒ ՄԱՐԴԿԱՅԻՆ ԿՈՐՈՒՍՏՆԵՐԸ 2022-ԻՆ

2022-ին տեղի ունեցաւ Արցախեան 44-օրեայ պատերազմից յետոյ Հայաստանի դէմ Ադրբէջանի ամենալայնածաւալ ռազմական ագրեսիան:

Սեպտեմբերի 13-14-ին հակառակորդը յարձակուեց Գեղարքունիքի, Վայոց Ձորի եւ Սիւնիքի ուղղութեամբ: Սեպտեմբերեան մարտական գործողութիւնների հետեւանքով, ըստ պաշտօնական տուեալների, առնուազն 224 զինծառայող զոհուեց: Հայաստանը կորցրեց 64 քառակուսի կիլոմետր Ջերմուկում, 10՝ Գեղարքունիքում եւ շուրջ 20՝ Սիւնիքում: Ընդհանուր առմամբ միայն 2022-ին հակառակորդը օկուպացրել է Հայաստանի ինքնիշխան տարածքի շուրջ 94 քառակուսի կիլոմետրը:

### ԱՐԱՐԱՏ ՄԻՐԶՈՅԵԱՆԸ ՆԱՏՕ-Ի ԳԼԽԱՒՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ Է ԱԴՐԲԷՋԱՆԻ ԿՈՂՄԻՑ ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԻ ԱՐԳԵԼԱՓԱԿԵԼՈՒ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ

Հայաստանի Արտաքին Գործերի նախարար Արարատ Միրզոյեանը Յունուարի 23-ին հանդիպել է ՆԱՏՕ-ի գլխաւոր քարտուղար Եէնս Ստոլտենբերգի հետ: Արմենպրէսին այս մասին յայտնեցին Հայաստանի Արտաքին Գործերի նախարարութիւնից:

Հանդիպման ընթացքում կողմերը մտքեր են փոխանակել ընդհանուր հետաքրքրութիւն ներկայացնող տարածաշրջանային եւ միջազգային անվտանգութեան հարցերի շուրջ:

Հայաստանի ԱԳ նախարարը ՆԱՏՕ-ի գլխաւոր քարտուղարին է ներկայացրել Ադրբէջանի կողմից Լաչինի միջանցքի ապօրինի արգելափակման հետեւանքով Լեռնային Ղարաբաղում ստեղծուած հումանիտար ճգնաժամը, ադրբէջանական իշխանութիւնների՝ Լեռնային Ղարաբաղը էթնիկ զտման ենթարկելու շարունակական քաղաքականութեան հետեւանքները: Այս համատեքստում ընդգծուել է միջազգային հանրութեան յստակ գործողութիւնների կարեւորութիւնը՝ Լեռնային Ղարաբաղի անմարդկային պաշարումը վերացնելու եւ Ադրբէջանին բանակցութիւնների սեղան յետ վերադարձնելու նպատակով:

Արարատ Միրզոյեանը Եէնս Ստոլտենբերգին է նաեւ ներկայացրել Հայաստան-Թուրքիա յարաբերութիւնների կարգաւորման գործընթացում առկայ զարգացումները:

Հանդիպման ընթացքում կողմերը գոհունակութիւն են յայտնել Հայաստան-ՆԱՏՕ քաղաքական երկխօսութեան մակարդակի կապակցութեամբ, անդրադարձ կատարել համագործակցութեան ներկայ ծրագրերին եւ ապագայ հեռանկարներին:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՑԱՆՑԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ. ՈՐՏԵՂ ԻՆՉՔԱՆ ՄԱՐԴ ԿԱՅ

**ՍԱՄՈՒԷԼ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ**

Տարուայ աւարտին արժէ գնահատել, թէ ինչ է կատարւում Հայաստանի սոցիալական ցանցերում, որտե՞ղ է լսարանը աճել, որտե՞ղ՝ տրանսֆորմացուել:

Մեծ հաշուով, հիմնականում լսարանները աճում են, կամ մնում են անփոփոխ: Կան հարթակներ, որոնց վիճակագրութիւնը մեզ յստակ յայտնի չէ, քանի որ սոցիալական ցանցը չի տրամադրւում Հայաստանի լսարանի վերաբերեալ տեղեկատուութիւն:

Այդպիսին է ՏիկՏոկը: Մենք գիտենք, որ սոցցանցի լսարանը մեծ է, Հայաստանում հասնում է հարիւր հազարաւոր օգտատէրերի, բայց չունենք յստակ թուեր: Նոյնը վերաբերում է Տելեգրամին: Այստեղ նոյնպէս հասկանալի է, որ լսարանը անընդհատ աճում է, սակայն յստակ վիճակագրութիւն չունենք:

Հարկաւոր է հաշուի նստել այն փաստի հետ, որ լսարանների աճը նաեւ պայմանաւորուած է Հայաստան տեղափոխուած տասնեակ հազարաւոր Ռուսաստանի, Բելառուսի եւ Ուկրաինայի քաղաքացիներով: Նրանք արդէն սոցցանցերի կողմից դիտարկւում են որպէս Հայաստանում գտնուող օգտատէր:

Երեւի թէ տեղափոխուածների պատճառով է, որ Լինքդինի լսարանը Հայաստանում աճել, անցել է 320 հազարը:

Ֆէյսբուքի լսարանը արդէն մի քանի տարի է հասել է իր յագեցածութեան շեմին եւ չի աճում: Այն, կախուած հասարակական եւ քաղաքական իրավիճակից, տատանւում է 1,3-1,5 միլիոն ամսական կտրուածքով օգտատէրերի միջեւ: Այստեղից արտագաղթել է հիմնականում երիտասարդութիւնը, որն իրեն շատ աւելի լաւ է զգում Ինստագրամում, եւ մի փոքր մասն էլ՝ Թուիթէրում:

Ինստագրամը վստահաբար լսարանի մեծութեամբ մօտենում է Ֆէյսբուքին, այստեղ արդէն մօտ 1-1,1 միլիոն ակտիւ օգտատէր կայ, եւ այս թիւը դանդաղ, բայց ամէն ամիս աճում է: Ինստագրամի լսարանի մօտ երեք քառորդը մինչեւ 35 տարեկան օգտատէրերն են: Մինչդեռ Ֆէյսբուքում օգտատէրերի կէսը 35 տարեկանից մեծ են:

Թուիթէրը վերջապէս բացեց Հայաստանի լսարանի վերաբերեալ վիճակագրութիւնը, եւ այստեղ ակտիւ համայնքի թիւը հասնում է 100 հազարի: Թուիթէրում օգտատէրերի երկու երրորդը արական սեռի ներկայացուցիչ են: Գերակշռող մասը՝ մինչեւ 35 տարեկան:

Անյայտ է մնում Փինթերեստի լսարանը, որը փոքր չէ: Ամենայն հաւանականութեամբ, շատ իգականացուած հարթակ է: Բայց դա դեռ ենթադրութիւններ են, աւելի մանրամասն մենք կ'իմանանք տուեալները, երբ հարթակը վերջապէս իր գովազդային հնարաւորութիւնները կը բացի Հայաստանի համար:

Ինչ վերաբերում է Եութիւբին, ապա ↳ 4

## ԻՄ ԱՅՑԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ ՔՆՆԱՐԿԵԼ ԵՄ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԸՆԹԱՑԻ ԱՌԱՋՄՂՈՒՄԸ ԵՒ ԵՄ ՆԵՐԳՐԱՒՈՒԱԾՈՒԹԻՒՆԸ. ԿԼԱԱՐ

Եւրամիութեան յատուկ ներկայացուցիչ Տոյվօ Կլաարն Յունուարի 23-ին Երեւան կատարած իր այցի ընթացքում քննարկել է խաղաղութեան գործընթացի առաջմղումն ու Եւրամիութեան ներգրաւուածութիւնը դրան:

Եւրոպացի դիւանագէտը հայաստանցի պաշտօնեաների, այդ թւում՝ վարչապետի հետ հանդիպումից այլ մանրամասներ չի յայտնել՝ յստակ չպատասխանելով *Ազատութիւն ռադիոկայանի* հարցին, թէ արդեօք Եւրամիութիւնը քննարկում է Հայաստանի ու Ադրբէջանի ներկայացուցիչների միջեւ նոր հանդիպում կազմակերպելու հնարաւորութիւնը, եւ արդեօք հնարաւո՞ր է այդ հանդիպումը՝ հաշուի առնելով բանակցութիւնների դադարն ու կողմերի տարաձայնութիւնները:

«Իմ այցի ընթացքում ես իսկապէս քննարկել եմ խաղաղութեան գործընթացի առաջմղումը եւ Եւրամիութեան ներգրաւուածութիւնը: Երեւանեան իմ հանդիպումների առանցքում էր նաեւ Լաչինի միջանցքի շուրջ մտահոգիչ իրավիճակը:

«Յոյս ունեմ, որ բոլորի համար ընդունելի լուծմանը հնարաւոր կը լինի հասնել հնարաւորինս շուտ: Իրավիճակը կայուն չէ, բոլոր խնդիրները պէտք է քննարկուեն երկխօսութեան միջոցով», - *Ազատութեանն* ասել է Տոյվօ Կլաարը:

Կլաարին ընդունել են ԱԽ քարտուղարը եւ պաշտպանութեան նախարարը:

Պաշտօնեան Երեւան է ժամանել Յունուարի 23-ին՝ Լաչինի միջանցքի շուրջ ստեղծուած իրավիճակը քննարկելու:

*Ազատութիւն ռադիոկայան*

## ԱՐԱՐԱՏ ՄԻՐԶՈՅԵԱՆԸ ՆԱՏՕ-Ի ԳԼԽԱՒՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ Է ԱԴՐԲԷՋԱՆԻ ԿՈՂՄԻՑ ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔՆ ԱՐԳԵԼԱՓԱԿԵԼՈՒ ՀԵՏԵՒԱՆՔՆԵՐԸ

Հայաստանի Արտաքին Գործերի նախարար Արարատ Միրզոյեանը Յունուարի 23-ին հանդիպել է ՆԱՏՕ-ի գլխաւոր քարտուղար Եէնս Ստոլտենբերգի հետ: *Արմենպրէս*ին այս մասին յայտնեցին Հայաստանի Արտաքին Գործերի նախարարութիւնից:

Հանդիպման ընթացքում կողմերը մտքեր են փոխանակել ընդհանուր հետաքրքրութիւն ներկայացնող տարածաշրջանային եւ միջազգային անվտանգութեան հարցերի շուրջ:

Հայաստանի ԱԳ նախարարը ՆԱՏՕ-ի գլխաւոր քարտուղարին է ներկայացրել Ադրբէջանի կողմից Լաչինի միջանցքի ապօրինի արգելափակման հետեւանքով Լեռնային Ղարաբաղում ստեղծուած հումանիտար ճգնաժամը, ադրբէջանական իշխանութիւնների՝ Լեռնային Ղարաբաղը էթնիկ զտման ենթարկելու շարունակական քաղաքականութեան հետեւանքները: Այս համատեքստում ընդգծուել է միջազգային հանրութեան յստակ գործողութիւնների կարեւորութիւնը՝ Լեռնային Ղարաբաղի անմարդկային պաշարումը վերացնելու եւ Ադրբէջանին բանակցութիւնների սեղան յետ վերադարձնելու նպատակով:

Արարատ Միրզոյեանը Եէնս Ստոլտենբերգին է նաեւ ներկայացրել Հայաստան-Թուրքիա յարաբերութիւնների կարգաւորման գործընթացում առկայ զարգացումները:

Հանդիպման ընթացքում կողմերը գոհունակութիւն են յայտնել Հայաստան-ՆԱՏՕ քաղաքական երկխօսութեան մակարդակի կապակցութեամբ, անդրադարձ կատարել համագործակցութեան ներկայ ծրագրերին եւ ապագայ հեռանկարներին:

ԽՈՀԵՐ

## ՎՏԱՐԵԱԼՆԵՐԸ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Աւանդական կուսակցութիւնները՝ հիմնադրութեան առաջին օրէն սկսեալ, ստանձնեցին իրենց շարքերէն անդամներ վտարելու սկզբունքը: Հետեւեալ յայտարարութիւնը դարձաւ սովորական. «Այսինչը վտարեցինք մեր կուսակցութեան շարքերէն՝ իր կուսակցական անյարիր կեցուածքին պատճառով»: Քեզի կը մնայ հաւատալ կամ չհաւատալ այդ անյարիրութեան:

Եղած են պարագաներ՝ երբ կուսակցական վտարումը պատճառ հանդիսացած է նոյն կուսակցութեան երկբեղումին: Երբ Հնչակեան Կուսակցութիւնը 1896-ին կը վտարէր իր հիմնադիրը՝ Աւետիս Նազարբէկեան, վերջնական արդիւնքը պիտի ըլլար նոյն ինքը վտարողներուն անջատումը կուսակցութենէն եւ Վերակազմեալներուն հիմնադրութիւնը: Երբ շուրջ երկու տասնամեակ առաջ ուրիշ կուսակցականապետ մը պաշտօնապէս կը վտարուէր կուսակցութենէն, արդիւնքը կ'ըլլար կուսակցութեան երկբեղումը: Միշտ նախընտրելի է վտարել ոչ-վարիչները, այն անձերը՝ որոնք չունին իրենցմէ օգտուող եւ սնուող ամբոխ մը: Ասիկա՝ իմ կողմէս համեստ խրատ մը վտարողներուն:

Ասոնք ծայրայեղ օրինակներ են, որոնք հազուագիւտ կը պատահին:

Շարքերէն վտարուողներուն պատճառները տարբեր կ'ըլլան, իսկ տարբերութիւնները կը հարթեցուին «կուսակցութեան անյարիր կեցուածք»-ի անվիճարկելի բնաբանին տակ:

Արդարեւ, վտարումը մաս կը կազմէ կուսակցական ինքնութեան:

Կրնան վտարուիլ երիտասարդներ: Անոնք զանազան պատճառներով շարքերը մտնելէ ետք չեն կրցած ենթարկուիլ հրամաններուն, կամ համաձայն չեն եղած հրահանգներուն: Երիտասարդները շարքերը կ'ընդունուին կոփուելու, զինուորագրուելու եւ հրամաններ կատարելու համար:

Վտարեալ կրնայ դառնալ ընկերական սանդուխի որեւէ աստիճանի վրայ գտնուողը՝ երիտասարդ կամ ծեր:

Վտարումներ երբեմն տեղի կ'ունենան ներկուսակցական անձնական հաշիւներ մաքրելու համար:

Բայց անոնցմէ անդին կը գտնուին երկար տարիներու խմբագիրներ, մտաւորականներ, հանրային գործիչներ, այսինքն՝ կայացած ընկերներ, որոնք իրենց վտարումէն ետք կը սկսին աղմուկներ բարձրացնել, գիտցած-չգիտցածնին դուրս հանել: Այստեղ է բուն խնդիրը: Անոնք, գիտակցելով հանդերձ ամէն թերութիւն, միշտ պահպանած էին քար լռութիւն՝ կառչած մնալու համար միաւորէն ներս իրենց գրաւած դիրքին, աթոռին, պաշտօնին: Այլեւ իրենց լռութեամբ կամ ուղղակի գործակցութեամբ մասնակցած ուրիշներու վտարումներուն, իրենց խմբագրած կամ թղթակցած լրագիրին ընդմէջէն քօղարկած կուսակցական ամէն թերութիւն, գեղեցկացուցած, փառաբանած ու բազմապատկած ամէն առաւելութիւն: Իրենց եսի պահպանութեան համար խօսած էին համահայկականութեան մասին, գովերգած միասնականութիւնը, ներբողած իրենց միաւորը՝ պախարակելով ուրիշը: Վտարուելէ ետք, երբ իրենք դարձած են այդ ուրիշը, դարձեալ յառնած է անձնակեդրոն եսը՝ այս անգամ պախարակելու համար նախապէս իրենց գովերգած միաւորը եւ կրկին խօսելու համահայկական միասնականութեան մասին:

Այդ կախարդական եսը՝ որուն կը ծառայէ անձը իր ամբողջ կիրքով: Ինքնապաշտամունքային եսը՝ որուն տրամաբանութեան տակ մարդ կը կարծէ խօսիլ հանրութեան անունով: Դիւթական եսը՝ որ, ըստ իր գրաւած դիրքին, աստակ է փոխելու իմաստները:

ՃԱՀԱԿԻՐ

## 2 ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ


11. Անդ, էջ 2:

12. Համբարձում Երամեան, *Յուշարձան*, հատոր Բ., Աղեքսանդրիա, Հրատարակութիւն Յուշարձանի Կեդր. Հրտ. Յանձնախումբի, 1929, էջ 459-460:

13. Հ. Ա., *Ալեքսանդր Խատիսեանի պատմական այցելութիւնը Եգիպտոս եւ Հայաստանի Անկախութեան Փոխառութիւնը. ուղի մը հաւաքականութենէ դէպի անձնականութիւն*, *Ջահակիր*, Յաւելուած Լե.:

14. «Զօր. Անդրանիկի ժամանումը եւ ընդունելութիւնը», *Արեւ*, 27 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 73 (833), էջ 1:

15. Մ. Ս. Կիւրճեան, «Ողջո՜յն ազգային հերոսին», *Արեւ*, 27 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 73 (833), էջ 1:

16. Համբարձում Երամեան, նշ. աշխ.ը, էջ 462:

17. Լ. Բամպուքճեան (թրգմ.), «Վրէժխնդիրը», *Արեւ*, 29 Հոկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 74 (834), էջ 1:

18. «Զօրավար Անդրանիկի վերադարձը», *Արեւ*, 22 Նոյեմբեր 1920, Զ. տարի, թիւ 84 (844), էջ 3:

19. Համբարձում Երամեան, նշ. աշխ.ը, էջ 461:

20. Զգօն, «Զօր. Անդրանիկ՝ մեր մէջ», *Արեւ*, 19 Նոյեմբեր 1920, Զ. տարի, թիւ 83 (843), էջ 2:


## 3 ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՑԱՆՑԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ...

այստեղ այցելու հանդիսանում են գրեթէ բոլոր հայաստանեան ինտերնէտից օգտուողները: Իսկ թէ որ մասն է հանդիսանում բուն եութիւբում գրանցուած. օգտահաշիւ ունեցող՝ տուեալներ չկան:

Սրանք տուեալներ են, որոնք հասանելի են հարթակների գովազդային կառավարման վահանակներից:

*Media.am*

## 1 ՂԱՐԱԲԱՂԻ ԱՊԱԳԱՆ՝ ԵՐԿՈՒ ԿԱՐԵԼԻՈՒԹԻՒՆՆԵՐ

հրաժարիլ ուժանիւթ ներմուծել տուեալ երկիրէ մը, ինչպէս այսօր Արեւմուտքը կը կատարէ Ռուսաստանի նկատմամբ: Վերջապէս, կրնայ սպառիլ նոյն ինքը կազը:

Ազրպէյճան քաջ կը գիտակցի այս ժամանակաւորութիւնը, զոր ներկայիս կը փորձէ օգտագործել առաւելագոյն չափով: Հայերս պէտք է վախնանք ժամանակաւորութենէն: Ժամանակաւորութեան ընթացքին շատ բաներ կրնան անդառնալիօրէն լուծուիլ ի նպաստ Ազրպէյճանին: Այս ժամանակաւորութեան արդիւնքն էր 44-օրեան, ինչպէս նաեւ անկէ բխած յետագայ պատերազմական ցնցումները՝ որոնց ընթացքին Ազրպէյճան գրաւեց Ղարաբաղի հայկական տարածքի եւ Հայաստանի ինքնավար տարածքի ռազմավարական դիրքեր ու բարձունքներ: Ժամանակաւոր վերելքին արդիւնքն է այսօրուայ Լաչինի միջանցքի փակումը եւ Ղարաբաղի ամբողջ ժողովուրդի մը շրջափակումը:

Կու գայ տրամաբանական հարցումը: Ղարաբաղի հարցով Ազրպէյճան մինչեւ ո՞ւր կրնայ հասցնել իր ներկայ բացարձակ առաւելութեան օգտագործումը: Առաւելագոյն պարագային, կրնայ Ղարաբաղը միացնել Ազրպէյճանին, որուն համար միջոցները չեն պակսիր: Զմոռնանք «Ղարաբաղը Ազրպէյճան է» վճռական յայտարարութիւնները: Պարզապէս, եթէ գալիք ժամանակները Ղարաբաղը չդարձնէ Ազրպէյճան, ոչ ոք կրնայ կռահել ինչ կրնայ պատահիլ 10-20-30 տարի ետք, եթէ փոխուին կազամատակարարումի աշխարհաքաղաքական պայմանները:

5. ՄԱԿ-ի բանաձեւերը կ'ընդունին Ղարաբաղը իբրեւ Ազրպէյճանի մաս: Յունուար 10-ի մամուլի ասուլիսին, վարչապետ Նիկոլ Փաշինեան կը յիշեցնէ այս կէտը. «Այսօր էլ, երէկ էլ ամբողջ միջազգային հանրութիւնը Լեռնային Ղարաբաղն ընկալել է որպէս Ադրբէջանի մաս: Փաստն այն է, որ մենք գուցէ նաեւ այդքան պրագմատիկ չենք գտնուել, երբ մեզ թուացել է, թէ ՄԱԿ ԱԽ չորս բանաձեւերը ուղղակի տեքստեր են՝ թղթի վրայ գրուած, որ մենք կարող ենք չնկատելու տալ... Ղարաբաղի հարցում մեր խօսոյթը, մեր ռազմավարութիւնները մէկը միւսին հակասել են: Եւ սա նոյնպէս բերել է որոշակի հետեւանքների»:

Փաշինեան յստակօրէն ըսել կ'ուզէ՝ որ կարելի չէ առաջնորդուիլ ցանկութիւններով, մինչ իրականութիւնը կը թելադրէ ուրիշ բան: Չի նշանակեր տեղի տալ ՄԱԿ-ի բանաձեւերուն, այլ կը նշանակէ գործել՝ իրազեկ ըլլալով անոնց գոյութեան: Փաստերու շրջանցումը եւ ցանկութիւններու բացարձակացումը եղած են 25 տարիներու հայկական (ոչ-) քաղաքականութեան հիմքը՝ ներառնելով Հայաստանն ու Սփիւռքը հաւասարապէս:

Յունուար 13, Երեւան, մամուլի համատեղ ասուլիս Ֆրանսայի եւ Հայաստանի խորհրդարաններու նախագահներ Եաէլ Պրաուն-Փիվէի եւ Ալէն Սիմոնեանի: Պրաուն-Փիվէ. «Ինչ կը վերաբերի Լեռնային Ղարաբաղի անկախութեան ճանաչումին, Ֆրանսայի դիրքորոշումը յայտնի է ձեզի: Այսօր Ֆրանսան չի ճանչնար այդ անկախութիւնը եւ ասիկա կը համապատասխանէ միջազգային օրէնքին, որուն մենք կ'ենթարկուինք»: Խաղը այն է՝ որ Ֆրանսան կը հանդիսանայ «միջազգային» օրէնքը կերտողներէն մէկը, եւ Պրաուն-Փիվէ այդ օրէնքին մասին կը խօսի իբրեւ արտաֆրանսական գոյութիւն՝ որուն մէջ Ֆրանսան ենթարկուող մըն է ընդամէնը:

Կը մնայ որ մենք՝ հայերս, ընդունինք բանաձեւերուն առկայութիւնը՝ փոխանակ զայն անտեսելու, եւ ըստ այնմ գործենք՝ զայն փոխելու, հակակշռելու կամ չէզոքացնելու ուղղութեամբ:

Եթէ Ղարաբաղը դառնայ Ազրպէյճան, վերջինս յաջողապէս ՄԱԿ-ի բանաձեւերը պիտի դարձնէ կենդանի գործօն՝ միջազգային հաւանութիւնը ստանալու համար:

6. Մինչ ՄԱԿ-ի յիշեալ բանաձեւերը դիւրութեամբ կրնան վերածուիլ քաղաքական աշխոյժ գործօնի՝ եթէ մինչեւ այսօր դեռ չեն վերածուած, մենք՝ հայերս, զբաղած ենք աշխարհի խորհրդարաններէն Ղարաբաղի ճանաչումը ընդունող բանաձեւեր կորզելով, ինչպէս տարիներ շարունակ ըրած ենք Ցեղասպանութեան ճանաչումին համար, որոնք բոլորն ալ մնացած են առանց ոչ մէկ գործնապաշտ հետեւանքի եւ երբեք չեն վերաճած, չէին ալ կրնար վերաճիլ, քաղաքական գործօնի: Մինչ Ազրպէյճան իր տնօրինութեան տակ ունի ՄԱԿ-ի բանաձեւերը՝ իբրեւ կենդանի գործօններ, մենք կ'ուզենք ունենալ խորհրդարաններու բանաձեւեր՝ իբրեւ անկենդան գործօններ:

7. Ղարաբաղի հայ բնակչութեան քանակը կը կազմէ 120 հազար անձ, ըստ հայկական պաշտօնական մարմիններու յայտարարութիւններուն: Ուռճացումի հայկական տարածուած սովորութիւնը նկատի առնելով, կը կասկածիմ այս թիւին վրայ: Թիւը աւելի ցած պէտք է ըլլայ: Բայց կարեւոր չէ: 120 հազարն ալ շատ քիչ է: Շատ քիչ է՝ ընդարձակ Ղարաբաղը հայկական պահելու համար: Բոլոր այն հայերը՝ որոնք Ղարաբաղը դարձուցած են իրենց հայրենասիրական պատումի հենքը (մամուլ, գրականութիւն, երգ-երգչախումբ, եւ այլն), Սփիւռքի աւանդական կուսակցութիւնները՝ որոնց համար ղարաբաղեան հայրենասիրութիւնը դարձած է սեփական գոյատեւումի միջոցներէն մէկը, պատրա՞ստ են տեղափոխուիլ ու հաստատուիլ Ղարաբաղ՝ բնակչութեան թիւը հասցնելով մէկ միլիոնի: 100 հազարի բռնագաղթումը Ազրպէյճանի կողմէ աւելի դիւրին է քան մէկ միլիոնի: Բայց ղարաբաղեան հայրենասէրներէն ոչ ոք պիտի գաղթէ այնտեղ, քանզի հայրենասիրութիւնն այսօր ստացած է տարօրինակ դարձուածք՝ «ես խօսիմ, ուրիշը գործադրէ», «ես քննադատեմ, ուրիշը գործէ», «ես չքանչան ստանամ, ուրիշը զոհուի անյիշարժան»:

1-7 կէտերը, թերեւս նաեւ ուրիշներ, բնաւ նպաստաւոր չեն յայտարարելու Ղարաբաղի հայկականութեան կայուն յարատեւութիւնը:

### ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՐՑԻ ՅԱՒԵՐԺԱՑՈՒՄԸ

Ղարաբաղի ազերիացումին կարելի է բերել հակափաստարկ մը, որ նոյնպէս նպաստաւոր չէ հայերուն: Այն է՝ որ Ղարաբաղի հարցը յաւերժ մնայ չլուծուած, կամ առաւելագոյն ժամանակով յետաձգուի լուծումը: Այսինքն, Ղարաբաղի հարցը մնայ կենդանի: Այս փաստարկը կարելի է համախմբել երկու հիմնական կէտերու շուրջ.

1. Ղարաբաղի հարցը շատ աւելի լայն է Հայաստան-Ազրպէյճան հակամարտութենէն: *Ջահակիր* բազմիցս գրած է՝ որ Ռուսաստան, Թուրքիա, Իսրայէլ եւ ուրիշներ մեծ նիւթական շահեր ունին Ղարաբաղի հարցէն, քանի որ այնտեղ ստեղծուած է զէնքի վաճառքի, փորձարկութեան եւ գործածութեան բացառիկ կարելիութիւն: Իսկ զինարտադրական ընկերութիւնները կը հանդիսանան աշխարհի ուժեղագոյն լոպպիսթական միաւորներէն մէկը: Միլիոնաւոր մարդիկ պէտք է սպաննուին, վիրաւորուին, տարագրուին, մնան անօթեւան՝ քանի մը ընկերութիւններու գլուխը գտնուող անձերու գերհարստացումին համար: Այս տրամաբանութեան մէջ, եթէ Ղարաբաղը դառնայ Ազրպէյճան՝ որ, ինչպէս տեսանք, համատեղելի է «միջազգային» օրէնքներուն, պիտի նշանակէ հարցի լուծում եւ զինաթափում: Եւ ճիշդ այս զինաթափումն է որ անհամատեղելի է ընկերութիւններու շահերուն եւ չգրուած օրէնքներուն: Չգրուած օրէնքը աւելի հզօր է քան գրուածը:

2. Իլհամ Ալիեւի ներքին հռետորաբանութեան հիմքը Ղարաբաղն է՝ որուն հիման վրայ ժողովուրդին մէջ յաջողած է սերմանել ծայր աստիճան հայատեացութիւն: Ղարաբաղի հարցը նաեւ իրեն առիթ տուած է ստեղծել մենատիրական-բռնապետական պետութիւն մը՝ միանձնեայ գերիշխանութեամբ: Սեպենք Ալիեւ յաղթանակեց եւ Ղարաբաղը դարձուց Ազրպէյճան: Ան կարճ ժամանակաշրջան մը պիտի տօնէ իր յաղթանակը, որմէ ետք, չունենալով գաղափարախօսային հռետորաբանութիւն, ժողովուրդը կրնայ արթննալ իր ձմեռնաքունէն, պահանջել ժողովրդավարութիւն, կեանքի բարելաւում, խօսքի ազատութիւն, որոնք պիտի խարխլեն մենիշխանութեան հիմքերը: Ղարաբաղի հարցի յարատեւութիւնը գործիք մըն է ալիեւեան ընտանիքի գոյատեւութեան:

3. Ինչո՞ւ 44-օրեան վերջացաւ Շուշիով, երբ Ազրպէյճան կրնար դիւրութեամբ գրաւել ամբողջ Ղարաբաղը եւ լուծել հարցը: Ռուսերը կ'ըսեն՝ շնորհիւ իրենց ջանքերուն: Շնորհիւ ռուսական ջանքերուն, անշուշտ, մտան ռուս խաղաղապահները, ընդարձակելով ռուսական ազդեցութեան տարածութիւնները: Բայց կայ նաեւ հիմնական կէտը, այն է՝ Ղարաբաղի հարցը կենդանի պահելու ձգտումը բոլոր խաղացող կողմերուն կողմէ, ներառեալ Ազրպէյճանի, որով բոլորն ալ «բաւարարուեցան» Շուշիով:

Ա.

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1933 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 9 ՓԵՏՐՈՒԱՐ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ.

عدد رقم ١٩٣٣ الخميس ٩ فبراير ٢٠٢٣


## ԵՄ ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ԿՈՒ ԳԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ՝ ՀԱԿԱՌԱԿ ՄՈՍԿՈՒԱՅԻ ԵՒ ՊԱՔՈՒԻ ԴԺԳՈՀՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ

**ԷՐԻՔ ՅԱԿՈԲԵԱՆ**

*Փետրուար 2-ին Սիվիլնէթ կը պատկերափոխէ քաղաքական մեկնաբան Էրիք Յակոբեանի շաբաթական անգլերէն հաղորդումը՝ ‘Insights with Eric Hagopian’, զոր թարգմանելով կը ներկայացնենք մեր ընթերցողներուն:*

Ջ.

### ԱՐՑԱԽԻ ՇՐՋԱՓԱԿՈՒՄ

Արցախի շրջափակումը անցաւ իր 50-օրեայ սահմանագիծը: Վիճակը օրէ օր կը դառնայ աւելի օրհասական՝ մարդիկ անկարող ըլլալով հոգալ իրենց առօրեայ կարիքները:

Կարմիր Խաչի միջազգային յանձնախումբը կազմակերպեց ընտանիքներու վերամիաւորում: Անոր օգնութեամբ, Եւրատեսիլէն ի վեր Հայաստանի կողմը մնացած խումբ մը երեխաներ վերադարձան Արցախ, իրենց ընտանիքներուն մօտ:

Այս շաբաթ, Արդարադատութեան Միջազգային Դատարանը, որ ՄԱԿ-ի գլխաւոր դատարանն է, լսեց Հայաստանի գործը Ալիեւի վարչակարգի դէմ՝ Արցախի անօրինական շրջափակումին համար միջանկեալ միջոցներ կիրարկելու վերաբերեալ: Հայաստանի հարցը՝ որ բաւական ուժեղ է, շատ լաւ ներկայացուեցաւ Հայաստանի իրաւաբանական խումբին կողմէ, ճշդօրէն արձանագրելով՝ որ այդ գործողութիւնները ունին խտրական եւ ցեղապաշտական-էթնիքական հիմքեր, եւ շատ յստակ դարձնելով՝ որ Ալիեւի նպատակն ու վերջնական նշանակէտն է ցեղային զտումը եւ ոչ այլ բան: Ապա դատարանը քննեց հակաթէզը՝ Ալիեւի վարչակարգին կողմէ յարուցուած հայցը, որ շատ անլուրջ էր: Ան Հայաստանին կը մեղադրէր Լաչինի միջանցքով ականներ փոխադրելու մէջ: Հասկնալու համար անհեթեթութեան աստիճանը, պէտք է նկատի առնել Ազրպէյճանի հայցին հիմքը, ըստ որուն Հայաստանը ականներ կը տեղադրէ *իր կողմէ չվերահսկուող* տարածքի վրայ:

### ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՅԱՅՏԱՐԱՐԱԾ ՊԻՒՏՃԷՆ

Հայաստանի կառավարութեան յայտարարած 2023 թուականի պիւտճէն կը կազմէ 6,6 միլիառ տոլլար: Համեմատութեան համար նշենք՝ որ 2018-ի պիւտճէն կը կազմէր 3,8 միլիառ տոլլար: Այս թիւերը հասկնալու համար պէտք է նկատի ունենալ 2022 թուականի տոլլարի փոխարժէքը: 2018 եւ 2022 թուականներու պիւտճէներուն թիւերը մասամբ աճած են տոլլարի նկատմամբ դրամի արժեւորումի հետեւանքով, քանի որ անցեալ տարի, չափազանց մեծ քանակութեամբ տոլլարի մուտքի պատճառով արժեւորուեցաւ դրամը, մէկ տոլլարը մօտաւորապէս 500 դրամէն իջնելով ու տատանուելով 400 տոլլարի սահմաններուն մէջ:

Պիւտճէի այս աճը հիմնականապէս պայմանաւորուած է երկու գործօններով.

Ա. Վերջին քանի մը տարիներու շատ ուժեղ տնտեսական աճը, բացառութեամբ 2020-ին՝ որ Քովիտի եւ պատերազմի տարի էր:

Բ. Տուրքերու շատ աւելի լաւ հաւաքագրութիւնը, քանի որ բազմաթիւ անձեր՝ որոնք նախկին օլիկարքական տնտեսական համակարգին մէջ չէին վճարեր իրենց տուրքերը, այժմ սկսած են վճարել, կտրուկ կերպով աւելցնելով մեր պիւտճէն:

Այստեղ ինծի համար ամենակարեւոր կէտերէն մէկն է ռազմական ծախսերը, որոնք անցեալ տարուայ համեմատութեամբ աճած են 110%-ով: Այս տարուայ ռազմական պիւտճէն կը կազմէ մէկ միլիառ 280 միլիոն տոլլար, որ կը ներկայացնէ ՀՆԱ-ի շուրջ 27%-ը: Ասիկա տեսակ մը չափորոշիչ է՝ թէ դուք աշխարհի որ մասը կը գտնուիք: Զարգացած աշխարհի չափանիշերով՝ ասիկա ցած թիւ է, քանի որ արեւմտեան երկիրներու մեծ մասին մէջ, յատկապէս եւրոպական երկիրներու, պիւտճէն կը տատանուի ՀՆԱ-ի 35-50%-ի սահմաններուն մէջ: Բայց ասիկա նաեւ ցոյց կու տայ՝ որ մենք կը շարժինք ճիշդ ուղղութեամբ:

Երէկ [1 Փետրուար] հրապարակուեցաւ ուրիշ տնտեսական նորութիւն մը՝ որ բաւական հետաքրքրական էր ու խօսուն: Անցեալ տարի, սեփական հատուածի (private sector) աշխատավարձքը աճած է շուրջ 25%-ով: Ասոր մէկ մասը պայմանաւորուած է այն հանգամանքով՝ որ մենք ունինք գնաճ 8%-ի սահմաններուն մէջ, թէեւ կը կարծեմ, ինչպէս ամենուր, գնաճը թերագնահատուած է, եւ հաւանաբար շատ աւելի բարձր է: Բայց, ամէն պարագայի, կը կարծեմ որ ունինք սեփական հատուածի աշխատավարձքի աճ, որ կը բարձրանայ գնաճէն աւելի արագ քայլերով եւ ունի կենսամակարդակի բարձրացումի հանգամանք:

Հիմա եկէք դիտարկենք այս բոլորը թիւերը: Ակնյայտ է, որ մեծ պիւտճէ ունենալը եւ տնտեսական աճը լաւ բաներ են: Բայց մենք պէտք է զանոնք դիտարկենք համեմատութեան մէջ: Մեր այսօրուայ աճը պէտք էր ունեցած ըլլայինք տասը տարի առաջ: Աւելի քան 6 միլիառ տոլլարի պիւտճէն՝ զոր ունինք այսօր, պէտք էր ունենայինք տասը տարի առաջ: Աւելի քան միլիառ տոլլարի ռազմական պիւտճէն՝ զոր ունինք այսօր, պէտք էր ունենայինք տասը տարի առաջ: Իսկ իրական եւ շօշափելի յառաջընթացը՝ զոր այսօր կ՚արձանագրենք տնտեսական ճակատին վրայ, պէտք էր ունենայինք տասը տարի առաջ:

Գիտեմ որ ձեզմէ ոմանք պիտի մտածեն՝ թէ ինչո՞ւ այս բաներուն մասին կը խօսիմ, երբ Արցախի մէջ պաշտպանութեան եւ այլ հարցերու շուրջ գոյաբանական խնդիրներ ունինք: Ըսեմ՝ թէ ասոնք կապուած են իրարու, քանի որ, ի վերջոյ, երկիրի մը հզօրութիւնը կը բխի իր տնտեսական հեռանկարներէն: Արցախն ու իր սահմանները նման իրավիճակի առջեւ յայտնուած են բազմաթիւ պատճառներով, որոնց համար շատերն են յանցաւոր: Նախ եւ առաջ մենք երբեք չենք ստեղծած պատշաճ տնտեսութիւն, պատշաճ պետութիւն եւ պատճաշ պաշտպանական համակարգ՝ որ կարողանար պաշտպանել Արցախի եւ Հայաստանի ժողովուրդը: Ի վերջոյ, եթէ չես ուզեր ուկար ըլլալ՝ մի ըլլար աղքատ:

### ԵՄ ԴԻՏՈՐԴԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐՈՒՆ ՎՐԱՅ

Յունուար 30-ին յայտարարուեցաւ ↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԵԳԻՊՏՈՍԻ ՆԱԽԱԳԱՀ ԱՊՏԷԼ ՖԱԹԹԱՀ ԱԼ-ՍԻՍԻԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ԱԶԸՐՊԷՅՃԱՆ



Յունուար 27-ին, երկօրեայ պաշտօնական այցելութեամբ, Եգիպտոսի նախագահ Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսի կը ժամանէ Պաքու:

Ազրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւի հետ ունեցած բանակցութիւններու աւարտին, Յունուար 28-ին երկու երկիրներուն միջեւ կը ստորագրուին առեւտուրի, արդիւնաբերութեան, ջրային աղբիւրներու կառավարումի եւ մշակոյթի ոլորտներու համագործակցութեան յուշագիրներ:

Եգիպտոսի նախագահը Յունուար 28-ին երկօրեայ պաշտօնական այցելութեամբ կը ժամանէ Երեւան: Զուարթնոց օդակայանին մէջ զինքը կը դիմաւորեն Հայաստանի փոխվարչապետ Տիգրան Խաչատրեան, նախագահի աշխատակազմի ղեկավարի պարտականութիւնները կատարող Խաչատուր Պօղոսեան եւ պաշտօնատար անձեր:

Յունուար 29-ին, Հայաստանի նախագահի նստավայրին մէջ, նախագահներ Վահագն Խաչատուրեան եւ Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսի կ՚ունենան առանձնազրոյց, որուն կը յաջորդէ երկու երկիրներու պատուիրակութիւններու մասնակցութեամբ ընդլայնուած կազմով հանդիպում: Ապա երկու նախագահները հանդէս կու գան մամուլի համար յայտարարութեամբ, ուր Հայաստանի նախագահը մասնաւորապէս կը նշէ. ↳ 2

## ԻՍՐԱՅԷԼԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐԸ ԶՐՈՒՑԵԼ Է ԱԴՐԲԷՋԱՆՑԻ ՍԱՀՄԱՆԱՊԱՀՆԵՐԻ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ ՀԵՏ

Փետրուարի 1-ին կայացել է Իսրայէլի պաշտպանութեան նախարար Եօաւ Գալանտի հեռախօսազրոյցը Ադրբէջանի պետական սահմանապահ ծառայութեան տնօրէն Էլչին Գուլիեւի հետ: Այս մասին հաղորդում է Թուրան գործակալութիւնը՝ տեղեկացնելով, որ իսրայէլցի նախարարի եւ ադրբէջանցի սահմանապահների հրամանատարի հեռախօսազրոյցի ընթացքում քննարկուել են «անվտանգութեան ոլորտում երկկողմ համագործակցութեանը, սահմանային անվտանգութեանն ու տարածաշրջանային խնդիրներին վերաբերող մի շարք թեմաներ»:

Նոյն օրը աւելի վաղ յայտնի էր դարձել, որ Իսրայէլի պաշտպանութեան նախարարը հեռախօսով զրուցել է նաեւ իր ադրբէջանցի պաշտօնակից Զաքիր Հասանովի հետ: Հեռախօսազրոյցը կայացել էր իսրայէլական կողմի նախաձեռնութեամբ:

# ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Գահիրէի Առաջնորդարան**

Նոյեմբեր 16, Գահիրէի Ազգային Առաջնորդարանը կ՚ընդունի Անդրանիկն ու հետեւորդները:

Առաջնորդ Թորգոմ Գուշակեանի ճառէն ետք, շուրջ կէս ժամ ելոյթ կ՚ունենայ հիւրը:

*Յուսաբերի* անանուն թղթակիցը բաւարարուած է Անդրանիկի ելոյթէն, գրելով որ՝ «ես տեսայ որ Հայութեան Յեղափոխական հնոցին մէջ կրթուած ոգին էր որ, այս անգամ, առողջ դատողութիւններով, դուրս կը պոռթկար Զօրավարին բերնէն»(21):

Թղթակիցը «ընդհանուր գիծերու մէջ» (իր բառերն են) կը ներկայացնէ Զօրավարին խօսքը.

«Հայաստանէն անցայ Եւրոպա, Ամերիկա, Իզմիր եւ Եգիպտոս: Տեսայ Հայութիւն ամէն տեղ, այդ Հայութիւնը բաժնուած է դաւանութիւններու եւ կուսակցութիւններու, որոնք ունին զանազան գաղափարներ. գլխաւորաբար՝ կը խօսին, գործը եթէ ո՛չ բոլորովին պակաս, շատ թերի է: Արտասահմանի Հայութեան մէկ մասը կը փափաքի որ անկախ ըլլայ Կիլիկիան, ոմանք պատմական Մեծ Հայաստանը կ՚ուզեն առանց այլ եւ այլի, Կեսարացին ալ կը յայտարարէ թէ Կեսարիան ալ պէտք է մաս կազմէ անկախ Հայաստանի. բայց ի՞նչպէս եւ ինչո՞վ: Այս կէտերու վրայ մտածութիւնը կը պակսի: Համաշխարհային թոհուբոհէն աներեւակայելի զոհողութիւններով դուրս եկող փոքրիկ Հայութիւնը կարո՞ղ է օրուան խնդիր նկատել այս բաղձանքները: Ունինք փոքրիկ Հանրապետութիւն մը, պէտք է զոհողութեան մեծագոյն չափով օժանդակենք՝ որպէսզի անիկա զօրանայ եւ իր ուժերու համեմատութեամբ նորանոր նուաճումներ ընէ:

«Այս օրերուն բերանս անգամ չէր բացուեր խօսելու. ստացուած հեռագիրները վիրաւորած էին զիս խորապէս: Բայց ահա հասան փոքր ինչ յուսատու լուրեր. — Հայը զինադադար կը կնքէ Ռուսերու եւ Թուրքերու հետ, ուրեմն իր պետական գոյութիւնը վտանգուած չէ: Յոյս ունիմ որ Հայութիւնը այս փորձանքն ալ պիտի կրնայ յաջողութեամբ անցնել: Մենք Ռուսերու դէմ ոչինչ ունինք, պօլշեւիկ զինուորները կը սիրեն Հայերը. անոնք հայ գաղթականներու զաւակները իրենց գիրկն առած օրերով փոխադրած են: Իսկ մեզի կը մնայ մեր մեծագոյն կարելին ի գործ դնել եւ պատրաստ ըլլալ վաղուան»:

Բաւական յղկուած վերարտադրութիւն մը կը թուի ըլլալ Անդրանիկի խօսքերուն: Հոկտեմբեր 26-ի եւ Նոյեմբեր 14-ի ելոյթներէն շատ աւելի մեղմ: Փոխուեցա՞ւ յանկարծ Անդրանիկ: Հազիւ թէ: Հոկտեմբեր 26-ն ու Նոյեմբեր 14-ը կը ներկայացնէին իր իրական դէմքը, եթէ նկատի առնենք անոնց նախորդող եւ յաջորդող այլուր արտասանած խօսքերն ու արտայայտած միտքերը: Հեռուները չերթալու համար կը բաւէ յիշենք Եգիպտոսէն անմիջապէս առաջ կատարած այցելութիւնը Իզմիր, ուր, ինչպէս կ՚երեւի *Արեւելեան մամուլի* առաջնորդող յօդուածէն, Զօրավարը կը գտնուէր միեւնոյն մռայլ հոգեվիճակին մէջ.

«Անդրանիկի ակնարկին մէջ կ՚ամփոփուի ամբողջ երեսուն տարուան մարտիրոսագրութեան մը պատմութիւնը, անոր հեգնանքի թեթեւ ժպիտին մէջ կը խտանայ մեր ցեղին ղեկավարներուն հին եւ մօտաւոր անցեալին մէջ գործած ահաւոր ու անհանդուրժելի սխալներն եւ վիժումներուն բոլոր պատմութիւնը:

«Զօր. Անդրանիկի անդնդային սիրտին վրայ ծռելու փորձ մը ընել, անոր յատակը կուտակուած մաղձին քանակը ու որակը նշմարելու համար, գլխու պտոյտ պիտի պատճառէր, եւ միեւնոյն ժամանակ յուսահատութենէ ու բարոյալքումէ մը պիտի պաշարուէր ամենէ անբիծ եւ աննենգ հոգին: [...]

«Զօրավարին պլեկոծ հոգիին մէջ խորասուզուիլ եթէ փորձուէր, հոն պիտի նշմարէինք անսահման մելամաղձոտութեան մը բոլոր կուտակուած ժահրը, այդ ճշմարիտ պայծառատես հերոսը, ամենէ տաք, ամենէ ոգեւորեալ խօսակցութեան մը պահուն, յանկարծ կանգ կ՚առնէ, կ՚ընդմիջուի, եւ կարծես միայնակ ըլլար, կը զգենու մելամաղձոտ ու ցաւատանջ արտայայտութիւն մը, կը խորասուզուի խոր մտածումներու մէջ եւ իր երեւակայութեան թռիչ տալով անշուշտ կը սկսի դեգերիլ հեռաւոր հորիզոններ, Հայաստանի այն բոլոր կարեւոր ռազմաճակատներուն վրայ, ուր ինք եւ իր զինակիցները գտնուած են [...]»(22):

Նմանատիպ մօտեցում կը բացայայտէ նաեւ քանի մը ամիս ետք Փարիզի մէջ տպագրուած գրքոյկը՝ *Զօր. Անդրանիկ կը խօսի* (1921):

Յօդուածիս նպատակէն դուրս է Անդրանիկի ինքնաբուխ գաղափարներուն քննարկումը: Նպատակս է պարզապէս ցոյց տալ, գաղափարական մեղմացումէն զատ, քննախօսի ոճական միջամտութիւնը՝ որ թերեւս աւելի ցայտուն կը դառնայ հետեւեալ պարբերութեան մէջ, ուր Անդրանիկի խօսքը ներկայացուած է ռուսահայ-թրքահայ կտրուկ հակադրութեան բնաբանին մէջ: Այսպէս, ըստ քննախօսին, իր խօսքին մէջ Անդրանիկ ըսած է. «Առաջինը [ռուսահայը, Հ.Ա.] կռուող է, երկրորդը [թրքահայը, Հ.Ա.] փախչող, առաջինը զոհող է, երկրորդը՝ խուսափող. եթէ թրքահայը կռուէր՝ ոչնչացումի վախճանին չը պիտի ենթարկուէր. եթէ գոնէ վառելով, այսինքն քիչ մը կազով իր ետին թողածները բռնկցնելով փախչիլ գիտնար, Թուրքը չորս տարի պատերազմ չը պիտի կարողանար մղել: Ռուսահայը իր գերագոյն ճիգը թափեց եւ աննկարագրելի զոհողութիւններով Հայաստանը կանգնեց, որ այսօր թէեւ փոքր է եւ թշուառ, բայց մեծ յոյս ունիմ որ ընդհանուր Հայութեան ջանքերով, նոր նուաճումներով պիտի կարողանայ բաղձալի վիճակի մը տիրանալ»(23):

*Արեւի* մէջ հրատարակած պատասխան գրութեան մէջ Անդրանիկ վճռականապէս կը հերքէ այս խօսքերը ըսած ըլլալ.

«Իմ խօսակցութեանս միջոցին երբեք նպատակ կամ դիտաւորութիւն չունեցայ Հայութեան երկու հատուածներուն (Թրքահայ եւ Ռուսահայ) մարտական արժէքներուն բաղդատութիւնը ընել: Անուրանալի է թէ այդպիսի բաղդատութեան մը արդիւնքը ի նպաստ *Թրքահայուն* պիտի ըլլար: Ես մատնանշեցի Ուրֆա, Սասուն, Մուշ, Շապին Գարահիսար, Վան եւայլն, որոնք դիւցազնօրէն կռուեցան, մեռուցին ու մեռան, եւ ցաւ յայտնեցի որ ուրիշ քաղաքներու Հայեր միեւնոյն ճամբուն չհետեւեցան: Երբեք չըսի թէ Թրքահայերը կռուելու քաջութենէն զուրկ լոկ փախչողներ եղած են: Այդ տեսակ սխալ տեղեկատուութիւն մը բարոյազուրկ գրչի արդիւնք է միայն»(24):

Անդրանիկ յօդուածագիրին անուանելով «բարոյազուրկ», քիչ մը վարը նաեւ՝ «անբարեխիղճ», կ՚արտացոլէ իր եւ Դաշնակցութեան միջեւ եղած խորքային խզումը:

Իր կողմէ աւելցնելով խմբագրական ծանօթագրութիւն մը (Ծ. Խ.), *Արեւ* ալ աւելի կը սրէ երեւոյթը:

**Վերադարձ Աղեքսանդրիա**

Ընդամէնը քանի մը օր Գահիրէ մնալէ ետք, Նոյեմբեր 17-ին կը վերադառնայ Աղեքսանդրիա(25):

**Հայկ Պօնաբարթեանի բանախօսութիւնը**

Նոյեմբեր 27, Աղեքսանդրիոյ Հայ Ակումբի սրահին մէջ տեղի կ՚ունենայ Անդրանիկին ուղեկցող Հայկ Պօնաբարթեանի բանախօսութիւնը: Ան «կարկառուն գծերով ներկայացուց պատերազմի հինգ տարուան ընթացքին հայ կամաւորական գունդերու մատուցած անգնահատելի ծառայութիւնները ի նպաստ տարագիր Հայերու փրկութեան եւ ազգային դատին, տիրող հոգեբանական տարբերութիւնները Հայութեան երկու գլխաւոր հատուածներու ներկայացուցիչներու եւ այն դրդապատճառները, որոնք, ստեղծուած ներքին էնթրիկներէ, հարկադրեցին թրքական հաշտութիւնը եւ վերջնապէս կազմալուծեցին կամաւորական գունդերը»: Որմէ ետք վեր կը հանէ Անդրանիկի գերագոյն անձնուրացութիւնը՝ շեշտելով այդ ոգիին կարեւութիւնը հայրենիքի փրկութեան համար(26):

(Շար. 3)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

21. Ներկայ մը, «Զօր. Անդրանիկ Գահիրէի Ազգ. Առաջնորդարանին մէջ», *Յուսաբեր*, Գահիրէ, 20 Նոյեմբեր 1920, Զ. տարի, թիւ 100, էջ 3:

22. Հ[րանտ] Մ[ամուրեան], «Զօրավար Անդրանիկ», *Արեւելեան մամուլ*, 22 Հոկտեմբեր 1920, 41-րդ տարի, թիւ 2380, էջ 1:

23. Ներկայ մը, «Զօր. Անդրանիկ Գահիրէի Ազգ. Առաջնորդարանին մէջ», *Յուսաբեր*, 20 Նոյեմբեր 1920, Զ. տարի, թիւ 100, էջ 3:

24. Անդրանիկ, «Հերքում», *Արեւ*, 24 Նոյեմբեր 1920, Զ. տարի, թիւ 85 (845), էջ 3:

25. «Զօրավար Անդրանիկի վերադարձը», *Արեւ*, 22 Նոյեմբեր 1920, Զ. տարի, թիւ 84 (844), էջ 3:

26. «Հայ Ակումբի երեկոյթը», *Արեւ*, 29 Նոյեմբեր 1920, Զ. տարի, թիւ 87 (847), էջ 3:

## ԵԳԻՊՏՈՍԻ ՆԱԽԱԳԱՀ ԱՊՏԷԼ ՖԱԹԹԱՀ ԱԼ-ՍԻՍԻԻ...

1

«Արդիւնաւէտ եմ գնահատում իմ գործընկերոջ՝ նախագահ Աբդէլ Ֆաթթահ Ալ-Սիսիի հետ ունեցած բանակցութիւնները, որոնց ընթացքում քննարկեցինք մեր երկու պետութիւնների միջեւ այս տարիների ընթացքում ձեւաւորուած համագործակցութեան լայն շրջանակը, այսօրեական ծրագրերը եւ երկկողմ յարաբերութիւնների զարգացման յետագայ անելիքները: Գոհունակութեամբ պէտք է նշեմ, որ այսօր Հայաստանը եւ Եգիպտոսը արդիւնաւէտ համագործակցում են քաղաքական, տնտեսական, գիտական, կրթական, մշակութային, զբօսաշրջային եւ այլ բնագաւառներում:

«Արդիւնաւէտ համագործակցութիւն է ձեւաւորուել նաեւ մի շարք բազմակողմ հարթակներում: Իհարկէ, երկկողմ առեւտրաշրջանառութեան ծաւալները դեռ գոհացուցիչ չեն, սակայն վստահ եմ, որ քաղաքական լայն օրակարգը, ինչպէս նաեւ երկու երկրների ղեկավարութիւնների գործադրուելիք համատեղ ջանքերի շնորհիւ առաջիկայում փոխշահաւէտ համագործակցութեան օրակարգն էլ աւելի կը խորացուի եւ մենք արդիւնքներ կը գրանցենք նաեւ թէ՛ առեւտրատնտեսական փոխանակման, թէ՛ մի շարք այլ բնագաւառներում:

«Աւելին՝ նշմարւում են համագործակցութեան նոր հեռանկարներ: Մեր երկրների միջեւ ստորագրուել են համագործակցութեան հինգ տասնեակից աւելի փաստաթղթեր: Այցի շրջանակներում նաեւ ստորագրուեցին շատ այլ փաստաթղթեր, որոնք սկիզբ կը դնեն նոր հետաքրքիր նախաձեռնութիւնների»:

Նոյն օրը կը հանդիպին նաեւ Հայաստանի եւ Եգիպտոսի Արտաքին Գործոց Նախարարներ Արարատ Միրզոյեան եւ Սամէհ Շոքրի, քննարկելով միջազգային եւ տարածաշրջանային ապահովութեան եւ կայունութեան հարցեր:

Յունուար 29-ին, Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան կառավարութեան շէնքին մէջ կը հիւրընկալէ Եգիպտոսի նախագահը: Նախ՝ առանձնազրոյց, ապա՝ բանակցութիւններ ընդլայնուած կազմերով:

Ընդլայնուած հանդիպումին Փաշինեան կը նշէ՝ որ կարեւոր զրոյց տեղի ունեցաւ Եգիպտոսի նախագահին հետ եւ քննարկուեցան երկկողմ ու տարածաշրջանային օրակարգի բազմաթիւ հարցեր: Փաշինեան կը ներկայացնէ Ազրպէյճանի կողմէ Լաչինի միջանցքի շրջափակումին հետեւանքով Արցախի մէջ ստեղծուած մարդասիրական ճգնաժամի յաղթահարումին ուղղութեամբ իրականացուող քայլերը: Վարչապետը նաեւ կ՚ընդգծէ Ազրպէյճանի կողմէ 2020 Նոյեմբեր 9-ի յայտարարութեան յաջորդական խախտումին փաստը եւ կը շեշտէ միջազգային հանրութեան ուշադրութեան ու համարժէք արձագանգին կարեւորութիւնը, աւելցնելով. «Եգիպտոսը մեզ համար վստահելի գործընկեր է նաեւ իսլամական աշխարհի հետ մեր յարաբերութիւններում եւ խօսակցութեան մէջ: Մեր այս յարաբերութիւնները, մեր այս ջերմութիւնն ի ցոյց է դնում նաեւ իսլամական աշխարհի եւ քաղաքակրթութեան նկատմամբ մեր վերաբերմունքը, մեր յարգանքը»:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹԻՒՆՆ ՈՒ ՌՈՒՍ ԽԱՂԱՂԱՊԱՀՆԵՐՆ ԱՆՀԱՄԱՏԵՂԵԼԻ ԵՆ

### ՄԱՐԻԱՄ ԳՐԻԳՈՐԵԱՆ

Հայկական լրատուամիջոցները տեւական ժամանակ է ահազանգում են Արցախում տեղակայուած ռուս խաղաղապահների կոռուպցիոն գործարքների մասին: Մասնաւորապէս նշւում է, որ որոշ խաղաղապահներ սկսել են հարստանալ Արցախի ողբերգութեան հաշուին, բեռների մի մասը տեղափոխում են համապատասխան վճարի դիմաց: Ընդ որում, խօսքը բաւականին մեծ գումարների մասին է՝ մէկ ֆուռ տեղափոխելու համար մինչեւ հազար դոլար փող են վերցնում հայերից՝ տնտեսվարողներ, բարերարներ, մարդիկ, ովքեր փորձում են արցախցիներին առաջին անհրաժեշտութեան ապրանքներ հասցնել: Գումարի չափը տարբեր դէպքերում տարբեր է՝ 20 հազար դրամից մինչեւ մի քանի հարիւր հազար դրամ՝ կախուած ապրանքների գնից ու քանակից:

Իրաւապաշտպան, Հելսինկեան Քաղաքացիական Ասամբլեայի Վանաձորի գրասենեակի ղեկավար Արթուր Սաքունցի խօսքերով՝ բոլորովին էլ զարմանալի չէ, որ ռուս խաղաղապահները զբաղւում են կոռուպցիայով. «Եթէ ամբողջ պետութիւնն ընկղմուած է կոռուպցիայի մէջ՝ ես այստեղ զարմանալի ոչինչ չեմ տեսնում: Կարող եմ բազմաթիւ օրինակներ բերել, որտեղ ռուսները նմանատիպ գործառոյթներ են իրականացնում՝ ինչ խայտառակ իրավիճակ է. նոյն Ջեչնիայում, Աբխազիայում, Հարաւային Օսիայում, կամ թէկուզ հէնց ռուսական ռազմաբազայի հետ կապուած՝ հրամանատարութիւնը տեղական կոռումպացուածների հետ ինչ գործառոյթների մէջ էր գտնւում: Ամբողջ խնդիրն այն է, որ հերթական անգամ մենք ունենք մի իրավիճակ, երբ Հայաստանի իշխանութեան կողմից բացարձակապէս չկայ վերահսկողութեան որեւէ մեխանիզմ թէ՛ ռուսական ռազմաբազայի գործունէութեան նկատմամբ (չնայած պայմանագրով նշուած է՝ որ դէպքերում ով է քրէական գործ յարուցելու), առաւել եւս՝ հէնց ռուս խաղաղապահների հետ կապուած՝ չկայ վերահսկողութեան որեւէ մեխանիզմ»:

Ըստ մեր զրուցակցի՝ խնդիրն այն է, որ նոյնիսկ եթէ լինէր, արդեօք դա երաշխիք էր, որ հնարաւոր է այդ մեխանիզմներն աշխատացնել. «Իհարկէ սա լուրջ մարտահրաւէր է եւ կոռուպցիոն նմանատիպ դրսեւորումներն անվտանգութեան թիւ մէկ սպառնալիքներից մէկն է: Այսինքն՝ ռուս խաղաղապահները ոչ թէ անվտանգութեան երաշխաւոր են, որը նիւթական առումով էլ չեն իրականացնում, ճանապարհը փակ է, այլ նաեւ վտանգ են ներկայացնում ընդհանրապէս իրաւական, անվտանգութեան, օրէնքի սկզբունքների հետ կապուած»:

↳ 4

## ՀԱՅ-ՌՈՒՍԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵԱՆ ԱՊԱԳԱՆ

### ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

Հայաստանում պարբերաբար է հնչում հարցադրում, թէ ինչպիսին է լինելու հայ-ռուսական յարաբերութիւնների ապագան: Այդ հարցադրմանը պատասխանելու փորձն այսօր անիմաստ է, որովհետեւ դրան պատասխանելու համար պէտք է գիտենալ, թէ ինչպիսին է լինելու Ռուսաստանի ապագան՝ առնուազն: Ես էլ չեմ խօսում իհարկէ Հայաստանի ապագայի մասին: Եւ խնդիրը իհարկէ այստեղ լաւ ու վատը չէ, այսինքն լաւն է լինելու այդ ապագան, թէ վատը, ժողովրդավարակա՞ն, թէ՞ ամբողջատիրական, եւ այլն, եւ այլն: Պէտք է հասկանալ այդ ապագայի բովանդակութիւնը, տնտեսական, քաղաքական, հասարակարգային, արժեհամակարգային, մշակութային եւ այլն: Այդ հարցերի պատասխանը այսօր լինել չի կարող: Հայաստանը պէտք է որոնի դրանք եւ պատրաստուի:

Դա նշանակում է, որ Հայաստանը պէտք է կատարի այդ պատասխանները գտնելուն ուղղուած հետեւողական ու երկարատեւ հետազօտական, վերլուծական աշխատանք, մշակումներ, որոնք թոյլ կը տան կազմել տարբեր սցենարներ եւ պատրաստ լինել Ռուսաստանում այս կամ այն իրավիճակին: Իսկ իրավիճակը Ռուսաստանում իհարկէ փոխուելու է: Ուկրաինական պատերազմը չի կարող փոխել իրավիճակը Ռուսաստանում: Բայց ինչպէ՞ս, ահա սա է խնդիրը: Եւ այդ հարցի պատասխանը նոյնիսկ Ռուսաստանում այսօր ունի թերեւս մի քանի անձ, ընդ որում ամենեւին չերաշխաւորուած, «չապահովագրուած» պատասխան, որովհետեւ դա էլ իր հերթին կախուած չէ միայն Ռուսաստանից, այլ նաեւ արտաքին դերակատարների հետ կապուած մի շարք գործօններից՝ Չինաստանից մինչեւ Միացեալ Նահանգներ եւ այդ «արանքում» եղած բազմաթիւ այլ դերակատարներ:

Հայաստանի մասով, թէ հայ-ռուսական, թէ որեւէ այլ ուղղութեամբ յարաբերութեան ապագան կախուած է Հայաստանի ներքին որակներից, կառավարման ինստիտուցիոնալ արդիւնաւէտութիւնից եւ հասարակական համակեցութեան կայուն միջավայր ապահովող այլ ինստիտուցիոնալ ու արժեհամակարգային իրողութիւններից: Ընդհանրապէս, աքսիոմատիկ է թերեւս այն, որ Հայաստանի արտաքին որեւէ յարաբերութիւն կախուած է լինելու Հայաստանի ներքին որակներից: Դրանք են ապահովելու այն ճկունութիւնը, ընդ որում ինստիտուցիոնալ ճկունութիւնը, որ Հայաստանին պէտք է լինելու տարբեր խոշոր դերակատարների հետ յարաբերութիւն կառուցելու համար, քանի որ այդ դերակատարները էապէս տարբեր են իրենց բնոյթով ու տրամաբանութեամբ, իրենց ոճերով, իրենց յաւակնութիւններով եւ աշխարհընկալումներով:

ԽՈՀԵՐ

## ԵՐԲ ԽԱՐԴԱՒԱՆԱՆՔԸ ԿԸ ԴԱՌՆԱՅ ՀԱՄՈԶՈՒՄ

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Դրամատիրութիւնը փոխեց ամբողջ մտածողութիւն մը՝ որ դարձաւ համակարգային ոչ միայն դրամի եւ տնտեսութեան, այլ արուեստի եւ մշակոյթի լայն բնագաւառներուն համար, մտնելով առօրեայ խօսակցութեան եւ միքրօ հաղորդակցութեան ոլորտ: Այս առումով, Քարլ Մարքս շատոնց արդէն ամէն բան բացատրած է: *Ջահակիր* բազմիցս անդրադարձած է մարքսեան տեսութիւններուն եւ փիլիսոփայութեան: Կայ նաեւ հսկայ գրականութիւն այս հարցերուն շուրջ: Պիտի չխորանամ: Բաւարարուիմ խորագիրին մէջ ընդգրկուած նիւթին ուրուագծումով:

Գրութեանս բնաբանն է երկու անհամատեղելի հասկացողութիւններու արհեստական համատեղելիութիւնը դրամատիրական մտածողութեան մէջ՝ աչքաբացութիւնը եւ անկեղծութիւն-պարկեշտութիւնը:

Դպրոցական դասագիրքերը մեզի կը սորվեցնեն անկեղծութիւն եւ պարկեշտութիւն, իրական կեանքը կը սորվեցնէ՝ աչքաբացութիւն: Աչքաբացութիւն՝ որուն համար կարելի է ոտնակոխ ընել բոլոր արժէքները՝ ներառեալ անկեղծութիւնն ու պարկեշտութիւնը: Իրականութիւնը կը դառնայ աչքաբացութիւնը:

Դրամատիրութեան մէջ ապրանքը պէտք է ծախուի՝ որքան կարելի է շատ քանակութեամբ, որքան կարելի է սուղ գինով: Ասոր համար դրամատէրը կը գործածէ զանազան միջոցներ, օրինակ.

ա. Միջնորդավաճառը (salesman), որուն պարտականութիւնն է դրամատիրոջ ապրանքը վաճառել գնորդին, օգտագործելով իր տիրապետած լեզուական բոլոր հնարաւորութիւնները՝ գովաբանելով, գեղեցկացնելով, փայլեցնելով, բազմապատկելով ապրանքին արժանիքները: Լեզու՝ որուն ընձեռած անսահման հնարաւորութիւնները պիտի փոխարինեն նոյնինքը ապրանքը, յատկապէս անկախ վերջինի ներյատուկ առանձնայատկութիւններէն: Լեզու՝ որուն համար կարեւոր չէ իրականութիւնը, կարեւորը *իր* ստեղծած իրականութիւնն է: Աւելի պարզ եւ ուղղակի արտայայտութեամբ, ասիկա արդեօք պիտի չնշանակէ՞ խարդաւանանք:

բ. Ազդ-ծանուցումները, որոնց շռայլ պատկերներուն միջնորդութեամբ դիտորդին կը ներկայացուին ապրանքին բացառիկ արժանիքները, պատկերներ՝ որոնք նոյնպէս կը փոխարինեն ապրանքը: Մոլորեցում բուն արժէքի նկատմամբ՝ գայթակղութեան եւ գրաւչութեան արտաքին պատրանքներով: Դարձեալ, ասիկա պիտի չնշանակէ՞ խարդաւանանք:

Փոխադրուած իմաստներ, իմաստներ՝ փոխակերպուած: Իմաստի օտարացում բուն իրէն, իրի անջատում իր իսկ կրած իմաստէն:

Նպատակը վաճառող-դրամատիրոջ ապրուստի հանգիստ միջոցներ ապահովելը չէ, այլ գերշահոյթի կուտակումը: Կարճ՝ դրամի ֆեթիշականացումը: Դրամը կը հրաժարի դարեր շարունակ խաղացած միջնորդի դերէն եւ կը վերածուի բացարձակ նպատակի: Իսկ գերշահութային-կուտակային-ֆեթիշական դրամի համար մարդ պատրաստ է դիմելու հնարաւոր ամէն քայլի: Այդ քայլերէն մէկն է արժեզրկումը ուրիշին՝ դիմացի գնորդ կողմին, կարենալու համար անկէ կորզել առաւելագոյն դրամ: Արժեզրկում՝ ժպիտով, յարգանքով, մեծարումով, դիմացինի գովերգութեամբ եւ ամենայն քաղաքակրթութեամբ: Արտաքին տեսքով՝ բարձր քաղաքակրթութիւն, ներքին համոզուածութեամբ եւ փաստացի իրականութեամբ՝ արժեզրկում: Դիմացինը՝ մարդը, արժէք չունի, արժէքը դրամն է՝ որ պիտի կորզուի դիմացինէն:

Բացի այդ, երբ դադրի դրամ ստանալու կարելիութիւնը, կը դադրի գործողութիւնը, ապրանքի ստեղծումին համար տարուած ճիգը: Այն նոյն ապրանքը՝ որ դրամատիրոջ խարդաւանական գովաբանութեան առարկան էր, պիտի դառնայ անիմաստ գոյութիւն մը նոյն դրամատիրոջ համար:

Խարդաւանանք՝ իբրեւ արդիւնք աչքաբացութեան: Խարդաւանանք՝ որ կ՚արդարացուի աչքաբացութեան պիտակին տակ:

Գլխաւոր վտանգներէն մէկը այն է՝ որ դրամատէրը կը հաւատայ խարդաւանանքի եւ արժեզրկումի արժէքներու արժանահաւատութեան եւ այդ արժէքները իրեն համար կը դառնան մտածողութեան չափանիշ՝ իբրեւ արդար ու պարկեշտ գործողութեան հիմք:

Իրականութեան մէջ, խօսքը դարմատիրոջ մասին չէ՝ իբրեւ անհատ: Խօսքը համակարգի մասին է: Գնորդը՝ որ ենթարկուած է խարդաւանանքի եւ արժեզրկումի, ինքն իր կարգին նոյն բանը կ՚ընէ ուրիշի նկատմամբ՝ մեծագոյն թէ փոքրագոյն վաճառքի կամ որեւէ տեսակ դրամակորզումի պարագային: Հարցը կը դառնայ շրջանային, հետեւաբար՝ համակարգային եւ առօրեական: Խարդաւանանքը կը ստանայ մարդկային ընդունելի բնոյթ:

Քանի որ խարդաւանանքը համակարգային է եւ դարձած է մտածողութեան որակ, անիկա պիտի վերաբերի կեանքի բոլոր ոլորտներուն՝ այլ ոչ միայն դրամին, ներառեալ արուեստին եւ մշակոյթին:

Ահաւասիկ Սփիւռքը՝ այդ բազմաչարչար միաւոր-միաւորները:

Ինչպէս որ դրամի բացակայութեան պարագային կը դադրի դրամատիրոջ ենթադրեալ սէրն ու գուրգուրանքը իր իսկ ստեղծած ապրանքին նկատմամբ, նոյնպէս, Սփիւռքի մէջ, հայապահպանութեան մեծաշուինդ անունին տակ գործող մշակութագէտ արուեստասէրները (փոխանակ մշակութասէր արուեստագէտներու) կը դադրին իրենց գործողութենէն՝ հայապահպանութենէն, երբ դադրի վճարումը կամ ամսավճարը: Նոյնպէս, նոյն անունին տակ գործող ղեկավարները կը դադրին հայապահպանումի գործողութենէն՝ երբ կորսնցնեն ղեկավարական աթոռը եւ զրկուին ձեռնարկներու առաջին շարքերը նստելու հաճոյքէն: Քանի որ երկու պարագաներուն ալ հայապահպանութեան գործողութիւնը, ինչպէս ապրանքի արդիւնաբերութիւնը, կապուած է արտաքին ազդակի հետ՝ դրամ եւ աթոռ, որոնց կորուստով կը կորսուի գործողութիւնը:

Ամէն բան կը սպասենք դուրսէն: Դուրսինն է որ պիտի արժեւորէ ներսը, գոյութիւն ունեցածը, ճիշդ այնպէս ինչպէս դրամն է որ պիտի արժեւորէ ապրանքը: Որքան ճիգ կը թափեն սփիւռքահայ «մտաւորականներ»-ը՝ իրենց գիրքերուն եւ գրքոյկներուն համար գրախօսականներ կորզելու համար, հոգ չէ թէ այդ գրախօսականները ունենան զուտ ծանուցողական բովանդակութիւն՝ բնագիրը համառօտագրող-փառաբանող, այլ ոչ մեկնաբանող, ուրեմն՝ ըլլան միտք սահմանափակող եւ նոյնիսկ վերացնող: Գրողը ինքը գոհ է իր միտքի ծանուցողականացումէն, իսկ ընթերցողը կը սիրէ բնագիրը դատել այդ ծանուցողականութեան ընդմէջէն: Ծիշդ դրամի ազդեցութեան նման:

Կը սիրենք դուրսէն դատել ներսը: Օքսֆորտի Համալսարանի դասախօս, Լոս Անճելըս Համալսարանի փրոֆեսոր, Քարնէկի Կեդրոնի հետազօտող, Հայաստանի Ակադեմիայի ակադեմիկոս, եւ այլն, մեզի համար բաւարար են որակաւորելու այդ

↳ 4

ՋԱՀԱԿԻՐ

## ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹԻՒՆՆ ՈՒ ՌՈՒՍ...

3

Ինչպէ՞ս է հնարաւոր նման քայլը գնահատել բարոյականութեան տեսանկիւնից, Սաքունցն արձագանքեց. «Գիտէք՝ բարոյականութիւնը, մարդկայնութիւնն ու ռուս խաղաղապահները մի փոքր անհամատեղելի բաներ են: Անիմաստ է դիտարկել այդ հարթութեան մէջ՝ յատկապէս այն ֆոնի վրայ, թէ Ռուսաստանն ինչ ագրեսիա է իրականացնում Ուկրաինայի նկատմամբ»:

Իրաւապաշտպան Նինա Կարապետեանցի խօսքերով՝ վերահսկողութեան միակ հնարաւորութիւնը կը լինէր այն, եթէ խաղաղապահներն ունենային այնպիսի վերադաս, որը չիրականացուող ֆունկցիաների վերաբերեալ կը կարողանար բողոքարկման միջոցներ ձեռնարկել. «Բայց մենք ունենք՝ Լեւոն Տիրինեանի նշած գողապետական պետութեան ներկայացուցիչ, որի համար կոռուպցիան նորմալ է, ինչքան կ՚ուզեմ՝ այնքան կը խփեմ տարբերակով, կ՚ուզեմ՝ կը բացեմ, կ՚ուզեմ կը փակեմ, տարբերակն է աշխատում: Այս պայմաններում ցաւալիօրէն ոչ մի ուրիշ մեխանիզմ չկայ՝ բացի բարձրաձայնելուց: Իրենք իհարկէ գուցէ նիարդայնանում են, բայց չեն էլ արձագանքում», - *Առաջին լրատուականի* հետ զրոյցում ասաց նա:

Ըստ Կարապետեանցի՝ կոռուպցիան անխուսափելի է, եթէ կան կողմեր, որոնց համար դա լաւագոյն տարբերակն է. «Ռուս զինուորների համար փող աշխատելու վատ տարբերակ չէ, մնացածի համար էլ՝ նեղ անձնական շահերով առաջնորդուելու, ընդհանուրից տարբերուելու շատ լաւ հնարաւորութիւն է: Կոնկրէտ երկու խաղացողներն օգտագործում են շանսը», - եզրափակեց նա:

## ՆԿԱՏՈՒԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

*Ջահակիր*ի վերջին թիւերուն մէջ նկատուած են հետեւեալ վրիպակները.

Ա. 1 Դեկտեմբեր 2022, էջ 2, Ա. սիւնակ, վարէն 28-րդ տողը ջնջուած է եւ պէտք է ըլլայ. «Երեկոյթին երկու կարեւոր դէմքերն էին՝ բանասիրական» (սրբագրուած ելեկտրոնային տարբերակին մէջ):

Բ. 26 Յունուար 2023, էջ 2 եւ 3, երկու անգամ հրատարակուած է նոյն լուրը՝ «Արարատ Միրզոյեանը ՆԱՏՕ-ի գլխաւոր քարտուղարին ներկայացրել է»:

Շնորհակալութիւն հաւատարիմ ընթերցողներուն՝ որոնք մատնանշեցին այս վրիպակները եւ առիթ տուին սրբագրութեան, միաժամանակ ներողութիւն խնդրելով այս եւ այլ հաւանական սխալներու կապակցութեամբ, իբրեւ ինքնաքննադատութիւն (կամ ինքնարդարացում) աւելցնելով՝ որ *Ջահակիր* լոյս կը տեսնէ բացառապէս անհատական ջանքերու շնորհիւ, ունենալով ո՛չ վերասրբագրիչ, ո՛չ վերախմբագրող, ո՛չ ընդհանուր կամ մասնակի վերանայող:

## ԵՐԲ ԽԱՐԴԱՒԱՆԱՆՔԸ ԿԸ ԴԱՌՆԱՅ ՀԱՄՈԶՈՒՄ

3

անձերը, առանց նոյնիսկ մէկ բառ կարդացած ըլլալու իրենց միտքերէն: Աւելին: Եթէ նոյնիսկ փորձենք ծանօթանալ անոնց միտքերուն, կը հրաժարինք զանոնք անցընել մեր սեփական քննականութեան բովէն, քանի որ անոնք մեզի համար դարձած են վաւերական ճշմարտութիւններ՝ Օքսֆորտի եւ միւս պիտակաւորումներուն շնորհիւ:

Ահաւասիկ դրամատիրական տրամաբանութեան մէջ յարմարուող հարցում մը՝ զոր մարդիկ յաճախ կը հարցնեն գրողին (կամ ընդհանրապէս արուեստագէտ արտադրողին). «ինչո՞ւ կը գրես»: Սովորական դարձած հարցում մը՝ որուն պատասխանը պէտք է հետապնդէ մէկ նշանակէտ. «կը գրեմ այսինչ լրագիրին կամ հրատարակչատան համար՝ փոխան այսքան գումարի»: Եւ իրօք, սակաւաթիւ գրողներ կը գրեն գրելու հաճոյքին համար, որմէ ետք միայն ինքզինքնուն իրաւունք կու տան այդ գրութիւններէն ապրուստ ապահովել: Մեծամասնութիւնը չի գրեր՝ եթէ չկայ դրամ: Սփիւռքը ներկայիս այս առումով ունի համատարած օրինակներ: Այնքան շատ են գրողները՝ որոնք գրող դարձած են խմբագիր ըլլալնէն ետք, այլ ոչ թէ խմբագիր դարձած են գրող ըլլալնուն համար: Եւ այսպէս՝ պատահական գրողներ, խմբագիրներ, բանասէրներ, բանաստեղծներ, երգիծաբաններ, երաժիշտներ, որոնք պիտի դադրին այդպէս ըլլալ իրենց պաշտօնավարութեան ժամկէտէն անդին:

Աչքաբացութիւն՝ անկասկած: Կարելի՞ է անոնցմէ ակնկալել անկեղծութիւն եւ պարկեշտութիւն: Խարդաւանանք կայ անոնց արտադրութիւններուն մէջ, խարդաւանանք՝ որուն պարկեշտութեան կը հաւատան թէ՛ իրենք եւ թէ՛ մենք ընկալողներս: Մենք բոլորս մասն ենք այս խարդաւանանքին:

## ԵՄ ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ԿՈՒ ԳԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ՝ ՀԱԿԱՌԱԿ ՄՈՍԿՈՒԱՅԻ ԵՒ ՊԱՔՈՒԻ ԴԺԳՈՀՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ

1

Եւրամիութեան (ԵՄ) դիտորդական առաքելութեան տեղադրումը Հայաստանի սահմաններուն վրայ: Թիւերը հակասական են բայց մենք կ՚ունենանք 100 կամ 200 սահմանապահ դիտորդներ, որոնք գալիք երկու տարիներուն Եւրամիութեան կողմէ կը դիտարկեն Հայաստանի բոլոր սահմանները: Ասիկա ինքնին բաւական դրական զարգացում մըն է: Երկու տարուայ ժամկէտը հարցական է, քանի որ, մեծ հաւանականութեամբ, դիտորդները աւելի երկար մնան: Օրինակ, 2008-ին ԵՄ դիտորդական առաքելութիւնը մտաւ Վրաստան, եւ ահաւասիկ, աւելի քան մէկ տասնամեակ ետք, անոնք տակաւին կը գտնուին այնտեղ: Ամենայն հաւանականութեամբ նոյնը կատարուի նաեւ այստեղ: Ակնյայտ է, որ դիտորդները պիտի չկանխեն կամ վերացնեն Ալիեւի վարչակարգի յարձակումներուն կամ ներխուժումին վտանգը բայց պիտի բարձրացնեն նման գործողութիւններուն քաղաքական գինը:

Հիմա տեսնենք թէ ԵՄ դիտորդներու տեղակայումի լուրին ինչպէս արձագանգեցին Ալիեւի վարչակարգը եւ Ռուսաստանի իշխանութիւնները:

Սկսինք Ալիեւի վարչակարգէն: Հարցազրոյցի մը մէջ, ան այս քայլը դատապարտեց իբրեւ Եւրամիութեան կողմէ թշնամական, ոչ բարեկամական քայլ:

Եկէք հասկնանք թէ ինչ կ՚ըսէ ան: Կ՚ըսէ՝ որ սահմանապահները, որոնք կը գտնուին հայկական կողմը՝ այլ ոչ իր տարածքին վրայ, իրականութեան մէջ սպառնալիք են իր երկիրին համար, իրականացնելով ոչ բարեկամական գործողութիւն: Ասիկա այն տարածքն է, որուն նկատմամբ Ալիեւ չունի վերահսկողութիւն եւ իրաւական պահանջք: Ան այսպէս կ՚ըսէ, որովհետեւ դիտորդներուն գոյութիւնը կրնայ խոչընդոտել իր յետագայ ռազմական յարձակումի մը կարելիութիւնը:

Անցնինք Ռուսաստանի Արտաքին Գործոց Նախարարութեան կամ ռուս տարբեր պաշտօնատարներու յայտարարութիւններուն: Անոնց պատասխանը կարելի է ուղղակիօրէն որակել՝ հիսթերիք: Արտաքին Գործոց Նախարարութեան հաղորդագրութիւններուն մէջ, անոնք գրեթէ սպառնացին ԵՄ դիտորդներուն՝ եթէ որեւէ շփում ունենան ռուսական խաղաղապահ ուժերուն հետ: Տարբեր ռուս պաշտօնատարներ այս առաքելութիւնը մեղադրեցին իբրեւ ռուսական խաղաղապահ գործընթացին միջամտելու փորձ: Ապա դատապարտեցին նաեւ Եւրամիութիւնը՝ զայն անուանելով ՆԱԹՕ-ի քաղաքական թեւ: Վերջապէս, յարձակեցան Հայաստանի կառավարութեան վրայ, ՀԱՊԿ դիտորդներուն փոխարէն ԵՄ դիտորդները ընտրած ըլլալուն համար: Իսկ ամենէն հետաքրքրականն ու խօսունը այն է՝ որ Ռուսաստանը մեզի փաստօրէն քննադատեց Ալիեւի վարչակարգի հաւանութիւնը ստացած չըլլալու համար: Այսինքն, ռուսերը կ՚ուզեն՝ որ մեր երկիրին մէջ սահմանապահներ ունենալու համար ստանանք իրենց դաշնակից Ալիեւի վարչակարգին հաւանութիւնը:

Հիմա անցնինք յատկապէս ռուսական արձագանգի վերլուծութեան: Ուսումնասիրենք այս իրադարձութիւններն ու գործողութիւնները, որոնք մեզի հասցուցին այս պահուն եւ հայ-ռուսական յարաբերութիւններու վատթարացումին:

Ա. Արցախի անօրինական շրջափակումն ու Լաչինի միջանցքի փակումը: Եւ այստեղ խօսունն այն է՝ որ ոչ մէկ ռուս պաշտօնատար երբեւէ դատապարտեց Ալիեւի վարչակարգը շրջափակումի համար: Անոնք պարզապէս կոչ ըրին ճանապարհը բանալ եւ բանակցութիւններ վարել, իսկ մենք գիտենք թէ այս պարագային ինչ կը նշանակեն բանակցութիւնները: Աւելի շատ կը նշանակեն զիջումներ՝ երկուքին ուզած պայմաններով, ուղղուած Հայաստանի, այլ ոչ Արցախի կառավարութենէն:

Բ. Ռուսերը, ամենայն հաւանականութեամբ, կանանչ լոյս տուած են Ալիեւի վարչակարգին Սեպտեմբերին Հայաստան ներխուժելու համար:

Գ. Ռուսերը ակնյայտօրէն կը հրաժարին կատարել իրենց համաձայնագրային պարտաւորութիւնները, կամ նոյնիսկ պատրաստ չեն դատապարտելու Ալիեւի ներխուժումը՝ զայն անուանելով սահմանային բախումներ կամ նման բաներ:

Դ. Քանի մը շաբաթ առաջ ռուսերը տապալեցին ՄԱԿ-ի բանաձեւ մը՝ որ կոչ կ՚ընէր ճանապարհը բանալ, խափանելով այս հարցը միջազգայնացնելու ուղղութեամբ ՄԱԿ-ի գործողութիւններն ու ներգրաւուածութիւնը:

Ե. Ամենէն խօսունը՝ որ բաց գաղտնիք մըն է, այն փաստն է՝ որ ռուսերը կը հրաժարին մատակարարել Արցախեան երկրորդ պատերազմէն ետք Հայաստանի գնած հարիւր միլիոնաւոր տոլլարներու զէնքերը: Այդ գործարքը եղած է նախքան ուքրաինական պատերազմի բռնկումը, ուստի ոչ մէկ արդարացում կրնայ ըլլալ ռազմական թեքնիքի պակասի մասին: Ասիկա ակնյայտօրէն տեղի կ՚ունենայ մեզի տկար, մեկուսացած եւ իրենցմէ կախեալ պահելու նպատակով:

Այս բոլորը կու գայ 30 տարի ետք, երբ Հայաստանի անկախութենէն ի վեր իւրաքանչիւր կառավարութիւն բոլոր կարեւոր քաղաքական որոշումները կայացուցած է այն հանգամանքին վրայ՝ թէ ի՞նչ կրնայ ըսել կամ ուզել Ռուսաստանի կառավարութիւնը կամ վերջինս ի՞նչ դիրքորոշում կրնայ ունենալ որեւէ հարցի նկատմամբ:

Բերեմ երկու լաւագոյն օրինակներ:

2014-ին, Ռուսաստանը մեզի փաստացի ստիպեց միանալ Եւրասիական Միութեան, փոխանակ ստորագրելու Եւրամիութեան համագործակցութեան համաձայնագիրը՝ որուն համար բանակցած էինք քանի մը տարի: Տնտեսական առումով ասիկա կը նմանի գնել 1975 թուականի LADA մը, փոխանակ BMW-ի:

Երկրորդը կապուած է պաշտպանական եւ ռազմական հարցերուն: Ակնյայտ է որ ռուսերը ունին կարմիր գիծ. ձեր բանակը արդիականացնելու եւ զէնք գնելու համար դուք չէք կրնար գործ ունենալ ՆԱԹՕ-ի կամ արեւմտեան տէրութիւններու հետ: Անոնք չտեսնելու կու տային, որ ՆԱԹՕ-ի Թուրք զօրավարներն էին Ազրպէյճանի բանակի ղեկավարները՝ որոնք կը ներխուժէին Արցախ եւ Հայաստան, մինչդեռ իրենք աշխարհի եւ Ուքրաինայի մէջ կը ստեղծէին խառնաշփոթ վիճակ՝ այդ երկիրին մէջ ՆԱԹՕ-ի հնարաւոր ընդլայնումին պատճառով:

Եզրափակենք: Իրականութեան մէջ, Հայաստանի քաղաքական կամ դիւանագիտական շրջադարձը դէպի Արեւմուտք՝ որ թէ՛ բացայայտ թէ՛ գաղտնի կերպով էականօրէն սկսած է Սեպտեմբեր 13-էն ետք, ընտրութեան տարբերակներէն մէկը չէր: Ան փաստացի միակ տարբերակն էր Մոսկուա-Պաքու-Անքարա առանցքի դաշինքի պայմաններուն մէջ: Ընտրութիւնը հետեւեալն էր. հակուիլ դէպի Արեւմուտք, կամ դառնալ Պելառուսի քոնիաքով եւ ծիրանով տարբերակը:.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly


P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com


ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1934 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ՓԵՏՐՈՒԱՐ 2023 ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. ԴՀկ.

عدد رقم ١٩٣٤ الخميس ٢٣ فبراير ٢٠٢٣


## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՀՐԱԺԱՐԱԿԱՆԻՆ 25-ԱՄԵԱԿԸ՝ ՆԱԽԱԳԱՀԻՆ ՏԵՍԱՆԿԻՒՆԷՆ

25 տարի առաջ՝ 1998 Փետրուար 3-ին, իր հրաժարականը կը ներկայացնէր Հայաստանի երրորդ հանրապետութեան առաջին նախագահը՝ Լեւոն Տէր-Պետրոսեան:

25-ամեակին առիթով, առաջին նախագահին յարող *Ազատութիւն ռադիոկայանը* իր կայքէջին վրայ Փետրուար 3-ին կը հրատարակէ Հեղինէ Բունիաթեանի յօդուածը՝ «Ինչ էին բանակցում, եւ ինչ էր պահանջում միջազգային համայնքը Տէր-Պետրոսեանի հրաժարականից առաջ. Պետդեպի գաղտնազերծուած փաստաթղթերը» (https://www.azatutyun.am/a/ 32250473.-html), ուր նորայայտ փաստաթուղթերու հիման վրայ փորձ կը կատարուի ցուցադրել ղարաբաղեան հարցի «միջազգային» դիրքորոշումը եւ ներկայացնել հրաժարականին բուն պատճառը:

### ՅՕԴՈՒԱԾԻՆ ԲԱՂԿԱՑՈՒՑԻՉ ՏԱՐՐԵՐԸ

**Գաղտնազերծուած փաստաթուղթեր**

Վերջերս, Միացեալ Նահանգներու Պետական Բաժինի (Department of State) դիւաններէն կը գաղտնազերծուին 1997 թուականի ղարաբաղեան հարցի կարգաւորումին հետ առնչութիւն ունեցող փաստաթուղթեր: Բունիաթեանի յօդուածը կը հրապարակէ ու կը մեկնաբանէ նորայայտ նիւթերէն ընտրեալ խումբ մը: *Ազատութիւն ռադիոկայանի* եւ Տէր-Պետրոսեանի կապը ինքնին պիտի կանխատեսէր յատուկ ուղղութեան մը գծագրումը: Հեղինակային յօդուածը, ըստ էութեան, կը ներկայացնէ Տէր-Պետրոսեանի ձայնը:

Մեկնաբանութիւններուն մէջ կարելի է դիտարկել չորս կողմեր՝ որոնցմէ իւրաքանչիւրը ներկայացուած է վճռական գոյնով, կարծես ղարաբաղեան հարցը եւ անոր լուծումը ըլլային այնքան պարզ, յստակ ու վճռորոշ: Այդ խումբերն են.

**ա. «Միջազգային» եռեակ**

Ըստ *Ազատութիւնի* մեկնաբանութիւններուն, համանախագահութիւնը ստանձնած երեք հզօր պետութիւնները՝ Միացեալ Նահանգներ, Ռուսաստան եւ Ֆրանսա, միասնական համագործակցային ճակատով 1997-ին կ՚ուզէին լուծում գտնել ղարաբաղեան հարցին:

Ահաւասիկ *Ազատութիւնը* ինչպէս կը ներկայացնէ այս երեք պետութիւնները.

«Ինչպէս Պետդեպի դիւանագիտական հեռագրերն են վկայում, այդ փուլում բոլոր երեքի շահերից էր բխում կարգաւորել այս հարցն ու դրանով իսկ ցոյց տալ, որ Արեւմուտքն ու Ռուսաստանը կարող են համագործակցել եւ նպաստել Եւրոպայի խաղաղութեանը»:

Կամ՝ «Բոլոր երեք հանդիպումներում բոլոր երեք կողմերն ընդգծում են, որ պատրաստ են հանդէս գալ մէկ ճակատով եւ ակտիւացնել ճնշումները, որպէսզի կողմերը [Հայաստան, Արցախ եւ Ազըրպէյճան] գիջումների գնան»:

Կամ՝ «Հայաստանի նախագահի [Լեւոն Տէր-Պետրոսեանի] հետ հանդիպման առաջին րոպէներից մինչեւ վերջին պահը բանագնացները միեւնոյն միտքն են ընդգծում՝ իրենք միասնական են եւ լուրջ են տրամադրուած»:

Երեք գերհզօր պետութիւններ՝ որոնց գործողութիւններուն գլխաւոր շարժառիթները միշտ եղած են անձնական շահերը, *Ազատութիւնը* կը ներկայացնէ իբրեւ մէկ ճակատ, միասնական եւ լուրջ:

Իսկ ինչո՞ւ այսքան միասնական էին անոնք: *Ազատութիւնը* ունի իր պատասխանը. «Դրան նպաստող երկու գործօն կար. նախ, Ադրբէջանը սկսել էր առաջին պայմանագրերը կնքել գազատարների ու նաւթամուղների անցկացման շուրջ, եւ Արեւմուտքը շահագրգիռ էր, որ տարածաշրջանում կայունութիւն ու խաղաղութիւն հաստատուի: Միւս կողմից, այդ տարուայ Յունուարին կազմաւորուել էր նոր ձեւաչափ՝ Ռուսաստանի, Միացեալ Նահանգների ու Ֆրանսիայի համանախագահութիւնը: Ինչպէս Պետդեպի դիւանագիտական հեռագրերն են վկայում, այդ փուլում բոլոր երեքի շահերից էր բխում կարգաւորել այս հարցն ու դրանով իսկ ցոյց տալ, որ Արեւմուտքն ու Ռուսաստանը կարող են համագործակցել եւ նպաստել Եւրոպայի խաղաղութեանը»:

**բ. Ստեփանակերտ**

Երեք համանախագահները 1997-ին կը ներկայացնեն փաթեթային տարբերակը: «Ստեփանակերտն ու Բաքուն կտրականապէս մերժում են փաթեթային տարբերակը», կ՚արձանագրէ *Ազատութիւնը* եւ կը շարունակէ. «Մօտ երկու ամսից համանախագահները ներկայացնում են նոր՝ փուլային պլանը, որի հիմքում շարունակում են մնալ միեւնոյն սկզբունքները, բայց ընտրւում է իրականացման, այսպէս ասած, երկարաձգուած տարբերակը: Մասնաւորապէս, եթէ առաջինը՝ փաթեթայինը, ենթադրում էր, որ տարածքների վերադարձն ու կարգավիճակի որոշումը պէտք է լինեն միաժամանակ, ապա հիմա միջնորդները առաջարկում են նախ ազատագրել տարածքները, վերադարձնել փախստականներին, ապահովել Ղարաբաղի անվտանգութիւնն ու ինքնակառավարումը, ապա՝ անդրադառնալ Ադրբէջանի տարածքային ամբողջականութեան ու Ղարաբաղի կարգավիճակի հարցերին»:

Որմէ ետք, «[մ]իջնորդները սկսում են քննարկել՝ ինչպէս համոզել Ստեփանակերտին»:

Ստեփանակերտ ըսելով նկատի ունի Արցախի այդ ժամանակուայ նախագահ Ռոբերդ Քոչարեանը:

Քոչարեանի Ֆրանսա կատարած այցելութենէն ետք, Ֆրանսայի փոխ արտաքին գործոց նախարարը գաղտնի հեռագիրով կը փոխանցէ Ուաշինկթոնին. «Մենք չյաջողեցանք որեւէ իրական փոփոխութեան հասնել Քոչարեանի դիրքորոշումներուն մէջ, եւ բանակցութիւններ սկսելու որեւէ իրական հեռանկար չենք տեսներ»:

**գ. Լեւոն Տէր-Պետրոսեան**

*Ազատութիւն*. «Համանախագահների հետեւողական այս ջանքերի ֆոնին՝ Հայաստանի նախագահը Սեպտեմբերին [1997] ասուլիս է հրաւիրում եւ արձանագրում, թէ որքան վտանգաւոր է հայկական կողմի համար դէմ գնալ միջազգային հանրութեան կամքին»:

Տէր-Պետրոսեանի համոզումն էր, որ 5+2 տարածքները պէտք է վերադարձուէին, քանի որ միջազգային կառոյցները զանոնք կ՚ընդունէին իբրեւ բռնագրաւեալ տարածքներ: ↳ 4

## ՊԼԻՆՔԷՆ-ՓԱՇԻՆԵԱՆ-ԱԼԻԵՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՄԻՒՆԻԽԻ ՄԷՋ

Փետրուար 17-19-ին, Հայաստանի եւ Ազըրպէյճանի ղեկավարները կը մասնակցին Միւնիխի 59-րդ Ապահովութեան Համաժողովին, որուն ընթացքին հանդիպումներ կ՚ունենան Հայ-ազըրպէյճանական միջնորդութեամբ զբաղող երկիրներու եւ կառոյցներու ներկայացուցիչներու հետ:

ԱՄՆ-ի պետական քարտուղար Անթոնի Պլինքէնի միջնորդութեամբ, Միւնիխի մէջ Փետրուար 18-ին կայացաւ Պլինքէն-Փաշինեան-Ալիեւ եռակողմ հանդիպում:

«Մենք կը հաւատանք, որ Հայաստան եւ Ազըրպէյճան իսկապէս պատմական հնարաւորութիւն ունին ապահովելու կայուն խաղաղութիւն աւելի քան 30 տարուայ հակամարտութենէն ետք», - կը յայտարարէ Պլինքէն:

Պլինքէն կը նշէ՝ որ կողմերը իրենք վերականգնեցին ուշադրութիւնը խաղաղ գործընթացին վրայ, ըլլայ երկխօսութեան միջոցով, կամ Եւրամիութեան եւ ԱՄՆ-ի միջնորդութեամբ: Կ՚ընդգծէ՝ որ ԱՄՆ յանձնառու է կարելին ընել ջանքերուն աջակցելու համար, ինչպէս այսօրուայ հանդիպումը:

Եռակողմ հանդիպումին յաջորդած Հայաստանի կառավարութեան հաղորդագրութեան մէջ մասնաւորապէս նշուած է.

«Վարչապետ Փաշինեանը վերահաստատել է հայկական կողմի նպատակամղուածութիւնը՝ հասնելու այնպիսի պայմանագրի ստորագրմանը, որն իսկապէս կ՚երաշխաւորի տարածաշրջանում երկարաժամկէտ խաղաղութիւնն ու կայունութիւնը:

«Միաժամանակ, Նիկոլ Փաշինեանն ընդգծել է Ադրբէջանի կողմից Լաչինի միջանցքի ապօրինի շրջափակման ու դրա հետեւանքով ԼՂ-ում առաջացած հումանիտար, բնապահպանական եւ էներգետիկ ճգնաժամի փաստը:

«Կարեւորուել է Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութեան գործընթացի շարունակականութեան ապահովումը»:

Նոյն օրը՝ Փետրուար 18-ին, Հայաստանի, Ազըրպէյճանի եւ Վրաստանի ղեկավարները կը մասնակցին համաժողովի Հարաւային Կովկասի հարցերով փանէլային քննարկումին՝ «Շարժե՞լ սարերը. Ապահովութեան կառուցումը Հարաւային Կովկասի մէջ» խորագիրով:

## ԹՈՒՐՔԻՈՅ ԵՐԿՐԱՇԱՐԺԸ ԵՒ ՀԱՅԿԱԿԱՆ ԴԻՒԱՆԱԳԻՏՈՒԹԻՒՆԸ

Փետրուար 6, ահռելի երկրաշարժ Թուրքիոյ հարաւն ու կեդրոնական շրջանները, եւ Սուրիոյ հիւսիսն ու արեւմուտքը: Առ այժմ, աւելի քան 47 հազար զոհեր եւ 123 հազար վիրաւորներ:

Փետրուար 8, Հայաստանի կառավարութիւնը խորհրդանշական քայլով մը Թուրքիա կը ղրկէ 27 հայ փրկարարներ, որոնք կը գործեն Ատիյաման քաղաքը: 29 փրկարարներ կը ղրկէ նաեւ Սուրիա:

Փետրուար 11, Հայաստան Ատիմայան կը ղրկէ 100 թոն պարէնի, դեղի եւ ջուրի մարդասիրական օգնութիւն, հինգ բեռնատարներու միջոցով: Հայ-թրքական բանակցութիւններու Անքարայի յատուկ ներկայացուցիչ Սերտար Քըլըչ շնորհակալութիւն կը յայտնէ Հայաստանի ներկայացուցիչ Ռուբէն Ռուբինեանին եւ փոխ արտաքին գործոց նախարար Վահան Կոստանեանին:

Բեռնատարները կը հատեն Հայաստան-Թուրքիա սահմանը գտնուող Մարգարայի կամուրջը, ուղեւորուելու համար Ատիմայան: Կամուրջը փակ էր 1993-էն ի վեր եւ Փետրուար 11-ին յատուկ կը բացուի բեռնատարներու փոխադրութեան համար:

2022 թուականի ամռան, բանագնացներու վերջին հանդիպումին, կողմերը համաձայնած էին սահմանը բանալ երրորդ երկիրներու քաղաքացիներու համար: Ապա թրքական մամուլը գրեց՝ որ հնարաւոր է բացուի Արմաւիրի մարզի սահմանը գտնուող Մարգարա-Ալիճան անցակէտը: ↳ 3

# ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Պատուոյ Սուրը**

1918 Ապրիլ 8-ին, *Արեւ* կը յայտարարէ իր կողմէ ձեռնարկուած հանգանակութեան բացումը, շինելու եւ Անդրանիկին նուիրելու համար Պատուոյ Սուր մը: Յայտարարութեան մէջ կը նշէ նախատեսուած առաւելագոյն գումարը՝ 200 եգիպտական ոսկի, եւ կը թուէ պայմանները.

«*Արեւ*ի ընթերցողներէն մին, Տ. Սիմոն Անտոնեան մեզի թելադրեց հանգանակութիւն մը բանալ այս էջերուն մէջ՝ Պատուոյ Թուր մը նուիրելու համար Էրզրումի յաղթականին՝ մեծ Զօր. Անդրանիկին եւ այս նպատակաւ իր կազմէն վճարեց 100 դրշ. ողջ:

«*Արեւ* յամենայն սիրով կ'ընդգրկէ այս թելադրութիւնը եւ իր էջերը կը բանայ բոլոր նուիրատուներուն:

«Մեր թերթը նոյն նպատակով իր կողմէն կը նուիրէ 200 ղ. ո.:

«*Արեւ* իր հանգանակութիւնը պիտի փակէ երբ հաւաքուած ըլլայ առնուազն երկու հարիւր եգիպտ. ոսկի, զի Անդրանիկին նուիրուելիք Թուրը պէտք է որ գեղարուեստական իրական արժէք մը ունենայ:

«*Արեւ* պիտի մերժէ սակայն խոշոր նուէրներ, որպէսզի, ռամկավար սկզբունքներու համաձայն, ժողովուրդի ամենէն խոնարհ դասակարգն իսկ ի վիճակի ըլլայ այս հայրենասիրական ցոյցին մասնակցելու:

«Մեր թերթը իւրաքանչիւր անհատէ կամ խմբակցութենէ առ առաւելն կ'ընդունի 500 ղրշ. ողջ եւ առնուազն 5 ղրշ. ողջ:

«*Արեւ*, այս հանգանակութեան հետ զուգընթացաբար, կը բանայ մրցում մը եգիպտահայ ոսկերչական գեղարուեստի մեր պատուական վարպետներուն մէջ, խնդրելով որ անոնք մինչեւ մայիսի վերջը իրենց գծագրութիւնները ղրկեն շինուելիք Պատուոյ Թուրին՝ հանդերձ բացատրական տեղեկագրով:

«Մասնագէտներէ բաղկացեալ քննիչ յանձնաժողովի մը պիտի յանձնուին այս ծրագիրները եւ լաւագոյն դատուածին հեղինակը պիտի ստանայ Պատուոյ Թուրին պատրաստութեան հոգը:

«Ծրագիրները պէտք է պատրաստուին երկու հարիւր եգ. ոսկւոյ հիման վրայ»(27):

Նոյն թիւին մէջ, *Արեւ*ի արտօնատէր Լեւոն Մկրտիչեան կը ստորագրէ Անդրանիկին նուիրուած առաջնորդող յօդուած մը, ուր Զօրավարին կը պսակէ «Սո՛ւրբ Անդրանիկ» տիտղոսով(28):

Ապրիլ 10-ի թիւին մէջ, *Արեւ* կը հրապարակէ նուիրատուութիւններու առաջին ցանկը(29): Ցանկերը կը շարունակուին մինչեւ Նոյեմբեր 29, երբ ընդհանուր գումարը կը հասնի 19,685 ղրուշ, հաւասար 197 ոսկիի, որ գրեթէ կը մօտենայ նախատեսուած 200 ոսկի գումարին: *Արեւ* կը յայտարարէ դադրեցնել հանգանակութիւնը(30):

Աշխատանքը ընթացք կ'առնէ: Գործողութեան ականատես մը՝ Սմբատ Յոխիկեան, տասնամեակներ ետք պիտի յիշէր որոշ մանրամասնութիւններ.

«Յատակագծեր պատրաստուեցան ու ղրկուեցան Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի անուանի հայ ոսկերիչներուն, ըլլալիք գործը մրցումի դրուելու դիտաւորութեամբ:

«Այդ ժամանակները անուանի էին Գահիրէի հայ ոսկերիչները: Անոնք ընդհանրապէս հաստատուած էին Խան Խալիլ կոչուած թաղամասին մէջ: Ունէին արուեստասէրներու եւ արհեստագէտներու իրենց մասնաւոր միութիւնը: Տոգորուած էին ազգասիրական եւ եկեղեցասիրական վառ զգացումով:

«Անոնք որոշեցին հաւաքաբար մասնակցիլ մրցումին:

«Աղեքսանդրիայէն միայն մէկ անուանի ոսկերիչ զարդանկարիչ՝ Յաբէթ Գավուքճեան մասնակցեցաւ մրցումին:

«Ան բաւական աչքի լոյս սպառեց իր պատրաստած յատակագծին վրայ: Գլուխ գործոցներ էին անոր գծագրութիւնները: Ես նախապէս զանոնք տեսնելու հաճոյքը ունեցած էի:

«Որոշուած թուականին՝ երկու քաղաքներու մրցորդներուն յատակագծերը, գոց պահարաններով յանձնըւեցան Աղեքսանդրիոյ Ազգային Առաջնորդարան:

«Գնահատիչ յանձնախումբ մը, գլխաւորութեամբ թեմակալ Սրբազան Առաջնորդին՝ բացաւ պահարանները: Երկու գծագրութիւններն ալ հրապուրիչ տեսք ունէին, գնահատանքի արժանի:

«Գահիրեցիները տեղեկացուցած էին միեւնոյն ժամանակ, որ սուրին շինութեան գործը իրենց վստահելու պարագային, յանձնառու կ'ըլլան հոգալու բոլոր ծախսերը:

«Սուրին շինութիւնը անոնց յանձնուեցաւ: Հայ արուեստագէտները մեծ նուիրումով գլուխ հանեցին զայն, որոշուած թուականէն առաջ:

«Թորգոմ Սրբազան, իր քով հրաւիրեց Աղեքսանդրիոյ արուեստագէտը՝ Յաբէթ Գավուքճեան: Շնորհաւորեց զայն ու ըրաւ գնահատանքի ջերմ խօսքեր»(31):

Սուրի գծագրիչն է եգիպտահայ առաջաւոր նկարիչ Երուանդ Տէմիրճեան, շինողը՝ ոսկերիչ Կարապետ Ա. Արիֆեան(32), փորագրիչները՝ Ե. Գարագաշ եւ Բ. Մինասեան(33):

Սուրին վրայ մակագրուած է՝ «Եգիպտահայը Անդրանիկին», որուն տակը նշուած են հերոսամարտ քաղաքները. «Պաշ Գալէ, Խոյ-Տիլիման, Վան, Պիթլիս, Մուշ, Սասուն, Շուշի Գալէ, Նախիջեւան, Ղարաբաղ»:

Սուրը երկսայրի եւ ուղիղ է, հազիւ 70 սանթիմեթր երկարութեամբ, երկու երեսներուն խոր քիւերով եւ ոսկեթել ընդելուզուած վերոյիշեալ մակագրութեամբ: Դաստապանը փղոսկրով է, մէկ երեսին 70 ադամանդեայ զարդեր շարուած:

Արծաթածածկ, հայկական պատմական քանդակներով նախշազարդուած պատեանին վրայ, ոսկիով բանուած են Էջմիածինի, Աղթամարի եւ Տաթեւի վանքերուն բարձրաքանդակները(34):

Սուրին նուիրաբերումը կը կատարուի Աղեքսանդրիոյ Հայ Ակումբին մէջ, 1920 Դեկտեմբեր 4, երեկոյեան ժամը 9-ին(35):

Յոխիկեան՝ որ ներկայ էր հաւաքոյթին, դարձեալ պիտի վերյիշէր՝ որ Անդրանիկ, երբ տեղեկացաւ նուէրի մասին, փափաքեցաւ հաւաքոյթը կատարել սեղմ շրջանակի մէջ(36): Բայց նաեւ Հայաստանի ներկայ պայմաններէն ելլելով է որ *Արեւ* որոշեց հաւաքոյթը դարձնել մտերիմ. «*Արեւ*ի խմբագրութիւնը, օգտուելով ազգին մեծագոյն զաւկին՝ Զօր. Անդրանիկի ներկայութենէն քաղաքիս մէջ, եւ ազգին ներկայ տագնապալից րոպէին՝ ժողովրդային մեծադղորդ հաւաքոյթի մը սարքումը անպատեհ նկատելով, մանաւանդ այս օտար հողին վրայ, որոշեց մտերմական ամփոփ շրջանակի մը մէջ նուիրել ազգային հերոսին՝ իր բացած հանգանակութեան արդիւնքովը շինուած Պատուոյ սուրը»(37):

Բացումի խօսքին մէջ, Մ. Կիւրճեան կը կապէ երկու կէտերը. «Մեզք սակայն որ Ձեր՝ հանրային ցոյցերէ եւ հանդիսութիւններէ խորշող մեծ համեստութիւնը մէկ կողմէն, եւ միւսէն՝ դժբախտ պարագաներ, ահաւոր տռամը որ ներկայիս կ'անցնի Հայաստանի մէջ եւ որուն անդոհովը համակուած են հայ հոգիները բոլոր, թոյլ չտուին որ մեծահանդէս հաւաքոյթի մը մէջ կատարուէր ընծայաբերումի այս արարողութիւնը»(38):

Անկասկած, ընծայաբերումի արարողութիւնը կրնար դառնալ ժողովրդական մեծ միթինկի առիթ, նկատի առնելով Զօրավարին վայելած լայն ժողովրդականութիւնը եւ տուեալ պահուն եգիպտահայութեան հոգեւոր պահանջը տեսակցելու նման անձնաւորութիւններու հետ, ինչպէս ցոյց տուաւ Խատիսեանի դեռ երկու ամիս առաջ կատարած այցելութեան փառաւոր ընդունելութիւնը:

Շուրջ 150 ազգայիններ ներկայ էին Հայկական Սրահը: Կը նախագահէր եգիպտահայոց առաջնորդ Թորգոմ Եպս. Գուշակեան, ներկայ էին Հայկազուն Քհնյ. Ոսկերիչեան, Մուշեղ Արք. Սերոբեան, Յակոբ Փափազեան: Պօնաբարթեանի եւ Զանքալեանի հետ եկած էր Անդրանիկ, որ առաջին անգամ եգիպտահայութեան կը ներկայանար զինուորական համազգեստով՝ կրելով նաեւ պատուանշանները:

Երկար ուղերձ մը կը կարդայ Կիւրճեան՝ իբրեւ *Արեւ*ի խմբագրապետ եւ մասնակից հանգանակութեան:

Փակ սենեակի մէջ արտայայտուող նրբագոյն արձակագիր, բանաստեղծ, գրող Կիւրճեան կը խօսի բաց դաշտի վրայ արտայայտուող ռազմական գործիչի մասին: Ան իրազեկ է այս տարբերութեան. «Ես գիտեմ նաեւ Զօրավա՛ր, այն տեսակ մը ժպտուն եւ ներողամիտ արհամարհանքը, բնական եւ որքա՜ն հասկնալի, զոր մեր զինուորականները, բուռն եւ վսեմ գործողութեան այդ հերոսները, կը զգան՝ գրի եւ մտածումի մարդոց համար, հայեցողական կեանքի այդ սիրահարներուն, որոնք ուրիշ բանի ատակ չեն բայց եթէ պատմելու այն դիւցազներգութիւնները զորս իրե՛նք կ'ապրին կը կերտեն պատերազմի արդաւանդ դաշտերուն վրայ. բայց արդեօք սա նոյնքան բնական եւ հասկնալի սքանչացումը զոր գրչի մարդիկը տածած են միշտ իրենց հոգւոյն խորէն փառքով պսակուած բոլոր Սուրի մարդոց համար, չի կրնա՞ր կերպիւ իւիք ինծի իրաւունքը տալ խօսելու այս երեկոյ, երբ Ձեզի՛ – Հայկական դիւցազնութեան եւ ռազմական հանճարին – պիտի յանձնուի ինչ որ Եգիպտահայ սքանչացումը եւ երախտագիտութիւնը կ'ընծայեն հայ գեղարուեստի այս գլուխ-գործոցին միջոցաւ»(39):

Ապա կ'անցնի Զօրավարի բնութագրութեան, իբրեւ ժողովուրդին կողմէ մեծարուող «ամէնէն «ժողովըրդական» հերոսը», որ հայդուկէն բարձրացաւ մինչեւ զինուորական զօրավարի մակարդակը:

Բայց Կիւրճեան արդէն ականատես եղած էր Անդրանիկի դառն խօսքերուն եւ ուզեց ներկայացնել նաեւ Զօրավարին այդ կողմը. «Անկարելի է ձեզ լսել, երբ մարդ կ'արժանանայ ահաւոր պատիւին ունկընդրելու ձեր ցասմնկոտ ցաւած հսկայի ամեհի մենախօսութիւններուն, երբ հայրենասիրական զայրոյթներուն ամէնէն հոյակապը՝ տարերային ուժի մը պէս կը թօթուէ Ձեր ամբողջ էութիւնը, գոգցես կը բաշարձակէ Ձեր ալեփառ գլուխը, որոտումներ կը հանէ Ձեր հուժկու կուրծքէն եւ կայծեր Ձեր հրամանատարի աչքերէն, անկարելի է կ'ըսեմ, լսել Ձեզ «տեսանող»ի ներշնչման այդ ահարկու եւ վսեմ պահերուն եւ չի սարսիլ, չի սասանիլ մինչեւ իր հոգւոյն հիմերը»(40):

(Շար. 4)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

27. «Պատուոյ Թուր Անդրանիկին», *Արեւ*, 8 Ապրիլ 1918, Գ. տարի, թիւ 142 (452), էջ 3:

28. Լեւոն Մկրտիչեան, «Անդրանիկ...», *Արեւ*, 8 Ապրիլ 1918, Գ. տարի, թիւ 142 (452), էջ 1:

29. «Պատուոյ Թուր Անդրանիկին. *Արեւ*ի հանգանակութիւնը», *Արեւ*, 10 Ապրիլ 1918, Գ. տարի, թիւ 143 (453), էջ 2:

30. «Պատուոյ Թուր Անդրանիկին. *Արեւ*ի հանգանակութիւնը», *Արեւ*, 29 Նոյեմբեր 1919, Դ. տարի, թիւ 86 (551), էջ 3:

31. Սմբատ Յոխիկեան, «Դրուագներ եգիպտահայ կեանքէն (ազգային հերոս Զօրավար Անդրանիկի մահուան 53-րդ տարելիցին առթիւ)», *Հայրենիք*, Պոսթոն, 30 Օգոստոս 1980, թիւ 20404, էջ 6:

32. *Արեւ*ի առաջին էջին վրայ իբրեւ շինող կը նշուի Կարապետ Աֆրիկեան անունը, մինչդեռ նոյն թիւին երկրորդ էջը՝ ընծայաբերումի հանդիսութեան առիթով շինողէն ստացուած հեռագիրին մէջ երկու անգամ կը նշուի Կարապետ Ա. Արիֆեան («Եգիպտահայութեան կողմէ նուիրուած պատուոյ սուրին յանձնումը Զօրավար Անդրանիկի», *Արեւ*, 6 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 90 (850), էջ 1 եւ 2): Պէտք է յիշել, որ Օգոստոս 19-ին, Տէր եւ Տիկին Ալեքսանդր Խատիսեաններու Գահիրէ ժամանումին առիթով, Գահիրէի Հայուհեանց Միութիւնը մետաքսեայ եւ արծաթաճող իւղաներկ հայկական դրօշակ մը նուիրեց անոնց, որուն վրայ տեղադրուած պատուիրակի անունին սկզբնատառերը գրուած էին Երուանդ Տէմիրճեանի կողմէ, իսկ արծաթ նիզակը պատրաստած էր ոսկերիչ Կ. Արիֆեան («Պ. եւ Տիկին Խատիսեանի մեկնումը», *Յուսաբեր*, 28 Օգոստոս 1920, Զ. տարի, թիւ 64, էջ 2): Անդրանիկի սուրը Տէմիրճեանի եւ Արիֆեանի յաջորդ համագործակցութիւնն էր: Արդ, վրիպակ մըն է Աֆրիկեան անունը:

33. «Եգիպտահայութեան կողմէ նուիրուած պատուոյ սուրին յանձնումը Զօրավար Անդրանիկի», *Արեւ*, 6 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 90 (850), էջ 1:

34. «Անդրանիկի սուրը Երեւանի Պետական Թանգարանում», *Հայրենիք*, 29 Օգոստոս 1971, 73-րդ տարի, թիւ 17919, էջ 2:

35. «Զօրավար Անդրանիկի պատուոյ սուրը», *Արեւ*, 3 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 89 (849), էջ 3:

36. Սմբատ Յոխիկեան, նշ. յօդ.ը, էջ 6:

37. «Զօրավար Անդրանիկի պատուոյ սուրը», *Արեւ*, 3 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 89 (849), էջ 3:

38. «Եգիպտահայութեան կողմէ նուիրուած պատուոյ սուրին յանձնումը Զօրավար Անդրանիկի», *Արեւ*, 6 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 90 (850), էջ 1:

39. Անդ, էջ 1:

40. Անդ, էջ 1:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱԴՐԲԵՋԱՆԻ ՆԱԽԱԳԱՀԸ ՍՏՈՐԱԳՐԵԼ Է ՓԱՍՏԱԹՂԹԻ ՏԱԿ, ՈՐՏԵՂ ՖԻՔՍՈՒԱԾ Է, ՈՐ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂ ԿԱՅ. ՓԱՇԻՆԵԱՆԻ ՊԱՏԱՍԽԱՆՆ ԱԼԻԵՒԻՆ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը պատասխանել է Ադրբեջանի նախագահ Իլհամ Ալիեւի մի շարք կեղծ պնդումներին, որոնք վերջինս արել է Միւնխէնի անվտանգութեան համաժողովի շրջանակներում անցկացուած պանելային քննարկման ժամանակ:

Ինչպէս տեղեկացնում է *Արմենպրէսը*, Միւնխէնի միջազգային համաժողովի շրջանակներում տեղի ունեցած Հարաւային Կովկասի անվտանգութեան թեմայով քննարկմանը, որին մասնակցում էին Ադրբեջանի նախագահ Իլհամ Ալիեւը, Վրաստանի վարչապետ Իրակլի Ղարիբաշվիլին եւ ԵԱՀԿ գլխաւոր քարտուղար Հելգա Շմիդտը, արձագանքելով Ալիեւի յայտարարութեանը, թէ, իբր, «չկայ Լեռնային Ղարաբաղ հասկացութիւն եւ Ադրբեջանում չկայ նման վարչատարածքային միաւոր», Փաշինեանը շեշտեց, որ Լեռնային Ղարաբաղ կայ, եւ կայ նաեւ Լաչինի միջանցք, որը պէտք է բաց լինի 2020 թուականի Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարարութեան համաձայն, իսկ այդ փաստաթղթի տակ ստորագրել է նաեւ Ադրբեջանի նախագահ Իլհամ Ալիեւը:

«Այդ փաստաթղթի վրայ դրուած է Ադրբեջանի նախագահի ստորագրութիւնը: Նաեւ այդ փաստաթղթում գրուած է, որ Լաչինի միջանցքը պէտք է բաց մնայ եւ Ադրբեջանի վերահսկողութիւնից դուրս: Գիտէք, վերջերս մի քանի հայ երեխաներ փորձել են աւտոբուսով անցնել Լաչինի միջանցքով, սակայն նրանց կանգնեցրել են, եւ աւտոբուս են մտել դիմակաւորուած մի քանի ադրբեջանցիներ: Երեխաները վախեցած էին, եւ դա Լաչինի միջանցքով անցնելու հայերի վերջին փորձն էր», - նշել է Փաշինեանը:

Փաշինեանը անհիմն է համարել Ալիեւի այն յայտարարութիւնը, թէ, իբր հայերը մզկիթներ են աւերել:

«2017 թուականին Ադրբեջանում բազմաթիւ մզկիթներ են աւերուել, որպէսզի դրանց տեղում ➪ 4

1 ➪

## ԹՈՒՐՔԻՈՅ ԵՐԿՐԱՇԱՐԺԸ ԵՒ

Համաձայնութիւնը տակաւին կեանքի չէ կոչուած: Պաշտօնական Երեւանը անընդհատ կը յայտնէ սահմանը բանալու մասին: Իսկ Անքարան հաշտեցումը կը կապէ հայ-ազըրպէյճանական յարաբերութիւններու կարգաւորումին հետ:

Փետրուար 15, Հայաստան նոյն կամուրջով կը ղրկէ երկրորդ մարդասիրական օգնութիւնը:

Նոյն օրը Անքարա կը մեկնի Հայաստանի արտաքին գործոց նախարար Արարատ Միրզոյեան: Հայկական պատուիրակութեան մաս կը կազմէր հայ-թրքական յարաբերութիւններու կարգաւորումի գործընթացի Հայաստանի յատուկ ներկայացուցիչ Ռուբէն Ռուբինեան: Օդանաւակայանին մէջ կը դիմաւորուին Սերտար Քըլըչի կողմէ:

Ասիկա Միրզոյեանի երկրորդ այցելութիւնն է Թուրքիա: Առաջինը կայացած էր 2022 Մարտին, երբ գացած էր մասնակցելու Անթալիայի դիւանագիտական փորումին:

Փետրուար 15-ին կը կայանայ Միրզոյեանի եւ Թուրքիոյ արտաքին գործոց նախարար Մեւլութ Չաւուշօղլըի հանդիպումը, որուն կը յաջորդէ մամուլի ասուլիս, ուր Միրզոյեան կը յայտարարէ. «Ցանկանում եմ եւս մէկ անգամ վերահաստատել տարածաշրջանում խաղաղութեան կառուցմանը Հայաստանի պատրաստակամութիւնը եւ ձգտումը՝ Թուրքիայի հետ յարաբերութիւնների ամբողջովին կարգաւորմանը, դիւանագիտական յարաբերութիւնների հաստատմանը եւ հայ-թրքական սահմանի ամբողջովին բացմանը»:

Իր կարգին, Չաւուշօղլը կը հաստատէ. «Մենք երկկողմ հանդիպում ունեցանք: Քննարկել ենք քայլերը, որոնք կարող են յանգեցնել մեր յարաբերութիւնների կարգաւորմանը», չմոռնալով նաեւ շնորհակալութիւն յայտնել Հայաստանի մարդասիրական օգնութիւններուն համար:

Հայաստանի կողմէ կատարուած այս դիւանագիտական քայլը ո՛չ պատմական բացառիկ նշանակութիւն ունի՝ ինչպէս փորձեցին հռետորաբանել իշխանամէտ որոշ անձեր, ո՛չ ալ «ծխածածկոյթ» մըն է՝ ինչպէս բնութագրեց փոփիւլիսթական ընդդիմադրութեան ներկայացուցիչը:

Կատարուածը ընդամէնը դիւանագիտական քայլ մըն է՝ ոչ աւելի, ոչ պակաս, քայլ մը՝ որ տուեալ պա-

խՈՀԵՐ

## ԳՐԱԴԱՐԱՆԷՆ ԱՆԴԻՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Անդրադառնալով Գահիրէի Թորգոմեան Մատենադարանին, յայտնի հրապարակագիր, թատերագիր եւ թարգմանիչ Սիսակ Շալճեան 1945-ին կը գանգատէր վարիչ մարմիններէն.

«Թորգոմեան Մատենադարանի Յանձնախումբը լուծուած է, իսկ հաւաքուած քանի մը հարիւր գիրքերն ալ Առաջնորդարանի մէկ նկուղին խորը, ցեցերու կեր կը դառնան: Ինչպէ՞ս կ'ուզէք որ Գահիրէի հայութիւնը իր կրթասէր, մշակութասէր վարիչներովը չի պարծենայ» (*Արաքս*, 27 Հոկտեմբեր 1945, էջ 1):

Հինգ տարի ետք՝ 1950-ին, կրկին Շալճեան պիտի գանգատէր.

«Պ. Գարեգին Տիւրկէրեան, յարգուած Տնօրէնը Նուպարեան Ազգային Վարժարանի, որ այժմ Հանգըստեան կոչուած է, ժամանակէ մը ի վեր անկողնոյ կը ծառայէ, ընդհանուր ուժաթափութեան հետեւանքով: Թորգոմեան Մատենադարանին իր նուիրած գիրքերը, արդէն փոխադրուած են Ազգային Առաջնորդարան, ուր կը մնան սնտուկներու մէջ, ինքնակոչ հիւրերու գուրգուրանքին յանձնուած...: Սրտով եւ զգացումով ի՜նչ աղքատացած գաղութ արդարեւ, որ հակառակ դրամատան մէջ զետեղուած հազարաւոր ոսկիներու, «չի կրնար» Հայ Գրքի Տունը հիմնելու համար գումար մը յատկացնել եւ կը սպասէ «բարերար»ի մը որ կը խուսափի... ու չի յայտնուիր» (*Արաքս*, 7 Յունուար 1950, էջ 4):

Շուրջ երեք տարի ետք, եւ Շալճեան երրորդ անգամ ըլլալով պիտի աղաղակէր.

«**Թորգոմեան Մատենադարան**. – Հակառակ որ մեր ազգային պիւտճէն ամէն տարի որոշ յատկացումներ կը վերապահէ այս մատենադարանին համար, այնուամենայնիւ, *անոր դուռները փակ կը մնան եւ գնուած հազարաւոր գիրքերը յանձնուած են փոշիներու եւ ցեցերու աւերումին*: Մեր երեսփոխանները, որոնք կը յաւակնին ազգային շահերու հսկողութիւնը կատարել, ինչպէ՞ս կը հանդուրժեն դուռները փակ, ազգին համար որեւէ օգտակարութիւն չունեցող հիմնարկի մը համար ծախքեր քուէարկելով, Գործադիրին անմիտ եւ ապուշ պահանջներուն ընդառաջել: Զարմանալի է արդարեւ» (*Արաքս*, 15 Նոյեմբեր 1952, էջ 1):

Գտնուած է գրադարանավարը՝ Արտաշէս Գարտաշեան, եւ Շալճեան բաւարարութեամբ պիտի դրուատէր անոր կարողութիւնները՝ չծանրանալով վարիչ մարմիններուն վրայ.

«**Թորգոմեան Մատենադարանը**. – 1940ին հիմնըւած այս մատենադարանը, այժմ օժտուած է կարող, գործին նուիրուած, զոհաբերող մատենադարանապետով մը, որ հանրածանօթ Պ. Արտաշէս Գարտաշեանն է, մէկէ աւելի տեղագրական-բանասիրական աշխատութեանց անխոնջ հեղինակը: Մատենադարանը այժմ հաստատուած է Աղքատախնամի աշխատանոցին բաժնին մէջ, ընդարձակ եւ լուսաւոր սրահ մը, որուն չորս բոլորը զետեղուած են պահարանագրադարաններ: Դասաւորուած են թիւի կարգով 3500է աւելի հատորներ: Թերթերու, պարբերականներու յատուկ մասնաւոր պահարաններ զետեղուած են: Ինչպէս եւ ծաղկալից սեղան մը, ընթերցողներու համար: Մասնաւոր խնամքով կը պահուին քանի մը *ձեռագիրներ*, որոնք երեք հարիւր տարուան հնութիւն մը ունին: Արտասահմանէն բազմաթիւ հեղինակներ, յարաբերութեան մէջ մտած են Մատենադարանին հետ եւ գրեթէ ամէն օր կը հասնին նոր հեղինակութիւններ, ինչպէս Ֆիրտուսիի թարգմանութիւնը, Օմար Խայեամի նուիրուած սքանչելի գործ մը, Ֆրիկի դիւանը, *Սպիտակ ձիաւորը*, *Երիտասարդ Հայաստան* բացառիկը եւն., եւն., որոնց համար մեր բարեջան մատենադարանապետը նամակագրութիւններու շարքով մըն ալ ծանրաբեռնուած է, ամսական 20-30 նամակ գրելով: Աւելի քան երեք հազար հատորներ եւս կան, օտար լեզուներով, որոնք առ այժմ ծրարուած կը պահուին, վասնզի *նախապատուութիւն տրուած է հայերէն գիրքերու*: Կը մշակուի կանոնագիր մը մատենադարանի գործառնութիւնը ճշդելու համար: Պիտի պատրաստուի նաեւ բոլոր գիրքերու ցուցակագրութիւնը անհրաժեշտ մանրամասնութիւններով»:

Ապա շնորհակալական խօսք կը յղէ Քաղաքական Ժողովին՝ այս բարեպատեհ կարգադրութեան համար (*Արաքս*, 22 Մայիս 1954, էջ 1):

Մէկ ու տարի ետս, եւ Շալճեան պիտի նշէր հարցին էութիւնը՝ անհատ գրադարանավարը ընդդէմ վարիչ մարմինին, կամ՝ անհատ ընդդէմ հիմնարկի.

«Թորգոմեան Մատենադարանի վարիչ Տիար Արտաշէս Գարտաշեանի ջանքերով, Մատենադարանի գրքերու, թերթերու եւ հանդէսներու քանակութիւնը հետզհետէ կը ճոխանայ:

«Ստացուած բոլոր թերթերը, կանոնաւորապէս կազմուած եւ դասաւորուած են: Ամէն կողմէ կը հասնին նուէրներ: Վերջերս ստացուած է նաեւ *Հայրենիք* ամսագրին երեսնամեայ հաւաքածոն, որուն կազմութիւնը վստահուած է հայ կազմարարի մը: Պ. Գարտաշեանի ջանքերով վերջերս ձեռք բերուած է նաեւ զոյգ մը ձեռագիրներ, շատ անխնամ վիճակի մէջ:

«Ցաւալի է որ Մատենադարանը շատ խեղճ պիւտճէ մը ունի, ընթերցման յարմար վայրէ զուրկ է: Մասնաւոր պատասխանատու պաշտօնեայ մը չունի, որպէսզի հանրութեան սպասարկէ: Եւ եթէ կամաւոր մատենադարանապետ մըն ալ չի գտնուէր, ո՜վ գիտէ թէ ի՜նչ ողբալի ճակատագրի մը պիտի ենթարկուած ըլլային սա՛ հարիւրաւոր կամ հազարաւոր մատեանները, որոնք յանձնուած են օրն ի բուն հայ մշակոյթի մասին ճառամաբանող մեր ազգային վարիչներուն...» (*Արաքս*, 15 Հոկտեմբեր 1955, էջ 2):

1957 Ապրիլին Թորգոմեան իր դուռները կը բանայ ընթերցողներուն առջեւ: Շալճեան կ'արձանագրէ Գարտաշեանի անհատապէս խաղացած բացառիկ դերը.

«Թորգոմեան Մատենադարանը վերջապէս բացաւ իր դուռները հանրութեան առջեւ: Գրադարանապետն է Տ. Զգօն Գուշակեան, որ գործին նուիրուած եւ օգտակար ըլլալու ամէն կերպով տրամադիր անձնաւորութիւն մըն է: Այս պատեհութեամբ աւելցնեմ թէ Թորոմեան Մատենադարանը շատ բան կը պարտի Տիար Արտաշէս Գարտաշեանի, որ առանց որեւէ վարձատրութեան, փոշիներուն մէջէն դուրս բերաւ հազարաւոր հայերէն գիրքեր, թերթեր, հանդէսներ, դասաւորեց, կանոնաւոր կերպով արձանագրեց, եւ ներկայանալի վիճակի մը մէջ դրաւ զանոնք, չմոռնալով նաեւ թղթակցութիւն պահել արտասահմանի բոլոր հայ հեղինակներու եւ մշակութային կազմակերպութեանց հետ: Այս գնահատելի աշխատութիւնը պատիւ կը բերէ Պ. Արտաշէս Գարտաշեանի եւ Թորգոմեան Մատենադարանի պատմութեան մէջ իր անունը յիշատակելի կը մնայ ընդմիշտ» (*Արաքս*, 13 Ապրիլ 1957, էջ 1):

Արդարեւ, Շալճեանի գրուածքներուն մէջ կը գտնուի Սփիւռքի խնդիրներէն մէկը՝ գրադարաններէ անդին: Այն է՝ անհատի հարցը ընդդէմ հիմնարկի: Կարող անհատի մը գոյութեամբ՝ ըլլայ ան պաշտօնեայ թէ ղեկավար, սփիւռքեան միաւոր մը կրնայ բարգաւաճիլ եւ զարգանալ հսկայ քայլերով, անհատը իր վրայ վերցնելով հիմնարկի մը պատասխանատուութիւնը, բայց, բնականաբար, անկարող ըլլալով հիմնարկին պարգեւել որակային յարատեւութիւն: Հիմնարկի մը հիմքերն են որոնք պիտի օժտեն այդ յարատեւութիւնը, եւ այդ ծիրին մէջ անհատը կրնայ փայլիլ իր ողջ կարողութիւններով: Հիմա մէկ կողմ ձգենք որեւէ հիմնարկի մը արտադրած սահմանափակումները եւ անհատը իրեն ենթարկելու իրողութիւնը: Ասիկա ուրիշ հարց է: Մենք այստեղ կը խօսինք հիմնարկի մասին՝ ինչպէս որ կայ: Եթէ կայ, հիմնարկին հիմնարկայնացումը պարտադիր է անոր որակային յարատեւութեան համար:

Վերադառնալով Թորգոմեանին, Գարտաշ- ➪ 4

ՋԱՀԱԿԻՐ

## ԱԴՐԲԷՋԱՆԻ ՆԱԽԱԳԱՀԸ ՍՏՈՐԱԳՐԵԼ Է...

3

այլ շէնքեր կառուցուեն: Խորհրդային տարիներին Ադրբէջանում աւերուել է աւելի քան 1500 մզկիթ, եւ Լեռնային Ղարաբաղի հայերը չպէտք է վճարեն Խորհրդային ժամանակների պարտքերը: Սա շատ վտանգաւոր նարատիւ է, որովհետեւ վախենամ Ադրբէջան ցանկանում է կրօնական ենթատեքստ հաղորդել այս ամբողջ իրավիճակին: Հակամարտութեան մէջ չկայ կրօնական ենթատեքստ: Հայաստանում ունենք մահմեդական փոքրամասնութիւն եւ գործող մզկիթ: Սա է իրականութիւնը», - ընդգծել է Փաշինեանը:

Վարչապետի խօսքով՝ Ադրբէջանի նախագահը իր ելոյթում օգտագործել է վիրաւորական խօսոյթ՝ ընդգծելով «կապիտուլիացիա» բառը:

«Տպաւորութիւն է, թէ Ադրբէջանը որդեգրել է ռեւանշի քաղաքականութիւնը, եւ, միգուցէ, դա է Ադրբէջանի քաղաքականութիւնը: Նշուեց, որ մեր պատմութիւնը շատ բարդ է, եւ սա պատմական հանդիպում է, բայց ինչ նպատակով ենք մենք այն օգտագործում՝ ատելութեա՞ն, ագրեսիւ հռետորաբանութեան, թէ՞ մենք ցանկանում ենք օգտագործել այս հարթակը իրավիճակը բարելաւելու համար: Կարծում ենք, որ պէտք է օգտագործենք այս հարթակը կառուցողական նպատակների համար: Հպարտ եմ, որ մեր կառավարութիւնը նոյնիսկ կործանարար պատերազմից յետոյ անցկացրեց ազատ եւ մրցակցային ընտրութիւններ: Լուծումը ժողովրդավարութիւնն է, թափանցիկութիւնն է, երկխօսութիւնն է եւ յարգանքն է մեր տարածաշրջանի բոլոր երկրների հանդէպ», - եզրափակեց Փաշինեանը:

## ԳՐԱԴԱՐԱՆԷՆ ԱՆԴԻՆ

3

եան կազմած է երկու քարթարաններ՝ հեղինակային անուանացանկով եւ գիրքերու ու մամուլի խորագիրներով:

Գարտաշեան գրադարանավար կը մնայ 1952-1965-ին: Իրմէ վերջ տեղի կ'ունենայ Շալճեանի կանխատեսածը վերջընթեր գրութեան մէջ: Թորգոմեանի յետագայ պատմութիւնը անտեսումի, վերականգնումի, քանդումի, կրկին վերականգնումի ընթացք մը եղաւ, 1990-ականներուն սկիզբը արդէն անգործածելի դառնալով քարթարանները:

2006-ին գրադարանին գիրքերը կը տեղափոխուին չորս տասնամեակ առաջ անհեռատես որոշումով փակուած՝ Առաջնորդարանին շրջափակը գտնուող Աբգարեան դարմանատան շէնքը, իսկ մամուլը՝ եկեղեցիին նկուղ-նայարկը:

Այսօր, Թորգոմեանը՝ իր գիրք-մամուլի երկակի գոյութիւններով, լաւ ընթացքի մէջ է՝ դարձեալ անհատական ջանքերու շնորհիւ, ընթերցողներու խպառ բացակայութեան պայմաններու տակ: Գիրքերը կը վերադասաւորուին եւ վերացանկագրուին Շաքէ Մարգարեանի կողմէ, եւ (չ)ընթերցողները ընթերցելու համար կրնան ուղղակի դիմել իրեն, իսկ մամուլը՝ ցանկագրուած Հայաստանէն հրաւիրուած մասնագէտի մը կողմէ, մատչելի է Սրբազան Առաջնորդ Հօր անձնական թոյլատրութեամբ: Բայց եթէ յետգարտաշեանական շրջանը ապրեցաւ անկումներու փուլեր, ի՞նչ երաշխիք կայ որ 20-30 տարի ետք նոյնը չկրկնուի: Անհատ՝ ընդդէմ հիմնարկի:

Չխօսեցանք ընթերցողի գործօնին մասին: Ընթերցողներու կայուն խմբակի մը գոյութիւնը, անշուշտ, պիտի խանգարէր անտեսումներն ու քանդումները: Այսինքն՝ վերահսկողութիւն վարէն դէպի վեր: Երբեք տեսա՞ծ էք որ Սփիւռքի մէջ վարէն վեր հսկողութիւն տեղի ունեցած ըլլայ՝ որեւէ ոլորտի մէջ:

**Ց. Գ.** – Առ ի տեղեկութիւն, Թորգոմեանի մամուլի բաժինը ունի քանի մը հազուագիւտ հաւաքածոներ՝ որոնք չկան Հայաստանի գրադարաններուն մէջ: Կայ Գահիրէի *Փարոսի* (1897-1898, 1901-1902) ամբողջական հաւաքածոն, որուն երկրորդ օրինակ մը կը գտնուի միայն Վիեննայի Մխիթարեաններուն մօտ, Փարիզի Նուպարեանը ունենալով անոր ոչ-ամբողջական հաւաքածոն, իսկ ամբողջապէս բացակայելով Հայաստանի մէջ: Կայ Գահիրէի *Նոր օրը* ամբողջութեամբ (1900-1901), որմէ լոկ առանձին համարներ կը գտնուին Երեւանի Ազգային Գարադարանն ու Մատենադարանը: Կայ Պոլսոյ *Արեւելքի* 1887 թուականը, որ կը գտնուի ոչ Հայաստան, ոչ Փարիզ: Պոլսոյ *Ազատամարտի* (1909-1914) ամբողջութիւնը եւս կը բացակայի Հայաստանի մէջ, Թորգոմեանն ու Գաhիրէի Փալանճեան գրադարանը (վերջինս՝ արդէն անգործածելի) ունենալով անոր լրիւ հաւաքածոն:

## ԼԵՒՈՆ ՏԷՐ-ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՀՐԱԺԱՐԱԿԱՆԻՆ 25-ԱՄԵԱԿԸ՝ ՆԱԽԱԳԱՀԻՆ ՏԵՍԱՆԿԻՒՆԷՆ

1

համոզուած էր, որ անոնց յանձնումով աւարտած կ'ըլլար ղարաբաղեան հարցի կարեւոր փուլ մը:

**Դ. Պաքու**

Ազըրպէյճանական կողմի վճռական մեկնաբանութիւնը կը կայանայ անոր կարծիքի վճռական բացակայութեան մէջ: Յօդուածին մէջ միայն մէկ անգամ անցողակի կերպով կը նշուի Պաքուի կարծիքը, երբ ան, Ստեփանակերտի նման, կը մերժէ եռեակին փաթեթային առաջարկը. «Ստեփանակերտն ու Բաքուն կտրականապէս մերժում են փաթեթային տարբերակը»: Միայն այսքան:

**Նախագահի հրաժարական**

*Ազատութիւն ռադիոկայան.* «Ուղիղ 25 տարի առաջ՝ այս օրը [3 Փետրուար 1998], Հայաստանի առաջին նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեանը հրաժարական ներկայացրեց՝ արձանագրելով, որ իր առջեւ դրուե՛լ է նման պահանջ յայտնի ուժերի կողմից»:

Յայտնի ուժերն էին Ռոբերդ Քոչարեան – Սերժ Սարգսեանն ու Վազգէն Սարգսեանը:

*Ազատութիւն* կը պնդէ՝ որ տեղի ունեցածը իշխանափոխութիւն էր. «Մինչդեռ, իրականում ամէն ինչ աւելի քան լուրջ էր. Երեւանում ներիշխանական պայքարը խորանում էր ժամ առ ժամ: Առաջինը, ըստ դիւանագիտական գաղտնի հեռագրերի, այդ մասին կռահում է Ռուսաստանի արտգործնախարար Եւգենի Պրիմակովը»:

**ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. Լեւոն Տէր-Պետրոսեանի հրաժարականին գլխաւոր պատճառը, իրօք, ներիշխանական պայքարն էր, Ռոբերդ Քոչարեան – Սերժ Սարգսեանի բաւական ուժեղ նկրտումները հասնելու իշխանութեան: Այս պայքարը մանրամասն ուսումնասիրած է Ստեփան Աստուրեան իր անգլերէն յօդուածին մէջ՝ ‘From Ter-Petrosian to Kocharian: Leadership Change in Armenia’ (*UC Berkeley: Berkeley Program in Soviet and Post-Soviet Studies,* 2000, https://escholarship.org/uc/item/0c2794v4): Կ'արժէ կարդալ:

Հրաժարականէն անդին, *Ազատութիւնի* յօդուածին միւս մեկնաբանութիւնները ներկայացուած են դիտաւորեալ բացթողումներով:

2. «Ադրբէջանը սկսել էր առաջին պայմանագրերը կնքել գազատարների ու նաւթամուղների անցկացման շուրջ», կը շեշտադրէ *Ազատութիւնը*: Ըսել կ'ուզէ, 1997-ին Ազըրպէյճան սկսած էր հզօրանալ:

Գաղտնազերծուած փաստաթուղթերուն մէջ կը գտնուի Ռուսաստանի արտաքին գործոց նախարար Եւգենի Փրիմաքովի Ուաշինկթոն ղրկած 1997 թուակիր դիւանագիտական հեռագիր մը, ուր գրուած է. «Ժամանակը աշխատում է Երեւանի դէմ. մինչ Ադրբէջանը հարստանում է, Հայաստանը գտնւում է լճացման մէջ»:

Այսպէս, երկիցս շեշտելով Ազըրպէյճանի ատիճանական հզօրացումը, *Ազատութիւնը* յստակօրէն կ'ուզէ բացատրել՝ որ 5+2 տարածքները յանձնելու եւ ղարաբաղեան հարցը շուտով լուծելու Տէր-Պետրոսեանի ձգտումը աւելի քան արդարացի էր, քանի որ ուժային յարաբերութիւններու խախտումէն եւ Ազըրպէյճանի հզօրացումէն ետք հարցը կրնար լուծուիլ վերջինին օգտին:

Տէր-Պետրոսեանի նախատեսումը ճիշդ էր եւ այսօր կը տեսնենք թէ ինչպէս Ազըրպէյճան կը կորզէ իր ուզածը՝ առանց բանակցութիւններու, կամ բանակցութիւնները տապալելու գնով:

Մէկ կէտ մը, սակայն, կը վրիպի *Ազատութիւնէն*: Եթէ 1997-ին արդէն յստակ էր Ազըրպէյճանի հզօրացումը, ինչո՞ւ այդ ժամանակ ան պիտի ընդունէր ստանալ որոշեալ տարածքները: Չէ՞ որ յետագային պիտի կրնար հասնիլ աւելիին, ինչպէս տեղի կ'ունենայ այսօր:

3. ԱՄՆ-Ֆրանսա-Ռուսաստան եռեակը ներկայացուած է իբրեւ միասնական ճակատ: Փաստաթղթային այս առերեւութականութիւնը արդեօ՞ք կը համապատասխանէ չգրուած իրական խմորումներուն: Ռուսաստանի առնչութեամբ կարելի է պարզապէս դիտել դէպքերու յետագայ զարգացումը՝ մինչեւ իր կովկասեան ներկայութեան ընդլայնումը 44-օրեայէն ետք, տեղադրուած «խաղաղապահներ»-ուն ընդմէջէն:

4. Արդեօ՞ք 1997 թուականի եռեակի փաթեթային եւ ապա փուլային տարբերակներուն կտրական մերժումը Քոչարեանի կողմէ բխած էր լոկ անձնական կեցուածքէ: Դարձեալ, դէպքերու յետագայ զարգացումը պիտի բերէր Հոկտեմբեր 27-ը, որմէ ետք արդէն մակերես պիտի ելլէր հայ-ռուսական, կամ Քոչարեան-Փութին յարաբերութեան սերտութիւնը (ամենայն հաւանականութեամբ՝ կազմաւորուած Քոչարեանի Ղարաբաղի շրջանէն, երբ տակաւին Պորիս Ելցինն էր նախագահը, բայց Ռուսաստանը կը կառավարուէր ներքին անյայտ ուժերու կողմէ), որ պիտի շարունակուէր նաեւ Սերժ Սարգսեանի օրով: Այս ընթացքին Հայաստանը պիտի դառնար Ռուսաստանի ստրուկը քաղաքական եւ տնտեսական առումներով, անկարող ըլլալով շարժիլ առանց Ռուսաստանի հրամանին, վարել այլազանուած քաղաքականութիւն, կամ սպառազինուիլ ոչ-ռուսական աղբիւրներէ, ընդհուպ մինչեւ խաղաղապահներուն տեղադրութիւնը 44-օրեային շնորհիւ:

5. Յօդուածին մէջ իբրեւ արտաքին խաղացողներ ներկայացուած են միայն ԱՄՆ-ը, Ռուսաստանը եւ Ֆրանսան: Բայց չէ՞ որ Ազըրպէյճանի արտաքին յարաբերութիւններուն մէջ որոշիչ դեր կը խաղային հզօրագոյն Իսրայէլը եւ հզօրացող Թուրքիան, շատ աւելի որոշիչ քան ԱՄՆ-ը եւ Ֆրանսան: Ազըրպէյճան պիտի չհարցնէ՞ր Իսրայէլի կարծիքը, կամ Իսրայէլ պիտի չթելադրէ՞ր իր կամքը, մինչ Ազըրպէյճան սկսած էր դառնալ Իսրայէլի ռազմարդիւնաբերութեան գլխաւոր սպառողներէն մէկը:

**ԱՄՓՈՓՈՒՄ**

Այսօր, Լեւոն Տէր-Պետրոսեանի հրաժարականէն 25 տարի ետք, աւելի քան յստակ է Ազըրպէյճանի նկրտումը՝ ստանալու առաւելագոյնը, իր թիկունքին ունենալով Եւրամիութիւնը՝ կազմատակարարումի շնորհիւ, Թուրքիան, Իսրայէլը, եւ վերջերս արդէն Ռուսաստանը: Վերջինս, հրաժարելով կատարել դաշնակցային ստորագրեալ պարտականութիւնները Հայաստանի նկատմամբ, անցաւ «ուժեղ»-ներուն կողմը: Ան ոչ միայն մերժեց համաձայնագրային պարտաւորութիւնները, այլեւ ամէն կերպով փորձեց խափանել Հայաստանի այլընտրանքներ որոնելու փորձերը, միաժամանակ կատարելապէս անխախտ պահելով Հայաստանէն ստացող քաղաքական-տնտեսական-ռազմական շահերուն եւ գերշահերուն ամբողջականութիւնը:

*Ազատութիւնի* փաստաթուղթերը կարեւոր են, բայց աւելի կարեւոր է անոնց ընթերցումը ընդհանուր բնաբաններու մէջ:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1935 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 9 ՄԱՐՏ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԻԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٣٥ الخميس ٩ مارس ٢٠٢٣


## ԹՈՒՐՔԻՈՅ ՀԶՕՐԱՑՈՒՄԸ ԵՒ ՌՈՒՍ-ԹՐՔԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

**Թուրքիոյ ռազմական հզօրացումը՝ ի հաշիւ ժողովրդավարութեան**

Իրականութիւններ կան՝ որոնց մասին մենք հայերս չենք արտայայտուիր: Չենք ուզեր իրագեկ դառնալ մեզի համար ոչ հաճելի իրականութիւններուն: Ասոնցմէ մէկն է Թուրքիոյ ռազմական կարողութիւնը:

Թուրքիոյ ներկայ հարցերը յաճախ կը շրջանակենք նախագահ Ռեճէպ Թայիպ Էրտողանի անձին շուրջ, կ'ուրախանանք՝ երբ այս կամ այն պատճառով իր ժողովրդականութիւնը քիչ մը կը նուազի, նախագահի անձնական ճախողութիւն մը կը ներկայացնենք իբրեւ պետական ճախողութիւն, անտեսելով՝ որ Էրտողանի ռեւէ յաջորդ մը պիտի վարէ նոյն ա-տաքին քաղաքականութիւնը:

Վերջին ահռելի երկրաշարժէն ետք դարձեալ չզլացանք արտայայտել մեր ուրախութիւնը՝ դիտել տալով Էրտողանի յետագայ թուլացումը իբրեւ նախագահ:

Բայց երկրաշարժի կապակցութեամբ նաեւ առաջ անցանք Էրտողանի անձէն եւ ընդհանուր առմամբ ուզեցինք Թուրքիան տեսնել իբրեւ երկիր մը՝ որ այլեւս չի կրնար նոյնը մնալ իր արտաքին նկրտումներուն նկատմամբ, կարծելով՝ որ երկրաշարժը պիտի տկարացնէ Թուրքիան:

Թուրքիան տկարացած տեսնելու մեր ցանկութիւնը, սակայն, դժուար է համատեղել իրական տուեալներուն հետ:

Երկիրը իր կարողութիւնը կառուցած է ժողովրդավարութեան, ազատ խօսքի, ազատագրուած մտածողութեան, ժողովուրդի լայն խաւերու բարեկեցութեան հաշուին, ռազմական կարողութիւնն ու ժողովուրդը դարձնելով երկու գրեթէ չհանդիպող զուգահեռ շերտագիծեր: Քանի որ ռազմականն ու ժողովուրդը զերծ են փոխազդեցութենէ, գինը պիտի վճարէ ժողովուրդը, իսկ ռազմական կացութիւնը եւ անկէ օգտուող այրերը պիտի մնան անդրդուելի:

Եթէ երկրաշարժի վնասները վերացնելու ծախսերը Թուրքիա պիտի կորզէ ժողովուրդէն, վերականգնումը՝ եթէ տեղի ունենայ, պիտի վճարէ անխօս, անձայն, զանգուայնացուած ժողովուրդը, Թուրքիոյ ռազմական դիրքը պիտի մնայ անվնաս, անոր ռազմական հզօրացումը պիտի ընթանայ անխախտ քայլերով:

Երկրաշարժը ոչ մէկ ազդեցութիւն պիտի ունենայ Թուրքիոյ ռազմական հզօրացումին վրայ: Իսկ Թուրքիա կը հզօրանայ ռազմապէս:

Յատուկ հետազօտական մեթոտներով, Global Firepower դասակարգած է աշխարհի 145 պետութիւններ՝ ըստ ռազմական հզօրութեան: Համաձայն այս դասակարգումին, 2023 թուականին առաջին երեք տեղերը կը գրաւեն յաջորդաբար ԱՄՆ, Ռուսաստան եւ Չինաստան, 11-րդ՝ Թուրքիա, 57-րդ՝ Ազրպէյճան, 94-րդ՝ Հայաստան ('2023 Military Strength Ranking,' https://www.globalfirepower.com/countries-listing.php):

Ճիշդ է, թիւերը միշտ կրնան ապակողմնորոշիչ ըլլալ, այլեւ կրնան փոխուիլ հաշուարկումի մեթոտներու փոփոխութեամբ, բայց Թուրքիոյ առկայութիւնը ցուցակին վերը կարելի չէ, եւ *պէտք չէ*, անցողակի աչքով դիտել:

Բացի այդ, ռազմական մարդուժի տեսանկիւնէն, 2020 թուականի տուեալներով, երկիրն ունի 355,000 գործունեայ ռազմական անձեր եւ 380,000 պահեստայիններ՝ 81 միլիոն հաշուող ժողովուրդի մը մէջ, այսպէս, ունենալով աշխարհի 15-րդ ամենաբարձր թիւով գործունեայ զինուորները եւ 17-րդ ամենաբարձր թիւով պահեստայինները ('The Turkish Military: In Numbers,' https://www.forces.net/world/turkish-military-numbers):

Վերջին երկու տասնամեակներուն, թրքական ռազմական վաճառքները տասնապատիկ աւելցան, արտահանումի գործարքը աճելով շուրջ 1,200%: Ըստ Թրքական Պաշտպանական Արդիւնաբերութեան Արտադրողներու Ընկերակցութեան (SaSaD) տուեալներուն, 2002-ին վաճառքները կը հանդիսանային մէկ միլիառ տոլլար եւ տարեկան արտահանումը՝ շուրջ 248 միլիոն տոլլար: 2021-ին վաճառքները հասան 10,1 միլիառ տոլլարի եւ տարեկան արտահանումը՝ 3,2 միլիառի (https://www.defensenews.com/top-100/2022/08/08/turkeys-defense-industry-eyes-export-expansion-as-government-navigates-geopolitical-stage/):

Թուրքիա ունի բազմաթիւ արտերկեայ ռազմակայաններ: Քաթարի ռազմակայանը յենակէտ մըն է Ծոցի վրայ ազդեցութեան: Սոմալիի եւ Լիպիոյ կայանները թրքական կարեւոր գոյութիւններ են ափրիկեան ցամաքամասին վրայ: Իրաքի եւ Սուրիոյ կայաններուն յայտարարուած առաքելութիւնը քրտական ազգայնականութեան դէմ պայքարն է, բայց ըստ էութեան կը հետապնդեն տարածաշրջանային շատ աւելի լայն նպատակներ: Ազրպէյճանի եւ տէ ֆաքթօ Թուրքիա դարձած Հիւսիսային Կիպրոսի կայանները՝ իրենց կարգին:

Արտա Մեւլիւթօղլու 2020-ին դիտել տուած է՝ որ «գալիք 10 տարուայ ընթացքին, Թուրքիա պիտի դառնայ գլխաւոր ռազմական արտահանողներէն մէկը դէպի Ասիական-Խաղաղական տարածաշրջանը», նշելով՝ որ տեղական զինային արդիւնաբերութիւն մը ստեղծելու Թուրքիոյ երկարատեւ փափաքը արդէն հասած է իր լրումին եւ պետութիւնը աւելի ու աւելի առիթներ կը փնտռէ իր սահմաններէն դուրս ('Turkish Defence: 2020,' *thebusinessyear*, 2 March 2020, https://www.thebusinessyear.com/mozambique-2020/tawanda-munaiwa-managing-director-bancabc-mozambique/vip-interview):

Այս եւ ուրիշ բազմաթիւ տուեալներ ցոյց կու տան ռազմապէս հզօրացող Թուրքիա մը: Հայերս բան մը չենք կրնար ընել անոր նկատմամբ: Կատարուածը փոքրիկ Հայաստանէն եւ սփիւռքեան յաճախ ինքնանպատակ լոպպիթական խումբերէն շատ աւելի վեր է: Այս ծիրին մէջ, Թուրքիոյ հետ Հայաստանի ձեռնարկած ներկայ բանակցութիւնները՝ հեռու Քոչարեան-Սարգսեան-Նալբանդեան փրոթոքոլներու աղմըկարար բարձրաձայնումէն, անխուսափելի քայլ մըն է, բայց բաւական տկար՝ թուրք-ազերիական դաշնակցային յարաբերութեան եւ միջակութային համախոհութեան պայման-

↳ 4

ԳԱՀԻՐԷ

## ԱՐԱՐԱՏ ՄԻՐԶՈՅԵԱՆԻ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ



Արարատ Միրզոյեան ելոյթ կ'ունենայ Արաբական Լիկայի նստաշրջանին

Մարտ 7-9-ին աշխատանքային այցելութեամբ Գահիրէ կը գտնուի Հայաստանի արտաքին գործոց նախարար Արարատ Միրզոյեան, մասնակցելու Արաբական Լիկայի արտաքին գործոց նախարարներու 159-րդ նիստին:

Մարտ 7-ին Միրզոյեան հանդիպում կ'ունենայ Արաբական Լիկայի ընդհանուր քարտուղար Ահմատ Ապուլ Ղէյթի հետ, որոնք կը շեշտեն հայ եւ արաբ ժողովուրդներու դարաւոր բարեկամութիւնը եւ փոխադարձ յարգանքը: Կը նշեն՝ որ հայկական ներկայութիւնը արաբական աշխարհի մէջ լաւագոյն օրինակն է քրիստոնեայ-մուսուլման համակեցութեան:

Միրզոյեան զրուցակիցին կը ներկայացնէ Ազրպէյճանի յարձակումներուն հետեւանքով տարածաշրջանին մէջ ստեղծուած իրավիճակը, ինչպէս նաեւ 2022 Դեկտեմբերէն ի վեր Լաչինի միջանցքի արգելափակումին պատճառով յառաջացած մարդասիրական ճգնաժամը Լեռնային Ղարաբաղի մէջ:



Արարատ Միրզոյեան՝ Եգիպտոսի արտաքին գործոց նախարար Սամէհ Շուքրիի հետ

Նոյն օրը Միրզոյեան հանդիպում կ'ունենայ Ալ-Ազհարի գերագոյն իմամ՝ շէյխ Ահմատ Մոհամմատ Ալ-Թայիպի հետ, որուն կը ներկայացնէ Հարաւային Կովկասի իրավիճակը եւ առկայ մարտահրաւէրները, տարածաշրջանին մէջ խաղաղութիւն հաստատելու հայկական ջանքերը եւ վերջին օրերու Ազրպէյճանի յայտարարութիւններն ու գործողութիւնները՝ որոնք ուղղուած են ապակայունացնելու իրավիճակը:

Նախարարը անթոյլատրելի կը համարէ Ազրպէյճանի կողմէ կրօնական գործօնին շահարկումները, ինչպէս նաեւ Հայաստանի ու հայ ժողովուրդի եւ արաբական աշխարհի միջեւ աւանդական ջերմ յարաբերութիւնները խաթարելու անհիմն փորձերը:

Համաձայն հայկական հաղորդագրութեան՝ «Գերագոյն Իմամը վերահաստատել է Հարաւային Կովկասում խաղաղութեան հաստատման վերաբերեալ դիրքորոշումը՝ վկայակոչելով 2020թ. Հոկտեմբերից ի վեր իր կողմից արուած յայտարարութիւնները: Տարածաշրջանում ժողովուրդների միջեւ հանդուրժողականութեան կոչերի համատեքստում Ահմադ Մոհամմադ Ալ-Թայիբը յիշատակել է նաեւ Հայոց Ցեղասպանութեան օրերին Գերագոյն Իմամ, շէյխ Սէլիմի ուղերձը՝ փրկել հայերին ու չմասնակցել կոտորածներին»:

Մարտ 8-ին Միրզոյեան ելոյթ կ'ունենայ Արաբական Լիկայի Խորհուրդի՝ նախարարական մակարդակով 159-րդ նիստին:

↳ 3

# ԶՕՐԱՎԱՐ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

Կը յաջորդէ Թորգոմ Սրբազանի ամփոփ խօսքը, կեդրոնանալով Պատուոյ Սուրի գաղափարական եւ բարոյական կողմին վրայ: Ան կ՚աւարտէ իր խօսքը.

«Ընդունեցէք զայն մեր Համբոյրին հետ՝ Ձեր անբիծ ճակտին, եւ թոյլ տուէք մեզի՝ մեր հոգւոյն խորէն անգա՛մ մըն ալ լսել արձագանգը սաղմոսերգուին անլուռ օրհնաբանութեան.

««Ես Անդրանիկ արարից զնա, եւ բարձր եղիցի բազուկ նորա...»»(41):

Սրբազան Առաջնորդը սուրը համբուրելէ ետք՝ զայն կը յանձնէ Զօրավարին, «որ ներկաներուն որոտընդոստ ծափերուն եւ կեցցէներուն մէջտեղ, ողջագուրուեցաւ երկու բարձրաստիճան եկեղեցականներուն հետ», ինչպէս կը նկարագրէ *Արեւի* քննախօսականը(42): Նուիրաբերումը կը կայանայ ներկաներուն «յոտնկայս որոտընդոստ ծափերու տարափին տակ», յետագային պիտի կրկնէր Սմբատ Յոխիկեան(43):

Լեւոն Հիւրմիւզ կ՚արտասանէ Արշակ Չօպանեանի *Օրօրը*(44):

Պաշտօնական արարողութիւնը վերջացած ըլլալով, դադարէն ետք Մուշեղ Արքեպիսկոպոս կը խօսի զուարճաբանութիւններով եւ անեքթոտներով համեմուած ճառ մը, չմոռնալով, անշուշտ, պատշաճօրէն ներկայացնել Զօրավարի զինուորական տաղանդը(45):

Վերջին խօսողը կ՚ըլլայ Անդրանիկ:

Խօսքին հիմքը հայրենիքին ծառայելու կարելիութենէն զրկուած ըլլալն է. «Ա՜հ, ի՛նչ ցաւ որ ես այսօր կ՚ապրիմ, ողջ եմ, բայց այնքան անզօր եմ [...] ծառայելու իմ դժբախտ հայրենիքիս»:

Կ՚ուրուագծէ հայկական սարսափներն ու թշուառութիւնները, կը նկարագրէ գաղթականները: Կը ներկայացնէ այսօրուայ կացութիւնը. «Ես ուզեցի օգնել իմ թշուառ հայրենակիցներուս, եւատոր համար՝ դիմել ժողովուրդին... ինչպէս ըրի հերու՝ Անգլիոյ եւ Ամերիկայի մէջ...: Բայց ահա մէկ ամիս առաջ՝ լուր եկաւ որ Թուրք բանակը, այն որ հայ զինուորին, հայ կամաւորին առջեւէն նապաստակներու պէս կը փախչէր, կը քալէ Կարսի եւ Աղեքսանդրապօլի վրայ...», եւ ցաւով կ՚աւելցնէ. «Հայաստանէն իմ այսօրուան բացակայութիւնս, ես չեմ ուզեր խօսիլ անոր մասին, ապագայ պատմաբանը, եթէ անկողմնակալ է եւ անաչառ, թո՛ղ ան գրէ, թող բացատրէ հայ ժողովուրդին անոր պատճառները եւ հետեւանքները»:

Արդարեւ, այսօրուայ բացակայութեան պատճառը իր ընկերոջ կողմէ թեւէն զարնուած ըլլալն է, արագ ակնարկով մը դիտել կու տայ ան. «Ես թշնամիէն չեմ վախնար, բայց պէտք չէ որ երբ ես անոր վրայ կը քալեմ, իմ ընկերը իմ թեւին զարնէ»(46):

Հանդէսի պահուն կը ստացուին հեռագիրներ Զագազիկի Ռամկավար Ակումբէն (Յ. Քարբերթեան), Մանսուրայի հայ գաղութէն (Մխիթարեան), Հ.Բ.Ը. Միութենէն (Վահան Մալէզեան), Թանթայի Հայ Ռամկավար Կուսակցութենէն (Գ. Գազազեան), Գահիրէի Ռամկավար Ակումբէն, սուրի հեղինակ Կարապետ Ա. Արիֆեանէն(47):

1926-ին, Հայաստանի Օգնութեան Կոմիտէի (ՀՕԿ) պատասխանատու քարտուղար Գրիգոր Վարդանեանի միջոցով սուրը կը նուիրուի Հայաստանի Պատմութեան Թանգարանին, ուր այսօր կը պահուի Ա 4345 համարին տակ(48):

**Մեկնում**

1920 Դեկտեմբեր 6-ի առաւօտեան ժամը 8 ու կէսի գնացքով Անդրանիկ կը մեկնի Աղեքսանդրիայէն դէպի Փոր-Սայիտ: Ողջերթի գացած էին Թորգոմ Եպս. Գուշակեան, Մուշեղ Արք. Սերոբեան, Հայկազուն Քհնյ. Ոսկերիչեան եւ բազմաթիւ ազգայիններ(49):

Կէսօրին գնացքը կը հասնի Զագազիկ: Զինքը դիմաւորելու եւ քանի մը վայրկեան տեսնելու համար կայարան փութացած էր հոծ բազմութիւն մը: Յ. Քարբերթեան կը հասցնէ կարդալ կարճ ուղերձ մը, որմէ ետք Զագազիկի Հայ Ռամկավար ակումբին կողմէ կը մատուցանուի ծաղկեփունջ մը(50):

Գնացքը Փոր-Սայիտ կը հասնի կէսօրէ ետք ժամը 4-ին: Դիմաւորելու եկած էին տեղւոյն հայ գաղութի գրեթէ բոլոր անդամները, առաջնորդութեամբ Փոր-Սայտի Աղքատախնամ Ընկերութեան ատենապետներ Միսաք Մասրաֆի եւ Յովհաննէս Միրասիէտեանի: Յատուկ ինքնաշարժներով Անդրանիկ եւ հետեւորդները կ՚առաջնորդուին Մարինա Փալաս Պանդոկը, ուր Մասրաֆի միջոցով բոլոր ժողովուրդը կը ներկայացուի անոր:



Պատուոյ Սուր՝ եգիպտահայութեան նուէրը Զօրավար Անդրանիկին

Շոգենաւը պատրաստ չըլլալով, անոնք երկու օր հիւր կը մնան քաղաքը(51): Բնականաբար, պիտի այցելէին այնտեղի յայտնի վրանաքաղաքը(52):

Անդրանիկ Փոր-Սայիտէն կը մեկնի (ճիշդ օրը յայտնի չէ, պէտք է ըլլայ 9-11 Դեկտեմբերին) Բենինսիւլառ Օրիէնթալ ընկերութեան Տոնկալա շոգենաւով եւ Դեկտեմբեր 15-ին Մարսէյլի նաւահանգիստը կը դիմաւորուի, ինչպէս միշտ, փառաւոր ընդունելութեամբ(53): Դեկտեմբեր 19-ին արդէն կը գտնուի Փարիզ(54):

**Եգիպտոս այցելութեան նպատակը**

Անդրանիկ իր հետեւորդներուն հետ Եգիպտոս կու գար՝ անկէ Կիլիկիա անցնելու եւ ազատագրական շարժում ղեկավարելու մտադրութեամբ: Բայց ծագած աղէտեալ կացութիւնը առիթ չի տար հասնելու իր նպատակին եւ կը վերադառնայ Փարիզ: Տակաւին նոր Փարիզ հասած, 1920 Դեկտեմբեր 21-ի յօդուածով այս հարցը կը բարձրացնէ *Արեւի* Փարիզի թղթակիցը. «Ամսոյս 19ին [Դեկտեմբեր 1920, Հ.Ա.], կիրակի իրիկուն Զօր. Անդրանիկ վերադարձաւ հոս [Փարիզ, Հ.Ա.] Եգիպտոսէն, որ վերջին հանգրուանը եղած էր իրեն դէպի մեր Քանանը, որուն դռներուն հասնիլ թոյլ չտրուեցաւ իրեն: Պ. Զանգալեան որ կ՚ընկերանար ազգային հերոսին, անցաւ որոշեալ վայրը շարունակելու համար իրեն վիճակուած գործը: Պօնաբարթեան նոյնպէս վերադարձած է»(55):

Համբարձում Երամեան նոյնպէս պիտի գրէր. «Բարիզ դարձին, Նուպարեան պատուիրակութենէն միսիօն մը կը ստանար յանուն Կիլիկիոյ ուր պիտի անցնէր Եգիպտոսի ճամբով: Եւ սակայն Կիլիկիոյ եւ Հայաստանի վերահաս աղէտները ու Սէվրի դաշնագրին ինչպէս եւ Ուիլսընեան ծրագրի անակնկալ վիժումը արգելք պիտի հանդիսանային իր այս նոր առաքելութեան»(56):

Արշակ Չօպանեան ի զուր կը փորձէ մուտքի անցագիր ճարել Անդրանիկին, ինչպէս կը պատմագրէ Անդրանիկ Չելեպեան: Եգիպտոս այցելութեան նպատակն էր «սպասել այնտեղ, մինչեւ որ Արշակ Չօպանեան Պէյրութի մէջ կարենար Կիլիկիա մուտքի անցագիր մը ապահովել Զօր. Կուրոյէն, որպէսզի Զօր. Անդրանիկ Կիլիկիա անցնելով ղեկավարէր այդ հողամասերը սեփական ուժերով եւ յաւելեալ կամաւորական գունդերով ազատագրելու ռազմական գործողութիւնները»(57):

* * *

Այսպէս, Զօրավար Անդրանիկի շուրջ մէկ ու կէս ամսեայ եգիպտական կեցութիւնը հայ գաղութին համար եղաւ ներշնչումի եւ ինքնագիտակցական վերապրումի գեղեցիկ պահ մը, առիթ մը ամենէն ժողովրդական զօրավարին ընդմէջէն տեսնելու իր իղձերուն իրականացումն ու անկումը միաժամանակ:

Իր այցելութիւնը կրնար վերածուիլ ժողովըրդական մեծ միթինկի եթէ չըլլային զսպումները, նախ ինքը՝ Զօրավարը, որ չուզեց աղմկալից ընդունելութիւններ, եւ ապա կազմակերպողները՝ որոնք, ի տես Հայաստանի ներկայ անկումներուն, նախընտրեցին հեռու մնալ քանակային կուտակումներէ:

(Վերջ 5)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

41. «Եգիպտահայութեան կողմէ նուիրուած պատուոյ սուրին յանձնումը Զօրավար Անդրանիկի», *Արեւ*, 8 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 91 (851), էջ 1-2:

42. «Եգիպտահայութեան կողմէ նուիրուած պատուոյ սուրին յանձնումը Զօրավար Անդրանիկի», *Արեւ*, 6 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 90 (850), էջ 2:

43. Սմբատ Յոխիկեան, նշ.յօդ.ը, էջ 6:

44. «Եգիպտահայութեան կողմէ նուիրուած պատուոյ սուրին յանձնումը Զօրավար Անդրանիկի», *Արեւ*, 6 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 90 (850), էջ 2:

45. «Եգիպտահայութեան կողմէ նուիրուած պատուոյ սուրին յանձնումը Զօրավար Անդրանիկի», *Արեւ*, 8 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 91 (851), էջ 2:

46. Անդ, էջ 2:

47. «Եգիպտահայութեան կողմէ նուիրուած պատուոյ սուրին յանձնումը Զօրավար Անդրանիկի», *Արեւ*, 6 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 90 (850), էջ 2:

48. https://historymuseum.am/collections_type/ եգիպտահայերի-կողմից-անդրանիկին-նվեր/

49. «Զօր. Անդրանիկի մեկնումը», *Արեւ*, 6 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 90 (850), էջ 2:

50. Յովհաննէս Սէքսէնեան (Զագազիկ, 8 Դեկտեմբեր), «Հերոսը կ՚անցնի...», *Արեւ*, 13 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 93 (853), էջ 2:

51. Գ. Թէքէեան, «Զօր. Անդրանիկ Բօր-Սայիտի մէջ», *Արեւ*, 10 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 92 (852), էջ 3:

52. Քնարիկ Աւագեան, «Զօրավար Անդրանիկ Օզանեանի գործունէութիւնը արտերկրում (1919-1927 թթ.)», *Պատմա-Բանասիրական հանդէս*, 1915, թիւ 2, էջ 156:

53. «Զօր. Անդրանիկ ի Մարսէյլ», *Արեւ*, 31 Դեկտեմբեր 1920, Զ. տարի, թիւ 101 (861), էջ 2:

54. Թղթակից (Բարիզ, 21 Դեկտեմբեր 1920), «Զօր. Անդրանիկ կը բացատրէ Հայաստանի պարտութեան պատճառները», *Արեւ*, 7 Յունուար 1921, Զ. տարի, թիւ 104 (864), էջ 1:

55. Անդ, էջ 1:

56. Համբարձում Երամեան, նշ. աշխ.ը, էջ 461:

57. Անդրանիկ Չելեպեան, *Զօրավար Անդրանիկ եւ հայ յեղափոխական շարժումը*, Լոս Անճելըս, 1984, էջ 640:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ԱԴՐԲԷՋԱՆԱԿԱՆ ԿՈՂՄԻՆ Է ՓՈԽԱՆՑԵԼ ՍԱՀՄԱՆԱԳԾՄԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՆՈՆԱԿԱՐԳԻ ՆԱԽԱԳԻԾ

Հայաստանն ադրբէջանական կողմին է փոխանցել սահմանագծման յանձնաժողովների աշխատանքի կանոնակարգի նախագիծ, սպասում է արձագանքին: Մարտի 1-ի Կառավարութիւն-Ազգային Ժողով հարցուպատասխանին յայտնեց վարչապետ Նիկոլ Փաշինեանը՝ տեղեկացնելով նաեւ, որ փոխանցել են խաղաղութեան պայմանագրի տարբերակը:

«Բայց արձագանք որպէս այդպիսին դեռ չունենք, որովհետեւ երբ մենք էլ ստանում ենք նմանատիպ փաստաթուղթ, դրա արձագանքի ձեւաւորումը տեւում է որոշակի ժամանակ, եւ ենթադրում է, որ որոշակի ժամանակից յետոյ ինչ-որ արձագանք կը լինի», - նշեց նա:

Վարչապետն ասաց, որ այս ընթացքում տեղի է ունեցել խաղաղութեան պայմանագրի շուրջ աշխատանքի երեք շրջափուլ, եւ աշխատանքն այդ ուղղութեամբ պէտք է շարունակենք. «Անկախ առերես հանդիպումներից այդ աշխատանքները նաեւ իրականացւում են, այսինքն՝ փաստաթղթային աշխատանքներ են իրականացւում»:

Աւելի վաղ արուած առաջարկները կոմունիկացիաների բացման, սահմանային անվտանգութեան ապահովման վերաբերեալ շարունակում են մնալ ↳ 4

ԱՐՑԱԽ

## ԱՐՑԱԽԻ ԵՒ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐՈՒՆ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐԸ

Արցախի եւ Ազըրպէյճանի ներկայացուցիչներուն միջեւ հանդիպումները անսովոր չեն, քննարկելու համար թեքնիքական հարցեր՝ հեռու քաղաքական բնաբաններէ:

Նման հանդիպումներ երկար ժամանակ է չէին կայացած: Առաջինը կը կայանայ Փետրուար 24-ին, ուր ձեռք կը բերուի շարք մը հարցերու վերաբերեալ համաձայնութիւններ եւ կը քննարկուի փակ պահուող Լաչինի միջանցքի հարցը:

Կը քննարկուին Արցախի շրջափակումը վերացնելու, բնական կազի եւ ելեքտրականութեան մատակարարումին հետ կապուած հարցեր: Ձեռք կը բերուի համաձայնութիւն՝

↳ 4

## ԱԴՐԲԷՋԱՆՆ ԱՄԵՆԱԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿՈՎ ԱՇԽԱՐՀԻՆ ԽԱԲԵԼ Է ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԻ ՀԱՐՑՈՎ, ԵՒ ՍԱ ՊԷՏՔ Է ԱՐՁԱԳԱՆՔ ԲԵՐԻ. ՓԱՇԻՆԵԱՆ

Այսօր մեր ժողովրդի, Լեռնային Ղարաբաղի ժողովրդի իրաւունքի եւ անվտանգութեան պաշտպանութիւնն ամենակարեւորն է, Գերմանիայի հայ համայնքի հետ հանդիպմանը Մարտի 4-ին ասել է վարչապետ Նիկոլ Փաշինեանը:

Հայաստանի ղեկավարն անդրադարձել է ղարաբաղեան հակամարտութիւնը «Անջատում յանուն փրկութեան» սկզբունքով կարգաւորելու հնարաւորութեանը, որը պատերազմից յետոյ ընտրութիւններում Քաղաքացիական Պայմանագրի խոստումն էր, սակայն, յետագայում Երեւանը առաջ բերեց արցախահայերի իրաւունքների օրակարգը՝ առանց յստակեցնելու Լեռնային Ղարաբաղի հնարաւոր կարգավիճակը:

«Ես համարում եմ, որ այն քաղաքականութիւնը, որ մենք վարում ենք, ճիշտ քաղաքականութիւն է, եւ այն պոզիտիւ արտայայտութիւնները, որ մենք կարող ենք տեսնել, այդ

↳ 4

1 ↳

## ԱՐԱՐԱՏ ՄԻՐԶՈՅԵԱՆԻ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ



Արարատ Միրզոյեան՝ Ալ-Ազհարի գերագոյն իմամ՝ շէյխ Ահմատ Մոհամմատ Ալ-Թայիպի հետ:

Հակիրճօրէն ներկայացնելէ ետք հայ-արաբական դարաւոր բարեկամութիւնը, Ցեղասպանութենէն ետք հայերուն գտած ապահով ապաստանը եւ բարգաւաճումը արաբական երկիրներու մէջ, Երեւանի Մատենադարանի մէջ խնամքով պահուող եւ ցուցադրուող արաբական ձեռագիրները, կ՚անցնի Լեռնային Ղարաբաղի ներկայ դրութեան, ի միջի այլոց, ըսելով. «Ցանկանում եմ ընդգծել, որ Հայաստանը մերժում է ուժի կամ ուժի սպառնալիքի կիրառումը եւ փորձում է հարեւանների հետ բանակցել կառուցողական դիրքերից եւ հաւատարիմ է բոլոր չկարգաւորուած խնդիրներին դիւանագիտութեան միջոցով արդարացի լուծումներ գտնելուն: Մեր անկեղծ ջանքերին ի պատասխան, Ադրբէջանը շարունակում է իր ատելութեան խօսքն ու այլատեացութեան հռետորաբանութիւնը, ինչպէս նաեւ ագրեսիւ եւ առաւելապաշտական գործողութիւնները»:

Ապա կը ներկայացնէ Լաչինի ապօրինի արգելափակումը եւ անկէ բխած մարդասիրական աղէտը, նշելով. «Լեռնային Ղարաբաղի հայերի իրաւունքների եւ անվտանգութեան երաշխիքների շուրջ տեղական իշխանութիւնների հետ բանակցութիւններ վարելու փոխարէն՝ Ադրբէջանի բարձրագոյն ղեկավարութիւնը կոչ է անում արցախահայութեանը լքել իրենց տները՝ նպատակ ունենալով նրանց զրկել հայրենիքից եւ կեանքի կոչել էթնիկ զտումների իր քաղաքականութիւնը»:

Զեկոյցը կ՚աւարտէ. «Ցաւօք, մեր հարեւան Ադրբէջանը շարունակաբար մանիպուլացնում է Հայաստանի եւ Ադրբէջանի յարաբերութիւնների կարգաւորման հարցերն ու Լեռնային Ղարաբաղի հիմնախնդիրը միջազգային տարբեր հարթակներում՝ յատկապէս այն կազմակերպութիւններում, որտեղ Հայաստանը ներկայացուած չէ, ինչպիսիք են Իսլամական Համագործակցութեան Կազմակերպութիւնը և Զմիաւորման շարժումը՝ փորձելով դրանց տալ կրօնական երանգ եւ օգտագործելով իսլամական համերաշխութեան գգայուն գաղափարախօսութիւնը: Մենք ակնկալում ենք, որ նման փորձերը կը մերժուեն եւ մեր բարեկամ արաբական երկրներին չեն ներքաշի կրօնական տարաձայնութիւնների դաշտ: Մենք պէտք է կանխենք բացառապէս քաղաքական եւ հումանիտար բնոյթի խնդիրներին կրօնական երանգ հաղորդելու յետագայ ցանկացած փորձ»:

Նոյն օրը Միրզոյեան հանդիպումներ կ՚ունենայ Լիբանանի արտաքին գործոց նախարար Ապտալլահ Պու Հապիպի եւ Էմիրաթներու պետական նախարար Խալիֆա Ալ Մարարի հետ:

Մարտ 9-ին՝ հանդիպում Եգիպտոսի արտաքին գործոց նախարար Սամէհ Շուքրիի հետ, որուն կը ներկայացնէ Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ յարաբերութիւնները կարգաւորելու վերջին զարգացումները, տարածաշրջանին մէջ խաղաղութիւն եւ կայունութիւն հաստատելու ուղղութեամբ Հայաստանի տարած ջանքերը եւ վերջին օրերը Լեռնային Ղարաբաղի մէջ Ազըրպէյճանի կողմէ լարուածութեան սրումը, յիշեցնելով՝ որ Ազըրպէյճան կը շարունակէ փակ պահել Լաչինի միջանցքը: Միաժամանակ անթոյլատրելի կը համարէ Ազըրպէյճանի կողմէ կրօնական գործօնի շահարկումներն ու անհիմն փորձերը, որոնք կը հետապնդեն կրօնական երանգ հաղորդել բացառապէս քաղաքական եւ մարդասիրական խնդիրներուն եւ մոլորեցնել միջազգային հանրութիւնը:

Ապա կը հանդիպի Ղպտի Ուղղափառ Եկեղեցւոյ առաջնորդ՝ Աղեքսանդրիոյ Պապ եւ Սբ. Մարկոսի աթոռի պատրիարք Թաւադրոս Բ.-ին: Պապը կ՚ընդգծէ Եգիպտոսի հայ համայնքի ունեցած նշանակալի դերակատարութիւնը, որ իւրօրինակ կամուրջի դեր կը կատարէ երկու հնագոյն քաղաքակրթութիւններ ներկայացնող հայ եւ արաբ ժողովուրդներուն միջեւ: Կը նշէ նաեւ հայ եւ ղպտի քրիստոնեայ եկեղեցիներու առաջնորդներուն միջեւ հաստատուած՝ ընդհանուր արժէքներու եւ փոխադարձ յարգանքի վրայ հիմնուած ամուր կապերը:

Միրզոյեան կ՚այցելէ նաեւ Գահիրէի Ազգային Առաջնորդարան եւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի:

*Յիշեցնենք, որ Փետրուար 12-ին, Ազըրպէյճանի արտաքին գործոց նախարար Ճէյհուն Պայրամով աշխատանքային այցելութեամբ կը գտնուէր Եգիպտոս, ուր հանդիպում կ՚ունենար Եգիպտոսի արտաքին գործոց նախարար Սամէհ Շուքրիի հետ: «Հայաստան կը շարունակէ սադրանքներ կազմակերպել եւ խարխլել [խաղաղութեան] գործընթացը», այս առիթով կը յայտարարէր Պայրամով:*

Զ.

ԽՈՀԵՐ

## ԹՈՐԳՈՄԵԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆՆ ՈՒ ԿԱՏԱՐԵԱԼ ԼՈՒՐԸ

### ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Քանի որ անցեալ «Խոհեր»-ուն մէջ խօսք բացուեցաւ Գահիրէի Թորգոմեան Մատենադարանի սկզբնական տարիներու մասին, ահաւասիկ տեղեկութիւն մը եւս անոր կազմաւորումի շրջանէն:

Երուանդ Մսրլեանի *Սաւառնակ* շաբաթաթերթը 1946 Օգոստոս 31-ին կը հրատարակէ Աղեքսանդրիայէն ղրկուած լուր մը՝ յայտնի գրավաճառ եւ գրող Ներսէս Ղազիկեանի ստորագրութեամբ (Փարոս ծածկանունով).

«Կարգադրութեամբ Առաջնորդ Ս. Հօր եւ Ազգային իշխանութեան, նախորդ շաբթու Գահիրէէն Պ. Մարտիրոս Պալեան յատկապէս Աղեքսանդրիա եկաւ, կարգի դնելու եւ Գահիրէի Թորգոմեան Մատենադարանը փոխադրելու համար քաղաքիս հանգուցեալ Գառնիկ Տէօքմէճեանի ճոխ գրադարանը, որ կը բովանդակէ 2000 թանկարժէք հատորներ: Հանգուցեալ Գառնիկ Տէօքմէճեանի որդին՝ Պ. Պարոյր Տէօքմէճեան խիստ զեղչեալ գինով մը՝ 500 Եգ. ոսկիի ծախած է սոյն հատորները Թորգոմեան Մատենադարանին յատկացնելու համար: *Սաւառնակ*ի թղթակիցը պիտի թելադրէ Ս. Հօր որպէսզի այդ հարուստ եւ ճոխ Մատենադարանը յառաջիկային Երեւանի պետական Մատենադարանը փոխադրուի» (Փարոս (Աղեքսանդրիա), «Աղեքսանդրեան արձագանգ. Թորգոմեան Մատենադարանին համար», *Սաւառնակ*, 31 Օգոստոս 1946, էջ 7):

Լուրը կատարեալ է եւ ամբողջական:

Կը գծագրուի բարենպաստ որոշում կայացնողները՝ գաղութին գլուխը գտնուող Առաջնորդ Մամբրէ Արք. Սիրունեանի եւ Ազգային Իշխանութեան ընդմէջէն:

Կը գծագրուի գործադրող նուիրեալ ձեռքը՝ գեղագիր եւ քարտէզագիր Մարտիրոս Պալեանի ընդմէջէն, իբրեւ հասարակական անվճար գործիչ՝ անդամ Քաղաքական Ժողովի:

Կը գծագրուի նիւթական նուազագոյն ակնկալիքով գիրք նուիրողը՝ Պարոյր Տէօքմէճեանի ընդմէջէն: Բայց նաեւ գործնական մտածողութիւնը Ազգային Իշխանութեան, որ չէ խնայած իր դրամը՝ փոխան 2000 գիրքի:

Վերջապէս, լրատու Ներսէս Ղազիկեանի հայրենասիրութիւնը՝ 2000 գիրքերը Հայաստան տեղափոխելու ցանկութեամբ:

Զիրար լրացնող դէմքերը անկեղծ են իրենց գործողութիւններուն մէջ: Լուրը՝ անկեղծ է: Անկեղծ է նաեւ Ներսէս Ղազիկեան՝ երբ կ՚ուզէ գիրքերը ղրկել Հայաստան, քանի որ ներգաղթի նախապատրաստութիւններու բուռն ու եռանդուն շրջանն էր 1946-ը եւ ճիշդ երկու տարի ետք Ղազիկեան պիտի ըլլար Բ. Կարաւանի ներգաղթողներէն մէկը իր տիկնոջ եւ վեց զաւակներուն հետ:

Բայց եգիպտահայութեան գրադարանային տասնեակ տարիներու պատմութեան հետեւող մը գիտէ՝ որ նման կատարեալ շրջագիծը եզակի երեւոյթ է: Այլեւ կարելի է հաստատել անտարբերութեան պատճառով յաւէտ կորուսեալ անձնական գրադարաններու դէպքեր (ընդհանուր առմամբ՝ այլ ոչ անպայմանօրէն Թորգոմեանի հետ կապուած):

Վերոյիշեալ լուրը՝ ամբողջապէս անկեղծ ու իրական, կարելի է հակակշռել, աւելի ճիշդ՝ համակշռել, անցեալ «Խոհեր»-ու Սիսակ Շալճեանի լուրերու շարքով, ուր կարելի էր գտնել անհատի երեւոյթը ընդդէմ հիմնարկային գործօնին, գործնական գետինի վրայ իրական գործողութիւնները վերագրելով առաջինին:

ՀԱՅԱՍՏԱՆ

## «ՄԱՐՏԻ 1-Ը» ԲԱՑԱՅԱՅՏՈՒԱԾ Է, ԲԱՅՑ ՄԵՂԱՒՈՐՆԵՐԸ ԴԵՌԵՒՍ ՊԱՏԺՈՒԱԾ ՉԵՆ». ՓԱՇԻՆԵԱՆ

Լրանում է մարտիմէկեան արիւնալի իրադարձութիւնների 15-րդ տարին:

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը իշխանութեան միւս ներկայացուցիչների հետ Մարտի 1-ի առաւօտեան մասնակցում է «Մարտի 1-ի» զոհերի յիշատակին նուիրուած յուշարձանի բացմանը:

«Մարտի 1-ը» բացայայտուած է, բայց մեղաւորները դեռեւս պատժուած չեն, յայտարարել է Փաշինեանը յուշարձանի բացմանը:

↳ 4

# ՃԱՌԱԿԻՐ

## «ՄԱՐՏԻ 1-Ը» ԲԱՑԱՑԱՅՏՈՒԱԾ Է, ԲԱՅՑ ՄԵՂԱՒՈՐՆԵՐԸ ԴԵՌԵՒՍ ՊԱՏԺՈՒԱԾ ՉԵՆ». ՓԱՇԻՆԵԱՆ

3

Լրագրողի հարցին, թէ ինչո՞ւ, գործադիրի ղեկավարը պատասխանել է՝ «ամենատարբեր պատճառներով, այդ թւում՝ իրաւական մի շարք որոշումների»:

«Այն, որ մինչեւ հիմա «Մարտի 1-ի» մարդասպանները յայտնաբերուած չեն, դա չի նշանակում, որ այդպէս չի լինի: Մանաւանդ՝ ամենամեծ խնդիրը հետեւեալն է, կամ մեծ խնդիրներից մէկը, որ նաեւ քրէական գործի վարոյթներով է հիմնաւորուել, ապացուցուել, որ նախաքննութիւնը 2008 թուականի Մարտի 1-ից անմիջապէս յետոյ ոչ միայն ամբողջ ջանքերը չի գործադրել, որպէսզի տեղի ունեցած յանցագործութիւնը բացայայտուի, այլեւ բոլոր հնարաւոր ջանքերը գործադրուել են, որպէսզի բացայայտումը դժուար լինի կամ անհնար դառնայ», - ասել է վարչապետը:

Փաշինեանը յիշեցրել է՝ քրէական գործով պարզուել է, որ դէպքի վայրից յայտնաբերուած պարկուճների մի մասը փոխուել է:

«Պատկերացնել կարելի է, թէ այս ամէնն ինչ հետեւանքներ է բերում: Բայց դա կապ չունի իմ, յամենայն դէպս ինքանով, որքանով ես կարող եմ դիրքորոշում արտայայտել իրաւապահ մարմինների վերաբերեալ, իմ դիրքորոշումն այն է, որ լիարժէք եւ ամբողջական մենք պէտք է հասնենք բացայայտմանը: Դա մեր օրակարգից դուրս չի եկել», - ասաց Փաշինեանը:

## ԱԴՐԲԷՋԱՆՆ ԱՄԵՆԱԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿՈՎ ԱՇԽԱՐՀԻՆ ԽԱԲԵԼ Է ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԻ ՀԱՐՑՈՎ, ԵՒ ՍԱ ՊԷՏՔ Է ԱՐՁԱԳԱՆՔ ԲԵՐԻ. ՓԱՇԻՆԵԱՆ

3

թւում այդ քաղաքականութեան արդիւնք է», - նախ նշել է Փաշինեանը՝ շարունակելով. «Երբ մեր միջավայրում ասւում է «անջատում յանուն փրկութեան», ո՞րն է Ադրբէջանի արձագանքը: Իրենք ասում են՝ էդ ի՞նչ փրկութեան մասին էք խօսում, ինչի՞ց պիտի փրկուեն, ո՞վ պիտի փրկուի, ոչ մի փրկութեան կարիք չկայ, բոլոր հայերը կարող են Լեռնային Ղարաբաղում ապրել:

Ասում ենք՝ շատ լաւ, ապացուցէք: Հիմա Ադրբէջանը դա է ապացուցում, բայց ո՞նց, Լաչինի միջանցքը շրջափակելով, սովի մատնելով, էներգիան եւ գազը կտրելով, միւս կողմից էլ միջազգային հանրութեանն ասելով, որ միջանցքը փակ չէ»:

Վարչապետ Փաշինեանը յիշեցրեց ՄԱԿ-ի Արդարադատութեան Միջազգային Դատարանի որոշումը յօգուտ Հայաստանի՝ պարտաւորեցնելու Ադրբէջանին բացել Արցախը արտաքին աշխարհին կապող միակ ճանապարհը:

«Աշխարհի բարձրագոյն դատական ատեանն արձագանքել է, որ Լաչինի միջանցքը փակ է, սրանով արձանագրուել է նաեւ, որ Ադրբէջանը միջազգային հանրութեանը... ստացւում է, որ ամենաբարձր մակարդակով աշխարհին խաբել է, եւ սա պէտք է արձագանք բերի», - նշեց նա:

Այս հանդիպմամբ աւարտուել է Փաշինեանի այցը Գերմանիա:

## ԱՐՑԱԽԻ ԵՒ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐՈՒՆ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐԸ

3

ըստ որուն կ՚ապահովուի Հայաստան-Արցախ կազատարի անխափան աշխատանքը, կը հաստատուի Շինուհայր-Ստեփանակերտ 110 քիլօուատ օդային գիծի վերանորոգումը եւ ելեքտրամատակարարումին վերականգնումը:

Երկրորդ հանդիպում մը տեղի կ՚ունենայ Մարտ 1-ին՝ ռուսական կողմի միջնորդութեամբ, Խոճալուի ռուսական խաղաղապահ զօրակազմի տեղամասը: Եռակողմ հանդիպումին կը քննարկուին Լաչինի միջանցքով անխոչընդոտ երթեւեկութիւնը վերականգնելու եւ միջանցքի նպատակային օգտագործումի փաստը հաստատելու հարցը, ելեքտրականութեան եւ կազի մատակարարումի հարցերը, Դրմբոնի եւ Կաշէնի հանքավայրերուն մէջ ազըրպէյճանցի ներկայացուցիչներու շրջակայ միջավայրի մոնիթորինկի հնարաւորութիւնը:

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ԱԴՐԲԷՋԱՆԱԿԱՆ ԿՈՂՄԻՆ Է ՓՈԽԱՆՑԵԼ...

2

ուժի մէջ, պնդեց Փաշինեանը:

Սահմանազատման եւ սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովները երկու երկրներում էլ ստեղծուել են նախորդ Մայիսին առաջնորդների հանդիպումից յետոյ: Ե՛ւ Հայաստանի, ե՛ւ Ադրբէջանի պարագայում յանձնաժողովները գլխաւորում են փոխվարչապետերը՝ Մհեր Գրիգորեանն ու Շահին Մուստաֆաեւը, որոնք նաեւ տրանսպորտային ապաշրջափակման եռակողմ՝ հայ-ադրբէջանա-ռուսական յանձնաժողովների անդամներ են:

## ԹՈՒՐՔԻՈՅ ՀԶՕՐԱՑՈՒՄԸ ԵՒ ՌՈՒՍ-ԹՐՔԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1

ներուն մէջ:

**Թուրք-ազէրիական մշակութային սերտակցութիւն՝ ի դէմս ռուս-հայկական ոչ-մշակութային յարաբերութեան**

Մշակութային կողմը կը խաղայ իր դերը: Մշակոյթ՝ իր լայն ու խորքային իմաստով: Թուրք-ազէրիական յարաբերութիւններուն մէջ որոշիչ է այս գործօնը, բայց ոչ իբրեւ համահաւասար մշակութային գոյութիւններ, այլ իբրեւ տիրոջ (Թուրքիա) եւ ենթակայի (Ազըրպէյճան) յարաբերութիւն: Գործօն՝ որ կը բացակայի հայ-ռուսական յարաբերութիւններուն մէջ: Հայն ու ռուսը չեն կրնար մշակութային համախոհութեան մասին խօսիլ, բացի եթէ դիմեն ցեղապաշտական (սպիտակ ցեղեր) եւ կրօնապաշտական (քրիստոնեայ ազգեր) ընդհանրացած ֆեթիշներու: Հետեւաբար, Ռուսաստանի գաւառայնացումը Հայաստանին հասած է գրեթէ բացարձակ աստիճանի, քանի որ կը բացակայի մշակութային տարածութիւնը (բոլորովին այլ բան է ռուսական մշակոյթին ներթափանցումը հայկական աշխարհին մէջ. խօսքը երկու մշակոյթներու նոյնականացումի մասին է):

Դրամատիրական-իմփերիալիսթական-նէօլիպերալ է Թուրքիոյ եւ Ռուսաստանի դիրքերը Ազըրպէյճանի եւ Հայաստանի նկատմամբ: Այսինքն, կը ձգտին շահերու յաւելեալ ու մշտական աճի եւ կուտակումի: Մինչ հզօրացող Թուրքիա տակաւին շատ բան ունի յաւելելու Ազըրպէյճանէն, հզօրացած Ռուսաստան գրեթէ սպառած է Հայաստանէն ստանալիքը: Սպառում՝ կը նշանակէ յաւելեալ կուտակումներու ծաւալի փոքրութիւնը կամ աննշանութիւնը: Սպառում չի նշանակեր շահերու վերացում կամ նուազում: Հայաստանէն Ռուսաստան գացող տնտեսական շահերը կ՚ընթանան անխախտ չափանիշերով, կը պակսի այդ շահերուն հեռանկարային աճը, նկատի ունենալով Հայաստանի նիւթական կարողութիւնները՝ ի բացակայութիւն մշակութային յարաբերութիւններուն:

Երբ Ռուսաստան ապահովագրած է իր շահերուն լիակատարութիւնը Հայաստանի մէջ, ինչո՞ւ պիտի թիկունք կանգնի անոր՝ քաղաքական ճգնաժամային պահերուն: Այլեւ պիտի խեղդամահ ընէ Հայաստանի որեւէ փորձ այլազանելու արտաքին քաղաքականութիւնը, նոյնիսկ ամբողջապէս Ռուսաստանի շրջածիրին մէջ մնալու պայմաններով:

**Ռուս-թրքական շահաւէտ համագործակցութիւն**

Այս բոլորին կ՚աւելնայ ռուս-թրքական աճող սերտակցութիւնը, մանաւանդ ռուս-ուքրաինական պատերազմէն ի վեր, երբ Ռուսաստանի դէմ Արեւմուտքի պայքոթումէն ետք Ռուսաստան սկսաւ փնտռել նէօլիպերալ նոր շուկաներ: Թուրքիա՝ որ կարողացաւ պահպանել հաւասարակշռութիւնը Արեւմուտքի, Ուքրաինիոյ եւ Ռուսաստանի միջեւ, եւ ռուս-ուքրաինական ընթացող պատերազմէն դուրս եկաւ քաղաքականապէս անվնաս, լաւ շուկայ մը դարձաւ Ռուսաստանի համար՝ հիմնուած փոխադարձ շահերու վրայ: Նախապէս գոյութիւն ունեցող ռուս-թրքական յարաբերութիւնները ստացան նոր որակ ու մակարդակ:

2022 Օգոստոսին, Սոչիի մէջ կը կայանայ Փութին-Էրտողան ջերմ հանդիպում, ուր երկու առաջնորդները կը համաձայնին զարգացնել պիզնէս յարաբերութիւնները: (Կարելի՞ է երեւակայել Փութին-Փաշինեան հանդիպում՝ պիզնէս յարաբերութիւններ *զարգացնելու* համար. զարգացնելու տեղ չէ մնացած): Կը յայտարարեն՝ որ նախատեսուած է մինչեւ 2030 թուականը երկու երկիրներուն միջեւ արտաքին առեւտրական շրջանառութիւնը հասցնել 100 միլիառ տոլլարի:

Ռուսաստանն ու Թուրքիան կարեւոր առեւտրական գործընկերներ են: 2021-ին երկու երկիրներու առեւտրական շրջանառութիւնը կը կազմէր 35 միլիառ տոլլար, որ 57%-ով աւելի էր նախորդ տարուայ համեմատութեամբ: Ռուս-ուքրաինական պատերազմի յետնախորքին վրայ, 2022 թուականի առաջին վեց ամիսներու շրջանառութիւնը աւելի քան կրկնապատկուեցաւ 2021-ի նոյն շրջանի համեմատութեամբ: Արդարեւ, 2022 Յունուար-Յուլիսին, Ռուսաստան գրաւեց Թուրքիա ներմուծողներու առաջին դիրքը՝ 32,1 միլիառ տոլլար ներմուծումներով, ներկայացնելով Թուրքիոյ ներմուծումներու 15%-ը: Աւելին: 2021 թուականին, Թուրքիա Ռուսաստանէն ստացաւ իր բնական կազի կարիքի 45%-ը, քարիւղի 17%-ը եւ ածուխի 40%-ը (https://www.rferl.org/a/putin-erdogan-meeting-sochi/31975471.html): Ռուս-ուքրաինական պատերազմէն ի վեր, երբ Արեւմուտքը նուազեցուց իր կախուածութիւնը ռուսական կազէն եւ քարիւղէն, Թուրքիա աւելցուց անոնց ներմուծութեան քանակը Ռուսաստանէն: Համաձայն Ռէօյթըրսի, Յուլիս 2021-ին 222,500 տակառ քարիւղ նաւարկուած էր Ռուսաստանէն Թուրքիա, մինչ Յուլիս 2022-ին տակառներուն քանակը աւելցաւ 312,000-ի: (Հայաստանը ի՞նչ ունի *աւելցնելիք* Ռուսաստանի համար:)

Մինչ Թուրքիա հաստատապէս կը հզօրանայ ռազմապէս, Ռուսաստանի ապագան՝ ռուս-ուքրաինական պատերազմի տակաւին անորոշ ելքին պատճառով, տակաւին կը մնայ անյայտ: Անյայտ՝ գոնէ մեզի համար: Կրնայ ըլլալ առաջնորդներու փոքր խմբակ մը իրազեկ ըլլայ: Հայաստանը այլեւս ոչինչ կրնայ աւելցնել Ռուսաստանին՝ վերջինին հզօրութիւնը պահպանելու կամ մշակելու համար, քանի որ Հոկտեմբեր 27-ի ահաբեկչութենէն սկսեալ մինչեւ խաղաղապահներուն տեղադրումը, Ռուսաստան կրցաւ ստանալ առաւելագոյնը Հայաստանէն: Մինչդեռ Թուրքիայէն եւ Ազըրպէյճանէն տակաւին շատ առնելիք-տալիք ունի:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1936 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ՄԱՐՏ 2023 *ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ.* عدد رقم ١٩٣٦ الخميس ٢٣ مارس ٢٠٢٣


## ԱԼԻԵՒ – ԼԱՒՐՈՎ՝ ՀԱՄԱԼՐՈՂ ՊԱՏԿԵՐՆԵՐ

Ռուսաստան-Ազրպէյճան եւ Ռուսաստան-Թուրքիա դաշինքը՝ ներկայ տեղագրական եւ աշխարհաքաղաքական բարդ, բռնի ու հարկադիր զարգացումներու յետնախորքին վրայ, արդէն գաղտնիք մը չէ, որուն մէջ յայտնուած է Հայաստան: Ահաւասիկ նմոյշ մը եւս Ազրպէյճան-Ռուսաստան համալրող խօսոյթ-պատկերներուն:

**ԻԼՀԱՄ ԱԼԻԵՒ**

Մարտ 16-ին, Անքարայի մէջ կը գումարուէր Թրքական Պետութիւններու Կազմակերպութեան արտահերթ գագաթնաժողովը, մասնակցութեամբ Ազրպէյճանի, Ղազախստանի, Ղրղըզըստանի եւ Ուզպեքստանի նախագահներուն:

Իրենց ելոյթներուն մէջ նախագահները կը շեշտեն՝ թէ որքան միասնական եւ համերաշխ է Թրքական աշխարհը: Ի դէպ, մասնակցողներէն երեքը՝ Ղազախստան, Ղրղըզստան եւ Ուզպեքըստան ՀԱՊԿ անդամներ են, ուր երբեք միասնականութեան խօսք չեն ըրած: Չկայ իրենց միջեւ մշակութային կապ: Մինչդեռ կայ Թրքալեզու պետութիւններուն միջեւ: Ալիեւ ճիշդ էր, երբ ամիսներ առաջ կը յայտարարէր՝ թէ Ազրպէյճան ՀԱՊԿ-ի մէջ աւելի բարեկամներ ունի քան Հայաստանը: Անոնց միջեւ հզօր է մշակութային կապը: Անշուշտ, մշակութայինն ալ պէտք է դնել փոխշահերու նշանաբանին տակ, ան եւս բացարձակ չէ՝ կրնայ խախտուիլ նէօլիպերալ շահերու խաչաձեւումի պարագային: Բայց, մշակութային գործօնը կայ իբրեւ խթանիչ կարեւոր գործիք:

Խիստ մտահոգիչ էր Ալիեւի ելոյթը գագաթնաժողովին: Ան գործածեց Արեւմտեան Ազրպէյճան անունը: Արեւմտեան Ազրպէյճան ըսելով Ալիեւ նկատի ունի ներկայ Հայաստանի տարածքին մեծ մասը: Անուանումը նոր չէ Ազրպէյճանին համար, բայց ան նոր հնչերանգ կը ստանայ այստեղ՝ իբրեւ ազրպէյճանական հակադրութիւն հայկական դիրքորոշումին Ղարաբաղի նկատմամբ:

Հայաստանի Արտաքին Գործոց Նախարարութիւնը հանդէս եկաւ պատասխան յայտարարութեամբ, նշելով՝ որ Հայաստանի ինքնիշխան տարածքը ներկայացնելով «Արեւմտեան Ազրպէյճան» մտացածին անունին տակ՝ Իլհամ Ալիեւ կը խախտէ միջազգային հռչակագիրներն ու կանոնադրութիւնները, Փրակի եւ Սոչիի յայտարարութիւններով իր իսկ ստանձնած պարտաւորութիւնները եւս, որոնց, Ալիեւը յղում ըրաւ իր ելոյթի ընթացքին:

Ալիեւի ելոյթը «Հայաստանի նկատմամբ տարածքային պահանջների եւ հերթական ագրեսիայի նախապատրաստման բացայայտ դրսեւորում էր», կը նշէ պաշտօնական Երեւանը:

*Սիվիլ Նէթի* Մարտ 20-ին պատկերասփռուած զրոյցին մէջ, պատասխանելով Ժաննա Աւագեանի հարցումներուն, Ալիեւի ելոյթին շուրջ հետաքրքրական բացատրութիւններ կու տայ քաղաքագէտ Տիգրան Գրիգորեան: Բացատրելէ ետք Արեւմտեան Ազրպէյճան անուանումը, ան կը շարունակէ.

«Պարզ է որ Ալիեւը այդ գագաթնաժողովում պէտք է խօսէր այսպէս կոչուած «Զանգեզուրի միջանցք»-ի մասին: Մեծ հաշուով, եթէ աւելի ուշադիր հետեւենք նրա ելոյթին, նա փորձել է այդ միջանցքը տեղաւորել նաեւ ինչ-որ պանթուրքիստական դիսկուրսների մէջ, նշելով որ Զանգեզուրը փոխանցելով Հայաստանին, Խորհրդային Միութիւնը սեպ է ստեղծել Թուրքական աշխարհի միջեւ, եւ այլն, այսինքն այն բոլոր յայտնի դիսկուրսները որոնք նախկինում կային միայն փորձագիտական կամ քուազի-փորձագիտական մակարդակով, Բագուն այժմ օգտագործում է: Ի դէպ, այս միտումը նկատելի է նաեւ այլ հարցերում: Եթէ յիշում ես, նախորդ թողարկումների ընթացքում քննարկել էինք որ ազրպէյճանական պաշտօնեաներ սկսել են օգտագործել Հայաստան եզրոյթը՝ Արմենիա եզրոյթի փոխարէն, իրենց ռուսերէն եւ անգլերէն յայտարարութիւններում: Սա եւս նոյն նպատակն է հետապնդում, այսինքն գիտենք որ Ազրպէյճանում կայ ինչ-որ դաւադրապաշտական տեսութիւն ըստ որի ժամանակակից հայերը կապ չունեն պատմական Հայաստանի հետ, նրանք տարածաշրջան են եկել 19-րդ դարում: Նախկինում այս տեսութիւնները օգտագործւում էին ինչ-որ կիսախելագար փորձագիտական շրջանակներ կամ մեկնաբաններ, այժմ սա դարձել է Բագուի պաշտօնական խօսոյթներից մէկը, եւ սա ցոյց է տալիս թէ ինչ ուղղութեամբ է շարժւում Ազրպէյճանը իր խօսոյթների մէջ: [...] Սրանք ակնյայտ տարածքային նկրտումներ են Հայաստանի նկատմամբ: Այս փուլում կարծես թէ այդ տարածքային նկրտումները օգտագործում են հայկական դիրքորոշումները Ղարաբաղի հարցում չէզոքացնելու համար բայց չկայ որեւէ երաշխիք որ ժամանակի ընթացքում այս խօսոյթները իրենց սեփական կեանքով չեն ապրելու եւ իրօք գործիքից չեն վերածուելու իրական օրակարգի, այսինքն չկայ որեւէ երաշխիք որ Ազրպէյճանը ինչ-որ մօտ ապագայում չի յարձակուելու Սիւնիքի հատուածում եւ իր գործողութիւնները չի հիմնաւորելու այս կեղծ քարոզչական խօսոյթներով»:

Գագաթնաժողովի ելոյթէն երկու օր ետք, Պր. Ալիեւ կը գտնուէր 44-օրեայի Ազրպէյճանի անցած Թալիշ գիւղը, ուր զինուորական համազգեստով կը հռետորաբանէ.

«29 հազար քառակուսի քիլոմեթր տարածքի վրայ Հայաստանին յարմարաւէտ ապրելու համար կայ մէկ տարբերակ՝ ան պէտք է ընդունի մեր պայմանները, պաշտօնապէս ճանաչէ Ղարաբաղը իբրեւ Ազրպէյճանի տարածք, մեզի հետ ստորագրէ խաղաղութեան պայմանագիր եւ սահմանազատումի աշխատանքներ իրականացնէ մեր պայմաններուն համաձայն: Միայն այս պարագային անոնք կը կարողանան յարմարաւէտ ապրիլ 29 հազար քառակուսի քիլոմեթր տարածքին վրայ:

«Եթէ Հայաստանը չի ճանաչեր մեր տարածքային ամբողջականութիւնը, ապա մենք չենք ճանաչեր նաեւ իր տարածքային ամբողջականութիւնը: Հայաստան եւ իր թիկունքը կանգնած կեղծաւոր երկիրները պէտք է իմանան, թէ ինչ հետեւանք պիտի ունենայ ասիկա: Անոնք պէտք է իմանան, որ մեր դէմ ոչ մէկ աղտոտ ծրագիր պիտի իրականանայ:

↳ 4

## ԱԴՐԲԷՋԱՆՈՒՄ ՊԱՀՈՒՈՂ ՀԱՅ ՌԱԶՄԱԳԵՐԻՆԵՐԸ՝ ՍԱԿԱՐԿՈՒԹԵԱՆ ԱՌԱՐԿԱՅ ՓԱԿՈՒՂԻ ՄՏԱԾ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՄ. BBC-Ի ՌՈՒՍԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹԵԱՆ ՅՕԴՈՒԱԾԸ

Բաքւում անազատութեան մէջ են մնում տասնեակ հայ ռազմագերիներ, որոնց Ադրբէջանն անուանում է «ահաբեկիչներ» եւ չի շտապում յանձնել Հայաստանին: BBC-ի ռուսական ծառայութիւնը անդրադարձել է Ադրբէջանում պահուող հայ ռազմագերիներին՝ նշելով, որ նրանք սակարկութեան առարկայ են դարձել փակուղի մտած բանակցութիւններում:

«Հայ գերիներն Ադրբէջանում՝ ահաբեկիչնե՞ր, պատանդնե՞ր թէ՞ սակարկութիւնների առարկայ». այսպէս է վերնագրուած պարբերականի ծաւալուն յօդուածը: Այն յիշեցնում է, որ 2021 թ.-ի ամռանը Բաքուի դատարանը 13 հայ ռազմագերիների դատապարտեց 6 տարուայ ազատազրկման՝ մեղադրելով «ահաբեկչութեան, զէնքի ապօրինի պահման եւ կրման, սահմանի ապօրինի հատման, ինչպէս նաեւ «զինուած կազմաւորումներ» ստեղծելու մէջ»:

BBC-ի ռուսական ծառայութիւնը շեշտում է, որ հայ զինուորականներին շրջապատել եւ ձերբակալել են Ղարաբաղեան երկրորդ պատերազմի աւարտից յետոյ: Պարբերականը նշում է, որ այդ ժամանակ պարզ չէր, թէ ում վերահսկողութեան տակ է գտնւում Հին Թաղեր (Հինթաղլար) գիւղը, եւ մանրամասնօրէն ներկայացնում է հայ զինուորների գերի ↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## 2022 ԹՈՒԱԿԱՆԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ Է ՏԵՂԱՓՈԽՈՒԵԼ 108-110 ՀԱԶԱՐ ՌՈՒՍԱՍՏԱՆՑԻ. ՔԵՐՈԲԵԱՆ

2022 թուականին Հայաստան է տեղափոխուել 108-110 հազար ռուսաստանցի. այդ մասին *Վեդոմոստի*ին ասել է Հայաստանի էկոնոմիկայի նախարար Վահան Քերոբեանը: Նա յաւելել է, որ Հայաստան ժամանած ռուսաստանցիները մնացել են երկրում:

Քերոբեանի տուեալներով՝ 2022-ին Հայաստանում գրանցուել է 2,500 ՍՊԸ՝ ռուս մասնակիցներով, ինչպէս նաեւ 4000 անհատ ձեռնարկատէր: Յաճախորդների միջոցների լրացուցիչ ներհոսքը հայկական բանկային համակարգ նախարարը գնահատել է 3 մլրդ դոլարի չափով, ինչը թոյլ է տուել ապահովել ՀՆԱ-ի աճի մօտաւորապէս մէկ քառորդը:

«Այսինքն, ՀՆԱ-ի աճի 12,6 տոկոսից աւելի քան 3 տոկոսը ապահովել են տեղափոխուածները», - յայտնել է Քերոբեանը:

Նախարարը նաեւ նշել է, որ Ռուսաստանն ու Հայաստանը ամբողջութեամբ հրաժարուել են դոլարով ու եւրոյով հաշուարկներից: Ռուբլին, նրա գնահատմամբ, շատ տատանուող է, հետեւաբար, հայկական դրամը ներկայում աւելի նախընտրելի է, բայց երկկողմ առեւտրում դրա կիրառման ներուժը սահմանափակ է:

## ՀԱՅԱՍՏԱՆ-ԹՈՒՐՔԻԱ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ, ԹԻՄԻ ՆՈՐԵԿՆԵՐՆ ՈՒ ՆՈՐԱՆՇԱՆԱԿ ՄԱՐԶԻՉԸ

Հայաստանի ֆուտբոլի ազգային թիմը Եւրո-2024 ընտրական փուլը կը մեկնարկի Երեւանում Թուրքիայի դէմ խաղով:

*Արմէնպրէս*ի Podcast-Sport-ում ֆուտբոլային մեկնաբան Արման Աբէլեանի հետ խօսել ենք Հայաստան-Թուրքիա խաղից սպասելիքների, ընտրանու նորանշանակ մարզչի եւ հաւաքականի նորեկների մասին:

«Մեզ համար շատ բարդ հանդիպում է լինելու Թուրքիայի դէմ խաղը: Թուրքիան այսօր հզօր հաւաքական ունի: Այս պահին նրանք ունեն լաւ սերունդ, որոնցից շատերը եւրոպական առաջատար առաջնութիւններում են խաղում: Իհարկէ, չեմ ասում, թէ մենք շանս չունենք: Մէկ խաղ է, ամէն ինչ կարող է պատահել», - ասաց նա:

Աբէլեանի խօսքով՝ Հայաստանի հաւաքականի նորանշանակ մարզիչ Ալեքսանդր Պետրակովին կ՚օգնի ազգային թիմերում ունեցած երկար տարիների փորձը:

«Յայտացուցակից երեւաց, որ նա ուզում է սերնդափոխութիւն անել եւ շարունակել Կապարոսի գիծը», - շեշտեց նա:

# ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՕՆ (ԱԼԱՏԻՆ)

## Եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, յօդուածագիր

Հ. ԱԻԱԳԵԱՆ

«Հայ գրական այս ապերախտ ասպարէզին մէջ նոյնիսկ բարոյական գնահատանքի բացակայութիւնը շատերը մեկուսացուց, չըսելու համար՝ ուծացուց. հա՞րկ է դատապարտել զանոնք եւ հետեւորդները»(1):

Գրուած իր վաղաժամ մահէն ընդամէնը մէկ ամիս առաջ, ասիկա եղաւ Հրանդ Վեհակրօնի վերջին խոստովանութիւնը:

Բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ եւ յօդուածագիր, ան կը մնայ անծանօթը գրասէրներու եւ գրագէտներու, բացական՝ գրական ժողովածուներու: Սովորական ճակատագիրը սփիւռքեան մտաւորականի:

Հրապարակագրական, գաղափարական յօդուածներ ստորագրած է *Փարոսի* (Գահիրէ), *Լուսաբերի* (Գահիրէ), հին եւ նոր *Արեւ*ներուն (Աղեքսանդրիա եւ Գահիրէ) եւ *Արաքսի* (Աղեքսանդրիա) մէջ, ինքնագիր եւ թարգմանական բանաստեղծութիւններ՝ *Բազմավէպ* (Վենետիկ), *Հուսանք* (Գահիրէ), *Նաւասարդ* (Պուքարեսթ) եւ *Արաքս* (Աղեքսանդրիա):

Ունի հրատարակուած չորս հատորներ՝ *Վեստեան կոյս*, թարգմանութիւն պատմավէպի (Վենետիկ, 1898), *Վերադարձի՛ր աշխատանոց*, վէպ (Գահիրէ, 1926), *Նոր Լիթանիա*, բանաստեղծութիւններու ժողովածու (Գահիրէ, 1933) եւ *Երգեր Տանդէի Դժոխքէն*, թարգմանութիւն Տանթէի (Գահիրէ, 1933):

Թողած է բազմաթիւ անտիպ գործեր, այժմ կորսուած:

Մասնագիտութեամբ եղած է երկրաչափ: Բուն անունն է Հրանտ Ալատին՝ զոր գործածուած կը գտնենք մինչեւ 1914 թուականը: 1925-էն սկսեալ գործածած է Հրանդ Վեհակրօն՝ Ալատինի հայերէն թարգմանութիւնը: Ստորեւ փոխն ի փոխ պիտի գործածեմ երկու անունները՝ ինչպէս յիշատակուած են տուեալ ժամանակաշրջանին:

### ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

Ծնած է 1878-1881-ի միջեւ(2), Պոլիս, Սկիւտար:

Կրթութիւնը ստացած է տեղւոյն Ս. Խաչ Վարժարանը, ապա Սագըզ Աղաճ Թաղամասի Մխիթարեան Վարժարանը, ուր աշակերտած է Գրիգորիս Վրդ. Մերճանեանի:

Իբրեւ փայլուն շրջանաւարտ, 1890-ին կ'ուղարկուի Վենետիկի Մուրատ Ռափայէլեան Վարժարանը, ուր կ'աշակերտէ Հ. Ղեւոնդ Ալիշանի եւ Հ. Յովհաննէս Թորոսեանի:

Վկայուելէ ետք, 1895-ին կը վերադառնայ Պոլիս(3):

1897-ին կը փոխադրուի Գահիրէ: Իր հետ կու գան մայրը Նեւրիկ (ծնեալ Գագմաճեան), մէկ տարիով աւագ քոյրը Հայկուհի, երկու տարիով կրտսեր եղբայրը Վահրամ(4):

Կ'անուանուի Գահիրէի երկաթուղիի երկրաչափական ճիւղին պաշտօնեայ, յանձնարարութեամբ Սուտանի հրամանատար Ռոտոլ Սթալին փաշայի: Ապա կը փոխադրուի Հանրօգուտ Շինութեան նախարարութիւն:

Կը տեղափոխուի Աղեքսանդրիա, ուր 1920-1923-ին համարակալի պաշտօն կը ստանձնէ Խտիվական շոգենաւային ընկերութեան մէջ(5):

1926-ի վերջին ամիսները կը վերահաստատուի Գահիրէ(6), ուր մինչեւ իր վախճանը Զայլագեան Տան մէջ կը պաշտօնավարէ իբրեւ հաշուակալ(7):

1933-ի տեղեկութիւններով, ան հաստատուած էր Հելիոպոլիս, 34, Ավընիւ տը լա Մոսքէ(8):

1933 Յուլիս 29-ին, Անկլօ-Իճիփշըն Մէյլի Գաիր Սիթի շոգենաւով կը մեկնի Յունաստան՝ անցընելու ամառնային արձակուրդը եւ կազդուրուելու իր անհանգստութենէն(9):

Գրեթէ երկու ամիս մնալէ ետք, Սեպտեմբերի վերջ կը վերադառնայ Գահիրէ եւ կը խոստանայ *Արաքս*ին գրել իր ճամբորդական տպաւորութիւնները(10), բայց վրայ կը հասնի իր անժամանակ մահը Հոկտեմբեր 26-ին: Յուղարկաւորութեան արարողութիւնը կը կատարուի Հոկտեմբեր 27-ին, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, ի ներկայութիւն *Արեւ* եւ *Արաքս* լրագիրներու եւ Հ.Բ.Ը.Միութեան ներկայացուցիչներուն: Մարմինը կը փոխադրուի Մարմինայի Ազգային Գերեզմանատուն(11):

Կը թողու քոյրը՝ Օր. Հայկուհի Ալատին, եղբայրը՝ Վահրամ Ալատին, եւ դուստրը՝ Օր. Մաթիլտ Ալատին(12):

Ընտանեկան պարագաներուն մասին գիտենք այնքան՝ որ Վահրամ Ալատին 1937-ին եղած է լուսանկարիչ եւ ունեցած լուսանկարչատուն Հելիոպոլսոյ Ավընիւ տը լա Մոսքէ փողոցի բնակարանին մէջ(13):

Կնոջ՝ Օր Մաթիլտի մօր մասին տեղեկութիւններ կը պակսին:

### ԱԶԳԱՅԻՆ ԿԵԱՆՔ

Պարբերաբար իր անունը կարելի է գտնել եգիպտահայ հանդիսութիւններու եւ ձեռնարկներու մէջ իբրեւ բանախօս կամ մասնակցող:

1902 Նոյեմբեր 2-ին, Գահիրէի Եգիպտական Թատրոնին մէջ կը կազմակերպուի հայկական միթինկ կամ ժողովրդական հաւաք երեսփոխանական ընտրութիւններուն առիթով: 300 ազգայիններու ներկայութեամբ խօսք կ'առնեն Հրանտ Ալատին, Սուրէն Էթմէքճիեան եւ Շաւարշ Շիշմանեան, «որոնք ազդու չեշտերով պախարակեցին ժողովրդին անտարբերութիւնը եւ հրաւիրեցին զայն ձեռք առնել այն միջոցները որոնցմով կրնար իր ընտրողական իրաւունքներուն տիրանալ»:

Ժողովը միաձայն կ'որոշէ վճարել ազգային տուրքը, պայմանաւ թողելով բողոքել գանձումի կամայական միջոցներուն դէմ, որոնք կապ ունին Սահմանադրութեան վերաքննութեան հարցին հետ(14):

1908 Փետրուար 14-ին, Արփիար Արփիարեանի թաղումին առիթով դագաղին վրայ ծաղկեպսակ դնողներէն մէկը կ'ըլլայ Ալատին(15), որ շուտով *Լուսաբեր*ին մէջ կը ստորագրէ «Կոտակը» յօդուածը մեծանուն գրողին նուիրուած(16):

1908 Յուլիս 18, Գահիրէի Լսարան-Ընթերցատան սրահ, ժողովրդային միթինկ կաթողիկոսական թեկնածուի ընտրութեան համար: Յառաջ մղուած անուններն էին՝ Մատթէոս Արք. Իզմիրլեան, Եղիշէ Արք. Դուրեան, Մաղաքիա Արք. Օրմանեան եւ Սահակ Արք. Այվատեան, որոնցմէ մէկը ենթադրուած էր յաջորդել Հոգելոյս Խրիմեան Հայրիկին: Միահամուռ համաձայնութեամբ ընտրութիւնը կ'երթայ Իզմիրլեանին եւ կ'ընդունուի բանաձեւ: Միաժամանակ, բացայայտ էր հակակրութիւնը Օրմանեանի նկատմամբ, այնքան, որ բանաձեւի ընդունումէն ետք եւ անկէ անկախ, Հրանտ Ալատին փափաք կը յայտնէ քուէարկել կէտ մը, ըստ որուն «կը խնդրուի Էջմիածնայ Պատգամաւորական Ժողովէն՝ չմտցնել Օրմանեան Սրբազանի անունը նոյնիսկ ընտրական քառանուն ցանկին մէջ, ինչ որ ընդունուեցաւ որոտագին ծափահարութիւններով»(17):

1908-ին եղած է Սահմանադրական Ռամկավար Կուսակցութեան հիմնադիրներէն մէկը(18), բայց յետոյ հեռացած է կուսակցական կեանքէ:

1913 Յուլիս 12, Գահիրէի Հայ Ազգային Սրահ, կիսամսեայ ընտանեկան երեկոյթ, որ կը բովանդակէ դասական երաժշտութեան կատարումներ՝ դաշնակ, երգ եւ ջութակ, գրական ընթերցումներ եւ Ալատինի բանախօսութիւնը՝ *Ասիական երեք սահմանադրութիւնները, Ա. մաս՝ Ռուսիա*(19):

«Տ. Հրանտ Ալատին երկու անգամէն խօսեցաւ մեզի *Ասիական երեք Սահմանադրութիւններուն* վրայ: Շատ շահեկան էր Տ. Ալատինի բանախօսութիւնը եւ իսկապէս կ'արժէ որ այդ երեք Սահմանադրութիւններուն պատմականը ուրոյն պռօշիւրով մը լոյս տեսնէ:

«Տ. Ալատին՝ Պարսկական Սահմանադրութեան մասին խօսած պահուն՝ չի մոռցաւ յիշատակել անմահն Եփրեմը, որուն վրայ ներկաները ի յարգանս անոր յիշատակին յոտնկայս յարգանք մը մատուցին»(20):

1914 Մայիս 23, Ազգային Սրահի նոր վայրի բացումի հանդէս, ուր կ'ատենախօսեն Յովհաննէս Սեթեան եւ Հրանտ Ալատին(21):

1914 Յուլիս 2, Ազգային Սրահ, Ս. Մեսրոպի յիշատակի հանդէս: Ատենախօսներ՝ Յովհաննէս Սեթեան, Հրանտ Ալատին եւ Սուրէն Պարթեւեան(22):

Ընդհանուր առմամբ ան ինքզինքը հեռու կը պահէր ազգային եռուզեռէ: Իր մահուան առիթով գրած երկտողին մէջ, *Սաւառնակ-Ջէբլին*ի խմբագիր Երուանդ Մսրլեան պիտի նշէր. «Ալատին միշտ հեռու ապրեցաւ ազգային կեանքէն, այսինքն չուզեց «ազգայինճի» ըլլալ, ապրեցաւ ինքնիրմով, իր գործերով եւ իր մտածումներով»(23):

(Շար. 1)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. «Հրանդ Վեհակրօն (Հ. Ալատին)», *Բազմավէպ*, Վենետիկ, Փետրուար-Մարտ 1934, թիւ 2-3, էջ 103:

2. 1906-1907-ին կատարուած Գահիրէի հայութեան մարդահամարին մէջ կը գտնուի Հրանտ Ալատին, որ 1906-1907-ին եղած է 28 տարեկան, այսինքն, ծնած է 1878 կամ 1879-ին (http://arslanmb.org/aghjayan/Report-Census-CairoEgypt-1906-1907.php?SelectSortOrder=ByName): 1933 Հոկտեմբերին, մահուան առիթով *Արեւ*ի մէջ հրատարակուած «Տխրունի»-ն տարիքը կը նշէ 52, ուրեմն ծննդեան թուականը կրնայ ըլլալ նաեւ 1881 («Տխրունի», *Արեւ*, 27 Հոկտեմբեր 1933, ԺԸ. տարի, թիւ 4497): Մարդահամարին մէջ իր մասնագիտութիւնը նշուած է երկրաչափ:

3. «Ողբ. Հրանդ Ալատին (Վեհակրօն)», *Սարկաւագին Եգիպտահայ Տարեցոյցը 1934*, Աղեքսանդրիա, էջ 116-117:

4. http://arslanmb.org/aghjayan/Report-Census-CairoEgypt-1906-1907.php?SelectSortOrder=ByName

5. «Ողբ. Հրանդ Ալատին (Վեհակրօն)», էջ 116-117:

6. *Արաքս*, շաբաթաթերթ, Աղեքսանդրիա, 11 Դեկտեմբեր 1926, Բ. տարի, թիւ 1 (34):

7. «Ողբ. Հրանդ Ալատին (Վեհակրօն)», էջ 116-117:

8. «Լոյս տեսաւ», *Արաքս*, 8 Յուլիս 1933, Ը. տարի, թիւ 25 (351): «Մօտ օրէն լոյս կը տեսնէ», *Արաքս*, 14 Հոկտեմբեր 1933, Ը. տարի, թիւ 39 (365):

9. «Մեկնում», *Արաքս*, 29 Յուլիս 1933, Ը. տարի, թիւ 28 (354): «Մահ Հրանդ Ալատինի», *Արաքս*, 29 Հոկտեմբեր 1933, Ը. տարի, թիւ 41 (367):

10. «Մահ Հրանդ Ալատինի», *Արաքս*, 29 Հոկտեմբեր 1933, Ը. տարի, թիւ 41 (367):

11. «Տխրունի», *Արեւ*, 27 Հոկտեմբեր 1933, ԺԸ. տարի, թիւ 4497: «Շնորհակալիք», *Արեւ*, 3 Նոյեմբեր 1933, ԺԸ. տարի, թիւ 4503:

12. «Տխրունի», *Արեւ*, 27 Հոկտեմբեր 1933, ԺԸ. տարի, թիւ 4497:

13. «Լուսանկարչատուն Ալատին», *Ազատ միտք*, շաբաթաթերթ, Գահիրէ, 3 Յուլիս 1937, Ա. տարի, թիւ 47:

14. Մանաւազ, «Գահիրէի միթինկը», *Փիւնիկ*, շաբաթաթերթ, Աղեքսանդրիա, 6 Դեկտեմբեր 1902, Գ. տարի, թիւ 21:

15. [Վահան Թէքէեան], «Թաղման հանդէսը», *Լուսաբեր*, երկօրեայ լրագիր, Գահիրէ, 18 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 484:

16. Հրանտ Ալատին, «Կոտակը», *Լուսաբեր*, 20 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 485:

17. «Միթինկը», *Լուսաբեր*, 21 Յուլիս 1908, Դ. տարի, թիւ 548: Զմոռնանք, որ ընդհանուր առմամբ եգիպտահայոց տրամադրութիւնները Օրմանեանի նկատմամբ միանշանակ չեն եղած, 1913-ին Համագումար Ժողովին կողմէ ան նոյնիսկ պիտի ընտրուէր Եգիպտահայ Թեմի առաջնորդ, ուրիշ հարց թէ պիտի հրաժարէր ստանձնել պաշտօնը:

18. Հ. Վեհակրօն, «Տեսութիւն՝ գաղութահայութեան համար», *Արաքս*, 13 Օգոստոս 1927, Բ. տարի, թիւ 25 (56):

19. *Յուսաբեր*, երկօրեայ, Գահիրէ, 10 Յուլիս 1913, Թ. տարի, թիւ 106:

20. Ե. Գ., «Ազգային Սրահին մէջ», *Յուսաբեր*, 17 Յուլիս 1913, Թ. տարի, թիւ 109:

21. «Ազգային արձագանգ», *Յուսաբեր*, 26 Մայիս 1914, Ժ. տարի, թիւ 241:

22. «Շքեղ հանդէս Ազգային Սրահին մէջ», *Յուսաբեր*, 7 Յուլիս 1914, Ժ. տարի, թիւ 259:

23. «Հրանդ Ալատին (Վեհակրօն)», *Ջէբլին*, շաբաթաթերթ, Գահիրէ, 4 Նոյեմբեր 1933, 15-րդ տարի, թիւ 39:

# ՌԱՍՄՈՒՍԷՆ – ԹԱՍՄԱԿԱՄՊԵԹՈՎ՝ ՀԱԿԱԴԻՐ ՊԱՏԿԵՐՆԵՐ

Յօդուածս տեսակ մը իմաստային շարունակութիւնն է *Ջահակիր*ի առաջին էջին:

**ԱՆՏԵՐՍ ՖՈԿ ՌԱՍՄՈՒՍԷՆ**

2023 Փետրուար 18-ին, Միւնիխ կատարած իր այցելութեան ընթացքին, Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան կը հանդիպի ՆԱԹՕ-ի նախկին գլխաւոր քարտուղար եւ Ռասմուսէն Կլոպալ հիմնադրամի հիմնադիր նախագահ Անտերս Ֆոկ Ռասմուսէնի հետ:

Մարտ 13-ին Ռասմուսէն կը գտնուի Հայաստան: Ան երկօրեայ այցելութեամբ եկած է Հայաստանի կառավարութեան հրաւէրով իբրեւ Ռասմուսէն Կլոպալի նախագահ, սերտացնելու Հայաստանի յարաբերութիւնները Արեւմուտքի եւ Եւրամիութեան հետ: Թէեւ, կարելի չէ անտեսել իր հանգամանքը իբրեւ նախկին ՆԱԹՕ-ական:

Շատ հակիրճ գաղափար մը տուած ըլլալու համար Ռասմուսէն Կլոպալի մասին կարելի է նշել՝ որ 2022-ին հիմնուած այս հիմնադրամը ներկայիս կը գործէ Ուքրաինայի նախագահի գրասենեակին հետ, սատարելու համար երկիրի երկարաժամկէտ ապահովութեան հարցերուն՝ ռուս-ուքրաինական ընթացող պատերազմի յետնախորքին վրայ: Մեկնաբանութիւնը աւելորդ է:

Հրաւէրը Հայաստանի կողմէ կատարուած քաղաքական այլազանումի փորձերէն մէկն էր՝ մօտենալու Արեւմուտքին: Այս պարագային Ռասմուսէն Կլոպալ կը հանդիսանայ վճարովի միջնորդը:

Ռասմուսէն կը հանդիպի Փաշինեանի, Պաշտպանութեան նախարար Սուրէն Պապիկեանի եւ Անվտանգութեան Խորհուրդի քարտուղար Արմէն Գրիգորեանի հետ:

Մարտ 14-ին կ'այցելէ Լաչինի միջանցք եւ Ջերմուկ: Նոյնը օրը իր Ֆէյսպուքի էջին վրայ կ'արձանագրէ անգլերէն լեզուով.

«Այսօր այցելեցի Լաչինի միջանցքը: Ան միակ ճանապարհն է որ Լեռնային Ղարաբաղը կը կապէ Հայաստանին եւ արտաքին աշխարհին:

«Անցեալ տարուայ Դեկտեմբերին ան շրջափակուեցաւ ազրբէյճանցիներուն կողմէ: Այդ ժամանակէն ի վեր ոչ մէկ քաղաքացի կամ առեւտրական ինքնաշարժ կրցած է հասնիլ Լեռնային Ղարաբաղ: Ասիկա 120 հազար բնակիչները թողած է առանց հիմնական ապրանքներու եւ ծառայութիւններու կարելիութեան, ներառեալ կենսական բժշկութեան եւ առողջապահութեան:

«Եւրոպան չի կրնար իր աչքերը փակել մեր սահմաններուն վրայ տեղի ունեցող մարդասիրական ճգնաժամին: Եւրամիութիւնը պէտք է օգտագործէ Ազրպէյճանի հետ ունեցած յարաբերութիւնները եւ մղէ անոր վերացնել շրջափակումը եւ կատարել իր միջազգային պարտաւորութիւնները:

«Եթէ այդպէս չընենք, մարդասիրական վտանգները կրնան վերածուիլ մարդասիրական աղէտի»:

Լաչինի միջանցքի փակումին վերագրումը Ազրպէյճանին ոչ մէկ ռուս պաշտօնատար եւ ոչ մէկ ՀԱՊԿ ներկայացուցիչ յայտարարած է ցարդ: Միշտ յայտարարած են երկկողմանի բանակցութեան եւ փոխհասկացողութեան անհրաժեշտութեան մասին՝ հաւասարեցնելով անհաւասարելին:

Նոյն օրը Ռասմուսէն կ'այցելէ նաեւ Ջերմուկ, ուր ճեպազրոյց կ'ունենայ լրագրողներուն հետ: Ան կը շեշտէ.

«Այսօր այցելեցի Հայաստանի հարաւային մասը, իմ սեփական աչքերովս տեսնելու Ազրպէյճանի յարձակումին հետեւանքները Հայաստանի դէմ: Դեռ հիմա այցելեցի Ջերմուկ հրաշալի քաղաքը, եւ քաղաքապետը տեղեկացուց ինծի թէ ինչպէս անցեալ տարուայ Սեպտեմբերի ազրպէյճանական յարձակումները բացասական ազդեցութիւն ունեցան այս քաղաքի զբօսաշրջիկութեան վրայ:

«Այսօր աւելի վաղ այցելած էի Լաչինի միջանցք: Ինչպէս գիտէք, Լաչինի միջանցքը միակ կապն է Հայաստանի եւ Լեռնային Ղարաբաղի հայկական բնակչութեան միջեւ: Անցեալ տարուայ Դեկտեմբերէն ի վեր Հայաստանի եւ Լեռնային Ղարաբաղի միջեւ ճանապարհը շրջափակումի մէջ է: Այս շրջափակումը անմարդկային է եւ անօրինական: Հանդիպեցայ խումբ մը մարդոց հետ որոնք ապրած են ԼՂ-ի մէջ եւ բուժքոյր մը պատմեց ինծի խիստ ճգնաժամային մարդասիրական վիճակը ԼՂ-ի մէջ: Շրջափակումը կը նշանակէ որ չկայ ուտեստեղէն, չկայ անհրաժեշտ դեղորայք՝ միայն շատ քիչ քանակութիւն մը կարելի է փոխադրել դէպի ԼՂ: Եւ ասիկա կը նշանակէ որ կայ ուտեստեղէնի եւ դեղորայքի պակաս ԼՂ-ի մէջ: Մենք դէմ յանդիման կը կանգնինք մարդասիրական ճգնաժամի՝ որ կրնայ վերածուիլ մարդասիրական աղէտի: Այս շրջափակումը անօրինական է, միջազգային արդարադատութեան դատարանը քանի մը շաբաթ առաջ որոշում կայացուց՝ պարտաւորելով Ազրպէյճանին բանալ միջանցքը երթեւեկութեան առջեւ եւ ապահովել ազատ մուտքը ԼՂ: Պարտաւորեցնող որոշում մըն է, որ կը նշանակէ թէ Ազրպէյճան պարտաւորութիւն ունի միջանցքը բանալու ազատ երթեւեկութեան համար: Այս պատճառով, այսօր շատ յստակ ուղերձ մը ուղղեցի Ազրպէյճանի նախագահ Ալիեւին՝ վերացո՛ւր շրջափակումը այսօր, անմիջապէս:

«Կը կարծեմ, ամենակարեւոր քայլը պէտք է ըլլայ որ Եւրամիութիւնը առաւելագոյն ճնշում բանեցնէ Ազրպէյճանի վրայ: ԵՄ-ն ուժանիւթի ոլորտի համաձայնութիւն ունի Ազրպէյճանի հետ, եւ ասիկա կրնայ գործածել իբրեւ հարթակ Ազրպէյճանի իշխանութիւններուն հետ քննական երկխօսութեան համար: Թերեւս նախագահ Ալիեւ ինքնակալ մը ըլլայ նախագահ Փութինի նման, բայց համոզուած եմ որ նախագահ Ալիեւ պիտի չուզէ յայտնուիլ նոյն իրավիճակին մէջ իբրեւ միջազգային աճաբեկիչ, ինչպէս նախագահ Փութինը: Ասոր համար, անգամ մը եւս կը պահանջեմ նախագահ Ալիեւէն անմիջապէս վերացնել շրջափակումը»:

Կը խօսի Հայաստանի կառավարութեան հրաւէրին մասին. «Այո, մեր դիտաւորութիւնն է ունենալ շատ սերտ համագործակցութիւն Հայաստանի կառավարութեան հետ: Այնպիսի համագործակցութիւն մը՝ որ ունենալու է շատ ընդարձակ ճիւղեր, ընդգրկելով բազմաթիւ ոլորտներ: Բնականաբար, մենք կը խօսինք Եւրամիութեան կողմէ քաղաքական աջակցութեան մասին: Կը կարծեմ, նախ եւ առաջ, էական է որ բարձրացնենք իրազեկութիւնը ԼՂ-ի մարդասիրական ճգնաժամի վտանգի մասին: Միջազգային հանրութիւնը պէտք է կիրառէ առաւելագոյն ճնշում Ազրպէյճանի վրայ՝ լուծելու համար այս հարցը: Ապա մենք կ'ուզենք նաեւ օգնել Հայաստանի կառավարութեան՝ աւելի բարձր աստիճանի հասցնելու քաղաքական երկխօսութիւնը Եւրամիութեան հետ: Իսկ ասիկա կ'ընդգրկէ նաեւ երկխօսութիւն ապահովութեան քաղաքականութեան նիւթով: Եւրամիութիւնը ունի գործիքներու ընդարձակ շարք մը, որ կրնայ օգտակար ըլլալ Հայաստանի համար: Կը կարծեմ որ Հայաստանը պէտք ունի միջազգային գործընկերներու շատ աւելի մեծ շրջանակի քան ինչ որ կայ այսօր»:

Գալով ռազմական համագործակցութեան, Ռասմուսէն կը նշէ՝ որ ընդհանրապէս կայ նման համագործակցութեան հեռանկար, «բայց յատուկ չենք քննարկած ռազմական աջակցութեան եզրերը»:

Մարտ 15-ին, Պետրոս Ղազարեան հարցազրոյց կը վարէ Ռասմուսէնի հետ Հանրային Հեռատեսիլէն: Արդէն պաշտօնական հարցազրոյցի ծիրէն ներս Ռասմուսէն կը կրկնէ վերոյիշեալ ըսածները՝ նոյն շեշտադրութիւններով:

Յաւելեալ կէտ մը, արդարեւ, աչքի կը զարնէ: Խօսքը ՄԱԿ-ի խաղաղապահներու տեղադրութեան մասին է Ղարաբաղի շուրջ՝ իբրեւ խաղաղութեան միակ երաշխիք, որոնց մէջ ըլլան ռուս խաղաղապահներ՝ նկատի առնելով Ռուսաստանի մշտական անդամակցութիւնը ՄԱԿ-ին.

«Եթէ մենք չկարողանանք հասնիլ միջազգային առաքելութեան մանտաթի, ապա հնարաւոր չէ համաձայնութեան գալ խաղաղութեան պայմանագիրի շուրջ, որովհետեւ ան նախադրեալ է յաջողութեան հասնելու համար, տեւական խաղաղութեան պայմանագիրի յաջողութեան հասնելու համար, նախապայման է որ ըլլայ միջազգային խաղաղապահ զօրակազմի մեքանիզմ որ վերահսկէ բոլոր կողմերուն վրայ յարգելու իրենց յանձնարարութիւնները այդ խաղաղութեան պայմանագիրով: Հետեւաբար, [...] մեզի հարկաւոր է այսպիսի միջազգային մեքանիզմ, եւ եթէ չկարողանանք հասնիլ այսպիսի մանտաթի – եւ կատարեալ կ'ըլլայ որ մանտաթը տրուի ՄԱԿ-ի կողմէ, – ապա ես չեմ կարծեր որ գոյութիւն կ'ունենայ խաղաղութեան համաձայնագիր:

«Կը կարծեմ որ դժուար կ'ըլլայ հասնիլ որեւէ մանտաթի առանց Ռուսաստանի մասնակցութեան, երկու պատճառներով: Նախ եւ առաջ՝ դուք արդէն այստեղ ունիք ռուս խաղաղապահներ, երկրորդ՝ Ռուսաստանը ՄԱԿ-ի Ապահովութեան Խորհուրդի մնայուն անդամ է, եւ կը կարծեմ որ մեզի անհրաժեշտ է ՄԱԿ-ի մանտաթ որ կ'ենթադրէ Ռուսաստանի աշխոյժ մասնակցութիւն»:

Կարեւոր է յիշել՝ որ համաձայն 2020 Նոյեմբեր 9-ի յայտարարութեան, 2025 Նոյեմբեր 9-ին կը վերջանայ Լեռնային Ղարաբաղի երկայնքով եւ Լաչինի միջանցքով տեղադրուած ռուս խաղաղապահներուն ժամկէտը: Ան մեքենայաբար վերանորոգելի է, եթէ երեք կողմերէն մէկը ժամկէտի աւարտէն վեց ամիս առաջ չյայտարարէ դրոյթին կիրառումը դադրեցնելու միտում: Ուրեմն, կը մնայ ընդամէնը երկու ու կէս տարի: Մինչ այդ, արդէն տեսանք այդ խաղաղապահներուն անարդիւնաւէտութիւնը Հայաստանի եւ Ղարաբաղի համար՝ ազրպէյճանական էական գործողութիւններու պարագային: Անոնք երաշխիք չեն խաղաղութեան յետագայ պայմանագիրի մը: Իսկ երրորդ կողմի մը գոյութիւնը անհրաժեշտութիւն է պայմանագիրի գործադրութեան համար:

Պատահական թէ դիտաւորեալ, Ռասմուսէնին նմանող միտք նրբօրէն արտայայտեց նաեւ Փաշինեան՝ Մարտ 16-ի կառավարութեան նիստին. «Այսպիսով, կարող ենք արձանագրել, որ Ռուսաստանի Դաշնութիւնը պաշտօնապէս արձանագրել է Լեռնային Ղարաբաղի քաղաքացիական բնակչութեան զանգուածային սպանութեան հաւանականութիւնը եւ ստանձնել է Լեռնային Ղարաբաղի ժողովրդի եւ քաղաքացիական ենթակառուցուածքների անվտանգութեան երաշխաւորի դերակատարումը: Նախկինում մի քանի անգամ այս մասին խօսել եմ, բայց հիմա ուզում եմ կրկնել. մենք յոյս ունենք, որ Ռուսաստանի Դաշնութիւնը վերը նշուած գործառոյթը կը կատարի լիարժէք, բայց եթէ մեր բարեկամ եւ դաշնակից Ռուսաստանի Դաշնութիւնը որեւէ օբիեկտիւ պատճառով չի կարող այդ դերակատարումն իրականացնել, հէնց ինքը, կարծում եմ, պէտք է դիմի ՄԱԿ-ի Անվտանգութեան Խորհուրդ՝ ահազանգելով Լեռնային Ղարաբաղում քաղաքացիական բնակչութեան զանգուածային սպանութիւնների եւ քաղաքացիական ենթակառուցուածքների ոչնչացման վտանգի եւ սա թոյլ չտալու համար՝ Լեռնային Ղարաբաղում եւ Լաչինի միջանցքում լրացուցիչ միջազգային մեխանիզմներ գործարկելու անհրաժեշտութեան մասին»:

Անշուշտ, վեթոյի ուժով Ռուսաստան պիտի արգիլէ գործարքը, եթէ երբեւէ հարցը հասնի ՄԱԿ, իսկ ինք երբեք նման առաջարկ պիտի չներկայացնէ ՄԱԿ-ին: Առ այժմ ասոնք միտքեր են, լուծումներու առաջարկներ, որոնք տակաւին չեն կրնար աւելի հեռու երթալ: Բայց միտքը յստակ է՝ երրորդ կողմի երաշխաւորութեան անհրաժեշտութիւնը խաղաղութեան համար:

Դէպի Եւրամիութիւն ճեղքումը նպատակ ունի ձայներ գտնել Արեւմուտքի մէջ, ի դիմաց ռուսական ձայնի խպառ լռութեան: Ինչ որ Հայաստան այսօր կը կատարէ՝ փորձ մըն է ճեղքելու այդ լռութիւնը, մղելով Եւրամիութիւնը ճնշելու Ազրպէյ-

4

# ՋԱՀԱԿԻՐ

## 1 ԱԴՐԲԷՋԱՆՈՒՄ ՊԱՀՈՒՈՂ ՀԱՅ ՌԱԶՄԱԳԵՐԻՆԵՐԸ՝...

ընկնելու հանգամանքները:

Յօդուածի հեղինակը նաեւ զրուցել է Ադրբէջանում դատապարտուած գերիներից մէկի՝ Մանուկ Մարտոյեանի ընտանիքի անդամների հետ, Հայաստանի Մարդու Իրաւունքների նախկին պաշտպան Արման Թաթոյեանի եւ փաստաբան, ՄԻԵԴ-ում ռազմագերիների հարցերով Հայաստանի ներկայացուցիչ Սիրանոյշ Սահակեանի հետ:

Բաքուն պնդում է, թէ Ադրբէջանում կալանաւորուած է 33 հայ ռազմագերի, սակայն ըստ Արման Թաթոյեանի՝ այս թիւն իրականութեանը չի համապատասխանում: Սիրանոյշ Սահակեանն իր հերթին նշել է, որ 33 ռազմագերիներից զատ, Ադրբէջանում կարող է լինել եւս 80 գերի:

BBC-ն նշում է, որ ադրբէջանական իրաւապաշտպանների խօսքով՝ զինուորականների դատավարութիւններն անց են կացուել իրաւական նորմերի խախտումներով:

«Դատավարութիւններն ընթանում էին հապճեպ, առանց գործի մէջ խորամուխ լինելու. չէ՞ որ բոլորն էլ հասկանում էին, որ վաղն այդ մարդիկ դառնալու են փոխանակման եւ սակարկութեան առարկայ հայկական կողմի հետ կամ ամերիկեան կամ նոյնիսկ սիրիական, քանի որ այնտեղ կայ Սիրիայի երկու քաղաքացի», – նշում է ադրբէջանցի իրաւապաշտպան Արիֆ Եունուսը:

Փորձագէտները նշում են, որ Ադրբէջանին գերիները հարկաւոր են, «տարբեր քաղաքական ժեստերի» համար, օրինակ, երբ տարածաշրջան եկաւ ԱՄՆ պետքարտուղարի ներկայացուցիչը, Ադրբէջանի իշխանութիւնները Հայաստանին յանձնեցին 15 գերու:

Յօդուածի հեղինակը նաեւ նշում է, որ Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութեան պայմանագրի ստորագրումը բախւում է Լեռնային Ղարաբաղի հայերի իրաւունքների պաշտպանութեան խնդրին. հայերը վախենում են իրենց անվտանգութեան համար, քանի որ Ադրբէջանի իշխանութիւններն աջակցում են երկրում հայատեացութեանը:

## 3 ՌԱՍՄՈՒՍԷՆ – ԹԱՍՄԱԿԱՄՊԵԹՈՎ՝ ՀԱԿԱԴԻՐ ՊԱՏԿԵՐՆԵՐ

ճանին վրայ, քաջ գիտակցելով՝ որ Եւրամիութիւնը չէ լուծումը, քաջ գիտակցելով՝ որ Եւրամիութիւնը ինքը չէ ճանաչած Ղարաբաղը իբրեւ հայկական տարածք, քաջ գիտակցելով նոյն ինքը Եւրամիութեան կազային փոշխահաւէտ համաձայնագրութիւնները Ազըրպէյճանի հետ: Վերջապէս, քաջ գիտակցելով Ռասմուսէն Կլոպալի քաղաքական շահախնդրութիւնները: Բայց եթէ ոչ այս ճանապարհը՝ ուրիշ ի՞նչ կը մնայ:

**ԻՄԱՆԿԱԼԻ ԹԱՍՄԱԿԱՄՊԵԹՈՎ**

2012-ին Հայաստան եկած է ՆԱԹՕ-ի գլխաւոր քարտուղար Անտերս Ֆոկ Ռասմուսէն եւ հանդիպում ունեցած նախագահ Սերժ Սարգսեանի հետ: Այցելութիւնը հետեւանքն էր Հայաստանի մասնակցութեան Աֆղանստանի եւ Քոսովոյի մէջ ՆԱԹՕ-ի կողմէ ղեկավարուող խաղաղապահ ուժերուն: Դիւանագիտական քայլ մը Հայաստանի կողմէ: Ռասմուսէն եկած էր շնորհակալութիւն յայտնելու Հայաստանին:

2022 Յունուարին աշխատաւորական զանգուածային ցոյցեր են Ղազախստանի մէջ: ՀԱՊԿ ուժեր կ'ուղարկէ այնտեղ, պաշտպանելու համար բռնապետ նախագահը եւ լռեցնելու ցոյցերը: Հայաստան կը մասնակցի ՀԱՊԿ-ի գործողութիւններուն: Դիւանագիտական քայլ մը Հայաստանի կողմէ: ՀԱՊԿ-ի կողմէ ոչ մէկ փոխադարձ այցելութիւն դէպի Հայաստան, ոչ մէկ հանրային շնորհակալութիւն:

Ասիկա՝ պատկերային հակադրութիւն մը ՆԱԹՕ-ի եւ ՀԱՊԿ-ի միջեւ, 10 տարուայ հեռաւորութեան վրայ, թէեւ երկուքն ալ կը միաւորուին տիրող երկիրներու ռազմական-շահադիտական հակաժողովրդական գործողութիւններու կիրառութեամբ:

ՀԱՊԿ-ի դիրքը Հայաստանի նկատմամբ արդէն գաղտնիք մը չէ, եթէ երբեւէ գոյութիւն ունի ՀԱՊԿ-ը:

Յանկարծ, անսպասելի ու անկականկալ այցելութեամբ Մարտ 16-ին Հայաստան կու գայ ՀԱՊԿ գլխաւոր քարտուղար Իմանկալի Թասմակամպեթով, ճիշդ Ռասմուսէնի վերջին այցելութենէն երկու օր ետք: Պատահականութի՞ւն: Դժուար է հաւատալ:

Հանդիպում Պաշտպանութեան նախարար Սուրէն Պապիկեանի (16 Մարտ), վարչապետ Նիկոլ Փաշինեանի (17 Մարտ), Արտաքին Գործոց նախարար Արարատ Միրզոյեանի (17 Մարտ) հետ:

Մարտ 16-ին կ'այցելէ Ջերմուկի ռմբակոծուած վայրերը՝ ճիշդ այնպէս ինչպէս Ռասմուսէնը: Հիմա՞ յիշեց այցելել: Ենթադրուած է որ դաշնակից երկիրները ռմբակոծումի նոյն օրը այցելեն իրարու: Հիմա արդէն ՀԱՊԿ քարտուղարը իր սեփական աչքերով կը տեսնէ ամէն բան: Հայերը ցոյց կու տան ամէն բան: Եւ տակաւին, քարտուղարը ոչ մէկ յայտարարութիւն կ'ընէ, ոչ մէկ ակնարկութիւն կը կատարէ Ազըրպէյճանի կողմէ ռմբակոծուած ըլլալու իրողութեան մասին:

Ոչ մէկ այցելութիւն դէպի Լաչինի միջանցք, իր կողմէ ոչ մէկ խօսք անոր մասին:

Պարզապէս ՀԱՊԿ գտնուած է Ռասմուսէնի հակապատկերը ստեղծելու պարտաւորութեան տակ:

Ոչ մէկը եւ ոչ միւսը պիտի փրկեն Հայաստանը, բայց Հայաստան իր ամենամտերիմ եւ պայմանագրային դաշնակիցէն առնուազն պիտի ակնկալէր իրական յայտարարութիւններ՝ փաստացի կատարուածներու մասին:

Ա.

## 1 ԱԼԻԵՒ – ԼԱՒՐՈՎ՝ ՀԱՄԱԼՐՈՂ ՊԱՏԿԵՐՆԵՐ

«Մենք ունինք ուժ, ունինք ընկերներ, ունինք ուժեղ դիրք աշխարհի մէջ եւ ունինք ուժեղ կամք: Մենք ասիկա ցոյց տուինք պատերազմի ժամանակ եւ յետպատերազմեան շրջանին»:

**ՍԵՐԿԷՅ ԼԱՒՐՈՎ**

Մարտ 20-ին Մոսկուայի մէջ տեղի կ'ունենայ Հայաստանի եւ Ռուսաստանի արտաքին գործոց նախարարներու՝ Արարատ Միրզոյեանի եւ Սերկէյ Լաւրովի հանդիպումը:

Երկկողմը ինքնին վկայութիւն մըն է եռակողմ ձեւաչափի ձախողութեան՝ Ազըրպէյճանի մշտանորոգ անգործադրելի պահանջներուն պատճառով, որոնք միտուած են նաեւ ձախողեցնել բանակցութիւնները:

Հանդիպումին յաջորդած մամուլի համատեղ ասուլիսին Լաւրովի արտասանած խօսքերէն մէկը խիստ մտահոգիչ է:

Պր. Լաւրով կը յայտարարէ՝ թէ Լեռնային Ղարաբաղի ապահովութեան հարցերը պէտք է լուծուին Ղարաբաղի ներկայացուցիչներու եւ Պաքուի միջեւ բանակցութիւններով: Պաքուի եւ ԼՂ-ի հայերուն միջեւ ապահովութեան երաշխիքներու եւ իրաւունքներու շուրջ երկխօսութեան վերաբերեալ Հայաստանի վարչապետի յայտարարութիւնը կը գտնէ Մոսկուայի աջակցութիւնը, կը նշէ Լաւրով, եւ կ'աւելցնէ իր տխրահռչակ խօսքը, որ իրաւացիօրէն մեծ աղմուկ պիտի բարձրացնէր Հայաստանի մէջ.

«Նոյնը եղած է նաեւ Մինսքի համաձայնագիրներուն մէջ՝ Ուքրաինայի արեւելեան հատուածի բնակիչներու իրաւունքներուն մասով՝ մայրենի լեզուի իրաւունք, երեխաներուն այդ լեզուով սորվեցնելու, այդ լեզուն օգտագործելով ապրելու, աշխատելու, սեփական մշակոյթը, կրօնքը պահպա--նելու, տեղական ինքնակառավարումի հնարաւորութեան եւ հայրենակիցներու հետ որոշակի յատուկ կապեր ունենալու իրաւունք: Տոնպասի պարագային ասիկա Ռուսաստանն էր: Մօտաւորապէս նոյն իրաւունքները նախատեսուած էին նաեւ 10 տարի առաջ Պելկրատի եւ Փրիշթինայի միջեւ ստորագրուած համաձայնագիրին մէջ՝ «Քոսովոյի սերպական տեղական ինքնակառավարումի մարմիններու» ստեղծումին մասին համաձայնագիրով: Ես կը կարծեմ, որ ղարաբաղցիներուն համար անհրաժեշտ է մօտաւորապէս այդ տեսակ իրաւունքներու ծրար»:

Լաւրով համոզուած է՝ որ բարդ չէ նման համաձայնութեան հասնիլ եւ շատ բան կախուած է միջնորդներու պարկեշտութենէն: Այսինքն, Արեւմուտքը պարկեշտ չէ գտնուած Տոնպասի ռուսերու եւ Քոսովոյի սերպերու հարցերուն նկատմամբ:

Ասիկա ամենէն անհաւանական յայտարարութիւնն էր՝ զոր Միրզոյեան պիտի ուզէր լսել համատեղ մամուլի ասուլիսին:

Լաւրով Ղարաբաղի հայերը կը համեմատէ Ուքրաինայի մէջ գտնուող Տոնպասի ռուսերուն եւ Սերպիոյ մէջ գտնուող Քոսովոյի սերպերուն հետ, որ ինքնին, անկախ Ղարաբաղի համեմատութենէն, կը ներկայացնէ իրադարձութիւններու տգեղօրէն ձեւակերպուած եւ ձեւազեղծուած տարբերակը: Շատ պարզ: Ուրեմն, Ազըրպէյճանի մէջ գտնուող Ղարաբաղի հայերուն ապահովութիւնը պէտք է երաշխաւորուի Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ համաձայնութեամբ, եթէ երբեւէ մէկ հայ մնայ անոր ազըրպէյճականացումէն ետք (ճիշդ այնպէս, ինչպէս Ղարաբաղի առաջին պատերազմէն ետք անոր հայացումին հետեւանքով ոչ մէկ ազըրպէյճանցի կրնար ապրիլ այնտեղ, եթէ նոյնիսկ ըլլային հայկական պաշտօնական երաշխաւորանքներ): Ղարաբաղը Ազըրպէյճան է, ինչպէս քանի մը տարի է վճռականօրէն կը յայտարարէ Ալիեւ: Ռուս-ազըրպէյճանական շահերը կը համընկնին կատարելապէս:

Ասիկա, սակայն, Լաւրովի միակ վտանգաւոր յայտարարութիւնը չէր: Ի միջի այլոց, ան ըսաւ նաեւ՝ որ տակաւին 44-օրեայ Հոկտեբերին կար պատերազմը դադրեցնելու կարելիութիւն, բայց մանրամասնութիւնները պէտք է թողուլ պատմութեան ուսումնասիրութեան: Խօսքը Հոկտեմբեր 9-ի չգործադրուած հրադադարի մասին ըլլալու է եւ անոր նախորդած եռակողմ երկար բանակցութեան Մոսկուայի մէջ: Այսպիսի կիսատ, անաւարտ եւ առկախ յայտարարութիւն՝ որուն նմանը ուրիշ անգամ լսած էինք Փութինէն, կը մտնեն Հայաստանը քննադատելու ընդհանուր բնաբանին մէջ եւ սլաքը կ'ուղղուի Փաշինեանին՝ պատերազմը շարունակելու մեղադրանքով: Ի՞նչ պայմաններու տակ պիտի դադրէր պատերազմը եւ ինչո՞ւ Ազըրպէյճան պիտի ուզէր դադրեցնել՝ եթէ պիտի կրնար հասնիլ մինչեւ Շուշի: Հոկտեմբեր 9-ին ի՞նչ անկարելի զիջումներ կը պահանջուէր արդէն պարտուող Հայաստանէն՝ պատերազմը դադրեցնելու համար:

Բայց Լաւրովի խօսքը նաեւ ուղղուած է Հայաստանի ներքին լսարանին՝ այսպէս կոչուած ընդդիմութեան, որ յաջողապէս օգտագործեց Լաւրովի այս խօսքերը անգամ մը եւս պարզելու իր փոփիւլիսթական յարձակումը ներկայ իշխանութեան վրայ: Կը շեշտեմ՝ փոփիւլիսթական, քանի որ Հայաստանի իրական ընդդիմութիւնը կը գտնուի այլուր: Վերջապէս, Հայաստանի օլիկարքական «ընդդիմութեան» պարագլուխները բարեկամներն են Փութինին, իսկ վերջինս Թաւշեայ Յեղափոխութեան առաջին օրէն իսկ անթաքոյց գործողութիւններով ցոյց տուաւ իր աջակցութիւնը անոնց եւ բացայայտ վերապահութիւնը նոր իշխանութիւններուն նկատմամբ: Ժողովրդավարութիւն, մարդու իրաւունքներ եւ նման բաներ պէտք չէ հնչեն Ռուսաստանի տիրապետած գաղութներէն ներս: Յեղափոխութիւններ պէտք չէ իրացուին այնտեղ:

Ա.

Յ. Գ. - Յօդուածիս տեսակ մը իմաստային շարունակութիւնը տեսնել *Ջահակիր*ի երրորդ էջը:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1937 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 6 ԱՊՐԻԼ 2023 ՀԱՏԸ ՋԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٣٧ الخميس ٦ أبريل ٢٠٢٣


## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՊԱԿՈՂՄՆՈՐՈՇՈՒՄ ԵՒ ՌԱՍՄՈՒՍԷՆ ԿԼՕՊԱԼ

21-րդ դարու յատկանիշներէն է քաղաքական ապակողմնորոշումը, ուր կը գործեն պետութիւններուն միջեւ խաչաձեւեալ, ժամանակաւոր ու յարափոփոխ դաշնակցութիւնները: Ասիկա յաջորդեց դրամատիրութիւն/համայնավարութիւն, ՆԱԹՕ/Վարշաւայի Դաշինք երկբեւեռութեան, որուն մէջ ենթակայ երկիրներուն ընտրեալ թէ պարտադիր կողմնորոշումները դէպի այս կամ այն կողմը անհամեմատօրէն յստակ էին ու յարատեւ տուեալ ժամանակամիջոցի մը մէջ:

Քաղաքական ապակողմնորոշումը միայն կողմի փոփոխութիւն չէ կարճ ժամանակի մէջ, այլեւ միաժամանակեայ դաշնակցութիւններ տարբեր երկիրներու հետ՝ նոյնիսկ հակամարտող երկիրներու, այսինքն՝ քաղաքական յարաբերութիւններու շերտաւորումներ տարբեր աստիճաններով:

**Հայաստան**

Հայաստանի ներկայ պայմաններուն մէջ նշանակութիւն ունին քաղաքականապէս գանազան կողմեր, որոնցմէ Ռուսաստանն ու Արեւմուտքը վերջերս յատուկ կողմնորոշում ստացան, յատկապէս յետյեղափոխական Հայաստանի հանդէպ Ռուսաստանի ցուցաբերած թաքուն ու բացայայտ ոչ-դրական վերաբերմունքի յետնախորքին վրայ:

Աւելորդ չէ կրկնել՝ որ Հայաստան կը հանդիսանայ Ռուսաստանի ամենամերձաւոր պայմանագրային դաշնակիցը, զոր Ռուսաստան կը գործածէ Հայաստանի նկատմամբ նորգաղութատիրական դիրքորոշումը կողմնորոշելու համար, անոր հետ վերաբերելով գրեթէ ստրուկային տրամաբանութեամբ: Հայաստան ընդունած է ասիկա՝ ելլելով շրջապատող երկիրներուն նկատմամբ ունեցած իր վախէն, պետական ապահովութեան ամուր թիկունք գտնելու ցանկութենէն, այլեւ, ինչու չէ, ունենալու սեփական օլիկարքական համակարգը պահպանելու ամուր յենակ:

Հայաստան տակաւին հանդիստ կրնար չզանգատիլ Ռուսաստանէն, եթէ տարածաշրջանային եւ համաշխարհային մշտանորոգ պայմաններու հետեւանքով՝ ընդհանուր քաղաքական ապակողմնորոշումի բնաբանին տակ, Ռուսաստան չկազմէր նոր դաշնակցութիւններ, չամրացնէր ուրիշները՝ ի հաշիւ Հայաստանին, անտեսելով կամ շրջանցելով իր ամենամերձաւոր եւ ամենաուժեղ դաշնակիցի հանդէպ ունեցած պայմանագրային պարտաւորութիւնները, մինչ ամուր պահելով անկէ ստացած նէօլիպերալ եւ քաղաքական շահերը: Այս խաղի հետեւանքն է՝ որ Հայաստան ներկայիս կը փորձէ ճեղքել ճամբաներ դէպի Արեւմուտք, ապակողմնորոշել իր արտաքին քաղաքականութիւնը, առանց երբեք փորձելու հեռանալ Ռուսաստանէն իբրեւ պայմանագրային դաշնակից կամ նոյնիսկ կասկածի ենթարկել պայմանագրութեան կէտերը, բայց հանրային յայտարարութիւններով ժամանակ առ ժամանակ Ռուսաստանին յիշեցնելով իր թերացումները:

Ուրեմն, Ռուսաստան եւ Արեւմուտք կը կազմեն Հայաստանի ներկայ քաղաքականութեան առանցքները, որով բնաւ աւելորդ պիտի չըլլար շատ հակիրճ ակնարկ մը նետել անոնց վրայ, երկուքն ալ իբրեւ դաժան միաւորներ՝ որոնց հետ Հայաստան պարտաւոր է հաղորդակցիլ:

**Քիչ մը պատմական**

Երկուութիւնը միշտ համերաշխ գործած է մարդկային ընկալումին հետ, դիւրութեամբ ներխուժելով զանգուածային մտածողութենէն ներս եւ անճիգօրէն տիրապետելով անոր վրայ: Եւ այս պատճառով, Խորհրդային Միութեան փլուզումէն ետք, հակառակ ձեւաւորուող քաղաքական ապակողմնորոշումներուն, Արեւմուտքը, արդարեւ, յաջողեցաւ ստեղծել նոր երկբեւեռութիւն մը բարի/չար սկզբունքին վրայ՝ Արեւմուտք ընդդէմ իսլամական ծայրայեղութիւն, ինքն իր կողմէ ստեղծելով եւ սնելով իսլամական ծայրայեղութիւնը: Բայց, ի տարբերութիւն տարածքային ու գաղափարախօսական կայունութեամբ յատկանշուող նախկին համայնավար պլոքին, իսլամական ծայրայեղականութիւնը յեղյեղուկ հասկացողութիւն մըն էր՝ ոչ ընդհանրական, իսկ տարածքային առումով՝ շարժունակ:

Այս նոր երկբեւեռականութեան գաղափարը՝ որուն կայունութեան մասին իշխանական լրատուամիջոցներուն միջոցով Արեւմուտքը հաւատացնել տուաւ իր ժողովուրդին, չբաւնեցին բազմաթիւ այլ պետութիւններ, որոնց համար նպաստաւոր չէր արհեստածին երկբեւեռայնացումի ներկայացումը: Արդ, այս երկբեւեռականութիւնը տարածաշրջանային էր, այլ ոչ համաշրջանային:

Մինչդեռ Արեւմուտքն ինքնին անկայուն հասկացողութիւն մըն է: Արեւմուտք եզրոյթը կարելի է գործածել իբրեւ զուտ աշխարհագրական սլաք, բայց իրական տարածքի առումով կը ներկայացնէ հակասութիւններու եւ անհամաձայնութիւններու տոպրակ մը:

Այսօր, Արեւմուտքը իր սեփական երկբեւեռային գաղափարախօսութեան համար դադրեցուց ընտրել իսլամական ծայրայեղականութիւնը, փոխարէնը ընտրելով Ռուսաստանը՝ ռուս-ուքրաինական պատերազմի յետնախորքին վրայ, կամ, աւելի ճիշդ, ստեղծելով այդ պատերազմը՝ նոր երկբեւեռականութեան համար, միշտ բարի/չար սկզբունքով:

Բայց Արեւմուտք/իսլամիզմ եւ Արեւմուտք/Ռուսաստան երկբեւեռայնութիւններուն միջեւ ի յայտ եկաւ ուրիշ մը՝ մարդը ընդդէմ Քովիտ 19-ի, բարին ընդդէմ չարին: Իբրեւ թէ Չինաստանի (չար կողմը) ծնունդ մը, Քովիտ 19-ի (չար կողմը) ընկալողական զանգուածայնացումը ի կատար ածուեցաւ արեւմտեան (բարի կողմը) տիրական լրատուամիջոցներուն ընդմէջէն, յառաջացնելով մարդը ընդդէմ Քովիտի երկբեւեռ պայքարը, բարի մարդու կողմէ պայքար մը աներեւոյթ, անշօշափելի, անըմբռնելի, ճակատագրային չար թշնամիին դէմ: Բայց կենաց-մահու պայքարը անտեսանելիին դէմ երկար չէր կրնար տեւել: Եւ ահաւասիկ վրայ հասաւ, ինչպէս վերը նշեցի, ռուսական գործօնը՝ Արեւմուտք/Ռուսաստան, որուն ազդեցութեան տակ կ՚ապրինք այսօր:

**Արեւմուտք**

Իսկ իրականութեան մէջ ի՞նչ կը ներկայացնէ Արեւմուտք կոչուածը՝ ՆԱԹՕ-ի կրողը: Երկդիմի միաւորներու (ան)համախմբում մը, ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՓԱՇԻՆԵԱՆԸ ՄԱՍՆԱԿՑԵԼ Է ՅԱՆՈՒՆ ԺՈՂՈՎՐԴԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԵՐԿՐՈՐԴ ԳԱԳԱԹՆԱԺՈՂՈՎԻ ԲԱՑՄԱՆԸ

Վարչապետ Նիկոլ Փաշինեանը Մարտի 29-ին մասնակցել է Յանուն ժողովրդավարութեան երկրորդ գագաթնաժողովի պաշտօնական բացման լիագումար նիստին, տեղեկացնում է Հայաստանի վարչապետի գրասենեակը:

Գագաթնաժողովն անցկացւում է Ամերիկայի Միացեալ Նահանգների նախագահ Ջօ Բայդէնի նախաձեռնութեամբ՝ առցանց ձեւաչափով:

Վարչապետը յայտարարութեամբ է հանդէս եկել: 3.5 րոպէանոց ելոյթի մեծ մասը Լաչինի շրջափակմանը, Արցախի ու Հայաստանի անվտանգութեանն էր առնչւում:

Լիագումար նիստը մեկնարկել է հիւրընկալող երկրների՝ Միացեալ Նահանգների, Կոստա Ռիկայի, Նիդերլանդների, Կորէայի եւ Զամբիայի ղեկավարների ողջոյնի ուղերձներով: Բացման խօսքով հանդէս է եկել նաեւ ՄԱԿ-ի գլխաւոր քարտուղար Անտոնիօ Գուտերէշը:

Փաշինեանի գրասենեակը նշում է, որ գագաթնաժողովի օրակարգի շրջանակում նախատեսւում են թեմատիկ պանէլային քննարկումներ՝ 2021թ. Յանուն ժողովրդավարութեան առաջին գագաթնաժողովի յանձնառութիւնների կատարման, ժողովրդավարութեանը սպառնացող մարտահրաւէրների, ինչպէս նաեւ ժողովրդավարական արժէքների՝ կառավարման հաշուետուողականութեան ապահովման, օրէնքի գերակայութեան, մարդու իրաւունքների պաշտպանութեան, մամուլի ազատութեան, ներառական տնտեսական աճի եւ այլ թեմաների շուրջ:

Գագաթնաժողովին մասնակցելու հրաւէր է ուղարկուել 120 երկրների առաջնորդների: Հրաւիրեալների ցանկում այս տարի եւս չկան Թուրքիան, Ադրբէջանը, Իրանը, Ռուսաստանը:

Ռուսաստանի նախագահի խօսնակ Դմիտրի Պեսկովը յայտարարել է, թէ Բայդէնի կազմակերպած Յանուն ժողովրդավարութեան գագաթնաժողովը այլոց դասեր տալու փորձ է, եւ երկրների ինքնիշխան գործն է մասնակցել այդ դասին: «Մոսկուան այդ համաժողովը լուրջ իրադարձութիւն չի համարում», - ասել է Պեսկովը:

## ՄԻՐԶՈՅԵԱՆԸ ԿՐԿԻՆ ԿԱՐԵՒՈՐԵԼ Է ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՓԱՍՏԱՀԱՒԱՔ ԱՌԱՔԵԼՈՒԹԵԱՆ ՈՒՂԱՐԿՈՒՄԸ

Ադրբէջանը պէտք է վերացնի Լաչինի միջանցքի արգելափակումը, Մարտի 28-ին ասել է Հայաստանի արտգործնախարար Արարատ Միրզոյեանն՝ ընդունելով Հայաստանում Իսպանիայի դեսպան Մարկոս Գոմէս Մարտինէսին:

Ըստ Հայաստանի արտաքին քաղաքական գերատեսչութեան՝ Միրզոյեանը կրկին կարեւորել է Լաչինի միջանցք միջազգային փաստահաւաք առաքելութեան ուղարկումը:

Հայաստանի արտգործնախարարն ու Իսպանիայի դեսպանը մտքեր են փոխանակել տարածաշրջանային անվտանգութեանը եւ կայունութեանը վերաբերող թեմաներով, անդրադարձել Հայաստանի եւ Լեռնային Ղարաբաղի նկատմամբ Ադրբէջանի՝ այդ թւում նաեւ վերջին շրջանի ագրեսիւ գործողութիւններին, ամենաբարձր մակարդակով հնչող հռետորաբանութեանը:

Միրզոյեանն ու Մարտինէսը քննարկել են նաեւ երկկողմ հարցեր, այդ թւում՝ տնտեսական ու տեղեկատուական տեխնոլոգիաների ոլորտներում համագործակցութեան ընդլայնման հնարաւորութիւնները, անդրադարձել Հայաստանում ԵՄ քաղաքացիական մշտադիտարկման առաքելութեան տեղակայմանը եւ Հայաստան-ԵՄ գործընկերութեան այլ հարցերի՝ հաշուի առնելով նաեւ, որ Իսպանիան Յուլիսից ստանձնելու է ԵՄ խորհրդում նախագահութիւնը:

# ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՕՆ (ԱԼԱՏԻՆ)

## Եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, յօդուածագիր

Հ. ԱՒԱԳԵԱՆ

### ՑՕԴՈՒԱԾՆԵՐ

1901-էն սկսեալ զանազան նիւթեր արծարծող յօդուածներ ստորագրած է եգիպտահայ մամուլին մէջ՝ *Փարոս* (Գահիրէ), *Լուսաբեր* (Գահիրէ), *Արեւ* (Աղեքսանդրիա եւ Գահիրէ) եւ *Արաքս* (Աղեքսանդրիա):

Մահուան առիթով *Արաքս* կը նշէ՝ թէ ան լրագիրին աշխատակցած է զանազան կեղծանուններով(24): Առ այժմ կարելի չըլլալով բացայայտել կեղծանունները, պիտի բաւարարուիմ բուն անունը կրող յօդուածներով:

**Ղեւոնդ Ալիշան**

Իբրեւ Մուրատ Ռափայէլեան Վարժարանի սան, Հ. Ղեւոնդ Ալիշանի վախճանը 1901-ին առիթ կ՚ընծայէ Ալատինին ոչ միայն յօդուածով մը ներբողել բազմաբեղուն գիտնականին վարկը, այլ արձանագրել անձնական յիշողութիւններ:

Վենետիկի Հայրերը օրական մտածումի ժամեր ունէին: Ժամեր՝ խորհելու, միտքերու մէջ խորասուզուելու եւ կարդալու: Ալիշան կ՚ախորժէր այդ ժամերը անցընել իր սիրած եղեւինի տակ. «Հոն՝ ալեծածան Վենետիկի եզերքներէն գրեթէ երկու ժամ հեռու, Ս. Ղազարի առանձնացեալ կղզիին մէջ բարձր եղեւինի մը ներքեւ՝ ցերեկի ճաշէն յետոյ, Հ. Ղեւոնդ Ալիշան՝ ձեռքը գիրք մը, եւ սովորաբար Հոմերոսն էր այն, կ՚երթար հանգչելու եւ խորասուզուելու իր մտածականին մէջ: Վենետիկի վարդապետները մտածականի յատկացուած ժամեր ունէին. Ալիշան անոր տիպարն էր: 1890-95-ին էր որ ճանչցայ սպիտակամօրուս նիհար ծերունին որուն դէմքին վրայ կարելի էր կարդալ Ալիշան անունը. իր սեւ հագուստին մէջ բաթաթուած, ձեռքերը կուրծքին վրայ խաչաձեւ, աչքերը հանդարտ, նա մունջ քայլերով կ՚երթար միայն իր սենեակէն եկեղեցի եւ եկեղեցիէն իրեն սիրական եղեւինի ծառին ներքեւ»:

70 տարեկանին արդէն Ալիշան չէր զբաղեր կազմակերպչական գործերով այլ կը կեդրոնանար մտաւոր արտադրանքին վրայ. «Վանքին ներքին գործերը չէին հետաքրքրեր զինք քանի որ նախ վստահ էր թէ լաւագոյս արդէն կը կառավարուէին եւ յետոյ ժամանակին շատէն շատ իսկ աշխատած էր»:

Հակառակ իր մենակեցութեան, բնաւ դժուար չէր հանդիպիլ իրեն. «[Ի]ր հեզահամբոյր բնաւորութեամբ համարձակութիւն կու տար ամենուն իրեն մօտենալու»:

Հայկական յեղափոխութեան՝ *Հնչակի* եւ *Դրօշակի* ժամանակներն էին 1890-ականները: Ալիշան դէմ չէր յեղափոխութեան, եթէ ան վարուէր ողջախոհ կերպով. «Աստուածածնի տօնին, հին սովորութեան մը համեմատ Վենետիկի Մուրատ-Ռափայէլեան վարժարանի ուսանողները Ս. Ղազարի վանքը կ՚երթային հանդիսաւոր պատարագի ներկայ ըլլալու որմէ յետոյ տեղի կ՚ունենար աջահամբոյրի սովորութեան գործադրութիւնը: Պարզ սենեակի մը մէջ ուր միայն վանական անշուք մահճակալ մը եւ երկու աթոռ կը գտնուէին, իսկ պատուհանի առջեւ հացի կտրուանքներու պնակ մը թռչուններուն համար, Հ. Ղեւոնդ Վ. Մ. Ալիշան, նստած՝ իր պարզուկ գրասեղանին առջեւ, թուղթի պզտիկ կտորներու վրայ արձանագրութիւններ կ՚ընէր երբ ներս մտանք աջահամբոյրի: Իր պարզութեանը մէջ այդ պատկառելի ծերունին ոտքի վրայ կայնած հայրական քաղցր յորդորներէ յետոյ մեզ կը ցուցնէ կեանքի ճամբան, որովհետեւ այն տարին շրջանաւարտ էինք. «Տղա՛քս, ըսաւ, դպրոցին մէջ սորվածներէդ բոլորովին տարբեր բաներ սորվելու պիտի երթաք. հոս իբրեւ Հայ ապրեցաք, աշխարհի մէջ ալ Հայ եւ իբր ճշմարիտ Հայ ապրեցէք». պահ մը լռելէ յետոյ. «Երբ ընթերցասրահն էինք, շարունակեց, նշմարեցի որ գրեթէ ամէնդ ալ *Հնչակ*, *Դրօշակ* եւ յեղափոխական թերթերը լափելով կը կարդայիք. հրճուեցայ, այո՛, տեսայ ձեր հայրենասիրական եռանդը, սակայն կը վախնամ. իմ խորհուրդս ըլլայ, սիրեցէք հայրենիքնիդ առանց ձեռքէ ձգելու ողջմտութիւնը եւ խոհեմութիւնը»:

Մխիթարեան հօր նրբօրէն արտայայտուած այս խօսքերուն մէջ դժուար չէ որսալ ոչ-ողջախոհ միտումներու առկայութիւնը հայկական յեղափոխութեան գործադրութեան մէջ(25):

**Երիտասարդ**

«[Տ]արիքը չէ որ երիտասարդը կը պատրաստէ, այլ գաղափարի մեծութիւնը», իսկ գաղափարի մեծութիւնն է խորհիլ ընդհանուրին համար եւ օգտակար ըլլալ հանրութեան:

«Տարիներու ծանրութեան ներքեւ հինցած եկեղեցական միտքը Աստուծոյ բարձրացնելէ յետոյ եթէ գիտէ խոնարհիլ նաեւ մինչեւ իր ժողովուրդին, լսել անոր հեծեծանքները, սրբել անոր արցունքը, դարմանել սիրտին վրայ բացուած վէրքերը, ա՛ն է երիտասարդը: Հազարաւոր ոսկիներու հետ խաղացող տարիքոտ դրամատէրը իր ազգին հարազատ զաւակն է, երիտասարդութեան տիպար մ՚է երբ կը խորհի միջոցներ թշուառութեան մէջ հալող մաշող ազգակիցներու օգնութեան հասնելու, անոնց ափին մէջ մէկ մէկ կտոր հաց եւ լեզուներուն ծայրը մէկ մէկ կաթիլ ջուր դնելու համար: Հայ երիտասարդը այն անհատն է որ իրմէ աւելցածով ուրիշներու պակասը լեցնելու կը սատարէ»(26):

**Գրող-ընթերցող**

Գրական տափակութիւններուն դէմ պայքարելու եւ իրական գրականութիւն ստեղծելու համար կարեւոր է թէ՛ գրողի եւ թէ՛ ընթերցողի շօվինիզմը:

Շօվինիսթ գրողը նուիրեալ ու անձնուէր գրողն է՝ հեռու մոլեռանդութենէ. «Շօվէն՝ մոռացումն էր իր անձին եւ անոր նուիրումը իր պաշտպանած դատին՝ Հայրենիքին: Շօվէններ են ամէն անոնք, անձնուէր ուխտաւորները գրականութեան, որոնք յենած իրենց փշալից եւ խոշտանգուած ցուպին կը պաշտպանեն գրականութեան դատը սա՝ դրամապաշտ աշխարհին մէջ: Մոլեռանդութի՛ւն պիտի ըսէք, սակայն գեղարուեստը համակ բանականութիւն, տրամաբանութիւն, իմացականութիւն է, հեռու մոլեռանդութենէ՝ ան կրնայ պարտադրել ինքզինքը՝ արժանի իւրացումով»(27):

Այսպիսի գրականութիւն իրացնելու գործընթացին մէջ դեր կը խաղայ շօվինիսթ ընթերցողը. «Անոնք՝ գրականութեան սիրողներն են, խստապահանջ շօվէններն են՝ ընթեռնելի երկասիրութիւններու, միտքի ճշմարիտ յղացումներու որոնց մէջ առաւելագոյն բաժին մը պահուած ըլլար սրտին գործունէութեան: Այսպէս՝ Դատողութեան եւ Զգացումի զուգընթաց գործունէութեամբ գրականութեան սիրողներուն պիտի տային հոգեկան վայելք մը: Ընթերցողներու այս դասակարգն էր որ պիտի մերժէր ընթերցումը տափակութիւններու»(28):

Գրող եւ ընթերցող կը լրացնեն իրարու: Կարելի է այս ընթացքը որակել իբրեւ պատճառ եւ արդիւնք, առանց մատնանշելու ով է պատճառը կամ արդիւնքը, քանի որ գրողն ու ընթերցողը՝ ինչպէս պատճառն ու արդիւնքը, փոխադարձաբար ներթափանցուած են իրարու. «Երեւոյթներու ուսումնասիրութեանց մէջ երկու գլխաւոր ազդակներ կը տեսնէ իմաստասէրը, պատճառ եւ արդիւնք: Այս ազդակներով կեանք ստացած են բոլոր ստեղծագործութիւնները, ըլլան անոնք առարկայական թէ հոգեկան: Ստեղծագործութիւն մ՚է նաեւ գրականութիւնը որ չի կրնար ստանալ կեանք առանց վերոյիշեալ երկու ազդակներուն, այսինքն հեղինակ եւ ընթերցող: Դժուար պիտի ըլլար թէ որոշել այս երկու ազդակներուն ո՛րն է պատճառ եւ ո՛րն է արդիւնք: Ճշմարիտ պիտի ըլլար ըսել թէ մէկը միւսին հետ փոխադարձ եւ հաւասար յարաբերականութիւն մ՚ունենալով իրարու հ՛ւ պատճառ են հ՛ւ արդիւնք: Երկուք հաւասարապէս գիրար կը ստեղծեն, գիրար կ՚ամբողջացնեն եւ որ աւելին ու անհրաժեշտն է՝ գիրար կը պահպանեն: Մէկին թուլացումով կը ջլատուի միւսը: Կը մնայ ճշդել պատասխանատուն»(29):

**Կ՚ապրիմ որովհետեւ կ՚ուզեմ**

Տեքարթի «Կ՚ապրիմ որովհետեւ ի գոյ եմ»-ի փոխարէն Վեհակրօն կը նախընտրէ՝ «Կ՚ապրիմ որովհետեւ կ՚ուզեմ»:

Կարեւոր է որ անհատը գործունէութենէ առաջ ուսումնասիրէ *գործօնութիւնը*, զայն *խորհրդածումի* (ձեռնարկին ուսումնասիրութեան) միջոցով փոխանցելով հաւաքականութեան:

Այլասերած է այն մարդը՝ որ չունի խորհրդածում. «Գործօն չէ այն շնչաւորը, նաեւ մարդ-արարածը որ չունի խորհրդածում, ինչ որ կը նշանակէ թէ իբր մարդ-արարած՝ մահացուցած է իր մէջ ասոր յարակից բոլոր գործօն յատկութիւնները, այլասերած է»:

Գործել տակաւին չի նշանակեր գործօն կեանք վարել: Անասուններն ալ կը գործեն: Մարդուն տարբերութիւնը այն է՝ որ ունի *խորհրդածում*: Խորհրդածումը կը գտնուի ներաշխարհի մէջ.

«Սա՝ գտնելու եւ կիրարկելու համար իր պարտականութեան գիտակցութիւնը պահ մը պէտք է մոռնայ ամէն արտաքին եւ ներքին երեւոյթ, մոռնայ վերանցական, բնազանցական ամէն յղացում մտնելով խորհրդածումի մէջ որ հակոտնեան է Ցափշտակումի՝ այլ բառով՝ վերացումի:

«Այս պարագային մարդ-արարածը պիտի անդրադառնար իր իսկութեան, իր գոյութեան մէջ: Ներաշխարհի այս խորհրդածումով միտքին առջեւ կը բացուին անհուն հորիզոնները կեանքին, կը նշմարէ հոգեկան երանութիւնները, անձնական գոհունակութիւնները եւ կը գգայ խանդը, խայտանքը ապրելու, գործելու. ճիշդ այնպէս՝ ինչպէս հիւանդ մը որ մահէ ճողոպրած, ապրելու ապահովութենէն խանդավառ կը բանայ աչքերը լոյսին, կը շնչէ օդը ժպտուն դալարիքին: Ահա այս կէտէն կը սկսի անհատին գործօնութիւնը՝ պարտականութեան գիտակցութեամբ՝ որմէ կը ծնի կամքի ոյժը: Եւ երբ կը գտնէ ինքզինքը պայծառ այս լոյսով, կը դառնայ ինքն իրեն եւ կ՚ըսէ. «Տէքա՛րդ, ո՛չ թէ կ՚ապրիմ որովհետեւ ի գոյ եմ, այլ կ՚ապրիմ՝ որովհետեւ կ՚ուզեմ»:

«Փոխանցեցէ՛ք ուզելու կամքը՝ հաւաքականութեան»(30):

(Շար. 2)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

24. «Մահ Հրանդ Ալատինի», *Արաքս*, 29 Հոկտեմբեր 1933, Ը. տարի, թիւ 41 (367):
25. Հ. Ալատին, «Հայր Ղեւոնդ Վ. Մ. Ալիշան», *Փարոս*, լրագիր, Գահիրէ, 7 Դեկտեմբեր 1901, Բ. շրջան, թիւ 35:
26. Հ. Ալատին, «Երիտասարդը», *Փարոս*, 21 Դեկտեմբեր 1901, Բ. շրջան, թիւ 39:
27. Հրանդ Վեհակրօն, «Գրական շօվինականութիւն», *Արաքս*, 14 Յունուար 1933, Ը. տարի, թիւ 1 (327):
28. Հրանդ Վեհակրօն, «Գրական շօվինականութիւն. Բ.», *Արաքս*, 21 Յունուար 1933, Ը. տարի, թիւ 2 (328):
29. Հրանդ Վեհակրօն, «Գրական շօվինականութիւն. Գ.», *Արաքս*, 28 Յունուար 1933, Ը. տարի, թիւ 3 (329):
30. Հրանդ Վեհակրօն, «Ազատութիւնը՝ կշռադատութեամբ. Բ.», *Արաքս*, 4 Մարտ 1933, Ը. տարի, թիւ 8 (334):

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## GRECO. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՈՐՈՇԱԿԻ ԱՌԱՋԸՆԹԱՑ Է ԱՊԱՀՈՎԵԼ ԿՈՌՈՒՊՑԻԱՆ ԿԱՆԽԱՐԳԵԼԵԼՈՒ ՈՒՂՂՈՒԹԵԱՄԲ

Եւրոպայի Խորհրդի Հակակոռուպցիոն Մարմնի (GRECO) գնահատմամբ՝ Հայաստանը որոշակի առաջընթաց է ապահովել դատախազների, խորհրդարանականների եւ դատաւորների շրջանում կոռուպցիան կանխարգելելու յանձնարարականների ուղղութեամբ:

GRECO-ն եզրակացրել է, որ 2015 թուականին ներկայացուած 18 յանձնարարականներից 9-ը բաւարար չափով են իրականացուել, եւս 9-ը՝ մասամբ բաւարար:

Բաւարար իրագործուած մէկ յանձնարարական վերաբերում է բոլոր դատախազների էթիկայի եւ կոռուպցիոն հարցերով պարտադիր վերապատրաստմանը, ինչպէս նաեւ դատախազական ծառայութեան շրջանակներում գաղտնի խորհրդատուութեան տրամադրմանը: Հակակոռուպցիոն կառոյցի գնահատմամբ՝ գոհացուցիչ է նաեւ պատգամաւորների, դատաւորների եւ դատախազների ունեցուածքի յայտարարագրման վերահսկողութիւնը:

Ի տարբերութիւն 2019 թուականի, Հայաստանի յանձնառութիւնը այլեւս «ընդհանուր առմամբ անբաւարար» չի գնահատւում: Եւրոպական կառոյցը նաեւ Հայաստանի իշխանութիւններին խնդրել է մինչեւ 2024 թուականի Մայիսի 31-ը նոր զեկոյց ներկայացնել միւս յանձարարականների կատարման մասին:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ԵՌԱԿՈՂՄ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ ԳՐԵԹԷ ՉԿԱՅ ՈՐԵՒԷ ԴՐՈՅԹ, ՈՐԸ ՉԻ ԽԱԽՏԻՈՒՄ ԱԴՐԲԷՋԱՆԻ ԿՈՂՄԻՑ. ՄԻՐԶՈՅԵԱՆ

2020 թուականի Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեան մէջ չկայ գրեթէ որեւէ կէտ, որ Ադրբէջանը չխախտի. հայկական կողմը հաւատում է, որ գործընկերները, միջազգային հանրութիւնն իրենց դերը կը խաղան՝ Լեռնային Ղարաբաղ եւ Լաչինի միջանցք միջազգային փաստահաւաք առաքելութիւն ուղարկելով:

*Արմէնպրէս*ի փոխանցմամբ՝ այս մասին Ապրիլ 3-ին յայտարարեց Հայաստանի արտգործնախարար Արարատ Միրզոյեանը Ռումինիայի ԱԳ նախարարի հետ հանդիպումից յետոյ յայտարարութեան ժամանակ:

Նախարարները հանդիպմանը քննարկել են նաեւ Հարաւային Կովկասի տարածաշրջանում զարգացումները:

«Ես իմ գործընկերոջը ներկայացրեցի գոյաբանական մարտահրաւէրների եւ սպառնալիքների մասին, որոնց եւ Հայաստանը, եւ Լեռնային Ղարաբաղի ժողովուրդը բախւում են: Ցաւօք, 2022-ի Դեկտեմբերից Լաչինի միջանցքի արգելափակումը, ահաբեկումը, ինչպէս նաեւ Ադրբէջանի այլ գործողութիւնների նպատակն է ստիպել Լեռնային Ղարաբաղի հայ բնակչութեանը լքել իրենց տները: Էթնիկ զտումների համակարգուած քաղաքականութիւնը Ադրբէջանի պատասխանն է միջազգային հանրութեան կոչերին՝ հասցէագրելու Լեռնային Ղարաբաղի ժողովրդի իրաւունքների եւ անվտանգութեան խնդիրը», - ասաց Միրզոյեանը:

ԱԳ նախարարը միջազգային մարմինների կողմից թիրախային կոչերի եւ պահանջների հետ մէկտեղ յիշեցրեց նաեւ Արդարադատութեան Միջազգային Դատարանի որոշման մասին, որը Ադրբէջանին պարտադրում է ձեռնարկել բոլոր քայլերը՝ ապահովելու Լաչինի միջանցքով տեղաշարժը երկու ուղղութեամբ:

«Լաչինի միջանցքի ապօրինի արգելափակումը 2020-ի Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեան միակ բացայայտ խախտումը չէ: Յայտարարութեան մէջ գրեթէ չկայ որեւէ դրոյթ, որը չի խախտւում Ադրբէջանի կողմից: Հայ ռազմագերիներին շարունակաբար որպէս պատանդ պահելով, ինչպէս նաեւ պահանջելով արտատարածքային միջանցք Հայաստանի սուվերէն տարածքով՝ Ադրբէջանը չի ապահովում, որ ներքին տեղահանուած անձինք եւ փախստականները վերադառնան Լեռնային Ղարաբաղ եւ յարակից շրջաններ՝ ՄԱԿ-ի փախստականների գերագոյն յանձնակատարի վերահսկողութեան ներքոյ», - ասաց ԱԳ նախարարը:

Միրզոյեանն ընդգծեց, որ Ադրբէջանը շարունակում է իր ատելութեան խօսքը եւ ռազմատենչ հռետորաբանութիւնը բարձրագոյն մակարդակներով, ինչպէս նաեւ կանոնաւոր ագրեսիւ գործողութիւնները՝ օկուպացնելով Հայաստանի շուրջ 150 քառ. կմ սուվերէն տարածք:

«Մենք հաւատում ենք, որ մեր գործընկերները, միջազգային հանրութիւնը կարեւոր դեր կ՚ունենան՝ օգտագործելով համապատասխան գործիքներ եւ մեխանիզմներ, այդ թւում՝ միջազգային փաստահաւաք առաքելութիւն ուղարկելով Լաչինի միջանցք եւ Լեռնային Ղարաբաղ», - ասաց Միրզոյեանը:

ԱԳ նախարարը յիշեցրեց, որ Հայաստանը վերահաստատում է Ադրբէջանի հետ կառուցողական երկխօսութեան պատրաստակամութիւնը՝ ատելութեան խօսքից, նախապայմաններից եւ ռազմատենչ հռետորաբանութիւնից զերծ մթնոլորտում՝ ձգտելով հասնել կայուն խաղաղութեան եւ անվտանգութեան Հարաւային Կովկասում:

Հայաստանը ուժեղ քաղաքական կամք ունի՝ տարածաշրջանում հասնելու խաղաղութեան եւ կայունութեան: Միրզոյեանն ընդգծեց՝ չնայած բոլոր դժուարութիւններին՝ Հայաստանը շարունակում է Ադրբէջանի հետ երկխօսութիւնը:

# ԱԴՐԲԷՋԱՆԸ ՇՈՒՇԻ-ԼԻՍԱԳՈՐ ՀԱՏՈՒԱԾՈՒՄ ՈՐՈՇԱԿԻ ԴԻՐՔԱՅԻՆ ԱՌԱՋԽԱՂԱՑՈՒՄ Է ԱՊԱՀՈՎԵԼ

Ադրբէջանի զինուած ուժերը, հերթական անգամ ոտնահարելով 2020թ. Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեամբ ստանձնած պարտաւորութիւնները, Մարտի 25-ին Շուշի-Լիսագոր հատուածում խախտել են նոյն փաստաթղթով ամրագրուած շփման գիծը եւ որոշակի դիրքային առաջխաղացում ապահովել Արցախի տարածքում: Այս մասին յայտնում է Արցախի տեղեկատուական շտաբը:

«Արցախի Հանրապետութեան իշխանութիւնները եռակողմ յայտարարութեան դրոյթների հերթական կոպիտ խախտման մասին անմիջապէս տեղեկացրել են Ռուսաստանի խաղաղապահ զօրակազմի հրամանատարութեանը՝ հաշուի առնելով տուեալ փաստաթղթով նրանց ստանձնած առաքելութիւնն ու գործառոյթները: Իշխանութիւնները ակնկալում են խաղաղապահ զօրակազմից գործնական քայլեր ձեռնարկել տուեալ խախտման հետեւանքների վերացման ու նոր խախտումների կանխարգելման նպատակով:

«Ադրբէջանական կողմի կեղծ պնդումը Ստեփանակերտ-Ղայբալիշէն-Լիսագոր լեռնային ճանապարհը իբր զինամթերքի փոխադրման նպատակով կիրառելու մասին պարզապէս պատրուակ է իրենց հերթական ագրեսիւ ու ապակառուցողական գործողութիւնների իրականացման համար: Այդ նոյն պնդմամբ նրանք Մարտի 5-ին յարձակուեցին ու սպանեցին ծառայողական պարտականութիւնները կատարող երեք ոստիկանի եւ վիրաւորեցին եւս մէկին: Արցախի իշխանութիւնները քանիցս յայտարարել են, որ Դեկտեմբերի 12-ից մեկնարկած շրջափակման պայմաններում տուեալ լեռնային ճանապարհն օգտագործւում է Ստեփանակերտի եւ Շուշիի շրջանի չորս համայնքների միջեւ քաղաքացիական ու հրատապ հաղորդակցութեան կազմակերպման համար, ինչն իրականացւում է բարձր մեքենաներով՝ հաշուի առնելով տեղանքի խիստ բարդ ու վտանգաւոր ռելիէֆը:

«Իսկ Պաշտպանութեան Բանակի գոյութիւնն ու բնականոն գործունէութիւնը որեւէ վտանգ չի ներկայացնում որեւէ մէկի հանդէպ, քանի որ նախատեսուած է բացառապէս ինքնապաշտպանութեան համար՝ նկատի ունենալով Արցախի ժողովրդի ֆիզիկական գոյութեան ու անվտանգութեան դէմ ուղղուած իրական ու անմիջական վտանգներն ու սպառնալիքները», - նշուած է Արցախի տեղեկատուական շտաբի տարածած հաղորդագրութիւնում:

ԽՈՀԵՐ

# ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ՝ ՍՓԻՒՌՔԷՆ ԴՈՒՐՍ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Սփիւռքը կը գտնուի անընդհատ ինքնահերքումի տրամաբանութեան մէջ: Շատ անդրադարձած եմ ասոր մասին, եւ տակաւին պիտի անդրադառնամ:

Ահաւասիկ ինքնահերքումի եւս օրինակ մը:

Սփիւռքի մէջ, սփիւռքահայ ենթակայի մը յաջողութեան աստիճանը կը չափուի Սփիւռքէն դուրս ունեցած յաջողութեամբ: Գործի կը դրուի սփիւռքեան դուրսի եւ օտարի տարածուած ու սիրուած կարծրատիպը:

Սփիւռքահայ թերթի մը խմբագիրի պաշտօնին հասնիլը չի համարուիր յաջողութիւն, մինչդեռ օտար լրագիրի մէջ նոյնիսկ համեստ թղթակից մը ըլլալը կը նկատուի յաջողութիւն:

Սփիւռքի մէջ ղեկավար դիրքի հասնիլը չի նկատուիր յաջողութիւն, մինչդեռ ոչ-հայկական շրջանակի մէջ քաղաքական ստորին աթոռ մը գրաւելը կը ներկայացուի իբրեւ մեծ յաջողութիւն:

Սփիւռքի հայկական կրթական բարձրագոյն հիմնարկի մը մէջ դասախօս ըլլալը չի համարուիր յաջողութիւն, մինչդեռ ոչ հայկական կրթական հիմնարկի դասախօսը կ՚ընդունուի իբրեւ յաջողութիւն:

Արսէն Երկաթի կամ Մաննիկ Պէրպէրեանի գործերուն հայերէն հրատարակութիւնները եգիպտահայ մամուլը չէ համարած յաջողութիւն, մինչդեռ նոյն գործերուն ֆրանսերէն կամ յունարէն թարգմանութիւնները ներկայացուցած է իբրեւ կարեւոր յաջողութիւններ:

Պըլըքտանեան Սրահի ձեռնարկ մը չի նկատուիր յաջողութիւն (յաջողութիւն՝ այն իմաստով որ տեղի ունեցած է Պըլըքտանեան Սրահին մէջ), մինչդեռ նոյն ձեռնարկը Օփերայի Թատրոնին մէջ կը համարուի յաջողութիւն (յաջողութիւն՝ Օփերայի Թատրոնին մէջ եղած ըլլալուն համար):

Յաջողութիւնը կը չափուի արտասփիւռքեան գործօնով:

Ինչպէս միշտ, Սփիւռքը՝ Սփիւռքէն դուրս:

Օտարի գոյութիւնն է Սփիւռքի մէջ որ գործողութիւնը կը վերածէ յաջողութեան: Յաջողութեան պատկերային ներկայացուցչականութիւն՝ օտարի տիրապետութեամբ: Խեղագար սիրահարութիւն օտարին եւ վերջնական վստահութիւն անոր հանդէպ:

ՀԱՅԱՍՏԱՆ

# «ՄԱՆԿԱՊԱՏԱՆԵԿԱՆ ԳՐՔԻ ՇԱԲԱԹՈՒԱՅ» ՄԵԿՆԱՐԿԸ ՏՐՈՒԵՑ ԳԵՂԱՐՔՈՒՆԻՔԻ ՄԱՐԶԻ ԼՃԱՇԷՆ ԳԻՒՂԻ ԴՊՐՈՑՈՒՄ

Հայաստանի Գրողների Միութեան նախաձեռնութեամբ Գեղարքունիքի մարզի Լճաշէն գիւղի միջնակարգ դպրոցում տրուեց «Մանկապատանեկան գրքի շաբաթուայ» մեկնարկը: *Արմէնպրէս*ի տեղեկացմամբ՝ Լճաշէնի միջնակարգ դպրոցի աշակերտների եւ ուսուցիչների հիւրերն էին Գրողների Միութեան նախագահ Էդուարդ Միլիտոնեանը, Գրողների Միութեան մանկական բաժանմունքի վարիչ Անոյշ Վարդանեանը, Գրողների Միութեան Գեղարքունիքի եւ Կոտայքի մարզային բաժանմունքների ղեկավարներ Տիգրան Նիկողոսեանը եւ Յակոբ Յարութիւնը, հեքիաթագիր Սաթենիկ Ղազարեանը, մանկագիրներ Զեմֆիրա Մկրտչեանը եւ Սուրէն Դաւթեանը:

Հիւրերը խօսեցին մանկական գրականութեան օրուայ խորհուրդի մասին եւ ունկնդիրներին ներկայացրին իրենց ստեղծագործութիւններից: Հիւրերին ողջունեց Լճաշէնի միջնակարգ դպրոցի տնօրէն Աիդա Մուրադեանը, կարեւորելով այն հանգամանքը, որ նման հանդիպումների շնորհիւ աշակերտները կարողանում են կենդանի շփում ունենալ ժամանակակից գրողների հետ:

Ողջոյնի խօսքով հանդէս եկաւ Գեղարքունիքի մարզպետարանի ԿՄՍ վարչութեան կրթութեան բաժնի վարիչ Համբարձում Սաֆարեանը: Գեղարքունիքի Վ. Պետրոսեանի անուան մարզային գրադարանի տնօրինութեան հաւաստմամբ՝ հերթական շաբաթուայ ընթացքում, «Մանկապատանեկան գրքի շաբաթուայ» շրջանակներում գրողների հետ հանդիպումները կը շարունակուեն Գաւառ համայնքի մէկ մանկապարտէզում եւ երեք դպրոցներում:

«Մանկապատանեկան գրքի շաբաթուայ» եզրափակիչ միջոցառումը տեղի կ՚ունենայ Երեւանի Խնկոյ Ապոր անուան մանկական գրադարանում:

ՋԱՀԱԿԻՐ

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՊՐԻԼԵԱՆ ՔԱՌՕՐԵԱՅ ՊԱՏԵՐԱԶՄԻ 7-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԸ

Ապրիլի 2-ին ապրիլեան քառօրեայ պատերազմի 7-րդ տարելիցն էր: 2016-ի Ապրիլի 2-ին Արցախում մեկնարկեցին 90-ականների պատերազմից յետոյ ամենալայնածաւալ ռազմական գործողութիւնները, քառօրեայ պատերազմի հետեւանքով հայկական կողմն աւելի քան հարիւր զոհ ունեցաւ:

Ադրբեջանական կողմից մարտական գործողութիւնների հետեւանքով զոհերի յստակ թուաքանակ չի հրապարակուել:

1

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՊԱԿՈՂՄՆՈՐՈՇՈՒՄ ԵՒ ՌԱՍՄՈՒՍԷՆ ԿԼՈՊԱԼ

մէկ դէմքը՝ ժողովրդավարութեան, լիպերալիզմի, Մարդու Իրաւունքներու ստեղծիչն ու կրողը, միւս դէմքը՝ ճիշդ այդ անուններուն տակ կործանիչ ու աՀարկու պատերազմներ մղողը:

Եոհան-Ալպրեխթ Մէյլահն շատ լաւ համառօտագրած է այս կէտը. «Եթէ ԱՄՆը, Միացեալ Թագաւորութիւնը, Ֆրանսան, Գերմանիան կամ Իսրայէլն են որ կը գալթեն կամ կը յարձակին, օրինակ, Պաղեստինի, Եմէնի, Լիպիոյ, Եուկոսլաւիոյ վրայ, եւ այնքան ժամանակ որ ասիկա կը կատարեն ժողովրդավարութեան անունով՝ համաձայն ՆԱԹՕ-ի մեկնաբանութեան, ապա ոճիր մը չի նկատուիր: Եւ այնքան ժամանակ որ նման յանցագործութիւնները չեն կատարուիր եւրոպական մարմիններու դէմ: Եթէ ոչ-եւրոպական մարմինի արժէքներու անունով յարձակում ըլլայ եւրոպական մարմինի դէմ, ապա միջազգային հանրութեան (մարմին), ինչպէս Միաւորուած Ազգերու, պատասխանատուութիւնն է միաձայնօրէն դատապարտել բոլոր նման յարձակումները կամ գալթումները, իր բառային մեղադրանքին աւելցնելով անհրաժեշտ գործողութիւններ՝ տնտեսական պատժամիջոցներու ձեւով, համատեղաբար դիմելով մարզական, մշակութային եւ աքատեմական պոյքոթներու» (Meylahn, J.-A., 2022, ‘Ukraine war: A war of languages and bodies’, *HTS Teologiese Studies/Theological Studies* 78(1), a8005. https://doi.org/10.4102/hts.v78i1.8005):

**Ռուսաստան**

Իսկ Ռուսաստա՞նը: Այնտեղ պետութեան եւ իշխանութեան իմաստը ներկայիս շրջանակուած է մէկ անձի շուրջ՝ Վլատիմիր Փութին: Փութին՝ երկիրի 25 տարուայ միանձնեայ տիրակալը, որուն մտադրութիւնն է նաեւ ցկեանս մնալ այդ դիրքին վրայ: Ինքնաբաւ բռնապետ մը՝ որ ներքին առումով պատրաստ է աՀաբեկելու եւ սպաննելու լրագրողներ, քաղաքական ընդդիմադիրներ, վայրագօրէն վերացնել այլախոհութիւնն ու տարակարծութիւնը, քաջալերել օլիկարքական ոճրագործութիւնը եւ աւելի եւս վտանգաւոր՝ օլիկարքական ոճրամտութիւնը, արտաքին առումով՝ անխնայ կերպով սպաննել Սուրիոյ հիւսիս-արեւելքի կամ Ուքրաինայի արեւելքի բնակիչները: Մինչ ոք ոք գիտէ Փութինի կուտակած գերհարստութիւններուն չափը արտասահմանեան օփշորներուն մէջ:

**Համեմատութիւն**

Մինչ ՆԱԹՕ-ական Արեւմուտքի բաղկացուցիչները, օրինակ՝ ԱՄՆ, Ֆրանսա, Գերմանիա, ունին սեփական տնտեսութիւնները, նոյնը չենք կրնար ըսել Ռուսաստանի մասին՝ որուն «տնտեսութեան» կորիզը կը կազմէ հում նիւթի արտահանումը՝ քարիւղ, բնական կազ (շատ նման է Ազրպէյճանին):

Մինչ թեքնոլոժիք նորարարութիւնները կու գան Արեւմուտքէն, Ռուսաստան կը հանդիսանայ այդ նորարարութիւններուն սպառողական շուկաներէն մէկը, այլ ոչ արտադրիչը:

Մինչ Արեւմուտքը ունի (կեղծ) ժողովրդավարութեան խօսոյթը՝ արդարացնելու համար իր պատերազմները, Ռուսաստան չունի ժողովրդավարութիւն՝ արդարացնելու իր յարձակումը Ուքրաինայի վրայ, հետեւաբար, առաջ պիտի քաշէ ռուսական ազգային շովինիզմը, Փութինի բերանով յայտարարելով՝ որ Ուքրաինան պատմականօրէն ռուսական է եւ տարածութեան ուքրաինացումը եղած է Լենինի սխալը, որուն համատեղ ռուսամէտ լրատուամիջոցներով պիտի տարածուէին վտանգաւոր ցեղապաշտական տեսութիւններ: Ժողովրդավարութեան անունով կրնաս համոզել արտաքին աշխարհը, ազգայնական շովինիզմով կրնաս համոզել միայն ներքին լսարանը:

Արդ, Հայաստան գործ ունի քաղաքական հրէշներու հետ՝ երկու կողմերով, մէկը՝ քօղարկուած (Արեւմուտք), միւսը՝ ուղղակի (Ռուսաստան), չհաշուելով Ազրպէյճանի նախագահի հիթլերիզմն ու ծայրայեղականութիւնը, որ դուրս է նիւթէս: Եւ Հայաստան պարտաւոր է ապակողմնորոշել իր արտաքին քաղաքականութիւնը՝ գրեթէ չճեղքուող պարիսպներու ընդմէջէն:

**Հայաստան-Ռուսաստան**

Հայաստան-Ռուսաստան յարաբերութիւններուն սերտակցութիւնը, յատկապէս Հոկտեմբեր 27-ի ահաբեկչութենէն ետք, պիտի յառաջացնէր առաջինին կատարեալ ենթարկուածութիւնը երկրորդին: Հայկական քաղաքականութիւնը դէպի Արեւմուտք գոյութիւն ունէր, բայց չունէր ինքնուրոյն նշանակութիւն եւ ինքնավարութիւն: Մինչ պետութիւնները կ՚ընթանային քաղաքական ապակողմնորոշումի ուղիով, Հայաստան հանդիստ էր միակողմանի կողմնորոշումով դէպի Ռուսաստան, մնացածը ունենալով լոկ ածանցային նշանակութիւն:

Երբ այսօր Հայաստան կը փորձէ ապակողմնորոշել իր քաղաքականութիւնը, գլխաւոր ընդդիմացողը կ՚ըլլայ Ռուսաստանը: Հակասութիւնն այն է՝ որ քաղաքական ապակողմնորոշումով առաջնորդուող Ռուսաստանը կը մերժէ ապակողմնորոշումը իր դաշնակիցին: Միայն ինք իրաւունք ունի դիմելու նման քայլի, իրեն ենթակայ տարրերը պարտաւոր են դրսեւորել միակողմանիութիւն:

Բայց եւ այնպէս, Հայաստան կը փորձէ յառաջ տանիլ իր նախաձեռնութիւնը: Ըլլալով ռուսական գաղութ, միաժամանակ անտեսուած անկէ, դէպի Եւրամիութիւն ճեղքումը պէտք ունի գործնապաշտ քայլերու: Պէտք ունի ազդեցիկ միջնորդներու՝ Հայաստանի եւ ՆԱԹՕ-ական Եւրամիութեան միջեւ: Պէտք ունի միջնորդ հրէշներու:

**Ռասմուսէն Կլոպալ**

Մարտ 13-ին երկօրեայ այցելութեամբ Հայաստան եկաւ Ռասմուսէն Կլոպալ հիմնադրամի հիմնադիր նախագահ Անտերս Ֆոկ Ռասմուսէն (մանրամասն՝ *Ջահակիրի* անցեալ թիւը): 2022-ին հիմնուած հիմնադրամին յայտարարած նպատակն է՝ դիմող երկիրներուն օգնել մերձենալ Եւրամիութեան: Մերձեցումի աստիճանը կախուած է դիմող երկիրի ցանկութենէն, եւ, անշուշտ, վճարումի քանակէն: Եւ եթէ նկատի առնենք որ Ռասմուսէն ժամանակին եղած է ՆԱԹՕ-ի գլխաւոր քարտուղար, արդէն կարելի է տեսնել ՆԱԹՕ-ի անուղղակի գոյութիւնը մերձեցումի գործողութեան մէջ: Իսկ այստեղ տեղը չէ թուարկել ՆԱԹՕ-ի գաղութատիրական նախկին ու ներկայ ձեռնարկները, ինքնակոչ պատերազմներն ու գալթումները՝ իրենց պատճառած աւերներով եւ մարդկային աղէտներով:

Այսօր, վճարումով գործունէութիւնը կը հանդիսանայ ձայնը տեղ հասցնելու հիմքը Արեւմուտքի մէջ: Լոպպինկը՝ որմով կը հպարտանան հայ աւանդականները, ուրիշ բան չէ եթէ ոչ դրամի ազդեցութեամբ «գնուած» ձայներ, դրամ՝ որ օրինաւոր է լոպպինկի սահմաններուն մէջ: Ազրպէյճան, անշուշտ Թուրքիոյ եւ Իսրայէլի օգնութեամբ, շատոնց կրցած է վարձել միջազգային լրատուական գործակալութիւններ, որոնց միջոցով իր ձայնը յաճախ առաջ անցած է Հայաստանէն: Դրամն ալ այստեղ բացարձակ չէ, արտադրուած լուրը կամ գիտելիքը պէտք է տեղաւորուի Արեւմուտքի «արժանիք»-ներուն մէջ:

Ռասմուսէն կ՚այցելէ Ջերմուկ՝ իր աչքով քննելու պատերազմին հետեւանքերը, կը մեկնի Լաչինի միջանցք՝ ականատես ըլլալու փակուած ճանապարհին: Ան Հայաստան եկած է կառավարութեան հրաւէրով, ուրեմն, կը կատարէ վճարուած ծառայութիւն:

Ռասմուսէն կը մեկնի տուն եւ անմիջապէս կ՚արտադրէ երկու ազդեցիկ հրապարակումներ:

Մէկը իր ստորագրած Մարտ 24 թուակիր յօդուածն է Project Syndicate կայքէջին վրայ՝ «Ուրիշ հակամարտութիւն մը Եւրոպայի շեմին» (The Other Conflict on Europe’s Doorstep): Project Syndicate-ը միջազգային կարեւոր լրատուային գործակալութիւն մըն է, որ, 2019-ի տուեալներով, ունի 506 լրատուային իրացումի կէտեր 156 երկիրներու մէջ:

Յօդուածին բնաբանն է. «2020-ի զինադադարի համաձայնագիրի ակնյայտ խախտումով, Ազրպէյճան մարդասիրական ճգնաժամ կը հրահրէ Լեռնային Ղարաբաղի մէջ եւ անգամ մը եւս դրացի Հայաստանին կը սպառնայ ռազմական յարձակումով: Մինչ Ռուսաստան չի կրնար կամ չի փափաքիր օգնել, Եւրամիութիւնը պէտք է աւելի մեծ դեր խաղայ Հարաւային Կովկասի մէջ խաղաղութիւն եւ կայունութիւն պահպանելու համար» (https://www.project-syndicate.org/commentary/ azerbaijan-aggression-against-armenia-nagorno-karabakh-blockade-by-anders-fogh-rasmussen-2023-03):

Երկրորդ հրապարակումը ֆրանսական տարածուած *Le Figaro* օրաթերթի Մարտ 25-ի հարցազրոյցն է Ռասմուսէնի հետ՝ «Անտերս Ֆոկ Ռասմուսէն. «Հարաւային Կովկասի մէջ պատերազմի վտանգը իրական է եւ չի կրնար ծառայել Եւրոպային»» (Anders Fogh Rasmussen: «Le risque d’une guerre dans le Caucase du Sud est réel et ne peut servir l’Europe»), ուր, ի միջի այլոց, կ՚արձանագրէ. «Հայաստանի եւ Ազրպէյճանի միջեւ բաց պատերազմի մը վտանգը մօտ ապագային իրական է եւ թերագնահատուած: Կը գտնուի միակ ճանապարհ մը որ կը կապէ Լեռնային Ղարաբաղի միջերկիրը [անկլաւը] Հայաստանին: Միակը: Եւ այս ճանապարհը շրջափակուած է Դեկտեմբեր 12-էն ի վեր: Էական ապրանքներէն մինչեւ դեղորայք, ոչինչ կրնայ անցնիլ այնտեղէն: Հայկական կողմը մնացած բնակիչները չեն կրնար վերադառնալ իրենց տուները: Այս իրավիճակը կրնայ յանգեցնել մարդասիրական աղէտի: Վերջնական նպատակը կրնայ էթնիքական զտումը ըլլալ, բնակիչներուն կեանքը դարձնելով այնքան բարդ՝ որ անոնցմէ շատերը հեռանան տարածաշրջանէն: Նամակ գրեցի ազէրի նախագահ Իլհամ Ալիեւին, պատուիրելով դադրեցնել շրջափակումը: Ան չպատասխանեց, ինչպէս որ երբեք չէ արձագանգած միջազգային հանրութեան տարբեր յայտարարութիւններուն: Միջազգային Արդարադատութեան Դատարանը (ՄԱԿ-ի դատական մարմինը) պարտաւորեցուց Ազրպէյճանին վերականգնել երթեւեկութիւնը: Բայց շրջափակումը միշտ այնտեղ է: Կը գնահատեմ Էմմանուէլ Մաքրոնի ուժեղ յանձնառութիւնը եւ յոյս ունիմ որ նախագահ Ալիեւի վրայ ճնշում բանեցնելու հարցով Ֆրանսային միանան նաեւ Եւրամիութեան հիմնական անդամ պետութիւնները»:

Ահաւասիկ եւրոպակեդրոն երկու հրապարագրութիւններ, ինչպէս համաձայնեցուած էր Հայաստանի կառավարութեան հետ: Այսօր, լրատուային ձայնը կը կազմէ պատերազմի անբաժան տարրը: Պատերազմ՝ քաղաքական ապակողմնորոշումի ընդմէջէն:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1938 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ԱՊՐԻԼ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀկ. عدد رقم ١٩٣٨ الخميس ٢٧ أبريل ٢٠٢٣


## «ԻՆՔՆԵՐՍ ՄԵԶ ԽԱԲԵԼ ԵՆՔ». ՓԱՇԻՆԵԱՆԸ՝ ԼՂ-Ի ԿԱՐԳԱՎԻՃԱԿԻ ՄԱՍԻՆ

JAMnews

«Ադրբէջանի հետ խաղաղութեան պայմանագիրն իրատեսական կը դառնայ, եթէ երկու երկրները յստակ՝ առանց երկիմաստութիւնների եւ որոգայթների, միմեանց տարածքային ամբողջականութիւնը ճանաչեն եւ պարտաւորուեն այսօր եւ երբեւէ միմեանց տարածքային պահանջներ չներկայացնել», - խորհրդարանում կառավարութեան ծրագրի 2022 թուականի կատարման ընթացքի եւ արդիւնքների մասին զեկոյցը ներկայացնելիս Ապրիլ 18-ին յայտարարել է Հայաստանի վարչապետը:

Նիկոլ Փաշինեանն անդրադարձել է նախորդ տարուայ ձեռքբերումներին, ներկայացրել տնտեսական ցուցանիշները, սոցիալական ոլորտում իրականացուած ծրագրերը: Իր ելոյթի աւարտին շեշտել է, որ նպատակ ունէր ցոյց տալ ոչ թէ այն, որ խնդիրներ չկան, այլ որ դրանք կան եւ խորանում են, ներկայացնել, թէ ինչ գործիքներ է որդեգրել կառավարութիւնը դրանց դիմակայելու համար:

*JAMnews*-ն առանձնացրել է Փաշինեանի ելոյթի կարեւորագոյն դրուագները հայ-ադրբէջանական եւ հայ-թուրքական յարաբերութիւնների կարգաւորման, Լեռնային Ղարաբաղի կարգավիճակի հետ կապուած:

**Խաղաղութիւն. որքանո՞վ է իրատեսական**

Վարչապետը վստահեցրել է՝ ի հեճուկս բոլոր դժուարութիւնների՝ Հայաստանում ապագայի մասին խօսելու, այդ ապագան կառուցելու համար անհրաժեշտ լաւատեսութիւն կայ: Փաշինեանի խօսքով՝ կառավարութիւնը «բացառիկ պատասխանատուութիւն» ունի այն մարդկանց նկատմամբ, ովքեր կասկածով են վերաբերւում այդ ապագային: Ըստ նրա՝ այդ պատասխանատուութիւնը «պատմական այս ժամանակաշրջանում» ունի եւ կարող է ունենալ միայն մէկ արտայայտութիւն՝ խաղաղութիւն, ինչը նշանակում է կարգաւորուած յարաբերութիւններ հարեւանների, մասնաւորապէս՝ Ադրբէջանի եւ Թուրքիայի հետ:

«Որքանո՞վ է իրատեսական, իրագործելի» հարցն, ըստ նրա, ունի երկու երես.

«Առաջինը՝ քանի որ խաղաղութիւնը միայնակ չեն կառուցում, որքանո՞վ Ադրբէջանի գործողութիւններն ու քաղաքականութիւնը կը լինեն խաղաղութեանը միտուած, եւ երկրորդը՝ յատկապէս 44-օրեայ պատերազմից յետոյ, եթէ քաղաքական-դիւանագիտական մակարդակում ձեռք բերուեն կոմպրոմիսներ, այդ կոմպրոմիսները որքանո՞վ ընդունելի կը լինեն Հայաստանի քաղաքացիների համար, եւ քաղաքացիները որքանո՞վ թոյլ կը տան այդ կոմպրոմիսների, երբեմն ցաւոտ լուծումների գործնական իրագործումը»:

Թէ ինչ կոմպրոմիսների եւ ցաւոտ լուծումների մասին է խօսքը՝ Փաշինեանը չի մանրամասնել:

Նշել է միայն, որ կառավարութիւնը պէտք է քաղաքացիներին բացատրի, թէ ինչ է տեղի ունեցել եւ ինչ է տեղի ունենում Հայաստանի շուրջ:

«Երբ նրանք դա հասկանան, նրանք դա նաեւ կ՚ընդունեն», - յայտարարել է նա:

**Խաղաղութեան հաստատման պայմանները**

Փաշինեանի դիտարկմամբ՝ խաղաղութիւնը հնարաւոր է, եթէ Հայաստանն իր միջազգային յարաբերութիւններում այսօրուայ եւ ապագայի համար յստակ արձանագրի, որ՝

- Հայաստանի Հանրապետութիւն է ճանաչում 29 հազար 800 քառակուսի կիլոմետր տարածքը, աւելի կոնկրէտ՝ Հայկական ԽՍՀ տարածքը, որում 1991 թուականին անկախութիւն է ստացել,

- որեւէ այլ երկրից որեւէ տարածքային պահանջ չունի, երբեւէ չի ունենալու:

Ասում է՝ հակառակ դէպքում ոչ ոք չի համակերպուի այն մտքի հետ, որ «մենք զարգանում ենք, որ այդ զարգացումն ու ուժն ուղղենք ուրիշների դէմ՝ մեր երկրի տարածքները ընդլայնելու համար»:

«Աւելին, տուեալ պարագայում ոչ թէ մեր զարգացումը թոյլ չտալն է լինելու ուրիշների օրակարգի խնդիր, այլ մեր առնուազն պետութեան գոյութիւնը թոյլ չտալն է դառնալու ուրիշների օրակարգի խնդիր: Եւ այդ իրավիճակում մեզ ոչ ոք չի օգնելու», - ընդգծել է նա:

Ըստ Փաշինեանի՝ խաղաղութեան հնարաւոր պայմանագրի իրագործումը երաշխաւորելու համար պէտք է ձեւաւորուեն միջազգային մեխանիզմներ, հակառակ դէպքում՝ պայմանագրի ստորագրման յաջորդ օրը «կարող է պատերազմ բռնկուել կամ նոր էսկալացիա տեղի ունենալ»: Բացի այդ՝ կարեւոր է համարում նաեւ կողմերի միջեւ ծագած վէճերի լուծման մեխանիզմների գոյութիւնը.

«Եթէ կողմերը ի վիճակի չլինեն պայմանագրի տեքստի մեկնաբանութիւնների հետ կապուած խնդիրները լուծել ուղիղ բանակցութիւններով, լինի ատեան, որը դա կ՚անի եւ որի որոշումը պարտադիր լինի կողմերի համար»:

**«Ինքներս ենք առաջարկել, որ պայմանագրին կցուեն ԽՍՀՄ կողմից հաստատուած քարտէզները»**

Նրա դիտարկմամբ՝ 44-օրեայ պատերազմից յետոյ Ադրբէջանը էյֆորիայի մէջ է եւ մտածում է վերցնել հնարաւորինս շատ բան կամ ամէն ինչ: Բաքուի այս ընկալումն աւելի է բորբոքւում միջազգային իրադրութեամբ պայմանաւորուած:

Փաշինեանի խօսքով՝ Ադրբէջանը դառնում է կամ դարձել է էներգետիկ եւ լոգիստիկ խաչմերուկ, մեծացել է նրա կարեւորութիւնը թէ՛ Ռուսաստանի, թէ՛ որոշ արեւմտեան երկրների համար: Միւս կողմից նկատում է՝ տարածաշրջանի կայունութիւնը եւ խաղաղութիւնը կարող է դառնալ կոնսենսուս Արեւմուտքի եւ Ռուսաստանի միջեւ.

«Եթէ մեր տարածաշրջանը նորից պայթի, առնուազն էներգետիկ առումով դա կարող է պրոբլէմ դառնալ թէ՛ Ռուսաստանի, թէ՛ Արեւմուտքի համար՝ էներգետիկայից բխող այլ հետեւանքներով»:

Ադրբէջանի հետ խաղաղութեան պայմանագրի ստորագրումն իսկապէս հնարաւոր է համարում: Ասում է՝ անհրաժեշտ է, որ երկու երկրները ճանաչեն միմեանց տարածքային

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՏԵՂ ԳԻՒՂԻ ՀԱՏՈՒԱԾՈՒՄ ԱԴՐԲԷՋԱՆԻ ԱԳՐԵՍԻԱՅԻՑ ՅԵՏՈՅ ԵՄ-Ն ԱՐՁԱՆԱԳՐԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԻ ԽԱԽՏՈՒՄԸ. ՓԱՇԻՆԵԱՆ

Տեղ գիւղի հատուածում ադրբէջանական վերջին ագրեսիայից յետոյ Եւրամիութեան յայտարարութիւնում քաղաքական շատ յստակ արձանագրում կար այն մասին, որ 1991 թ. սահմանը պէտք է պահպանուի:

*Արմենպրէսի* հաղորդմամբ՝ այս մասին յայտարարեց Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը ԱԺ-ում լրագրողների հետ ճեպազրոյցում՝ արձագանքելով դիտարկմանը, թէ ԵՄ դիտորդները հասցէական գնահատական չտուեցին Տեղ գիւղի հատուածում տեղի ունեցած ադրբէջանական ագրեսիայի վերաբերեալ:

«Ես կարծում եմ, որ ԵՄ յայտարարութիւնում, որում էմոցիոնալ առումով գնահատական չկար, քաղաքական շատ յստակ արձանագրում կար այն մասին, որ 1991 թ. սահմանը պէտք է պահպանուի: Եւ մենք համաձայն ենք դրա հետ: Սա շատ կարեւոր ֆունդամենտալ արձանագրում ու գնահատական է: Եւ դա նշանակում է, որ արձանագրուել է Հայաստանի պետական սահմանի խախտումը», - ասաց Փաշինեանը:

*Ապրիլ 11-ին՝ ժամը 16:00-ի սահմաններում, Հայաստանի Հանրապետութեան տարածքում՝ Սիւնիքի մարզի Տեղ գիւղի հատուածում, ադրբէջանական զինուած ուժերի մի խումբ զինծառայողներ սահմանի տեղակայման կէտերի ճշգրտման պատրուակով մօտեցել են Հայաստանի զինուած ուժերի զինծառայողներին, սադրել եւ հրազէնային զէնքերից, այնուհետեւ տարբեր տրամաչափի այլ զինատեսակներից կրակ վարել հայկական ԶՈւ զինծառայողների եւ դիրքերի ուղղութեամբ: Ադրբէջանական սադրանքի հետեւանքով հայկական կողմն ունի 4 զոհ եւ 6 վիրաւոր:*

## ԱԼԻԵՒԸ ՎԵՐՋՆԱԳԻՐ Է ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՅԵՐԻՆ ԵՒ ՅԻՇԵԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ «ԱՐՑԱԽԸ...»

Ղարաբաղի հայերը «կա՛մ պէտք է ընդունեն Ադրբէջանի քաղաքացիութիւն, կա՛մ բնակութեան այլ վայր փնտրեն»՝ կրկին յայտարարել է Ադրբէջանի նախագահը:

Պետական հեռուստատեսութեանը Ապրիլ 18-ին տուած հարցազրոյցում Իլհամ Ալիեւը սպառնացել է՝ խաղաղութեան պայմանագրին Հայաստանն ուզած-չուզած համաձայնելու է. «Վերջին երկու տարիներին հայկական կողմի դիրքորոշումներում տարբեր վայրիվերումներ են եղել: Այժմ մեզ թւում է, որ Հայաստանը սկզբունքօրէն համաձայն է մեր մօտեցմանը: Որովհետեւ այլ տարբերակ չկայ»:

Հաշտութեան համաձայնագիրը ստորագրելու անհրաժեշտութեան մասին խօսելիս Ադրբէջանի նախագահը յատուկ շեշտել է, որ Բաքուն հզօրացնում է բանակը եւ «պատրաստ է ցանկացած իրավիճակի»: 44-օրեայ պատերազմը նա ներկայացրել է որպէս «մենք ջախջախեցինք թշնամու գլուխը», յետագայ էսկալացիաների կոնտեքստում էլ յայտարարել, թէ Ադրբէջանի դրօշն այժմ «ծածանւում է նաեւ Զանգեզուրի սարերին» եւ այդ մասին ոչ ոք «թող չմոռանայ»:

Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանից Ալիեւը պահանջել է խմբագրել «Արցախը Հայաստան է եւ վերջ» իր մինչպատերազմական յայտարարութիւնը եւ յստակ յայտարարել, որ «Ղարաբաղը Ադրբէջան է». «Եթէ «Ա»-ն ասել է, «Բ»-ն էլ պէտք է ասի»:

Ադրբէջանի տարածքային ամբողջականութիւնը, ըստ նրա, Երեւանն արդէն իսկ ճանաչել է. Պրահայում եւ Սոչիում 2022 թուականին տեղի ունեցած հանդիպումներին յայտարարութիւններ են ստորագրուել, որոնցով կողմերը հաստատել են իրենց յանձնառութիւնը 1991 թուականի Ալմա-Աթայի հռչակագրին, որով խորհրդային հանրապետութիւնների սահմանները ճանաչուել են նորանկախ հանրապետութիւնների սահմաններ:

Այս կոնտեքստում Ալիեւը յայտարարել է, թէ «Ղարաբաղը Ադրբէջանի ներքին խնդիրն է», որը Բաքուն չի պատրաստւում քննարկել ոչ Հայաստանի, ոչ էլ որեւէ այլ երկրի հետ:

↳ 3

# ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՕՆ (ԱԼԱՏԻՆ)

## Եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, յօդուածագիր

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Կուսակցական մոլուցք**

Ոչ թէ ինքնին կուսակցութիւնը, այլ անոր ստացած տեսքն ու բռնած ուղին: «[Կ]՚ուզեմ հաւատալ թէ բոլոր կուսակցութիւնները հայութեան ճակատագիրին բարւոքումին համար են գոյութիւն առած թէպէտ սխալած են ճամբային ընտրանքին մէջ»(31):

Կուսակցութեան շեղումը իր պատգամէն նոր երեւոյթ չէ հայութեան համար: Վեհակրօն կը յիշեցնէ Ազգային Սահմանադրութեան տարիները՝ երբ «հայը ատեց որդին», ապա Համունեան եւ Հակա-Համունեան «դաւադրական մռայլ պատկերը»: Ասոնց կարծէք փոխարինեց «կուսակցական եռուզեռ»-ը, ուր «փոխանակ յաճախակի գրկախառնումներու ունեցանք, ունինք (եւ, աւա՜ղ, արդեօք պիտի ունենա՞նք տակաւին) յարատեւ ատելութիւն, նախատինք եւ երբեք հանդուրժանք»:

Կ՚աւելցնէ. «Հաւատացած եմ թէ մեր մէջ բոլոր անհետացած, հոգեվարք, նաեւ փրկութեան խարիսխի մը կառչիլ կարծած եւ ճակատագրականօրէն անհետանալու սահմանուած բոլոր կուսակցութիւնները մէկ միջոցի մը մէջ գտած էին իրենց տեւողականութեան պայմանը. այն է գիրար վարկաբեկել. յաջողութեան մը համար այսքան անպատուաբեր եւ անբնական միջոց մը խիստ նպատակայարմար դարձաւ, որովհետեւ կուսակցութիւններէն ոչ մինը կրցաւ գերծ մնալ ահաւոր խոստովանութենէն թէ՝ «սխալած էին»»: Սխալած՝ քանի որ հերոսական զոհողութիւններէ ետք ունեցան ոչ մէկ շօշափելի արդիւնք(32):

Դարձեալ, ոչ թէ կուսակցութիւնն է յանցաւորը, այլ բնորոշ դարձած մոլեռանդութիւնը. «[Կ]ուսակցական մոլեռանդութեան մէջ յամառիլը ուրիշ բան չէ եթէ ոչ չիլ խանութպանութիւն»(33):

Ամբոխավարութիւն կայ կուսակցութիւններէն ներս. «Կուսակցական մարզին մէջ ամբոխն է որ կը հետեւի առաջնորդին. երբեմն համոզուած յաճախ կուրօրէն»(34):

Ամբոխավարուած անհատը կը սուզուի ու կ՚անհետանայ կուսակցական հոսանքին մէջ. «Իւրաքանչիւր անհատ եթէ ինքն իր մէջ ամփոփուելով խորհի պահ մը իր կատարած դերի մասին, շուտով պիտի ճանչնայ թէ շատ հեռու է ան անկեղծ ազգասէրի հանգամանքէն. չէ՛ կարելի քննադատել անհատին (որ ա՛լ ընկեր մ՚է եղած) այս ընթացքը, որովհետեւ հռետորական բառերը միացած դերասանական շարժոյթներու, քշած են զինքը հոսանքին հետ»: Ասիկա ցոյց կու տայ կուսակցութեան ունեցած մենատիրական իշխանութիւնը գաղութին վրայ. «Կուսակցութեանց ստացած մենատիրական այս առաւելութիւնը հայութեան հոծ զանգուածին վրայ՝ ուրիշ բանի չէ՛ արդիւնք եթէ ոչ չգոյութեանը հոսանքը կասեցնող թումբերու»: Իսկ թումբին համար անհրաժեշտ է որ անհատն սկսի ինքն իրմով, իւրաքանչիւրը «գտնուի իր դերին, ճշմարիտ հայրենասէրի դերին մէջ. ամէն մէկը պարտականութեան բաժին մը ունի»: Թումբը պէտք ունի ամենուն. «Թումբը զոր պիտի բարձրացնենք իրենց գնացքին մէջ մոլորած հոսանքներու դէմ, պէտք ունի որմնադիրի ծեփիչին ալ, ճարտարապետի կարկինին ալ»(35):

Իւրաքանչիւր կուսակցութիւն իր ծրագիրով յանձնառութիւն ստանձնած է քարոզել բարոյականը եւ ենթադրուած է իր հասարակական գործունէութեան մէջ ամէն սկզբունք ենթարկել ընկերային բարոյականին: Ասիկա շեշտելէ ետք, Վեհակրօն քօղով կը պատէ այս յայտարարուած սկզբունքը, մատնանշելով միջկուսակցական վերջերս կատարուած սպանութեան դէպք մը, ուր ոճրագործը՝ դատարանին կողմէ դատապարտուած, կը շարունակէ մնալ կուսակցական շարքերուն մէջ իբրեւ ընկեր: «Երբ ԸՆԿԵՐ արձանագրուելու առաջարկ մը կը բերուի կուսակցութեան մը դիւանին, սա այնքան մաքրակրօն խստապահանջութեամբ կը պրպտէ առաջարկեալին անցեալը, գործունէութիւնը. հապա որքա՛ն խստապահանջ պէտք է ըլլալ երբ ան արդէն ընդունուած է իբր ԸՆԿԵՐ, քանի որ ԸՆԿԵՐի մը դատապարտելի եւ անպատիժ մնացած արարքը կը վարկաբեկէ ամբողջ կուսակցութիւնը», կ՚եզրակացնէ ան(36):

Վերջապէս, կուսակցական գրականութիւնը կամ գրականութեան կուսակցականացումը: Գրողներու կարեւոր հատուած մը կուսակցական գրականութենէն զատ ուրիշ բան չունի արտադրելիք, հետեւաբար, մասնատուած ու հատուածական գրականութիւն մըն է իր արտադրածը: Այս գրողը զերծ է ինքնուրոյն մտածողութենէ. «Մեծագոյն ուրիշ հատուած մը, տարուելով հոսանքէն, բթացուցած է իր հեղինակի կոչումը, եւ խորասուզուած հոսանքին մինչեւ յատակը ուրիշ բան չի տեսներ եթէ ոչ միայն կուսակցական գրականութիւն մը որ կը խօսի միայն հատուածի մը, կամ աւելի ճիշդ բացատրութեամբ եւ ճշդելու համար պատասխանատուութեան բաժինը, ըսեմ թէ՝ չի խօսիր ընդհանուրին հակառակ որ այդ հանրութենէն է որ կը սպասէ քաջալերանք, գնահատանք եւ վարձատրութիւն: Եղաւ ժամանակ որ ասոնք պահանջեցին հեղինակէն նկարագրել միայն գիւղը, գիւղացիին երկինքը, երդիքը, հողը, երգել միայն անոր աղօրիքը, ակօսները, ընել միայն յեղափոխական գրականութիւն մը: Սահմանափակ այնքան՝ որ չ՚օժանդակեր տաղանդին ուռճանալ, տիրապետել: Ո՞ր տունկն էր որ թաղարի մը մէջ պիտի աճէր, պիտի բազմանար այնպէս ինչպէս եթէ ըլլար ազատ հողի մը վրայ: Այդ սահմանափակ գրականութեան մէջ կատարելութիւն կայ, այո՛, բայց ո՛չ բարձրութիւն: Շարունակելով այս հոլովոյթը կը հանդիպինք ուրիշ երեւոյթի մը՝ կուսակցական գրականութիւնը որմէ ա՛լ կշտացած է թէ հանրութիւնը եւ կարծեմ նոյնիսկ հայրենասէր կուսակցականը: Իսկ ճշմարիտ գրականութեան մը ընթերցասէրները արգահատանքով կը նային հոն եւ ցաւելով է որ կը տեսնեն արժէքաւոր ոյժերու սպառումը ի զո՜ւր... ի սպաս անհատական շահերու»(37):

**Յեղափոխութիւն**

1908 թուականն է, եւ հայ մտաւորական դաս մը արդէն սկսած էր խօսիլ հայկական յեղափոխական շարժումներու անարդիւնաւէտութեան մասին: Ձախողութիւններուն պատճառը Ալատին կը վերագրէ կուսակցամոլութեան: Տարուած «կուսակցական հաշիւներու խճողումներով, կուսակցական արժանապատուութեան խնդիրներով, կուսակցական անունի գերադասումով, եւ կը վարանիմ ըսելու, կուսակցական շահախնդրութեամբ», քսան տարիներու յեղափոխական շրջանէ մը ետք, կուսակցամոլութիւնը հոգեվարքի տառապանքներով ճնշած է հայութեան կարեւոր սիրտը, որ սկսած է աղաչելով հառաչել՝ «մեղքցէ՛ք», իբրեւ ստացում մահացու հարուածի, փոխանակ աղաղակելու՝ «օգնութի՜ւն», իբրեւ արտայայտութիւն կռիւի, ոյժի եւ հերոսականութեան(38):

«Հերոսական զոհողութեանց եւ անձնուիրութեան ամենավսեմ օրինակներէ յետոյ ոչ մէկ շօշափելի նպաստաւոր արդիւնք ունեցանք եթէ ոչ՝ ամէն ինչ տխուր», կ՚արձանագրէ ուրիշ տեղ մը(39):

1927-ին կրկին կ՚անդրադառնայ հարցին, նշելով «ապարդիւն զոհաբերումներ» արտայայտութիւնը, իսկ Յեղափոխութեան ձախումի պատճառներէն մէկը գտնելով անոր դուրսէն երկիր մտած հանգամանքը. «Ամէն անոնք որոնք ո՛րեւէ ձեւի տակ, ըլլայ հարեւանցի, ըլլայ խորագննին կերպով ուսումնասիրած են Հայ Յեղափոխութիւնը, հասած են այն եզրակացութեան թէ ան չծնաւ Թրքահայութեան մէջէն այլ դուրսէն եկաւ՝ գտած ըլլալով պարարտ հողը, սնուցանողը, խանութի յաճախորդը»(40):

Յեղափոխութիւնը պահանջ մըն էր «մինչեւ այն օրը յորում դադրեցաւ այլեւս պահանջ մ՚ըլլալէ»: Մենք ունեցանք «*Հնչակը*, *Դրօշակը*, *Արմէնիան* որոնց իւրաքանչիւր հայրենաշունչ մէկ տողը, իւրաքանչիւր ատելավառ մէկ բառը ցոյց կու տար մեզի [...] Յեղափոխութիւնը որմէ անցնելով միայն պիտի հասնէինք փրկութեան կայանը»: Յեղափոխութիւնը ուզեց իր տոկոսը՝ արիւնի տոկոսը, զոր տուինք առատօրէն, մինչեւ այն օրը երբ «նշմարեցինք թէ մեր կենսունակութեան զարկ տուող արիւնը նուազեր, գրեթէ չորցեր էր մեր երակներուն մէջ»: «Աւա՜ղ, սակայն դեռ կ՚ապրին տոկոս խնդրողները որովհետեւ պէտք է որ իրենք ալ ապրին ուրիշներու կռնակէն»: Հայ Յեղափոխութեան կղերը «կը տեսնէ աւերը եւ կը լռէ, որովհետեւ ան ալ տոկոս ունի գանձելիք: Եւ ժողովուրդը կը վճարէ որովհետեւ ան՝ գործառնութեանց միջոցին չտրամաբանող, իսկ զոհողութեանց միջոցին անհեռատես միտքն է»: Կը մնայ որ անկեղծ առաջնորդները դաստիարակեն եւ լուսաւորեն այս միտքը, որպէսզի յստակօրէն կարենանք տեսնել ճշմարիտ Յեղափոխութիւնը(41):

**Օսմանեան Սահմանադրութիւն**

1908-ի Օսմանեան Սահմանադրութիւնն էր, եւ հայ մտաւորականութիւնը կը ձգտէր արտայայտել իր կարծիքը եւ արձանագրել կանխատեսումները: Ըստ Ալատինի, Օսմանեան Սահմանադրութիւնը ո՛չ անկախ Հայաստանի մը պիտի տանի, եւ ո՛չ ալ հայութեան գերեզմանը պիտի ըլլայ, ինչպէս ծայրայեղօրէն կ՚արտայայտուին երկու խումբ մարդիկ: «Ամենքս ալ [...] անվիճելի կերպով հարկ է ընդունինք թէ Օսմանեան Սահմանադրութիւնը մեզ կը ներկայացնէ անհուն առաւելութիւններ որոնցմէ կրնանք օգտուիլ նախ՝ ուղղակի կերպով իբր անհատ, եւ երկրորդ՝ անուղղակի կերպով իբր ազգութիւն»: Արդիւնքը մէկ կողմէ կախուած է Թուրքերու տրամադրութենէն եւ կազմակերպութենէն, միւս կողմէ՝ հայերու ճիշդ, օգտակար եւ հեռանկարային օգտագործումէն(42):

**Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի**

1927 Մայիսին աւարտած էր Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին շինութիւնը, ճարտարապետ՝ Լեւոն Նաֆիլեան, գմբէթի, կամարներու եւ խորանի նկարազարդում՝ իտալացի Քոլուչչի(43): Օծումը կը կատարուի 1928 Փետրուար 12-ին(44):

Եգիպտահայ մամուլն ու մտաւորականութիւնը բաւական արտայայտուեցան եկեղեցիին մասին՝ յատկապէս ճարտարապետութեան եւ նկարազարդումի անկիւններէն, բացայայտելով թեր ու դէմ կարծիքներ: Ուշագրաւ է Վեհակրօնի մասնակցութիւնը այս վէճին, եկեղեցիի շինութեան աւարտի եւ օծումի միջեւ ինկած ժամանակաշրջանին:

Վեհակրօն նորակառոյց եկեղեցին կը դիտէ երկու անկիւններէ, իր բառերով՝ «ազգային պատմական հնութեան» եւ «կրօնական երկիւղածութեան նախանձախնդրութեան»:

Առաջինը Նաֆիլեանի ճարտարապետական ոճն է՝ զոր հեղինակը կը գտնէ ամբողջապէս հայկական՝ «այնքան արտայայտիչ հայ ցեղին ոգիին», աւելցնելով. «Մելամաղձոտ գոհար մ՚է ան կարծես որ թափառայած եւ յոգնասպառ եկած ըլլայ կախուելու եգիպտական ջինջ կապոյտէն: Հարկ չկայ շէնքին ճակատը ճշդումներ ընելու. ո՛եւէ անցորդ պիտի ըսէր՝ «սա հայկական եկեղեցին ըլլալու է»»:

Երկրորդը եկեղեցւոյ ներքնամասի գեղարուեստական ոճն է՝ Քոլուչչիի նկարներուն գոյները, դէմքերը, արտայայտութիւնները: «Ոճը՝ արքաիք կոչուածն է», Քոլուչչիի համար կը շեշտէ Վեհակրօն: Արքաիք ոճը, ըստ հեղինակին, կրօնականները ստեղծած են 1300-ին, ուր որպէս վերացական միտքեր «Աստուածը, Յիսուսը, Կոյսը եւ բոլոր սուրբերը նկատելով իբրեւ յաւիտենական երանութեան մը թէ ամբողջութիւնը եւ թէ անջատ մէկը մասը», ստեղծելով հոգեկան այնպիսի վիճակ մը՝ «որ յափշտակուած կրօնքին վեհութենէն, նոյնպէս վեհութիւն եւ շնորհ կը դնէին իրենց նկարներուն մէջ»: Եթէ Քոլուչչի կրցած է իւրացնել այդ դպրոցին ոճը, չէ կրցած իւրացնել նկարիչներուն միսթիքն ու շնորհը: «Եկեղեցի մը, պատմական հնութեանց թանգարան չէ՝ այլ կրօնքին հնութեան սրբավայրն է, եւ այդ սրբավայրին մէջ վերացականը, շնորհալին պէտք է որ գերիշխէ եւ երկիւղածօրէն տպաւորէ հաւատացեալները»: Որմէ՝ «կրօնական երկիւղածութեան նախանձախնդրութիւնը»:

Օրինակ, աւագ խորանին պատկերները կախարդող Յիսուս մը պաշտելու տրամադրութիւն կը բարձրացնեն, որ ահռելի է: Մինչդեռ աստուածափառ Յիսուս մը պաշտելու համար լաւ կ՚ըլլար երկնագոյն կապոյտով մաքրել այդ պատկերները եւ այդ կապոյտին մէջ նկարել համբարձող Յիսուս մը(45):

(Շար. 3)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

31. Հ. Վեհակրօն, «Շիլ հաշիւներ», *Արաքս*, 23 ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅ ԹԱՐԳՄԱՆԻՉՆԵՐՆ ՈՒ ՆՐԱՆՑ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԵՆ «ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԱՐՈՒԵՍՏ» ՀԱՐԹԱԿՈՒՄ

«Ազգային գրադարանային շաբաթ»-ի շրջանակում Ապրիլի 17-ին Հայաստանի Գիտութիւնների Ազգային Ակադեմիայի «Հիմնարար գիտական գրադարան»-ը ոլորտի ներկայացուցիչներին ներկայացրեց «Թարգմանչաց արուեստ» շտեմարանը: Առցանց հարթակը միտուած է հանրահռչակելու հայ թարգմանիչներին ու նրանց կատարած աշխատանքը:

*Արմենպրէս*ի թղթակցի հետ զրոյցում գրադարանի աշխատակից, շտեմարանի կազմող Մերի Մանուկեանն ասաց՝ «Թարգմանչաց արուեստ»-ի գաղափարը ծնուել է նախորդ տարի, բայց միայն 2023-ին է յաջողուել այն կեանքի կոչել:

«Շտեմարանը ներառելու է խորհրդային եւ մեր ժամանակների բոլոր հայ թարգմանիչներին: Նպատակն է մէկ միասնական հարթակում մէկտեղել նրանց, նրանց թարգմանութիւնները: Առաջին անգամ փորձ է արուել շտեմարանը կապել *Վիկիպեդիա*յի հետ», - ընդգծեց նա եւ յաւելեց՝ կը փորձեն ստեղծել շղթայական օղակ, որը կ՚ապահովի ե՛ւ տեղեկատուութիւնը, ե՛ւ թարգմանութիւնների մատենագիտական ցանկերը:

Առայժմ գեղարուեստական գրքերն ու ժողովածուներն են ընդգրկուել մատենաշարում, իսկ յետագայում նաեւ մասնագիտական գրականութիւնն ու պարբերական մամուլում տպագրուած թարգմանութիւնները կը ներառուեն:

Մանուկեանի հաւաստիացմամբ՝ մատենաշարը թարգմանիչների, գրքի եւ ընթերցանութեան նկատմամբ մարդկանց հետաքրքրութիւնը մեծացնելու լաւ հնարաւորութիւն է:

Գրադարանի տնօրէն Մայա Գրիգորեանն էլ յիշեցրեց, որ ամէն տարի միանում են «Ազգային գրադարանային շաբաթ»-ին: «Այն գրադարաններին հնարաւորութիւն է տալիս ցոյց տալու իրենց կատարած աշխատանքը, եւ այս տարի մեր միջոցառումները կազմակերպել ենք «Գրադարանը կրթութեան բաց հարթակ» խորագրին համահունչ. բոլոր նախաձեռնութիւններն ունեն կրթական բաղադրիչ», - նշեց նա եւ յատկապէս կարեւորեց շտեմարանի ստեղծումը, որից բոլորն են կարող օգտուել:

Նրա խօսքով՝ գրադարանը համալրւում են բացառապէս գիտական բնոյթի գրքերով: Գրադարանի ընդհանուր ֆոնդը 4 միլիոն է՝ պարբերական մամուլ, շարունակական հրատարակութիւններ եւ այլն, իսկ 2023-ի առաջին եռամսեակում գրադարանը համալրուել է 3000 գիտական հրատարակութիւններով, որոնք շատ կարեւոր են:

Գիտութիւնների Ազգային Ակադեմիայի ակադեմիկոս Եուրի Սուվարեանն էլ կարծում է, որ այսօր 4

## 1 ԱԼԻԵՒԸ ՎԵՐՋՆԱԳԻՐ Է ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՅԵՐԻՆ ԵՒ ՅԻՇԵԼ ՓԱՇԻՆԵԱՆԻ «ԱՐՑԱԽԸ...»

Մինչ Երեւանը, Ստեփանակերտը եւ արեւմտեան որոշ երկրներ յայտարարում են խնդրի կարգաւորման (Լեռնային Ղարաբաղի հայերի իրաւունքների եւ անվտանգութեան շուրջ բանակցութիւնների համար) միջազգային տեսանելի մեխանիզմ ստեղծելու անհրաժեշտութեան մասին, Ալիեւը սպառնում է՝ Ղարաբաղի հայերը «կամ պէտք է Ադրբէջանի քաղաքացիութիւն ընդունեն, կամ բնակութեան այլ վայր փնտրեն»:

«Այստեղ ազատութիւն է, առաջարկւում են բոլոր դեմոկրատական հիմքերը: Հարցը պէտք է լուծուի մարդու իրաւունքների հիման վրայ», – հաւաստիացրել է տարածաշրջանի ամենաաւտորիտար երկրի ղեկավարը:

Համանման յայտարարութիւն Ալիեւն արել էր նաեւ այս տարուայ Յունուարին, Երեւանը այն գնահատել էր որպէս էթնիկ զտումների Բաքուի քաղաքականութեան ուղիղ եւ հրապարակային ապացոյց:

Լեռնային Ղարաբաղի հայկական հատուածը բլոկադայի ենթարկելուց յետոյ (Ղարաբաղի շրջափակումն արդէն ամիսներ է տեւում) Բաքուն ուլտիմատիւ կերպով խօսում էր «ինտեգրացիոն քաղաքականութեան» մասին: Ալիեւն այսօր դրան նոյնիսկ չի անդրադարձել, փոխարէնը յայտարարել է, թէ «անջատողականները պէտք է իմանան, որ երկու ընտրութիւն ունեն՝ կա՛մ ապրել Ադրբէջանի դրօշի ներքոյ, կա՛մ հեռանալ». «Մենք ...ծնկի ենք բերել սեպարատիստների գլխաւոր ներկայացուցիչներին՝ Սերժիկ Սարգսեանին, Ռոբերտ Քոչարեանին, Սէյրան Օհանեանին: Ղարաբաղեան երկրորդ պատերազմի ժամանակ եկել էին Ղարաբաղ իբր մեր դէմ կռուելու: Երեքն էլ նապաստակի պէս փախան մեր տարածքներից, ու հիմա նրանցից ոչ ոք չի կարող նոյնիսկ քիթը խոթել Խանքենդի [Ստեփանակերտ] կամ այլ տեղ»:

Ղարաբաղի իշխանութիւններին նա «ծաղրածուներ» եւ «տգրոիկներ» է անուանել եւ յայտարարել, իբր Ղարաբաղում ապրող հայ բնակչութեան մեծ մասը պատրաստ է Ադրբէջանի քաղաքացիութիւն ընդունել, ուղղակի «անջատողականները» թոյլ չեն տալիս:

*Epress.am*

ԽՈՀԵՐ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ՝ ՃԵՂՔՈՒՄՆԵՐ, ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Սփիւռքեան կուսակցական մամուլի արտադրութիւնը այլազան է: Արտադրած է գերազանցը, միջակը եւ ցածրը: Կուսակցական մէկ մամուլի, մամուլի մէկ թիւի մէջ կարելի էր գտնել այդ բոլոր մակարդակները:

Եգիպտահայ մամուլը կուսակցականացաւ 1920-ականներու սկիզբը, երբ ստեղծուեցաւ Ռամկավար Ազատական Կուսակցութիւնը՝ որ համագործակցային պլոք ստեղծեց Հնչակեաններուն հետ, եւ Եգիպտոս ապաստանեցան Հայաստանի Առաջին Հանրապետութեան Դաշնակցական ղեկավար ու մտաւոր դէմքերը:

Մինչ այդ, 1896-էն ի վեր, Եգիպտոսի մէջ գործած էին աւանդական կուսակցութիւնները՝ Վերակազմեալ Հնչակեան, Հնչակեան, Դաշնակցական եւ Սահմանադրական Ռամկավար: Անոնք ունեցած էին ներքին պայքարներ, բայց մամուլի մեծամասնութիւնը մնացած էր ոչ-կուսակցական, չունէին մամուլի պաշտօնական օրկաններ: Իսկ գաղութի ղեկավարութիւնը Թեմական-Քաղաքականի ընդմէջէն չէր գտնուեր իրենց ձեռքը՝ տիրողները «բարերար» մեծահարուստ դրամատէրերն էին:

Կացութիւնը փոխուեցաւ 1920-ականներու սկիզբը: Կուսակցութիւնները ընտրական պայքարներու միջոցով անցան Թեմական Ժողով, *Արեւ* եւ *Յուսաբեր* դարձան Ռամկավարներու եւ Դաշնակցականներու ձայնը, եւ եթէ գոյութիւն ունեցան անկախ լրագիրներ, կուսակցականներուն ձայնը մնաց ամենաբարձրը, քանի որ կը տիրապետէին ազդելու եւ գործելու գործիքներուն վրայ եւ ունէին գործելու անհրաժեշտ նիւթական աղբիւրները:

Ի դիմաց կուսակցութիւններուն հանդէս եկան անկախ խումբեր, որոնք երբեմն յաջողութիւններու հասան Թեմական ընտրութիւններուն, երբեմն գրեթէ հալածուեցան կուսակցութիւններուն կողմէ, երբեմն իրենք դարձան ծայրայեղ իրենց գործողութիւններուն եւ արտայայտութիւններուն մէջ: Երբեմն ալ ունեցան իրենց մամուլը, օրինակ՝ *Ջահակիր*ի առաջին շրջանը 1948-ին, իսկ Գալուստեան Ծնողք-Ուսուցիչ ինքնանուանումէն ետք հրատարակեցին (առանց այդ անուանումին, այլ միշտ իբրեւ անկախներ) *Հոկտեմբեր*ի Ա. շրջանը եւ *Իմացարանը* իր յաւելուածներով, վերջինս տեւելով մինչեւ 1979, թուական մը՝ որ կարելի է համարել նաեւ անկախներու վերջը իբրեւ ինքնուրոյն ձայն:

Բայց այդ վերջաւորութեան սկզբնաւորութիւնը կարելի էր գտնել երեք տարի առաջ՝ 1975-ին, երբ երեք աւանդական կուսակցութիւնները փոխհամաձայնութեամբ կատարեցին Թեմականի եւ Քաղաքականի աթոռաբաշխում եւ հրապարակ իջան միացեալ ցանկով: Կուսակցական մամուլը դադրեցաւ պայքարներ մղելէ:

Ստորեւ ակնարկս 1920-1975-ի ժամանակաշրջանի եգիպտահայ կուսակցական մամուլի մասին է՝ *Արեւ*, *Յուսաբեր* եւ *Ջահակիր* (նոր շրջան), լոկ ամբողջացումի համար երբեմն ակնարկ նետելով ոչ-կուսակցական *Արաքս* շաբաթաթերթին վրայ:

Կատարուածը ուսումնասիրութիւն չէ, այլ ընդհանուր խոհեր եգիպտահայ կուսակցական մամուլին վրայ, ընտրելով երեք բնագաւառներ՝ գրականութիւն, քննախօսութիւն եւ հրապարակագրութիւն:

### ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Եգիպտահայ կուսակցական մամուլի դրական արտադրութեան մէկ կարեւոր մասը կապուած է գրականութեան հետ: Յակոբ Օշականի, Վահան Թէքէեանի, Հմայեակ Շէմսի, Արշամ Տատրեանի, Արսէն Երկաթի, Միքայէլ Կիւրճեանի, Երուանդ Օտեանի, Արմէն Տատուրի եւ բազմաթիւ այլոց գրական արձակն ու բանաստեղծութիւնը առաջին անգամ լոյս տեսած են կուսակցական լրագիրներուն մէջ:

1920-ականներուն, լրագիրներու կուսակցական մենատիրումէն ետք, գրական տարածութիւնները եգիպտահայ մամուլին մէջ բաւական նեղցան, քանի որ կարեւոր տեղ յատկացուեցաւ կուսակցական ներբողին, մինչ հիմնուեցան սակաւաթիւ գրական հանդէսներ, որոնք ունեցան կարճատեւ կեանք: Վերոյիշեալ տաղանդաւոր գրողները պիտի արտադրէին կուսակցական մամուլին մէջ, պայմանով որ կուսակցութիւնը չենթարկէին խնդրականացումի: Եւ այս պայմանով ունեցանք մտաւորականներու եւ գրողներու բացառիկ արտադրանքներ, որոնք դեռ երկար պիտի զարդարեն մեր միտքերը: Իրական մտաւորականի եւ կուսակցութեան փոխադարձ տիալեքթիք մը տակաւին կարիք ունի մեկնաբանութեան: Ճիշդ այնպէս, ինչպէս Խորհրդային համայնավար բռնապետութիւնը տուաւ Արամ Խաչատրեան, Մարտիրոս Սարեան, Յովհաննէս Շիրազ: Հիմա անընդունելի է այս անունները որակել բռնապետեր՝ պարզապէս այդպիսի համակարգի մէջ գործած ըլլալնուն համար, հրատարակած ըլլալնուն այդ մամուլին եւ հրատարակչատուներուն մէջ (Խորհրդային Միութեան մէջ այլ մամուլ եւ հրատարակչութիւն չկար, բնականաբար): Յարաբերութիւնը բարդ է եւ բազմաշերտ:

Կուսակցական մամուլի մէջ գտնուող գրականութիւնը կարելի է դիտել գրականութիւն գրականութեան համար նշանաբանին մէջ, ուր արձակագիրն ու բանաստեղծը պարզապէս կապ չունին կուսակցական գործարքներուն հետ, կարեւորութիւն չեն տար շրջապատի եղելութիւններուն եւ կ՚արտադրեն զուտ գրականութիւն: Այսինքն, անոնք չեն ներգրաւուած ամենամերձ շրջապատի անմիջական իրականութիւններով: Անոնք «փրոֆեսիոնէլ»-ներ են:

Եթէ հեռացած են կուսակցական շրջապատէն գիտակցօրէն, անկարող ըլլալով մտնել այդ տագնապալից եւ փոխադարձ մերժումի աշխարհը, գրականութիւն գրականութեան համար հասկացողութիւնը ինքնին դիմադրութեան միջոց մը պիտի նկատել: Դիմադրութիւն՝ գրականութիւնը կուսակցականացնելու եւ կուսակցական բառաշերտեր մտցնելու առումով: Եւ անպայմանօրէն տեղ մը հետք մը թողած պիտի ըլլան այս մօտեցումը արդարացնող:

Արսէն Երկաթ «դաշնակցական» էր, կ՚արտայայտուէր մեծ մասամբ *Յուսաբեր*ի մէջ: Ասիկա չէ խանգարած՝ որ 1940-ականներէն սկսեալ կարեւոր յօդուածներ ստորագրէր *Արեւ*ի մէջ, միշտ հիմնակորիզ ունենալով *Յուսաբեր*ը:

Մահուան առիթով գրուած յօդուածի մը մէջ, *Յուսաբեր* կատակով կ՚արձանագրէր՝ որ Երկաթ իր բանաստեղծութիւններուն մէջ չէր գործածեր «դաշնակցական» բառեր եւ արտայայտութիւններ: Կատակով գրուած լուրջ կարծիք մըն է ասիկա: Մէկ կողմէ՝ ցոյց կու տայ որ կուսակցութիւնը իրազեկ է իր գործածած լեզուին (ընդհանրապէս, ամբոխավարութիւններու պարագային մարդիկ անտեղեակ կ՚ըլլան իրենց գործածած լեզուէն՝ վերէն պարտադրուած միակողմանի ոճը եւ ընտրեալ բառերը դառնալով օրէնքներ եւ միակ գոյութիւններ), այլեւ իրազեկութիւնը հրապարակային է, իրազեկութիւն՝ որուն մէջ կայ թեթեւ ու հաճելի ինքնաքննադատութիւն: Միւս կողմէ՝ ցոյց կու տայ Արսէն Երկաթի մեղմ ճեղքումը այն կուսակցութեան՝ որուն մէջէն արտայայտուած է, պարզապէս «մերժելով» գործածել գաղափարախօսային լեզուն՝ անոր յատուկ բառապաշարով: Եւ ասիկա տեղի կ՚ունենայ կուսակցութեան գիտակցական իրազեկութեամբ: Իսկ լռակեաց, անաղմուկ մերժումն ինքնին հանրային ներգրաւուածութեան շերտ մը կարելի է համարել: 4

ՋԱՀԱԿԻՐ

## 2 ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՈՆ (ԱԼԱՏԻՆ)

Յուլիս 1927, Բ. տարի, թիւ 22 (55):

32. Հ. Վեհակրոն, «Թունաւորում», *Արաքս*, 9 Յուլիս 1927, Բ. տարի, թիւ 20 (53):

33. Հ. Վեհակրոն, «Շիլ հաշիւներ»:

34. Հ. Վեհակրոն, «Բարոյականի դաշնակցութիւն եւ Դաշնակցութեան բարոյականը», *Արեւ*, 30 Ապրիլ 1928, ԺԴ. տարի, թիւ 2803, էջ 1:

35. Հ. Վեհակրոն, «Տեսութիւն՝ գաղութահայութեան համար», *Արաքս*, 13 Օգոստոս 1927, Բ. տարի, թիւ 25 (56):

36. Հ. Վեհակրոն, «Բարոյականի դաշնակցութիւն եւ Դաշնակցութեան բարոյականը»:

37. Հրանդ Վեհակրոն, «Գրական շօվինականութիւն. Գ.»:

38. Հրանտ Ալատին, «Մեղքըցէ՛ք», *Լուսաբեր*, 5 Մարտ 1908, Դ. տարի, թիւ 491:

39. Հ. Վեհակրոն, «Թունաւորում», *Արաքս*, 9 Յուլիս 1927, Բ. տարի, թիւ 20 (53):

40. Հ. Վեհակրոն, «Շիլ հաշիւներ»:

41. Հ. Վեհակրոն, «Լեռ գթութեան», *Արաքս*, 15 Հոկտեմբեր 1927, Բ. տարի, թիւ 34 (67):

42. Հրանտ Ալատին, «Օսմանեան Սահմանադրութիւնը», *Արեւ*, օրաթերթ, Աղեքսանդրիա, 11 Օգոստոս 1908, Ա. տարի, թիւ 80:

43. Թորգոմ Եպս. Գուշակեան, *Եգիպտոսի հայոց հին եւ արդի եկեղեցիները եւ պատմութիւն շինութեան Ս. Գրիգոր Լուսաւորիչ նորաշէն եկեղեցւոյ Գահիրէի*, Գահիրէ, 1927, էջ 83:

44. Արտաշէս Հ. Գարտաշեան, *Նիւթեր Եգիպտոսի հայոց պատմութեան համար*, Գահիրէ, 1943, էջ 95:

45. Հ. Վեհակրոն, «Գահիրէի նորակառոյց եկեղեցին. իր նկարները եւ ճարտարապետութիւնը», *Արաքս*, 2 Յուլիս 1927, Բ. տարի, թիւ 19 (52):

## 3 ՀԱՅ ԹԱՐԳՄԱՆԻՉՆԵՐՆ ՈՒ ՆՐԱՆՑ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ...

գրադարանների գործը բարդացել է, քանի որ դրանք սկսել են փոխարինուել ինտերնէտային կայքերով: «Մարդիկ սկսել են առցանց ընթերցել: Ըստ իս՝ բոլորիս խնդիրն է հասարակութեանը գրքի հետ կապելը: Գիրք կարդալը կարեւոր է ոչ միայն գիտելիք ձեռք բերելու, այլեւ հայերէն եւ այլ լեզուներ սովորելու, մտքերն այդ լեզուով ճիշտ շարադրելու տեսանկիւնից: Առանց գիրք կարդալու, առանց գրքի հետ աշխատելու հնարաւոր չէ հասնել գրագիտութեան բարձր աստիճանի: Գիրքը նաեւ մէկ այլ առաւելութիւն ունի. այն այս կամ այն ժամանակաշրջանն է ամփոփում եւ այն ներկայացնում յաջորդ սերունդներին», -շեշտեց Սուվարեանը:

Հայաստանի ԿԳՄՍ նախարարութեան եւ Հայկական Գրադարանային Ասոցիացիայի ջանքերով Ապրիլի 17-ից 23-ը յայտարարուած է «Ազգային գրադարանային շաբաթ»:

Շաբաթն անցկացւում է իւրաքանչիւր տարի՝ սկսած 2002 թուականից: Շաբաթուայ ընթացքում վերարժեւորւում են գիրքը, ընթերցանութիւնն ու գրադարանների դերը հասարակութեան կեանքում:

## 3 ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ՝ ՃԵՂՔՈՒՄՆԵՐ, ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

Երկաթի նման, Օշական իր երկար գրութիւններն ու վերլուծութիւնները Եգիպտոսի մէջ կը հրատարակէր *Յուսաբերի* մէջ: 1924-1931-ին, արդարեւ, պատմուածքներու եւ գաղափարական յօդուածներու գեղեցիկ շարքեր ստորագրած է *Արեւի* մէջ, Եգիպտոսի մէջ կուսակցական բացայայտ պայքարի ամենասկզբնական շրջանին եւ թէժագոյններէն մէկուն: Եկուստեք գոյութիւնը ինքնին ճեղքում մըն է կուսակցականութեան: Բայց ան դիմած է աւելիին:

Օշականի պարագային, յաճախ իր խոր գաղափարները բացայայտելու բաւական ուշ սկիզբ առած ճիգը կը շարունակուի մինչեւ այսօր, երբեմն մեղկացուելով գանոնք, երբեմն ալ աւելի փիլիսոփայականացուելով, երբեմն գտնուելով մեկնողական ճամբան: Բայց գրեթէ ուշադրութիւն չէ դարձուած իր գրութիւններուն գործնապաշտ իմաստներուն վրայ: Օրինակ, 1929-ի յօդուածներէն մէկուն մէջ Օշական կը գանգատէր, որ եգիպտահայ դպրոցներուն մէջ կը նշանակենք աշակերտներուն բան մը տալիք չունեցող ուսուցիչներ(1): Իսկ այդ ժամանակ ո՞վքեր էին դպրոցներուն վրայ իշխողները, եթէ ոչ կուսակցութիւնները, Ազգային Իշխանութեան ընդմէջէն:

Փորձագրական գրականութիւնը՝ իբրեւ արտայայտչական հարթակ եւ ոճաթեքնիքական բովանդակութիւն, ճեղքում մը կրնայ նկատուիլ գրական աւանդական հասկացողութիւններուն, եգիպտահայութեան մակարդակով՝ նորարարութիւն, ուրեմն, անհանդիստ կեցութիւն մը կուսակցական մամուլէն ներս: Արշամ Տատրեան պիտի ընդունիլ այս ծիրէն ներս:

Միւս կողմէ, գրականութիւն գրականութեան համար մօտեցումին համար՝ իբրեւ ստեղծագործական հանգստաւէտ ապաւէն, ի մէջ կուսակցական ժխորներու, կարելի է առաջարկել Արմէն Տատուրի արձակը *Արեւի* մէջ: Ճեղքող շերտեր չեմ կրցած գտնել այնտեղ, թերեւս Տատուրի ուրիշ ընթերցող մը կարողանայ հերքել ըսածս:

Աւելի բարդ է Թէքէեանի բանաստեղծութեան հարցը *Արեւի* մէջ: Առերեւութապէս ամէն բան հանդարտ է, ազգային, այնքան յարմարաւէտօրէն մերուող՝ որ իր կուսակցութիւնը զինքը առանց դժուարութեան դարձուցած է կուսակցութեան մէջ բարգաւաճած գրողի տիպար նմոյշ: Բայց զինքը յարամարաւէտ դարձնելն ինքնին մտածելու տեղիք կու տայ: Իրապէ՞ս այդպէս էր ան: Թերեւս ոմանց համար անընդունելի թուի, բայց Թէքէեանի հրապարակագրութիւնը կարդալէ ետք է որ պէտք է վերընթերցել իր բանաստեղծութիւնները: Անհանգիստ ու անհանդարտ հրապարակագիր մը(2), ան իր բանաստեղծութիւններուն մէջ օգտագործած է բառեր՝ որոնք աննկատելիօրէն իմաստային շեղումներ կը մտցնեն բովանդակութեան մէջ: Այդ բառերը կան, կը մնայ քննականօրէն վերլուծել բովանդակութիւնները:

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. Յ. Օշական, «Անապատի քարոզ», *Արեւ*, 24 Յուլիս 1929, էջ 1:

2. *Վահան Թէքէեանի յօդուածները Արեւ լրագիրին մէջ. հնարաւորութի՞ւն թէ դիմադրութիւն*, Գահիրէ, *Ջահակիր*, Յաւելուած ԻԲ., 2019:

## 1 «ԻՆՔՆԵՐՍ ՄԵԶ ԽԱԲԵԼ ԵՆՔ». ՓԱՇԻՆԵԱՆԸ՝ ԼՂ-Ի ԿԱՐԳԱՎԻՃԱԿԻ ՄԱՍԻՆ

ամբողջականութիւնն ու պարտաւորուեն միմեանց տարածքային պահանջներ չներկայացնել: Փաշինեանի համոզմամբ՝ նախորդ տարի Պրահայում, այնուհետեւ Սոչիում այդ մասին պայմանաւորուել են:

«Ուզում եմ վերահաստատել, որ Հայաստանի Հանրապետութիւնը լիարժէք ճանաչում է Ադրբէջանի տարածքային ամբողջականութիւնը, եւ ակնկալում ենք, որ Ադրբէջանը նոյնը կ՚անի՝ Հայկական ԽՍՀ ամբողջ տարածքը ճանաչելով որպէս Հայաստանի Հանրապետութիւն»:

Հերքել է Բաքուից հնչող այն պնդումները, թէ խաղաղութեան պայմանագրի բանակցութիւնների ընթացքում Հայաստանը հրաժարւում է ճանաչել Ադրբէջանի տարածքային ամբողջականութիւնը:

«Կարող ենք դա ապացուցել: Ինքներս ենք առաջարկել, որ պայմանագրին կցուեն հայկական եւ ադրբէջանական ԽՍՀ-ների՝ ԽՍՀՄ կողմից հաստատուած քարտէզները՝ որպէս երկու երկրների տարածքային ամբողջականութեան հիմք»:

**Ամենաբարդ խնդիրը՝ Լեռնային Ղարաբաղ**

Փաշինեանի գնահատմամբ՝ Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան ողջ ընթացքում տարածքային ամբողջականութեան սկզբունքն ու ինքնորոշման սկզբունքը դրուել են կողք կողքի: Ասում է՝ այդ կերպ արձանագրուել են իրողութիւններ, որոնք «մենք չենք խոստովանել, բայց, անկախ մեր խոստովանութիւնից, դրանք գոյութիւն ունեն»:

Նրա խօսքով՝ ինքնորոշման իրաւունքի շահառուի պայմանականօրէն Ա կարգավիճակը վերանայելու հարց է դրուել, ինչը տեսականօրէն կարող էր նշանակել վերանայել այդ կարգավիճակը, չփոփոխել կամ դարձնել պայմանական «Բ, Ա+1 կամ Ա-1 կարգավիճակ»: Եւ դա տեղի է ունեցել առանց եղած Ա կարգավիճակը ֆիքսելու:

«Եթէ ինքնորոշման հարց ես բարձրացընում, նշանակում է՝ ինչ-որ մի բանի մաս ես, եթէ ինչ-որ մի բանի մաս չես, ուրեմն կամ արդէն ինքնորոշուել ես կամ ինքնորոշման կարիքը չունես», - յայտարարել է նա:

Կառավարութեան ղեկավարը կարծիք է յայտնել, թէ հայկական կողմն իր սեփական ձեռքերով այս իրողութիւնը «ոչ միայն ստեղծել է, այլեւ ցեմենտել», իսկ դրանից յետոյ ասել է, որ Լեռնային Ղարաբաղի համար ցանկանում է Բ կարգավիճակ՝ առանց հրապարակային կերպով ընդունելու Ա կարգավիճակը.

«Սրանով խաբել ենք ինքներս մեզ, Հայաստանի ժողովրդին եւ Լեռնային Ղարաբաղի ժողովրդին: Սա չեմ ասում որեւէ մէկին մեղադրելու համար, այլ արձանագրելու, որ մինչեւ այս ակնյայտ փաստի եւ իրողութեան հետ չառերեսուենք, երբեք խաղաղութիւն չենք ունենայ: Երբեք»:

Հերթական անգամ կարեւորել է Բաքուի եւ Ստեփանակերտի միջեւ բանակցութիւնների, երկխօսութեան միջազգային մեխանիզմի ձեւաւորումը՝ որպէս Լեռնային Ղարաբաղի հայութեան իրաւունքների եւ անվտանգութեան ապահովման գործիք:

**«Յոյս ունեմ՝ առաջիկայում Թուրքիայի հետ սահմանը կը բացուի»**

Խորհրդարանի ամբիոնից յայտարարել է Փաշինեանը: Նրա դիտարկմամբ՝ դա հիմք կը ստեղծի «հարեւանային բնականոն յարաբերութիւնների» զարգացման համար:

Հայաստանի վարչապետի խօսքով՝ դրա հնարաւորութիւնը մեծացել է վերքաղաքական, վերդիւանագիտական գործօնների շնորհիւ: Յիշեցրել է՝ Փետրուարի սկզբին Թուրքիայում տեղի ունեցած աղէտալի երկրաշարժից յետոյ Երեւանը հումանիտար օգնութիւն եւ փրկարարական ջոկատ ուղարկեց, նաեւ Անկարա մեկնեց Հայաստանի արտգործնախարարը.

«Թուրքիայի արտաքին գործերի նախարարութեան դիմաց ծածանուող Հայաստանի տասնեակ դրօշները միայն արարողակարգային ատրիբուտ չեն, այլ մի զարմանալի արձանագրում, որ յոյսը կարող է ծագել այնտեղ, որտեղ տիրում է յուսահատութիւնը»:

Նիկոլ Փաշինեանը կարեւորել է, որ առաջիկայ ամիսներին կեանքի կոչուի երրորդ երկրների քաղաքացիների եւ դիւանագիտական անձնագիր կրողների համար սահմանը բացելու պայմանաւորուածութիւնը:

«Իհարկէ, դա կարող է նաեւ տեղի չունենալ, եթէ հումանիտար եւ հարեւանային արժէքների բերած նոր ընկալումները, տպաւորութիւնները ժամանակի ընթացքում սառեն, խամրեն եւ քաղաքական, դիւանագիտական որոշումների վրայ նրանց ազդեցութիւնը ի չիք դառնայ», - նշել է նա եւ յոյս յայտնել, որ նման բան տեղի չի ունենայ:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1939 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 11 ՄԱՅԻՍ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ.

عدد رقم ١٩٣٩ الخميس ١١ مايو ٢٠٢٣


# ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ ԱՄՆ-Ի ՄԷՋ

20-21-րդ դարերու բնորոշ չաւարտող պատերազմ է Հայաստանի եւ Ազըրպէյճանի հակամարտութիւնը՝ միջազգային կարեւոր խաղընկերներու մասնակցութեամբ: Եւ բանակցութիւններ՝ պատերազմի մթնոլորտի մէջ:

Մայիս 1-4-ին, Միացեալ Նահանգներու Վիրճինիա նահանգի Արլինկթոն արուարձանի Ճորճ Շուլց Արտաքին Գործերու Ազգային Ուսումնական Կեդրոնին մէջ տեղի ունեցան քառօրեայ բանակցութիւններ Հայաստանի եւ Ազըրպէյճանի արտաքին գործոց նախարարներ Արարատ Միրզոյեանի եւ Ճէյհուն Պայրամովի միջեւ, միջնորդութեամբ ԱՄՆ պետական քարտուղար Անթոնի Պլինքէնի:

Միրզոյեան եւ Պայրամով վերջին անգամ հանդիպած էին Նոյեմբեր 7-ին, Ուաշինկթոնի մէջ:

Վերջին անգամ ԱՄՆ-ի մէջ հայ-ազըրպէյճանական երկարատեւ բանակցութիւններ կայացած էին 2001-ին նախագահական մակարդակով՝ Ռոբերտ Քոչարեան եւ Հէյտար Ալիեւ, որ յանգեցուց յայտնի Քի Ուեսթ համաձայնագիրի նախագիծին եւ անոր չուտափոյթ տապալումին: Այդ ժամանակ ԱՄՆ կը ներկայանար իբրեւ միջնորդ համաձայնագիրի ձեւաւորումին մէջ, մինչդեռ այսօրուայ համար պիտի յայտարարէր՝ որ ինք ընդամէնը տրամադրած է բանակցային հարթակ:

Բանակցութիւններուն նախորդեցին Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի եւ Ազըրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւի առանձին հեռախօսազրոյցները Պլինքէնի հետ:

Ապրիլ 29-ին Փաշինեան Պլինքէնին կը ներկայացնէ ռազմաքաղաքական կացութիւնը, Լաչինի միջանցքը, մարդասիրական խնդիրը, Լեռնային Ղարաբաղի էթնիք զտումի քաղաքականութիւնը: Ալիեւ-Պլինքէն հեռախօսազրոյցը կը կայանայ Ապրիլ 30-ին:

ԱՄՆ Արտաքին Գործոց Նախարարութիւնը (U.S. Department of State) իր պաշտօնական կայքին վրայ կը հրապարակէ գրասենեակի խօսնակի յայտարարութիւնը Փաշինեան-Պլինքէն խօսակցութեան մասին. «Պետական քարտուղար Անթոնի Ճ. Պլինքէն այսօր խօսեցաւ Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի հետ՝ ընդգծելու համար հայ-ազըրպէյճանական խաղաղութեան բանակցութիւններուն կարեւորութիւնը եւ խոստանալով ԱՄՆ-ի շարունակական աջակցութիւնը: Քարտուղար Պլինքէն կրկնեց՝ որ ուղղակի երկխօսութիւնը եւ դիւանագիտութիւնը միակ ուղիներն են Հարաւային Կովկասի մշտական խաղաղութեան համար: Ան իր գնահատանքը արտայայտեց վարչապետի շարունակական յանձնառութեան խաղաղութեան ընթացքին ուղղութեամբ» (https://www.state.gov/secretary-blinkens-call-with-armenian-prime-minster-pashinyan/):

Նոյն կայքէջը յաջորդ օրը կը ներկայացնէ Ալիեւ-Պլինքէն զրոյցը. «Պետական քարտուղար Անթոնի Ճ. Պլինքէն խօսեցաւ Ազըրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւի հետ՝ ընդգծելու համար հայ-ազըրպէյճանական խաղաղութեան բանակցութիւններուն կարեւորութիւնը եւ խոստանալով ԱՄՆ-ի շարունակական աջակցութիւնը: Քարտուղար Պլինքէն իր համոզումը յայտնեց խաղաղութեան կարելիութեան նկատմամբ: Ան արտայայտեց նաեւ Միացեալ Նահանգներու խոր մտահոգութիւնը՝ թէ Ազըրպէյճանի կողմէ Լաչինի միջանցքին վրայ անցակէտի տեղադրութիւնը կը վնասէ խաղաղութեան գործընթացին համար վստահութիւն հաստատելու ջանքերուն, եւ շեշտեց որքան կարելի է շուտ Լաչինի միջանցքը վերաբանալու կարեւորութիւնը առեւտրական եւ անձնական ինքնաշարժներու երթեւեկութեան համար» (https://www.state.gov/secretary-blinkens-call-with-azerbaijani-president-aliyev-12/):

Խօսքեր են, անշուշտ, բայց երկու պաշտօնական յայտարարութիւններուն տարբերութիւնը ակներեւ է: Մինչ Հայաստանի ամենէն աւելի դաշնակից Ռուսաստանը խնդիրը միշտ դրած է կա՛մ հաւասար հարթութեան վրայ, կա՛մ հանդէս եկած Ազըրպէյճանին աջակցող յայտարարութիւններով, ԱՄՆ յստակօրէն կը նշէ՝ որ հարցը համահաւասար չէ, ցոյց տալով Լաչինի միջանցքի փակումը Ազըրպէյճանի կողմէ: Լաչինի միջանցքին փակումը Ռուսաստան միշտ համարած է Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ եղած անհամաձայնութեան արդիւնք՝ զոր պէտք է երկու կողմերը լուծեն բանակցութեամբ եւ փոխզիջումով: Ամէն բան հաւասար է Հայաստանի դաշնակիցին համար: 120 հազար բնակիչներու դանդաղ սպանութիւնը արդիւնքն է համահաւասար անհամաձայնութեան:

Մայիս 1-ին, Միրզոյեան եւ Պայրամով կը գտնուէին Ուաշինկթոն՝ քառօրեայ բանակցութիւններու համար:

Նախ, երկուքը առանձին հանդիպումներ կ՚ունենան Պլինքէնի հետ: Ապա, Պլինքէն-Միրզոյեան-Պայրամով եռակողմ հանդիպում, որմէ ետք՝ Միրզոյեան-Պայրամով երկկողմ հանդիպում:

Մայիս 2 եւ 3՝ երկկողմ բանակցութիւններ: Նաեւ, Մայիս 3-ին, եռակողմ հանդիպում Միրզոյեանի, Պայրամովի եւ ԱՄՆ նախագահի՝ ազգային ապահովութեան հարցերով խորհրդական Ճէյք Սալիվանի միջեւ:

Մայիս 4՝ երկկողմ բանակցութիւններ, որոնց եզրափակիչ փուլին կը միանայ Պլինքէն:

ԱՄՆ յայտարարած էր՝ որ ինք մէկուն կամ միւսին կողմը չէ, ոչ ալ կ՚առաջադրէ լուծումներ, այլ ընդամէնը նպատակ ունի ստեղծել բանակցային հարթակ. «Յարաբերութիւնները կարգաւորելու համաձայնութեան շրջանակն ու բնոյթը կողմերուն գործն է: Մեր նպատակն է տարածք տրամադրել, ուր կարող են տեղի ունենալ երկկողմ քննարկումներ, եւ կողմերը կարող են միասին կատարել իրապէս դժուարին աշխատանք՝ երկարատեւ խաղաղութեան ուղղութեամբ յառաջընթաց գրանցելու համար: Ինչ կարող է տեղ գտնել կամ չգտնել համաձայնութեան մէջ՝ կողմերուն վերաբերող հարց է»:

Թէեւ դժուար է համոզուիլ՝ որ ռուս-ուքրաինական ընթացող պատերազմի եւ ԱՄՆ-ՆԱԹՕ-ի հակառուսական յարձակողական քաղա-

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՊԱՏՐՈՒԱԿԻ ԵՒ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԻՋԵՒ

Ապրիլ 25-ին, Երեւանի Օղակաձեւ այգիին մէջ բացումը կը կատարուի Նեմէսիս գործողութեան նուիրուած յուշակոթողաղբիւրին:

Տեղադրումը պիտի անցնէր գրեթէ աննկատ, եթէ չյաջորդէր Թուրքիոյ բարձրացուցած աղմուկը: Բացումէն անմիջապէս ետք, Թուրքիա կը փակէ օդային տարածքը Հայաստանէն դէպի երրորդ երկիրներ կատարուող թռիչքներու համար: Թուրքիոյ արտաքին գործոց նախարար Մեւլիւթ Չաւուշօղլու կը բացատրէ. «Թուրքիան անկեղծ է Հայաստանի հետ յարաբերութիւնները կարգաւորելու ցանկութեան մէջ, սակայն Նեմէսիս յուշարձանի տեղադրումը Հայաստանի մէջ անընդունելի է: Ես սխալ չեմ կրնար ընդունիլ: Հայաստանի յայտարարութիւններն այս հարցի առնչութեամբ նոյնպէս անկեղծ չեն, մենք իբրեւ համարժէք պատասխան փակեցինք օդային տարածքը, անհրաժեշտութեան պարագային կրնանք այլ քայլեր ձեռնարկել»:

Անշուշտ, այս բոլորը պատրուակ մըն է Էրտողանեան Թուրքիոյ համար: Ոչ աւելի, ոչ պակաս: Մանաւանդ, անաղմուկ անցած դէպք մը վերածելով աղմուկի՝ իբրեւ սեփական ազգայնականութեան արտայայտութիւն:

Բայց պէտք է հասկնալ նաեւ Թուրքիոյ ներկայ իշխանութիւնները՝ բռնապետ Էրտողանի գլխաւորութեամբ: Պզտիկ օրինակ մը: Այսօր Թուրքիա կ՚ապրի նախագահական նախընտրական շրջան մը՝ իբրեւ ենթադրեալ ժողովրդավարութեան արտայայտութիւն: Իբրեւ ընդդիմադիր, ընտրութեան կը ներկայանայ Հանրապետական Ժողովրդական Կուսակցութեան առաջնորդ Քեմալ Քըլըչտարօղլու, որ հարցախուզութիւններուն մէջ արձանագրած է բաւական յառաջդիմութիւն: Էրտողան տառացիօրէն գինքը որակեց ահաբեկիչ, Քուրտիստանի Աշխատաւորական Կուսակցութեան աջակից: Ժողովրդավարական սկզբունքներով քաղաքական ընդդիմադիրի մը «ահաբեկիչ» անուանելը ինքնին հակաժողովրդավարական քայլ մըն է, բացի եթէ ենթական իրապէս ահաբեկիչ մը ըլլայ, որ չի հանդիսանար Քըլըչտարօղլուի պարագան: Չըսելու համար ուրիշ բազմաթիւ երեւոյթներ: Կը բաւէ որ Էրտողանի Թուրքիան կը հաշուէ քաղաքական բանտարկեալներու աշխարհի ամենաբարձր թիւերէն մէկը:

Ներքին լսարանի ահաբեկումի սկզբունքով առաջնորդութիւնը զաւթած իշխանութեան մը համար անսովոր պիտի չըլլայ արտաքին ահաբեկումը: Նեմէսիսի յուշարձանը եղաւ այդ արտաքին ահաբեկումի պատրուակը:

Իսկ ի՞նչ կարելի է մտածել յուշարձանի մասին զուտ հայկական տեսակէտէն: Արձանային ազգասիրութի՞ւն, հայրենասիրութի՞ւն: Ո՞վ եղած է նախաձեռնողը:

Մայիս 3-ի կառավարութեան նիստին, վարչապետ Նիկոլ Փաշինեան կը մեկնաբանէ. «Իրականում այդ արձանը տեղադրուել է մի պարզ պատճառով: Այդ նախաձեռնութիւնները եղել են 2020-ի Դեկտեմբերից 2021-ի Ապրիլի շրջանում: Երբ այդ թեման սեղանից սեղան գնացել է, բոլորը մտածել են այս դաւաճանութեան ընդհանուր տրամաբանութեան մէջ, բա որ մենք չհամաձայնուենք, մեզ կ՚ասեն՝ դուք դաւաճան էք: Եւ մենք բոլորս, ըստ էութեան, առաջնորդւում ենք մի տրամաբանութեամբ՝ այնպէս անենք, որ մեզ յանկարծ չասեն, որ մենք դաւաճան ենք, բայց իրականում մենք անընդհատ մեր երկրի պետական եւ ազգային շահերը դաւաճանում ենք»: Կ՚աւելցնէ. «Հայաստանի Հանրապետութիւնը կամ երբեք չի առաջնորդուել, կամ հիմնականում չի առաջնորդուել տնտեսական շահով, մենք էմոցիոնալ շահով ենք առաջնորդուել, բայց եկել է ժամանակը, որ մենք էմոցիոնալ ժողովրդից վերածուենք պետական ժողովրդի»:

Իսկ Մայիս 5-ի *Ազատութիւն ռադիոկայանի* հարցազրոյցին վարչապետը աւելի բաց արտայայտութեամբ կը նշէ՝ որ կառավարութիւնը չէ տեղադրութեան որոշումը կայացնողը:

Իսկ հայերուս պիտի հարցնել: Բաւարար չէ՞ Ծիծեռնակաբերդի հրաշալի յուշակոթողը՝ նուիրուած Ցեղասպանութեան: Լայն տարածութիւն մը՝ պատկառազդու ճարտարապետութեամբ, որուն խորքային իմաստը կը բովանդակէ ամէն բան՝

↳ 3

# ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՈՆ (ԱԼԱՏԻՆ)

## Եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, յօդուածագիր

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Աղքատախնամ**

Կը նկարագրէ Աղեքսանդրիոյ Առաջնորդարանի բակին վիճակը՝ 1896-1897 գաղթականներուն օրով. «Ս. Պօղոս Պետրոս եկեղեցիի շրջափակին արմաւենիները դեռ չէին կացինահար տապալած, եկեղեցիին մուտքն ալ տարբեր ուղղութեամբ կը տանէր դէպի տաճարը, իսկ այսօրուան ծաղկազարդ մարգագետնին տեղ աւազն էր սփռուած, եւ այդ շրջափակը կը ներկայացնէր շուկայի մը երեւոյթը ուր յեղափոխականը ճաշարան մ՚ունէր, պատուելին՝ ածուխի մէկ կրպակ եւ երկու պարկ, հիւղակներ, խարխլած աթոռներ քով քովի, եւ խօսակցութիւններ՝ դրամի կամ ուտեստեղէնի բաշխումի պահը սպասող»:

1896-1897-ի գաղթականներուն օգնելու համար է որ յիշեալ տարածութեան վրայ ծնունդ առաւ Աղքատախնամը. «[Ա]յն օրէն երբ թրքահայութիւնը ցուպը ձեռքին օտար հորիզոններու տակ գնաց փնտռել իր ճակատագիրը, հոս, այս գաղութին կորիզը կազմող առաջին ժամանողները իրենց փրկութեան Աստուածը կարծեցին գտնել եւ մխիթարուիլ գոյութեամբը հապճեպով կազմուած եւ եկեղեցիի շրջափակին մէջ բացօդեայ նստած Աղքատախնամին՝ նախահայրը այսօրուան *լքուա՛ծ Աղքատախնամին*» (ընդգծումը հեղինակինն է)(46):

Հետաքրքրական տեղեկութիւններ, որոնց նմանը քիչ է արձանագրուած:

Աղքատախնամին այդ նախատիպը կրնայ ըլլալ Աղքատաց Բարեգործական Միութիւնը: Անոր գոյութեան մասին վկայութիւն կայ 1900-ին, թէեւ ան հիմնուած է անկէ առաջ անյայտ թուականի մը: Հիմնադրութեան թուականը Եփրեմ Պօղոսեան պայմանականօրէն կը նշէ 1899(47): Կամ պիտի ըլլայ ընդամէնը մէկ անգամ պոլսահայ մամուլի մը մէջ անցողակի կերպով յիշուած Հայ Կարօտելոց Նպաստամատոյց Ընկերութիւնը՝ գործած 1897-ին, որուն գործունէութեան թուականները Պօղոսեան դարձեալ պայմանականօրէն կը դնէ 1897-1899(48):

**Ամփոփում**

Վեհակրոնի յօդուածները, ինչպէս տեսանք, մեծ մասամբ լոյս տեսած են ոչ-կուսակցական մամուլի մէջ, որ առիթ տուած է իրեն արտայայտուելու անկաշկանդօրէն: Գաղափարները այլազան են՝ բխած առօրեայ իրականութիւններէն եւ մտահոգութիւններէն: Տակաւին շատ բան պիտի ունենար արտայայտելու՝ եթէ վաղաժամօրէն չկտրէր կեանքի թելը:

**ՎԵՍՏԵԱՆ ԿՈՅՍ (թարգմանութիւն պատմական վէպի)**

Մահէն մէկ ամիս առաջ՝ 1933 Հոկտեմբեր 1 թուակիր նամակով, Վեհակրօն *Բազմավէպ*ին կը ղրկէ իր գործերէն նմոյշներ, անոնց կցելով նամակ մը, ուր կը ներկայացնէ կենսագրական տեղեկութիւններ եւ կը թուէ իր տպագիր ու անտիպ հատորներուն ամբողջութիւնը:

Կը բացայայտէ՝ որ Վենետիկ եղած ժամանակ, իր ուսուցիչ Հ. Յովհաննէս Թորոսեանի առաջարկով, դասընկերոջ Միքայէլ Ալէմշահի հետ (հայրը ապագայ յայտնի երաժիշտ Գուրգէն Ալէմշահի) ֆրանսերէնէ թարգմանած էր *Վեստեան կոյս* պատմական վէպը, թէեւ հրատարակուած գիրքի Յառաջաբանին մէջ Հ. Թորոսեան իր անունը յիշատակած էր Հրանդ Պէրպէրեան. «Այդ շրջանին էր [իմա՝ Մուրատ Ռափայէլեան Վարժարանի ԻԳ. դասարան, Հ. Թորոսեանի աշակերտութեան ժամանակ, Հ.Ա.] որ իր [իմա՝ Հ. Թորոսեանի, Հ.Ա.] հսկողութեան ներքեւ եւ ինձ դասակից Միք. Ալէմշահի հետ թարգմանաբար տուինք *Վեստեան կոյսը* որ նախ *Բազմավէպ* իդ մէջ երեւնալէ յետոյ հրատարակուեցաւ նաեւ առանձին հատորով: Յառաջաբանին մէջ անունս յիշատակուած է Հրանդ Պէրպէրեան»(49):

Վէպը բաղկացած է ԻԴ. գլուխներէ: Ա.-ԺԷ. գլուխները, Հ. Թորոսեանի թելադրանքով կը հրատարակուին *Բազմավէպ*ի մէջ Յունուար 1895-էն մինչեւ Յունուար 1897, առանց Յառաջաբանի, առանց թարգմանիչներու անուններու յիշատակութեան, խորագիր ունենալով՝ *Վեստեան կոյս. պատմական վէպ եկեղեցւոյ առաջին դարու*:

Ամբողջութիւնը՝ մինչեւ ԻԴ. գլուխ, նոյնպէս Հ. Թորոսեանի ջանքերով կ՚ամփոփուի մէկ հատորի մէջ՝ *Վեստեան կոյս. պատմական վէպ եկեղեցւոյ առաջին դարու (շարք Փաբիոլայի)* (Վենետիկ Ս. Ղազար, 1898): Թորոսեան կ՚աւելցնէ Յառաջաբան մը («Ազդ»), ուր կը նկարագրէ թարգմանական ընթացքը. «Գալով գրքուկիս, այսօր բնագիրն՝ գաղղիերէն լեզուով՝ պատահմամբ ձեռքս ինկաւ, զոր յանձնեցի Մ. Ռափայելեան վարժարանի ԻԳ դասու յառաջադէմ աշակերտաց, - որք էին Մ. Ալեմշահեան եւ Հ. Պերպերեան, - մինչ ուսուցիչ էի նոյն վարժարանին մէջ, որպէս զի իրենց պարապոյ ժամերուն մէջ այնոր թարգմանութեամբ զբաղին. զոր եւ յօժարութեամբ կատարեցին, եւ իրենց քառամեայ պանդխտութեան իբր յիշատակ մի թողին ինձ: Ես այդ, ի խրախոյս իրենց եւ ի յորդոր այլոց, հազիւ թէ վեր ի վերայ ակնարկ մի տալով թարգմանութեան, *Բազմավէպի* Խմբագրին յանձնեցի՝ մաս մաս հրատարակելու համար յիշեալ ամսաթերթին մէջ՝ իբրու սրբազան վիպասանութիւն, որ եւ առանձին գրքոյկ ձեւացաւ: Այս պատճառաւ է ահա, որ ամբողջութեան մէջ կը պակասի թերեւս թարգմանութեան լեզուի եւ ոճոյ միօրինակութիւն, որ փափաքելի եւ կարեւոր իսկ էր: Յուսամ թէ ներողամիտ կը լինիք սոյն թերութեան»(50):

**ՎԵՐԱԴԱՐՁԻ՛Ր ԱՇԽԱՏԱՆՈՑ (վէպ)**

1910-ին *Լուսաբեր-Արեւ* կը հրատարակէ լուր մը՝ ըստ որուն լոյս պիտի տեսնէ Հրանտ Ալատինի *Անէծքին գաղտնիքը* վէպը, բաղկացած երկու մասերէ եւ շուրջ 300 մեծադիր էջերէ: Նախատեսուած էր նախ վաճառել առանձին պրակներով, մէկ պրակը՝ 1 ղրուշ, ամբողջ գործի բաժանորդագրութիւնը՝ 12 ղրուշ: Գնել կամ բաժանորդագրուիլ փափաքողները կրնային դիմել հեղինակին՝ Քանթարէթ էլ-Տեքքա հրապարակ, Գահիրէ(51):

Վէպը լոյս չի տեսներ: Թերեւս հեղինակը չէ կրցած աւարտել զայն, քանի որ յետագային այլեւս խօսք չ՚ըլլար անոր մասին:

1926 Փետրուարին կը յայտարարուի՝ որ պրակ առ պրակ լոյս պիտի տեսնէ Հրանդ Վեհակրօնի վէպը՝ *Վերադարձի՛ր աշխատանոց*, պրակը՝ 1 եգ. դահեկան, ամբողջ հատորը՝ 25(52):

Յայտարարութեան մէջ կը ներկայացուի վէպին ընդհանուր նկարագիրը.

«[Գ]ործողութիւնը տեղի կ՚ունենայ եգիպտահայ ոստանին մէջ, վստահ ենք թէ գրական հաճոյք մը պիտի պատճառէ ընթերցասէր, մանաւանդ գաղափարական վէպերուն սիրահար հասարակութեան:

«Տիպարներու եւ նկարագիրներու հոգեբանական վերլուծումով եւ վիպական բարդութիւններով առինքնող [...] երկասիրութիւն [...]»(53):

*Սֆինքս* քիչ մը աւելի կը մանրամասնէ.

«Կարդացէք այս վէպը ուր գրական ճաշակով յղացուած նկարագրականներու մօտ պիտի գտնէք ուրիշներու թշուառութիւնը հեգնող հայացած հրեայի մը եւ կեղծ սէրերու մոլուցքով խորթացած մանկամարդ կնոջ մը եղեռնական արարքները: Պիտի զգաք սարսուռը բարոյական ոճիրներու եւ խորշանք մը այդ իրական տիպարներէն: Իսկ անոնց մօտ պիտի գտնէք ուրիշ անձ մը, երիտասարդ մը որ գիտցած է հաշտեցնել գաղափարականը դրականին հետ, տիպար մը վեհանձն նկարագիրի, օժտուած բոլոր յատկութիւններու կատարելութեամբ որ կու գայ փրկել իր իսկ պատճառով սիրային նախանձի եւ ատելութեան ենթարկուած երջանիկ ամոլ մը՝ հայ կնոջ ազնիւ տիպարը եւ ընտանեսէր ամուսինը»(54):

1926 Ապրիլ 12-ին լոյս կը տեսնէ առաջին պրակը(55), Ապրիլ 24՝ երկրորդ(56), Ապրիլ 29՝ երրորդ(57):

Երրորդ պրակի երեւան գալուն համատեղ կը յայտարարուի՝ թէ վէպին նկարազարդումը ստանձնած է եգիպտահայ անուանի նկարիչ Երուանդ Տէմիրճեան.

«*Վերադարձի՛ր աշխատանոց* վէպին Գ. պրակը որուն հրատարակումը յապաղեցաւ տասը օր, հրապարակ ելաւ ուրբաթ օր:

«Սոյն յապաղումը արդիւնք էր թղթակցութեան մը վէպին հեղինակին եւ եգիպտահայ հանրածանօթ նկարիչ Պ. Ե. Տէմիրճեանի միջեւ:

«Տաղանդաւոր նկարիչը, հակառակ իր բազմազբաղ վիճակին, եւ հակառակ այն իրողութեան թէ իր բոլոր ժամերը գրաւուած են Գահիրէի նորակառոյց եկեղեցիին աւագ խորանին պատկերը նկարելու գործով, եւ սակայն, վաղեմի բարեկամութեան մը ազնիւ թելադրանքէն մղուած, յանձն առած է պատրաստել նաեւ վէպին տիպարներուն եւ զանազան բեմադրութիւններուն նկարները:

«Քաջալերուած ամէն կողմէ ցոյց տրուած գնահատական արտայայտումներէն, եւ վստահ թէ սոյն կարգադրութեամբ գոհացուցած պիտի ըլլամ գրասէր հասարակութեան նաեւ գեղարուեստասէր ճաշակը, այժմէն ձեռնարկած եմ նաեւ երկրորդ տպագրութեան՝ միայն 500 օրինակ՝ ընտիր թուղթի վրայ:

«Պատկերազարդ հատորին բաժանորդագինն է կանխիկ եգ. դհ. 35 իսկ անոնք որ նախապէս բաժանորդագրուած են կրնան 10 դհ. աւելի վճարելով ստանալ նաեւ պատկերները:

«Փափաքողները անյապաղ հաճին տեղեկացնել հեղինակին հասցէով՝ H. VEHACRON (Poste restante Alexandrie)»(58):

Յետագային հրատարակուած հատորին մէջ խպառ կը բացակային նկարազարդումները: Կարելի չեղաւ ձեռք ձգել պրակները՝ յատկապէս Գ.-ը, ստուգելու համար նկարազարդումի գոյութիւնը:

Մինչեւ Սեպտեմբերի վերջ լոյս տեսած էին Դ., Ե. եւ Զ. պրակները(59):

Վեհակրօնի Գահիրէ տեղափոխութեան պատճառով Է. եւ Ը. պրակները կը հրատարակուին Դեկտեմբերի սկիզբը(60):

Պրակներու կազմածոն՝ իբրեւ մէկ հատոր, լոյս կը տեսնէ եօթը տարի ետք՝ 1933 Յունիս-Յուլիսին(61): Բնականաբար, գիրքի անուանաթերթին վրայ տպագրութեան թուականը պիտի մնար 1926:

Վէպը կազմուած է երեք գլուխներէ՝ իրենց ենթամասերով.

ա. Զաւարտած աղօթքը (էջ 3-73)
- Խորտակուած լար
- Ձեւակերպական արձանագրութիւնը
- Հայացած հրեան
- Նորիս Անդէհուր
- Առաջին հետապնդում
- Անակնկալ մեկնում

բ. Մահաստաններու տղայ (էջ 74-183)
- Առաջին տպաւորութիւնը
- Դէպի մօտալուտ փոթորիկը
- Տարերային կռիւ
- Մակտա՝ Անդէհուրի յիշողութեան մէջ
- Զմիւռնիա՝ հինէն մինչեւ վերջին եղեռնին նախօրեակը
- Համոզումներու եղբայրացում
- Ժամանում
- Առաջին պարը
- Պատժող ձեռքը

գ. Դրախտին սատանաները (էջ 184-392)
- Դրախտին հեշտանքը
- Թունաւոր սիրտեր
- Հայրն ու որդին
- Մութին ներշնչումով
- Մակտա – Լէնա
- Առաջին կեղծիքը
- Կասկածը
- Հեռախօսը կը գործէ
- Խղճահարում
- Միջադէպը
- Հոգեփոխութիւն
- Յիսուսի Աւետարանը
- Տեսիլքը
- Վերջաբան

Վէպի առաջին («Զաւարտած աղօթքը») եւ երրորդ («Դրախտին սատանաները») գլուխները կը բովանդակեն դէպքերու եւ իրադրութիւններու խիտ ու լարուած զարգացումներ՝ անընդհատ շարժումով եւ յառաջմղումով:

Դէպքերու գծային սլացքը կը դադրի երկրորդ գլուխին մէջ («Մահաստաններու տղայ»), տեղի տալու խորքային մտորումներու: Այստեղ, բացի անհրաժեշտ քանի մը դէպքերէ, հիմնական կորիզը Նորիս Անդէհուրի գաղափարներն են, ուրեմն՝ հեղինակի փիլիսոփայութիւնները:

(Շար. 4)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

46. Հրանդ Վեհակրօն, «Վճարուելիք հաշիւներ», *Արաքս*, 31 Յուլիս 1926, Ա. տարի, թիւ 22 (24):

47. Հ. Եփրեմ Պօղոսեան, «Եգիպտահայ մշա- 3

ԱՐՑԱԽ

## ԱՐՑԱԽՈՒՄ ՆՈՐ ՃԱԿԱՏՆԵՐ ԵՆ ՁԵՒԱՒՈՐՈՒԵԼ. *ԺՈՂՈՎՈՒՐԴ*

*Ժողովուրդ* օրաթերթը գրում է. Արցախում, անվտանգային խնդիրներին զուգահեռ, ներքաղաքական կեանքը եւս լարուած է: *Ժողովուրդ* օրաթերթին Արցախի իր աղբիւրներից տեղեկացաւ, որ այս օրերին Արցախում ձեւաւորուել է երեք ճակատ՝ Արայիկ Յարութիւնեան – Սամուէլ Բաբայեան – Ռուբէն Վարդանեան: Մեր տեղեկութիւններով՝ վերջիններս գրեթէ ամենօրեայ ռեժիմով հանդիպումներ են ունենում տարբեր քաղաքական ուժերի, քաղաքացիների հետ, այլ կերպ ասած՝ փորձում են իրենց դիրքերն ամրացնել ու ամուր յենարան ստեղծել իրենց համար Արցախում:

Թէ որն է անվտանգային նման ծայրայեղ իրավիճակում ներքաղաքական լարումների պատճառը, շատ արցախցիների համար դեռ պարզ չէ: Մեր աղբիւրների փոխանցմամբ՝ այս առումով առաւել ակտիւ է յատկապէս Սամուէլ Բաբայեանը: *Ժողովուրդ* օրաթերթը որոշ ժամանակ առաջ գրել էր, որ վերջինիս մօտ նախընտրական տրամադրութիւն է. շտաբներ է ձեւաւորում, տարբեր ֆորմատներով հանդիպումներ է ունենում քաղաքացիների եւ քաղաքական շրջանակների հետ: Մեզ տեղեկացրին նաեւ, որ Բաբայեանն անգամ քաղաքացիներին փողոց դուրս գալու կոչեր է անում: Նա Արցախում ինչ-որ պաշտօն ստանալու անյագուրդ ցանկութիւն ունի, թէեւ, ինչպէս մեզ վստահեցրին, Արցախում Սամուէլ Բաբայեանի նկրտումներին այնքան էլ լուրջ չեն վերաբերւում. հաւանական չեն համարում, որ Արայիկ Յարութիւնեանը նրան որեւէ պաշտօնի նորից կը նշանակի:

### 1 ՊԱՏՐՈՒԱԿԻ ԵՒ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹԵԱՆ...

գոհերու նկատմամբ յարգանք ու ակնածանք, կատարուածի նկատմամբ յիշողութեան մշտանորոգ թարմացում, հետեւանքներու նկատմամբ վկայակոչումի գրգիռ, հետեւանքներ՝ որոնք իբրեւ իրադարձային երկարատեւ իրականութիւններ կենդանի կը մնան մինչեւ այսօր, հետեւանքներ՝ որոնց մէջ, ով որ կը փափաքի, կրնայ տեսնել նաեւ Նեմէսիսը:

Զ.

### 2 ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՕՆ (ԱԼԱՏԻՆ)...

կութային ընկերակցութիւնները», *Ուսումնական տարեգիրք*, Գ. տարի, 1959-1960, Գահիրէ, Հրատարակութիւն Հելիոպոլսոյ Մխիթարեան Վարժարանի, 1960, էջ 30:

48. Հ. Եփրեմ Պօղոսեան, «Եգիպտահայ մշակութային ընկերակցութիւնները», *Ուսումնական տարեգիրք 1962*, Գահիրէ, Հրատարակութիւն Հելիոպոլսոյ Մխիթարեան Վարժարանի, 1962, էջ 133:

49. «Հրանդ Վեհակրօն (Հ. Ալատին)», *Բազմավէպ*, Փետրուար-Մարտ 1934, թիւ 2-3, էջ 103:

50. *Վեստեան կոյս. պատմական վէպ եկեղեցւոյ առաջին դարու (շարք Փաբիոլայի)*, Վենետիկ Ս. Ղազար, 1898:

51. «Հայ կեանք», *Լուսաբեր-Արեւ*, երկօրեայ լրագիր, Գահիրէ, 14 Մայիս 1910, Զ. տարի, թիւ 826:

52. *Սփինքս*, շաբաթաթերթ, Աղեքսանդրիա, 22 Փետրուար 1926, Բ. տարի, թիւ 1 (51):

53. Անդ:

54. *Սփինքս*, 8 Մարտ 1926, Բ. տարի, թիւ 3 (53):

55. *Սփինքս*, 12 Ապրիլ 1926, Բ. տարի, թիւ 7 (57):

56. *Արաքս*, 24 Ապրիլ 1926, Ա. տարի, թիւ 14 (16):

57. «Կարեւոր», *Սփինքս*, 31 Մայիս 1926, Բ. տարի, թիւ 13 (63):

58. Անդ:

59. «Նոր հրատարակութիւններ», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 28 Սեպտեմբեր 1926, ԺԲ. տարի, թիւ 2314:

60. *Արաքս*, 11 Դեկտեմբեր 1926, Բ. տարի, թիւ 1 (34):

61. «Լոյս տեսաւ», *Արաքս*, 8 Յուլիս 1933, Ը. տարի, թիւ 25 (351): «Լոյս տեսաւ», *Արեւ*, 15 Յուլիս 1933, ԺԷ. տարի, թիւ 4409: *Արաքս*, 22 Յուլիս 1933, Ը. տարի, թիւ 27 (353):

ԽՈՀԵՐ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ՝ ՃԵՂՔՈՒՄՆԵՐ, ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

### ՔՆՆԱԽՕՍԱԿԱՆ

Գրականութենէն յետոյ կարելի է նշել ձեռնարկներու, թատերական բեմադրութիւններու եւ երաժշտական կատարումներու քննախօսականները: Կուսակցական մամուլի քննախօսականը բնաւ չէ եղած միանշանակ:

Ընդհանրապէս եղած են երկու տեսակ քննախօսներ՝ կախուած իրենց սեփական մտաւոր մակարդակէն եւ կարողութենէն: Կուսակցութիւնները պաշտօնի կանչած են երկուքն ալ: Բայց ժամանակն ալ իր դերը խաղացած է մէկկէն միւսին անցնելու համար:

Առաջին տեսակը մտաւորականն է, երկրորդը՝ կեղծ մտաւորականը:

Այս տարբերութիւնը ցոյց տալու համար նախ փորձենք բացատրել քննախօսականը: Ի պաշտպանութիւն քննախօսականին, ընդունուած է ըսել՝ որ ճիշդ քննախօսական մը անաչառ վերարտադրութիւնն է ձեռնարկի մը (նուագահանդէս, ցուցահանդէս, թատրոն, եւ այլն): Խնդիր կայ: Որեւէ բնագաւառի մէջ ինչ որ անցած է՝ կարելի չէ վերարտադրել, նոյնիսկ գործածելով նոյն բնագրային տարբերակի գործիքները, այսինքն, եթէ երաժշտութիւն է՝ նոյն երաժշտութիւնը կրկնել քանի մը ժամ ետք, եթէ նկարչական պաստառ է՝ ճիշդ նոյնը նկարել քանի մը ժամ ետք (խօսքը գեղարուեստական կրկնութեան մասին է եւ ոչ թէ այն վարպետ մեքենավարներուն՝ որոնք խարդախութեան համար կրնան կրկնօրինակել տա Վինչի մը կամ Վան Կոկ մը): Ալ ուր մնաց երաժշտահանդէսը կամ նկարչական ցուցահանդէսը վերարտադրել ուրիշ գործիքներով, երաժշտական հնչիւնները կամ նկարչական գոյները նոյնականացնել գրուած բնագիրին եւ բառերուն:

Քննախօսութիւնը կարելի է անուանել թարգմանութիւն: Քիչ մը աւելի կը մօտենայ խնդիրին բայց տակաւին չի տրամադրեր հարցի բանալին: Ճիշդ է այն առումով՝ որ թարգմանութիւն մը թարգմանողի սերտ առնչութիւնն է անցեալ բնագիրի մը հետ, ուր թարգմանիչը կ՚ապրի, կ՚իւրացնէ իւրաքանչիւր բառ, կը մտնէ բնագիրին ներսը եւ կը ստեղծէ նոր բնագիր՝ որ միաժամանակ հեղինակինն է եւ թարգմանիչինը, մինչ թարգմանութիւնը, թարգմանուած լեզուի ընթերցողներուն համար, կ՚ապրի իր ինքնուրոյն կեանքը: Բայց այստեղ, օգտագործուած գործիքը նոյնն է՝ լեզուն:

Քիչ մը այլ է քննախօսականը: Մինչ գործիքային առումով չկայ նոյնականացում, գաղափարական նոյնականացումը պիտի գոյանայ ենթակայականութենէն (subjectivity)՝ բովանդակային իմաստէն: Բայց եւ այնպէս, կարելի չէ նոյնականացնել երկու ենթակայականութիւններ: Այս խնդիրը կայ նաեւ թարգմանական արուեստին մէջ, հանած լեզուական գործիքը:

Աւելի պարզ խօսած ըլլալու համար, մէջբերեմ *Նիւ Եորք Թայմզի* երկարամեայ երաժշտական քննադատ Հարոլտ Շոնպըրկի կարծիքը *Facing the Music* գիրքին մէջ. «Լաւագոյն պարագային, քննադատը չի կրնար աւելի ընել՝ քան յառաջ նետել գաղափարներ եւ ընթերցողներուն մղել մտածելու: Իւրաքանչիւր քննադատ ունի իր առաւելութիւններն ու թերութիւնները, եւ իւրաքանչիւրը կը հետեւի իրեն յատուկ տեսլականին»:

Բաւական կը մօտենանք հարցին: Քննախօսականը ունի իր ինքնուրոյն կեանքը: Անիկա քննախօսողի լեզուն է, գաղափարները, գրելաոճը, մտածելակերպը: Ինքնուրոյն բնագիր մը՝ որ հող կը ստեղծէ յետագայ մտածողութեան, մինչ ինքը արդիւնքն է նախապէս կատարուածի մը հող պատրաստած մտածողութեան: Ոչ մէկ խօսք վերարտադրութեան մասին, ոչ մէկ խօսք երաժշտահանդէսի կամ նկարահանդէսի հարազատ արձագանգը կամ անսխալ թարգմանութիւնը ըլլալու մասին: Այլ՝ ինքնուրոյն կեանք, տիալեքթիքական յարաբերութեամբ նախորդ ձեռնարկին եւ յաջորդող ընթերցող-ընկալումին հետ: Ձեռնարկի տիալեքթիքական շարունակութիւն:

Շոնպըրկ պիտի չնշէր կէտ մը՝ *որ Նիւ Եորք Թայմզի* քննադատին համար ինքն ըստ ինքեան բնական երեւոյթ մըն էր, ոչ-խնդիր մը: Այն՝ որ քննախօսը, հանդիսութեան տուեալ տեւողութեան, պիտի մտնէ կատարուածի մէջ, ապրի անոր իւրաքանչիւր պահը: Այլապէս ի՞նչ պէտք է ընէր: Քանի որ նիւթս հայ կուսակցական մամուլի մասին է, այս կէտը խնդիր կը ներկայացնէ: Վերը նշեցի մտաւորական քննախօսը եւ կեղծ մտաւորական քննախօսը: Մտաւորականը այն է՝ որ ապրած է ձեռնարկին հետ, հոգեպէս ու մտաւորապէս մտած անկէ ներս, յուշագրած զայն իր մտածողութեան մէջ՝ ճիգ գործադրելով յիշել կատարուածը, եւ ապա թուղթին յանձնած սեփական գաղափարները: Կեղծ մտաւորականը այն է՝ որ ձեռնարկի արտադրած որեւէ միտք կարեւորութիւն չունի իր համար, ան մարմնապէս գտնուած է ձեռնարկի վայրը ներկայութիւնը արձանագրելու համար, ապա թուղթին յանձնած բոլոր հնարաւոր կարծրատիպ ածականները՝ զորս կարելի դարձուցած է կուսակցական մամուլ մը, արտադրելով քննախօսականներ՝ որոնք կրնան գրուիլ առանց նոյնիսկ ձեռնարկին ներկայ գտնուած ըլլալու: «Նուագեց զգացումով», «արտասանեց յստակ առոգանութեամբ», «խաղաց հասկացողութեամբ», եւ քանի մը այլ անփոփոխ նկարագրութիւններ բաւարար եղան ստեղծելու անհամար քննախօսականներ, որոնց գլխաւոր մասը կապուած էր կուսակցական բնոյթով ձեռնարկներու եւ կուսակցականացուած առիթներու: Եւ ցաւօք, անոնք ստիճանաբար քօղարկեցին առաջինները, դառնալով մտածողութեան հիմք եւ գրաւելով անոնց տեղը:

Փորձենք շատ ընդհանուր գիծերով դիտարկել եգիպտահայ մամուլի այս երկու տեսակ քննախօսականները:

Մտաւորական քննախօսականի գոյութիւնը կապուած է անձերու՝ քննախօսներու գոյութեան հետ:

Մինչեւ իր մեկնումը Ամերիկա 1948-ին, Գուրգէն Մխիթարեան (Գ. Մ.) ստորագրած է *Յուսաբեր*ի արուեստի եւ մշակոյթի քննախօսականներուն կարեւոր մաս մը: Բանաստեղծ, արձակագիր, հրապարակագիր՝ ունէր հետաքրքրութիւններու լայն շրջանակ մը:

Միայն մէկ օրինակ:

1928 Փետրուար 8, Գահիրէի Թատրոն Բրէնթանիա, Վաղարշակ Սրուանձտեանցի երգահանդէսը: Գ. Մխիթարեան.

«Իր առաջին համերգը, պատրաստուած կարճ ժամանակի մը մէջ, հազիւ երկու ամիս, կը զօրացնէ մեր հաւատքը, ապագայ աւելի մեծ յաջողութիւններու մասին:

«Հակառակ առաջին քայլերու անխուսափելի թերութիւններուն, ընդհանուր կերպով մը, համերգը թողուց հաճելի տպաւորութիւն:

«Յայտագիրը, բաղկացած երեք մասերէ, գոնէ իր Ա. եւ Գ. մասերով, ջերմ մթնոլորտ առաջ բերաւ»(3):

Քանի որ կուսակցականացուած գաղութի մը մէջ կատարուած է համերգը, կարեւոր է ունենալ քանի մը տեղեկութիւններ: 1920-ականները Դաշնակցական շրջանն էր Աղեքսանդրիոյ մէջ եւ Սրուանձտեանց հրաւիրուած էր Պօղոսեան Ազգային Վարժարանի երաժշտութեան դասատուի պաշտօնին Դաշնակցութեան կողմէ (Սրուանձտեանց կուսակցական չէ եղած է): *Յուսաբեր* չէր կրնար իր ներկայացուցիչին դէմ բացայայտ բացասականութեամբ հանդէս գալ: Պարզապէս անկարելի էր: Եւ ահաւասիկ Մխիթարեան կը քննախօսէ՝ նշելով որ համերգին տպաւորութիւնը «հաճելի» էր (բայց ոչ «բացառիկ»), մթնոլորտը «ջերմ» (բայց ոչ «խանդավառ»), եւ մաղթելով յետագայ «աւելի» յաջողութիւն: Յստակ է՝ որ համերգը անցած է անյաջող:

Այսօրուայ դիտարկումով, այսպիսի քննախօսականը միայն յարգանքի զգացում կրնայ առթել թէ՛ Մխիթարեանի, թէ՛ Սրուանձտեանցի եւ թէ՛ *Յուսաբեր*ի նկատմամբ:

Մխիթարեանի միւս կողմը՝ *Արեւ*ի մէջ, իբրեւ յատկապէս թատերական քննախօս գործած է Օննիկ Մահտեսեան (Օ. Մ.), մինչեւ իր վերջնական մեկնումը Կիպրոս 1932-ին: Մահտեսեանի մեկնաբանութիւնները կու տան պատկերաւոր գունաւորումներ:

Քանի մը օրինակներ:

1930 Դեկտեմբեր 21, Ռամսէս Թատրոն, *Ամուսնութեան գիշերը*, Քոմէտի Թատերախումբի բեմադրութեամբ: Մահտեսեան. «Արփիար ինքզինք գերազանցեց մերթ յաջողութեամբ եւ մերթ իր չափազանցութիւններով: Օր. Յովհաննէսեան ունեցաւ յաջող դերակատարութիւն մը որ զերծ էր իր սովորական խուսափուկ եւ անհանդարտ յատկանիշներէն»(4): Կը 4

ՋԱՀԱԿԻՐ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ՝ ՃԵՂՔՈՒՄՆԵՐ, ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

3

Հասկնանք, որ ընդհանրապէս Արփիար Վարդեան կը սիրէ դերասանական չափազանցութիւնները, իսկ Ռոզ Յովհաննէսեան ունի «խուսափուկ» եւ «անհանդարտ» յատկանիշներ: Երկուքին այս յատկանիշներն ալ ներկայացուած են անուղղակիօրէն:

1931 Մարտ 14, Հայ Գեղարուեստասիրաց Միութիւն, *Սալոմէ*: Մահտեսեան. «Պ. Գէորգ Զարդարեան յաջողապէս կատարեց Հէրովդէսի դերը ու եթէ կարենար քիչ մը աւելի զուսպ ըլլալ իր արտայայտութեանց մէջ՝ շատ աւելի պիտի սիրէինք իր դերակատարութիւնը»(5): Զարդարեան խաղացեր է անզուսպ արտայայտութեամբ, որ բացասական գնահատանք մըն է: Բայց փոխանակ բացասականութիւնը ներկայացնելու ուղղակիօրէն, Մահտեսեան արտայայտուած է բարի ցանկութեան եղանակով:

Վերադառնանք *Յուսաբեր*ին, եւ այնտեղ կը հանդիպինք եգիպտահայ մտաւորական բարձրութիւններէն մէկուն՝ Լիպարիտ Նազարեանցի քննախօսականներուն, նախընտրաբար նուագահանդէսներու:

Ունէր ազատութիւնը եւ կարողութիւնը ընտրելու քննախօսող ձեռնարկը եւ այս առումով քիչ մը կը տարբերէր Մխիթարեանէ եւ Մահտեսեանէ, որոնք կը փորձէին ընդգրկել թատրոններու որքան կարելի է լայն շրջանակ:

Նազարեանց կը գրէր այն երեւոյթին մասին՝ որ ուղղակիօրէն կը գրգռէր իր միտքն ու երեւակայութիւնը: Կը քննախօսէր՝ երբ ըսելիք ունէր:

Որոշ քննախօսականներ կը սկսէր արուեստի մասին երկար նախաբաններով: Օրինակ, դաշնակահար Էթթորէ Փուչչիզիի աշակերտներուն նուագահանդէսը՝ որուն մասնակցած են հայ աշակերտներ, Նազարեանց կը գնահատէ՝ սկսելով պարզել իր սեփական համոզումները մանկավարժութեան մասին(6):

Նազարեանց կը սիրէր գործի մը գաղափարական-գեղագիտական հենքը միացնել կատարումի յատկանիշներուն հետ: Եւ ահաւասիկ իր սիրած դաշնակահար Պարոյր Արմէնեանը, որուն մասին բազմիցս քննախօսած է. «Կ'ըսուի, թէ սովորաբար գաղափարն ու ոճը իրար կը պատճառաբանեն: Այդպէս չէ, սակայն, Պեթհովընի քով: Հոտ գաղափարը – այս պարագային՝ ընաբանը (thème) – խտացուած արտայայտութիւնն է այն ամէնի, ինչ որ կ'ուզէ ըսել հեղինակը. ուրիշ խօսքով՝ սկիզբն ու էութիւնը այն ամէնի, ինչ որ ի յայտ կուգայ մշակման ու ոճի միջոցով, որոնք այդպէսով ենթակայ են գաղափարին: Պարոյր լաւապէս ըմբռնած էր հանճարեղ երգահանի այդ յատկութիւնը. եւ այդ երեւան կուգար ոչ միայն իր նուագէն, ուր ան կարծես բնազդաբար կը ցայտեցնէր ընաբանները, այլեւ իր սեփական *քատանս*էն, որ յաջող համադրութիւնն էր Պեթհովընի գաղափարական յղացումներուն»(7): Ասիկա քաղուածք մըն է Ամերիկեան Համալսարանի 1938 Յունիսի նուագահանդէսի քննախօսականէն:

Երբ կը գնահատէր դրականապէս, գնահատականը ամբողջական էր, այլեւ լիովին համոզիչ, քանի որ զայն կատարած էր ազատ ընտրութեան սկզբունքով՝ առանց ոչ մէկ պարտականութեան ենթակային կամ վերադիրի մը նկատմամբ: Թենոր Ժագ Արթինեանի մենահամերգը, 1937 Մարտ 6, Գահիրէի Ամերիկեան Համալսարան. «Փոքր, բայց շատ հաճելի «քնարերգական թենոր» մըն է երգիչին ձայնը, որ թերեւս հետագայ մշակումով քիչ մըն ալ ոյժ եւ լեցունութիւն ստանայ: Ճկուն եւ դիւրածել՝ ան, այդ ձայնը, հլու գործիք մըն է իր տիրոջ ձեռքը, որ գիտէ գործածել զայն ճաշակով, առանց ճիգի ու մանաւանդ առանց իյնալու չափազանցութիւններու այնքա՜ն ընդհանրացած մեղքին մէջ»(8):

(Շար. 2)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

3. Գ. Մ., «Վ. Սրուանձտեանցի համերգը», *Յուսաբեր*, 10 Փետրուար 1928, ԺԳ. տարի, թիւ 266, էջ 2:

4. Օ. Մ., «*Ամուսնութեան գիշերը*», *Արեւ*, 24 Դեկտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 3621, էջ 2:

5. Օ. Մ., «Սալօմէ», *Արեւ*, 17 Մարտ 1931, ԺԶ. տարի, թիւ 3690, էջ 2:

6. Լ. Ն., «Պրոֆ. Է. Պուչչիզիի աշակերտներու նուագահանդէսը», *Յուսաբեր*, 16 Յունիս 1934, Ի. տարի, թիւ 63, էջ 2:

7. Լ. Ն., «Հայ դաշնակահար քառեակը», *Յուսաբեր*, 2 Յուլիս 1938, ԻԴ. տարի, թիւ 77:

8. Լ., «Յ. Արթինեանի երգահանդէսը», *Յուսաբեր*, 11 Մարտ 1937, ԻԲ. տարի, թիւ 288:

## ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ ԱՄՆ-Ի ՄԷՋ

1

քականութեան յետնախորքին վրայ, Ռուսաստանի ամենադաշնակից Հայաստանի հիւրընկալումը ԱՄՆ-ի մէջ հեռու ըլլայ քաղաքական ենթաբնագիրէ:

Բանակցութիւններու ընթացքին կողմերը հանդէս կու գան պաշտօնական սովորապաշտ յայտարարութիւններով, իբր քննարկած ըլլան տարածաշրջանի ապահովութեան իրավիճակը, Հարաւային Կովկասի տեւական խաղաղութիւնը, երկու երկիրներու յարաբերութիւններու կարգաւորումի գործընթացը, Լաչինի միջանցքը:

Բնականաբար, խաղաղութեան համաձայնագիր չէր կրնար ստորագրուիլ, եւ բանակցութիւններու աւարտին Հայաստանն ու Ազրպէյճանը կը բաւարարուին համատեղ մամուլի հաղորդագրութեամբ. «Նախարարները եւ նրանց թիմերը «Խաղաղութեան եւ միջպետական յարաբերութիւնների հաստատման մասին» երկկողմ համաձայնագրի նախագծի որոշ յօդուածների շուրջ ունեցել են փոխըմբռնման առաջընթաց՝ միեւնոյն ժամանակ արձանագրելով, որ մի շարք առանցքային հարցերի շուրջ դիրքորոշումները մնում են տարամէտ»:

Իսկ Պլինքէն իր կողմէ կը յայտարարէ՝ թէ «երկկողմ եւ եռակողմ քննարկումներու աշխոյժ եւ կառուցողական շարքէն ետք, կողմերը զգալի յառաջընթաց գրանցեցին բարդ խնդիրներու լուծումի հարցով»:

Ազրպէյճանի յայտնի նկրտումը խաղաղութեան չհասնելու՝ արդէն բազմիցս նշած է *Ջահակիր*: Ոչ-խաղաղութեան կամ պատերազմի իրավիճակը նպաստաւոր է շատերու՝ ներառեալ հզօր պետութիւններուն:

Բայց աւելի նեղ իմաստով, զուտ ներկայ քառօրեայ բանակցութիւններու սահմաններուն մէջ, ինչի՞ վրայ կառուցուեցաւ ձախողութիւնը:

Բանակցութիւնները դեռ չաւարտած, Մայիս 3-ին, Շուշիի համաժողովին (*Մեծ Եւրասիոյ աշխարհաքաղաքականութեան ձեւաւորումը. անցեալէն ներկայ եւ ապագայ*), Ալիեւ կը յայտարարէ՝ թէ խաղաղութեան պայմանագիրին մէջ Լեռնային Ղարաբաղի հարցը ներառնելու որեւէ փորձ հակարդիւնաւէտ է, միաժամանակ սպառնալով՝ որ եթէ Հայաստանը չցուցաբերէ կառուցողական մօտեցում, Պաքուի եւ Երեւանի միջեւ խաղաղութիւն եւ փոխգործակցութիւն չի կրնար կայանալ:

Ասիկա մէջտեղ կը հանէ Արլինկթոնի բանակցութիւններուն գլխաւոր անհամաձայնութիւնը, որուն մասին Մայիս 5-ին Փաշինեան պիտի նշէր Փրակի մէջ *Ազատութիւն ռադիոկայանի* հետ ունեցած հարցազրոյցին: Կ'ըսէ՝ որ Հայաստան կը գործէ այնպէս՝ որ Լեռնային Ղարաբաղի հայերուն ապահովութիւնը եւ իրաւունքները քննարկուին Պաքու-Ստեփանակերտ երկխօսութեան հարթակով՝ որոշակի միջազգային ներգրաւուածութեամբ, «Հակառակ դէպքում այդ թեման եւ օրակարգը Ադրբէջանի կողմից կարող է ուղղակի մոռացութեան մատնուել»:

Յստակ է, որ Ալիեւի համար Ղարաբաղեան հարց այլեւս գոյութիւն չունի՝ Ղարաբաղը Ազրպէյճան է, հետեւաբար ան կը մերժէ որեւէ բանակցութիւն Ղարաբաղի առնչութեամբ, ըլլայ Երեւանի հետ թէ Ստեփանակերտի: Պատերազմական դրութիւնը երկարաձգելու միջոց մը:

Կան նաեւ այլ անհամաձայնութիւններ, կը բացայայտէ վարչապետը հարցազրոյցին մէջ: Անոնցմէ մէկն է տարածքային ամբողջականութեան հարցը. «Զնայած Պրահայում եւ Սոչիում եղել է արձանագրումը, որ Հայաստանը ըբէջանը ճանաչում են միմեանց տարածքային ամբողջականութիւնը, բայց մենք խաղաղութեան պայմանագրի նախագծի մէջ դեռեւս չենք կարողանում համաձայնութեան հասնել այն ձեւակերպումների շուրջ, որոնք մեզ վստահութիւն կը տան, որ Ադրբէջանը ճանաչում է Հայաստանի 29 հազար 800 քառակուսի կմ տարածքային ամբողջականութիւնը»:

Ազրպէյճան երբեք նպատակ չունի ետ քաշուիլ 2021-2022 թուականներուն գրաւած Հայաստանի ինքնավար տարածքներէն: Ահաւասիկ ուրիշ անկարելիութիւն մը խաղաղութեան պայմանագիրին համար, կամ միջոց մը շարունակելու պատերազմական դրութիւնը:

Փաշինեան կը շեշտէ նաեւ այլ անհամաձայնութիւններ՝ սահմանագծում, Ղարաբաղի հայերու իրաւունքներ, եւ այլն. «Յաջորդ կարեւորագոյն հարցը՝ ցանկացած պայմանագիր, նոյնիսկ ամենամիանշանակ գրուածները ունենում են տարընթերցումներ. ինչպէ՞ս պէտք է այդ տարընթերցումները լուծուեն: Դելիմիտացիայի պրոցէսի հետ կապուած խնդիր կայ, շատ կարեւոր խնդիր է ի վերջոյ՝ խաղաղութեան պայմանագրի ստորագրումից յետոյ խաղաղութեան երաշխաւորման հարցը: Նկատի են առնւում ե՛ւ միջազգային մեխանիզմները, ե՛ւ տեղայինը, մասնաւորապէս, զօրքերի եւ ուժերի դիրքաւորման հետ կապուած հարցերը՝ ով որտեղ, ինչպէս պէտք է դիրքաւորուի, արդեօք մենք չպէտք է ունենանք դելիմիտարիզացուած՝ ապառազմականացուած գօտի: Լեռնային Ղարաբաղի հայերի իրաւունքների հասցէագրման հարցում կան տարընթերցումներ, եւ դրանք պահպանւում են: Այդ հարցերի շուրջ կարող է լինել որոշակի շարժ, բայց եթէ տարբերութիւնը 1 կմ էր, դարձաւ՝ 999 մետր, այո, որոշակի մօտեցանք, բայց ճեղքը շարունակում է մնալ շատ մեծ»:

Հայաստանէն պահանջելով անհնարը, Ազրպէյճան պիտի ձգտի անընդհատ կենդանի պահել պատերազմական դրութիւնը, միշտ իր արտաքին պատկերը ցուցադրելով իբրեւ խաղաղութեան տենչող:

Խաղաղութեան պայմանագիր անուանումն ալ թէական է: Ազրպէյճանի ստեղծածն է՝ եւ ոչ Հայաստանի: Մինչ Հայաստան եւ Ազրպէյճան կը բանակցէին սահմանագծումի եւ սահմանազատումի հարցերուն մասին, 2022 Ապրիլին Պրիւքսէլի մէջ Ազրպէյճան անսպասելիօրէն առաջ կը նետէր վեց կէտերով բնագիր մը՝ որ շուտով պիտի ճանչցուէր իբրեւ խաղաղութեան պայմանագիր: Ներքնապէս բռնապետ եւ արտաքնապէս զաւթող-առաւելապաշտ իշխանութեան մը համար կարեւոր է «խաղաղութիւն» բառի յառաջմղումը, այլեւ այդ անունին տակ ստեղծել բնագիր մը՝ որուն ընդմէջէն կարելի դարձնել Հայաստանի համար անկարելին: Հարցը սահմանագծումի իրական գործընթացէն բարձրացնելով խաղաղութեան պատրանքային պատումին, թիկունք ունենալով իր կողմէ պարտադրուած բնագրային վերջնագրութիւնը, Ազրպէյճանի բուն նպատակն է հասնիլ ոչ-խաղաղութեան, կենդանի պահել պատերազմական դրութիւնը, որ նպաստաւոր է նաեւ բազմաթիւ այլ խաղացողներու:

Ա.

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1940 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ՄԱՅԻՍ 2023 — ՀԱՏԸ ՋԵՈՒԲԷ 75 Ե. Դհկ. — عدد رقم ١٩٤٠ الخميس ٢٥ مايو ٢٠٢٣


# ՇՐՋԱՓԱԿՈՒՄԻ ԲԵՒԵՌՆԵՐ, ԱԶԸՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ՂԱՐԱԲԱՂ ԵՒ ՄԷԿ ՏՈՒԺՈՂ

### ՔԱՂԱՔԱԿԱՆ ԲԵՒԵՌՆԵՐ ԱՐՑԱԽԻ ՄԷՋ

Խորհրդային Միութեան փլուզումէն ետք Հայաստանն ու Արցախը չեն եղած համաձոյլ միաւորներ, անոնց յարաբերութիւններու մէկ կարեւոր մասը կարգաւորած են վերնախաւային-իշխանական-օլիկարքական շահերը (*Ջահակիր*, թիւ 1917):

Հայաստանի Թաւշեայ Յեղափոխութենէն ետք` հակայեղափոխականներու մաս մը, սփիւռքեան աջակցութեամբ, մտաւ ու գործեց Արցախի մէջ, դարձեալ շահերու հիման վրայ: Արցախի 120 հազար բնակչութիւնը դարձաւ այդ խաղերուն տուժողները կեանքի որակի եւ կենսամակարդակի առումով, չհաշուելով Ազըրպէյճանի քաղաքական-ռազմական ճնշումներուն ազդեցութիւնը, մինչ վերնախաւը կը շարունակէր կուտակել իր հարստութիւնը:

Նոյեմբեր 4-ին, Արցախի նախագահ Արայիկ Յարութիւնեան պետական նախարար կը նշանակէ Ռուբէն Վարդանեան, շատ հաւանաբար` ճնշումի տակ: Ռուսաստանի մէջ աճած ու հարստացած օլիկարք մը` փաստագրուած փտածութեան (corruption) կրող (*Ջահակիր*, թիւ 1930), առաջին օրէն կը սկսի հայրենասիրական հռետորաբանութիւնը, այնտեղ տեղաւորելով իր կարգախօսները: Առաջին օրէն կը բռնէ բացայայտ հակափաշինեանական դիրքաւորում` հակադրութեան միջոցով փորձելով ամրացնել ինքզինքը իբրեւ Արցախի հայրենասէր օլիկարք, մինչեւ անգամ Հայաստանի վարչապետին որակելով «արժէքների ոստնահարող»: Արժէքներ` որոնց ինք կը տիրապետէ փոփուլիզմի եւ հայրենասիրական բարձրաձայնութեան միջոցով: Փետրուար 23-ին, Յարութիւնեան զինքը կ՚ազատէ աշխատանքէ:

Մինչ այդ, Փետրուարի առաջին կէսին, շրջափակումի խստագոյն պայմաններուն տակ, Յարութիւնեան եւ Վարդանեան անկախաբար կը մեկնին Մոսկուա: Ոչ ոք կ՚իմանայ ինչպէս ճեղքած են շրջափակումը: Վերջապէս շրջափակումը իրենց համար չէ: *Epress.am* (9 Փետրուար) պատկերաւոր կերպով կը բնութագրէ. «Փողի մենամարտը գլխաւոր արցախցիներին հասցրեց Մոսկուա»: Բնականաբար ոչ մէկ պաշտօնական յայտարարութիւն պիտի կատարուէր այս ուղեւորութիւններուն մասին, բայց յստակ է որ անոնք մաս կը կազմէին իշխանական-օլիկարքական պայքարի մը` որուն մէջ երկուքը փորձած են ստանալ Մոսկուայի աջակցութիւնը: Փետրուար 23-ին Վարդանեան արդէն պետական նախարար չէ:

Իր պաշտօնանկութենէն ետք, Վարդանեան կը յաջողի շուրջը համախմբել Արցախի խորհրդարանական ընդդիմութիւնը` Արցախի Ժողովրդավարական Կուսակցութիւն (ԱԺԿ), ՀՅԴ եւ Արդարութիւն Կուսակցութիւն, ինչպէս նաեւ Բակօ Սահակեան եւ համախոհները, ստեղծելով ուժեղ բեւեռ մը:

Երկրորդ բեւեռ մը կը յաջողի ստեղծել Արցախի բանակի նախկին հրամանատար` Միասնական Հայրենիք Կուսակցութեան առաջնորդ Սամուէլ Բաբայեան:

Մինչ բաւական տկարացած կը շարունակէն գործել նախագահ Արայիկ Յարութիւնեան եւ իր կուսակցութիւնը` Ազատ Հայրենիք:

Մայիս 9` «երիտասարդական» հանրահաւաք Վարդանեանի կողմնակիցներուն կողմէ, որուն աւարտին Վարդանեան խիստ խօսքերով կը քննադատէ Յարութիւնեանի իշխանութիւնը:

Մայիս 15` Բաբայեանի հանրահաւաք, ուր Յարութիւնեանէն կը պահանջուի Բաբայեանը նշանակել պետական նախարար` լայն իրաւասութիւններով, փաստօրէն` աւելի ուժեղ քան նախագահը:

Եւ խօսքային առեւտուր Վարդանեանի ու Բաբայեանի միջեւ: Բաբայեան մարտահրաւէր կը նետէ Վարդանեանին ունենալ հեռատեսիլի բանավէճ, Վարդանեան կը մերժէ, եւ այլն:

Խաղի մէջ կը մտնեն նաեւ ուրիշ տարրեր` ալ աւելի թէժացնելով մթնոլորտը, փոխանակ հանդարտեցնելու: Օրինակ` Արցախի Ազգային Ժողովի նախագահ Արթուր Թովմասեան, որ Արայիկ Յարութիւնեանէն կը պահանջէ հրաժարիլ, կամ երթալ նոր ընտրութիւններու, կամ կայացնել վստահութեան հանրաքուէ:

Եւ այս բոլորը, Ազըրպէյճանի կողմէ Լեռնային Ղարաբաղի ամբողջական շրջափակումի պայմաններուն տակ: Որուն հոգն է: Յարութիւնեան-Վարդանեան-Բաբայեան եւ անոնց բարձր աջակիցները տուժա՞ծ են արդեօք շրջափակումէն: Միակ տուժողը Արցախի բնակիչն է:

Այս պայմաններուն տակ, Հայաստան կը բանակցի Լեռնային Ղարաբաղի համար:

### ՂԱՐԱԲԱՂԸ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՄԷՋ

Նկատի առնելով տարածաշրջանային եւ միջազգային հանգամանքները, Յունուարին կը գրէի Ղարաբաղի երկու կարելիութիւններու մասին, երկուքը` ոչ ի նպաստ Հայաստանին: Կարելիութիւններէն մէկն էր Ղարաբաղի գոյութիւնը Ազըրպէյճանի մէջ (*Ջահակիր*, թիւ 1932): 30 տարի է հարցը դէպի այնտեղ կ՚երթար:

Քիչ մը պատմութիւն:

Չկայ աշխարհի երկիր մը` որ *պաշտօնապէս* եւ *գործնականապէս* ըսած ըլլայ` որ կը ճանչնայ կամ պատրաստ է ճանչնալ Լեռնային Ղարաբաղը իբրեւ անկախ հանրապետութիւն, կամ իբրեւ ինքնավար հանրապետութիւն Հայաստանէն ներս: ՉԿԱՅ:

ՄԱԿ-ի Ապահովութեան Խորհուրդի 1993 Նոյեմբեր 12 թուակիր թիւ 884 բանաձեւը կ՚արձանագրէ Լեռնային Ղարաբաղը իբրեւ Ազըրպէյճանի Հանրապետութեան մարզ:

1996-ին, Լիզպոնի ԵԱՀԿ յայտնի գագաթնաժողովին, 52 երկիրներէն 51-ը կ՚ընդունին յայտարարութիւն` որ Ղարաբաղը մաս կը կազմէ Ազըրպէյճանին ինքնավարութեան սկզբունքով: Միակ երկիրը որ չընդունեց... Հայաստանն էր:

ՄԱԿ-ի Գլխաւոր Խորհուրդի 2008 Մարտ 14 թուակիր թիւ 62/243 բանաձեւ. «[Գլխաւոր Խորհուրդը] կ՚ընդունի անհրաժեշտութիւնը ապահովելու կեանքի բնական, ապահով եւ հաւասար պայմաններ Ազըրպէյճանի Հանրապետութեան Լեռնային Ղարաբաղ մարզի հայ եւ ազըրպէյճանցի համայնքներուն, որ թոյլ կու տայ Ազըրպէյճանի Հանրապետութեան

↳ 4

ԹՈՒՐՔԻԱ

## ՀԱՅԵՐՆ ԱՒԵԼԻ ԱՆՁԱՅՆ ԵՆ ԼԻՆԵԼՈՒ ԱՅՍ ԺԱՄԱՆԱԿԱՀԱՏՈՒԱԾՈՒՄ. ԿԱՐՕ ՓԱՅԼԱՆԸ ՀԻԱՍԹԱՓՈՒԱԾ Է ԹՈՒՐՔԻԱՅԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԻՑ

Թուրքիայի նախագահ Ռեջէփ Թայիփ Էրդողանը, ով դաշինք է կազմել ազգայնականների ու ծայրայեղականների հետ, կարողացաւ յաղթել Մայիսի 14-ի ընտրութիւններում եւ կ՚ունենայ խորհրդարանական մեծամասնութիւն: Սա նշանակում է, որ Թուրքիան առաջիկայում աւելի ազգայնական կը դառնայ, իսկ ազգայնական Թուրքիան աւելի մեծ դժուարութեամբ է յարաբերութիւնները կարգաւորելու Հայաստանի հետ: *Արմենպրէսի* թղթակցի հետ զրոյցում նման կարծիք յայտնեց Թուրքիայի 27-րդ գումարման խորհրդարանի հայ պատգամաւոր Կարօ Փայլանը:

«Պէտք է ջանք չխնայել` համոզելու Թուրքիային խաղաղութիւն հաստատել Հայաստանի հետ», - նշեց նա:

Փայլանի խօսքով` կարեւոր է, որ Թուրքիայում ժողովրդավարութիւնը զարգանայ, քանի որ «միայն ժողովրդավար երկիրը կարող է լուծել իր խնդիրները հարեւանների հետ»:

Պատգամաւորն արձանագրում է, որ վերջին ընտրութիւնների արդիւնքները չեն արդարացրել պոլսահայ համայնքի ակնկալիքները:

«Թուրքիայի հայերն արդէն վախի մէջ են: Մինչեւ 2015 թուականը մենք խօսում էինք մեր խնդիրների մասին, մինչդեռ դրանից յետոյ հայերն աւելի լուռ են: Յոյս ունէինք, որ ինչ-որ բան կը փոխուի այս ընտրութիւնների արդիւնքում, սակայն այդպէս չեղաւ: Դժբախտաբար, հայերն աւելի անձայն են լինելու այս ժամանակահատուածում», - արձանագրեց Փայլանը:

## «ԿՈՎԿԱՍՈՒՄ ՈՒԿՐԱԻՆԱԿԱՆ ՍՑԵՆԱՐ Է». FREEDOM HOUSE

Freedom House իրաւապաշտպան կազմակերպութիւնն իր *Nations in Transit-2023* տարեկան զեկոյցում նշել է, թէ «Կովկասում ուկրաինական սցենար է ծաւալւում, որը սակաւ ուշադրութեան է արժանանում»:

Ինչպէս տեղեկացնում է *Ամերիկայի ձայնը*, զեկոյցում անդրադարձ կայ ԼՂ շուրջ ստեղծուած իրավիճակին. «2020 թուականին Ադրբեջանի զինուժը ետ գրաւեց Լեռնային Ղարաբաղի որոշ շրջաններ` երկրի մի հատուած, որը տեղի հայկական ուժերի վերահսկողութեան ներքոյ էր, քանի որ նրանք 1994 թուականին պարտութեան էին մատնել ադրբեջանական զօրքերին: 2020 թուականի յաղթանակից յետոյ Ադրբեջանի նախագահ Իլհամ Ալիեւի ռեժիմը շարունակեց ռազմական ճանապարհով կեանքի կոչել իր տարածքային նկրտումները: 2022 թուականին նա լայնածաւալ ներխուժում իրականացրեց Հայաստան, իսկ 2023-ի սկզբի աւելի մեկուսացրեց Լեռնային Ղարաբաղում մնացած հայերին` «բնապահպանական բողոքի ակցիաների» պատրուակով արգելափակելով կարեւոր ուղին»:

Ըստ զեկոյցի` կան բազմաթիւ ցուցիչներ, որ Բաքուի վերահսկողութեան ընդլայնումը Լեռնային Ղարաբաղի եւ Հայաստանի որոշ հատուածների նկատմամբ նոյն կերպ կը վերացնի տեղի բնակչութեան ազատութիւնն ու անվտանգութեան ապահովումը:

Իր զեկոյցում Freedom House-ը կոչ է անում ժողովրդավարական պետութիւններին` չանտեսել այս վտանգը. «Նրանք պէտք է ձեռնարկեն հնարաւոր ամէն քայլ` ամրապնդելու Հայաստանի ժողովրդավարութիւնը եւ ապահովելու բոլոր նրանց պաշտպանութիւնը, ովքեր ապրում են Ադրբեջանի տիրապետութեան ներքոյ կամ փախչում են վերջինիս օկուպացիայից»:

Զեկոյցում Հայաստանն իր 3.11 ցուցանիշով «Անցումային շրջանի կառավարութիւն կամ հիբրիդային ռեժիմ» (Transitional Government or Hybrid Regime) խմբում է, ուր յետխորհրդային երկրներից ընդգրկուած են նաեւ Ուկրաինան, Մոլդովան եւ Վրաստանը, իսկ Արեւելեան Եւրոպայից` Հունգարիան, Բոսնիա-Հերցեգովինան, Սերբիան, Հիւսիսային Մակեդոնիան, Մոնտենեգրոն, Կոսովոն եւ Ալբանիան: Յետխորհրդային բոլոր երկրներից կազմուած Եւրասիական խմբում (բացառութեամբ ԵՄ անդամ մերձբալթեան հանրապետութիւնների) իր միաւորներով Հայաստանը զիջում է միայն Ուկրաինային (3.36) ու Մոլդովային (3.14), սակայն առաջ է Վրաստանից (3.04):

# ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՕՆ (ԱԼԱՏԻՆ)

## Եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, յօդուածագիր

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Նիւթը**

Պատմութիւն մըն է բարի աւարտով՝ չարի պատիժով:

«Վէպին մէջ ընդհանրապէս ճշմարտութիւն չկայ, բայց իրականութիւնը անժխտելի: Վիպասանը իբրեւ ճշմարտութիւն կը պատմէ, կը յերիւրէ իր ուզած պատմութիւնը՝ ինչ որ իրեն ծանօթ չէ, սակայն իրականին մէջ պատահած է ապահովապէս: Այսպէս կը համարիմ որ գրուած ըլլայ Հրանդ Վեհակրօնի (Ալատին) *Վերադարձի՛ր աշխատանոց* վէպը», կը գրէ Հ. Սիմոն Երեմեան *Բազմավէպի* գրախօսականին մէջ(62):

Կողքին եւ անուանաթերթին վրայ Վեհակրօն կը թողու երկու ֆրանսերէն քաղուածքներ.

‘Tout est vrai là-dedans; rien n’y est exact’ (Maurice Barrès).

‘Réalité et Poésie’ (Gœthe).

1895 Դեկտեմբերն է: Սկիւտարի բնակարանի մը մէջ յիսունամեայ մահամերձ Տիկին Արփինէ պառկած է անկողինը: Զինքը կը խնամէ քսանամեայ դուստրը՝ Օր. Հեղինէ Միհրանդեան:

Հեղինէ նշանուած է Գահիրէէն եկած՝ Խան-Խալիլի հարուստ ոսկերիչ Տիգրան Տէրօնեանի հետ, որ գործերուն պատճառով մեկնած է Եգիպտոս, խոստանալով շուտով վերադառնալ եւ ամուսնանալ:

Հեղինէին ու մօրը յաճախ կ՚այցելէ քսան եւ հինգ տարեկան երիտասարդ մը՝ Նորիս Անդէհուր, որուն ինքնութիւնը տակաւին գաղտնի կը պահուի շրջապատէն: Գաղտնիք մը կայ՝ որ չեն ուզեր բացայայտել, թէեւ անոր այցելութիւնները դուռ բացած են բամբասանքներու:

Նորիսի այցելութիւններուն նախանձութեամբ կը դիտէ դրացուհի Մակտա Վարակեան՝ դառնութեամբ լեցուն տունը մնացած քսան եւ հինգ տարեկան աղջիկ մը, որ կը բաղձայ հարուստ ամուսինի եւ ընկերային բարձր դիրքի: Հակառակ Մակտայի եւ Նորիսի միջեւ քանի մը սիրային պահերու՝ երբ վերջինս խլած էր Մակտայի կուսութիւնը, Նորիս հեռացած էր անկէ, անոր մէջ նշմարելով սիրային պատեհապաշտութիւն՝ տիրացումի հեռանկարով:

Մակտա, տեսնելով Նորիսի եւ Հեղինէի մօտիկութիւնը, առաւել եւս կը վճռէ տիրանալ Նորիսին, միաժամանակ յաւելելով ատելութիւնը Հեղինէի նկատմամբ:

Նորիս զարգացած անձ մըն է, 18 տարեկանին ուսանած է Փարիզի համալսարանը եւ ստացած «վարդապետ փիլիսոփայութեան» տիտղոսը, որմէ ետք վերադարձած Պոլիս եւ դարձած երկրաչափ-ճարտարագէտ:

Կը մահանայ Արփինէ: Մահէն առաջ կը խնդրէ Նորիսէն երբեք չբացայայտել գաղտնիքը՝ Հեղինէի երջանկութեան համար: Նորիս կու տայ իր խոստումը: Յետագային, այս պարտադրուած գաղտնապահութիւնը պատճառ պիտի ըլլար դէպքերու ողբերգական թաւալումին:

Որբացած Հեղինէ, Նորիսի կարգադրութեամբ, կը փոխադրուի Խասգիւղի Գալֆաեան որբանոցը, սպասելով եգիպտացի խօսեցեալին ժամանումը:

Արդարեւ, Հեղինէ եւ Նորիս գիտեն՝ որ խորթ քոյրեղբայրներ են, նոյն մայրը, տարբեր հայրեր: Եւ այս է գաղտնիքը՝ զոր պէտք է ծածուկ պահեն հանրութենէն: Անոնց անծանօթ է, սակայն, ընտանեկան այլ կարեւոր հանգամանքներ:

Յաջորդ օրը Նորիս կ՚այցելէ որբանոց Հեղինէին հանդիպելու, բայց մեծ դժուարութեամբ կը յաջողի թոյլտուութիւն ստանալ մայրապետէն: Այնտեղ, մայրապետը կը ճանչնայ երկուքին եւ կը պարզէ անոնց անծանօթ ընտանեկան մանրամասնութիւնները:

Կը պատմէ, թէ 1860-ին հայութիւնը բաժնուած էր երկու հատուածներու՝ Ամիրայականներ եւ Սահմանադրականներ: Ժողովուրդը Սահմանադրականներուն կողմն էր: Ճէզաիրցի Ամիրա կը կարծէր հոսանքը ի նպաստ իրենց դարձնելու միջոցը գտած ըլլալ: Այդ ժամանակ մայրապետը ծառայութեան գտնուելով Ճէզաիրցիի ընտանիքին մօտ, իրազեկ կը դառնայ կատարուածին:

Ամիրան կը ծրագրէ մեծ աղմուկով հրեայ մը դարձնել հայ քրիստոնեայ, եւ այսպէս ժողովուրդին առջեւ ցուցադրել ամիրաներուն նախանձախնդրութիւնը մոլորեալները փրկելու Հայաստանեայց Եկեղեցիի հովանիին տակ: Քիչ մը խոստումով, քիչ մը փաղաքշանքով եւ քիչ մըն ալ սպառնալիքով, Ամիրան կը յաջողի համոզել հրեայ Պօխոր Ազրաէլին ամուսնանալ Աննայի հետ՝ Ամիրային քով ծառայութեան մտած գաւառացի աղջկան:

Մայր Եկեղեցիի մէջ տեղի կ՚ունենայ հրեային կրօնափոխութիւնը եւ ամուսնութիւնը: Քահանան փառաբանանքը կ՚ընէ Ամիրայական դասին եւ անոնց առաւելութիւններուն: Պօխոր կ՚անուանափոխուի՝ Աբգար Ազրաէլեան: Մէկ տարիէն կը ծնի իրենց որդին՝ Մկրտիչ: Պօխոր՝ լքելով Աննան եւ երկու տարեկան որդին, կը փախչի օտար երկիր եւ կ՚անյայտանայ վերջնականապէս:

Կը յաղթանակեն Սահմանադրականները իսկ Ամիրաները կը կորսնցնեն իրենց ազդեցութիւնը: Ճէզաիրցի Ամիրա կը քաշուի իր ծննդավայրը: Մայրապետը կը նուիրուի մայրապետական ուխտին, շուտով ստանձնելով որբանոցին տեսչութիւնը:

Իբրեւ որբանոցի տեսուչ, մայրապետը իրազեկ կը դառնայ ընտանիքի յետագայ պատմութեան, զոր Արփինէ անձամբ կը պատմէ իրեն:

Այսպէս, Մկրտիչ Ազրաէլեան կը մեծնայ: Արփինէ եւ Մկրտիչ կը սիրահարուին եւ ապօրինի յարաբերութեան արդիւնքը կ՚ըլլայ Նորիսը: Մկրտիչ կը մերժէ ընդունիլ հայրութիւնը եւ կը լքէ Արփինէն: Վերջինս կ՚ամուսնանայ պարկեշտ հայու մը հետ, որուն պտուղը կ՚ըլլայ Հեղինէն: Աւելի ուշ Մկրտիչ կը տեղափոխուի Գահիրէ:

Այս է մայրապետին պատմութիւնը: Նորիս հրաժեշտ տալով կը մեկնի որբանոցէն:

Քանի մը օրէն Տիգրան Տէրօնեան կու գայ Գահիրէէն եւ անմիջապէս կ՚ամուսնանայ Հեղինէի հետ: Տիգրան, Հեղինէ եւ Նորիս ռուսական Զարիձա շոգենաւով կը մեկնին Գահիրէ: Մակտա՝ որ յոյս ունէր ամուսնանալ Նորիսի հետ, անոր մեկնումով կ՚ապրի խոր յուսախաբութիւն:

Իբրեւ երկրաչափ-ճարտարագէտ, Նորիս Գահիրէ կը մեկնի պելճիքական ընկերութեան մը կողմէ՝ այնտեղ հաստատելու համար ելեկտրական թրամուէյի գիծեր եւ պայմանագրային կէտերու համար բանակցելու եգիպտական կառավարութեան հետ:

Շոգենաւին մէջ Հեղինէ եւ Նորիս իրարու անծանօթ ըլլալ կը ձեւացնեն, քանի որ իրենց արենակցութիւնը պէտք է մնար գաղտնի: Թէեւ Նորիս եւ Տիգրան կը մտերմանան եւ կ՚ունենան երկար զրոյցներ:

Դեկտեմբեր 30-ին կը հասնին Աղեքսանդրիա, 31-ին՝ Գահիրէ: Նորիս կ՚երթայ պանդոկ, իսկ Տիգրան կ՚ուղեկցի կնոջը Քասր Էլ-Նիլի իր բնակարանը, ուր կ՚ապրի ծերունի հօր Յովհաննէսի հետ:

Գահիրէի մէջ, Նորիս նպատակ ունէր նաեւ մօրը վրէժը լուծել ոճրապարտ հօր Մկրտիչ Ազրաէլեանէն: Մկրտիչ Գահիրէի մէջ հաստատուած է իբրեւ սակարանային գործառնութիւններու խորհրդատու եւ միջնորդ: Իր գրասենեակը կը գտնուի Գահիրէի ամենահարուստ թաղամասին մէջ:

Կ՚անցնին երեք տարիներ: Տիգրան եւ Հեղինէ ծնողք են երկու տարեկան Նորիսին:

1895-ի յաջորդած գաղթական հոսանքը հազարաւոր պոլսեցի ընտանիքներ տեղափոխած է Եգիպտոս, որոնց մէջ է Մակտա իր ընտանիքին հետ: Ան տակաւին մաղձով լեցուած է Հեղինէի նկատմամբ եւ կ՚ուզէ վրէժ լուծել անկէ, միաժամանակ յագուրդ տուած ըլլալու համար Նորիս Անդէհուրի դէմ ունեցած զայրոյթը: Կրկին կը մօտենայ Նորիսին ամուսնութեան առաջարկով, բայց կը մերժուի:

Վճռական իր վրէժին մէջ, յենակից ունենալով իտալուհի Լէնային, Մակտա կը դիմէ դաւադիր կեղծիքի եւ խարդախութեան, Տիգրանին հաւատալ տալով՝ որ կինը սիրային յարաբերութեան մէջ է Նորիսի հետ: Կը քայքայուի Տէրօնեաններու երեք տարուայ ընտանեկան երջանկութիւնը:

Մինչ այդ Նորիս կ՚իմանայ՝ որ Մկրտիչ Ազրաէլեան պիտի նշանուի Մակտայի հետ: Առաջին անգամ ըլլալով կ՚երթայ անոր գրասենեակը եւ կը բացայայտէ ինքնութիւնը: Մկրտիչ կը ճանաչէ իր որդին ըլլալը՝ առանց հայրական զգացումի: Կը փորձէ ձեւականօրէն մերձենալ զաւակին, բայց Նորիս կը մերժէ զինքը, քանի որ իր այցելութիւնը կը հետապնդէ յատուկ նպատակ: Նորիս կը պահանջէ՝ որ նշանախօսութիւնը Մակտայի հետ տեղի չունենայ: Կը յայտնէ՝ որ պատճառը իր եւ Մակտային միջեւ եղած բարոյական կապ մըն է, զոր երբեք պիտի չբացայայտէ:

Նորիս կը մտածէր՝ որ այս ամուսնութեամբ Նախախնամութիւնը վրիժառու կ՚ըլլար, քանի որ Մակտա իրեն էր յանձնած կուսութիւնը իսկ հիմա պիտի մտնէր հօր առագաստը: Ասիկա կը համարէր արիւնապղծութիւն: Նորիս չէր ուզեր մեղսակիցը ըլլալ այդքան անբարոյականութեան:

Բայց Նորիս կ՚անգիտանար, որ Ազրաէլեան Պոլիսէն տեղեակ էր իր լքած կնոջ Արփինէի ամուսնութեան եւ Հեղինէի մասին, հետեւաբար գիտէր Նորիսի եւ Հեղինէի արենակցութիւնը: Թէեւ չկրցաւ հասկնալ Նորիսի եւ Մակտայի բարոյական կապը: Նորիս կը շարունակէ պնդել իր պահանջը եւ կը խոստանայ կռուիլ մինչեւ վերջ: Մկրտիչ անակնկալի կը բերէ Նորիսին յայտնելով՝ որ տեղեակ է իր եւ Հեղինէի եղբայրութեան մասին, եւ կը սպառնայ բացայայտել գաղտնիքը, որուն յառաջացուցած գայթակղութիւնը պիտի ըլլար թունաւոր, շատ աւելի թունաւոր քան իր հայրութեան բացայայտումը: Հայր ու որդի կը բաժնուին՝ փոխադարձ սպառնալիքով:

Ազրաէլեան կ՚աշխատի քանդել Տէրօնեաններու դրամական կարողութիւնը, որպէսզի Հեղինէի անկումին միջոցով տեսած ըլլայ Նորիսի տառապանքը: Ան սակարանի խորհրդատուն է Տիգրան Տէրօնեանի: Լսելով թրամուէյի ընկերութեան սակարանի գալիք անկումը, խորհուրդ կու տայ Տիգրանին վաճառել ունեցած բաժնեթուղթերը եւ գնել թրամուէյի ընկերութեան բաժնեթուղթերը, խաբելով՝ որ իր հաստատ աղբիւրները կը նախատեսեն թրամուէյի սակարանի բարձրացում: Տիգրան կը կատարէ առաջարկը: Տեղի կ՚ունենայ սակարանին անկումը եւ Տէրօնեաններուն կը սպառնայ ամբողջական սնանկացում: Վրայ կը հասնի Նորիս՝ որ նոյն թրամուէյի ընկերութեան պաշտօնատար է եւ տեղեակ բոլոր մանրամասնութիւններուն: Կը բացատրէ սակարանի անկումին պատճառը, եւ իրազեկ ըլլալով ընկերութեան դրական կարգադրութեան՝ որուն պտուղները պիտի երեւան վաղը, խորհուրդ կու տայ պահել թրամուէյի բաժնեթուղթերը: Եւ իրապէս, յաջորդ օրը կը բարձրանայ անոնց արժէքը եւ Տէրօնեանները կը քառապատկեն իրենց հարստութիւնը:

Մկրտիչ եւ Մակտա կը նշանուին եւ Մկրտիչ նշանածին կը տեղեկացնէ Նորիսի եւ Հեղինէի եղբայրական կապը:

Մակտա կը զղջայ Հեղինէի կեանքը քանդած ըլլալուն, կը մեղանչէ Նորիսի առջեւ եւ վերջինս կը ներէ իրեն՝ մոլորութենէն սթափած եւ առաքինի դարձած ըլլալուն համար: Կ՚որոշեն փրկել Տէրօնեաններուն ընտանեկան կացութիւնը: Կը յաջողին մէկ սեղանի շուրջ հաւաքել Հեղինէն ու Տիգրանը եւ կը բացայայտեն Նորիսի ու Հեղինէի կապը: Կը վերականգնուի ընտանեկան անդորրութիւնը:

Ազրաէլեան եւ Մակտա գացած են Պառաժ եւ նաւակով կը զբօսնուն Նեղոսի վրայ: Նաւակը կը գլորի սարաւանդէն վար: Կը փրկուի Մակտա բայց ալիքներուն մէջ կ՚անհետանայ Ազրաէլեան:

Տէրօնեանները, Մակտա եւ Նորիս ռուսական Զարիձա շոգենաւով կ՚երթան Պոլիս՝ այնտեղ հաստատուելու համար: Յայտնի չէ Տէրօնեաններու մեկնումին պատճառը, անոնք հաւանաբար խոյս կու տան Հեղինէի եւ Նորիսի գաղտնիքի բացայայտումէն յառաջ եկած հանրային գայթակղութենէն: Մակտա կը դառնայ Գալֆաեան որբանոցի մայրապետ եւ երեք ամիսէն կը մահանայ: Նորիս այլեւս աւարտած է իր կեանքի առաքելութիւնը եւ կը վերադառնայ աշխատանոց:

(Շար. 5)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

62. Հ. Ս. Երեմեան, «*Վերադարձի՛ր աշխատանոց*, հեղինակ՝ Վեհակրօն Հրանդ», *Բազմավէպ*, Փետրուար-Մարտ 1934, թիւ 2-3, էջ 104:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԿՈՎԿԱՍԻ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԵՐԱՇԽԻՔԸ, ՓԱՇԻՆԵԱՆԸ «ԲԱՑՈՒՄ» Է ՊԱՏԿԵՐԸ

**ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ**

Ռեգիոնալ անվտանգութեան համար պատասխանատուութիւնը շատ բարդ խնդիր է, որը կարող է պատասխանատուի թէ վարկը բարձրացնել, թէ հարուածել հեղինակութեանը, իր Մայիսի 22-ի ասուլիսում յայտարարել է վարչապետ Նիկոլ Փաշինեանը, անդրադառնալով Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութեան երաշխիքին եւ նշելով, թէ այնպէս չէ, որ կան այդ երաշխաւորը լինելու պատրաստ ուժեր եւ հերթ են կանգնել դա ստանձնելու համար: Այլ հարց է, ըստ Փաշինեանի, որ Հայաստանի եւ Ադրբէջանի մօտ խաղաղութեան իրական կամք տեսնելու պարագայում, կը գտնուեն այդ խաղաղութիւնը երաշխաւորելու պատրաստակամութիւն ունեցող ուժեր:

Հայաստանի վարչապետը նշում է, որ դա իր տպաւորութիւնն է՝ ըստ այն քննարկումների, որ ունենում է արտաքին դաշտում: Փաստացի, Նիկոլ Փաշինեանը արձանագրում է ներկայիս իրողութիւնների ամենակարեւոր, հիմնաքարային շերտը: Չկայ Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութիւն երաշխաւորելու պատրաստ միջազգային դերակատար կամ կառոյց, եթէ Հայաստանն ու Ադրբէջանը իրենք պատրաստ չեն այդ խաղաղութեանը եւ դա չեն դիտարկում իրենց առանցքային նպատակ: Իհարկէ Երեւանն էլ, Բաքուն էլ խօսում են խաղաղութեան մասին, բայց ակնառու է, որ Ադրբէջանը պատկերացնում է խաղաղութիւն, որը ըստ էութեան Հայաստանի պետական գոյութիւնը կը վերածի պարզապէս ցուցանակի, Ադրբէջանի համար ամբողջապէս վերահսկելի եւ կառավարելի: Ալիեւը նոյնիսկ բաց կերպով խօսում է Հայաստանի սպառազինման անթոյլատրելիութեան մասին: Եթէ Ալիեւը հրաժարուէր նաեւ Ադրբէջանի սպառազինման գաղափարից, ապա թերեւս հնարաւոր կը լինէր խօսել խաղաղութեան պատրաստակամութեան մասին, սակայն Ադրբէջանը խաղաղութիւնը պատկերացնում է Հայաստանի պետականութեան ըստ էութեան քաղաքական, հոգեբանական, ռազմա-քաղաքական եւ անգամ տնտեսական անդամահատման տրամաբանութեան մէջ, հետեւաբար դա մեղմ ասած խաղաղութեան ցանկութիւն չէ:

Որովհետեւ, ի վերջոյ, եթէ նոյնիսկ տեսականում պատկերացնենք, որ Հայաստանն անգամ այդ պայմաններով գնում է համաձայնութեան, հարց է առաջանում, թէ դրանից յետոյ որեւէ միջազգային երաշխիք խաղաղութեա՞ն երաշխիք է, թէ՞ պարզապէս ըստ այս կամ այն իրողութեան Հայաստանի հանդէպ անզուսպ եւ անկաշկանդ ագրեսիա իրականացնելու Ադրբէջանի հնարաւորութեան երաշխիք: Առաւել եւս, եթէ հաշուի առնենք այն հանգամանքը, որ Կովկասը այն ռեգիոնն է, որտեղ խաչուել ու բախուել են աշխարհաքաղաքական եւ քաղաքակրթական շահեր, ու շարունակելու է լինել այդպիսի ռեգիոն, ինչը բնականաբար նշանակում է, որ ռեգիոնալ կայունութեան հարցն էլ շարունակելու է գտնուել

Հետեւաբար, պէտք է թերեւս արձանագրել, որ ռեգիոնալ անվտանգութեան ու կայունութեան երաշխիքը կարող է լինել կամ բազմավեկտոր, կամ այսպէս ասած՝ միատարր: Այսինքն, ոչ թէ մէկ սուբիեկտի երաշխիք, այլ երաշխիք, որը ենթադրում է Հայաստանի, Ադրբէջանի ու Վրաստանի ներառութիւն սուբիեկտային մէկ շրջանակի մէջ, ինչպէս օրինակ ԽՍՀՄ: Հազիւ թէ այդ տարբերակը հաւանութիւն ունենայ Կովկասի որեւէ հանրապետութիւնում, եւ առաւել եւս իրատեսական լինի այդօրինակ որեւէ տարբերակի հեռանկարը՝ հնարաւորութիւնների կամ աւելի շուտ դրանց բացակայութեան օբիեկտիւ ու սուբիեկտիւ խճանկարի բերումով: Հետեւաբար, Կովկասի կայունութեան միջազգային երաշխիքը կարող է լինել միայն բազմավեկտոր տրամաբանութեամբ, ինչը մեծ հաշուով դուրս է Հայաստանի ու Ադրբէջանի ցանկութիւնից կամ ↳4

ԽՈՀԵՐ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ՝ ՃԵՂՔՈՒՄՆԵՐ, ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

**ՀԱՅԿ ԱԻԱԳԵԱՆ**

Նազարեանցի հակառակ կողմը՝ *Արեւի* մօտ, կար մեծատաղանդ Վահան Թէքէեան: 1915-1945-ին, *Արեւի* մէջ ստորագրած է շուրջ 20 քննախօսականներ՝ երաժշտութիւն, նկարչութիւն, լուսանկարչութիւն, բանախօսութիւն, ձեռնարկ: Երեսուն տարուայ տեւողութեան համար շատ պզտիկ քանակութիւն մըն է ասիկա, գրեթէ աննկատ մնացած: Բայց եգիպտահայ քննախօսականներուն ամենացայտուններէն:

Թէքէեան եւս, ինչպէս Նազարեանց, ունէր ընտրելու կարելիութիւն, կը գրէր՝ երբ կացութիւնը կը շարժէր մտածողութիւնը: Իրապաշտ մը եւ ուղղակի մտացող մը, ան սկիզբները դիմած է անմիջական քննադատութեան. «Միւս դերակատարներէն Պ. Լ. Յովհաննէսեան, գործարանատիրոջ որդին, իր բեմական առաւելութիւնները խեղդեց յուզեալ շեշտի եւ ժեսդերու միօրինակութեան մէջ: Աստիճանաւորումը եւ երանգաւորումը կը պակսէին եւ ընդհանրապէս կը պակսին իրեն»: Խօսքը Գահիրէի Գողթան Թատերախումբի *Գէշ հովիւները* թատերերգութեան մասին է, 1928 Նոյեմբեր 18, Վերտի Թատրոն(9):

Աւելի ուշ Թէքէեան նախընտրեց գրականախառն մեկնողականութիւնը, ինչպէս Աշոտ Զօրեանի նկարչական ցուցահանդէսը, 1942 Յունուար 5, Քոնթինանթալի սրահ. «Իսկ եթէ ուզէինք նկարչական քննադատի դերին մէջ մտնել անպատճառ. եթէ, կանգ չառնելով այդ դերին համար մեր անվարժութեան՝ փորձէինք սակայն անոր լեզուն գործածել. եթէ պարզապէս մեր տպաւորութիւնը չբացատրէինք, - պիտի ըսէինք որ Զօրեանի մէջ «տոկունութիւնը» (ձեւ եւ գոյն) որ իր հիմնական յատկութիւններէն է՝ երբեմն կը ստացուի ի վնաս ճկունութեան, նոյնքան դիմանկարներու որքան բնանկարներու մէջ, թէեւ այս վերջիններուն մէջ ան կը թուի աւելի մեծ ազատութիւն մը վայելել: Կիպրոսի եւ Լիբանանի տեսարանները, մասնաւորապէս, յաճախ իրեն առիթ տուած են առանց ցնցումի՝ քաղցրութեամբ արտայայտելու զինք լեցնող բանաստեղծական զգացումը, մինչ եգիպտական տեսարանները տխրութեան եւ Սուրիոյ մէկ քանի կրօնական յիշակերտները ի յայտ կը բերեն համակերպութեան, պիտի ըսէինք ճակատագրապաշտութեան խորք մը նկարչին արեւելքով սնած հոգիին մէջ»(10):

Ամենագեղեցիկ քննախօսական մը՝ զոր երբեւէ կարելի է գտնել եգիպտահայ մամուլին մէջ՝ կուսակցական թէ անկախ:

Ամէն տեսակ քննախօսականներու վիթխարի քանակութիւն մը թողած է Աւետիս Եափուճեան *Արեւի* էջերուն մէջ, որուն խմբագրապետը եղած է 1967-1990-ին: Ձեռնարկին յաջորդ օրը *Արեւի* մէջ կը կարդայինք Եափուճեանի քննախօսականը:

Փորձած է քննադատել. բարձր ադմուկները լռեցուցած են զինք: Տարեկան Փառատօներն էին, որոնցմէ մէկուն ընթացքին մեծահարուստ բարձրախաւ ընտանիքէ սերած ջութակահարուհի մը՝ իբրեւ գլխաւոր մասնակցող, ունեցաւ շատ վատ ելոյթ: Պատանի էի, ներկայ գտնուած եմ այդ Փառատօնին եւ յիշողութեանս մէջ մինչեւ այսօր կենդանի կը մնայ անհաճոյ նուագը: Եափուճեան արձանագրեց տպաւորութիւնը՝ բացասական քննադատութեամբ: Յետոյ իրեն հասկցուցին՝ որ իրաւունք չունի բարձրադասը քննադատել: Իսկ Եափուճեանի մտաւորականութիւնը չէր ներեր քննադատել անպաշտպանը:

Դպրոցի պատրաստական բաժինի աշակերտ էի: Գաղութային ձեռնարկ մըն էր, եւ ես՝ իբրեւ դպրոցական, ստիպուած էի արտասանութեամբ ելոյթ ունենալ: Իմ գործս չէր բեմական արտասանութիւնը: Բայց դպրոցի հրամանը պարտադրանք էր: Արտասանեցի, ես ինքս համոզուած չըլլալով ըրածէս: Եափուճեան իրաւացիօրէն քննադատեց ելոյթս՝ ամենակիրթ բառերով, շեշտելով՝ որ աւելի լաւ չէ՞ր ըլլար եթէ դաշնակ նուագել տուած ըլլային: Այդ ժամանակ սկսած էի ելոյթներ ունենալ հայկական ձեռնարկներու մէջ իբրեւ դաշնակ նուագող: Իր հերքումը, իրականութեան մէջ, դրական գնահատանքն էր իմ դաշնակահարութեանս, եւ, իր խորքին մէջ, քննադատութիւն մը ուսուցչական կազմին՝ սխալ ընտրութեան համար:

Կուսակցական մամուլը ունեցած է նաեւ ուրիշ բազմաթիւ քննախօսներ՝ երկար ու կարճ ժամկէտներով, ինչպէս Արսէն Երկաթ՝ նկարչական ցուցահանդէսներու իր հրաշալի քննախօսականներով *Յուսաբերի* մէջ 1943-1961-ին, Յակոբ Արամեան (Հրահատ ծածկանունով) *Արեւի* մէջ՝ մինչեւ իր Հայաստան ներգաղթը 1947-ին, Արմէն Տատուր (Այբ-Տիուն ծածկանունով)՝ *Արեւի* մէջ, Կայծ Կոկանեան՝ 1970-80-ականներու *Յուսաբերի* մէջ:

Աղեքսանդրիոյ մէջ 40 տարի (1925-1965) լոյս տեսած է ոչ-կուսակցական *Արաքս* շաբաթաթերթը: Մինչեւ իր մահը 1947 թուական, խմբագիր-արտօնատէր Արամ Ստեփանեան թողած է աղեքսանդրիահայ ձեռնարկներու անթիւ քննախօսականներ (Արա ծածկանունով), ներկայացուած ուղղակի ոճով: Իր մահէն ետք լրագիրը կարողապէս շարունակած է զաւակը Շաւարշ Ստեփանեան, առանց, սակայն, յատուկ ցանկութիւն ունենալու քննախօսականներու:

Ամբողջ 40 տարիներու ընթացքին *Արաքս* ունեցած է Գահիրէի թղթակիցը՝ գրող եւ թարգմանիչ Սիսակ Շալճեան (երբեմն՝ Վահրիճ ծածկանունով), որ փոխանցած է Գահիրէի հայ կեանքի ձեռնարկները՝ շիտակ եւ պարզ ոճով արտայայտուած: Քննախօսականի եւ լրատուութեան խառնուրդ մը՝ կարեւոր տեղեկութիւներու ամբողջ հաւաքածոյ մը:

Մինչ կուսակցականութիւնը կաշկանդած է քննախօսութիւնը՝ քննախօսին թելադրելով իր կամքն ու նախասիրութիւնները, *Արաքս*ի նման ոչ-կուսակցական լրագիր մը կրցա՞ծ է այս առումով ունենալ ճշմարիտ ազատութիւն: Պատասխանը՝ ոչ: Որովհետեւ առաջ անցած է սփիւռքեան ուրիշ յատկանիշ մը՝ համայնքայնութիւնը:

Քննադատելու համար՝ բացասական թէ դրական, անջատող տարածութիւն մը պէտք է քննախօսի եւ քննադատուողի միջեւ: Համայնքի մէջ քննախօսն ու քննադատուողը կը գտնուին նոյն տարածութեան վրայ, ենթակայ հաղորդակցուելու որեւէ պահու: Ասիկա չի նշանակեր որ անոնք կը գտնուին համակեցային, ոչ-օտարացումի վիճակի մէջ: Օտարացումը միշտ առկայ եղած է գաղութի ենթականերուն միջեւ: Խօսքը ֆիզիքական տարածութեան մասին է:

Ամերիկայի կամ Ֆրանսայի քննախօսը ընդունուած է սահմանազատուած ըլլալ քննախօսուող տարրէն, երկուքը ըլլալով չհանդիպող ենթականեր: Չկայ ֆիզիքական տարածութիւն անոնց միջեւ: Այլեւ քննախօսի խօսքը երաշխաւորուած է լրագրական միաւորին կողմէ: Տեսականօրէն, ասիկա առիթ պէտք է տայ առարկայականութեան, անաչառութեան, թէեւ գործնականօրէն խնդիրը շատ աւելի բարդ է, մանաւանդ առարկայականութեան հարցը, այնքան ժամանակ որ իրազեկ ենք՝ թէ քննախօսութիւն մը կ՚ապրի իր ինքնուրոյն կեանքով, կախուած գրողի լեզուամտածողութենէն, այսինքն՝ գրողի ենթակայականութիւնը կարեւոր մեկնողական գործօն մըն է քննախօսութեան մէջ: Բայց Արեւմուտքը ինքն իր համար գոնէ լուծած է այս հարցը՝ «փրոֆեսիոնէլ» անջատումներով:

Սփիւռքը՝ իբրեւ համայնք եւ համայնքայնութիւն, ենթադրուած էր ստեղծել տարածական մերձաւորութիւն ենթականերուն միջեւ: Ստեղծուեցաւ ֆիզիքական տարածութիւնը, իրական քննադատութիւնն ու քննախօսութիւնը դարձնելով գրեթէ անկարելի բնագաւառ մը: Փոխարէնը չստեղծուեցաւ համակեցային տարածութիւնը: Վերջինիս պարագային քննադատական քննախօսութեան կարիք պիտի չըլլար՝ քանի որ արժէքներու գնահատութիւնը պիտի կատարուէր մարդոց կենդանի գոյութեան եւ գործադրութեան միջոցով, փոխանակ մէկը՝ գրողը կամ կատարողէն աւելի իրազեկը, գնահատէր ուրիշը: Համակեցային տարածութիւնը քննադատական քննախօսականը պիտի փոխարինէր քննական քննախօսականով, ազատ կամարտայայտութիւնը՝ ազատագրուած կամարտայայտութեամբ: Մնալով երկուքին մէջտեղը, սփիւռքահայ քննախօսութիւնը բաւական տուժեց, եւ միայն հզօր միտքերու շնորհիւ կրցաւ գտնել ելքեր՝ միշտ անձնական գետինի վրայ, ինչպէս տեսանք վերը:

Եւ քանի որ կը խօսինք անձնական ելքերու եւ սեփական ճիգերով կատարուած ճեղքումներու մասին, ↳4

ՋԱՀԱԿԻՐ

## 3 ԿՈՎԿԱՍԻ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ...

խաղաղութեան կամքից:

Քանի դեռ չկայ բազմավեկտոր մեխանիզմը, եւ աշխարհում ներկայումս ընթանում է պայքարի եւ ազդեցութեան վերադասաւորման գործընթաց, Հայաստանին չի մնում այլ բան, քան անվտանգութեան շատ թէ քիչ կայուն արտաքին աջակցութիւն ստանալու համար առաւելագոյնս արդիւնաւէտ աշխատել նոյն բազմավեկտոր ուղղուածութեամբ՝ տարբեր բեւեռների հետ երկկողմ յարաբերութեան խորացմանը միտուած օրակարգով: Երեւանը փորձում է անել դա, թէեւ հարց է, թէ ինչ արդիւնաւէտութեամբ: Առաւել եւս, որ դա ենթադրում է իհարկէ բարդ մանեւրի կարողութիւն, որպէսզի միւս բեւեռների համար հասկանալիօրէն բացատրելի դառնայ այն խնդիրը, որ փորձում է լուծել Հայաստանը: Միաժամանակ, գլխաւոր խնդիրը, որ դրան զուգահեռ պէտք է լուծի Հայաստանը, շարունակում է լինել ուժերի վերականգնումը՝ պաշտպանականից մինչեւ տնտեսական, հասարակական-քաղաքացիական, ինստիտուցիոնալ կառուցուածքային: Ակնառու է, որ այստեղ կան խնդիրներ՝ օբիեկտիւ ու սուբիեկտիւ պատճառներով, բայց կան խնդիրներ, որոնք պահանջում են մի կողմից իհարկէ ժամանակ, միւս կողմից սակայն ժամ/արագութեան էական աւելացում:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ՝ ՃԵՂՔՈՒՄՆԵՐ, ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

3

ուրեմն, ընդհանուր օրէնքը մնաց կոյր գովաբանութիւնը: Կուսակցութիւնները լեցուն են կուսակցական ձեռնարկներով, այլեւ կուսակցականացուած տօներով, ինչպէս Մայիս 28-ն ու Նոյեմբեր 29-ը՝ որոնք պէտք էր մնային անկուսակցական, քանի որ երկուքն ալ կապուած էին Հայոց պատմութեան կարեւորագոյն հանգրուաններու հետ: Այս տօներուն աւելցան մայրերու տօնի, Վարդանանցի եւ Ապրիլ 24-ի տարեկան կրկնութիւնները՝ իբրեւ սովորապաշտ պարտականութիւններ: Յաճախ զերծուած իմաստային բովանդակութենէ, ամէն տարի պարտադրաբար կրկնուող տօները գաղութային բեմերուն վրայ ներկայացուեցան միօրինակ խօսքերով եւ կարծրատիպերով, եւ դարձեալ պարտադրաբար քննախօսուեցան՝ գովերգելու եւ մեծաբանելու մեքենայական դրսեւորումով: Եւ այստեղ ունեցանք եգիպտահայ ամենէն անմակարդակ քննախօսականները՝ կեղծ քննախօսականները, գրուած մեծ մասամբ պատեհապաշտ անձերու կողմէ՝ կեղծ մտաւորականներու:

Համայնքայնութենէն դէպի կիսահամայնքայնութիւն, տարածութենէն դէպի կիսատարածութիւն, աւանդական կուսակցութիւնները չդիւրացուցին գործը, երբ ֆիզիքական տարածութիւնները բաժնեցին իրենց միջեւ եւ երեք աւանդականներուն միջեւ ստեղծեցին ամբողջական օտարացում: Եգիպտահայ կուսակցական մշակոյթի գործիչի մը աւելի ծանօթ մնաց Հեռաւոր Ամերիկայի նոյն կուսակցութեան արտադրութիւնը քան քանի մը մեթր անդին գտնուող ուրիշ կուսակցութեան մը արտադրանքը, եւ ասիկա՝ արդի համացանցային կապի միջոցներու ստեղծումէն շատ առաջ: Ասիկա աւելցուց ներկուսակցական քննախօսականի միապաղաղութիւնը, անջատեց զայն միջավայրէ, իմաստներէ, օրհնեց կեղծ մտաւորականը:

Կեղծ եւ իրական քննախօս-մտաւորականներու սահմանները երբեմն խառնուեցան իրարու, առաջինի ներթափանցումով երկրորդին մէջ:

Ի նպաստ *Արաքս*ի նման ոչ-կուսակցական լրագիրի պիտի ըսել՝ որ ան գոնէ դիմադրեց տարեկան սովորապաշտութիւններու կրկնութիւնը, ինքնակամօրէն կատարելով ընտրութիւն: Անոր կը պակսէին, սակայն, վերոյիշեալ խորաթափանց գրողները:

Կուսակցական ծիրին մէջ, եգիպտահայ քննախօսութիւնը նաեւ ունէր ուրիշ յատկանիշ մը: Մինչ կուսակցական լրագիրները չէին դադրեր միջկուսակցական պայքարներ մղելէ հրապարակագրութեան բնագաւառին մէջ, քննախօսները չեն մասնակցած «հակառակորդ» կողմի ձեռնարկի քննադատութեան: Քննախօսութիւնը չմտաւ կուսակցական պայքարի ծիրէն ներս:

(Շար. 3)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

9. Վ. Թ., «*Գէշ հովիւները*», *Արեւ*, 24 Նոյեմբեր 1928, ԺԵ. տարի, թիւ 2981, էջ 1:

10. Վ. Թ., «Աշոտ Զօրեանի ցուցահանդէսը», *Արեւ*, 10 Յունուար 1942, ԻԶ. տարի, թիւ 7007, էջ 2:

## 1 ՇՐՋԱՓԱԿՈՒՄԻ ԲԵՒԵՌՆԵՐ, ԱԶԵՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ՂԱՐԱԲԱՂ ԵՒ ՄԷԿ ՏՈՒԺՈՂ

մէջ գտնուող այս մարզին կառուցել ինքնակառավարումի ժողովրդավարական համակարգ»:

2022 Յունուար 13, Երեւան, մամուլի համատեղ ասուլիս Ֆրանսայի եւ Հայաստանի խորհրդարաններու նախագահներ Եաէլ Պրաուն-Փիվէի եւ Ալէն Սիմոնեանի: Պրաուն-Փիվէ. «Ինչ կը վերաբերի Լեռնային Ղարաբաղի անկախութեան ճանաչումին, Ֆրանսայի դիրքորոշումը յայտնի է ձեզի: Այսօր Ֆրանսան չի ճանչնար այդ անկախութիւնը եւ ասիկա կը համապատասխանէ միջազգային օրէնքին, որուն մենք կ'ենթարկուինք» (*Ջահակիր*, թիւ 1932):

Ո՛չ Լեւոն Տէր-Պետրոսեան, ո՛չ Ռոբերտ Քոչարեան, ո՛չ Սերժ Սարգսեան եւ ո՛չ ալ Նիկոլ Փաշինեան կրցան փոխել այդ բանաձեւերը:

Եւ այսպէս, Մայիս 14-ի Պրիւքսէլի Փաշինեան-Ալիեւ-Միշէլ եռակողմ հանդիպումէն ետք, Եւրոպական Խորհուրդի նախագահ Շառլ Միշէլ կը յայտարարէ՝ որ Հայաստան եւ Ազերպէյճան վերահաստատեցին փոխադարձ տարածքային ամբողջականութիւնը, Հայաստան՝ 29 հազար 800 քառակուսի քիլոմեթր, Ազերպէյճան՝ 86 հազար 600:

Մայիս 22-ի մամուլի ասուլիսին, Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան պարզաբանեց՝ որ Ազերպէյճանի 86 հազար 600 քառակուսի քիլոմեթրին մէջ կը մտնէ Լեռնային Ղարաբաղը:

Հիմա արդէն յայտնի է, որ Ալիեւի վերջին տարիներու յայտարարութիւնները՝ թէ Ղարաբաղը Ազերպէյճան է, հռետորաբանութիւն չէր: Ան կը յայտարարէր՝ ձեռքին ունենալով վերոյիշեալ բանաձեւերը, ունենալով ԱՄՆ-ի եւ Եւրոպայի լրիւ աջակցութիւնը՝ Եւրոպան ըլլալով Ազերպէյճանի կազ-քարիւղի պայմանագրային ամենաուժեղ դաշնակիցը, ունենալով Ռուսաստանի ամբողջական աջակցութիւնը, չմոռնալով յատկապէս ռուս-ուքրաինական պատերազմէն ետք Ռուսաստանի եւ Ազերպէյճանի խորքային մերձեցումը յատկապէս կազային համաձայնութեան հիմքով, ուր աւելի Ռուսաստանը պէտք ունէր Ազերպէյճանին քան հակառակը (*Ջահակիր*, թիւ 1931):

Հիմա արդէն յայտնի է նաեւ, որ չափազանց լուրջ էին Ռուսաստանի եւ արտաքին գործոց նախարար Սերկէյ Լաւրովի յայտարարութիւնները: Յիշենք, օրինակ, Մարտ 20-ին Մոսկուայի մէջ տեղի ունեցած Հայաստանի եւ Ռուսաստանի արտաքին գործոց նախարարներու՝ Արարատ Միրզոյեանի եւ Սերկէյ Լաւրովի մամուլի ասուլիսը, ուր Լաւրով բաւական բացայայտ լեզուով Ղարաբաղը տեղադրեց Ազերպէյճանի մէջ իբրեւ ինքնավար մարզ, «պայմանով» որ Ազերպէյճան ապահովէ հայերուն ապահովութիւնը (*Ջահակիր*, թիւ 1936):

Հիմա միայն յայտնի է՝ որ այս բոլորը խօսքեր չէին: Ո՛չ Ռուսաստանը, ո՛չ ԵՄ-ն, ո՛չ ալ ԱՄՆ-ը մէկ աստիճան զիջեցան Ղարաբաղի հարցով, հայերուն անընդհատ յիշեցնելով նոյնը՝ Լեռնային Ղարաբաղը ինքնավար մարզն է Ազերպէյճանի Հանրապետութեան: Ոչ մէկ բանակցութիւն կարելի եղաւ մեղմել այս դիրքորոշումը: Հայաստան մնաց աշխարհի ՄԻԱԿ երկիրը՝ որ Ղարաբաղը կ'ուզէր տեսնել իբրեւ անկախ հանրապետութիւն: Նոյնիսկ չհամարձակեցաւ ներքին կարգով Ղարաբաղը յայտարարել իբրեւ Հայաստանի մարզ:

Հիմա տեղը չէ վիճիլ՝ թէ ինչպէս կրնան հայերն ու ազէրիները միասին ապրիլ նոյն հանրապետութեան մէջ այս բոլոր արիւնալի անցեալէն ետք՝ ազգային պետութեան տրամաբանութեան մէջ: Յստակ է որ Ղարաբաղի ազերպէյճանացումէն ետք մէկ հայ պիտի չմնայ այնտեղ: Տեղը չէ նաեւ վիճիլ Պրաուն-Փիվէի վերոյիշեալ յայտարարութեան հետ, այն առումով, որ եթէ Ֆրանսան ստիպուած է հետեւիլ ԵՄ-ի օրէնքին՝ ըստ որուն Ղարաբաղը կը գտնուի Ազերպէյճանի մէջ, ապա նոյն Ֆրանսան է այդ օրէնքը քուէարկածներէն մէկը: Այս բոլորի մասին կարելի է խօսիլ ուրիշ անգամ: Կարեւորը՝ բանաձեւերն ու օրէնքները ներկայիս կը մնան ուժի մէջ, լրիւ աջակցութիւնը ունենալով աշխարհի ԲՈԼՈՐ հզօր երկիրներուն:

Լաւ չէ որ այդպէս է: Բնաւ լաւ չէ որ այդպէս եղաւ: Բայց ռէալ փոլիթիքը լաւ եւ վատ չի ճանչնար: Չի ճանչնար ճիշդն ու սխալը: Պատմութիւն, պատմական յիշողութիւն եւ նման բաներ գոյութիւն չունին իրեն համար:

Իսկ մեզի՝ հայերուս համար, կարեւոր էր հին եւ նոր իշխանութիւններուն հայ հանրութեան ծանօթացնել այդ բանաձեւերը եւ հրապարակային դարձնել զանոնք, փոխանակ փախչելու անոնցմէ եւ հասարակութեան ներկայանալու այնպէս՝ կարծէք ՄԱԿ-ի եւ ԵՄ-ի մէջ բան մը չէ կատարուած: Խնդիրը այն է՝ որ կատարուած է, եւ կատարուած է Ազերպէյճանի օգտին: Մեր ազգային հայրենասիրութիւնը թոյլ չէ տուած ընդունիլ Ազերպէյճանի «յաղթանակ»-ը ՄԱԿ-ի եւ ԵՄ-ի մէջ: Ասիկա չի նշանակեր որ կը պաշտպանեմ ՄԱԿ-ն ու ԵՄ-ը, քաջ տեղեակ ըլլալով անոնց բովանդակութիւնը իբրեւ նեղ խումբերու շահերուն ծառայող գործիքներ, այլեւ իբրեւ այդ նոյն նեղ խումբերու հակառակորդներուն դէմ պայքարը օրինականացնելու միջոցներ: Բայց ասիկա տակաւին բան մը չի փոխեր իրական գետինի վրայ: Բանաձեւերը կան եւ անհրաժեշտ էր զանոնք ճանաչելի դարձնել հայ հասարակութեան, որպէսզի, եթէ խօսինք պայքարի մասին, անոր սլաքներէն մէկը ուղղուած ըլլար այդ բանաձեւերու փոփոխութեան: Վտանգաւոր է հասարակութեան գիտակցութեան մէջ կատարուածը դարձնել թապու՝ հայրենասիրութիւն հայրենասիրութեան համար սկզբունքով:

Մայիս 11-ին Հայաստանի Հանրային Հեռատեսիլէն Պետրոս Ղազարեան հարցազրոյց վարեց պատմաբան եւ դիւանագէտ Ժիրայր Լիպարիտեանի հետ, որմէ քանի մը միտքեր. «Եթէ չտանք եւ Ազերպէյճանը պատերազմ ընէ եւ շատ աւելին առնէ՝ ինչպէս եղաւ 2020-ի պատերազմին, ի՞նչ պիտի ընենք»: Կամ՝ «Մենք Արցախը կորսնցուցինք արդէն, մենք պատերազմին կորսնցուցինք Արցախի հարցով որեւէ ըսելիք ունենալ: Մենք կորսնցուցինք այդ կարողութիւնը»: Կամ՝ «Ազերպէյճանը որեւէ ատեն կրնայ մտնել Արցախ: Ռուսերը մէկ հրացան պիտի չպարպեն Ազերպէյճանի վրայ»:

Ղարաբաղը տակաւին Ազերպէյճան չէ եւ շատ հեռու է այդպէս ըլլալէ: 120 հազար բնակչութիւնը ինչպէ՞ս պիտի թոյլատրէ վերահսկուիլ Ազերպէյճանի կողմէ: Հայաստան եւ Արցախ կը պնդեն միջազգային մեքանիզմներու անհրաժեշտութիւնը յետագայ բանակցութիւններուն համար, Ազերպէյճան կը մերժէ:

Իսկ մենք՝ աշխարհի հայերս, արցախեան հայրենասիրութիւնը երբեւէ վերածա՞ծ ենք գործնապաշտութեան: Արցախի հայ բնակչութեան թիւը 2013 թուականի 146 հազար 600-էն այսօր իջած է 120 հազարի (թէեւ կը կասկածիմ այս թիւին վրայ): Եթէ այդ դատարկ տարածութիւններուն վրայ այսօր ապրէին մէկ միլիոն հայեր, շատ աւելի պիտի չդժուարանա՞ր Ազերպէյճանի պահանջը, եթէ ոչ դառնար անկարելի: Ինչո՞ւ չգացինք այնտեղ ապրելու, փոխանակ Արցախը դարձնելու մեր հայրենասիրութեան աստիճանը չափելու գործիք: Ինչո՞ւ ես ինքս չգացի այնտեղ ապրելու:

Այս բոլոր խաղերուն մէջ կայ մէկ, միայն մէկ տուժող: Արցախի բնակչութիւնն է ան:

Ժամանակը ցոյց պիտի տայ յետագայ զարգացումները: Դեռ շատ բաներ պիտի կատարուին:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1941 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 8 ՅՈՒՆԻՍ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀկ. عدد رقم ١٩٤١ الخميس ٨ يونيه ٢٠٢٣


## ԱՐՑԱԽԻ ՀԱՐՑՈՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԸ ԿՐԿՆԷ 1920 ՄԱՅԻՍ 24-Ը՝ ՃԱՆԱՉՈՒՄ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԻ ՄԱՍ

**ԹԱԹՈՒԼ ՅԱԿՈԲԵԱՆ**

Վարչապետ Նիկոլ Փաշինեան եւ Հայաստանի գործող իշխանութիւնները, ըստ էութեան, հրաժարեցան Լեռնային Ղարաբաղի ինքնորոշումի իրաւունքի պաշտպանութիւնը հետապնդելէ եւ այս պահուն կը կեդրոնանան Արցախի բնակչութեան իրաւունքներու եւ ապահովութեան խնդիրներուն վրայ:

2020 թուականի 44-օրեայ աղէտալի պատերազմին կրած պարտութենէն եւ Նոյեմբեր 9-ի յայտարարութենէն ետք, Երեւանը հրաժարած է Հայաստանի հետ Արցախի միացումի եւ կամ անոր անկախութեան գաղափարէն: Իրողութիւնները Փաշինեանին պարտադրեցին իջեցընել նշաձողը եւ հաշուի նստիլ իրականութեան հետ:

Նշաձողը իջեցուած էր 1998-ին՝ Վազգէն Սարգսեանի, Ռոբերտ Քոչարեանի եւ Սերժ Սարգսեանի իրականացուցած ռազմական յեղաշրջումէն ետք, բայց այնքան ժամանակ որ նոր պատերազմ չէր եղած, յեղաշրջում իրականացնողները կը վայելէին Արցախեան առաջին յաղթանակը եւ 1994-ի մայիսեան անժամկէտ հրադադարը:

Երեւանը պաշտօնապէս իր համաձայնութիւնը տուած էր «Ընդհանուր Պետութիւն» առաջարկին, որուն առաջին պարբերութեան մէջ նշուած էր. «Լեռնային Ղարաբաղը հանրապետութեան ձեւի պետական եւ տարածքային կազմաւորում է եւ Ազըրպէյճանի հետ միասին կը կազմաւորէ Ընդհանուր Պետութիւն՝ անոր միջազգայնօրէն ճանաչուած սահմաններուն մէջ»:

Երբ Պաքուն չընդունեց այս առաջարկները, Հայաստանի դիւանագէտները սկսան նշաձողը մէկ աստիճան եւս իջեցնել: Այդ ժամանակ շրջանառութեան մէջ դրուած էր «Անկախութենէն ցած, ինքնավարութենէն բարձր», «Տէ ֆաքթօ անկախ, տէ եուրէ՝ ոչ Ազըրպէյճանի կազմի մէջ» եւ նմանօրինակ ձեւակերպումներ:

2022 Մայիս 22-ին Պրիւքսէլի մէջ կայացած վարչապետ Նիկոլ Փաշինեանի եւ նախագահ Իլհամ Ալիեւի հանդիպումէն ետք, պաշտօնական յայտարարութիւն կը տարածէ միայն միջնորդ կողմը, այս պարագային՝ Եւրոպական Միութեան Խորհուրդի նախագահ Շառլ Միշէլ: Կողմերու լռութեան պայմաններուն մէջ, Միշէլի յայտարարութիւնը կարելի է համարել համաձայնեցուած բնագիր Երեւանի եւ Պաքուի միջեւ: «Ղարաբաղի էթնիք հայ բնակչութիւն» ձեւակերպումը կը նշանակէ, որ այս փուլին Հայաստանի համար Արցախի կարգավիճակ չկայ:

Պատահական չէ նաեւ, որ «Ղարաբաղ» բառէն առաջ կը բացակայի «Լեռնային» բաղադրիչը: «Լեռնային Ղարաբաղ» ձեւակերպումը, անկախ կարգավիճակէն, միջազգայնօրէն կը նշանակէր Արցախի տարածքային, ազգային եւ քաղաքական միաւորի գոյութիւն: Անկասկած, Ազըրպէյճան պիտի փափաքէր՝ որ Շառլ Միշէլի հրապարակած բնագիրին մէջ «Ղարաբաղ» բառը ընդհանրապէս գոյութիւն չունենար:

Երեւանը պիտի ձգտի՝ որ Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ ստորագրուելիք խաղաղութեան պայմանագիրերին մէջ երկու երկիրներու՝ փոխադարձ տարածքային ամբողջականութիւնն ու սահմաններու անխախտելիութիւնը ճանաչելու գործընթացին մէջ չըլլայ յստակ կէտ, ըստ որուն Արցախը կը պատկանի Ազըրպէյճանին: Ասիկա է այն հնարաւոր առաւելագոյնը՝ զոր կրնայ ակնկալել Հայաստանը այսօր, այս պայմաններուն մէջ:

Հիմա ըսելիք եւ ընելիք ունի Ստեփանակերտը, որ Ռոբերտ Քոչարեանի եւ իր յաջորդներու ձեռքով դուրս մղուած է բանակցային գործընթացէն՝ զրկուելով իր ճակատագիրը որոշելու կամ կայացուելիք վճիռի վրայ ազդելու հնարաւորութենէն: Առաջին՝ փորձել Նոյեմբեր 9-ի յայտարարութեան, այսինքն՝ գործընթացի մաս կազմել, երկրորդ՝ ուղիղ խօսիլ Պաքուի հետ: Այս է անձնականութիւնը (սուբիեկտայնութիւնը) վերականգնելու անհնարին թուացող, բայց միակ ու սեփական ճակատագիրը տնօրինելու ճանապարհը:

Մեր պատմութիւնը 100 տարի անց ողբերգական կերպով կը կրկնուի ոչ միայն Կարսի եւ միւս տարածքներու կորուստի, այլեւ Արցախի կարգավիճակի հարցով:

Հայոց պատմագրութիւնը հետեւողականօրէն յառաջ տարած է այն թէզը՝ որ Արցախը Խորհրդային Ազըրպէյճանին կցուած է 1921 Յուլիս 5-ի Քաւպիւրոյի յայտնի նիստին: 1923 Յուլիս 7-ին Խորհրդային Ազըրպէյճանը ընդունած է «Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի կազմաւորումի» հրամանագիրը: Այս երկու թուականներն ալ ճիշդ են, բայց կայ մէկ այլ՝ աւելի կարեւոր տարեթիւ ու փաստ, որ կը բացակայի հայոց պատմութեան դպրոցական եւ համալսարանական բոլոր դասագիրքերուն մէջ, աքատեմիք շատ հրատարակութիւններու մէջ:

1920 Մայիս 24-ին, Ջանախչի (այսօր՝ Աւետարանոց, զոր ազըրպէյճանցիները գրաւեցին 2020 Հոկտեմբերի վերջը) գիւղին մէջ տեղի կ՚ունենայ Դրոյի (Դրաստամատ Կանայեան), Գարեգին Նժդեհի, գնդապետ Տմիտրի Միրիմանեանի եւ Արցախի մէջ ՀՅԴ ներկայացուցիչ Արսէն Միքայէլեանի խորհրդակցութիւնը: Մօտ մէկ ամիս առաջ պոլշեւիքները խորհրդայնացուցած էին Ազըրպէյճանը եւ Պաքուի հետ Հայաստանէն կը պահանջէին զօրքերը դուրս բերել Ղարաբաղէն:

Խորհրդակցութիւնը կ՚որոշէ Ղարաբաղի իշխանութիւնը յանձնել տեղի հայ պոլշեւիքներուն: Մայիսի վերջերը իշխանութիւնը կը յանձնուի բժիշկ Սարգիս Համբարձումեանին, եւ հայկական զօրամասը՝ Դրոյի առաջնորդութեամբ, Քիրսի վրայով Յունիսի առաջին օրերը կ՚անցնի Խծաբերդ եւ ապա՝ Զանգեզուր: Նոյնը կ՚ընէ Գարեգին Նժդեհ՝ իր զօրախումբով Հադրութէն նահանջելով դէպի Կապան:

Այսպէս՝ պոլշեւիքներու անմիջական օգնութեամբ եւ սպառնալիքի տակ կը խորհրդայնացուի Արցախը: Ռուսաստանը, սակայն, խորհրդայնացնելով Ղարաբաղը, զայն անմիջապէս չի միացներ Ազըրպէյճանին: 1920 Օգոստոս 10-ի Խորհրդային Ռուսաստանի եւ Հայաստանի միջեւ կնքուած համա-

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՓԱՇԻՆԵԱՆ-ԱԼԻԵՒ-ՄԻՇԷԼ ՀԱՆԴԻՊՈՒՄ ԸՆԴԼԱՅՆՈՒԱԾ ԿԱԶՄՈՎ. ՄԱԿՐՈՆՆ ՈՒ ՇՈԼՑԸ ՁՕԳՆԵՑԻ՞Ն

Քիշնեւում Եւրոպական Քաղաքական Համայնքի գագաթնաժողովի շրջանակներում կայացել է Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի եւ Ադրբէջանի նախագահ Իլհամ Ալիեւի հերթական հանդիպումը: Այդ հանդիպման միջնորդը ԵՄ-ն էր՝ ի դէմս Եւրոպական Խորհրդի նախագահ Շառլ Միշէլի: Այս անգամ բանակցութիւններին մասնակցել են Ֆրանսիայի նախագահն ու Գերմանիայի կանցլէրը: Հանդիպումը տեւել է մօտ մէկուկէս ժամ:

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՊԵՏՆԵՐԸ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՆ ՎԱՐԵԼ ՍՈՉԻՈՒՄ

Հայաստանի ու Ռուսաստանի վարչապետներ Նիկոլ Փաշինեանն ու Միխայիլ Միշուստինը Յունիսի 7-ին Սոչիում բանակցութիւններ են վարել:

Հանդիպման սկզբում Ռուսաստանի կառավարութեան ղեկավարը Նիկոլ Փաշինեանին, ինչպէս նաեւ Հայաստանի նախագահ Վահագն Խաչատրեանին է փոխանցել Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինի ողջոյնները:

«Մենք անկեղծօրէն գնահատում ենք մեր եղբայրական յարաբերութիւնները, դրանք ռազմավարական եւ դաշնակցային բնոյթ են կրում», - ընդգծել է Ռուսաստանի կառավարութեան ղեկավարը:

Նիկոլ Փաշինեանը, իր հերթին, բարձր է գնահատել երկու երկրների յարաբերութիւնների զարգացման դինամիկան եւ, մասնաւորապէս, գործարար համագործակցութիւնը: Նա նաեւ ուշադրութիւն է հրաւիրել փոխադարձ առեւտրի եւ ներդրումային ակտիւութեան աճի վրայ:

«Մենք շատ լաւ դինամիկ ունենք, եւ ես շատ ուրախ եմ, որ ռուսական բիզնէսը Հայաստանում իրեն լաւ է զգում: Նախորդ տարի մենք քննարկել ենք, թէ ինչպէս կարելի է ակտիւացնել տնտեսական կապերը, եւ նայելով արդիւնքներին՝ ես արձանագրում եմ, որ այն, ինչի մասին մենք խօսել ենք,

↳ 4

## ԵՄ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆԸ ԵՐԵՔ ՆՈՐ ԴԱՇՏԱՅԻՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ ԿԸ ԲԱՑԻ ԿԱՊԱՆՈՒՄ, ԻՋԵՒԱՆՈՒՄ ՈՒ ԵՂԵԳՆԱՁՈՐՈՒՄ

ԵՄ քաղաքացիական առաքելութիւնը պատրաստւում է նոր երեք լրացուցիչ դաշտային գրասենեակ բացել Կապանում, Իջեւանում եւ Եղեգնաձորում, յայտարարել է առաքելութեան ղեկավար Մարկուս Ռիտերը՝ Մարտունիում Յունիսի 1-ին ընդունելով Արեւելեան Եւրոպայի եւ Կենտրոնական Ասիայի աշխատանքային խմբի ԵՄ պատուիրակութեանը:

Ներկայացնելով առաքելութեան գործունէութիւնը՝ Ռիտերը, մասնաւորապէս, նշել է, որ առաքելութիւնն իրականացրել է աւելի քան 300 պարեկութիւն Գորիսում, Ջերմուկում եւ Մարտունիում գտնուող իր դաշտային գրասենեակներից:

«Ամէն շաբաթ պարեկներն անցնում են աւելի քան 3800 կմ տարածութիւն: Առաքելութիւնը մեկնարկել է աննախադէպ արագութեամբ՝ սկսելով իր գործողութիւններն այս Փետրուարին», - Յունիսի 6-ի տարածած յայտարարութիւնում ասել է Ռիտերը, շեշտելով՝ առաքելութեան նպատակն է հասնելու սահմանամերձ շրջանների անվտանգութեան կայու-

↳ 4

# ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՈՆ (ԱԼԱՏԻՆ)

## Եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, յօդուածագիր

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Խորագիրը**

Ի՞նչ ըսել կ՛ուզէ խորագիրը՝ *Վերադարձի՛ր աշխատանոց*:

Իր ուղղակի իմաստով, «աշխատանոց»-ը գործածուած է համալսարանական laboratoire-ի իմաստով: Աւելի լայն իմաստով՝ ան կը ներկայացնէ խորհրդանշական իմաստ մը: Ամբողջական կեանքի կամ կեանքի դրուագի մը իմաստալից, արդիւնաւէտ պայքարի պսակումը տեսնելու կարելիութիւնն է աշխատանոցը: Աշխատանոցը իրերու եւ մարդոց ամբողջ եռուզեռն է՝ իր հակասութիւններով եւ հակադրութիւններով, որուն ամբողջական դիտարկումի ընդմէջէն է որ կարելի է հասնիլ ճշմարտութեան:

Երեք պարագաներու հեղինակը ուղղակիօրէն գործածած է «աշխատանոց» բառը, առաջին պարագային զայն կրկնելով երեք անգամ:

Նաւապետի հետ զրոյցի ժամանակ հարց կը բարձրանայ իմաստասիրութեան մասին: Իմաստասիրութիւնը «վախճանն է ուր կը յանգին բոլոր գիտութիւնները որոնք մէկ մէկ ճամբաներ են դէպի հոն առաջնորդող», կ՛արձանագրէ Նորիս (էջ 104): Գիտութեան ճշմարտութիւններուն ճանաչումը դրական մարդը կը բարձրացնէ իր եսէն (էջ 105): Համալսարանական աշխատանոցը աշակերտին առիթ կու տայ մտնելու այդ ճշմարտութիւններուն մէջ: Նորիս խօսքը կ՛ուղղէ նաւապետին. «Կը յիշէ՞ք երբ մեր [համալսարանի] տարրալուծական աշխատանոցին մէջ բոլորուած «գիտութեանց վարդապետ»ին [իմա՝ ուսուցիչներուն, Հ.Ա.] շուրջ կը տեսնէինք հանդիսացումը, պատկերացումը բնութեան մէջ կատարուող խորհուրդներուն. կը շնչէինք եթերը, շոգին, հոտը. անշօշափելիէն կը ստանայինք շօշափելին. հեղուկներէն կը ձեւացնէինք թանձրութիւններ. շփումէն կ՛արտադրէինք ջերմութիւնը. խառնուրդներէն, լուծումներէն կ՛երփներանգէինք գոյները: Կը յիշէ՞ք, պարոն նաւապետ, առանց մղում մը տուած ըլլալու, այլ միայն տարերային այդ բաղադրութիւններուն պատճառներէն եւ պայքարէն կը ստեղծէինք շարժումը, լոյսը: Ո՛հ, պարոն նաւապետ, հոն միայն առաջին անգամ իրարու ըսեր էինք թէ՝ կայ միակ Մեծ-Զօրութիւն մը որ կը գործէ իր անջատ մասնիկներով, իւրաքանչիւրը իրարմէ անկախաբար, բայց հպատակելով Մեծ-Զօրութեան պարտադրած օրէնքին, «Շարժիլ, Լուսաւորել եւ Տեւել»: Այս չէ՞ միթէ այն գերագոյն օրէնքը որին պէտք է որ հպատակի նոյն իսկ ստեղծիչ ոյժը՝ Մեծ-Զօրութիւնը: Ո՞վ կրնայ արգիլել աստղերուն դառնալ՝ երբ պէտք է որ դառնան, արեւին լուսաւորել՝ երբ պէտք է որ լուսաւորէ, ժամանակին տեւել՝ երբ պէտք է որ տեւէ» (էջ 105-106):

Որմէ ետք, նաւապետը՝ որ իր կեանքը կը նկատէ ապարդիւն, հիանալով Նորիսի նպատակային առաքելութեան վրայ, խօսքը կ՛ուղղէ անոր. «Այն խանդավառումը որով կը խօսիք, երեսուն տարիներու ապարդիւն շրջանի մը վիշտը կը պատճառէ հիմա ինծի: Ծերութեան սեմին մօտեցած, մէկ խորհուրդ միայն կու տամ ձեզի. ուր որ ալ ըլլաք, ինչ պայմաններու մէջ ալ որ գտնուիք, եւ որպէսզի պսակուած տեսնէք ձեր կատարած առաքելութիւնը, վերադարձէ՛ք մեր այդ աշխատանոցը: Հոն քովէ քով կամ դէմ առ դէմ, իրարու շղթայուած կամ իրարմէ զգուշաւորօրէն անջատուած, իրարու բարեկամ կամ իրարու թշնամի, գիրար ամբողջացնող եւ կամ գիրար բնաջնջող գործիքներուն, մարմիններուն այդ դասաւորումին մէջէն շատ աւելի որոշ եւ պայծառ կը հնչէ ճշմարիտին քարոզութիւնը: Եւ երբ հասնիք իմ տարիքին, չպիտի զղջաք ապարդիւն կեանքի մը բոլորումը, ինչպէս որ ես... հիմա... աւա՜ղ...»:

Նորիս կը հաստատէ նաւապետին խօսքերը. «Ձեր հայրական յուզեալ շեշտը որով զիս իմ պարտականութեան կը հրաւիրէք, արդէն մտասեւեռումն է որ զիս դէպի նպատակը կը վարէ: Պիտի դառնամ մեր աշխատանոցը, պարոն նաւապետ, վստահ եղէք» (էջ 106-107):

«Աշխատանոց» բառը վէպին մէջ երկրորդ անգամ կը յայտնուի բաւական ուշ: «Մկրտութիւն մը ունիմ մկրտուելու, եւ ի՜նչպէս կը տագնապիմ մինչեւ կատարուի», Յիսուսի խօսքերը կը մէջբերէ Նորիս երկար մենախօսութեան մը մէջ, զանոնք անմիջապէս թարգմանելով իր ներկայ կացութեան՝ «պայքարիլ, յաղթել», զորս կ՛ընդունի իբրեւ իր առաքելութեան դրոշմը: Այս առաքելութիւնը կը նկատէ ըլլալ իր Աշխատանոցը (էջ 382):

Վէպի վերջաւորութեան Նորիս կը մեկնի Պոլիս: Ան «իր սոյն առաքելութիւնը աւարտած համարելով վերադարձեր էր իր աշխատանոցը» (էջ 392):

Աւելի պարզ, աշխատանոցը վերագրումն է առաքելութեան համար պայքարի եւ նպատակադրուած գործողութեան:

**Տիպարներ եւ տրամադրութիւններ**

Կեդրոնական տիպարն է Նորիս Անդէհուր՝ առաքինի, խելացի, զարգացած եւ գործունեայ անձը, որ կը նոյնանայ Վեհակրոնի անձին հետ: Նորիսի տիպարի միջոցով Վեհակրոն կ՛ուզէ արտայայտել իր միտքերը՝ անկախ դէպքերու ճշդութենէն:

«Ան շատոնց ճանչցած էր գաղտնիքներու վեհութիւնը, անչափելի խորութիւնը անհունին որուն կեդրոնն էր իր ուղեղը, եւ իր դատողութիւնը՝ անոր սահմանները» (էջ 75): Այսպիսի արտայայտութեամբ հեղինակը կը ներկայացնէ Նորիսին, բազմաթիւ էջեր տրամադրելով իր գաղափարներուն եւ համոզումներուն (մանրամասն՝ ստորեւ), որոնք նաեւ իրն են՝ հեղինակինը:

Սահուն կ՛ընթանայ Հեղինէի տիպարը՝ միամիտ, բարի կին մը, որուն գերագոյն երջանկութիւնն է ընտանիք կազմել եւ զաւակ կրթել: Ան յաճախ զոհն է կեանքի տարբեր հանգամանքներու, բայց միշտ համակերպող այլ ոչ պայքարող. «Միթէ որբ մը չէ՞ր նաեւ Հեղինէ իր քսան տարեկան հասակին մէջ, անակնկալներու ինչպէս եւ դժբաղդութեանց առջեւ գլուխ ծռող Հայ աղջիկը որին մէջ համակերպումը աւելի բուռն է քան ըմբոստացումը. համակերպում մը որ ուրիշ բանի չէր արդիւնք եթէ ոչ անձնուիրութեան, զոհաբերումի եւ անխարդախ սիրոյ: Քսան տարեկան աղջիկ մը որ որբանոց կ՛երթար, որովհետեւ չէր զգար իր մէջ ոյժը պայքարելու ճակատագիրին դէմ եւ գծելու այն ուղին ուրկէ պիտի ընթանար. որովհետեւ... չէր պատրաստուած: Իրականութենէն պարտուած Հայ աղջիկ էր նէ, բայց ո՛չ յաղթողին զոհը որ տեղի պիտի տար եւ կրէր ամեն նուաստացում: Հեղինէ խմորուած մ՚էր սիրոյ, վեհանձնութեան որ գիտէ ընտրել զինքը կաղապարող ձեռքը» (էջ 18): Յստակօրէն գծագրուած այս տիպարը կենդանի պիտի մնայ ողջ վէպի թաւալքին:

Աւելի բարդ է Մակտան՝ ինքն իր մէջ, եւ իր յարաբերութիւններով շրջապատի հետ:

Պոլսոյ մէջ Նորիս հեռացած է Մակտայէն՝ անոր մէջ տեսնելով կիրք առանց սիրոյ: Բայց Մակտա տակաւին յոյս ունի միանալ հետը եւ որոշած է գտնել զինքը: Անոր հոգեկան վիճակը ազդու ու զօրեղ բառերով վեր կը հանէ վիպագիրը.

«Ամբողջ էութիւնը գրաւուած էր Նորիսով:

«Ներքին ալեկոծումը հանդարտած էր, բայց բուռն բաղխումներէն խորտակուած բեկորի մը նման կը տատանէր իր հանդարտութեան մէջ: Մտամփոփուած՝ զգաց թէ իրենց կատարեալ հասունութեան մէջ արթնցեր էին հոգեկան եւ մարմնային կարողութիւնները: Անգամ մ՚ալ նայեցաւ հայելիին մէջ, կարդաց աչքերուն մէջ ցոլացող կիրքը, շօշափեց մերկութիւնը կուրծքին՝ որին ելեւէջը դեռ չէր հանդարտած, մինչ շապիկին եզերքէն դուրս կը ցցուէր ստինքի մը կէս-բոլորը՝ նման թռչունի մը որ լոյսի եւ գեղգեղանքի տենչանքով պիտի ուզէր խոյս տալ իր վանդակէն: Ցնցուեցաւ Մակտա իր բոլոր էութեամբ: Երկու ձեռքերով ինքնաբերաբար վար ձգեց շապիկը, բոլորակի շրջաններով զննեց իր կազմութիւնը հայելիին մէջ, եւ տափօտ նայուածքներով իր կէս-մերկութիւնը գգուելով սեղմեց զոյգ ստինքները ափերուն մէջ եւ ինքզինքին հետ գրկախառնուած հեռացաւ զարդակահէն» (էջ 61):

Զըսելու համար՝ որ քիչ մը վարը Վեհակրօն կը մտնէ եգիպտայոց համար թապու կալուած մը, ուր պատկերաւոր մանրամասնութիւններով կը նկարագրէ Մակտայի եւ Նորիսի տարփանքի տեսարանը նոյն ինքը Գահիրէի մէջ. «Կատաղութեան եւ աղերսանքի բաղխումէն խորտակուած, կքեցաւ Մակտա իր դողդոջուն ծուներուն վրայ եւ տարածուեցաւ Նորիսի ոտքերուն առջեւ: Երիտասարդը արձանացած՝ կը նայէր, խորշանքի եւ կարեկցութեան պայքար մը սկսած էր անոր մէջ. կ՚ընդունէր թէ իր անկեղծութիւնը ծայրայեղ յուսահատութեան մղած էր Մակտան: Վերցուց զնէ գետինէն, առաւ երկու բազուկներուն մէջ ուր գրեթէ նուաղուն, զգայազիրկ կախ ինկած էր նէրա մարմինը, արտօրանքով եւ չփոթած տարաւ հանգչեցնել անկողինին վրայ. Մակտա կը հառաչէր: Վարդակարմիր հրկիզում մը յաջորդեր էր նէրա դալուկին: Շրթունքները կը դողային, այտերը կը բոցավառուէին. աչքերուն մէջ՝ արիւնի երակներ նոր յուզումի մը ժայթքումը կը մատնէին. կուրծքին արտասովոր ելեւէջը, խռովայոյզ շնչառութեան մը ճնշումին տոկալու գրեթէ անկարող, միացած նէրա յաճախակի ցնցումներուն, ծանր մտահոգութիւն մը պատճառեր էին Նորիսի որ ո՛եւէ վտանգ կանխելու արտօրանքով կը քակէր նէրա սեղմիրանը, կը շփէր թեւերը, կուրծքը որ հազիւ իր մերկութիւնը կը ծածկէր թափանցիկ շապիկին հոլանոյթին ներքեւ: Իր բոլոր ուշադրութիւնը կեդրոնացուցած նէրա աչքերուն ոգեւորումին մէջ՝ Նորիս՝ իր հրակէզ ձեռքերուն հպումին ներքեւ նէրա իրանին վրայ, իր շունչին տաքով կը ջանար կեանք տալ նէրա թմրած միսերուն, մինչեւ զգաց աստիճանական ջերմութիւն մը որ կողերուն խռուչացումին մէջէն եկաւ հպիլ Նորիսի շփումներուն, եւ այսպէս, աչքերը Մակտայի աչքերուն մէջ սեւեռուն՝ հետզհետէ մեղմելով հպումները եկաւ սեղմել զոյգ ստինքները ոգեւորող աղջիկին որ աչքերուն ժպիտովը կը մրմնջէր» (էջ 234):

Ազատ տեսարան մը, որ սակայն կը պղտորէ Նորիս-Վեհակրօնի ինքնարդարացումի տենչաքնով, երբ Նորիս տարփանքի իր մասնակցութիւնը կը վերագրէ «ո՛եւէ վտանգ կանխելու արտօրանք»-ին, մինչ օգտագործուած բառերը իմաստը կը հրեն ուրիշ ուղղութեամբ:

Մակտայի կեանքին մէջ վիպագիրը աւելցուցած է տիպար մը՝ իտալուհի Լէնան, որ կարեւոր դեր կը խաղայ Մակտայի հոգեվիճակին եւ գործողութիւններուն մէջ: Մինչ Մակտա կ՛ուզէ, բայց կը տատանի Հեղինէի դէմ ունեցած վրէժխնդրութիւնը գործնական դարձնել, Լէնան է որ կու տայ վճռական մղումը եւ կը յուշէ գործադրութեան ուղիները: Առանց Լէնայի, Մակտա քաջութիւն պիտի չունենար իրագործել վրէժը: Լէնա ամրացումն է Մակտայի տիպարին:

Բայց յետոյ կու գայ Մակտայի զղջումը եւ կերպարանափոխութիւնը: Ասիկա տեղի կ՛ունենայ՝ երբ Մակտա եւ Լէնա արդէն չունէին յարաբերութիւն եւ Լէնա դուրս ելած էր Մակտայի կեանքէն, որով Մակտայի մէջ վերացած էր չարութեան վճռականութիւնը: Այսպէս կարելի դարձած էր կերպարանափոխութիւնը դէպի բարին:

(Շար. 6)

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՏՈՄԱՅԻՆ ՆՈՐ ԷՆԵՐԳԱԲԼՈԿԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ՆԱԽԱՏԵՍՈՒՄ ԵՆ ՍԿՍԵԼ 2025 ԹՈՒԱԿԱՆԻ ՍԿԶԲԻՆ

Հայաստանի համար հրամայական է անընդհատ ունենալ ատոմային գեներացիա, ուստի մինչեւ 2036 թուականը նախատեսւում է 1000-1200 մեգաուատ հզօրութեամբ նոր էներգաբլոկի կառուցում: Ինչպէս տեղեկացնում է *Արմենպրէսը*, լրագրողների հետ ճեպազրոյցում այս մասին ասաց Հայաստանում ՄԱԿ-ի ազգային էներգետիկ փորձագէտ Արա Մարջանեանը:

«Հայկական ատոմային էլեկտրակայանի շահագործումը երկարաձգելու մեխանիզմը հետեւեալն է. որոշ ժամանակ անց պէտք է անպայման նորից ստուգուի ռէակտորի իրանի մետաղի վիճակը եւ անհրաժեշտութեան դէպքում որոշակի միջոցառումներ իրականացուեն:

«Ինչպէս գիտէք, մէկ տարի առաջ այդպիսի միջոցառումների փուլ անցել է ՀԱԷԿ-ի երկրորդ էներգաբլոկը ↳ 4

# ՀՆՉԱԿԵԱՆ 20 ԿԱԽԱՂԱՆՆԵՐՈՒ ՎԵՐԱՀԱՍ ՎՐԷԺԸ... (ԱՆՑԵԱԼԻ ՅՈՒՇԵՐԷՍ)

**ՍՏԵՓԱՆ ՀԱՄԱՄՃԵԱՆ**

1915-ի ամրան սե՜ւ օրերուն մէջն էինք. տխրամած ու ահասարսուռ էր մթնոլորտը բովանդակ Թրքահայութեան համար. սպանդի եւ զանգուածային տեղահանումներու լուրեր օրը օրին կը հասնէին Պոլիս, մղձաւանջային գալարումներու մէջ առնելով սիրտերը անյոյս ու անպաշտպան Հայորդիներուն:

Պոլսոյ մտաւորականներու ձերբակալումն ու խողխողումը լրացուած էին արդէն անօրէն դահիճներու կողմէ, եւ «կարգը որո՞ւնն է»-ի հարցականը կը պրկէր մեր հոգին, երբ սե՜ւ առաւօտ մըն ալ, 15 Յունիս, իմացանք կախաղաններու վրայ անշնչանալը Հնչակեան 20 կտրիճ Հայորդիներու:

Քսա՜ն Հնչակեաններ, շատերը ծանօթ մեզի, որոնք ձերբակալուեր եւ առանց երկար բարակ դատավարութեան՝ կախաղան բարձրացուեր էին: Եւ ի՞նչ հարկ դատ ու դատավարութեան, քանի որ Հայութեան բնաջնջումը վճռուեր էր արդէն Իթթիհատական կառավարութեան եւ իրեն մեղսակից գերման խորհրդատուներու կողմէ:

Ո՞վ կրնար ձայն բարձրացնել կատարուող անարդարութեան հանդէպ. չէ՞ որ ամբողջ աշխարհը նետուած էր արդէն ահաւոր պատերազմի յորձանքին մէջ, եւ անօրէն Թշնամին ազատ կը զգար ինքզինք սանձարձակօրէն ի գործ դնելու իր Հայութեան բնաջնջումի դժոխային ծրագիրը:

Ոճրածին դահիճներու սանձարձակ գործելու այս ահաւոր շրջանին է որ ահա կախաղաններու վրայ մահացուեցան՝ իրենց ազատագրական պայքարի ճամբուն վրայ՝ 20 Հնչակեան Հայորդիներ, - Փարամազը, Վանիկը, Տօքթ. Պէննէն, Յարութիւն Ճիհանկիւլեանը, Համբարձում Պօյաճեանը, Աչըգպաշեանը, Երուանդ Թօփուզեանը, Յարութիւն Կարապետեանը, Մուրատ Պօյաճեանը եւ իրենց մնացեալ 12 ընկերները, բոլորն ալ եռանդուն ու խոստմնալից հայրենասէրներ:

Հայութիւնը՝ անճրկա՜ծ այդ սեւ օրերուն՝ հանդուրժեց իր կուրծքին վրայ ընդունած այս հարուածին ալ, անէ՛ծքը շրթունքին եւ կսկիծը սրտին:

Յունիս 15-ի այդ սե՜ւ օրուան առաջին պահերուն եղան հայ մամիկներ որոնք երկնային պատուհասը հայցեցին անօրէն Թշնամիին գլխուն, մասամբ թեթեւնալու համար այն վրիժալի կրակէն՝ որ բռնկեր էր իրենց կուրծքին տակ, ի լուր 20 Հնչակեան Հայորդիներու կախաղաններու վրայ մահացման:

Ու պատուհասը չուշացաւ գալ: Նոյն օրը, առաւօտեան ժամը 10-էն սկսեալ բոցաճարակ հրդեհ մը ծայր առաւ Բերայի Թրքաբնակ Գազանճըլար թաղը, ուր լափեց աւելի քան 400 տուն, խլելով մարդկային զոհեր ալ եւ անպատըսպար թողլով բազմահարիւր Թուրք ընտանիքներ:

Հրդեհը տեւեց ամբողջ օրը, եւ մինչ երեկոյեան մութը կու գար վարագոյր քաշել օրուան տխուր ողբերգութեան վրայ, Գազանճըլար թաղը դեռ կը մխա՜ր հրակէզ եւ մոխրացած տուներու շեղջակոյտերէն արձակուած ծուխերէն, որպէս խնկարկում օրուան 20 նահատակներուն...

Երեսո՜ւն տարիներ անցած են այդ օրէն ասդին, եւ ամէն անգամ որ ոգահանդէսներ կը սարքուին Հնչակեան 20 կախաղաններու յիշատակին, յիշողութեանս առջեւ կը ներկայանայ նաեւ պատկերը Գազանճըլարի հրդեհին, որ իբրեւ երկնային պատուհաս՝ եկած էր վրէժը լուծել Հնչակեան 20 Հայորդիներու մահացման:

***Սաւառնակ*, շաբաթաթերթ, Գահիրէ, 22 Յունիս 1946**

---

**ԽՈՀԵՐ**

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ՝ ՃԵՂՔՈՒՄՆԵՐ, ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

### ՀՐԱՊԱՐԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

Հրապարակագրութեամբ կարելի է հասկնալ խնդիրներու շատ լայն տարածութիւն մը: Ակնարկային խոհերս նկատի ունին միայն անոր քաղաքական-կուսակցական կողմը:

1920-էն մինչեւ 1975 թուականի եգիպտահայ մամուլին մէջ մեծ տեղ տրուեցաւ կուսակցական հրապարակագրութեան: Ասիկա փոխարինում մըն էր քաղաքական հրապարակագրութեան, որ այդ տարիներուն գոյութիւն պիտի չունենար ընդհանուր հայկական մամուլին մէջ, քանի որ չկար Հայաստանի (Խորհրդային Հայաստան) քաղաքականութիւն, վերջինս ըլլալով Մոսկուայի սեփականութիւնը: Կային էին նաեւ Հայաստանի սահմանները (ուրիշ հարց՝ ճիշդ թէ սխալ սահմանագծումով):

Քաղաքականութիւնը կուսակցութիւնն էր: Հրապարակագրութիւն երկու ուղղութիւններով՝ ներկուսակցական նուաճումներու ինքնապատկերում, եւ միջկուսակցական պայքար: Այս էր կուսակցական մամուլի քաղաքականութիւնը, ի բացակայութիւն իրական քաղաքականութեան: *Արեւի*, *Յուսաբերի* եւ *Ջահակիրի* (նոր շրջան) խմբագրականներն ու առաջնորդող յօդուածները կուսակցական քաղաքականութեան խօսնակներն էին, մինչ *Արաքս*, *Սաւառնակ*, *Ջահակիր* (Ա. շրջան), *Իմացարան* կը ներկայացնէին ոչ-կուսակցական, անկախ եւ յատուկ խումբերու հրապարակագրութիւնը: Ուշադիր ըլլալու է «անկախ» անուանումէն, քանի որ ան երբեմն պարզապէս վերագրուած է ոչ-կուսակցականին: Կուսակցական չըլլալն (չըլլալ՝ ուրեմն բացասականութիւն) ինքնին համարուած է անկախութիւն, մինչդեռ անկախութիւնը չըլլալէ անդին կ՚ենթադրէ պարփակել ըլլալներու (ըլլալ՝ դրականութիւն) շարք մը: Ըլլալներու մէջ է որ կը գտնուի անկախութիւնը: Ասիկա արդէն նիւթէս դուրս է: Նիւթէս դուրս է նաեւ անուններու նշումը, հետաքրքրականը, դարձեալ, ճեղքումներն են:

Քանի որ ուսումնասիրութիւն չէ ըրածս, այլ ընդամէնը խոհեր՝ խորհերու հաւանականութեամբ, պիտի կատարեմ լոկ քանի մը դիտարկումներ:

Մինչեւ 1975 թուական, եգիպտահայ լրագիրները լուրջ կարեւորութիւն տուած են կուսակցական հրապարակագրութեան: Պէտք եղած յատկանիշներով հրապարագիրի բացակայութեան պարագային, զայն հրաւիրած են ուրիշ գաղութէ, ինչպէս, օրինակ, 1958-ին, երբ *Արեւ* պէտք ունեցած է կուսակցութեան ձայնը ուժեղացնել: Հայկ Ժամկոչեան կը յիշէ. «Գոյնզգոյն գործիչներու կարգին, դուրսէն ներածուած խմբագրիկի մը պաշտօն յանձնեցին Թունաւորել Անկախներու բոյնը»(11):

Լիպարիտ Նազարեանց եւ Բենիամին Թաշեան, հակառակ *Յուսաբերի* մէջ ստանձնած խմբագրական պաշտօններու, հեռու մնացած են կուսակցական հրապակագրութենէ, իրենց հրապարակագրութիւնը ուղղելով դէպի մշակոյթ, լեզու եւ արուեստ, այնտեղ առկայ ազգայինի գաղափարը յաճախ դարձնելով հրապարակագրային նիւթ՝ ըլլելով պահպանողական դիրքերէ: Ազգային հրապարակագրութեամբ անոնք չեն հեռացած իրենց կուսակցութեան ուղեգիծէն, բայց հեռացած են կուսակցական քաղաքականութենէն՝ դիմադրութիւն մը այդ բնագաւառի ընտրած կողմնորոշումին տուեալ ժամանակաշրջաններուն մէջ:

Գալով միւս կողմին՝ *Արեւ*ին, անոր ամենէն երկարատեւ հրապարակագիրը եղած է Միքայէլ Կիւրճեան, սկիզբէն մինչեւ իր մահը 1965-ին, իրեն հեռու պահելով կուսակցական պայքարներէ: Փակագիծի մէջ աւելցնեմ, որ Կիւրճեան եղած է եգիպտահայ մամուլի ամենէն երկարատեւ ու հետեւողական գրողը, իր ստորագրութիւնը սկսելով երեւալ Գահիրէի *Փարոս*ի մէջ 1901-էն սկսեալ:

Բացատրութեան կարիք ունի Վահան Թէքէեանի հրապարակագրութիւնը *Արեւ*ի մէջ, սկիզբէն մինչեւ իր մահը 1945-ին:

Երբ Թէքէեան 1915-ին կը հիմնէր երկօրեան, առաջնորդող յօդուածին մէջ յստակօրէն կը նշէր՝ որ լրագիրը պիտի չպատկանի որեւէ կուսակցութեան կամ հոսանքի: 1920 Յուլիս 5-ին *Արեւ* կը դառնայ Ռամկավար՝ Միքայէլ Կիւրճեանի խմբագրապետութեան օրով: Յետագային Վահան Թէքէեան բազմիցս պիտի վերստանձնէր անոր խմբագրապետութիւնը, անստորագիր խմբագրական-հրապարակագրութիւններով ներկայացնելով կուսակցութեան ձայնը: Ինքը՝ Ռամկավար երդուեալ ընկեր, այդ տեսակ անստորագիր խմբագրականներուն պատճառով կը ստանար *Յուսաբերի* ուղղակի պարսաւանքը եւ երբեմն հեգնանքը՝ կուսակցական պայքարի ծիրէն ներս: Եւ ահաւասիկ, ստորագրեալ յօդուածի մը մէջ բացայայտօրէն կը գանգատի անստորագիր խմբագրականներէն. «Մարդէ մարդ՝ արտայայտութեան եղանակը կը փոխուի անշուշտ: Հաւանօրէն, քիչ մը փոխուած էր թերթին ոգին ալ [երբ 1927 Յունիսին խմբագրապետութիւնը Յովհաննէս Յակոբեանէն կը փոխանցուէր Թէքէեանին, Հ.Ա.]: Բայց գրողը *Արեւ*ն էր միշտ եւ *Արեւ* պէտք տեսած չէր իր խմբագրին փոփոխութիւնը ծանուցանելու՝ քանի որ հաւաքական մարմին մըն էր իր ուղղութեան, իր բոլոր խմբագրական անստորագիր յօդուածներուն պատասխանատուն, երէկ՝ ինչպէս այսօր: Առաջին անգամը չէր որ կուսակցական օրկանի մը մէջ խմբագիր մը ուրիշի մը կը յաջորդէր. այդ առթիւ կրնար տարբերութիւն մը աչքի զարնել երկուքին գրելու եւ մասամբ նաեւ խորհելու կերպերուն միջեւ. ընթերցողին, ինչպէս նաեւ քննադատին կը մնար՝ այդ տարբերութիւնը ի վեր հանել նպաստաւոր կամ աննպաստ կերպով, առանց անձերով զգաղելու, որովհետեւ անձի խնդիր չկար այստեղ, որովհետեւ անձերը ոչ միայն կը ստորադասուին հաւաքականութեան, այլ եւ կը մնան անանուն՝ հաւաքականութեան անունին ներքեւ: Իմ ստեղծած ձեւս չէ այս, ոչ ալ իմ նախընտրածս, բայց ստիպուած էի զայն ընդունիլ այնպէս ինչպէս որ է, ինչպէս որ են առհասարակ կուսակցական թերթերը, մանաւանդ դաշնակցական թերթերը: Այդպէս կը խմբագրուէր *Յուսաբեր* թերթն ալ»(12):

Ուշադրութիւն պիտի դարձնել «իմ նախընտրած» ձեւս չէ այս եւ «ստիպուած էի զայն ընդունիլ այնպէս ինչպէս որ է» արտայայտութիւնները, որոնք անուղղակի գանգատներ են լրագիրի *կուսակցական* բովանդակութեան նկատմամբ եւ կ՚ակնարկեն ինքզինքի հեռացումը անկէ:

Բացի այդ, Թէքէեանի յաճախակի հեռանալները Գահիրէէն, ըստ էութեան, փախուստներ էին կուսակցական պայքարներէն, որոնց մէջ ակամայաբար գտած էր ինքզինք:

Թէքէեանի եւ կուսակցութեան յարաբերութիւնը՝ հակառակ յետագային ներկայացուած վերջին ատտիճան համերաշխ պատկերին, ունի խնդրական բազում կէտեր: Անոր յետմահու գերկուսակցականացումը՝ որ կը շարունակուի մինչեւ այսօր ամենէն աւելի բանասիրական մակարդակով, չէր կրնար ըլլալ Թէքէեանի բաղձանքը:

Թէքէեանը օրինակ մըն է կուսակցական ճեղքումի՝ կուսակցութեան ներսէն, մնալով կուսակցական: Կատարուածը առաւելանիշ մըն էր նոյն ինքը Ռամկավարութեան համար:

* * *

Այսպէս, ըլլայ գրականութեան, քննախօսութեան թէ հրապարակագրութեան մէջ, մեծ մտածողներու բնագիրները հակաճառումներ եղած են միջակ ու ցած բնագիրներուն, հակաբնագիրներ՝ կուսակցականացուած բնագիրներու, եւ իբրեւ բնագիրներ՝ կը ներկայացնեն դիմադրութիւն կուսակցական միակութեան, եւ այս բոլորը՝ կուսակցական մամուլի ընդմէջէն, կուսակցական մամուլի ընձեռած տարածութիւններուն մէջ: Կար, ուրեմն, ներքին խաղի մը կարելիութիւնը:

Արդ, մինչ կուսակցութիւնները փորձած են ամբողջական տիրապետութեան տակ անցընել արտադրուած միտքը, կարեւոր ճեղքումներ եղած են հզօր անհատականութիւններու շնորհիւ:

(Շար. 4)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

11. Հ. Ժամկոչեան, *Ժամանակակից պատմութիւն եգիպտահայոց*, Գահիրէ, Ժողովրդական Մատենաշար թիւ 1, 1971, էջ 20:

12. Վ. Թ., «Ակամայ, անձնական», *Արեւ*, 2 Յուլիս 1928, ԺԵ. տարի, թիւ 2857, էջ 1:

# ՔԱՂԱԿԻՐ

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

### ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, Վարժարանիս 2022-2023 ուսումնական տարեշրջանի Գ. Պատրաստականի Պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

**Գ. Պատրաստական**

| | |
|---|---|
| Էրիքա Կարապետ Գումրուեան | 93.3% |
| Ծորճ Լորիս Քէօհնէլեան | 91.43% |
| Մարք Հանի Հէլմի | 89.82% |
| Նիքօլ Ժորժ Սապպաղ | 88.75% |
| Մեղրի Սահակ Թաշճեան | 81.61% |
| Եար Պէրճօ Սիրական | 80.09% |
| Արամ Պետրոս Մովսէսեան | 71.16% |

**Զերծ Արաբական Նիւթերէ**

| | |
|---|---|
| Ալօնզօ Կարօ Վիգէն Պոյաճեան | 91.88% |

Վարժարանի Տնօրէնութիւնը եւ ուսուցչական կազմը ջերմօրէն կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ աշակերտները իրենց յաջողութեան առթիւ:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ՓԱՇԻՆԵԱՆ-ԱԼԻԵՒ-ՄԻՇԷԼ ՀԱՆԴԻՊՈՒՄ ԸՆԴԼԱՅՆՈՒԱԾ ԿԱԶՄՈՎ. ՄԱԿՐՈՆՆ ՈՒ ՇՈԼՑԸ ԶՕԳՆԵՑԻ՞Ն

1

«Այսօրուայ բանակցութիւնները շատ արդիւնաւէտ էին եւ լաւ նախապատրաստութիւն էին Յուլիսի 21-ին Բրիւսէլում կայանալիք հանդիպման համար», - յայտարարել է Եւրոպական Խորհրդի նախագահը՝ այդպիսով յայտնելով յաջորդ բանակցութիւնների օրը:

Շառլ Միշէլը նաեւ ասել է, որ «կողմերը ինտենսիւ աշխատում են յարաբերութիւնները կարգաւորելու ուղղութեամբ եւ նախատեսում են այս ձեւաչափով հանդիպում [այսինքն՝ էմանուել Մակրոնի եւ Օլաֆ Շոլցի մասնակցութեամբ] կրկնել Իսպանիայում»: Եթէ այդ բանակցութիւնները կայանան, խօսքը Հոկտեմբերի 5-ին հանդիպելու մասին է:

Հնգակողմ բանակցութիւնների արդիւնքում որեւէ փաստաթուղթ չի ստորագրուել:

**Քիշնեւի բանակցութիւններից առաջ եւ յետոյ**

Եւրոպական Խորհրդի նախագահ Շառլ Միշէլն ակնկալում էր, որ Քիշնեւում կայանալիք հնգակողմ հանդիպումը կը հաստատի այն առաջընթացը, որի մասին նա խօսել էր Մայիսին Բրիւսէլում կայացած ղեկավարների հանդիպումից յետոյ. «Մի քանի շաբաթ առաջ ես հնարաւորութիւն ունեցայ Բրիւսէլում հանդիպելու Ադրբէջանի եւ Հայաստանի ղեկավարների հետ: Մենք որոշակի առաջընթաց գրանցեցինք, եւ ես յոյս ունեմ, որ այս հանդիպումը կը դառնայ հնարաւորութիւն վերահաստատելու երկու երկրների միջեւ յարաբերութիւնները կարգաւորելու ընդհանուր քաղաքական կամքը»:

Հնգակողմ հանդիպումից յետոյ Հայաստանի վարչապետի աշխատակազմը յայտնեց. «Հանդիպման ընթացքում քննարկուել են տարածաշրջանային տրանսպորտային եւ տնտեսական ենթակառուցուածքների ապաշրջափակմանը, երկու երկրների միջեւ սահմանազատման եւ սահմանային անվտանգութեան ապահովման աշխատանքներին, Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ յարաբերութիւնների կարգաւորման համաձայնագրին, Լեռնային Ղարաբաղի ժողովրդի իրաւունքների եւ անվտանգութեան հասցէագրման անհրաժեշտութեանը, ինչպէս նաեւ գերիների, անհետ կորածների եւ այլ հումանիտար խնդիրներին վերաբերող հարցեր»:

*JAMnews*

## ԱՐՑԱԽԻ ՀԱՐՑՈՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԸ ԿՐԿՆԷ 1920 ՄԱՅԻՍ 24-Ը՝ ...

1

ճայնագիրով Ղարաբաղը, Զանգեզուրը եւ Նախիջեւանը կը համարուէին վիճելի տարածքներ:

Հայաստանի Հանրապետութիւնը իր գոյութեան 1000 օրերու ընթացքին (1918-1920) ըրաւ հնարաւորը՝ Ազըրպէյճանի հետ երեք վիճելի տարածքները իրեն միացնելու գործին մէջ, սակայն ի վիճակի եղաւ պահել միայն Զանգեզուրը, ան ալ ոչ ամբողջապէս: Ղարաբաղն ու Նախիջեւանը ի վերջոյ մնացին Խորհրդային Ազըրպէյճանի կազմին մէջ:

Եւ վերջինը. պէտք է հասկնալ, որ Արցախի ապահովութիւնն ու պաշտպանութիւնը Հայաստան ստիպուած եղած է յանձնել, պատուիրակել Ռուսաստանին: Պաքուն պիտի ձգտի հասնիլ անոր, որ Երեւանը յստակ կերպով Լեռնային Ղարաբաղը ճանաչէ Ազըրպէյճանի մաս, որպէսզի յետագային այդ փաստը օգտագործէ Ռուսաստանի հետ բանակցութիւններուն մէջ, մասնաւորապէս՝ խաղաղապահները դուրս բերելու նպատակով:

Կը թուի՝ թէ Ալիեւ յաջողած է ազատիլ «հայկական գլխացաւանքէն», բայց անոր համար նոր գլխացաւանք կայ՝ ռուսականը:

**Հայկական Ուսումնասիրութիւնների Անի Կենդրոն**

**24 Մայիս 2022**

*Արեւմտահայերէն փոխադրութիւն՝ Զ.*

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՏՈՄԱՅԻՆ ՆՈՐ ԷՆԵՐԳԱԲԼՈԿԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ...

2

եւ թրծուել է ռէակտորի իրանը, ինչը թոյլ է տուել ատոմային էլեկտրակայանի շահագործման ժամկէտը երկարացնել մինչեւ 2026 թուականը: Գրեթէ նոյն գործընթացները կ՚իրականացուեն 2026 թուականին, որը հնարաւորութիւն կը տայ եւս 10 տարով երկարաձգել շահագործման ժամկէտը», - ասաց Մարջանեանը:

Փորձագէտը նշեց, որ մինչեւ երկրորդ էներգաբլոկը շահագործումից հանելը անհրաժեշտ է նոր էներգաբլոկի կառուցում, որը Հայաստանի համար կարեւոր է ատոմային գեներացիա ունենալու տեսանկիւնից:

«Ինչպէս գիտէք, նախորդ տարի Հայաստանի եւ Ռուսաստանի միջեւ ստորագրուեց միջպետական համաձայնագիր, որով նախատեսւում է 1000-1200 մեգաւատ հզօրութեամբ էներգաբլոկ կառուցել:

«Ըստ համաձայնագրի՝ մէկ տարուայ ընթացքում պէտք է մշակել ճանապարհային քարտէզ, պէտք է վերջնական որոշում կայացնել՝ ռէակտորի տիպի եւ այլ տեխնիկական պարամետրերի հետ կապուած: Իսկ արդէն 2024 թուականի աւարտին եւ 2025 թուականի սկզբին կը սկսուեն կառուցման աշխատանքները: Ատոմային էներգաբլոկի կառուցումը կ՚արժենայ մօտ 3-5 միլիարդ դոլար: Կարծում եմ՝ խելամիտ ծախս է, եւ Հայաստանի համար հրամայական է անընդհատ ունենալ ատոմային գեներացիա իր տարածքում: Կարծում եմ, որ 10-12 տարում հնարաւոր կը լինի այն կառուցել», - եզրափակեց նա:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱՊԵՏՆԵՐԸ ...

1

մեծ մասամբ կեանքի է կոչուել», - արձանագրել է Միշուստինը:

Սոչիում կայացել է Եւրասիական Միջկառավարական Խորհրդի եւ ԱՊՀ Կառավարութիւնների ղեկավարների խորհրդի նիստը:

Միխայիլ Միշուստինը նշել է միջկառավարական յանձնաժողովի արդիւնաւէտ աշխատանքը, որի շնորհիւ ընդլայնւում է Ռուսաստանի եւ Հայաստանի միջեւ գործընկերութիւնը:

Ռուսաստանը շահագրգռուած է նոր համատեղ նախագծեր սկսել էներգետիկայի, հանքարդիւնաբերութեան, թուայնացման եւ ագրոարդիւնաբերութեան ոլորտներում, ասել է Ռուսաստանի վարչապետը:

Նա նաեւ չեշտել է՝ Ռուսաստանի, Հայաստանի եւ Ադրբէջանի ղեկավարների պայմանաւորուածութիւններին համապատասխան՝ համակարգուած աշխատանք է տարւում Անդրկովկասում տնտեսական եւ տրանսպորտային կապերի ապաշրջափակման ուղղութեամբ, ստեղծւում են ենթակառուցուածքային նոր ուղիներ:

Հայաստանի վարչապետը նշել է այն շօշափելի առաջընթացը, որը, իր կարծիքով, ձեռք է բերուել վերջին հանդիպման ժամանակ: Նիկոլ Փաշինեանն ընդգծել է Հայաստանի պատրաստակամութիւնը՝ շարունակելու նման աշխատանքը եւ իրականացնելու ձեռք բերուած պայմանաւորուածութիւնները:

## ԵՄ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆԸ ԵՐԵՔ ՆՈՐ ԴԱՇՏԱՅԻՆ ԳՐԱՍԵՆԵԱԿ ԿԸ ԲԱՑԻ...

1

նացմանը:

Վկայակոչելով Հայաստանի պաշտօնեաների յայտարարութիւնները՝ Ռիտերը նկատել է՝ «առաքելութիւնը նպաստել է իրավիճակի որոշակի կայունացմանը, այնուամենայնիւ, իրավիճակը մնում է անկայուն»:

*Յունուարի վերջին Եւրամիութիւնը հաւանութիւն է տուել Հայաստանում քաղաքացիական առաքելութեան ստեղծմանը, որը, պաշտօնական Բրիւսէլի համոզմամբ, «կը նպաստի սահմանային գօտիներում կայունացմանը, վստահութեան ամրապնդմանը եւ Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ յարաբերութիւնների կարգաւորմանը»: Եւրամիութեան 100 դիտորդները Հայաստան ժամանեցին Փետրուարի վերջից: Առաքելութեան մանդատը երկու տարի է, օպերատիւ շտաբը Հայաստանում է: Չնայած թէ՛ Եւրամիութիւնը, թէ՛ Հայաստանը չեշտում են, որ առաքելութիւնը քաղաքացիական է, անզէն եւ տեղակայւում է բացառապէս Հայաստանի տարածքում, Ռուսաստանը եւ Ադրբէջանը քանիցս պաշտօնական յայտարարութիւններում ցոյց են տուել իրենց բացասական դիրքորոշումը տուեալ հարցում:*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1942 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 22 ՅՈՒՆԻՍ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ.

عدد رقم ١٩٤٢ الخميس ٢٢ يونيه ٢٠٢٣


## ՇՈՒՇԻՆ ԵՒ ՁՈՐՍ ՀԱԶԱՐ ՀՈԳՈՒՆ ՓՐԿԵԼ ՉՅԱՋՈՂՈՒԵՑ. ՔՆՆԻՈՒՄ Է ՓԱՇԻՆԵԱՆԸ

*Յունիսի 20-ի առաւօտեան վարչապետ Նիկոլ Փաշինեանը մասնակցում է 44-օրեայ պատերազմն ուսումնասիրող խորհրդարանական քննիչ յանձնաժողովի նիստին: Ձնայած քննիչ յանձնաժողովի նիստերը սովորաբար դռնփակ են անցկացւում, Փաշինեանի ելոյթը հեռարձակւում էր լայն ռեժիմով:*

**Ալիեւը չէր ուզում**

Ինչո՞ւ 44-օրեայ պատերազմը կանգ առաւ միայն Նոյեմբերի 9-ին: Ըստ Փաշինեանի՝ չրջադարձային դեր խաղաց Շուշիի անկումը:

«Էականն այստեղ Շուշիի ռազմավարական արժէքն էր՝ հարուածի տակ էր յայտնուելու Ստեփանակերտը, շուրջ 25 հազար զինուոր կը յայտնուէր շրջափակման մէջ ընկնելու վտանգի տակ: 2020-ի Նոյեմբերի 9-ի յայտարարութիւնը պատերազմը կանգնեցնելու մեր 5-րդ փորձն էր»:

Առաջին փորձը տեղի է ունեցել Հոկտեմբերի 7-ին, երբ ծննդեան օրուայ առիթով Փաշինեանը զանգահարել է Ռուսաստանի նախագահին: Ըստ նրա, այդ օրը Պուտինն առաջարկել է իր միջնորդական ջանքերը՝ հնարաւորինս արագ կրակի դադարի հասնելու համար:

«Մեր ըմբռնումն այն էր, որ կրակը պէտք է դադարեցուի առանց նախապայմանների, կողմերը պէտք է մնան այդ պահին իրենց զբաղեցրած դիրքերում ու յետոյ սկսուեն խորհըրդակցութիւններ», – պատմել է Փաշինեանը՝ նչելով, որ նոյն օրը տեղի ունեցած երկրորդ հեռախօսազրոյցի ընթացքում Ռուսաստանի նախագահը փոխանցել է, որ Իլհամ Ալիեւը համաձայն չէ հրադադար հաստատելուն:

Յաջորդ օրը Պուտինը տեղեկացրել է Փաշինեանին՝ ադրբէջանական կողմը նախապայմաններ ունի՝ ակնկալում է, որ առանց մարտի իրենց յանձնուի Ֆիզուլին, հայկական ուժերը Արաքսի երկայնքով նահանջեն մինչեւ Խուդաֆերինի ջրամբար՝ այնպէս, որ ջրամբարը լինի Ադրբէջանի վերահսկողութեան տակ:

«Բացի դա, Ադրբէջանի ղեկավարութիւնն ակնկալում էր եւ ստանալ Արցախում սպանութեան եւ մարդու առեւանգման համար իրենց պատիժը կրող Գուլիեւին եւ Ասկերովին՝ հնարաւոր համարելով իր հերթին գերիներ վերադարձնել: Այս ամէնի դիմաց ոչ թէ ռազմական գործողութիւնների դադար էր յայտարարուելու, այլ ընդամէնը հումանիտար հրադադար՝ զոհուածների յուղարկաւորութիւնը կազմակերպելու համար»:

Երեւանը այս նախապայմանները չի ընդունել:

**Յանուն Շուշիի**

«2020 թուականի Հոկտեմբերի 19-ին Ռուսաստանի նախագահն ինձ ասաց, որ ադրբէջանական կողմն ունի եւս մէկ պայման: Նրանք ակնկալում են երաշխիքներ, որ ադրբէջանցի փախստականները, որոնք, ըստ ադրբէջանական կողմի, հակամարտութիւնից առաջ կազմել են Շուշիի բնակչութեան 90 տոկոսը, վերադառնան Շուշի: Ռուսական կողմի համար սա ընկալելի առաջարկ էր, որովհետեւ նրանք ասում էին, որ Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորման պլանի մէջ, որը սեղանին է եղել դեռ երկար տարիներ առաջ, միշտ էլ ներառուել է փախստականների եւ ներքին տեղահանուածների վերադարձը Լեռնային Ղարաբաղ: ...[Պատերազմից յետոյ] ինձ մեղադրում էին նրա մէջ, որ եթէ ես համաձայնէի, որ ադրբէջանցիները վերադառնային Շուշի, այն կը մնար հայկական վերահսկողութեան ներքոյ, եւ թէկուզ ադրբէջանցիներով բնակեցուած՝ կը լինէր հայկական», – ասել է Փաշինեանը:

Ռուսաստանի նախագահն, ըստ նրա, առաջարկել է, որ փախստականների վերադարձի հարցը փոխկապակցուածութեան մէջ դրուի Լեռնային Ղարաբաղի կարգավիճակի հետ, այսինքն՝ նախկին ԼՂԻՄ ադրբէջանցիների վերադարձի հարցը լուծուի Ղարաբաղի կարգավիճակի հարցի համատեքստում, դրա վերաբերեալ ենթադրեալ որոշման հետ միաժամանակ:

«Ես այս ձեւակերպմանը համաձայնեցի, բայց ադրբէջանական կողմը, ինչպէս նախկինում, մերժեց՝ ասելով, որ կարգավիճակի հետ կապուած որեւէ հարց պատրաստ չէ քննարկել: Աւելին՝ այդ պահին արուող առաջարկի համաձայն՝ ոչ միայն Շուշիում ապրող, այլեւ բոլոր ադրբէջանցիները պէտք է ուղիղ եւ անարգել հասանելիութիւն ունենային դէպի Շուշի: Ասենք, օրինակ, 50 հազար ադրբէջանցի կարող էր հիւր գնալ Շուշիում ապրող ադրբէջանցու եւ այստեղ որեւէ սահմանափակում չէր կարող լինել՝ ընդհուպ կարող էին գնալ եւ մնալ:

«Բայց ամենակարեւոր հարցը՝ ինչպէ՞ս է ապահովուելու նրանց տեղաշարժը: Պարզուեց, որ Շուշին Ադրբէջանին կապող նոր ճանապարհ պէտք է կառուցուի, որպէսզի ադրբէջանցիները Շուշի հասնելու համար Լաչինի միջանցքից կամ որեւէ այլ գոյութիւն ունեցող ճանապարհից օգտուելու անհրաժեշտութիւն չունենան:

«Այսինքն՝ Ադրբէջանի այդ պահի առաջարկով Շուշիում պէտք է լինէր առնուազն 95 տոկոս ադրբէջանական բնակչութիւն, ըստ էութեան, առանց յետագայ աւելացման սահմանափակման կամ վերահսկման: Նրանք պէտք է Շուշին Ադրբէջանին կապող առանձին ճանապարհ ունենային, որը պէտք է դուրս լինէր Լաչինի միջանցքից եւ լինէր իրենց վերահսկողութեան ներքոյ: Դա նչանակում է, որ այնտեղ կարող է լինէին ադրբէջանական զինուած ստորաբաժանումներ:

«Սա էլ իր հերթին նչանակում է, որ խօսքը, առանց չափազանցութեան, Շուշին Ադրբէջանին յանձնելու մասին էր:

«Այն ժամանակ այս առաջարկը չընդունելու պրակտիկ հիմնաւորումներից մէկը հետեւեալն էր՝ դա նչանակում էր, որ Լաչինի միջանցքը չի գործելու, որովհետեւ ադրբէջանցիները ցանկացած պահին կարող են այն փակել, որովհետեւ Շուշին Լաչինի միջանցքի մէջ չէր մտնելու, իսկ Լաչինի միջանցքն անցնելու էր Շուշիից մի քանի մետր այն կողմ: Վերջին չրջանի իրադարձութիւնները այն ժամանակուայ կանխատեսումն ապացուցեցին բոլորին յայտնի հանգամանքներով»:

**Սողացող անկում**

Վարչապետը չեչտել է՝ իր դիրքորոշումն ինչպէս հիմա, այնպէս էլ այն ժամանակ, եղել է հետեւեալը՝ ճանապարհները պէտք է բացուեն, Ադրբէջանի արեւմտեան չրջանները պէտք ↳ 4

### ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԳ ՓՈԽՆԱԽԱՐԱՐԸ ՆԵՐԿԱՅԱՑՐԵՑ, ԹԷ ՀԱՅԱՍՏԱՆՆ ՈՒ ԱԴՐԲԷՋԱՆԸ ՈՐ ՀԱՐՑԵՐՈՒՄ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԵԱՆ ՉԵՆ ԳԱԼԻՍ

Հայաստանի արտաքին գործերի փոխնախարար Վահան Կոստանեանը ներկայացրեց, թէ խաղաղութեան բանակցութիւնների չրջանակում Հայաստանն ու Ադրբէջանը սկզբունքային որ հարցերի չուրջ դեռեւս համաձայնութեան չեն գալիս:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ անդրադառնալով հարցին, թէ ո՞ր հարցերի չուրջ կոնսենսուս չկայ՝ Կոստանեանն ԱԺ-ում լրագրողների հետ ճեպազրոյցում պատասխանեց՝ սկզբունքային հարցերի չուրջ:

«Այդ թւում քարտէզի ֆիքսման, թէ որ թուականին քարտէզի հիման վրայ պէտք է տեղի ունենայ յետագայ սահմանազատման գործընթացը, երաշխաւորների ինստիտուտի հետ կապուած, ԼՂ ժողովրդի անվտանգութեան երաշխիքների հետ կապուած, Բաքու-Ստեփանակերտ երկխօսութեան միջազգային մեխանիզմի հետ կապուած, ցաւօք սրտի, այս պահին դեռեւս չկայ համաձայնութիւն, երկու կողմերի տեսակէտները բաւականին հեռու են միմեանցից», - ասաց Կոստանեանը:

Փոխնախարարը, սակայն յաւելեց, որ աչխատանքները չարունակւում են:

### ՍՈՒՏԱՆ

## ՍՈՎԱՄԱՀ ԵՂԱԾ ՀԱՅ ՔՈՅՐԵՐԸ ՉԷԻՆ ՈՒԶՈՒՄ ԼՔԵԼ ԽԱՐԹՈՒՄԸ

Հայաստանի արտգործնախարարութիւնը հաստատել է՝ Յունիսի 10-ին Սուդանի մայրաքաղաքում յայտնաբերել են երկու հայ կանանց դիերը: Տարեց քոյրերը, ամենայն հաւանականութեամբ, սովամահ են եղել Յունիսի առաջին օրերին:

«Զուարթ եւ Արփի Եկաւեաններ, որոնք կը բնակէին մայրաքաղաք Խարթումի թիւ 51 փողոցը գտնուող իրենց յարկաբաժնին մէջ, մահացած են ուտելիք եւ ջուր չունենալու, այլ խօսքով՝ սովի պատճառով:

«Անոնց ուտելիք մատակարարող անձը վերջին չաբթուան ընթացքին չրջանին մէջ տեղի ունեցած մարտերուն պատճառով չէ կրցած հասնիլ օգնութեան եւ տարածուած է անոնց մահուան բօթը», – աւելի վաղ գրել էր *Արեւելք* կայքը: ↳ 4

## ԵՄ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆԸ ՊԱՐԵԿՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ ԳՐԱՌՈՒՄ Է ԿԱՏԱՐԵԼ

«Այսօր Եւրոպական Խորհրդարանի պաչտպանութեան հարցերով ենթայանձնաժողովի պատուիրակութիւնը միացաւ դէպի Լաչինի միջանցք տանող Հակարիի կամրջի մերձակայ տարածքում Մարկուս Ռիտերի գլխաւորած Եւրամութեան պարեկութեանը՝ տեղում անվտանգային իրավիճակն աւելի լաւ հասկանալու համար», - Յունիսի 21-ի Թուիթէրում գրել է Հայաստանում Եւրամիութեան առաքելութիւնը:

Լաչինի միջանցքի արգելափակումն ապօրինի է եւ պէտք է դադարեցուի, Յունիսի 20-ին յայտարարեց Եւրախորհրդարանի անվտանգութեան եւ պաչտպանութեան հարցերով ենթայանձնաժողովի նախագահ Նատալի Լուազոն, ով մինչ այդ իր պատուիրակութեամբ այցելել էր Սիւնիք, մօտեցել Հակարիի կամրջին՝ տեղում ծանօթանալու իրավիճակին:

Եւրոպացի պատգամաւորը նաեւ չեչտեց, որ Եւրոպական Խորհրդարանն ամբողջովին կողմ է Լաչինի միջանցք փաստահաւաք առաքելութիւն ուղարկելու գաղափարին:

# ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՕՆ (ԱԼԱՏԻՆ)

## Եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, յօդուածագիր

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Միաւորող իմաստներ**

Երկրորդ գլուխը («Մահաստաններու տղայ») կը ներկայացնէ Նորիսի, Հեղինէի եւ Տիգրանի ճամբորդութիւնը Պոլիսէն Աղեքսանդրիա՝ որ կ՚անցնի շոգենաւին վրայ, որմէ ետք արագօրէն կը նկարագրուի անոնց մեկնումը Գահիրէ եւ խաղաղ հաստատուիլը այնտեղ: Շոգենաւին վրայ նաւապետի եւ Տիգրանի հետ երկար զրոյցներու, ինչպէս նաեւ առանձին մենախօսութիւններու միջոցով է որ Նորիս կ՚արտայայտէ համոզումները:

Կեանքի առաքելութիւնը, պարտականութեան գիտակցութիւնը, միտքի տիրապետութիւնը, գաղափարականի ազնուութիւնը կրկնուող գաղափարներ են, որոնք հենքն են աշխատանոցին: Օրինակ, Նորիս կը խոկայ ինքզինքին հետ. «[Պ]իտի մեռնիմ, այո՛, բայց մինչեւ այդ, պիտի ապրիմ պարտականութեան գիտակցութեամբ եւ գոհացումովը յատկութիւններուս պահանջին» (էջ 78): Կը խօսի Տէրօնեանի հետ. «Ինչպէս որ կենդանիները կը շարժին, կը գործեն անգիտակից թէ լաւագոյնն է որ կ՚ընեն, նոյնպէս ալ մենք կը խորհինք, կը գործենք բնազդին թելադրանքով, բայց միտքին ուղղութեամբ» (էջ 80): Այս համոզումները Նորիսի մօտ արմատացած էին երիտասարդ տարիքէն: Գահիրէի Տէրօնեաններու տան ընդունելութեան ժամանակ, Նորիսի Փարիզի ուսանողական տարիներու ընկերը կը յիշեցնէ անոր աւարտաճառի տպաւորիչ խօսքերը. «Ո՛ր եւ է գաղափարական չունի արժէք երբ չ՚արտադրեր ազնիւ դրականութիւն մը. նոյնպէս ալ ո՛ր եւ է դրական յաջողութիւն անհիմն է եւ անարժէք երբ չ՚իրականացներ ազնիւ գաղափարական մը» (էջ 178):

Կրօնքին միսթիքականութիւնը ճշմարիտ չէ՝ առանց խիղճի տիրապետութեան. «Բայց ի՞նչ է եղած կրօնքներու գաղտնիքը», Նորիս կը հարցնէ նաւապետին եւ կու տայ պատասխանը. «Միսթիքը, աստուածայինը պատկերացնել, իմանք առարկայօրէն, ուրիշներ գաղափարներով եւ այդ պատկերացումները բարոյականով զօդել իրենց սկզբնապատճառին հետ: Հեթանոսութիւնը չունէր բարոյական որով շուտով տապալեցան աստուածները, քանդուեցան կռատունները: Յիսուսի քարոզութիւնը համակ բարոյական է: Կրօնքն է որ պիտի տեւէ յաւիտեան, երբ զինակցելով ազատ իմացականութեան հետ արմատախիլ ընէ առասպելները, խեղաթիւրումները եւ կանգնէ նոր Յիսուսականութեան մը պաշտամունքին ճշմարիտ տաճարը՝ պատկերացնելով միսթիքը՝ աստուածայինը բուն իսկ խիղճին տիրապետումին մէջ» (էջ 99):

Նորիս կը պատմէ սիրոյ մասին: Իրական սէրը պէտք ունի գորովի, կը պնդէ ան. «Սէրը առանց գորովի արտայայտումն է կիրքի մը որ ուրիշ բանի չի բաղձար եթէ ոչ իր յագեցումին» (էջ 145): Կամ՝ «Առանց գորովանքի ձեր սէրը տափական է, անասնական» (էջ 146):

Այս բոլոր գաղափարներով Նորիս (Վեհակրօն) հերքած կ՚ըլլայ կեանքը ինքն իր մէջ, կրօնքը ինքն իր մէջ, սէրը ինքն իր մէջ հասկացողութիւնները, իւրաքանչիւրին մէջ տեսնելով իմաստներ՝ որոնք կը միաւորեն բոլորը:

**Ամուսնութիւն**

Ըստ Նորիսի՝ տղամարդու տեսանկիւնէն դիտուած, ամուսնութեան մղողը անձնասիրութիւնն է՝ երբ մարդ իր կամքին կը կապէ կնոջ մը ճակատագիրը, յետոյ սիրոյ կիրքն է՝ որուն յագեցումին առարկայ կը նկատէ կինը: Մնացեալը բնական հետեւանքներն են այն պահէն սկսեալ՝ երբ կիրքը կ՚օրինականացուի ընկերութեան պարտադրած պայմանով՝ ամուսնութեամբ: Կիրքի օրինակացումը ամուսնութեամբ ընկերային է (քաղաքային ամուսնութիւն) եւ ոչ թէ կրօնական: «[Ջ]որս հարիւր տարիներ պէտք եղաւ եկեղեցիին խլելու իւրացնելու համար իրաւունք մը որմէ պէտք էր որ բացարձակապէս հեռու մնար: Եւ հազար վեց հարիւր տարիներու պէտքը տեսնուեցաւ ետ առնելու անկէ այդ կորզուած իրաւունքը» (էջ 143):

Արդ, «[ա]մուսնութիւնը ուրիշ բան չէ եթէ ոչ այր եւ կնոջ միացում մը փոխադարձ օգնութեան յանձնառութեամբ, ճակատագիրի նոյնացումով, կենակցական տեւողութեան շրջանին»: Իսկ ամենաէականը՝ «[չ]կայ ամուսնութիւն երբ ան չէ՛ հաստատուած փոխադարձ գորովանքի վրայ»: Գորովանքէն բխող սէրը փոխադարձ է զոյգին միջեւ, փոխադարձաբար պարտաւորիչ եւ տեւական, այլապէս սէրը կը մնայ տարփանք, անասնային (էջ 144-146):

Ընկերային-քաղաքացիական ամուսնութեան պիտի յաջորդէ ապահարզանի վտանգը, կը միջամտէ Տէրօնեան, որուն Նորիս կը պատասխանէ. «Վտանգ չէ՛ ան, այլ փրկութիւն: Տառապանքը դժոխքէն դուրս շատ աւելի հեշտին է քան դժոխքէն ներս» (էջ 145): Ապահարզանը փրկութիւն մըն է՝ երբ ամուսնութիւնը հասած է անելանելի վիճակի: Այս է Նորիսի կարծիքը:

**Սէր եւ կիրք**

Սիրոյ եւ կիրքի տարբերութիւնը Նորիս կը ներկայացնէ պարզ ձեւակերպումներով՝ Մակտային հասցէագրած նամակին մէջ.

- «Սէրը կ՚ազնուացնէ, կիրքը կը տկարացնէ, կը մոլորեցնէ» (էջ 121):
- «Կիրքի պայքարին մէջ յաղթանակ եւ պարտութիւն զիրար կ՚արժեն» (էջ 122):
- «Եթէ սէրը կը պարտադրէ կեանքի զոհաբերում, կիրքը կը պարտադրէ անձի զոհաբերում» (էջ 122):

**Յեղափոխութիւն**

Վէպի հեղինակային բացատրութիւններուն մէջ դիտել կը տրուի՝ որ թէեւ յեղափոխութիւնը ընդհանրական էր Հայաստանէն մինչեւ Մակեդոնիա՝ իբրեւ թրքական գործօնի արդիւնք, բայց եւ այնպէս, կոտորածները կը կիրարկուէին յատկապէս հայերուն նկատմամբ: Գլխաւոր սկիզբը՝ 1895 թուական. «1895 տարին Թուրքիոյ պետական կեանքին մէջ երեւցող քանի մը բաղդորոշ հանգրուաններէն գլխաւոր եւ դէպի անկում առաջնորդող այն հանգրուանն էր յորում արտաքին սակարկութիւններով, մենաշնորհներով ուզուեցաւ պետականօրէն խեղդել ներքին առանձնաշնորհումները: Նախ արդարութեան, յետոյ գրկանքի եւ հուսկ ապա հալածանքի քաղաքականութիւնը ճակատագրականօրէն բռնկցուցեր էին յեղափոխական կրակը որուն հրդեհումը տարածուեր էր Հայաստանէն մինչեւ Մակեդոնիա: Բայց ապահովաբար բնաջնջումի ծրագիրը յղացուած էր առաւելապէս հայ ազգին համար» (էջ 86):

Նորիսի հետ զրոյցի ընթացքին, Տիգրան Տէրօնեան կը քննադատէ հայ յեղափոխական շարժումը՝ իր ձախողութեան համար.

«Ի՛նչ անխոհեմութիւններ...: Հեռուէն դիտող մը միայն պիտի կարենար ճշդել անոնց վնասակար հանգամանքը: [...]

«Չեմ կրնար ըմբռնել, թէ մարդ որքա՛ն կուրօրէն տարուած ըլլալու է իտէալէ մը որին առջեւ բացուած անդունդը երկու քայլ հեռուն ըլլայ» (էջ 134):

Բայց անոնք զոհուած են իտէալի մը համար, կ՚առարկէ Նորիս. «Իտէալի մը համար պաշտուած աստուածներուն ո՞րն է աւելորդը: Չկայ անտեղի զոհաբերում երբ իտէալի մը յաղթանակին համար է: [...] Կ՚անցնին բոլոր կրօնքները իրենց բոլոր սուրբերով, բայց պիտի մնայ ընդհանուր մարդկութեան կրօնքը՝ Ազատութիւնը՝ իր սուրբերով» (էջ 137):

Միաժամանակ, Նորիսի համար ասիկա չի նշանակեր՝ թէ յեղափոխականներուն բռնած ուղին ճիշդն էր: Եղածը պէտք է ըլլար՝ *քանի որ եղաւ*, կ՚ըսէ ան: Ըսել կ՚ուզէ՝ անցեալը չենք կրնար փոխել: Կարեւոր է ապագան ճիշդ գծել: Ազատութեան իտէալին համար զոհուիլը անհրաժեշտութիւն մըն էր՝ անկախ ընտրուած ուղիէն: Այսպէս կարելի է հասկնալ Նորիսի խօսքերը. «Ինչպէս որ կրակին մէջ գտնուող մը միայն պիտի զգար այրուցքին սաստկութիւնը: Պարոն Տէրօնեան, իրաւունք չունիք դատապարտելու անցեալը, բայց ունիք իրաւունքը, մանաւանդ թէ պարտականութիւն է խորհուրդ տալ ապագային համար: Որովհետեւ՝ ինչ որ եղած է, պէտք էր որ ըլլար քանի որ եղաւ. սակայն՝ ինչ որ պիտի ըլլայ, կրնայ ըլլալ այնպէս ինչպէս մենք ուզենք: Ամեն գործունէութեան մէջ այս երկրորդ պարագան ըմբռնողներուն մէջն է յաջողութեան գաղտնիքը: Յեղափոխութիւնը սանձարձակ ձին է. ա՛ն է որ նախ հանդարտօրէն իր ժանգոտած բերնակապը կրծելէ, մաշեցնելէ յետոյ, յուսահատ բայց գերբնական խածուածքով մը կոտրած է երկաթը եւ կը դիմէ դէպի ազատութեան կայանը ուր հասնելու համար կը քանդէ, կը տապալէ: Երանի՜, եթէ չէ սխալած ճամբային ընտրութեան մէջ» (էջ 134):

Վերջապէս. «Յեղափոխութիւնները պիտի յաջորդեն իրարու: Զէնքերու շաչիւնին պիտի յաջորդէ գաղափարներու բաղխումը որմէ պիտի արտացոլայ ճշմարտութիւնը: Բոլոր ազգերուն վիճակուած է մասնակցիլ պայքարին: Խոհեմ ըլլանք ներկայ եւ ապագայ զոհաբերումներու պարտականութեան մէջ» (էջ 141):

**Ընկերվարութիւն եւ ազգայնականութիւն**

Ընկերվարական եմ՝ աւելի քան ընկերվարականները, բայց աւելի քան ազգայնական՝ քան ազգայնամոլները, կ՚առարկէ Նորիս Տէրօնեանին: Ուրեմն, նախ ազգային, յետոյ ընկերվարական, պիտի հասկնալ, քանի որ մոլի է ազգայնական տեսանկիւնէն՝ բայց ոչ ընկերվարական:

Կ՚ուզէ կապել երկուքը: Կը մերժէ ազգերու համաձուլուածքը, այլ կ՚ընդունի ազգերը իբրեւ անկախ գոյութիւններ (ազգայնականութիւն), պայմանով որ անոնք կապուած ըլլան փոխադարձ պարտականութեան սկզբունքով եւ միացեալ հաւաքատիրութեամբ (ընկերվարութիւն). «Աւելի ընկերվարական, բայց նաեւ՝ աւելի ազգայնական քան ո՛ եւ է ազգայնամոլ մը: Ահա այս երկու դաւանանքները կրցած եմ հաշտեցնել իմ մէջ. որովհետեւ ազգայնականութիւնը առհաւական է բացարձակօրէն անժխտելի է ցեղի մը համար: Ո՛ եւ է որդի չի կրնար ուրանալ իր հայրը: Բայց մոլեռանդութիւն մը պիտի ըլլար սա՝ եթէ անհատը ուրանար իր նմանին համար իրաւունքի մը ճանաչումը: Եւ գիտենք թէ բոլոր մոլեռանդութիւնները կործանարար են: Անրջանք մը պիտի ըլլար բոլոր ազգութիւններու համաձուլումի սկզբունքը՝ համահաւասար իրաւունքներով, կազմակերպութիւններով եւ բարքերու նոյնացումով: Բայց կայ ընդհանուր սկզբունք մը. անհատին անջատ գերիշխանութիւնը արժանիքի աստիճանաւորումով եւ աշխատութեան տիեզերական օրէնքով: Ասկէ կը ծնի փոխադարձ պարտականութեան սկզբունքը: Այսպէս է որ կը բարեկարգուին ազգերը՝ ազգային անջատ գերիշխանութեամբ որոնք միանալով կը կազմեն բոլոր ազգերու միացեալ զանգուածը՝ փոխադարձ պարտականութեան սկզբունքով: Ուրեմն չկայ համաձուլուած հաւաքատիրութիւն, այլ ազգային անջատ՝ եւ համաշխարհային միացեալ հաւաքակատիրութիւն» (էջ 139):

**Տեղագրական գիտելիքներ**

Տեղավայրերու ընդգրկուն ներկայացումներ՝ պատմական, տեղագրական եւ նկարագրողական, տրուած են վէպին մէջ, շոգենաւի Պոլիսէն Աղեքսանդրիա ճամբորդութեան ընթացքին: Նկարագրային պատումները վիպագիրինն են, իսկ պատմական ներկայացումները՝ Նորիսին, ցոյց տրուելով անոր գիտելիքներու եւ դիտարկութեան կարողութեան բարձր աստիճանը:

Շոգենաւը կ՚անցնի Տարտանէլի նեղուցէն, ուր Տիգրան եւ Հեղինէ Տէրօնեաններուն Նորիս կը պատմէ իր գիտցած պատմականը (էջ 89-92), յիշեցնելով վայրերը՝ Ապիտոս, Սեսթոս, Լէանտրի անցք, Ելլեսպոնտոսի նեղուց, Տրովադայի դաշտ, Իտա լեռ, Սկամանտրա գետ, Սիմօիս գետ, Սուլթանիէ Գալէսի, Ռոտիոս, Քիլիտ-իւլ-Պահր ամրոց, Քեբոս-Պուռնու, Սեդիլ դղեակ, Սէտ-իւլ-Պահր, Գում Գալէսի աշտարակ, Տրովադա, Եէնի-Շէհիր, եւ զանոնք հիւսելով անձերու հետ՝ Քսերքսէս, Լէանտր, Աստղիկ, Հէրօ, Պայրըն, Պրիամ, Հեկուպէ, Ֆաթիհ, Պրոթէսիլաս, Մեծն Աղեքսանդր, Արամազդ, Հոմերոս, Աքիլլէս, Պատրոկլէս, Ակամեմնոն, Հերակլէս:

Զմիւռնիոյ նաւահանգիստը ալ աւելի կը բորբոքէ Նորիսի միտքը, նախ մեկուսացած վիճակի մէջ՝ անձնական մտորումներու ընդմէջէն, ապա Տէրօնեանի հետ խօսակցութեամբ (էջ 125-132): Նոյնպէս վայրերը՝ Գօտօն, Հայնոց, Թրքաց թաղ, Բունդա,

➯ 3

ՀԱՅԱՍՏԱՆ

# 254 ՄԻԼԻՈՆ ԴՐԱՄ՝ ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ ԾՆՆԴԵԱՆ 120-ԱՄԵԱԿԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՅՈԲԵԼԵԱՆԻՆ ՀԱՄԱՐ

2023 թուականի Յունիսի 6-ին լրացաւ հայ մեծանուն կոմպոզիտոր, դիրիժոր, ԽՍՀՄ ժողովրդական արտիստ Արամ Խաչատրեանի 120-ամեակը: Այդ նպատակով Հայաստանում եւ արտերկրում նախապատրաստւում ու իրականացւում են յոբելեանական միջոցառումներ:

ԿԳՄՍ նախարարութեան հաղորդագրութեան համաձայն՝ Կառավարութեան որոշմամբ ԿԳՄՍ նախարարութեան 2023 թուականի բիւջէի յատկացումների հաշուին կատարուել է վերաբաշխում՝ 254 միլիոն դրամի չափով, յոբելեանական միջոցառումների պատշաճ կազմակերպման նպատակով: Այդ գումարի շրջանակում կ՚իրականացուեն տարբեր միջոցառումներ՝ 177 մլն դրամ կը տրամադրուի Արամ Խաչատրեանի 120-ամեակին նուիրուած Հայաստանի Ազգային Ֆիլհարմոնիկ Նուագախմբի 3 համերգների կազմակերպմանն ԱՄՆ-ում, Կանադայում եւ Յունաստանում, իսկ 77 մլն դրամը՝ Ա. Սպենդիարեանի անուան Օպերայի եւ Բալէտի Ազգային Ակադեմիական Թատրոնի հիւրախաղերի կազմակերպմանը Ֆրանսիայում (2 ներկայացում):

Մշակուել է Արամ Խաչատրեանի ծննդեան 120-ամեակին նուիրուած յոբելեանական միջոցառումների լայնածաւալ եւ բազմաժանր ծրագիր՝ մրցոյթներ, փառատօներ, հիւրախաղեր եւ այլն: Մասնաւորապէս՝

- Հայաստանի կառավարութեան 2023 թուականի Փետրուարի 9-ի N 170-Ն որոշմամբ արդէն իսկ յատկացուել է գումար Հայաստանի պետական սիմֆոնիկ նուագախմբի՝ Մեծ Բրիտանիայի եւ Հիւսիսային Իռլանդիայի Միացեալ Թագաւորութիւնում հիւրախաղերի իրականացման համար:

Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարարութեան 2023 թուականի դրամաշնորհային մրցութային ծրագրերով նախատեսուած են՝

- «Երեւանեան 15-րդ միջազգային երաժշտական փառատօն» Արամ Խաչատրեանի անուան միջազգային փառատօն,
- «Արամ Խաչատրեան-120» նախագիծ (Զարենցաւանի Ա. Խաչատրեանի անուան մանկական երաժշտական դպրոց):
- 2023 թուականի բիւջէով նախատեսուած է Արամ Խաչատրեանի անուան միջազգային 19-րդ մրցոյթը («Արամ Խաչատրեան» մշակութային հիմնադրամ):

Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարարութեան 2023 թուականի յատկացումների հաշուին նախատեսւում են՝

- Ա. Սպենդիարեանի անուան Օպերայի եւ Բալէտի Ազգային Ակադեմիական Թատրոնի հիւրախաղերը Վրաստանում,
- «Խաչատրեան» եռեակի հիւրախաղերն արտերկրում (Իտալիա, Արգենտինա, ՍԾՏՀ երկրներ, Ռուսաստան, Յունաստան, Լեհաստան, Չինաստան, Մոնակօ),
- Արամ Խաչատրեանի ստեղծագործութիւնների նոտային գրականութեան վերահրատարակում (Արամ Խաչատրեանի Տուն-Թանգարան),
- Յոբելեանական համերգ, Գիւմրի եւ Կապան քաղաքներում մարզային երկու համերգ, Կոմիտասի անուան Պետական Կոնսերվատորիայի ուսանողների կատարմամբ Ա. Խաչատրեանի ստեղծագործութիւնների ձայնասկաւառակ-տեսաբացիկներ (Ա. Խաչատրեանի մասին աւագ դասախօսների յուշերի եւ ուսանողների կատարումների տեսաձայնագրութիւններ), ուսանողական միջբուհական գիտաժողով (Երեւանի Կոմիտասի

➡ 4

2 ➡

## ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՕՆ (ԱԼԱՏԻՆ)...

Գոււտէլիօ, Պոնտոս, Բակուս լեռ, Գատիֆէ Գալէօի դղեակ, Ակրոբոլ, Սթատիոն, Սիբիլ լեռ, Տէրմէհ գետ, Եփեսոս, Լիտիոյ եւ Իսնիոյ հովիտներ, Մէլէս գետ, Ս. Ստեփաննոսի եկեղեցի, Պէգշսթէն, կը համատեղուին անձերու հետ՝ Ալեատ թագաւոր, Կրեսոս, Միհրդատ, Մեծն Տիգրան, Տոլապելլա, Կեսարասպան Թրիպոնիոս, Հոսբիթալեան ասպետներ, Լենկթիմուր, Մեծն Աղեքսանդր, Տիբերիոս, Պողիկարպոս, Հոմերիոն, Քրիսթերիս:

Ի վերջոյ, շոգենաւին վերջնակայանը՝ Աղեքսանդրիա, ուր նոյնպէս կը հիւսուին պատմական անձերն ու դէպքերը (էջ 148-153):

**Ամփոփում**

*Վերադարձի՛ր աշխատանոց* վէպը գրուած է հաճելի լեզուով, դէպքերը շաղկապուած են լարուած զարգացումով, տիպարները ներկայացուած են ցցուն ու տեսանելի գոյներով, մինչ գաղափարները եւ իմաստները կը տիրեն պատմութեան վրայ: Յատկապէս վերջին առումով, քանի մը վերընթերցումներ կարեւոր են մտնելու համար վէպին ներսը, ապրելու անոր ներիմաստները:

(Շար. 7)

ԽՈՀԵՐ

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ՝ ՃԵՂՔՈՒՄՆԵՐ, ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

ՀԱՅԿ ԱԻԱԳԵԱՆ

### ԻՆՔՆԱՐԴԱՐԱՑՈՒՄ

Վերոյիշեալը մտորումներ էր եգիպտահայ մամուլի մասին՝ անոր կուսակցականացումէն մինչեւ 1975: Այլ գաղութներ ունեցած են այլ դրսեւորումներ, բայց կուսակցական մամուլի պարագային ճեղքումները ի կատար ածուած են անհատ մտածողներու կողմէ:

Չկան ուսումնասիրութիւններ սփիւռքահայ մամուլի մասին՝ իբրեւ ինքն իր մէջ ծաւալուող ուղղութիւններու համատեղում-բաժանումներ, չկան մամուլի զարգացումի գաղափարական ներքին մեքանիզմներու մասին մեկնութիւններ, բայց կան բանասիրական ուսումնասիրութիւններ այդ մամուլէն քաղուած նիւթերով՝ մամուլի հանդէպ ցուցաբերուած համահարթեցուած վերաբերմունքով: Եւ այս բացակայութիւնը առիթ տուաւ վերջերս կասկածելի բնագիրի մը արտադրութեան՝ «Նշումներ սփիւռքահայ մամուլին մասին», գրուած կուսակցականութիւնը արտադրողներէն մէկուն կողմէ, որ նաեւ գիտակ մըն է եգիպտահայ մամուլին՝ տարիներ շարունակ մասնակցած ըլլալով անոր կերտումին: Բնագիրը կրնար բազում ինքնագովասանքներու նման անցնիլ աննկատ, եթէ ան կարդացուած չըլլար հայ մամուլի *համահայկական* համագումարի մը ընթացքին եւ չհրատարակուէր ու չարտատպուէր պաշտօնաթերթերու մէջ: «Համահայկական» զեկոյցյօդուածը ինքնարդարացում մըն էր, գրուած ընտրովի «ամբողջականութեան» սկզբունքով:

Զեկոյց-յօդուածի ամէն մէկ պարբերութիւնը կարելի է երկարօրէն պարզաբանել՝ բացայայտելու համար փախուստներով գրուած ոճ մը, բառային ապակողմնորոշումներով լեցուն շարադրութիւն մը, արդարացումներով յագեցած պատում մը:

Ընթերցումը կ՚երկարի: Լոկ մէկ կէտ մը՝ կապուած վերը արծարծուած մտաւորականութիւն-կուսակցութիւն յարաբերութեան հետ:

Այսպէս, կուսակցական մամուլի մասին կը կարդանք.

«Կուսակցական մամուլը թէեւ կոչուած պէտք է ըլլայ իբրեւ անանձնական նախաձեռնութիւն, սակայն պատմականօրէն ան կրած է ծանր դրոշմն ու շուքը ուժեղ անհատականութիւններու — կուսակցական ղեկավար կամ խմբագիր:

«Այսպէս *Հայրենիք* (ԱՄՆ) օրաթերթին (նաեւ ամսագրին) վրայ երկարատեւ տիրապետած է Ռուբէն Դարբինեանի գաղափարական կշիռը: Իսկ *Յուսաբերի* (Եգիպտոս) դիմագիծը հանդիսացած է Վահան Նաւասարդեան:

«Ռամկավար ճակատի վրայ անջնջելի դրոշմը մնացած է Հրաչ Երուանդի (ԱՄՆ) *Պայքար* օրաթերթի վրայ, Վահան Թէքէեանի *Արեւ* (Գահիրէ) իսկ *Նոր Օր*ի վրայ Անդրանիկ Անդրէասեանի (ԱՄՆ), իսկ *Զարթօնք*ի վրայ (Լիբանան) Գերսամ Ահարոնեանի:

«Այսպիսի հզօր գրիչներու հեռացումով հրապարակէն կուսակցական մամուլը վերադարձած է իր իսկական էութեան, դառնալով արտայայտիչը իր պատկանած կուսակցութեան»:

Հակադրութեան միջոցով ներկայացուած երկու միտքեր՝ հզօր անհատականութիւն եւ անանձնականութիւն, հասնելու համար երկրորդի գերադասութեան: Նպատակը երկրորդ միտքին հասնիլն է, երկրորդը հաստատելը:

Առաջին միտքը կը նշէ ուժեղ անհատականութիւններու դրոշմը կուսակցական մամուլին վրայ, ինչպէս «Խոհեր»-ը անդրադարձաւ վերը:

Բայց ի տարբերութիւն «Խոհեր»-էն՝ որ մտաւոր հզօրութիւնը կը դնէ կուսակցականութենէն առաջ, եւ կը նախընտրէ ըսել՝ որ նոյն ինքը կուսակցականութիւնը խորութիւն ստացած է այդ հզօր միտքերէն, համահայկականի յօդուածագիրը բացասական կէտ մը կը նկատէ հզօր միտքի գոյութիւնը: Բացասական բառը չի գործածեր, կը խուսափի զայն գործածելէ՝ քանի որ չէր կրնար բացասական դիտել Թէքէեանն ու Անդրէասեանը, թէեւ իր ներկայացումի ամբողջ կերպը այդպէս կը տրամաբանէ:

Յօդուածագիրը ստեղծած է անանձնականութիւն/հզօր-անհատականութիւն երկուութիւնը, իմաստը կարենալ ծառայեցնելու իր կանխադիր նպատակին: Ըստ որում, երկուութեան երկրորդ կողմը կը խանգարէ առաջինը: Այստեղ լուրջ խնդիր կայ: Հիմնարկը անշուշտ պէտք է մնայ հիմնարկ, հիմնարկի մը արտադրած բոլոր առաւելութիւններով եւ կաշկանդումներով: Հիմնարկի յատկանիշներէն մէկն ալ անոր շարունակականութիւնն է՝ անկախ անդամներէն: Բայց չէ՞ որ գոյութիւն չունի հիմնարկ՝ առանց մարդու: Մարդով կ՚ընթանայ ամէն բան, առանց մարդու չկայ հիմնարկ: Եւ երբ հիմնարկ մը ինկած է ծայրայեղութիւններու մէջ, հզօր մտաւորականը կարող եղած է ստեղծել հաւասարակշռութիւններ, կուսակցական պատումին մէջ մտցնել մտաւոր շերտաւորումներ՝ ընդդէմ կուսակցական միօրինակութեան, մէկ խօսքով՝ ամրացնել նոյն ինքը կուսակցութիւնը: Հզօր անհատականութիւնն է որ խնդրական եւ ոչ-յարմարաւէտ մօտեցում ունեցած է կատարուածներուն հանդէպ՝ երբ վերջիններս դադրած են բանականօրէն մտածելէ:

Կուսակցութիւններէն ներս գործած հզօր միտքերը չեն ընթացած իրենց կուսակցութիւններուն դէմ, չեն մերժած կուսակցութեան հաւաքականութիւնը (ինչ որ համահայկական գրողը անուանեց անանձնականութիւն), չեն փոխարինած այդ հաւաքականութեան, այլ փորձած են կոտրել կուսակցական ինքնապարտադրուած բացառականութիւնը, կուսակցութեան տալով այլընտրանքային մտածողութեան կարելիութիւն: Կուսակցական մամուլը մեծապէս տուժած է երբ բացակայած են այդ դէմքերը եւ ոչ թէ հակառակը, ինչպէս կ՚ուզէ ցոյց տալ համահայկական գրողը:

Հիմնարկները նոյնը չեն աշխարհի տարածքով, հայկական կուսակցական հիմնարկը ունի լուրջ տարբերութիւններ ուրիշ հիմնարկներէ, դժուար դարձնելով վճռականօրէն խօսիլ անանձնականութեան մասին իբրեւ դրական գործօն, ի դիմաց հզօր անհատականութեան բացասականութեան:

Կուսակցական «անանձնականութիւն»-ը լիովին տնօրինուած է վերնախաւի քանի մը անդամներու կողմէ, որոնց որոշումները պարտադիր են անդամներուն եւ համակիրներուն, այլեւ լրագրող մտաւորականներուն: Հզօր անհատականութեամբ մտաւորականներու բացասականութիւնը ենթադրեալ անանձնականութեան հաստատումին համար, կը տանի դէպի ձգտումը մտաւորականութիւնը դնելու կուսակցական վերնախաւի տնօրինութեան տակ, ենթարկելու անոր հրամաններուն, բան մը՝ որ հզօր մտածողը պիտի չկատարէ ուղղակի իմաստով: Հզօր մտաւորականութեան ներկայացումը իբրեւ անանձնականութեան վնասող տարր, կը նշանակէ փափաք ունենալ իրական մտաւորականութիւնը փոխարինելու կեղծ մտաւորականութեամբ, որուն ուղղութեամբ կատարուած անուղղակի կոչ մըն է վերոբերեալ քաղուածքը:

Յիշենք Թէքէեանի վերոյիշեալ քաղուածքը՝ թէ «անձերը ոչ միայն կը ստորադասուին հաւաքականութեան, այլ եւ կը մնան անանուն՝ հաւաքականութեան անունին ներքեւ», որուն անմիջապէս յաջորդած է իր դիրքաւորումը. «Իմ ստեղծած ձեւս չէ այս, ոչ ալ իմ նախընտրածս»:

Զեկոյց-յօդուածին կարելի էր չանդրադառնալ եւ աչք փակել իբրեւ անհամար

➡ 4

# ՔԱՂՆԱԿԻՐ

## 1 ՍՈՎԱՄԱՀ ԵՂԱԾ ՀԱՅ ՔՈՅՐԵՐԸ ՉԷԻՆ ՈՒԶՈՒՄ ...

Մինչ այդ քոյրերին առաջարկել են լքել քաղաքը, բայց «անոնք մերժած էին բոլոր խորհուրդները եւ բնակարանը կորսնցնելու վախը ունենալով՝ փորձած էին դիմանալ»:

Հայաստանի արտգործնախարարութեան տուեալներով՝ տարեց քոյրը տեղաշարժուելու խնդիր է ունեցել, կրտսերը (61 տարեկան) չի ցանկացել դուրս գալ մայրաքաղաքից եւ մնացել է նրան խնամելու:

2023-ի Ապրիլից Սուդանում լայնածաւալ քաղաքացիական պատերազմ է: 2021-ի ռազմական յեղաշրջման հետեւանքով իշխանութիւնը զաւթած խունտայի ներսում պառակտում է տեղի ունեցել: Մի կողմից Սուդանի փաստացի նախագահ, գեներալ, մեծահարուստ Աբդէլ Ֆաթթահ ալ-Բուրհանն է, որին ենթարկւում է կանոնաւոր բանակը, միւս կողմից՝ նրա նախկին տեղակալ, գեներալ, մեծահարուստ Մոհամէդ Համդան Դաղալոն, որը ղեկավարում է «Արագ աջակցութեան ուժեր» (RSF) զինուած խմբաւորումը՝ յայտնի Դարֆուրում ջարդերով, Եմէնի եւ Լիբիայի պատերազմներին իր մասնակցութեամբ, 2019-ին խաղաղ ցուցարարների զանգուածային սպանութեամբ: Երկրում իրական սով է՝ սննդի, ջրի դեֆիցիտ, քայքայուած ենթակառուցուածներ եւ մասսայական թալան:

Հայաստանի արտգործնախարարութեան տուեալներով, Սուդանում մօտ երկու տասնեակ հայեր էին ապրում: Ռազմական գործողութիւնների վերաբռնկումից յետոյ նրանցից 8-ը Եգիպտոսում Հայաստանի դեսպանութեան օգնութեամբ լքել է երկիրը, մօտ 10-12 հոգի դեռ այնտեղ է մնում:

## 3 254 ՄԻԼԻՈՆ ԴՐԱՄ՝ ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ ԾՆՆԴԵԱՆ 120-ԱՄԵԱԿԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՅՈԲԵԼԵԱՆԻՆ ՀԱՄԱՐ

անուան Պետական Կոնսերվատորիա),

- «Արամ Խաչատրեան-120» գիտահանրամատչելի ալբոմ (անգլերէն, Արամ Խաչատրեանի Տուն-Թանգարան),
- Գիտաժողով համատեղ կազմակերպութեամբ Խաչատրեանի Տուն-Թանգարանի եւ Գիտութիւնների Ակադեմիայի Արուեստի Ինստիտուտի,
- Հայաստանի Պետական Կամերային Նուագախմբի համերգային հիւրախաղերն ԱՄՆ-ում (Կամերային Երաժշտութեան Ազգային Կենտրոն),
- «Արամ Խաչատրեան 120» առցանց ռադիօ նախագիծ (Հայաստանի Պետական Ֆիլհարմոնիա),
- «Մեցցօ» հեռուստաընկերութեան կողմից Արամ Խաչատրեանի 120-ամեակին նուիրուած տեսաֆիլմի պատրաստում եւ հեռարձակում («Արամ Խաչատրեան» մշակութային հիմնադրամ),
- Բրիտանացի ջութակահար Արաբելլա Շտայնբախէրի երեւանեան համերգ («Երեւանեան հեռանկարներ միջազգային երաժշտական փառատօն» ՀԿ):

Ծրագրում ներառուած են հանրապետութեան առաջատար պետական կոլեկտիւները՝ Հայաստանի Ազգային Ֆիլհարմոնիկ Նուագախումբը, Ա. Սպենդիարեանի անուան Օպերայի եւ Բալէտի Ազգային Ակադեմիական Թատրոնը, Հայաստանի Պետական Սիմֆոնիկ Նուագախումբը, Խաչատրեան եռեակը, Հայաստանի Պետական Կամերային Նուագախումբը, որոնք համերգներով հանդէս կը գան արտերկրում (Ֆրանսիա, Իտալիա, Յունաստան, ԱՄՆ, Կանադա, Արգենտինա, Մեծ Բրիտանիա, Մեքսիկա, Ռուսաստան, Վրաստան եւ այլն):

## 3 ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼ՝ ՃԵՂՔՈՒՄՆԵՐ, ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

անցողակի գրութիւններէն մէկը՝ եթէ ան արտասանուած չըլլար համահայկական համագումարի ընթացքին, հրատարակուած չըլլար կուսակցական պաշտօնաթերթի մէջ, արտատպուած չըլլար կուսակցական մամուլի մէջ, ստորագրուած չըլլար կուսակցականապետի կողմէ, այսինքն՝ չըլլար Սփիւռքի հիմնահոսանքի արտադրութիւն:

Հզօր մտաւորականութեան բացակայութեան պայմաններուն մէջ տուեալ միաւորներէն ներս, համահայկական գրողի բնագիրը մնաց առանց իր ազդեցութիւնը թուլացնող հակաբնագիրի, դարձաւ գրեթէ պարտադիր կուսակցական մամուլի գնահատութեան համար: Յաղթանակը միջակութեան:

(Վերջ 5)

## 1 ՇՈՒՇԻՆ ԵՒ ՉՈՐՍ ՀԱԶԱՐ ՀՈԳՈՒՆ ՓՐԿԵԼ ՉՅԱՋՈՂՈՒԵՑ. ՔՆՆԻՈՒՄ Է ՓԱՇԻՆԵԱՆԸ

է Նախիջեւանի հետ կապի հնարաւորութիւն ունենան, բայց դա չի կարող լինել միջանցքի տեսքով:

«Հոկտեմբերի 19-ի առաջարկի համատեքստում պատերազմը կանգնեցնելու պայմանները հետեւեալն էին՝ բոլոր 7 շրջաններն անցնում են Ադրբեջանի վերահսկողութեան տակ, ԼՂ կարգավիճակը թողնւում է անորոշ, ԼՂԻՄ-ի այդ պահին արդէն կորսուած տարածքները մնում են Ադրբեջանի վերահսկողութեան ներքոյ, իսկ այդ պահին ԼՂԻՄ-ի էական տարածքներ արդէն Ադրբեջանի վերահսկողութեան ներքոյ էին, Շուշին յանձնւում է Ադրբեջանին, Մեղրիում տեղակայւում են խաղաղապահներ եւ փաստացի ստեղծւում է միջանցք, այսինքն՝ մեր վերահսկողութեան ներքոյ չգտնուող շերտ Ադրբեջանը Նախիջեւանի ինքնավար հանրապետութեանը կապող: Նման պայմաններին ես չէի կարող համաձայնուել որքան էլ ես հասկանում էի իրադրութեան ծանրութիւնը»:

Ինձ համար կարմիր գիծ էր Շուշին եւ խաղաղապահների տեղակայումը Մեղրիում՝ շարունակել է վարչապետը. «Քանի դեռ կանգուն էր Շուշին, պայքարն ունէր շատ կոնկրէտ նպատակ եւ մոտիվացիա: Շուշին վերցնելով ադրբեջանցիները փակում էին Լաչինի ճանապարհը, հնարաւորութիւն էին ստանում գրոհել Ստեփանակերտը եւ արդէն ոչ միայն ճակատից այլեւ թիկունքից գրոհել ՊԲ 5, 6, 7-րդ պաշտպանական շրջանները»:

Փաշինեանը հաւաստիացրել է՝ հաշուի առնելով Շուշիի անկիւնաքարային նշանակութիւնը, նախօրօք տուել է բոլոր հրահանգները՝ Շուշին ամրացնելու, Շուշիի պաշտպանութիւնը կազմակերպելու վերաբերեալ:

«Ի վերջոյ հաստատուեց տպաւորութիւն, որ ամէն անհրաժեշտն արուած է, բայց այդ նախապատրաստական գործողութիւններից շատ չանցած լուր եկաւ, թէ ադրբեջանցիների մի խումբ Զառիսլի գիւղի հատուածում ճեղքել է մեր պաշտպանութիւնը եւ կանգնել Լաչին-Ստեփանակերտ ճանապարհին, այսինքն՝ ըստ էութեան փակել ճանապարհը:

«Լուրն ինձ հաղորդեց ԼՂ նախագահը, սակայն ԶՈւ ԳՇ-ն չէր հաստատում այդ տեղեկատուութիւնը: Սա, ի դէպ, պատերազմի ընթացքում մէկ տասնեակ անգամ կրկնուած իրավիճակ էր, երբ ԼՂ նախագահն ասում է, ԳՇ-ն չի հաստատում:

«Յետոյ լուր եկաւ, որ ադրբեջանցիները կրակել են Ստեփանակերտ-Լաչին ճանապարհով շարժուող քաղաքացիական աւտոմեքենայի վրայ: Ըստ էութեան, այս կէտից սկսուեց Շուշիի սողացող անկումը: Սկսեցին լուրեր գալ, որ հակառակորդի առաջին խումբն է մտել Շուշի, յետոյ երկրորդ, ի վերջոյ Նոյեմբերի 7-ի կէսօրին ԳՇ պետ Օնիկ Գասպարեանն ինձ զեկուցեց Շուշիի անկման մասին», – պատմել է Փաշինեանը:

Շուշիի անկման դրուագի հետ կապուած քրէական գործեր են յարուցուած՝ յիշեցրել է պաշտօնեան. «Այս հանգամանքները դեռ սպասում են եւ պիտի արժանանան մանրամասն պարզաբանման»:

### Վատից վատը

Փաշինեանը համաձայնել է բանակցութիւններ սկսել եւ պահանջել է, որ նախապատրաստուող փաստաթղթում չլինեն Շուշին եւ Հայաստանի տարածքով միջանցքին վերաբերող դրոյթներ: Առաջարկել է, որ հայկական կողմն Աղդամի շրջանը վերադարձնի Հադրութի շրջանի դիմաց: Ադրբեջանը այս առաջարկը մերժել է:

«Սա էր եռակողմ յայտարարութիւնը ստորագրելուն ուղղուած գործընթացի մեկնարկը», – ասաց վարչապետը:

Այդ պահին, ըստ նրա, իրավիճակն արդէն հասել էր շրջադարձային կէտի՝ եթէ կարողանում են պահել Շուշին դա շրջադարձ է, եթէ չեն կարողանում պահել՝ դա էլ է շրջադարձ. «Նոյեմբերի 8-ի դրութեամբ, որքան էլ ասում էին, որ Շուշին մեր հսկողութեան տակ է, հասկանում էի, որ այն ամբողջութեամբ յետ բերել այլեւս չենք կարող»:

Նոյեմբերի 8-ից 9-ը, ըստ Փաշինեանի, ինքը շուրջ 20 հեռախօսազրոյց է ունեցել Պուտինի հետ: Աղդամը Հադրութի դիմաց բանաձեւը Ադրբեջանը չի ընդունել:

«Ի վերջոյ քննարկումների արդիւնքում հասանք մի տեքստի, որտեղ ոչինչ չէր ասւում Շուշիի մասին, ոչինչ չէր ասւում Հայաստանի տարածքով միջանցք ստեղծելու մասին, այլ խօսւում էր ռազմական գործողութիւնների դադարի, 7 շրջանների վերադարձի, Լաչինի միջանցք ստեղծելու, այդտեղ եւ ԼՂ-ում ռուս խաղաղապահների տեղակայման մասին: Նոյեմբերի 9-ի առաւօտեան ես ստորագրեցի այդ տեքստը»:

Ադրբեջանը եռակողմ յայտարարութիւնը, ըստ նրա, չէր ստորագրել, փոխարէնը նոր լրացումներ էր պահանջել:

«Օրուայ ընթացքում էդ ստորագրուած տեքստը շրջանառութիւնից դուրս եկաւ: Օրուայ ընթացքում տարբեր քննարկումներ, տարբեր համաձայնութիւններ եղան, օրուայ վերջում պարզուեց, որ նոր լրացումներ են առաջարկւում: Այն պահին, երբ ՌԴ նախագահն ասաց, որ Ադրբեջանն առաջարկում է տեքստի մէջ աւելացնել կէտ Տաւուշի մարզի անկլաւների վերադարձի մասին, ես յայտարարեցի, որ բացառւում է, որ այդպիսի փաստաթուղթ ստորագրուի ու պաշտօնապէս արձանագրուեց, որ մենք փաստաթուղթ չենք ստորագրում», – շարունակել է Հայաստանի ղեկավարը:

Որոշ ժամանակ անց համաձայնութիւն է ձեռք բերուել այդ կէտը հանել փաստաթղթից:

«Տեւական բարդ քննարկումներից յետոյ ես ստորագրեցի այն փաստաթուղթը, որը յայտնի է բոլորիդ, որն իհարկէ աւելի վատն էր քան առաւօտեան տարբերակը, բայց աւելի լաւն էր առաջարկուող միւս տարբերակներից, որոնցից մէկը Մեղրիով միջանցք էր նախատեսում, միւսը՝ Տաւուշի մարզի անկլաւների վերադարձ»:

### Ինչպէ՞ս չխուսափել պատերազմից

Հնարաւո՞ր էր արդեօք խուսափել 4 հազար մարդու կեանք խլած պատերազմից: Ըստ Փաշինեանի՝ «այո, եթէ նախորդ 25 տարիների ընթացքում լուծած լինէինք Ղարաբաղի հարցը»:

«2018 թուականի Մայիսի դրութեամբ ինձ համար սեփական կէտից չսկսելու երկու տարբերակ կար: Առաջին տարբերակ՝ Ադրբեջանը փաստացի պիտի ճանաչէր ԼՂ միջանկեալ կարգավիճակը Կազանեան տրամաբանութեամբ, նման բան տեղի ունենալ չէր կարող, որովհետեւ ինչու պիտի Ադրբեջանը ընդունէր մի բան, որ դեռ 7 տարի առաջ մերժել էր ու դրա մերժումն ապահովելու համար սկսել ու չէր աւարտել Ապրիլեան քառօրեայ պատերազմը: Տարբերակ երկու. ես պէտք է ոչ միայն ԼՂ-ն ճանաչէի Ադրբեջանի մաս, այլեւ պիտի համաձայնէի ոչ միայն ԼՂ-ի ու Հայաստանի շուրջ հաստատուած ստատուս-քուոյի, այլեւ հէնց բուն ԼՂ-ում, ներսում առկայ ստատուս-քուոյի ապամոնտաժմանը: Նման բան նաեւ այսօրուայ տեսակէտից անհնար է պատկերացնել», – յաւելել է վարչապետը:

*Epress.am*

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1943 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 6 ՅՈՒԼԻՍ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀկ. عدد رقم ١٩٤٣ الخميس ٦ يوليه ٢٠٢٣

# ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՆՔԱՆ ԿԵՆՍԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆ ՈՒՆԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԻՆ ՀԱՄԱՐ

**ՀԱՅ ՁԱԽ ՖՈՐՈՒՄ**

Համահայկական Պանքայի գաղափարի շուրջ տարիներ շարունակ եղած են տարբեր միտքեր եւ մեկնաբանութիւններ, որոնք յառաջացուցած են բազմազան ակնկալիքներ: Այստեղ կարեւոր է իմանալ Համահայկական Պանքայի ստեղծումին պատմութիւնը, էութիւնը եւ գործունէութեան սկզբունքները:

Համահայկական ֆինանսական նոր հիմնարկի ստեղծումի մասին սկսած են խօսիլ տակաւին 90-ական թուականներէն: Այս գաղափարի շուրջ կարծիքներ յայտնած են նաեւ որոշ պետական պաշտօնեաներ, որոնց պատկերացումները ի սկզբանէ տարբեր էին մէկը միւսէն: Ոմանք զայն պատկերացուցած են որպէս «ներդրումային հայկական պանքա», միւսները՝ որպէս «Սփիւռքէն Հայաստան ուղարկուող դրամական միջոցները դրամագլուխի վերածելու փորձ» եւ նոյնիսկ՝ «Սփիւռքի մէջ գործող ձեռնարկութիւններուն վարկաւորող կառոյց» կամ «պետական ֆինանսաւորումի պատւէրներ իրականացնող պանքա» եւ այլն:

Համահայկական Պանքայի գաղափարը ուսումնասիրուեցաւ եւ քննարկուեցաւ տարբեր ատեաններու մէջ՝ Հայաստանի կառավարութեան, նախագահի աշխատակազմի, Հայաստանի Կեդրոնական Պանքայի, Ազգային Մրցունակութեան եւ Գործարարութեան Աջակցումի խորհուրդներու, ինչպէս նաեւ օտարերկրեայ գործարարներու շրջանակի մէջ:

2009 թուականին Հայաստանի Կեդրոնական Պանքայի կողմէ հրաւիրուեցաւ միջազգային փորձառու եւ ճանաչուած խորհրդատուներ, որոնց օգնութեամբ ձեւաւորուեցաւ Համահայկական Պանքայի նախնական հայեցակարգը: Միջազգային փորձի տեղայնացումով մշակուեցաւ հայեցակարգի վերջնական տարբերակը, որուն արդիւնքով յառաջացաւ 2008 Դեկտեմբերին ընդունուած՝ «Համահայկական Բանկի մասին» օրէնքի վերանայումին անհրաժեշտութիւնը: Օրէնքը իր վերջնական տեսքով ընդունուեցաւ 2011 Յունիս 23-ին, որով յստակւեցաւ Համահայկական Պանքայի գործունէութեան մանտաթը, երաշխաւորուեցաւ Համահայկական Պանքայի անկախութիւնը պետութենէն, ինչպէս նաեւ ապահովուեցաւ Համահայկական Պանքային ինքնուրոյնութիւնը՝ լոկ շուկայական կանոններով մասնաւոր ձեռնարկութիւնները ֆինանսաւորելու հարցով:

Պանքան կնքեց 23 վարկային պայմանագիրներ, որոնցմէ վեցը, տարբեր պատճառներով, վաղաժամկէտ լուծարուեցան եւ մնացին 17 վարկեր: Այս 17 վարկերու տեղաբաշխուած ընդհանուր գումարը կը կազմէր հազիւ 4,7 միլիառ դրամ (գրեթէ 10 միլիոն տոլլար):

Պանքան նպատակ դրած էր իրականացնել երկարաժամկէտ ներդրումային ծրագիրներ եւ աւելի շուտ նպաստել արտահանումին եւ նոր շուկաներու ձեռքբերումին:

Սկիզբը պանքայի ֆինանսական աղբիւրը եղաւ պետութեան եւ Կեդրոնական Պանքայի կողմէ 20 միլիոն տոլլարի ներդրումը, որպէս բաժնետէր:

Ի սկզբանէ պանքայի կանոնադրական դրամագլուխը սահմանուած էր 100 միլիոն տոլլար: 20 միլիոն տոլլար դրամագլուխ ներդրած էր պետութիւնը եւ գումարի միւս մասը, ըստ էութեան, պէտք է հայթայթէր պանքայի ղեկավարութիւնը, սակայն հիմնադրումէն չորս տարի ետք որեւէ ներդրում չէր կատարուած: Տակաւին չենք գիտեր պատճառը եւ պէտք է իմանալ: Ի դէպ իր, այսպէս կոչուած, «ձախողումները» պանքան կը վերագրէ նախ եւ առաջ Կեդրոնական Պանքային եւ կառավարութեան: Նախ այն, որ իրականութեան մէջ, Կեդրոնական Պանքան «Համահայկական Պանքա»-յին կը դիտէր որպէս առեւտրային պանքա՝ «սահմանելով այդպիսի պանքաներուն բնորոշ չափորոշիչներ»:

Համահայկական Պանքայի ստեղծումի գաղափարին ուղղութեամբ չէր կատարուած փորձագիտական որեւէ ուսումնասիրութիւն՝ յատկապէս միջազգային յաջողած փորձերուն շուրջ, որ թոյլ կու տար հաշուի առնել յաջողութեան հասնելու հիմքերն ու սկզբունքները:

Հայաստանի մասնաւոր ձեռնարկութիւնները աւելի շուտ կարիք ունէին երկարատեւ ներդրումներու, սակայն կը ֆինանսաւորուէին կարճաժամկէտ վարկերով եւ ապա՝ կը վերաֆինանսաւորուէին նոյն տեսակ կարճաժամկէտ միջոցներով: Ասիկա յանգեցուց շարք մը ձեռնարկութիւններու կործանումին, քանի որ կարճ միջոցներով վարկերու վերաֆինանսաւորումին հնարաւորութիւնները ճգնաժամային պայմաններու մէջ կտրուկ նուազեցան: Ընդհանրապէս, կարճատեւ աղբիւրներով երկարատեւ ներդրումներու ֆինանսաւորումը կենսունակ չէ նոյնիսկ ոչ ճգնաժամային պայմաններու մէջ:

Հայաստանի Կեդրոնական Պանքայի նախագահ Արթուր Ջաւադեան կրկին ըսած էր, որ ԿՊ-ն աննպատակայարմար կը համարէ պետական մասնակցութիւնը Համահայկական Պանքային եւ բանակցութիւններ կը վարէ հնարաւոր ներդրողներու հետ:

Հայաստանի Կեդրոնական Պանքան սկսաւ փորձել ազատիլ Համահայկական Պանքայէն, զոր, ըստ էութեան, անիմաստ բեռ մը կը համարէր իր համար: Նախնական գաղափարով Համահայկական Պանքան պէտք է միջոցներ ներգրաւէր բազմաթիւ աղբիւրներէ եւ զանոնք երկարաժամկէտ վարկերու տեսքով տրամադրէր արտահանումի ուղղուածութիւն ունեցող ընկերութիւններուն:

Կարեւոր է նշել, որ Համահայկական Պանքայի աշխատակազմը կը ստանար բարձր աշխատավարձք: Իսկ պանքայի ղեկավար Վահրամ Ներսիսեանցի ամսական աշխատավարձքը կը գերազանցէր 20 հազար տոլլարը:

Համահայկական Պանքան կրնար դառնալ Հայաստանի Հանրապետութեան տնտեսութեան ֆինանսական հայթայթումի ամենայարմար, ազգային ու հայանպաստ աղբիւրը:

Պատերազմէն ետք, քորոնաժահրի դէմ պայքարի եւ բազմաթիւ այլ պատճառներով մեր հայրենիքը կանգնած է հսկայական ծախսերու առջեւ եւ իր ծրագրաւորած զարգացումին համար գոյութիւն ունին մեծ ֆինանսներու պահանջներ:

Ֆինանսական այդ պահանջները կարելի է ձեռք բերել տարբեր աղբիւրներէ.

ա. Թալանուած գումարներու վերադարձ:

բ. Ներքին հարկերու, ներմուծուած ապրանքներու հարկերու եւ այլ տեսակ հարկերու միջոցներէն:

գ. Արտաքին ֆինանսական հիմնադրամներէն կամ աղբիւրներէն:

Դուրսէն վարկեր կամ պարտքեր վերցնելը ընդհանրապէս դէմ է մեր ինքնիշխանութեան եւ անկախութեան: Անոնք իրենց վարկերով պիտի թելադրեն իրենց տնտեսական ու քաղաքական քաղաքականութիւնը: Մենք անընդհատ պէտք է աշխատինք փակել այդ վարկերուն տոկոսները: Մեր պետական պարտքը արտաքին աշխարհին եւ յատկապէս Համաշխարհային Պանքային ու Միջազգային Արժոյթի Հիմնադրամին հող պիտի ստեղծէ Ամերիկայի եւ եւրոպական երկիրներու միջամտութեան մեր տնտեսութեան ու քաղաքականութեան մէջ: Ասոր միակ այլընտրանքը Համահայկական Պանքայի ստեղծումն է:

↳ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԷՋԱՆԻ ՄԻՋԵՒ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆԱԳՐԻ ՏԵՔՍՏԸ ԴԵՌ ՊԱՏՐԱՍՏ ՉԷ ՍՏՈՐԱԳՐՄԱՆ

Վաշինգտոնում վերջերս տեղի ունեցած Հայաստանի եւ Ադրբէջանի արտաքին գործերի նախարարների միջեւ բանակցութիւններում արձանագրուած առաջընթացը չօշափելի չէ, բայց որոշակի առաջընաց կայ: Ինչպէս տեղեկացնում է *Արմենպրէսը*, Կառավարութեան Յուլիսի 6-ի հերթական նիստի ժամանակ այս մասին յայտարարեց վարչապետ Նիկոլ Փաշինեանը:

Վարչապետը նախ նշեց, որ որքան էլ այսօրուայ իրադրութիւնը դժուար է բարոյական, քաղաքական, անվտանգային, էմոցիոնալ առումով, խաղաղութեան օրակարգի իրացումը այլընտրանք չունի:

«Լեռնային Ղարաբաղի հայութեան իրաւունքների եւ անվտանգութեան իրացումը պէտք է հասցէագրուեն Բաքու-Ստեփանակերտ երկխօսութեան միջազգային մեխանիզմների շրջանակներում, իսկ Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ պէտք է խաղաղութեան պայմանագիր ստորագրուի: Վաշինգտոնում վերջերս տեղի ունեցած Հայաստան-Ադրբէջան բանակցութիւններում արձանագրուած առաջընթացը չօշափելի չէ, բայց որոշակի առաջընաց կայ: Առաջիկայում Բրիւսէլում նախատեսւում է իմ հանդիպումը Ադրբէջանի նախագահի հետ՝ Եւրամիութեան Խորհրդի նախագահի միջնորդութեամբ: Ցաւօք, Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ խաղաղութեան պայմանագրի տեքստը դեռ պատրաստ չէ ստորագրման:

Յոյս ունեմ՝ առաջիկայ հանդիպման ընթացքում առարկայացնել Վաշինգտոնում արձանագրուած դրականը: Բոլոր հարցերը պէտք է լուծենք դիւանագիտական ճանապարհով», - ասաց Փաշինեանը:

## ՎԱՇԻՆԳՏՈՆԸ ԿԱՌՈՒՑՈՂԱԿԱՆ Է ՀԱՄԱՐՈՒՄ ՄԻՐԶՈՅԵԱՆ-ԲԱՅՐԱՄՈՎ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Պաշտօնական Վաշինգտոնը կառուցողական է համարում Արլինգթոնում անցկացուած Ադրբէջանի եւ Հայաստանի արտգործնախարարների բանակցութիւնների հերթական փուլը: Այդ մասին Յունիս 29-ի ճեպազրոյցում յայտարարել է Միացեալ Նահանգների Պետդեպարտամենտի մամուլի ծառայութեան ղեկավար Մեթիու Միլլերը:

«Մենք կարծում ենք, որ բանակցութիւնները կառուցողական էին: ԱՄՆ պետքարտուղարն այսօր առանձին հանդիպումներ է ունենում Հայաստանի եւ Ադրբէջանի ԱԳ նախարարների հետ, նրանց հետ կ'անցկացնի նաեւ համատեղ հանդիպում: Այսօր նա կը տեղեկացնի, թէ ինչպէս են ընթացել ↳ 4

## ԱԴՐԲԷՋԱՆԸ ԼԱՅՆԱԾԱՒԱԼ ՀԱԿԱՔԱՐՈԶՉՈՒԹԻՒՆ Է ՏԱՐԱԾՈՒՄ ՖՐԱՆՍԻԱՅԻ ԴԷՄ. ՆԻԿՈԼ ՓԱՇԻՆԵԱՆ

Ադրբէջանն ամիսներ շարունակ լայնածաւալ հակաքարոզչութիւն է տարածում Ֆրանսիայի դէմ, որն արտայայտում է իր հասցէական գնահատականները ԼՂ հայերի դէմ Ադրբէջանի անօրինական գործողութիւնների վերաբերեալ:

Այս մասին Թուիթերի իր միկրոբլոգում գրել է Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը:

«Ամիսներ շարունակ Ադրբէջանը լայնածաւալ հակաքարոզչութիւն է տարածում Ֆրանսիայի դէմ, որը պաշտօնապէս եւ հրապարակային կերպով բարձրաձայնում է իր հասցէական գնահատականները եւ մտահոգութիւնները՝ Լեռնային Ղարաբաղի հայ բնակչութեան նկատմամբ Ադրբէջանի անօրինական գործողութիւնների վերաբերեալ», - գրել է վարչապետը:

Ադրբէջանն արդէն տեւական ժամանակ է, ինչ արգելափակել է Լաչինի միջանցքով տեղաշարժը, ԼՂ հայ բնակչութիւնը բախուել է հումանիտար լուրջ ճգնաժամի:

# ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՕՆ (ԱԼԱՏԻՆ)

## Եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, յօդուածագիր

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

**ՆՈՐ ԼԻԹԱՆԻԱ (բանաստեղծական ժողովածու)**

Ալատին-Վեհակրօնի ութ բանաստեղծութիւններ 1909-1933-ին լոյս տեսած են սփիւռքահայ մամուլին մէջ՝ *Բազմավէպ* (Վենետիկ), *Հուսանք* (Գահիրէ), *Նաւասարդ* (Պուքարեսթ) եւ *Արաքս* (Աղեքսանդրիա) (մանրամասն՝ յօդուածաշարի վերջաւորութեան. «Մատենագիտութիւն. մամուլ. բանաստեղծութիւններ»):

1933-ին բոլորն ալ նոյնութեամբ կը վերահրատարակուին հեղինակի *Նոր Լիթանիա* բանաստեղծական ժողովածուին մէջ (Գահիրէ, Տպարան Արգոս, 1933), որ կը բովանդակէ ընդամէնը 33 բանաստեղծութիւններ:

Ժողովածուն, *Երգեր Տանդէի Դժոխքէն*ի հետ միասին (տես ստորեւ), տպագրութեան մէջ էր՝ երբ կը մահանայ հեղինակը:

Այսպէս, 1933 Հոկտեմբեր 1 թուակիր նամակով, Վեհակրօն կը տեղեկացնէ *Բազմավէպ*ին, որ աւարտած է *Նոր Լիթանիայ*ի եւ *Երգեր Տանդէի Դժոխքէն*ի հիմնական մասերուն տպագրութիւնը, կը մնան ծանօթագրութիւնները. «Այսօր ստացայ Ձեր պատուական քարտը եւ կը փութամ գոհացում տալ Ձեր փափաքին, ինձ համար այնքան փաղաքշական, այսօրուան թղթատարին յանձնելով *Նոր Լիթանիա* քերթուածներուս եւ *Երգեր Տանդէի Դժոխքէն* թարգմանութեանս միացեալ մէկ հատորս որ մօտ ատենէն լոյս պիտի տեսնէ. Թէպէտ աւարտած՝ սակայն համառօտ ծանօթութեանց բաժինը դեռ մամլոյ տակ է»(63):

Հոկտեմբեր 14-ին *Արաքս* կը յայտարարէ՝ որ մօտ օրէն լոյս պիտի տեսնէ *Նոր Լիթանիա* եւ *Երգեր Տանդէի Դժոխքէն*(64):

Հոկտեմբեր 26-ին կը մահանայ Վեհակրօն: Ամբողջ հատորը՝ *Երգեր Տանդէի Դժոխքէն*ի հետ միացեալ կազմով, բայց անջատ անուանաթերթերով եւ էջադրութեամբ, հրապարակ կ՚իջնէ յետմահու:

Խորագիրը՝ իբրեւ *Նոր* Լիթանիա, յարաբերական կարեւորութիւն ունի: Լիթանիայի իմաստը աւելի կարելի է փնտռել անընդհատ վերադարձներուն մէջ դէպի Աստուած, աստուածայնութիւն, Յիսուս, քրմականութիւն, բագիններ՝ ամէն անգամ յատուկ իմաստի մը բնաբանին տակ, հազուագիւտ՝ իբրեւ ուղղակի եւ կեդրոնական արծարծում:

«Աղօթք առ աղերս»-ը (էջ 54) Լիթանիայի իմաստի սակաւաթիւ ուղղակի արտայայտութիւններէն է, գրուած Աստուծոյ ուղղուած աղերսի, խնդրանքի, պահանջի խառնուրդ ոճերով՝ ուր յաճախ դժուար է զանազանել մէկը միւսէն: Կը վերջանայ Անհունութեան ընդմէջէն Աստուծմէ հաւասարութիւն աղերսել-պահանջելով նոյն ինքը Աստուծոյ հետ. «Օ՛ն, տո՛ւր ինծի գիտակցութիւնն Անհունին, / Որ յաւերժին եւ քու կրակովդ արծարծուն / Ըլլամ Աստուած մը հետն անհուն Աստուծուն»:

Խաչելութեամբ աստուածացած մարդ-էակը՝ ցոլացումը մահուան ու ներումի, սիրոյ ու գութի, Գողգոթայի ճամբայէն անցաւ մարկութի՞ւնը փրկելու համար, թէ մարդկութեան խիղճը շարժելու ինքզինքին հանդէպ. «Տառապանքներուդ մէջէն պաշտուած ո՛վ Աստուած... / Խոշտանգեցին քեզ Գողգոթային վիշտն ու ցաւ, / Որպէսզի ըսէ մարդկութիւնը շլմորած, / Թէ այս կեանքին մէջ Աստուած անգամ տանջուեցաւ» («Խաչելութեան առջեւ», էջ 6):

Զանգակատունը ապաւէնն է գիւղին, հողագործին, մոլորուածին. ան բարձրէն կը հսկէ բոլորին: Բարձր է ան հարուստներու հեգնական գութէն. «Բարձր է ան գիւղին բոլոր հիւղերէն, / Եւ պալատներէն հարուստներուն անտարբեր, / Որոնց գութն՝ հեգնանք մ՚է արձակուած վատօրէն / Աղքատին հիւղին եւ գմբէթին սրբանուէր, / Որին խաչը լուռ՝ կը հսկէ վերէն» («Ապաւէնը», էջ 6):

Երէկ, այսօր եւ վաղը: Երէկուայ եղածը կը շարունակուի, իսկ այսօրուայ եղածին մէջ երէկը կայ. «Երէկ՝ նախերգանք կեանքի տենդոտ, լուռ տառամին»: Այսօրը ծնունդ կու տայ վաղուայ հոգերուն, խաբկանքին եւ աւերին, այսօրը կը թաւալի անվերադարձօրէն՝ անկախ մեզմէ. «Ձեղխ գինարբուքով հարբած ինկած ամբոխին / Խօլական տենջով եւ խօլական հաճոյքով / Եւ հեգնանքներով աստուածացո՛վ դու, կի՛ն, // Որ լերկ յղութեանդ երկունքներէն մահաթով, / Եւ վէս ճակտիդ խորշոմներէն քրտնաթոր / Պիտի ծընանիս վաղուան հոգեր՝ սոսկումով»: Գերեզմանն է այնտեղ՝ կեանքը վաղուան. «Անցնող դագաղին մէջ վաղուան կեանքն է կնքուած»: Ի զուր փորձեցինք ճանաչել անճանաչելին, իմաստութիւնը ապագային («Երէկ, այսօր, վաղը», էջ 33-37):

Հակապատկերներով է լեցուն մարդկային հասարակութիւնը, օտարացումներով յագեցած: Նոյն վայրը, նոյն ժամանակը՝ նոյն տեսարանի գործադրութիւնը, բայց երկու չհանդիպող տրամադրութիւններ. «Կան որ ընկճեալ, աչքերնին ալ խոնարհած / Գողգոթաներն կ՚երթան լռին, անտէրուն... / Կան որ իրենց ոճիրներէն սոսկամած, / Դեռ կը նային ձիթենիի ոստերուն: // Կան որ վաղուան հոգն աչքերնուն՝ կը քալեն / Դագաղի մ՚հետ վշտահար կամ անտարբեր, / Մինչ քահանան կը տխրերգէ տըքալէն / Հին աղօթքներ, անկարեկիր «հոգոց»ներ» («Կեանքի հակապատկերներ», էջ 23):

Երկաթագործը կը ծեծէ պողպատը յաւերժական կշռութաւորումով՝ «Թի՛ն, տա՛ն, թօ՛ն, տի՛ն...»: Կրկնուող կշռոյթը, սակայն, երկաթագործին համար անընդհատ կը ստանայ նոր իմաստ ու տրամադրութիւն՝ մէյ մը դառնալով աղօթք, ուրիշ անգամ մը՝ հեգնանքի արտայայտութիւն, ապա՝ երգ, վայելք, սէր, վերջապէս՝ պայքար («Երկաթագործին երգը», էջ 38-40):

Մտնելով անտառի խորքերը, հոգիի անդորրութենէ աւելի հոգիի բարձրութեան է որ կը տենչայ հեղինակը, մինչ կը պայքարի հասնելու ճշմարիտ յաղթանակին: Ասիկա՝ եթէ չհանդիպի հակաճառութեան եւ աստուածային լքումի. «Սակայն եթէ պիտի տեսնեմ հեգնանքին / Առաքեալներն որ կը կանգնեն նոր բագին, / Եթէ ե՛ս ալ, պայքարէն վերջ, ո՛վ Աստուած, / Պիտի իյնամ նոյն իսկ քեզմէ ալ լըքուած, / Թող գոռումով, կործանումով ահաւոր, / Իյնամ այնպէս՝ ինչպէս կաղնին դարաւոր» («Անտառը», էջ 42):

Մրրիկներն ունին իրենց աստուածը՝ «Խենթ Շարժումն է ան, կեանքը նիւթին, տարրերուն, / Պայքարը՝ որուն մէջ կ՚ապրի կեանքն անհունին»: Ալիքներն ունին իրենց աստուածը՝ «Խենթ յուզում է ան իր հընութեան մէջ միշտ նոր, / Կատակը Շունչին որուն ծաղրանքն է տիեզեր»: Բայց չեմ կրնար ճակատագիրս կապել բնութեան հետ, ան պատկերն է ոչինչին. «Օ՜, բնութիւնն ամբողջ լոկ պատկերն է ոչինչին. / Ուրեմն ես ինչո՞ւ հոնտեղ փնտռեմ ապաստան. / Ինչո՞ւ օրօրուիմ խաբկանքներովն անուրջին... / Ճակատագիրս, ո՛չ, հոն չկայ դատաստան»: Սիրոյ խորանին համար Աստուած մը կ՚ուզեմ՝ սէրը անգութ, որուն անծանօթ ըլլայ հեգնանք եւ ատելութիւն. «Ո՛հ, այդ խորանին համար Աստուած մը կ՚ուզեմ. / Սէրը, Սէրը միայն որ թէ անգութ իսկ ըլլայ, / Եւ դեռ արեւոտ օրերս ընէ իսկ դժխեմ, / Գոնէ չհեգնէ, գոնէ ատել չգիտնայ» («Իմ Աստուածս», էջ 57):

Անրջանքի երանութիւն կամ երանութեան անըրջանք՝ քօյրը յաւիտենութեան, փսեմ կեանքի հեշտանքները լերկ. «Պաշտումի համար սիրոյ աղանդի / Խորան մը կանգնենք տաճարներէն դուրս... / Հեռո՜ւ՝ աստղերուն տակ, վըտարանդի, / Ուր կեանքը մըխայ կնդրուկ եւ զըմուռս, / Պիտի օրհնեմ քեզ ո՛վ անըրջանքիս / Տիրող դիցուհին: Ո՛վ սիրոյ բագին / Որ քաղցըր խռովքով կ՚առինքնես հոգիս, / Հընչեցո՛ւր շեշտերն կեանքի նըռւագին» («Անրջանք», էջ 71):

Կան ուղղակի սիրոյ պատկերներ. «Եկո՛ւր երգենք... եւ թող հրճուի քու հոգին, / Երթանք փնտռել գարուն մ՚առանց աշունի. / Հոն վայելենք հեշտանքն անցնող այս կեանքին, / Զի մեր կեանքն ալ, աւա՜ղ, ձմեռ մը ունի» («Եկո՛ւր... երգենք», էջ 59):

Սիրոյ ուրիշ պատկեր մը. «Զեփիւռներն ալ սէրերն անշէջ / Կու գան երգել մեղանոյշ, / Եւ կ՚սթափիմ հոգիիս մէջ / Յիշելով ձայնըդ քնքոյշ» («Ցայգերգ Նանային», էջ 68):

Սէրէն դէպի տուփանք՝ անմիջական ներկայացումով. «Եկո՛ւր ինձ հետ, քմայքներուդ ո՛վ գերին. / Բա՛ւ է հեգնանքդ ա՛լ մոռցիր: / Եւ մինչ մեր զոյգ նայուածքներն ալ դեգերին / Աստղերուն մէջ ցան ու ցիր, / Հոգիդ՝ որ դեռ չէ հարբեր, / Թող երգ մ՚երգէ երգուածներէն շատ տարբեր» («Տուփանք», էջ 76):

Եւ ուրիշ բազմաթիւ իմաստներ ու ենթիմաստներ:

Վեհակրօն *Նոր Լիթանիա*ն ձօնած է իր սիրելի ուսուցիչին՝ Հայր Յովհաննէս Թորոսեանին, հետեւեալ մակագրութեամբ. «Ջօն յարգանքի անոր որ՝ կեանքիս լոյսին ամբողջութիւնը լրացուց միտքի լոյսը ջամբելով: Երկեակ գոյութեանս սոյն երախայրիքը աշակերտական պարտականութեանս դոյզն ձօնը թող ըլլայ ուղղեալ մեծատաղանդ ուսուցիչիս Հայր Յով. Վ. Թորոսեանի՝ իր քահանայական յիսնամեակին առիթով»:

(Շար. 8)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

63. «Հրանդ Վեհակրօն (Հ. Ալատին)», *Բազմավէպ*, Փետրուար-Մարտ 1934, թիւ 2-3, էջ 103:

64. «Մօտ օրէն լոյս կը տեսնէ», *Արաքս*, 14 Հոկտեմբեր 1933, Ը. տարի, թիւ 39 (365): Յայտարարութիւն մը եւս *Արեւ*ի մէջ՝ «Մօտ օրէն լոյս կը տեսնէ», *Արեւ*, 16 Հոկտեմբեր 1933, ԺԸ. տարի, թիւ 4487:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԶԲՕՍԱՇՐՋՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

2023-ին Հայաստան այցելած 630 հազար զբօսաշրջիկների թիւը մօտ 35 տոկոսով աւելի է 2012 թուականի նոյն ժամանակահատուածի ցուցանիշից: Դա թոյլ է տալիս ենթադրել, որ զբօսաշրջութեան առումով այս տարի տարի կը լինի ռեկորդային տարի, եթէ, զգալի կամ լուրջ խոչընդոտներ չլինեն: Այս մասին յայտարարել է էկոնոմիկայի նախարարը: 2022-ին Հայաստան է այցելել 1 միլիոն 666 հազար զբօսաշրջիկ, ինչը, ըստ պաշտօնական տուեալների, ռեկորդային ցուցանիշ է:

## «ԿՈՉ ԵՆՔ ԱՆՈՒՄ ԱԴՐԲԷՋԱՆԻՆ ԱՊԱՇՐՋԱՓԱԿԵԼ ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԸ». ԶԱԽԱՐՈՎԱ

Ռուսաստանի ԱԳՆ խօսնակ Մարիա Զախարովան, Յուլիսի 6-ին պատասխանելով լրագրող Հայկ Խալաթեանի հարցին, թէ ինչ է ձեռնարկում Ռուսաստանն Լաչինի միջանցքի 7-ամսեայ շրջափակումը բացելու եւ հրադադարի խախտման դէպքերի ինտենսիւութիւնը կանխարգելելու համար, ասել է.

«Մենք խիստ մտահոգուած ենք հրադադարի խախտման դէպքերի եւ Լաչինի միջանցքի շրջափակման առնչութեամբ: Ըստ տեղեկութիւնների՝ տարածաշրջանում հումանիտար իրավիճակը վատթարանում է, ցաւօք սրտի, Ղարաբաղի բնակչութիւնը կարող է մնալ առանց անհրաժեշտ մթերքների: Այդ ամէնը հակասում է Նոյեմբերի 9-ի յայտարարութեան պայմաններին: Բաքուին եւ Երեւանին կոչ ենք անում բոլոր հարցերը լուծել դիւանագիտական, քաղաքական ճանապարհով: Ադրբէջանին կոչ ենք անում ապաշրջափակել Լաչինի միջանցքը: Ռուսաստանի խաղաղապահների աշխատանքները բխելու են եռակողմ յայտարարութիւնից եւ տեղում իրավիճակից»:

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀԵՌԱԽՕՍԱՅԻՆ «ՇՂԹԱՅ» ՓԱՇԻՆԵԱՆ-ԷՐԴՈՂԱՆ ՕՂԱԿՈՎ

**ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ**

Յունիսի 30-ին Թուրքիայի նախագահ Էրդողանը հեռախօսազրոյց է ունեցել Իրանի իր պաշտօնակից Իբրահիմ Ռայիսիի հետ: Անշուշտ, Թուրքիայի եւ Իրանի նախագահների շփումը առաջին անգամը չէ, սակայն Յունիսի 30-ի հեռախօսազրոյցը մասնաւորապէս մեր դիտանկիւնից ուշադրութեան է արժանի թերեւս այն հեռախօսազրոյցների «շղթայում», որ ծաւալուել են Յունիսի 26-ից: Իսկ այդ օրը հեռախօսազրոյցներ էին տեղի ունեցել Պուտին-Ռայիսի եւ Ռայիսի-Փաշինեան ձեւաչափով: Երկու օր անց էլ եղաւ Հայաստանի վարչապետի հեռախօսազրոյցը Թուրքիայի նախագահ Էրդողանի հետ, ինչից երկու օր անց էլ Էրդողանը խօսում է Ռայիսիի հետ: Իհարկէ այս հեռախօսազրոյցները անմիջականօրէն միմեանց հետ պատճառահետեւանքային կապով «շղթայելը» կը լինի թերեւս սխալ, քանի որ օրակարգերը խիստ բազմազան են եւ տարբեր տրամաչափերով, սակայն անկասկած է, որ դրանց ժամանակագրական յաջորդականութիւնն այդուամենայնիւ ձեւաւորում է ընդհանուր որոշակի յետագծային շերտ:

Եւ այստեղ թերեւս բուն խնդիրը վերաբերում է Կովկասի կայունութեանը, որի մասին յատուկ ընդգծուած էր «շղթայի» առաջին հեռախօսազրոյցում՝ Պուտին-Ռայիսի: Իսկ Թուրքիան այդ իմաստով ունի առանցքային նշանակութիւն, քանի որ Կովկասի կայունութեան սպառնալիքը կամ այսպէս ասած «պատրոյգը» Ադրբէջանն է, իսկ Ադրբէջանի «օղակը» Թուրքիայի ձեռքին է եւ Անկարան է ըստ էութեան վճռորոշը՝ քաշե՞լ այդ օղակն ու «նետել» Բաքուին ռեգիոնի վրայ, թէ՞ ոչ: Այդ իմաստով, Ռուսաստանի եւ Իրանի համար բուն խնդիրը հայ-ադրբէջանական հակամարտութեան, արցախեան հարցում արեւմտեան աշխուժութիւնը եւ նախաձեռնողականութիւնը չէ, այլ այն, թէ ինչպէս է խաղում Թուրքիան, խաղում է իրե՞նց հետ, թէ՞ աւելի շուտ հէնց այդ արեւմտեան նախաձեռնողականութեան կամ աշխուժութեան: Յատկանշական է, որ Վաշինգտոնում հայ-ադրբէջանական բանակցութեան հերթական ռաունդից առաջ ԱՄՆ պետքարտուղարը հանդիպում ունեցաւ Թուրքիայի նոր արտգործնախարար, հետախուզութեան նախկին ↳4

# ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԱՌԱՋԱՐԿՈՒՄ Է ԲԱՆԱԿՑԵԼ ՈՒՂԻՂ ԲԱՔՈՒԻ ՀԵՏ

*Մինչ Ղարաբաղի գործող նախագահի թիմակիցները եւ նախկին նախագահների «դաշինքը» պնդում են, որ ստեղծուած պայմաններում Ադրբէջանի հետ ուղիղ երկխօսութիւն լինել չի կարող, Միասնական Հայրենիք կուսակցութեան նախագահ, Ղարաբաղի պաշտպանութեան բանակի նախկին հրամանատար, Անվտանգութեան Խորհրդի նախկին քարտուղար Սամուէլ Բաբայեանը առաջարկում է չյապաղել՝ անիրատեսական պահանջներ առաջ քաշելու փոխարէն պատասխանատուութիւն ստանձնել, «սկսել Ստեփանակերտ-Բաքու ուղղակի բանակցութիւնները», սկզբի համար «փորձել վստահութիւն ձեւաւորել»:*

Ադրբէջանի գլխաւոր նպատակը Լեռնային Ղարաբաղի հետ ուղիղ յարաբերուելն է: Բաբայեանը, «որպէս քաղաքական երկրորդ ուժ», այս ձեւաչափին դէմ չէ: Նա առաջարկում է խօսել փաթեթով՝ «նշել այն բոլոր կէտերը, որոնք կողմերիս հետաքրքրութեան գօտում են, փոխվստահութիւն ձեռք բերել իրար նկատմամբ»: Ըստ նրա՝ Արցախն իր քաղաքական ուժերի հետ պիտի ձեւաւորի այս փաստաթուղթը, առաջարկի Ադրբէջանին, Ադրբէջանն այն ուսումնասիրի ու առաջարկի իր տարբերակը.

«[Այդ փաստաթղթում] ոչ թէ կարգավիճակ, Ղարաբաղի հարց կը լինի, այլ փոխվստահութիւն: Ես այս բառն իզուր չեմ օգտագործում՝ այս քայլերով մենք իրար վստահում ենք, սկսում ենք նոր փուլ, որտեղ արդէն ե՛ւ կարգավիճակի հարցը, ե՛ւ միւս բոլոր խնդիրները կը լինեն: Եթէ առաջին հարցում մենք իրար չենք հասկանում, այլեւս դադարում ենք բանակցութիւնները եւ շարունակում խրամատաւորուել», — *Ազատութիւն ռադիոկայանի* տաղաւարում ասել է Բաբայեանը:

Եթէ Ստեփանակերտը չգնայ այս ճանապարհով, եթէ փոխվստահութիւն չձեւաւորուի, «30 տարի բանակցել ենք ոչինչի չենք հասել, 30 էլ բանակցելու ենք եւ էլի ոչինչի չենք հասնելու»:

Ղարաբաղի իշխանութիւնները եւ ընդդիմութիւնը (նախկին նախագահներ Բակօ Սահակեանն ու Արկադի Ղուկասեանը՝ միաւորուած նախկին ռուսաստանցի օլիգարխ Ռուբէն Վարդանեանի հետ) հակադիր կարծիքն ունեն. «Երկուսն էլ առաջարկում են, որ պէտք է միջազգային միջնորդ լինի, հաւասարը հաւասարի հետ նստենք, Ադրբէջանն էլ ասում ա՝ դուք ընդհանրապէս ոչ մի կառոյց-մառոյց չպիտի ունենաք, մեր մի փոքր համայնքն էք: Այսինքն՝ մի ծայրայեղութիւնից միւս ծայրայեղութիւնը»:

Նա չի կարծում, որ Ադրբէջանը դէմ է ցանկացած բանակցութիւնների («վերջերը ԱՄՆ-ի առաջարկով պէտք է լինէր բանակցութիւններ, արցախեան կողմը հրաժարուեց այդ բանակցութիւններից: Ինչ-որ ձեւի այդ բանակցութիւնները այսպէս թէ այնպէս լինում է»), բայցեւ վստահ է, որ միջնորդաւորուած բանակցութիւններից (այդ թւում՝ ռուս խաղաղապահների միջնորդութեան ֆորմատից) Բաքուն հրաժարուելու է:

Ստեղծուած պայմաններում, ըստ Սամուէլ Բաբայեանի, ↳4

ԽՈՀԵՐ

# ՓՏԱԾՈՒԹԻՒՆԸ՝ ՄԵՐ ՄԷՋ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Փտածութիւնը (corruption) կը վերագրուի կաշառակերութեան, անձնական շահերու համար իշխանութեան շահագործումին: Ան մեծ մասամբ կը կապուի պետական-իշխանական մարմիններուն եւ անոնց հաւաքական թէ անհատական շահատակութիւններուն:

Փտածութիւնը, սակայն, կը գտնուի մեր բոլորիս մէջ: Անոր սերմը կը սկսի մեզի պէս սովորական անձերէն: Մեր՝ իմ եւ քու, ամենօրեայ թոյլատրութիւնը փտածութեան գործադրութեան եւ մասնակցութիւնը անոր արտադրութեան, հիմքերն են մեծ, պետական փտածութեան:

Ստորեւ օրինակները իրական են, վերցուած են Սփիւռքի կեանքէն: Բացարձակօրէն չեն հետաքրքրեր անունները, որովհետեւ դէպքերէն իւրաքանչիւրը, տարբեր բնաբաններու մէջ, կրնայ կրկնուիլ որեւէ տեղ, որեւէ ժամանակ:

Այսպէս, փտածութիւնը վաւերացուցած կ՚ըլլանք՝ երբ

- ակադեմական աստիճանաւորը նախաբան գրէ Սփիւռքի ղեկավարի մը անմակարդակ գիրքին՝ փոխան անձնական շահու,
- պատմաբանը պատմութիւնը յարմարցընէ այսօրուայ հայրենասիրական պատումին, յատկապէս կուսակցական պատումին,
- գրողներ եւ արուեստագէտներ ամսավճարներով եւ պարգեւավճարներով օգտուին դիտաւորեալ փակուած հայկական դպրոցի մը վաճառքէն գոյացած 15 միլիոն տոլլարի մշակութային յատկացումներէն,
- մտաւորականը գիրք կամ յօդուած գրէ անսահման դրամատիրոջ մասին՝ զինքը վերածելով մշակութասէր եւ դրամը հաւասարեցնելով մշակոյթին,
- ազգային երեսփոխան ընտրենք անձեր՝ որոնք եղած են հայերը ահաբեկող մարտական խումբի անդամներ,
- հայոց ցեղասպանութիւնը ճանաչել եւ դատապարտել տանք եւրոպացի եւ ամերիկացի պաշտօնատարներու, որոնք այլապէս յայտնի են պատերազմներու հրահրումներով եւ ցեղապաշտական յայտարարութիւններով,
- սփիւռքագիտութիւն կառուցենք առանց տեղեակ ըլլալու տուեալ գաղութի ամենէն էական պատմական դէմքերուն եւ իրադարձութիւններուն, բաւարարուելով արեւմտեան յատկապէս անգլերէն տեսութիւններու մեքենայական փոխանցումով, ի դիմաց նշանակալի գումարներու ստացումին եւ վատնումին,
- հայերէն չիմացող հայագէտի մը առիթ տանք օգտագործել սփիւռքահայ հիմնարկ մը՝ անձնական-սեռական կիրքերը բաւարարելու համար, փոխան անմակարդակ արտադրութիւններու՝ որոնք հիմնարկի առաջնորդին կը հասցնեն ծանուցողական փառքի,
- երաժշտագէտ մը այցելէ Եգիպտոս, իր շուրջը վխտան երաժիշտներու հոյլ մը՝ հիւրասիրութիւններով, հատուցումներով, եւ այլն, եւ ապա տպագրեալ գիրքին մէջ գտնենք այդ նոյն անունները պերճաշուք ներկայացումներով, թապու ձգելով շատ կարեւոր անուններ,
- մեր անձը փառաբանող գիրք գրել տանք՝ փոխան բարձր վարձատրութեան,
- ամենաբարձր մակարդակով մրցանակ տանք հարիւրաւոր սխալներով եւ կողմնակցութիւններով յօրինուած գիրքի հեղինակի, կը բաւէ որ խորագիրը տեղաւորուի ընդունուած հայրենասիրական պատումին,
- մամուլով փառաբանենք անմակարդակը՝ գրականութիւն, արուեստ, ձեռնարկ,
- Վահէ Օշականը վարկաբեկող, Տիրան Զրաքեանը ոչ-հայ գրող ընդունող կուսակցականապետը շնորհէ գրական մրցանակներ՝ հայ գրականութիւնը քաջալերելու պիտակին տակ,
- կուսակցականապետը՝ իր սեփական կուսակցութիւնը ծայրայեղ գաղափարախօսութեան հասցնելէ ետք, որոշէ ո՛վ իրաւունք ունի դառնալ մշակութային գործիչ,
- ամբողջ կեանքը դրամի տրամաբանութեամբ գործած դրամատէրը որոշէ մշակոյթի սահմանները,
- ընդունինք բարերարութիւնը դրամատիրոջ՝ որ այլապէս Լաս Վեկասի հսկայ քազինոներով պատճառ հանդիսացած է անհամար մարդոց կործանումին եւ հոգեկան խանգարումին,
- մասնակցինք կամ նոյնիսկ մեր անունը արձանագրենք Հայաստանի ապագան որոշող համախմբումի՝ որուն կազմակերպիչներն ու դրամական հովանաւորներն են Քովիտ-19-ի պատուաստումը հնարող անդրազգային ընկերութիւններէն մէկուն սեփականատէրը՝ որ ամէն բան ըրած է ճնշելու պետութիւններն ու ժողովուրդները ամենաթանկ գիներով գնելու խիստ կասկածելի պատուաստումները եւ ապա հռչակուած դրամատէր-բարերար, ինչպէս նաեւ ամենափտացած օլիկարք մը՝ *Տրոյկա լուսաւորութեան* անունով ծանօթ դրամի լուացումի հսկայ գործողութեան նախաձեռնող,
- Հայաստան, Արցախ հայրենասիրական մեծ անուններու տակ ընենք նուիրատուութիւններ, միաժամանակ անտեսելով, անպատուելով, արհամարհելով, ոտնակոխելով ճիշդ մեր քովը ապող հայը,
- մասնակցինք համահայկականութեան անունին տակ կազմակերպուած համախմբում-ժողով-գիտաժողովի՝ որուն կազմակերպիչն ինքը եղած է հայութիւնը դիտաւորեալ բաժնողներէն մէկը՝ անհնար դարձնելով համահայկականութիւնը,
- բանասիրական աշխատանքով փայլեցընեք, բիւրեղացնենք աղօտն ու պղտորը, այլեւ հիմնարկայնացնեք այդ փայլեցուած բանասիրութիւնը եւ վազենք մեր ստորագրութեամբ գրութիւն մըն ալ ունենալու այնտեղ,
- թոյլ տանք բարձրաստիճան թալանի հայկական հիմնարկէ,
- եւ ամենակարեւորը՝ տեսնենք այս բոլորը, իրազեկ ըլլանք անոր, բայց մեր կամքով լռենք, այլեւ լռենք ամբողջ համայնքով:

Ասոնք ուղղակիօրէն կախուած են մեր անձէն եւ գործողութիւններու մեր սեփական որոշումներէն՝ հեռու իշխանական փտածութենէն:

Տարանջատում մը բարոյականութենէ եւ իրականութենէ, օտարացում «գիս չի հետաքրքրեր» սովորական դարձած կարգախօսի պատեհապաշտ ինքնարդարացումով, փրոֆեսիոնալիզմի բնորոշ ինքնանջատում գործող, գործուն եւ աշխոյժ շրջապատէն, ներգրաւուածութեան բացակայութիւն յանուն եսակեդրոն սեւեռումի: Եսակեդրոն սեւեռում՝ որ հրաշալիօրէն կը գործէ ներկայ հասարակութեան մէջ: Վաւերացում անձնական փտածութեան, որմէ՝ իշխանականին:

# ՔԱՂԱԿԻՐ

## 1➩ ՎԱՇԻՆԳՏՈՆԸ ԿԱՌՈՒՑՈՂԱԿԱՆ Է ՀԱՄԱՐՈՒՄ ՄԻՐԶՈՅԵԱՆ-ԲԱՅՐԱՄՈՎ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

բանակցութիւնները», - ասել է Միլլերը բանակցութիւնների ամփոփիչ նիստին նախորդած ճեպազրոյցում:

Ապագայում երկու երկրների նախարարներին հրաւիրելու հնարաւոր ծրագրերի մասին հարցին Միլլերն արձագանքել է. «Ես չեմ մեկնաբանի հնարաւոր յետագայ բանակցութիւնները, մինչեւ այժմ տեղի ունեցողը չաւարտուի»:

Ճեպազրոյցից յետոյ տեղի է ունեցել հայ-ադրբէջանական բանակցութիւնների ամփոփիչ նիստը՝ ԱՄՆ պետքարտուղարի մասնակցութեամբ, որի աւարտին միասնական հաղորդագրութիւն է հրապարակուել: Ըստ այդ փաստաթղթի, մասնաւորապէս, Արարատ Միրզոյեանը եւ Ջէյհուն Բայրամովը «համաձայնութեան են հասել համաձայնագրի նախագծի եւս մի քանի յօդուածների շուրջ եւ գրանցել փոխըմբռնման առաջընթաց»:

## 3➩ ՀԵՌԱԽՕՍԱՅԻՆ «ՇՂԹԱՅ» ՓԱՇԻՆԵԱՆ-ԷՐԴՈՂԱՆ ՕՂԱԿՈՎ

պետ Հաքան Ֆիդանի հետ:

Այլ կերպ ասած, Անկարայի ուղղութեամբ աշխատում են թէ Վաշինգտոնը, թէ Մոսկուան ու Թեհրանը: Այդ ֆոնին, Անկարայի հետ հաղորդակցութեան երեւանեան նախաձեռնութիւնը թերեւս ստանում է անհրաժեշտութիւն, որովհետեւ շատ բարդ է իհարկէ «գուշակել», թէ ինչ է անում Թուրքիան աջ եւ ձախ ձեռքերով, ու ինչ է կատարւում Էրդողանի ու նրա վերադասաւորած թիմի գլխում: Նա իհարկէ բաւականին հմուտ է որեւէ մէկի դէմ չգնալու կամ չաշխատելու համար, բայց նաեւ բաւականին փորձառու է նոյն ապրանքը երկուսի վրայ վաճառելու հարցում, ու այդտեղ Հայաստանի համար առաջացող ռիսկերը կանխելու համար նուազագոյն անհրաժեշտութիւն է Էրդողանի հետ ուղիղ շփման հնարաւորութիւնը, առանց չափազանցուած սպասումների եւ առաւել եւս պատրանքների, պատրաստ լինելով հէնց այդ շփումից բխող ռիսկերի: Բայց առկայ իրավիճակում այդ շփումը անհրաժեշտութիւն է, առնուազն հասկանալու համար նաեւ, թէ ինչ աշխատանք է պէտք կատարել նաեւ ԱՄՆ, Ռուսաստանի եւ Իրանի հետ:

## 3➩ ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԱՌԱՋԱՐԿՈՒՄ Է ԲԱՆԱԿՑԵԼ ՈՒՂԻՂ ԲԱՔՈՒԻ ՀԵՏ

Արցախի իշխանութիւնն ու ընդդիմութիւնը պարզապէս խուսափում են պատասխանատուութիւն ստանձնելուց:

«Խուսափելով պատասխանատուութիւնից՝ պահանջ ես դնում: Դու էլ գիտես, որ դա չի լինելու, ինքն էլ: Բայց դու մոռանում ես, որ 120 հազար մարդու համար պատասխանատու ես ներկայ վիճակում, եւ պէտք է խնդիրները լուծես: Լաւ, ի՞նչ էք անում, պատերա՞զմ էք անում, սկսենք պատերա՞զմ, թէ՞ քաղաքական լուծման էք գնում: Ես ասում եմ՝ քաղաքական լուծումը սա՛ է: Իհարկէ, քո ժողովուրդը [սրա համար] քեզ ճակատից չի պաչելու, որ դու 30 տարի ասել ես, թէ անկախ ես, ու յանկարծ իրան բերել ես պարտութեան քո անխելքութեամբ, ոչ կազմակերպուածութեամբ, հիմա էլ դրել փաստի առաջ: Բայց դո՛ւ պէտք է ելք գտնես, ժողովուրդը չի կարող ելք գտնել», – շարունակել է ղարաբաղցի քաղաքական գործիչը:

Հարցին՝ ինչպէս է իր դիրքորոշումն իրականացնելու, Բաբայեանը պատասխանել է՝ «35 հազար մարդ ընտրել է Արայիկ Յարութիւնեանին, 35 հազար մարդ պէտք է դուրս գայ հրապարակ», եթէ ժողովուրդը «ցանկանայ, որ ես գլխաւորեմ, պահանջի, որ ծառայեմ, ես կը ծառայեմ»:

*Շրջափակուած Ղարաբաղում արդէն աւելի քան կէս տարի է՝ հումանիտար ճգնաժամ է, սահմանին պարբերաբար կրակում են: Գործող իշխանութիւնը՝ արձագանքելով ընդդիմադիր ուժերի «ստուերային» քարոզարշաւին, արգելել է հանրահաւաքներն ու բողոքի ցոյցերը: Տեղացիները ահազանգում են՝ քաղաքական անորոշութեան պայմաններում Արայիկ Յարութիւնեանի, Ռուբէն Վարդանեանի (եւ նրա հետ դաշնակցող նախկին նախագահների) եւ Սամուէլ Բաբայեանի ներքաղաքական դիմակայութիւնը շարունակւում է:*

*Epress.am*

## 1➩ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՆՔԱՆ ԿԵՆՍԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆ ՈՒՆԻ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԻՆ ՀԱՄԱՐ

Արտաքին պարտքի յաւելումը կացնահար պիտի ընէ երկիրի տնտեսութիւնը եւ պիտի խոչընդոտէ պետութեան կողմէ ծրագրաւորուած տնտեսութեան ծրագիրի իրականացումը:

Համաշխարհային Պանքայի, Միջազգային Արժոյթի Հիմնադրամի եւ եւրոպական ու ամերիկեան այլ ֆինանսական հիմնադրամներու պահանջները եւ անոնց թելադրած պայմանները խստօրէն պիտի վտանգեն մեր ազգային եւ ինքնաբաւ տնտեսութեան զարգացումը: Անոնք կը փափաքին, որ մեզի պէս երկիրները ըլլան իրենց հսկողութեան տակ եւ ենթարկուին իրենց տնտեսական ու քաղաքական ծրագիրներուն:

Որպէսզի Համահայկական Պանքայի կարեւորութիւնը եւ նշանակութիւնը մեր ազգի զարգացումի գործին մէջ աւելի հասկնալի ըլլայ, համառօտ կ՚անդրադառնանք դրամատիրական համակարգի անընդհատ ճգնաժամերուն: Պատմութիւնը ցոյց տուած է, որ նման ճգնաժամերը պարբերաբար անխուսափելի են, անոնք կ՚ունենան իրենց բացասական եւ աւերիչ ազդեցութիւնը բոլոր դրամատիրական երկիրներու տնտեսութիւններուն վրայ: Վերջին նման ճգնաժամը յառաջացաւ 2008-ին, որուն ազդեցութիւնը մինչեւ այսօր կը շօշափեն շատ երկիրներ: Աշխարհի յայտնի ֆինանսական դրամագլուխի կեդրոնները կ՚աշխատին պայքարիլ այդ ճգնաժամերուն դէմ, սակայն դրամատիրութեան էութեան պատճառով անոնք այդ գործին մէջ երբեք յաջողութիւններ չեն կրնար ունենալ: Նման յայտնի կեդրոններէն են ԱՄՆ-ի Ֆետերալ Ռեզերվ (Federal Reserve - FED) դաշնային պահուստային համակարգը եւ Եւրոպայի Կեդրոնական Պանքան (Central Bank of Europe - EZB), որոնք տարբեր եղանակներով կը ձգտին կենդանի պահել մահացու հիւանդ դրամատիրական համակարգը: Անոնք համակարգի գնաճը (ինֆլեացիա) զսպելու նպատակով իրենց յատկացուցած վարկերու տոկոսադրոյթը կը հասցնեն զէրոյի, իսկ որոշ երկիրներու մէջ որդեգրուած է բացասական տոկոսային քաղաքականութիւն: Եթէ FED-ը կամ EZB-ը վարկերու տոկոսը նոյնիսկ մէկ կամ երկու տոկոսով բարձրացնեն, համակարգին մէջ պիտի յառաջանայ ոչ ցանկալի գնաճ, որուն հետեւանքը պիտի ըլլայ վարկատուներու կամ տնտեսվարողներու ունեցուածքի արժեզրկում: Իսկ եթէ վարկերուն տոկոսը չբարձրացնեն, պանքաները դատապարտուած կ՚ըլլան սնանկացումի:

Արեւմուտքի մէջ ապրող մեր հայրենակիցներուն ձեռնտու չէ իրենց դրամագլուխը պահ դնել իրենց մօտ գտնուող եւրոպական պանքաներուն մէջ որովհետեւ պիտի չստանան որեւէ շահոյթ, եւ եթէ նոյնիսկ որոշ պանքաներ շահոյթ տրամադրեն՝ ան պիտի ըլլայ շատ չնչին, եւ ընդհակառակը, որոշ պանքաներ դրամագլուխը պահելու համար անոնցմէ գումար պիտի պահանջեն: Այսպէս, մեր հայրենակիցներուն համար ձեռնտու պէտք է ըլլայ իրենց դրամագլուխը պահ դնել Համահայկական Պանքային մէջ եւ ստանալ թէկուզ նուազագոյն շահոյթ:

Այսպէս, սփիւռքահայութիւնը ոչ թէ հանգանակութիւն կը կատարէ, այլ բացի իր ազգային պարտքը կատարելէ, ներդրում կ՚իրականացնէ հայրենիքի մէջ՝ իր դրամագլուխը ներդրելով Հայաստանի մէջ հիմնադրուած Համահայկական Պանքայի մօտ: Համահայկական Պանքան իր դրամագլուխի մէկ մասը պարտք կու տայ Հայաստանի ժողովուրդին համակրանքը եւ վստահութիւնը վայելող իշխանութիւններուն, եւ իշխանութիւնները իրենց կարգին այդ գումարով կը փակեն Հայաստանի պետական արտաքին եւ ներքին պարտքը: Տասնեակ միլիոններու կը հասնի այդ թանկ պարտքի տոկոսներուն վճարումը, վճարումներ՝ որոնք կացնահար կ՚ընեն Հայաստանի իշխանութիւնը եւ տնտեսական համակարգը:

Համահայկական Պանքայի գոյութիւնը եւ աշխատանքը կարող է պատճառ դառնալ, որ սփիւռքահայերը ներգրաւուին Հայաստանի ֆինանսատնտեսական ոլորտին մէջ: Օգտուելով Համահայկական Պանքայէն, Հայաստանի իշխանութիւնները տարիներու ընթացքին կը յաջողին ազատիլ Համաշխարհային Պանքայի եւ Միջազգային Արժոյթի Հիմնադրամի եւ միւս արտաքին կառոյցներէն եւ չվճարել ամսական աւելի քան 60 միլիոն տոլլար: Ասոր հետեւանքով կը նուազի Հայաստանի աշխատաւորներուն եւ գործարարներուն վճարած հարկերը եւ բարենպաստ հող կը պատրաստուի ցած ինքնարժէքով արտադրութեան համար, ուր արտահանումի համար կ՚արտադրուին աւելի մրցունակ ապրանքներ: Համահայկական Պանքան շղթայաբար իր դրական ազդեցութիւնը կ՚ունենայ Հայաստանի կեանքի բոլոր ասպարէզներուն մէջ: *Հայ Ձախ Ֆորումը* համոզուած է՝ որ ասիկա շատ կարեւոր քայլ կ՚ըլլայ Հայրենիք-Սփիւռք յարաբերութիւններու հայանպաստ կարգաւորումին համար:

Համահայկական Պանքան կը կարողանայ կամուրջի դեր կատարել համայն հայութեան եւ Հայաստանի պետութեան ֆինանսներու միացումի գործընթացին մէջ:

Ընդհանուր առմամբ, Համահայկական Պանքայի նպատակները կարելի է թուարկել ըստ հետեւեալի.

1. Հայաստանի իշխանութիւններուն ազատել արտաքին եւ ներքին պանքաներու բարձր տոկոսներու վճարումներէն:

2. Հայաստանի միջին խաւի արդիւնաբերութեան ոլորտի տնտեսվարողներուն տրամադրել շատ ցած տոկոսով վարկեր:

3. Ֆինանսապէս աջակցիլ Սփիւռքի հայութեան կառուցելու համար դպրոցներ, մարզամշակութային ակումբներ եւ այլ հաստատութիւններ կամ վերանորոգելու եւ արդիականացնելու եղածները:

4. Ցած տոկոսով վարկեր տրամադրել սփիւռքահայութեան գործարար այն խաւին՝ որ հայրենադարձութենէն ետք ցանկութիւն կ՚ունենայ գործարաններ, արտադրամասեր կամ արհեստանոցներ կառուցել:

5. Աջակցիլ Հայաստանի իշխանութիւններուն ցած տոկոսադրոյթներով ֆինանսաւորելու հայրենադարձներու ընտանիքներու պետական բնակարանաշինութեան աշխատանքներուն:

6. Արցախի ժողովուրդի համար պետական բնակարանաշինութեան աշխատանքներու ֆինանսաւորում:

7. Հայաստանի եւ Արցախի ապահովութիւնը ապահովելու նպատակով հայկական ռազմարդիւնաբերութեան ոլորտի ֆինանսաւորում:

8. Սփիւռքահայութեան ֆիզիքական եւ ոչ ֆիզիքական ներգաղթի կազմակերպումը դէպի Հայրենիք:

Համահայկական Պանքայի ստեղծումը վստահաբար կը հակասէ ներքին եւ արտաքին պանքաներու շահերը եւ սպասելի է որ անոնք տարբեր եղանակներով խոչընդոտեն, բայց այս գաղափարը մեր ժողովուրդի գիտակցութեան մէջ արմատաւորելով եւ գործող իշխանութեան համոզմունքը ձեռք բերելով կրնանք դիմագրաւել ֆինանսական դրամագլուխի ճնշումները:

Հայանպաստ այս քայլը կարելի է սկսիլ միտքերու փոխանակումներով Սփիւռքի, Հայաստանի եւ Արցախի մէջ: Հնարաւոր է կեանքի կոչել համատեղ մարմին մը, որ կը հետեւի այս աշխատանքներուն եւ վերջնական արդիւնքներու հասնելէ ու գործադրութեան ծրագիր մշակելէ ետք սկսիլ կառուցել Համահայկական Պանքան:

*Հայ Ձախ Ֆորումը* կ՚առաջարկէ մեր մտաւորականներուն եւ քաղաքական ու հասարակական կառոյցներուն սկսիլ իրենց շրջանակի մէջ քննարկել այս նիւթը եւ արտացոլել իրենց կարծիքները այս կապակցութեամբ: Հայաստանի իշխանութեան կ՚առաջարկենք իր կարգին մասնագիտական քննարկումի ենթարկել այս երեւոյթը եւ կեանքի կոչել այդ համադրումի մարմինը:

*Արեւելահայերէնէ արեւմտահայերէն փոխադրութիւն՝ Ա.*

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1944 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 20 ՅՈՒԼԻՍ 2023 ՀԱՏԸ ՅԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٤٤ الخميس ٢٠ يوليه ٢٠٢٣

# ՂԱՐԱԲԱՂ. ՔՈՒԼԻՍԱՅԻՆ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ ԱՔԹԻՒԻԶՄ

Հայաստանի եւ Ազրպէյճանի ղեկավարներու վերջին հանդիպումին (15 Յուլիս, Պրիւքսէլ) որոշ մանրամասնութիւններ հանրային դարձան շնորհիւ Եւրոպական Խորհուրդի նախագահի պաշտօնական յայտարարութեան: Հանդիպումը նշանաւորուեցաւ նաեւ Ռուսաստանի Արտաքին Գործոց Նախարարութեան ծաւալուն հաղորդագրութեամբ՝ հրապարակուած Փաշինեան-Միշել-Ալիեւ բանակցութիւններէն ընդամէնը կէս ժամ առաջ: Մինչ այդ, պաշարուած Ղարաբաղի մէջ «Համաժողովրդական շարժում» է՝ բարձրաստիճան պաշտօնեաններու ղեկավարած բողոքի ցոյցը վրանաւորուեցաւ Ստեփանակերտի Վերածնունդի հրապարակին վրայ եւ ռուս խաղաղապահներու կայանին մօտ: Պաքուն (եւ Շառլ Միշելը) կը խօսին Ազրպէյճանէն «մարդասիրական» օգնութիւն մատակարարելու հնարաւորութեան մասին՝ Աղդամ-Ստեփանակերտ ճանապարհով, Ղարաբաղի հայերը կը պահանջեն ապաշրջափակել Լաչինի միջանցքը եւ վերականգնել 2020 Նոյեմբեր 9-ի յայտարարութեամբ սահմանուած տարանցումի կարգը:

**Աղդամ, մատակարարումներ, ամբողջարկում**

Շառլ Միշելի յայտարարութեան հիմնական մեքենայութիւնը Ղարաբաղի ապաշրջափակումին վերաբերող հատուածն էր:

Երկրորդելով հանդիպումի նախաշեմին Ազրպէյճանի Արտաքին Գործոց նախարարի յայտարարութիւնը, Միշել աջակցեցաւ Աղդամէն (այսինքն Ազրպէյճանէն) դէպի Ղարաբաղ («տեղի բնակչութեան») մարդասիրական մատակարարումներ ընելու առաջարկին, միաժամանակ շեշտելով Լաչինի միջանցքը բացուելու անհրաժեշտութեան մասին:

Հայաստանի փորձագէտները ասիկա մեկնաբանեցին իբրեւ ազրպէյճանական «շրջափակումի» սպառնալիքի օրինականացում եւ պարտադիր ամբողջարկումի [ինտեգրացումի] քաղաքականութեան հովանաւորում:

Ազրպէյճան անտեսեց Արդարադատութեան Միջազգային Դատարանի որոշումները, Լաչինի միջանցքը հետզհետէ աւելի փակուեցաւ, իսկ այսօր նոյնիսկ սնունդ եւ դեղօրայք չեն մատակարարուիր Ղարաբաղին: Պաքուն անտեսած է միջազգային կառոյցներու (ներառեալ՝ Եւրամիութեան) կոչերը: Եթէ այս ամէնուն հիմնական նպատակը Ստեփանակերտին «ամբողջարկում» պարտադրելն էր, ապա, Միշելի վերջին յայտարարութենէն կարելի է դատել՝ որ Ազրպէյճան առաւել եւս մօտեցած է այդ նպատակին:

«Հասկանալի չէ՝ ինչով էր հանդիպման ժամանակ զբաղուած հայկական կողմը, եթէ նման ձեւակերպումներ են ներառուել յայտարարութեան վերջնական տեքստի մէջ: Լեռնային Ղարաբաղի շրջափակման նպատակներից մէկը Ադրբէջանից Ղարաբաղ ենթակառուցուածքների եւ հաղորդակցութիւնների վերականգնումն էր՝ որպէս ինտեգրացիայի մեծ օրակարգի մաս: Այդ օրակարգը Ադրբէջանը Լեռնային Ղարաբաղին է փորձում պարտադրել ուժային մեթոդներով, շանտաժով: Եւ այն, որ Եւրոպական Խորհրդի նախագահը նման նարատիւներ է ներառում իր յայտարարութեան մէջ, անընդունելի է եւ կարող է նպաստել գետնի վրայ իրավիճակի վատթարացմանը, կարող է Ադրբէջանին աւելի ամուր հիմքեր տալ՝ Լաչինի միջանցքի վերաբացման համար գործադրուող ճնշմանը հակադրուելու համար: Այս առումով խօսքը, իհարկէ, հայկական դիւանագիտութեան ձախողման մասին է», – *Էխո Կավկազայի* Թղթակից Վատիմ Տուպնովի հետ ունեցած զրոյցին ըսաւ քաղաքագէտ Տիգրան Գրիգորեան:

Հայաստան, որ արդէն Ղարաբաղը ճանչցած է իբրեւ Ազրպէյճանի մաս, արդեօ՞ք իրագործելի ծրագիր ունի՝ եթէ ոչ ամբողջարկումի քաղաքականութիւնը մերժելու, գոնէ Ազրպէյճանի հետ տնտեսական եւ ենթակառուցուածքային կապերու վերականգնումը առկախելու համար: Այս հարցումին պատասխանը չկայ: Հայաստանի փորձագէտներուն մեծ մասը կը հաւատայ՝ որ հայկական կողմը պէտք է շարունակէ պնդել Լաչինի միջանցքի անպայման վերագործարկումին եւ Պաքու-Ստեփանակերտ բանակցութիւններուն համար միջազգային մեքանիզմ ստեղծելու անհրաժեշտութեան վրայ: Պարզ չէ թէ ինչպէ՞ս կարելի է հասնիլ այս պայմաններու իրագործումին՝ երբ Ազրպէյճան կտրականապէս կը մերժէ զանոնք: Բաւարար միջազգային ճնշում չկայ (Պաքուն բարեյաջող կերպով կ՚անտեսէ թէ՛ կոչերը, թէ՛ դատական վճիռները եւ թէ՛ բանաձեւերը), ո՛չ ալ հաւանական ուժային տարբերակներու շուրջ բաց խօսակցութիւն:

*Լեռնային Ղարաբաղը արդէն 7 ամիս է փաստացի շրջափակուած է: Լաչինի միջանցքի՝ Նոյեմբեր 9-ի եռակողմ յայտարարութեամբ սահմանուած կարգը այլեւս չի գործեր: Նոյնիսկ եթէ միջանցքը ապաշրջափակուի, ան այլեւս պիտի գտնուի ազրպէյճանցի սահմանապահներու լիակատար վերահսկողութեան տակ:*

*Վերջին մէկ ամսուայ ընթացքին դադրած են նոյնիսկ դէպի Ղարաբաղ գացող մարդասիրական մատակարարումները: Սնունդի պաշարները արդէն կը սպառուին: Ամիսներ շարունակ մատակարարուած է ո՛չ կազ, ո՛չ ելեկտրական ուժանիւթ: Ղարաբաղի հայկական հատուածը փաստացի կը սնուի Սարսանգի ջրամբարէն արտադրուող ելեկտրականութեան միջոցով. ջրամբարը գրեթէ ցամքած է, եւ եթէ այսպէս շարունակուի՝ ձմեռը կը սպասուի նաեւ լուրջ ուժանիւթային ճգնաժամ:*

*Կը թուի թէ բանակցութիւններէն ետք վերականգնուած է Կարմիր Խաչի ինքնաշարժներուն տեղաշարժը:*

Ստեղծուած իրավիճակը Ղարաբաղի մէջ կը փորձեն դիմակայել «համաժողովրդական շարժումով»: Վերջին շրջանին տարբեր խումբեր կը պահանջէին՝ որ իշխանութիւնը դիմէ ճշգրիտ քայլերու: Ընդառաջելով այդ պահանջներուն, Ղարաբաղի կառավարութիւնը սկսած է փողոցային գործողութիւններ: Ստեփանակերտի կեդրոնը եւ խաղաղապահ զօրախումբի տեղակայութեան վայրը տեղադրուած են վրանային ճամբարներ:

**Աշխարհաքաղաքական անզօրութիւն, ձեւափոխուած սթաթիւս-քուօ**

Տիգրան Գրիգորեան կը համարէ՝ որ ասիկա աւելի շատ յուսահատութեան գործողութիւն է քան քաղաքական ճշգրիտ ծրագիր. «Ակցիաների պրակտիկ նշանակութիւնը, պրակտիկ օգուտը պարզ չէ»: Ազրպէյճանի վրայ ճնշում գործադրելը այսպէս չըլլար, ցուցարարները, հաւանաբար, կը փորձեն գոնէ միջազգային հանրութեան ուշադրութիւնը հրաւիրել:

Քննադատութեան հիմնական առարկաներն են Երեւանն ու Մոսկուան (Երեւանը՝ զիջումներու/սխալ արտաքին քաղաքականութեան/ոչ բաւարար ջանքերու եւ այլն, Մոսկուան՝ ստանձնած պարտականութիւնները չկատարելու/անգործութեան/ ազրպէյճանական կողմին անուղղակի սատարելու համար):

«Խաղաղապահ զօրախմբից դժգոհութիւնը Ղարաբաղում աճում է: Տեղացիները տեսնում են՝ ինչպէս են խաղաղապահները իրենց համար սնունդ մատակարարում օդային ճանապարհով, բայց տեղի բնակչութեանը ոչինչ չի հասնում: Լաչինի միջանցքն ապաշրջափակելուն ուղղուած ակտիւ գործողութիւններ նրանց կողմից չկան:

«Հասկանալի է, որ նման հարցերը լուծւում են քաղաքական մակարդակում, հազիւ թէ խաղաղապահները տեղում միջանցքը բացելու համար ինչ-որ բան կարողանան անել, բայց բնակչութեան վրայ այդ

⇨ 4

# «ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐՆ ԱՌԱՐԿԱՅԱԿԱՆ ԷԻՆ, ԱՄԵՆԱԴԺՈՒԱՐ ՓՈՒԼԵՐԻՑ ՄԷԿՆ ԵՆՔ ԱՆՑՆՈՒՄ». ՇԱՌԼ ՄԻՇԷԼ

Բանակցութիւններն առարկայական էին: Կարծիքների փոխանակումը եղել է անկեղծ, ազնիւ եւ բովանդակալից: Այս մասին յայտարարել է Եւրամիութեան Խորհրդի նախագահ Շառլ Միշելը՝ Բրիւսէլում Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանի եւ Ադրբէջանի նախագահ Իլհամ Ալիեւի հետ Յուլիսի 15-ի եռակողմ հանդիպումից յետոյ:

Նա նշել է Վաշինգտոնում եւ Բրիւսէլում հանդիպումների ինտենսիւ եւ արդիւնաւէտ բնոյթը:

«Մենք անցնում ենք Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ բանակցութիւնների ամենաամբողջական եւ եռանդուն փուլերից մէկը: Ես արժանին եմ մատուցում երկու առաջնորդներին՝ խաղաղութեան գործընթացին նրանց նուիրուածութեան համար եւ խրախուսում եմ նրանց յետագայ համարձակ քայլեր ձեռնարկել՝ դէպի յարաբերութիւնների կարգաւորում առաջընթաց ապահովելու համար: Մենք քննարկել ենք օրակարգային բոլոր հարցերը», - ասել է նա:

Նրա խօսքով՝ Ադրբէջանն ու Հայաստանը պայմանաւորուել են ակտիւացնել սահմանների սահմանազատման յանձնաժողովի աշխատանքները:

«Հայաստանի եւ Ադրբէջանի առաջնորդները եւս մէկ անգամ վերահաստատել են փոխադարձաբար տարածքային ամբողջականութեան եւ ինքնիշխանութեան ճանաչումը, եւ որ սահմանազատումը պէտք է իրականացնել 1991թ. Ալմա-Աթայի հռչակագրի համաձայն:

«Ես ողջունեցի Յուլիսի 12-ին սահմանային երկու յանձնաժողովների հանդիպումը: Աշխատանքներն ընթացքի մէջ են: Եւ շատ կարեւոր է, որ ղեկավարները պայմանաւորուել են ակտիւացնել եւ արագացնել յանձնաժողովների աշխատանքը», -

⇨ 4

ԱՐՑԱԽ

# ԱՐՑԱԽՈՒՄ ՅՈՒԼԻՍԻ 14-ԻՆ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՆԺԱՄԿԷՏ ՇԱՐԺՈՒՄ ՄԵԿՆԱՐԿԵՑ

Արցախում Յուլիսի 14-ին համաժողովրդական անժամկէտ շարժում մեկնարկեց: Ստեփանակերտի Վերածննդի հրապարակից տասնեակ հազարաւոր քաղաքացիներ քայլեցին Կարմիր Խաչի գրասենեակ, միջազգային կառոյցներից պահանջեցին ներկայացնել Արցախում ստեղծուած ծայրայեղ ծանր իրավիճակը: Այնուհետեւ նրանք շարժուեցին ռուսական խաղաղապահ զօրակազմի տեղակայման վայր՝ Իւանեանի օդանաւակայանի տարածք: Այնտեղ խաղաղապահներից պահանջեցին կատարել իրենց ստանձնած պարտաւորութիւնները:

# ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՈՆ (ԱԼԱՏԻՆ)

## Եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, յօդուածագիր

Հ. ԱԻԱԳԵԱՆ

### ԵՐԳԵՐ ՏԱՆԴԷԻ ԴԺՈԽՔԷՆ

Տանթէի *Դժոխքի* (*Աստուածային կատակերգութիւն*) Գ. Երգի («Դժոխքին դուռը») սկզբնական տուներուն Ալատինի թարգմանութիւնը Սուրէն Պարթեւեան հրատարակած է իր խմբագրած *Հոսանք* շաբաթաթերթի երկու յաջորդական թիւերու մէջ(65), կցելով հետեւեալ ոգեւորիչ ծանօթագրութիւնը. «Տանդէի *Աստուածային կատակերգութենէն* «Դժոխքին դրան» նշանաւոր արձանագրութեան Հրանտ Ալատինի կատարած նորագոյն թարգմանութեան հետ ստորեւ կը դնենք Հ. Ա. Ղազիկեանինը, ինչպէս նաեւ իտալերէն բնագիրը, որպէսզի մեր ընթերցողները աւելի դիւրաւ գնահատեն Ալատինի թարգմանութեան գերազանցութիւնը, թէ՛ իր յանգաւոր հանգամանքին եւ թէ իր գրական հարազատութեանն ու ներդաշնակութեանը համար»(66):

Մէկ կողմ ձգելով համեմատութեան հարցը՝ որ բաւական հարցական է, ուշագրաւ է Պարթեւեանի խանդավառութիւնը, զոր նոյն աստիճանով կ՚արտայայտէր նաեւ երկու շաբաթ առաջ *Հոսանքի* մէջ հրատարակած Ալատինի *Իմ Աստուածս* ինքնագիր բանաստեղծութեան առնչութեամբ(67):

Տանթէի *Դժոխքի* Վեհակրօնի թարգմանութիւնը հատորով լոյս կը տեսնէ 1933-ին (*Երգեր Տանդէի Դժոխքէն*, Գահիրէ, Տպարան Արգոս, 1933), որ կը բովանդակէ Երգ Ա., Բ., Գ., Ե., Զ., ԼԲ., ԼԳ., ԼԴ., ինչպէս նաեւ «Համառօտ ծանօթագրութիւններ» գլուխը:

Տպագրական հանգամանքներուն մասին տեսնել *Նոր Լիթանիայի* վերոբերեալ բացատրութիւնները:

Միայն պէտք աւելցնել, որ Վեհակրօնի մահէն մէկ տարի ետք, եղբայրը Վահրամ Ալատին մամուլին կը յանձնէ յայտարարութիւն.

«Գրասէր ազնիւ բարեկամներուս խորհուրդներուն հետեւելով, տարաբախտ եղբօրս՝ Հրանդ Ալատինի (Վեհակրօն) կենդանութեան լրացուցած *Տանդէի Դժոխքըի* վերջին հատորը, որ թարգմանուած է արդէն եւրոպական բոլոր լեզուներուն, հայ գրականութիւնը զուրկ չի թողելու համար Տանդէի այդ գլուխ-գործոցէն, ներկայիս հրապարակ կը հանեմ սոյն թարգմանութիւնը խնամեալ տպագրութեամբ որու հասոյթով պիտի ձեռնարկեմ հրատարակել իր թողած բոլոր անտիպ գործերը:

«Լիայոյս լինելով թէ գրասէր հայ հասարակութիւնը սիրով պիտի քաջալերէ իմ այս ձեռնարկս որ եղբայրական պարտականութիւնս ըլլալէ զատ՝ հայ գրականութեան արդէն ճոխ հաւաքածոյին վրայ կարեւոր բաժին մը եւս աւելցուցած պիտի ըլլայ»(68):

Յաւելեալ տեղեկութիւններ չկան, բայց Վեհակրօնի անտիպները երբեք լոյս չեն տեսներ:

*Երգեր Տանդէի Դժոխքէն* եւս ձօնուած է Հ. Թորոսեանին, ինչպէս կը մակագրէ հեղինակը.

«Սիրելի ուսուցիչս Հ. Յով. Վ. Թորոսեան

«Աշխատութեանս սեղանին ճիշդ ճակատը, իր առանձնութեան մէջ՝ կարծես թախիծ մը կ՚արտայայտէր նկարը անմահն Հ. Ղ. Ալիշանի, որ մայիս 10էն ի վեր գտաւ իր արժանաւորը՝ ձեր նկարով զոր զետեղեցի անոր դէմ: Յաճախ կը նայիմ երկու ծերունափառ դէմքերուն որոնցմէ արտացոլած շնորհը իրարու մէջ բեկբեկելով գիս կը շփոթէ եւ չեմ գիտեր թէ ո՛րն է մինը՝ ո՛րն է միւսը:

«Համարձակեցայ ձեզի ձօնել *Նոր Լիթանիան*. նոյնը կը համարձակիմ ընել Տանդէի *Դժոխքէն* քանի մը երգերու թարգմանութեանս համար: Չեմ կարծեր հեռացած ըլլալ բնագիրէն, բայց կը կարծեմ հեռացած ըլլալ թարգմանութենէն հոգելոյս Հայր Ա. Ղազիկեանի՝ որին կը պարտիմ անհուն երախտագիտութիւն՝ իր թարգմանութեամբ ինծի թելադրած ըլլալուն համար սոյն թարգմանութիւնս զոր կը յուսամ աւարտել եթէ ժամանակ եւ կեանքի պայմաններ ինձ թոյլատու ըլլան:

«Ձերդ Վերգիլիոս որ առաջնորդեց Տանդէի, դուք ալ առաջնորդեցիք ինծի իմ պատանի հասակէս մինչեւ օրս: Որքա՜ն նման են Ուսուցիչները՝ իւրաքանչիւրը իր դերով. բայց որքա՜ն հեռու՝ աշակերտները:

«Եթէ մին փառքը աւելցուց իր վարպետին, ներեցէք որ միւսն ալ փառք ստանայ իր վարպետով: Փափաքիս այս քաղցրութիւնը արդ կը բերէ ինծի ապրումը յիշատակին զոր պիտի ունենամ ընկեր իմ մտաւորական կեանքիս բովանդակ ընթացքին»:

Ուրեմն, նպատակ ունեցած է յետագային թարգմանել *Դժոխքը* ամբողջութեամբ:

Հայերուն հետաքրքրութիւնը Տանթէով հին պատմութիւն ունի, կը նշէ Սօնա Յարութիւնեան. «Յատկանշական է, որ արդէն 1868-ին, Սուրբ Ղազարի Հայկական Ճեմարանը հայերէն թարգմանութեամբ կը հրատարակէ *Աստուածային կատակերգութիւնէն* ընտրանի հատուածներ, երբ Ասիոյ եւ նոյնիսկ Եւրոպայի որոշ ժողովուրդներ տակաւին չէին դիմած Ֆլորենցիայի բանաստեղծին: Աւելին, կարեւոր է ընդգծել նաեւ՝ որ 1802-ին սկսած են տարածուիլ հայերէն գիտելիքները Տանթէի գրութիւններուն մասին»:

Յարութիւնեան կ՚աւելցնէ, որ 1915-ի Ցեղասպանութենէն ետք, հայ թարգմանիչներու հետաքրքրութիւնը աւելի ուղղուած է դէպի *Դժոխքը*՝ «Ցեղասպանութեան սարսափները նկարագրելու համար»(69):

Վեհակրօնէն զատ, եգիպտահայ մտաւորականութիւնը ունեցած է իր սահմանափակ հետաքրքրութիւնը Տանթէի նկատմամբ:

1921-ին՝ Տանթէի մահուան 600-ամեակին առիթով, եգիպտահայ բանաստեղծ Արսէն-Երկաթ *Բազմավէպի* մէջ կը հրատարակէ երկար քերթուած մը՝ փորձելով թափանցումներ կատարել Տանթէի մտորումներուն եւ տրամադրութիւններուն մէջ(70):

Տանթէի քանի մը բանաստեղծութիւններ թարգմանած է եգիպտահայ ժամանակակից բանաստեղծ Վարուժան Գազանճեան՝ որոնք ցրուած կը մնան Իշխան Ջիֆթճեանի *Հայերէն blog* կայքէջի էջերուն մէջ(71):

* * *

Հրանտ Ալատին – Հրանդ Վեհակրօնի մահուան 90-ամեակը պիտի լրանայ այս տարուայ Հոկտեմբերին: Ոչ մէկ յոյս ունենալով՝ որ Սփիւռքը պիտի մտածէ նոյնիսկ փոքրագոյն նշում մը կատարել իր մասին, մինչ պիտի շարունակէ մեծարել միջակութիւնները (միջակութիւն՝ մեղմ ըսելու համար) եւ միջակացնել մեծերը (Վահան Թէքէեանը՝ պարզորոշ օրինակ), յօդուածաշարս թող մնայ իբրեւ յարգանքի տուրք մը հանդէպ մոռցուած գրողի մը, ստեղծագործ միտքի մը՝ որ շատոնց պէտք է իր արժանաւոր տեղը գրաւած ըլլար սփիւռքահայ գրողներու շառաւիղին մէջ:

(Շար. 9)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

65. Տանդէ, «Դժոխքին դուռը», թրգմ.՝ Հրանտ Ալատին, *Հոսանք*, շաբաթաթերթ, Գահիրէ, 3 Մարտ 1912, Ա. տարի, թիւ 7, էջ 102: Տանդէ, «Դժոխքը», թրգմ.՝ Հ. Ալատին, *Հոսանք*, 10 Մարտ 1912, Ա. տարի, թիւ 8, էջ 122-123:

66. Տանդէ, «Դժոխքին դուռը», էջ 102:

67. Հրանտ Ալատին, «Իմ Աստուածս», *Հոսանք*, 11 Փետրուար 1912, Ա. տարի, թիւ 5, էջ 74:

68. Վահրամ Ալատին (Վեհակրօն), «Յայտարարութիւն գրասէր հասարակութեան», *Արեւ*, 6 Նոյեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4813:

69. Sona Haroutyunian, ‘Dante Alighieri in armeno: dalla traduzione alla creazione,’ *Quaderni di Studi Indo-Mediterranei*, IX (2016), p. 179.

70. Արսէն-Երկաթ, «Տանդէ Ալիկիէրի», *Բազմավէպ*, Սեպտեմբեր 1921, թիւ 9, էջ 294-297:

71. https://hayerenblog.wordpress.com/

**ՀԱՅԱՍՏԱՆ**

# ՆԱՀԱՆՋ ԲՐԻՒՍԷԼՈՒՄ. ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՀԱՐԹԱ՞Կ, ԹԷ՞ ԹԱԿԱՐԴ

ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ

Յուլիսի 15-ին Բրիւսէլում տեղի ունեցած Փաշինեան-Միշէլ-Ալիեւ եռակողմ հանդիպումից յետոյ ԵՄ նախագահ Միշէլի տարածած յայտարարութիւնն աչքի է ընկնում առաջին հերթին նրանով, որ ի տարբերութիւն օրինակ մէկ ամիս առաջ՝ Մայիսի 14-ին տեղի ունեցած հանդիպմանը յաջորդած յայտարարութեան, այս անգամ որեւէ խօսք չկայ «մնացած պահուող անձանց» ազատ արձակման մասին, փոխարէնը խօսւում է ընդամէնը «սահմանը ակամայ հատած ձերբակալուածների վերադարձը հեշտացնելու» խոստման մասին, որ ըստ Միշէլի տուել են Փաշինեանն ու Ալիեւը:

Սա ուշադրութեան արժանի հանգամանք է ոչ միայն այն պատճառով, որ վերաբերում է մարդկային կեանքերի, կարեւոր խնդրի, Ադրբէջանում պահուող հայ գերիների վերադարձի: Մարդասիրական այդ հարցում բաւականին նկատելի է նահանջը, առնուազն ձեւակերպումների առումով: Նախ, Մայիսի 14-ի հանդիպումից յետոյ մէկ ամիս անց ոչ միայն որեւէ «մնացած պահուող անձ» վերադարձուած չէ, չնայած դրանից յետոյ յայտարարութեան մէջ նշուածին, այլ փաստօրէն մէկ ամիս անց այդ մասին նոյնիսկ խօսք չկայ եւ շեշտւում է լոկ սահմանը «պատահաբար հատածների» մասին, իսկ այդ «կատեգորիայի» ներքոյ են յայտնի ադրբէջանցի երկու զինծառայողները, որոնցից մէկը նաեւ սպանել էր Զանգեզուրի կոմբինատի պահակին: Յայտնի է նաեւ, որ Բաքուն աւելի ուշ պարզապէս առեւանգեց երկու հայ զինծառայող, այսպէս ասած «հաւասարեցնելու» համար: Եւ հիմա, Միշէլը խօսում է փաստացի այդ մասին, իսկ հայ գերիների մասին չկայ խօսք:

Եւ սա ցուցիչ է, թէ գործնականում ինչպիսին է Բրիւսէլի բանակցութեան մթնոլորտն ու տրամաբանութիւնը: Չի կարող մարդասիրական հարցերում լինել այդպիսի պատկեր, իսկ միւս, առաւել բարդ, քաղաքական խնդիրներում՝ խաղաղութեան տանող կայուն եւ յուսադրող ընթացք: Յամենայն դէպս պատկերը, որ կայ առերեւոյթ, այլ բան չէ, քան ԵՄ նախագահի մակարդակով Ադրբէջանի նախագահի վարած ագրեսիւ քաղաքականութեան «համահարթեցում» եւ հաւասարեցում Հայաստանի հռչակած՝ խաղաղութեան օրակարգի միտուած քաղաքականութեանը: Աւելին, մէկ այլ ցուցիչ է այն, որ մի կողմից խօսելով Լաչինի միջանցքի բացման անհրաժեշտութեան մասին, միւս կողմից Շարլ Միշէլը ընդգծում է Աղդամով մարդասիրական օգնութիւն ցուցաբերելու Իլհամ Ալիեւի «կամքը»:

Այն ամէնից յետոյ, ինչ անում է Բաքուն, Ալիեւի այդպիսի «կամք» մատնանշելը պարզապէս ցինիզմ կամ կատարեալ քաղաքական անհամարժէքութիւն է, որ դրսեւորում է ԵՄ նախագահը: Այդ հանգամանքները բաւականին պարզորոշ վկայում են, որ Բրիւսէլում ծաւալուող գործընթացը եւ դրա շրջանակում հերթական հանդիպումը ոչ թէ հաւասարակշռում են Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ առկայ իրողութիւնները, իսկ որեւէ կայուն խաղաղութիւն կարող է կառուցուել միայն հաւասարակշռութեան վրայ, այլ հակառակը՝ «լեգիտիմացնում» այն անհաւասարութիւնը, որը փորձում է կապիտալիզացնել Ադրբէջանը: Այդպէս գնում են ոչ թէ խաղաղութեան, այլ նոր լարուածութեան, եթէ անգամ զուտ բանակցային սենեակում մթնոլորտը կարող է լինել խաղաղասիրական: Կրկնեմ, խաղաղութիւնը կարող է կայուն եւ ամուր լինել, եթէ կառուցւում է հաւասարակշռութեան, ոչ թէ անհաւասարութիւնը լեգալիզացնելու տրամաբանութեան վրայ: Բրիւսէլի Յուլիսի 15-ի հանդիպումից յետոյ Շարլ Միշէլի յայտարարութիւնը վկայութիւն էր, որ այդ ձեւաչափում տեղի է ունենում անհաւասարութեան լեգալիզացիա: Այդպէս լինում են խաղաղութեան թակարդները, ոչ թէ հարթակները:

# ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ ՏՆՕՐԷՆ Է ԸՆՏՐՈՒԵԼ ԱՐԱ ԽԶՄԱԼԵԱՆԸ

Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի փոխնախարար Արա Խզմալեանն Յուլիսի 17-ին ընտրուել է Մատենադարան Մեսրոպ Մաշտոցի անուան հին ձեռագրերի գիտահետազօտական ինստիտուտ հիմնադրամի տնօրէն:

Տնօրէնի թափուր տեղի համար յայտ էին ներկայացրել Մատենադարանի տնօրէնի ժամանակաւոր պաշտօնակատար Կարէն Մաթեւոսեանը, ԿԳՄՍ փոխնախարար Արա Խզմալեանը եւ պատմական ու բանասիրական գիտութիւնների դոկտոր, Մատենադարանի գիտաշխատող Արծրունի Սահակեանը:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԴԱՏԱԽԱԶՈՒԹԻՒՆԸ ՊԱՀԱՆՋՈՒՄ Է ԲՌՆԱԳԱՆՁԵԼ ՌՈԲԵՐՏ ՔՈՉԱՐԵԱՆԻՆ ԵՒ ՆՐԱ ԸՆՏԱՆԻՔԻ 7 ԱՆԴԱՄՆԵՐԻՆ ՊԱՏԿԱՆՈՂ ԳՈՅՔԸ. ԱՐԳԵԼԱՆՔ Է ԿԻՐԱՌՈՒԵԼ

Գլխաւոր Դատախազութեան ապօրինի ծագում ունեցող գոյքի բռնագանձման գործերով վարչութեան դիմումի հիման վրայ՝ Հակակոռուպցիոն Դատարանի 2023 Թուականի Յուլիսի 13-ի որոշմամբ, հայցի նախնական ապահովման միջոցներ են կիրառուել Հայաստանի երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանի եւ նրան փոխկապակցուած եօթ անձի (ընտանիքի անդամներ՝ կին, զաւակներ, նրանց ամուսիններ) գոյքերի նկատմամբ: Յայտնում են Հայաստանի դատախազութեան Հանրային կապերի բաժնից:

Ուսումնասիրութեան նախնական արդիւնքներով ապօրինի են դիտուել եւ ենթակայ են բռնագանձման՝

- 20 միաւոր անշարժ գոյք՝ առաւելապէս Երեւան քաղաքի Կենտրոն վարչական շրջանում գտնուող շէնքերում.
- 2 տրանսպորտային միջոց.
- Մասնակցութիւն՝ Հայաստանեան եւ արտասահմանեան 18 իրաւաբանական անձերում.
- Աւելի քան 1.5 միլիոն ԱՄՆ դոլարի աւանդներ եւ արժեթղթեր.
- Շուրջ 10 միլիարդ դրամի ֆիզիկական եւ իրաւաբանական անձանց տրամադրուած փոխառութիւններ.
- Շուրջ 22 միլիարդ դրամ, որն իրենից ներկայացնում է ապօրինի ծագում ունեցող դրամական միջոցների մնացորդի, բարեխիղճ երրորդ անձանց փոխանցուած միջոցների եւ այլ ծախսուած միջոցների հանրագումար, որը չի նոյնականացուել:

## ԴԻՐԻԺՈՐ ԶՈՅԱ ԹՈՒԽՄԱՆՈՎԱՆ ԵՐԱԺՇՏԱՍԷՐՆԵՐԻՆ ԾԱՆՕԹԱՑՐԵՑ ՊԱՍԿԱԼ ՍԻՆԱՆԵԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐԻՆ

Խորհրդային կոմպոզիտոր Դաւիթ Թուխմանովի թոռնուհի Զոյա Թուխմանովան ուսումնասիրել է Վենետիկի Սուրբ Ղազար հայկական կղզու երաժշտական արխիւը, տարբեր ստեղծագործողների ստեղծած նիւթերը եւ, բացայայտելով Պասկալ Սինանեանին, որոշել է հայ հասարակութեանը ծանօթացնել նրա ժառանգութեանը:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ ուսումնասիրութեան արդիւնքում տարիներ առաջ Իտալիայում Զոյա Թուխմանովան համերգով է հանդէս եկել, կատարել Սինանեանի գործերը, որոնք բարձր գնահատանքի են արժանացել:

Յուլիսի 6-ին էլ Հայաստանում ապրող երաժշտասէրները համերգը վայելեցին Երեւանում՝ Ալ. Սպենդիարեանի անուան օպերայի եւ բալէտի ազգային ակադեմիական թատրոնում: Համերգից բացի տեղի ունեցան Սինանեանին նուիրուած գրքի եւ CD-ի շնորհանդէսները:

Լրագրողների հետ զրոյցում Թուխմանովան ասաց՝ Պասկալ Սինանեանը հայ Շոպէնն է: «Սինանեանը մեծ ընտանիք է ունեցել: Նրա հայրը եղել է Գրիգոր Սինանեանը, որը հինգ զաւակ է ունեցել: Պասկալ Սինանեանը, նրա եղբայրներն ու քոյրերը ստեղծել են առաջին սիմֆոնիկ նուագախումբը Ստամբուլում: Նրանք տարբեր երաժշտական գործիքներ են նուագել՝ ջութակ, թաւջութակ, դաշնամուր: Պասկալ Սինանեանին ճանաչում են որպէս ջութակահարի, սակայն նա հիանալի դաշնակահար է եղել ու դաշնամուրի եւ սիմֆոնիկ նուագախմբի համար հրաշալի ստեղծագործութիւններ է գրել», - պատմեց Թուխմանովան:

Նրա խօսքով՝ Սինանեանը եօթանասունից աւելի ստեղծագործութիւնների հեղինակ է: Պասկալ Սինանեանը գրել է վալսեր, պոլկաներ, մազուրկաներ, քայլերգեր եւ այլն:

Թուխմանովան ընդգծեց՝ ինքը շատ ուրախ կը լինի, եթէ երիտասարդները ուսումնասիրեն ու կատարեն Սինանեանի գործերը:

Զոյա Թուխմանովան ունի հայ-ռուսական արմատներ: Երաժշտութեան եւ հայկականութեան հանդէպ անմնացորդ սէր տածելով՝ Թուխմանովան իրականութիւն է դարձրել այդ կարեւոր գիտական աշխատանքը՝ անյայտ, բայց հսկայական ժառանգութիւն թողած Պասկալ Սինանեանի ստեղծագործութիւնները պեղել է արխիւից եւ վերադարձնում է իր ժողովրդին, ներկայացնում երաժշտասէր հասարակութեանը:

Թուխմանովան ոսկէ մեդալով աւարտել է Մոսկուայի Չայկովսկու անուան կոնսերվատորիայի դիրիժորութեան ֆակուլտէտը, նոյն յաջողութեամբ աւարտել է Վենետիկի Բենեդետտօ Մարչելլօ կոնսերվատորիայի երգչախմբային երաժշտութեան եւ դիրիժորութեան ֆակուլտէտը: Աշխատել եւ համագործակցել է աշխարհահռչակ երաժիշտների հետ: Չորս տարի աշխատելով Հայաստանի օպերայի եւ բալէտի ազգային թատրոնում՝ վերադարձել է Վենետիկ, որտեղ ղեկավարում է երկու երգչախումբ, աշխատում է Վենետիկի Սան Մարկօ եկեղեցու երաժշտական բաժնում:

Գրքի եւ CD-ի ստեղծման հովանաւորն է Հայոգի հիմնադրամը:

## ԿԱՅԱՑԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԷՋԱՆԻ ՍԱՀՄԱՆԱՅԻՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ՉՈՐՐՈՐԴ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ

Յուլիսի 12-ին կայացել է պետական սահմանի սահմանազատման ու սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովների չորրորդ հանդիպումը՝ փոխվարչապետեր Մհեր Գրիգորեանի եւ Շահին Մուստաֆաեւի նախագահութեամբ, յայտնում է Հայաստանի արտգործնախարարութիւնը:

Հանդիպումը տեղի է ունեցել Հայաստանի եւ Ադրբէջանի սահմանին՝ Հայաստանի Տաւուշի մարզի եւ Ադրբէջանի Ղազախի շրջանի հատուածում:

Արտաքին քաղաքական գերատեսչութեան փոխանցմամբ՝ համաձայն Հայաստանի եւ Ադրբէջանի ղեկավարների մակարդակով տարբեր ձեւաչափերով ձեռք բերուած պայմանաւորուածութիւնների՝ կողմերը շարունակել են սահմանազատման հարցերի քննարկումը, անդրադարձել են կազմակերպչական եւ ընթացակարգային մի շարք հարցերի:

Գրիգորեանը եւ Մուստաֆաեւը պայմանաւորուել են նաեւ աշխատանքային կարգով որոշել յանձնաժողովների յաջորդ հանդիպման անցկացման օրն ու վայրը:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՄԻՋԵՒ ԱՊՐԱՆՔԱՇՐՋԱՆԱՌՈՒԹԵԱՆ ԱՃԸ ՏԱՐԵՎԵՐՋԻՆ ԿԱՐՈՂ Է ՀԱՍՆԵԼ 60 ՏՈԿՈՍԻ. ՔԵՐՈԲԵԱՆ

Հայաստանի եւ Ռուսաստանի միջեւ ապրանքաշրջանառութեան աճը տարեվերջին կարող է հասնել 60 տոկոսի: Այս մասին Եկատերինբուրգում Իննոպրոմ-2023 ցուցահանդէսում ՏԱՍՍ-ին ասել է Հայաստանի էկոնոմիկայի նախարար Վահան Քերոբեանը:

«Անցեալ տարի Ռուսաստանի հետ մեր ապրանքաշրջանառութիւնը կազմել է աւելի քան 5 միլիարդ դոլար, այժմ մենք գտնւում ենք կրկնակի աճի մակարդակում, կարծում եմ՝ տարեվերջին կը հասնենք 50-60 տոկոս աճի», - ասել է Քերոբեանը:

ԽՈՀԵՐ

## ՕՏԱՐ ՄԻՏՔԸ՝ ՀԻՄՔ ՀԱՅԱՊԱՀՊԱՆՈՒԹԵԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

1960 Յուլիս 21-ին Եգիպտոսի հեռատեսիլը կը պատկերասփռէ իր առաջին հաղորդումը: Այս թուականը սկիզբն է եգիպտական հեռատեսիլին:

Եգիպտահայ հայապահպան ակումբները կ՚աճապարեն ձեռք ձգել հեռատեսիլի գործիք մը, անոր տեղադրումը սրահէն ներս համարելով կարեւոր նուաճում: Չմոռնանք, որ այդ ժամանակ հեռատեսիլ գնելը վերապահուած էր բարեկեցիկներուն:

Ահաւասիկ ինչպէս *Ա.* օրաթերթը իր 1961 Յունուար 5 թիւին մէջ կը ներկայացնէ եղելութիւնը՝ լուրի եւ փառաբանութեան խուրատեսակ միաձուլումով: Կ՚ընդօրինակեմ նոյնութեամբ եւ ամբողջութեամբ, զանց առնելով անձնանունները, որոնք բոլորովին անկարեւոր են եւ կրնան շեղել իմաստը.

«Անցեալ Զորեքշաբթի երեկոյ Կ... Սրահի Վարչութիւնը կազմակերպած էր մտերմիկ ընդունելութիւն մը ի պատիւ Տէր եւ Տիկ. Դ...եաններուն, սրահի հեռուստատեսի (թելեվիզիոն) գործիքին բացման առթիւ: Գործիքը առատաձեռնօրէն սրահին նուիրուած էր Տէր եւ Տիկ. Դ...եաններուն կողմէ:

«Ընդունելութեան ներկայ էին Տէր եւ Տիկ. Կ...եան, Տէր եւ Տիկ. Պ...եան եւ Տիկ. Կ...եան:

«Գործիքին բացումը կատարեց Տիկ. Դ...եան:

«Ապա խօսք առաւ Սրահի ատենապետը Պր. Գ...եան որ նախ շնորհակալութիւն յայտնեց Տէր եւ Տիկ. Դ...եաններուն յանուն Վարչութեան, ապա վեր առաւ նուիրատուներուն զոհողութեան ոգին եւ գնահատանքով արտայայտուեցաւ այն վերաբերումին մասին զոր Դ...եան ամոլը ցոյց կու տայ հանդէպ մեր ազգային ու հասարակական կարիքներուն:

«Այսպիսով փայլ մը եւս աւելցաւ Կ... սրահի մթնոլորտին վրայ, շնորհիւ ազգասէր նուիրատուներու զոհողութեան»:

Արաբերէն հաղորդումներ պատկերասփռող հեռատեսիլը ազգային ու հասարակական կարիք մը դարձաւ ինքզինքը հայապահպան համարող ակումբին համար: Հիմա պիտի առարկուի՝ որ հեռատեսիլին շնորհիւ հայերը աւելի շատ քանակութեամբ պիտի համախմբուին ակումբին մէջ: Ասիկա ինքնին հայապահպանում է: Հոգ չէ եթէ յիշողութիւնը լեցուի ոչ-հայապահպան խճողումներով:

Նուիրատուն դարձաւ ազգասէր՝ հեռատեսիլի շնորհիւ: Արդէն սովորական դարձած երեւոյթ մը՝ դրամը հաւասարեցնելու ազգասիրութեան հետ, որ կը շարունակուի մինչեւ այսօր:

Հեռատեսիլ նուիրողը նկարագրուեցաւ ամենաբարձր արտայայտութիւններով՝ առատաձեռնութեամբ եւ զոհողութեան ոգիով: Արդէն միշտ բարեկեցիկներն ու հարուստներն են որոնք առատաձեռն են եւ կը կրեն զոհողութեան ոգին: Աղքատէն ի՞նչ կարելի է սպասել, բացի սրահի արաբերէն հեռատեսիլը դիտելով դառնալ հայապահպանուելու կարօտ թուանշան մը: Իսկ մտաւորական մը՝ որ իրապէս ու խորապէս կրնայ զոհել նիւթականը՝ յանուն հայ միտքի եւ մշակոյթի, ո՛չ առատաձեռն կը համարուի իր մտաւորականութեամբ, եւ ո՛չ ալ կրնայ զոհողութեան ոգի ունենալ: Դրամն է որ կը գործէ այս հրաշքները:

ՀԱՅԱՍՏԱՆ

## DATAFEST YEREVAN 2023-Ն ԸՆԴՈՒՆՈՒՄ Է ՅԱՅՏԵՐ

Մեքենայական ուսուցման ու տուեալագիտութեան ոլորտին նուիրուած DataFest համաժողովն այս տարի կ՚անցկացուի Սեպտեմբերի 8-9-ը:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ, գրանցուել հնարաւոր է այստեղ՝ https://www.eventbrite.co.uk/e/datafest-2023-tickets-530311173997?aff=oddtdtcreator

DataFest-ն իր տեսակի մէջ եզակի համաժողով է, որն ընդգրկում է մեքենայական ուսուցման տարբեր թեմաներ: Այն գաղափարների փոխանակման եւ համագործակցութիւնը խթանելու փորում է:

Երկօրեայ միջոցառման ընթացքում սպասւում են լաւագոյն փորձագէտների ելոյթներ՝ մեքենայական ուսուցման տարբեր խնդիրների եւ դրանց լուծումների, ինժենէրական մօտեցումների եւ հետազօտական վերջին զարգացումների վերաբերեալ թեմաներով:

Միջոցառումը հնարաւորութիւն կը տայ փոխանակելու կարծիքներ ոլորտի առաջատարների հետ եւ քննարկելու ոլորտի վերջին նորարարութիւնները:

Այս տարի DataFest Yerevan-ը համախմբում է աւելի քան 30 խօսնակներից բաղկացած համայնքը, որոնք ներկայացնում են AWS, Deepmind, HuggingFace, ETH Zurich, AlphaFold թիմը, Microsoft-ը եւ ոլորտի հարիւրաւոր մասնագէտներ:

# ՉԱՆԱԿԻՐ

## «ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐՆ ԱՌԱՐԿԱՅԱԿԱՆ ԷԻՆ, ԱՄԵՆԱԴԺՈՒԱՐ ՓՈՒԼԵՐԻՑ ՄԷԿՆ ԵՆՔ ԱՆՑՆՈՒՄ».

1

ասել է Միշէլը:

Նրա խօսքով՝ վերջին երկու ամսուայ ընթացքում կողմերը նաեւ յստակ առաջընթաց են գրանցել տարածաշրջանում տրանսպորտային եւ տնտեսական կապերի ապաշրջափակմանն ուղղուած քննարկումներում:

«Մենք քննարկել ենք ապագայ տրանսպորտային համաձայնագրերի պայմանները, որոնք կը պահպանեն ինքնիշխանութեան, իրաւասութեան եւ փոխադարձութեան սկզբունքները: Երկաթուղային կապի կառուցումը պէտք է ձեռնարկուի անյապաղ: ԵՄ-ն պատրաստ կը լինի ֆինանսական աջակցութիւն ցուցաբերել: Որոշ մանրամասներ դեռեւս յստակեցում են պահանջում, սակայն այս թեմայի շուրջ դիրքորոշումներն այժմ համընկնում են, եւ տարբերակներն ակտիւօրէն մշակւում են», - նշել է նա:

Եւրամիութեան Խորհրդի նախագահի խօսքով՝ կողմերը քննարկել են նաեւ Ղարաբաղի հայ բնակչութեան վիճակը եւ Լաչինի միջանցքի շուրջ ստեղծուած իրավիճակը:

«Ներկայիս իրավիճակն ակնյայտօրէն անկայուն է եւ որեւէ մէկին ձեռնտու չէ: Մենք քննարկել ենք նաեւ հնարաւոր կոնկրէտ քայլեր, որոնք կ՚օգնեն կարգաւորել իրավիճակը: Շեշտել եմ Լաչինի ճանապարհի բացման անհրաժեշտութիւնը: Նաեւ նշել եմ Ադրբէջանի պատրաստակամութիւնը՝ հաւասարապէս Աղդամով մարդասիրական մատակարարումներ ապահովելու համար: Երկու տարբերակներն էլ կարեւոր եմ համարում եւ խրախուսում եմ մարդասիրական փոխադրումները երկու կողմերից էլ՝ բնակչութեան կարիքներն ապահովելու համար: Ես նաեւ ողջունեցի ԿԽՄԿ-ի կողմից տեղափոխութիւնների վերսկսումը», - նշել է նա:

Շառլ Միշէլը շեշտել է, որ այնտեղ գտնուող մարդիկ ապահովութեան կարիք ունեն:

«Այս համատեքստում նշեցի՝ Եւրամիութիւնը կարեւոր է համարում Բաքուի եւ նախկին Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզում ապրող հայերի ներկայացուցիչների միջեւ ուղիղ երկխօսութեան հաստատումը: Այս երկխօսութիւնը պէտք է ապահովի վստահութիւն բոլոր կողմերի համար», - նշել է նա:

Քննարկուել են նաեւ ձերբակալուածների եւ գերիների վերաբերեալ հարցերը:

«Ղեկավարները վերահաստատեցին իրենց հաւատարմութիւնն այն ըմբռնմանը, որ կը հեշտացուի այն զինուորների ազատ արձակումը, ովքեր անզգուշաբար միւս կողմ են անցել: Ես հանդէս եմ եկել ձերբակալուածների երկու կողմերի ազատ արձակման օգտին: Քննարկուել է նաեւ անյայտ կորածների ճակատագրի լուծման եւ ականազերծման գործում սերտ համագործակցութեան կարեւորութիւնը, եւ ես եւս մէկ անգամ կոչ եմ արել կողմերին հնարաւորինս փոխանակել տեղեկատուութիւն», - նշել է Միշէլը:

Նա յաւելել է, որ պայմանաւորուել են շարունակել շփումները եւ զարգացնել յարաբերութիւնների կարգաւորմանն ուղղուած քայլերը:

«Իրական առաջընթացը կախուած է մօտ ապագայում ձեռնարկուելիք յաջորդ քայլերից: Առաջին հերթին պէտք է դադարեցնել բռնութիւնն ու կոշտ հռետորաբանութիւնը՝ խաղաղ բանակցութիւնների եւ կարգաւորման համապատասխան միջավայր ստեղծելու համար:

Ես նաեւ վերահաստատեցի իմ մտադրութիւնը՝ հրաւիրել Հայաստանի եւ Ադրբէջանի ղեկավարներին ամռանից յետոյ Բրիւսէլում կայանալիք եւս մէկ հանդիպման, ինչպէս նաեւ Ֆրանսիայի եւ Գերմանիայի առաջնորդների հետ հերթական հնգակողմ հանդիպմանը Գրանադայում», - իր ելոյթը եզրափակել է Միշէլը:

**Առաջին լրատուական**

## ՂԱՐԱԲԱՂ. ՔՈՒԼԻՍԱՅԻՆ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ ԱՔԹԻՒԻԶՄ

1

բացասական ազդեցութիւնները կան եւ դժգոհութիւնն աճում է: Այս գործողութիւններով, այո, կարելի է ասել՝ փորձ է արւում նաեւ որոշակի ուղերձ յղել Մոսկուային. եթէ դուք քայլեր չձեռնարկէք, բնակչութիւնը, որը աւանդաբար ռուսամէտ է համարուել, ձեզ ընկալելու է որպէս շրջափակման մեղսակից», — նշեց Գրիգորեան:

Պրիւքսէլեան բանակցութիւններու յետնախորքին, Ռուսաստանի Արտաքին Գործոց Նախարարութեան տարածած հաղորդագրութիւնը Ստեփանակերտի մէջ ներկայացուեցաւ իբրեւ պայքարի առաջին արդիւնք: Թէեւ ռուսական կողմի ուղերձները, կարծէք, ուղղուած են աւելի Երեւանին քան Պաքուին:

Նախաբանին մէջ Մոսկուան անուղղակիօրէն կը մեղադրէ Երեւանը՝ ճանչցած ըլլալու համար Ազրպէյճանի տարածքային ամբողջականութիւնը, որ կը ներառնէ նաեւ Լեռնային Ղարաբաղը: Այս ճանաչումը Արեւմուտքը կը ձեւակերպէ իբրեւ բանակցային աննախադէպ յառաջընթաց, Ռուսաստանը կը յայտարարէ՝ թէ ան արմատապէս փոխած է 2020 Նոյեմբեր 9-ի յայտարարութեան հիմքերը, եւ անոր յաջորդած իրադարձութիւններուն յանցանքը երրորդ երկիրի վրայ բարդելու փորձեր այլեւս պէտք չէ ըլլան:

«Սա, իհարկէ, բաւականին թոյլ արդարացում է սեփական աշխարհաքաղաքական իմպոտենտութեան համար՝ Մոսկուայի ազդեցութիւնը տեղում նուազել է, շահերը փոխուել են, այժմ փորձ է արւում պատասխանատուութիւնը դնել հայկական կողմի վրայ», — մեկնաբանեց Գրիգորեան:

*Ամիսներ առաջ Ռուսաստանը ներկայացուցած էր խաղաղութեան պայմանագիրի սեփական նախագիծը, որուն հիմքն էր Ղարաբաղի կարգավիճակը ապագային ձգելու առաջարկը: Հայաստանը լիովին աջակցեցաւ անոր, Ազրպէյճանը կտրականապէս մերժեց: Յետագային այս առաջարկը, ըստ էութեան, նոյնիսկ բանակցային հիմք չդարձաւ:*

Հայաստանի քաղաքագէտի համոզումով, Մոսկուայի ռազմավարական նպատակները, ամէն պարագայի, չեն փոխուած. «Զեմ կարծում, որ Ռուսաստանը շահագրգռուած է Ղարաբաղի հարցի քաղաքական լուծմամբ: Ռուսաստանում ռազմավարական նպատակ է մնում ստատուս-քուոյի պահպանումը, չնայած, ինչպէս տեսնում ենք, այդ ստատուս-քուոն վերջին ամիսներին արդէն իսկ բաւականաչափ փոխուել է:

«Ռուսաստանի ԱԳՆ յայտարարութեան միւս հատուածները ինձ համար աւելի հետաքրքիր էին: Խօսւում էր այն մասին, որ Ռուսաստանը պատրաստ է աջակցել միջազգային հանրութեան՝ Լեռնային Ղարաբաղում բնականոն կեանքի վերականգնմանը ուղղուած ջանքերին: Եթէ սա համեմատենք յայտարարութիւնների հետ, որոնք մի քանի շաբաթ առաջ են արուել, երբ, օրինակ, ամերիկեան կողմը փորձում էր երրորդ երկրում կազմակերպել Ադրբէջանի եւ Լեռնային Ղարաբաղի ներկայացուցիչների հանդիպումը, ապա այն ժամանակ Մոսկուան խօսում էր Լեռնային Ղարաբաղում արեւմտեան ինչ-որ բացասական ազդեցութեան մասին՝ համարելով թէ, որ ամերիկեան կողմը շանտաժի է ենթարկում Ստեփանակերտին, որպէսզի ստիպի մասնակցել այդ բանակցութիւններին: Այժմ խօսւում է արդէն այն մասին, որ Ռուսաստանը պատրաստ է աջակցել միջազգային համայնքի ջանքերին:

«Կարելի է ենթադրել, որ միջնորդների միջեւ, այնուամենայնիւ, ինչ-որ կուլիսային երկխօսութիւն կայ, յատկապէս Լաչինի միջանցքի վերաբացման հարցում, այսինքն կայ ինչ-որ նուազագոյն փոխըմբռնում եւ դիրքորոշումների նուազագոյն ընդհանրութիւն», — նոյն աղբիւրի հետ զրոյցում նշել է Հայաստանի քաղաքագէտը:

Ռուսական կողմի յայտարարութեան վերջին պարբերութիւնն ալ նուիրուած է Ազրպէյճանին. նկարագրելով Ղարաբաղի մէջ ստեղծուած մարդասիրական վիճակը, Մոսկուան պահանջեց անյապաղ բանալ Լաչինի միջանցքը:

Ազրպէյճան անմիջապէս արձագանգեց յայտարարութեան, ըսելով՝ թէ ան «թիւրիմացութիւն եւ տարակուսանք կը յառաջացնէ»:

«Ռուսաստանի ԱԳՆ-ի այս յայտարարութիւնը չի համապատասխաներ Ազրպէյճանի եւ Ռուսաստանի միջեւ դաշնակցային համագործակցութեան մասին հռչակագիրին եւ Ռուսաստանի նախագահ Վլատիմիր Փութինի՝ յաջակցութիւն Ազրպէյճանի տարածքային ամբողջականութեան եւ ինքնիշխանութեան («Ղարաբաղի շրջանը» ներառեալ) ելոյթներուն: Անընդունելի է Ռուսաստանի ԱԳՆ կողմէ Ազրպէյճանի տարածքային ամբողջականութիւնն ու ինքնիշխանութիւնը մեկնաբանելը եւ զայն պայմանաւորելը այն բնաբանին մէջ՝ որ շուրջ 30 տարի «մեր տարածքները բռնագաւթած» Հայաստանի վարչապետը կը ճանչնայ Ղարաբաղը իբրեւ Ազրպէյճանի մաս», — կը գրէ պաշտօնական Պաքուն:

**Ի՞նչ ընել. առաջարկներ Ղարաբաղէն**

Հակառակ որ Ղարաբաղի իշխանութեան եւ ընդդիմադիր քանի մը խումբերու նախաձեռնած բողոքի ցոյցերը կը ներկայացուին իբրեւ «համաժողովրդական շարժում», չճանաչուած հանրապետութեան մէջ վերջին ամիսները քաղաքական տարաձայնութիւնները իրապէս սրուած են:

Գործող նախագահ Արայիկ Յարութիւնեանի իշխանութիւնը եւ նախկին նախագահներ Բակօ Սահակեանի եւ Արկադի Ղուկասեանի ընդդիմութիւնը կը մերժեն թէ՛ Պաքուի հետ չմիջնորդաւորուած բանակցութիւններուն առաջարկը, թէ՛ ամբողջարկումի օրակարգը: Մինչ այդ, խորհրդարանական երկրորդ ուժի՝ Միասնական Հայրենիք կուսակցութեան առաջնորդ, Ղարաբաղի նախկին պաշտպանութեան նախարար, նախկին Անվտանգութեան Խորհուրդի քարտուղար Սամուէլ Բաբայեան կը պնդէ՝ որ իշխանութիւնը կը խուսափի առերեսել իրականութիւնը եւ ստանձնել պատասխանատուութիւն, նախընտրելով հայրենասիրական ճառեր ըսել եւ ոչինչ ընել: Ան կ՚առաջարկէ երթալ Ազրպէյճանի հետ ուղիղ բանակցութիւններու, փորձել փոխվստահութեան մթնոլորտ հաստատել եւ ուղիղ քննարկել ծագած հարցերը:

Դատելով հանրային ցանցերու գրառումներէն, Սամուէլ Բաբայեանի աջակիցները չեն միացած «համաժողովրդական շարժումին». անոնք պետական պաշտօնեաները կը քննադատեն ցուցադրական աքթիւիզմութիւն ընելու եւ պետութիւնը վերջնականապէս քանդելու մէջ:

Շարժումին միացած արտախորհրդարանական ընդդիմադիր խումբերուն մէկ մասը՝ Արցախի Յեղափոխական Կուսակցութիւնը, Միջանցքի Ապաշրջափակման Ժողովրդական Շարժումը եւ այլն, այժմ իշխանութիւններուն կը մեղադրեն ցոյցերը լճացնելու մէջ: Անոնք կ՚առաջարկեն շրջափակել ռուսական զօրախումբին օդանաւակայանը, որուն միջոցով խաղաղապահները սնունդ կը մատակարարեն իրենք իրենց համար, եւ խաղաղ ցոյցով շարժիլ դէպի Հակարիի կամուրջ՝ ազրպէյճանական անցակէտ: Շարժումին պաշտօնական հարթակը հրապարակաւ չ՚արձագանգեր այս պահանջներուն:

Epress.am

*Արեւմտահայերէն փոխադրութիւն՝ Ա.*

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1945 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 3 ՕԳՈՍՏՈՍ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀկ. عدد رقم ١٩٤٥ الخميس ٣ أغسطس ٢٠٢٣


## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄՕՏԵՑՈՒՄԸ ՍՓԻՒՌՔԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՉԱՓԱԶԱՆՑՈՒԱԾ Է

**Հարցազրոյց Տիգրան Գաբոյեանի հետ**
**Հարցազրուցավար՝ ՍԱԳՕ ԱՐԵԱՆ**

**ՍԱԳՕ ԱՐԵԱՆ – Սփիւռքի դրուածքներն ու մօտեցումները, յատկապէս ճգնաժամային պահերուն, երբեմն չափազանցուած կերպով կը դրուին մեր առջեւ: Խօսքը մասնաւորապէս Արցախի հետ կապուած վերջին յայտարարութիւններուն եւ խօսքերուն մասին է, եւ այս առումով ալ տաղաւար հրաւիրած եմ հալէպահայ վերլուծաբան Տիգրան Գաբոյեանը՝ քննարկելու համար Արցախի իրավիճակը ու նաեւ Սփիւռքի արձագանգները:**

**Բարի եկած էք, Պարոն Գաբոյեան: Գիտէք, տարբեր փուլերու մենք յաճախ կը լսենք այս եզրոյթը՝ «մարտնչող հայրենասիրութիւն», կամ «կենացներու Սփիւռք»: Այս եզրոյթները նոր չեն, 1970-ականներէն սկսեալ Վահէ Օշականը յաճախ այս մասին կ'արձագանգէր, ու նաեւ կը յիշեցնէր որ օդիի սեղաններու ճառերը յաճախ չէ որ յաջող են, ընդհակառակը, երբեմն ալ կը խանգարեն մեր ժողովուրդի իմացական փայլը եւ ընելիքներու չարադասումը: Նոյնիսկ յաջորդականութիւնը խնդիրներ ունի, որովհետեւ մենք թերեւս կ'ապրինք երկու իրականութիւններու միջեւ, մէկը Հայաստանն է իր բարդութիւններով, միւսը Սփիւռքը իր ճոխութիւններով, որ թերեւս նաեւ կը փորձէ յարգելի պատճառներով հայրենասիրական նկրտումներ ունենալ սակայն ոչ գոհացուցիչ կերպով ու նաեւ յաճախ վնասակար: Այսօր արցախեան տագնապը կայ, Սփիւռքէն յաճախ յոխորտանքի շեշտերով տարբեր ձայներ կը լսուին՝ թէ այս պէտք է ընենք, այն պէտք է ընենք: Ի՞նչ կը մտածէք այս բոլորին առընթեր:**

ՏԻԳՐԱՆ ԳԱԲՈՅԵԱՆ – Ուրախ եմ նորէն հիւրընկալուելու համար: Այո, ճիշդ է, կար 1970-80-ականներու ալիքը՝ որ կ'այպանէր եւ կը մեղադրէր: Ճիշդ է որ ռոմանթիք էր Սփիւռքը, իտէալապաշտ: Բայց ես կ'ուզեմ պզտիկ բաղդատական մը ընել: Նոյն ինքը Սփիւռքը 1970-80-ականներուն աւելի հայրենանուէր էր քան այսօր: Ասիկա հակասական միտք կրնայ համարուիլ բայց Խորհրդային Հայաստանի ժամանակ աւելի աշխոյժ ու կազմակերպուած Սփիւռք մըն էր՝ նոյն ինքը «ահաբեկչական» գործողութիւններով, ազատագրական պայքարով (Խորհրդային Հայաստանի դիմակայութեամբ ալ, ինչպէս Դաշնակցութիւնը): Անկախութենէն ետք Սփիւռքը հիասթափեցուց հայկական հաւաքական քաղաքական եւ տնտեսական գործունէութեան տեսանկիւնէն: Պատճառները շատ են: Կրնայ ըլլալ Հայաստանի մօտեցումն ու վերաբերմունքն ալ Սփիւռքի հետ գործնապաշտ չէր, աւելի ռոմանթիք էր, աւելի շահադիտական: Փոխկապակցուած բան մը կայ: Զմոռնանք որ 1990-ականներուն Սփիւռքը աւելի ուծացաւ, այսինքն Հայաստանի անկախութիւնը պէտք է մեծ լիցք տար Սփիւռքին աւելի տարուելու հայրենասիրութեամբ, աւելի կազմակերպուելու, բայց այդպէս չեղաւ: Կ'երկարին պատճառները: Սփիւռքը մնաց այդ բաժակաճառային ու հայրենասիրական շրջանակին մէջ, որ այլեւս փուչ կ'երեւի եւ գործնապաշտ չէ բացարձակապէս: Մատի վրայ կը համրուին Սփիւռքի յաջողած մեծ ծրագիրները Հայաստանի մէջ՝ Թումօ, Ամերիկեան Համալսարան, Գաֆէսճեան, օդակայան, եւն.: Գոնէ անոնց տասնապատիկը պէտք է ըլլար Հայաստանի մէջ:

**Ս. Ա. – Յատկապէս Արցախի մէջ վերջին շրջանին լսելի դարձաւ դժգոհութիւն մը՝ որ Սփիւռքը լուռ է, Սփիւռքը գործնական քայլերու չի դիմեր, Սփիւռքը այս մեծ տագնապին առջեւ անգործունեայ է: Եւ այսօր մենք կը տեսնենք Հայաստանի կողմէ մարդասիրական օգնութեան այս քայլը, որ նաեւ, եթէ խորքային մտածենք, ինչ-որ քաղաքական յայտ մըն է, որովհետեւ պատերազմէն ասդին նախաձեռնողը, դժբախտաբար, միշտ Ազրպէյճանը եղած է, ոչ դրական իմաստով՝ օրակարգերը խառնելու իմաստով, ջերմուկի տագնապով, անընդհատ կրակոցներով, այսինքն, Ազրպէյճանը թեմա առաջարկող է անընդհատ: Այսօր, ի տարբերութիւն, Հայաստանն է առաջարկողը այս թեման: Մարդասիրական այս գործողութիւնը, նոյնիսկ եթէ տապալի, կարեւոր քաղաքական մօտեցում մըն է, որուն նկատմամբ Սփիւռքի կողմէ ցարդ ոչ մէկ ողջունում, ոչ մէկ դրական խօսք եղաւ: Ի՞նչ է պատճառը ձեր կարծիքով:**

Տ. Գ. – Հայաստանի մօտեցումը Սփիւռքի հանդէպ քիչ մը չափազանցուած էր եւ անոր մէջ քաղաքական եւ տնտեսական նպատակներ կային անցեալին: Փոխադարձ կեղծ շահապետութիւն մը կար, փոխադարձ գովաբանութիւն մը կար, որ անկեղծ չէր: Հայաստանն ալ կարծես կը շահէր Սփիւռքի այդ չափազանցումէն, մեծացումէն: Բոլորս գիտենք որ Սփիւռքը մէկ մարմին չէ, մէկ որոշում չունի: Հիմա, այս տագնապին ժամանակ, Սփիւռքէն անիրապաշտ բաներ կը սպասուի, օրինակ՝ գացէք եւ հիւպատոսարաններ շրջափակեցէք: Ես արդիւնքներու պրիսմակով կը նայիմ, կարեւորը արդիւնքն է: Այսինքն, քաղաքական գործողութիւն ընել՝ ոչ թէ գործողութիւն ընելու համար: Լուռ ու մունջ պէտք է աշխատութիւն տարուէր այս փաթեթին վրայ, Արցախի հարցին վրայ, ինքնորոշման խնդիրին վրայ: Սփիւռքն ալ գլացաւ այս հարցին մէջ՝ 30 տարի մնալով այդ նոյն բաժակաճառին վրայ, Արցախի համար ոչ մէկ հիմնարար կամ մեծ ծրագիր մշակելով գետնի վրայ: Նորէն անարդարօրէն չանդրադառնանք՝ թէ Իսրայէլ ինչպէս Սփիւռքը վերաբնակեցուց իրեն չպատկանող հողերուն վրայ, նոյն օրինակով կրնանք հարցնել՝ թէ քանի՞ սփիւռքահայ հիմա կ'ապրի Արցախի հողերուն վրայ, այն տարբերութեամբ՝ որ Արցախը հայկական հող է: Աւետարանականներէն զատ, քանի՞ սփիւռքահայ հիմնարկ կը գործէ Արցախի մէջ: Ես նկատի չունիմ ներկայացուցչական գրասենեակները, այլ աշխատող, իրական գործ տանող հիմնարկներ: Այսօր Սփիւռքէն կը սպասուի ճնշում բանեցնել Ազրպէյճանի ներկայացուցչական կեդրոններուն, հիւպատոսարաններուն վրայ: Բայց այդ ճնշումը ի՞նչ արդիւնքի պիտի առաջնորդէ: Շատ կարեւոր է համադրել Հայաստանի հետ: Այդ համադրումը չկայ Հայաստանի հետ: Դժբախտաբար, 30 տարի համադրումներ չեն եղած քաղաքականացած Սփիւռքի եւ

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄԱԿ-ՈՒՄ՝ ԲԱՑ ՆԻՍՏԻՆ, ՆԵՐԿԱՅԱՑՆՈՒՄ Է ԻՐԱՎԻՃԱԿՆ ԱՐՑԱԽՈՒՄ

Նիւ Եորքում՝ ՄԱԿ-ի կենտրոնակայանում, Հայաստանի փոխարտգործնախարար Վահէ Գէորգեան Օգոստոսի 3-ին ներկայացնում է իրավիճակն Արցախում:

«Ես չեմ պատրաստւում յիշել օրինակներ անցեալից կամ գնահատել սովի ապագայ ռիսկերը հակամարտութեան համատեքստում: Փոխարէնը ես ՄԱԿ-ի ԱԽ-ի ուշադրութիւնն եմ ուղղում իրավիճակին, որը տեղի է ունենում հէնց հիմա՝ Լեռնային Ղարաբաղը վտանգի է ենթարկւում Ադրբէջանի կողմից լիակատար շրջափակման հետեւանքով», - ասել է նա:

Կառոյցի Անվտանգութեան Խորհրդի նիստին բաց քննարկում է «Հակամարտային իրավիճակներում պարենային անվտանգութեան ապահովումը եւ սովի բացառումը» թեմայով, յայտնում է ԱԳՆ խօսնակը:

ՄԱԿ-ի հայաստանեան գրասենեակի ներկայացուցիչներն այսօր այցելել են Կոռնիձոր, որտեղ արդէն ինը օր է՝ անշարժ կանգնած է Հայաստանի կառավարութեան Արցախ ուղարկելիք մարդասիրական բեռներով շարասիւնը: Աւելի վաղ էլ ՄԱԿ-ի գլխաւոր քարտուղար Անտոնիօ Գուտերէշն իր մտահոգութիւնն էր յայտնել Լաչինի միջանցքով ազատ տեղաշարժի հետ կապուած շարունակական մարտահրաւէրների մասին հաղորդումներով: Ըստ Գուտերէշի խօսնակի՝ գլխաւոր քարտուղարը վերահաստատել է իր յայտարարութիւնները Արդարադատութեան Միջազգային Դատարանի որոշումները կատարելու՝ Լաչինի միջանցքով անարգել տեղաշարժն ապահովելու անհրաժեշտութեան մասին:

**ԱՐՑԱԽ**

## ԱՐՑԱԽԻ ՆԱԽԱԳԱՀԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

«Սիրելի՛ հայրենակիցներ,

Արցախում անվտանգային ու հումանիտար իրավիճակը օրեցօր ծանրանում է, իսկ Ադրբէջանը խստացնում է վտանգներն ու սահմանափակութիւնները մեր ժողովրդի նկատմամբ, որի վերջին դրսեւորումը եղաւ միջազգային մարդասիրական իրաւունքի պաշտպանութեան տակ գտնուող Վագիֆ Խաչատրեանի առեւանգումը ապօրինի անցակէտից: Միւս կողմից, որոշակի ակտիւացում է նկատւում իրավիճակի կարգաւորման նպատակով իրականացւող միջազգային ջանքերում:

«Ամփոփելով այս օրերին մեր եւ միջազգային կոնկրէտ դերակատարների կողմից իրականացւող որոշ գործընթացների միջանկեալ արդիւնքները՝ ես նախատեսում եմ մի քանի օրից բացառիկ հարցազրոյց տալ Արցախի Հանրային հեռուստատեսութեանը: Այդ միջոցով հնարաւորինս բաց կերպով կը ներկայացնեմ իրավիճակը, ռիսկերն ու հեռանկարները: Այնուհետեւ, բոլոր ակտիւ քաղաքական շրջանակների հետ կը սկսեմ խորհրդակցութիւններ՝ մեր անելիքները քննարկելու եւ համապատասխան որոշումներ կայացնելու նպատակով:

«Մենք յոյս ունենք, որ Ադրբէջանի կողմից իրականացւող ցեղասպանական քաղաքականութիւնը օր առաջ կը դադարեցուի միջազգային գործուն ու խիստ միջամտութեան արդիւնքում: Դրան զուգահեռ մենք միշտ բաց ենք խաղաղ ու բանակցային ճանապարհով քննարկելու բոլոր հիմնախնդիրները եւ գտնելու լուծումներ, սակայն դրա համար նոյնպէս անհրաժեշտ են միջազգային պատշաճ ներգրաւուածութիւն ու երաշխիքներ»:

# ՀՐԱՆԴ ՎԵՀԱԿՐՈՆ (ԱԼԱՏԻՆ)

**Եգիպտահայ բանաստեղծ, արձակագիր, թարգմանիչ, յօդուածագիր**

Հ. ԱՒԱԳԵԱՆ

**ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆ**

**Ա. ՄԱՄՈՒԼ**

**Յօդուածներ**

1. Հ. Ալատին, «Հայր Ղեւոնդ Վ. Մ. Ալիշան», *Փարոս*, լրագիր, Գահիրէ, 7 Դեկտեմբեր 1901, Բ. շրջան, թիւ 35:

2. Հ. Ալատին, «Երիտասարդը», *Փարոս*, 21 Դեկտեմբեր 1901, Բ. շրջան, թիւ 39:

3. Հրանտ Ալատին, «Կտակը», *Լուսաբեր*, երկօրեայ լրագիր, Գահիրէ, 20 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 485:

4. Հրանտ Ալատին, «Մեղքցէ՛ք», *Լուսաբեր*, 5 Մարտ 1908, Դ. տարի, թիւ 491:

5. Հրանտ Ալատին, «Օսմանեան Սահմանադրութիւնը», *Արեւ*, օրաթերթ, Աղեքսանդրիա, 11 Օգոստոս 1908, Ա. տարի, թիւ 80:

6. Հրանդ Վեհակրոն, «Վճարուելիք հաշիւներ», *Արաքս*, շաբաթաթերթ, Աղեքսանդրիա, 31 Յուլիս 1926, Ա. տարի, թիւ 22 (24):

7. Հ. Վեհակրոն, «Գահիրէի նորակառոյց եկեղեցին. իր նկարները եւ ճարտարապետութիւնը», *Արաքս*, 2 Յուլիս 1927, Բ. տարի, թիւ 19 (52):

8. Հ. Վեհակրոն, «Թունաւորում», *Արաքս*, 9 Յուլիս 1927, Բ. տարի, թիւ 20 (53):

9. Հ. Վեհակրոն, «Շիլ հաշիւներ», *Արաքս*, 23 Յուլիս 1927, Բ. տարի, թիւ 22 (55):

10. Հ. Վեհակրոն, «Տեսութիւն՝ գաղութահայութեան համար», *Արաքս*, 13 Օգոստոս 1927, Բ. տարի, թիւ 25 (56):

11. Հ. Վեհակրոն, «Լեռ գթութեան», *Արաքս*, 15 Հոկտեմբեր 1927, Բ. տարի, թիւ 34 (67):

12. Հ. Վեհակրոն, «Ամանոր», *Արաքս*, 31 Դեկտեմբեր 1927, Գ. տարի, թիւ 3 (78):

13. Հ. Վեհակրոն, «Բարոյականի դաշնակցութիւն եւ Դաշնակցութեան բարոյականը», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 30 Ապրիլ 1928, ԺԴ. տարի, թիւ 2803:

14. Հրանդ Վեհակրոն (Հ. Ալատին), «Բաց նամակ բարեկամիս՝ Պօղոս Տէրվիշեանին», *Արեւ*, 24 Յուլիս 1930, ԺԶ. տարի, թիւ 3491: Տպագրական վրիպակի սրբագրութիւն՝ «Ծչգում», *Արեւ*, 29 Յուլիս 1930, ԺԶ. տարի, թիւ 3495:

15. Հրանդ Վեհակրոն, «Պատմութեան դատաստանը. «Կեցցէ՛ քիւրտ եւ հայ եղբայրութիւնը» բաին ոմանք», *Արեւ*, 13 Սեպտեմբեր 1930, ԺԶ. տարի, թիւ 3534:

16. Հրանդ Վեհակրոն, «Գրական չօվինականութիւն», *Արաքս*, 14 Յունուար 1933, Ը. տարի, թիւ 1 (327):

17. Հրանդ Վեհակրոն, «Գրական չօվինականութիւն. Բ.», *Արաքս*, 21 Յունուար 1933, Ը. տարի, թիւ 2 (328):

18. Հրանդ Վեհակրոն, «Գրական չօվինականութիւն. Գ.», *Արաքս*, 28 Յունուար 1933, Ը. տարի, թիւ 3 (329):

19. Հրանդ Վեհակրոն, «Ազատութիւնը՝ կչռադատութեամբ», *Արաքս*, 11 Փետրուար 1933, Ը. տարի, թիւ 5 (331):

20. Հրանդ Վեհակրոն, «Ազատութիւնը՝ կչռադատութեամբ. Բ.», *Արաքս*, 4 Մարտ 1933, Ը. տարի, թիւ 8 (334):

21. Հրանդ Վեհակրոն, «Ազատութիւնը՝ կչռադատութեամբ. Գ.», *Արաքս*, 18 Մարտ 1933, Ը. տարի, թիւ 10 (336):

22. Հրանդ Վեհակրոն, «Զոյգ երրորդութիւններ բայց մէկ միասնութիւն», *Արաքս*, 6 Մայիս 1933, Ը. տարի, թիւ 16 (342):

23. Հրանդ Վեհակրոն, «Կարգապահութիւն եւ համագործակցութիւն», *Արեւ*, 18 Հոկտեմբեր 1933, ԺԸ. տարի, թիւ 4489:

**Բանաստեղծութիւններ**

1. Հ. Ալատին, «Սեւ ծովին», *Բազմավէպ*, ամսագիր, Վենետիկ, Օգոստոս 1909, հատոր ԿԷ., թիւ 8, էջ 369 (վերատպուած՝ Հրանդ Վեհակրոն (Հ. Ալատին), *Նոր Լիթանիա (քերթուածներ)*, Գահիրէ, Տպարան Արգոս, 1933, էջ 16-19):

2. Հ. Ալատին, «Յաղթանակը», *Բազմավէպ*, Սեպտեմբեր 1909, հատոր ԿԷ., թիւ 9, էջ 419 (վերատպուած՝ *Նոր Լիթանիա*, էջ 14-16):

3. Հրանտ Ալատին, «Իմ Աստուածս», *Հոսանք*, շաբաթաթերթ, Գահիրէ, 11 Փետրուար 1912, Ա. տարի, թիւ 5, էջ 74 (վերատպուած՝ *Նոր Լիթանիա*, էջ 56-57):

4. Հ. Վեհակրոն, «Աղօթք առ բնադդ», *Նաւասարդ*, Պուքարեսթ, Յունիս 1925, Բ. տարի, Զ. պրակ, էջ 166 (վերատպուած՝ *Նոր Լիթանիա*, էջ 54):

5. Հ. Վեհակրոն, «Քիչ մ'ալ սպասէ» (*Նոր Լիթանիա*, անտիպ), *Արաքս*, 1 Հոկտեմբեր 1927, Բ. տարի, թիւ 32 (65): Տպագրական վրիպակներու սրբագրութիւն՝ *Արաքս*, 8 Հոկտեմբեր 1927, Բ. տարի, թիւ 33 (66) (վերատպուած՝ *Նոր Լիթանիա*, էջ 12-14):

6. Հ. Վեհակրոն, «Մուէզզինը» (*Նոր Լիթանիա*, անտիպ), *Արաքս*, 22 Հոկտեմբեր 1927, Բ. տարի, թիւ 35 (68) (վերատպուած՝ *Նոր Լիթանիա*, էջ 27-29):

7. Հրանդ Վեհակրոն, «Հին երազ» (*Նոր Լիթանիա*, անտիպ), *Արաքս*, 4 Փետրուար 1933, Ը. տարի, թիւ 4 (330) (վերատպուած՝ *Նոր Լիթանիա*, էջ 64-66):

8. Հրանդ Վեհակրոն, «Խզուած դաշինքը» (*Նոր Լիթանիա*, անտիպ), *Արաքս*, 1 Ապրիլ 1933, Ը. տարի, թիւ 12 (338) (վերատպուած՝ *Նոր Լիթանիա*, էջ 20-22):

**Թարգմանական բանաստեղծութիւններ**

1. Տանդէ, «Դժոխքին դուռը», թրգմ.՝ Հրանտ Ալատին, *Հոսանք*, 3 Մարտ 1912, Ա. տարի, թիւ 7, էջ 102 (վերատպուած՝ *Երգեր Տանդէի Դժոխքէն (թարգմանութիւն)*, թրգմ.՝ Հրանդ Վեհակրոն (Հ. Ալատին), Գահիրէ, Տպարան Արգոս, 1933, էջ 19):

2. Տանդէ, «Դժոխքը», թրգմ.՝ Հ. Ալատին, *Հոսանք*, 10 Մարտ 1912, Ա. տարի, թիւ 8, էջ 122-123 (վերատպուած՝ *Երգեր Տանդէի Դժոխքէն*, էջ 19-20):

3. Գէորգ Ազնաւուր, «Արծիւը», թրգմ. (ֆրանսերէնէ)՝ Հրանտ Ալատին, *Հոսանք*, 24 Մարտ 1912, Ա. տարի, թիւ 10, էջ 152:

**Թարգմանական արձակ**

*Վեստեան կոյս. պատմական վէպ եկեղեցւոյ առաջին դարու (շարք Փաբիոլայի)*, թրգմ.՝ Միքայէլ Ալէմշահ եւ Հրանդ Պէրպէրեան [Հրանտ Ալատին], *Բազմավէպ*, Յունուար 1895 - Յունուար 1897 (Ա.-ԺԷ. գլուխներ) (վերատպուած իբրեւ հատոր՝ Վենետիկ Ս. Ղազար, 1898):

**Բ. ԳԻՐՔԵՐ**

**Վէպ**

Հրանդ Վեհակրոն (Հ. Ալատին), *Վերադարձի՛ր աշխատանոց*, վէպ երեք մասերով, Աղեքսանդրիա, Տպգր. Արամ Ստեփանեան, 1926, 392 էջ (վէպը պրակ առ պրակ լոյս տեսած է 1926-ին, որոնք մէկ հատորի մէջ ամփոփուած եւ հրապարակուած են 1933-ին):

**Բանաստեղծութիւն**

Հրանդ Վեհակրոն (Հ. Ալատին), *Նոր Լիթանիա (քերթուածներ)*, Գահիրէ, Տպարան Արգոս, 1933, 83 էջ:

**Թարգմանական բանաստեղծութիւն**

*Երգեր Տանդէի Դժոխքէն (թարգմանութիւն)*, թրգմ.՝ Հրանդ Վեհակրոն (Հ. Ալատին), Գահիրէ, Տպարան Արգոս, 1933, 84 էջ:

**Թարգմանական արձակ**

*Վեստեան կոյս. պատմական վէպ եկեղեցւոյ առաջին դարու (շարք Փաբիոլայի)*, թրգմ.՝ Միքայէլ Ալէմշահ եւ Հրանդ Պէրպէրեան [Հրանտ Ալատին], Վենետիկ Ս. Ղազար, 1898 (Ա.- ԻԴ. գլուխներ), 379 էջ (Ա.-ԺԷ. գլուխները նախապէս լոյս տեսած են *Բազմավէպ*ի մէջ 1895-1897):

**Գ. ԱՆՏԻՊ ԳՈՐԾԵՐ (կորսուած)(72)**

1. *Նուիրական մեղքը*, թատ.:

2. *Նորիս Անդէհուր*, թատ. (քաղուած *Վերադարձի՛ր աշխատանոց* վէպէն):

3. *Ասիական երեք սահմանադրութիւններ* (Ռուս., Թրք., Պարսկ. համառօտ ակնարկ պատմական):

4. *Բառարան Հայ-ֆրանսերէն հոմանիշ եւ մերձիմաստ բայերու* (մօտ 10000 բառեր, 1000 խմբաւորումներով եւ 30000 օրինակներով):

5. *Nécropole des catafalques*, pièce en 3 actes. (Վերջ 10)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

72. Անտիպներուն ցանկը վերցուցած եմ հետեւեալ աղբիւրներէն. «Հրանդ Վեհակրոն (Հ. Ալատին)», *Բազմավէպ*, Փետրուար-Մարտ 1934, թիւ 2-3, էջ 103: Հրանդ Վեհակրոն (Հ. Ալատին), *Նոր Լիթանիա (քերթուածներ)*, Գահիրէ, Տպարան Արգոս, 1933, կողքի 3-րդ էջ:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅ-ԱՏՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ԱՊԱԳԱՅ ՍԱՀՄԱՆԸ, ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՅԵՐԸ՝ «ԸՆՏՐՈՒԹԵԱՆ» ԱՌԱՋ. ՓԱՇԻՆԵԱՆԻ ԵՒ ԱԼԻԵՒԻ ՀԱՐՑԱԶՐՈՅՑՆԵՐԸ *EURONEWS*-ԻՆ

«Հայաստանի եւ Ադրբեջանի միջեւ ապագայ սահմանը, Ղարաբաղի հայութիւնը կանգնած է «ընտրութեան» առաջ, «Լաչինի փակուղի», միջնորդների խաղերը եւ երկար ճանապարհը դէպի խաղաղութիւն. երկու երկրների ղեկավարները Euronews-ին պատմել են Եւրասիայում ամենաերկարատեւ կոնֆլիկտներից մէկի լուծման իրենց տեսլականի մասին», - գրում է Euronews-ը:

Լրագրողը նոյն հարցերն է տուել Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանին եւ Ադրբեջանի նախագահ Իլհամ Ալիեւին:

2020 թուականի Նոյեմբերի 9-ին ստորագրուած փաստաթուղթը խաղաղութեան պայմանագիր կամ խաղաղութեան համաձայնագիր չէ, նաեւ դրա մի շարք դրոյթներ կոպտօրէն 4

## ԿԷՍ ՏԱՐՈՒԱՅ ԸՆԹԱՑՔՈՒՄ ՌՈՒՍԱՍՏԱՆԻՑ ՀԱՅԱՍՏԱՆ Է ԱՅՑԵԼԵԼ ԱՒԵԼԻ ՔԱՆ 545 ՀԱԶԱՐ ԶԲՕՍԱՇՐՋԻԿ

2023 թուականի առաջին կիսամեակում Ռուսաստանից Հայաստան է ժամանել աւելի քան 545 հազար զբօսաշրջիկ: Նախորդ տարուայ նոյն ժամանակաշրջանի համեմատ աճը կազմել է 74 տոկոս:

Ընդհանուր առմամբ, Յունուար-Յունիս ժամանակահատուածում աւելի քան 11,5 միլիոն ռուսաստանցի է արտասահման այցելել: Ամենաշատը՝ 2,3 միլիոնն այցելել է Թուրքիա: Ռուսաստանցիների նախընտրած երկրորդ վայրը Աբխազիան է, այստեղ այցելել է 2,1 միլիոն մարդ: Հայաստանը 7-րդ տեղում է:

Պատժամիջոցների ու սահմանափակումների պատճառով ռուսաստանցիները չեն կարող հեշտութեամբ մեկնել արեւմտեան երկրներ:

*Ինտերֆաքս*ի ներկայացրած առաջին տասնամեակում եւրոպական երկրներից միայն Ֆինլանդիան է, որտեղ վեց ամսուայ ընթացքում այցելել է 306 հազար ռուսաստանցի:

## ԷՂ ԻՆՉ ՍՑԵՆԱՐ ԿԱՅ՝ ԱՆԽՈՒՍԱՓԵԼԻ ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏ-ԲԱՔՈՒ ԵՐԿԽՕՍՈՒԹԻՒՆԻՑ ԲԱՑԻ

«Միեւնոյն ժամանակ, Ստեփանակերտի ու Բաքուի միջեւ երկխօսութեան միջազգային մեխանիզմի ձեւաւորումը երավիճակի յաղթահարման ամենակառուցողական սցենարն է ու պէտք է բոլոր ջանքերը գործադրել այս ուղղութեամբ», Երեւանում յայտարարել է Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը, կառավարութեան նիստում ունեցած իր ելոյթում արձանագրելով, որ Յուլիսի 15-ի Բրիւսէլի հանդիպումը որեւէ առաջընթաց չի ապահովել Լաչինի միջանցքի ապաշրջափակման հարցում: Իսկ ի՞նչ այլ սցենարներ կան, եթէ ըստ Հայաստանի վարչապետի Ստեփանակերտ-Բաքու երկխօսութեան միջազգային մեխանիզմը «ամենակառուցողականն» է: Ամբողջ հարցն այն է, որ այդ մեխանիզմը կարծես թէ անիրագործելի է:

Հայաստանի վարչապետն ինքն էլ յայտարարում է, որ Ադրբեջանը վարում է էթնիկ զտման, ցեղասպանութեան քաղաքականութիւն: Ինչպէ՞ս կարող է այդպիսի քաղաքականութիւն վարող Բաքուն գնալ Ստեփանակերտի հետ այնպիսի երկխօսութեան, որը կ'ենթադրէր Արցախի որեւէ սուբիեկտութիւն եւ իրաւունքի ու անվտանգութեան հարցերի այնպիսի չեչտադրում, որը դուրս կը լինի Բաքուի «ռեինտեգրացիոն» պատկերացումներից: Հետեւաբար, գործնականում անհնար է թւում, որ Բաքուն կամովին կը համաձայնի Ստեփա- 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՏԵՍԻԼ ՄԽՏԻԿԵԱՆ՝ ՈՍԿԷ ԾԻՐԱՆ 20-ՐԴ ՓԱՌԱՏՕՆԻ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐ

միջազգային սինեմայի փառատօնը: Ինչպէս ամէն տարի, տարբեր երկիրներէ եկած ֆիլմեր մասնակցեցան փառատօնի մրցոյթին: Փառատօնի փակումին հանդիսաւոր արարողութիւնը տեղի ունեցաւ Յուլիս 15-ին Կինոյի Տան մէջ, որուն ընթացքին յանձնախումբը յայ-տարարեց մրցանակակիրներուն անունները:



Փառատօնի փակումի երեկոյթի գործընկեր Freedom Broker Armenia-ն, կարճամեթրաժ ֆիլմերու Կորիզ մրցոյթի յատուկ մրցանակը եւ դրամական նուէրը շնորհեց եգիպտահայ Տեսիլ Մխտիկեանի *Սատանայի գործերէն* ֆիլմին, որուն համաշխարհային առաջնեկութիւնը (première) կայացած էր 2022 Նոյեմբերին, Գահիրէի 44-րդ Միջազգային Ֆիլմի Փառատօնին:

Նշենք, որ իր ժամանակին *Զահակիր* քննախօսած էր Գահիրէի առաջնեկութիւնը (*Զահակիր*, թիւ 1930):

Գահիրէի ցուցադրութեան ներկայ կը գտնուէր Երեւանէն այցելութեան եկած սինեմայի մասնագէտ Արծուի Բախչինեան, որ ներկայացումէն ետք մօտեցած էր Տեսիլին, խօսած հետը եւ խոստացած ֆիլմը ցուցադրել տալ Երեւանի մէջ: Եւ ահաւասիկ, Արծուիի ջանքերով է որ *Սատանայի գործերէն*ը կը հասնի Երեւան եւ կը մասնակցի յայտնի փառատօնին:

Գալով Երեւանի փառատօնի միւս ֆիլմերուն, լիամեթրաժ ֆիլմերու միջազգային մրցոյթին Ոսկէ Ծիրանի արժանացաւ Սփիրոս Եաքովիտէսի *Սեւ քարը*, Արծաթէ Ծիրանի՝ Սիման Քայաթիի *Շրջմոլիկը*:

Տարածաշրջանային համայնապատկեր մրցոյթին Ոսկէ Ծիրանի արժանացաւ Ապաս Ամինիի *Անվերջ սահմանները*, Արծաթէ Ծիրանի՝ Մարիամ Զաչիայի եւ Նիք Վոյթի *Կախարդական լեռը*:

FIPRESCI մրցանակ ստացաւ Մեհրան Թամատոնի *Իմ վատթար թշնամին*:

Կորիզ կարճամեթրաժ ֆիլմերու մրցոյթին Ոսկէ Ծիրանի արժանացաւ Արմինէ Անտայի *Թռչող թերեւներու երգը*, Արծաթէ Ծիրանի՝ Արման Այվազեանի *Քարերը*:

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՈԼՈՐՏԸ ԱՒԵԼԻ ՄՕՏ ԵՒՐՈՊԱՅԻՆ. ՊԱՇՏՕՆԱՊԷՍ ԲԱՑՈՒԵՑ «ՍՏԵՂԾԱԳՈՐԾ ԵՒՐՈՊԱ» ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ԳՐԱՍԵՆԵԱԿԸ

Հայաստանեան մշակութային ոլորտը աւելի մօտ է դառնում Եւրոպային. Երեւանում պաշտօնապէս բացուեց Ստեղծագործ Եւրոպա Հայաստանեան գրասենեակը:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ գրասենեակը ստեղծուել է ՀՀ-ԵՄ համագործակցութեան եւ Ստեղծագործ Եւրոպա 2023-2027 թթ. ծրագրի շրջանակներում:

Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարար Ժաննա Անդրէասեանը, կարեւորելով Հայաստանում ծրագրի մեկնարկը, ընդգծեց, որ Եւրոմիութեան հետ համատեղ իրականցուող մի շարք ծրագրերին է միանում նոր՝ աւելի մեծ հարթակ, որը հնարաւորութիւն է տալու, որ մշակոյթի ոլորտում անհատ ստեղծագործողները եւ կառոյցները կարողանան համագործակցութիւն ծաւալել Եւրոպական Միութեան իրենց գործընկերների հետ:

«Ստեղծագործ Եւրոպա Հայաստանեան գրասենեակը լինելու է մեր հիմնական գործակալը, այսինքն՝ այդ բոլոր ծրագրերը իրականացուելու են այս գրասենեակի կողմից: Մրցոյթի արդիւնքում՝ յանձնաժողովը, դիտարկելով բոլոր դիմումները, ծրագրի գրասենեակ ընտրել է «Երեւանեան հեռանկարներ միջազգային երաժշտական փառատօն» ՀԿ-ն, որտեղ լինելու են իրազեկման, խորհրդատուութեան, աջակցութեան ծրագրեր եւ ծառայութիւններ:

Գրասենեակը նպաստելու է, որպէսզի ոլորտի մասնագէտները կարողանան իրենց գաղափարները կեանքի կոչել: Դրանք կարող են լինել համատեղ ներկայացումներ եւրոպական որեւէ թատրոնի հետ եւ ամենատարբեր մշակութային ծրագրեր, ↳ 4

ԽՈՀԵՐ

## ԱՐՏԱՔԻՆ ՎԱՒԵՐԱՑՈՒՄ ՈՒՐԻՇԷ ԿԱՄ ՈՒՐԻՇԻ ՕՐԻՆԱԿԱՆԱՑՈՒՄԸ ՍԵՓԱԿԱՆ ԻՆՔՆԻՆ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Կարծէք մեր կեանքը հիմնուած ըլլայ արտաքին վաւերացումի վրայ: Կը ձգտինք արտաքին վաւերացումի, զայն դարձնելով մեր սեփական գոյատեւութեան առանցքը:

Ֆէյսպուքի, Եութիւպի լայքերը անձի մը շնչահեղձ տենչերն են վաւերացուելու արտաքին աշխարհէն: Իսկ ի՞նչ է լայքը՝ եթէ ոչ թուային կուտակում մը, կուտակումի թերեւս ամենէն ձեւական կերպը, հեռու որեւէ մեկնաբանական կարելիութենէ: Բայց այդ թիւը՝ արտաքին ուրիշէն եկած վաւերացումը, ամբողջ աշխարհ մըն է ենթակային համար, որ ճիշդ այդ պատճառով ալ կը դադրի ինքնուրոյն ենթակայ մը ըլլալէ:

Մարդ կը կրթուի դպրոցին մէջ ուրիշէն սպասելով իր սեփական անձին գնահատականը, եւ իր գործողութիւնները շարժելով այդ ուղղութեամբ: Լաւ աշակերտ ըլլալ կը նշանակէ քննութեան հարցումներու պատասխաններուն մէջ ոչ մէկ ներքին, ինքնուրոյն մտածողութիւն կամ համոզում ներդնել, այլ վերարտադրել դասագիրքի միջոցով արտաքին աշխարհէն ստացած անվիճարկելի գիտելիքը: Արտաքինն է արդի դպրոցի կրթութեան չափանիշը: Այս (չ)մտածողութեան համար աշակերտը կը սպասէ ուրիշին՝ ուսուցիչին գնահատականը գովասանքի եւ մանաւանդ թուանշանի տեսքով: Արտաքինէն եկած գնահատանք-թուանշանը կը դառնայ գիտելիքի հիմք: Արտաքին, չներքնականացուած գիտելիքը՝ ամրացած դուրսէն եկած գնահատանքով, կը դառնայ մարդու մտածողութեան հիմքը յետդպրոցական կեանքին մէջ: Մարդ ամբողջ կեանք մը կրնայ անցընել՝ սպասելով ուրիշէն:

Արդեօք ձեր շուրջը տեսա՞ծ էք անձ մը՝ որ չի գանգատիր ուրիշէ գնահատուած չըլլալու համար: Արդեօք դուք եւս չէ՞ք գանգատիր՝ ուրիշէ գնահատուած չըլլալնուդ համար: «Ուրիշը գնահատել չի գիտեր աշխատանքս» արտայայտութիւնը դարձած է սովորական: «Իսկ դուն գիտե՞ս գնահատել ուրիշը», կարելի է հարցնել փոխադարձաբար:

Երբ կը ձախողինք ուրիշէ ստանալ մեր ակնկալածը, մենք ինքներս կը ստեղծենք առիթը, կամ ուղղակիօրէն երեւոյթը կը ձեւակերպենք այնպէս՝ որ իբր եկած է ուրիշէն:

Տեսէ՛ք ինքնակենսագրականները եւ curriculum vitae-ները: Երեւանի Օփերան կամ Մեթրոփոլիթըն Օփերան հրաւիրեց այսինչը ելոյթ ունենալու իր հեղինակաւոր բեմին վրայ: Կը քօղարկուի այն պայքարը՝ զոր անձը մղած է այնտեղ մտնելու համար, օգտագործելով իր յարաբերութիւնները, երբեմն շահագործելով բարեկամներ կամ ազդեցիկ մարդիկ, եւն., եւն.: Հիմնարկի՝ արտաքին կողմի, անխնդրական հրաւէրը շատ աւելի խօսուն է քան սեփական անձի մղած խնդրական պայքարը:

Ահաւասիկ սփիւռքահայ ղեկավարը: Ան չ՚ըսեր՝ որ պայքարած է հասնելու այդ դիրքին, այլ կատարուածը կը ներկայացնէ այնպէս՝ իբր իրմէ խնդրած են ստանձնել պաշտօնը: Եւ ի՜նչ պայքարներ «խնդրուելու» համար:

Սփիւռքի մէջ յաճախ չընելու կամ նուազ ընելու կամեցողութիւն կը նկատուի, պատճառաբանութիւն ընդունելով արտաքին ուրիշը՝ ժողովուրդը:

Վատ ներկայացումներ կը տրուին, պատճառաբանելով ժողովուրդին անհասկացողութիւնը, այսինքն՝ սփիւռքահայ հանդիսատեսը աւելին չի կրնար ընկալել: Այսպէս կը քօղարկուի կատարողի իրական (ան)կարողութիւնը:

Գիրք չի տպուիր՝ կարդացող չըլլալու պատճառաբանութեամբ: Կարեւոր միտքեր կրնան կործանուիլ, եւ կործանուած են, կարդացող չըլլալու տրամաբանութեամբ: Իրականութեան մէջ, չտպագրելու գործողութեան մէջ ուրիշ պատճառներ են թաքնուած, որոնցմէ մէկը՝ որոշում տուողի անձնական տգիտութիւնը եւ արհամարհանքը գիրքի նկատմամբ: Կամ հիմնարկային դրամին օգտագործումը աւելի ղեկավարամէտ նպատակներու: Բայց, ամէն պարագայի, ընթերցողի ենթադրեալ բացակայութեան պատրուակը շատ լաւ կը գործէ: Պատրուակ արտաքինով:

Կայ հակառակը: Գիրք տպագրուած է, որուն յառաջաբանին մէջ գրողը չեշտադրած է՝ որ գիրքը կը տպագրէ մատաղ սերունդի ընթերցանութեան մակարդակը բարձրացնելու համար, քանի որ, դարձեալ ըստ իրեն, ակնյայտ է որ այսօրուայ մատաղ սերունդը շատ քիչ կը կարդայ:

Երկու պարագաներուն ալ՝ տպագրել կամ չտպագրել, որոշում կայացնողը իր ինքնը հաստատած կ՚ըլլայ արտաքին աշխարհէն՝ չընթերցողներու ենթադրեալ գոյութենէն:

Դրամատէրը չ՚ըսեր՝ որ կ՚աշխատի սեփական գերշահոյթին համար, այլ աշխատատեղիներ պատրաստելու եւ այսպիսով հանրութեան ծառայած ըլլալու համար: Կ՚աշխատի ուրիշի համար: Դրամատէրի եսականութիւնը հաստատելու գլխաւոր առանցքն է ուրիշը: Ուրիշին աշխատանք տրամադրելու պատկերին տակ, դրամատէրը նաեւ քօղարկած կ՚ըլլայ դրամատիրական շահագործումի մարքսեան դառնագոյն իրականութիւնները: Իսկ երբ շահոյթը կը սկսի նուազիլ, բնաւ չի խղճար պաշտօնեաները ճամբել աշխատանքէ եւ դարձնել անգործ: Անոնք կը դառնան անգործ պարզապէս որովհետեւ դրամատիրոջ դրամական կացութիւնը գերշահոյթէն նուազած է սովորական շահոյթի: Իսկ ո՞ւր մնաց ուրիշին աշխատանք հայթայթելու տրամաբանութիւնը:

Ղարաբաղի հարցը եւ անոր ձախողութիւնը իւրաքանչիւրս կը դնենք մեր սեփական ինքնէն դուրս գործօններու վրայ՝ ՄԱԿ եւ ԵՄ բանաձեւեր, Հայաստանի հին ու նոր իշխանութիւններու անկարողութիւն, մոռնալով մեր սեփական անձը՝ որ չգնաց ապրիլ Ղարաբաղ, ենթադրեալ 120 հազար բնակիչներուն թիւը հասցնելով մէկ միլիոնի: Բայց այդ արտաքին գործօններու քննադատութիւնը պիտի աւելցընէ իմ անձնական հայրենասիրութեանս չափը: Քննադատելով, բայց չմասնակցելով, կ՚ամբողջանայ իմ անձիս հայրենասիրական ներկայացուցչականութիւնը:

Կ՚աղաղակենք՝ բանակ, ուժեղ բանակ, բայց աղաղակողներէս ոչ մէկը կ՚երթայ բանակ պատերազմելու: Ուրիշները պիտի երթան պատերազմելու: Ուրիշները պիտի մեռնին եւ մենք, ապահով ապրող հայրենասէրներս, մեռնողներուն պիտի տանք հերոսի կոչում: Մեռնողի հերոսականութիւնը գովերգելով վաւերացուցած կ՚ըլլանք մեր սեփական (չգործադրած) հայրենասիրութիւնը:

Համահայկականութիւնը ինչ է՝ եթէ ոչ իւրաքանչիւր հայու յարաբերութիւնը իւրաքանչիւր ուրիշ հայու հետ: Բայց իրականութեան մէջ, համահայկականը ես չեմ, դուն չես, արտաքին անորոշ երրորդ դէմքն է: Միշտ հմայք մը կայ անորոշ անձերու նկատմամբ: Փորձեցէ՛ք համահայկականութիւն աղաղակողներու հետ անձնական յարաբերութեան մէջ մտնել՝ մտաւոր գետինի վրայ: Մեծ մասամբ կամ պիտի անտեսուիք, կամ ստանաք ամենակարճ ու ամենաչոր պատասխան:

Ամէն բան կը սպասենք դուրսէն՝ մենք մեզի, մեր սեփական անձը, սեփական կարողութիւնը, սեփական մարմինը ատելու աստիճան:

Երջանկութիւնը կու գայ ներսէն: Դուրսէն եկածը՝ գովասանքի կամ գնահատանքի ↳ 4

ՋԱՀԱԿԻՐ

## 2 ՀԱՅ-ԱԴՐԲԷՋԱՆԱԿԱՆ ԱՊԱԳԱՅ ՍԱՀՄԱՆԸ...

խախտուած են, ասել է վարչապետ Փաշինեանը:

«Ցաւօք, Ադրբէջանի կողմից բազմաթիւ դրոյթներ պարբերաբար խախտւում են: Սա տեղի է ունենում հիմա: Տեսէք, դուք հարց տուեցիք Լեռնային Ղարաբաղի մասին, եւ դա բոլորը հասկանում են, բայց Ադրբէջանը, օրինակ, շարունակում է պնդել, որ Լեռնային Ղարաբաղ չկայ», - ընդգծել է նա:

Հայաստանի ղեկավարը կարեւորել է խաղաղութիւնը, նշելով, դա իր համոզմունքն է, իր դիրքորոշումը, որպէսզի դա տեղի ունենայ, կարեւոր է, որ միջազգային հանրութիւնը հասկանայ մի շարք կարեւոր նրբերանգները՝ ըստ նրա:

Իլհամ Ալիեւն, իր հերթին, ասել է, որ խաղաղ գործընթացը շատ հարթ չի ընթանում, միաժամանակ նկատել, որ շատ ակտիւ բանակցութիւններ են ընթանում երկու երկրների արտգործնախարարների մակարդակով:

## 2 Է՞Ղ ԻՆՉ ՍՑԵՆԱՐ ԿԱՅ՝ ԱՆԻՐԱՏԵՍԱԿԱՆ ...

նակերտի հետ երկխօսութեան, այն էլ միջազգային մեխանիզմի ներքոյ:

Ըստ այդմ առաջանում է հարց, թէ արդեօ՞ք կը լինի ճնշում Ադրբէջանի վրայ, որը նրան կը ստիպի ճանաչել Ստեփանակերտն ու միջազգային մեխանիզմի ներքոյ նստել բանակցութեան, երկխօսութեան: Ցաւօք սրտի, ներկայումս ոչ միայն չի նշմարւում այդպիսի ճնշման հնարաւորութիւն, այլեւ հակառակը՝ չնայած միջազգային մտահոգութիւնների բարձրաձայնմանը, գործնական հարթութիւնում «ճանաչւում» է այն քաղաքականութիւնը, որ վարում է Ադրբէջանը Արցախի լիակատար պաշարման տեսքով: Հետեւաբար հարց է առաջանում, «ամենակառուցողականից» բացի, էլ ի՞նչ սցենարներ կան, որոնք կ՚օգնեն յաղթահարել իրավիճակը՝ լինելով «կառուցողական»: Որեւէ մէկը Երեւանին ու Ստեփանակերտին ներկայացնո՞ւմ է այդպիսի որեւէ սցենար, թէ՞ ոչ: Ըստ ամենայնի, պաշտօնական Երեւանը պէտք է սկսի աւելի բաց խօսել այդ մասին, Հայաստանի ու Արցախի հանրութեանը կողմնորոշման աւելի առարկայական հնարաւորութիւն տալու համար:

***Դեմոկրատական սոցիալիզմ***

## 3 ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՈԼՈՐՏԸ ԱՒԵԼԻ...

որոնց գաղափարները, վստահ եմ, շատ են մեր արուեստի գործիչների մօտ: Սա իրական հնարաւորութիւն է դիմելու կոնկրէտ ծրագրով, եւ այն իրականացնելու հնարաւորութիւն ստանալ», - նշեց Ժաննա Անդրէասեանը:

Նախարարը ընդգծեց՝ քանի որ ծրագրի նպատակներից մէկը մշակոյթի ոլորտում բազմազանութեան եւ ներառականութեան խրախուսումն է, այդ իսկ պատճառով այստեղ չունեն որեւէ սահմանափակումներ եւ ցանկացած տարիքի ստեղծագործող՝ արուեստի ցանկացած ոլորտից, կարող է այստեղ գտնել իր գաղափարները իրացնելու հնարաւորութիւն:

Հայաստանում Եւրոպական Միութեան պատուիրակութեան գրասենեակի ղեկավար Անդրէա Վիկտորինը Հայաստանում Ստեղծագործ Եւրոպա գրասենեակի բացումը շատ կարեւոր քայլ է համարում, քանի որ այն կը դառնայ հարթակ, որտեղ կը հաւաքուեն բոլոր մշակութային նախաձեռնութիւնները: «Այս հարթակում ոլորտի ներկայացուցիչները կը կարողանան համագործակցել ստեղծագործ ինդուստրիայի ոլորտում եւ հնարաւորութիւն կ՚ունենան կապեր հաստատել եւ համագործակցել Եւրոպայի ներկայացուցիչների հետ: Մենք շատ ուրախ ենք, որ Հայաստանը Ստեղծագործ Եւրոպա ծրագրի մի մասն է, եւ այժմ էլ արդէն ունի պաշտօնական ներկայացուցչութիւն», - նշեց Անդրէա Վիկտորինը:

Երեւանեան Հեռանկարներ միջազգային երաժշտական փառատօնի տնօրէն Սոնա Յովհաննիսեանն էլ ընդգծեց, որ Ստեղծագործ Եւրոպա ծրագիրը Եւրոպայի ամենախոշոր դրամաշնորհային ծրագրերից մէկն է, որի մուտքը Հայաստան վաղուց էր սպասւում: «Մրցոյթի արդիւնքում վստահութիւնը տրուեց Երեւանեան Հեռանկարներին, որպէսզի մենք այստեղ ներկայացնենք ծրագրերը, ընդունենք յայտերը, օգնենք եւ խորհրդատուութիւն տրամադրենք բոլոր դիմորդներին: Հայաստանի մշակութային ոլորտի ցանկացած ընկերութիւն, հասարակական կազմակերպութիւն, անհատներ եւ արուեստագէտներ կարող են իրենց ծրագրերը եւ գաղափարները ներկայացնել, բայց, իհարկէ, դրա համար կան ձեւաչափեր, որոնց մեր աշխատակազմը սիրով կը ծանօթացնի», - ասաց Սոնա Յովհաննիսեանը:

## 1 ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄՕՏԵՑՈՒՄԸ ՍՓԻՒՌՔԻ ՆԿԱՏՄԱՄԲ...

Հայաստանի իշխանութիւններուն միջեւ:

**Ս. Ա. – Ձեր կարծիքով, Հայաստանի այսօրուայ իշխանութիւնները ընելիք մը ունի՞ն համադրումի, Սփիւռքը հասկնալու, նոր նշաձողեր դնելու առումով: Ամենակարեւորը՝ որ մենք երկու իրականութիւններու մէջ կ՚ապրինք: Քիչ առաջ ըսիք որ Արցախը հայկական հող է: Ասիկա մեր ընկալումներուն մէջ է, բայց երբ այդ ընկալումները իրականութեան հետ կը բախին եւ մենք ժխտական արդիւնք կ՚ունենանք, ցնցումի մէջ կը մտնենք: Այսօր նոյնն է: Այսօր մենք պարտուած երկիր ենք, եւ Սփիւռքը ասիկա տակաւին չէ ընկալած: Ցարդ չէ ընկալած նաեւ՝ որ Թուրքիան առաջուայ Թուրքիան չէ: Այս առումով տնային պարտականութիւն մը կայ որ պէտք է կատարուի: Ի՞նչ է ձեր կարծիքը:**

Տ. Գ. – Ես կը կարծեմ որ նորէն մենք երազային վիճակներու մէջ ենք, ոչ իրապաշտ: Որեւէ գործունէութիւն միջազգային յարաբերութիւններու մէջ երկու մակերես ունի՝ տնտեսական եւ քաղաքական: Մշակութային կամ ընկերային խնդիրները այնքան մեծ արժէք չունին պետութեան ծաղկումին, պետութեան կարողականութեան հաստատումին մէջ: Տնտեսականօրէն Սփիւռքը գլացած է: Երբ Հայաստանը անկախացաւ, առաջին նախագահի մասնակցութեամբ քննարկուեցաւ՝ թէ կարելի՞ է Սփիւռքէն 500 միլիոն տոլլար տարեկան ներդրում ստանալ: Ըսուեցաւ՝ իրապաշտ չէ: Իսրայէլ մինչեւ հիմա քանի մը միլիառ տոլլար իր Սփիւռքէն կը ստանայ: Տնտեսական բաժինը եթէ գլացում համարենք, քաղաքականօրէն այս է Սփիւռքի կարողականութիւնը: Իր լոպպինկը Սփիւռքը լաւ կը կատարէ: Եթէ նայինք, ամերիկահայերու եւ Ֆրանսահայերու կատարած լոպպինկը բացառիկ է, ասկէ աւելի ինչ կրնան ընել: Ամերիկան ալ, Ֆրանսան ալ բարեացակամ են Հայաստանի նկատմամբ: Ուրիշ տեղեր այլեւս ցոյցեր եւ նման բաներ երազային բաներ են, անիրապաշտ, քիչ մըն ալ ծիծաղելի:

**Ս. Ա. – Օրերս Հայաստանի մէջ Սփիւռքի հետ կապուած հայրենադարձութեան կարեւոր կեդրոն մը հիմնուեցաւ: Մենք իրօք կեդրոնի՞ կարիք ունինք, թէ հայրենադարձութեան: Այսօր ոչ ոք հայրենադարձութեան մասին կը խօսի, իսկ Սփիւռքի մէջ Հայաստան երթալու փափաքն ալ կարծես նօսրացած է հասկնալի պատճառներով՝ պատերազմը ըլլալով գլխաւորը: Բայց, կը կարծեմ, այսպիսի գործեր պէտք է մշակուին հետեւողական եւ երկար ծրագրի վրայ: Այսպիսի ծրագիր չունինք:**

Տ. Գ. – Ողջունելի է կեդրոնին բացումը: Բայց եկէք գիտնանք Սովետական Հայաստանը ինչ հիմունքի վրայ կառուցուած էր, քանի որ Հայաստանը դարձաւ այդ Սովետականին ժառանգորդը: Հայաստանը համահայկական երկիրի չվերածուեցաւ, որովհետեւ սովետները այնպէս ծրագրած էին որ արեւելահայ մշակոյթը գերակայ ըլլայ: Իսրայէլի նման պետութիւն չէ Հայաստանը: Հակառակ որ ներկայ Հայաստանի բացուածութիւնը դրականօրէն ազդեց ակամայ կամ ոչ-անմիջականօրէն ներառնելու Սփիւռքը: Ես նկատի ունիմ այն՝ որ անկախութենէն վերջ Հայաստանը մնաց արեւելահայ մշակոյթի ներկայացուցիչը, կրելով Սովետական այդ բեռը: Ան համահայկական չդարձաւ:

**Ս. Ա. – Ի՞նչ պէտք է ընէ այսօրուայ Հայաստանը համահայկական (բառը ձերն է) հայրենիք ըլլալու համար:**

Տ. Գ. – Պակասը ֆինանսն է: Եթէ ծաղկուն երկիր ըլլանք, կը դառնանք համահայկական: Ծաղկունը փոխկապակցուած է: Իսրայէլի ծաղկունութիւնը Սփիւռքը բերաւ: Հայաստանի մէջ ծաղկունութեան պակասը արգելք էր որ Սփիւռքը գար անմիջականօրէն:

**Ս. Ա. – Վերջին շրջանին, Էրտողանի վերջին յաղթանակէն ետք, կը նկատենք որ կը փոխուի Թուրքիոյ արտաքին քաղաքականութիւնը, կը փոխուին առանցքները յատկապէս դէպի Արեւմուտք, եւ այդ կ՚ազդէ մեր վրայ: Օրինակ, Արցախի գծով, Էրտողանը առաջուայ յառաջապահը, հուռռաներով խօսողը չէ: Նոյնիսկ Պաքու կատարած իր վերջին այցելութենէն ետք, եթէ կային կարգ մը սլաքներ, բայց չկար առաջուայ թնդութիւնը: Ի՞նչ է պատճառը:**

Տ. Գ. – Մեծ կանխատեսում մը չէր մեր ըրածը՝ որ Թուրքիան պիտի վերադառնայ դէպի Արեւմուտք: Կը կարծեմ՝ որ թրքական կողմէն, Ռուսաստանի հետ ունեցած շահերը այլեւս աւարտի մօտ են: Ռուսական կողմէն, Թուրքիայէն ակնկալած շահերը վերջ չունին դժբախտաբար:

**Ս. Ա. – Ռուսը աւելի պէտք ունի Թուրքին քան հակառակը:**

Տ. Գ. – Վերջին քանի մը ամսուայ վարած քաղաքականութենէն յայտնի է, որ Թուրքիան այլեւս դարձած է փրօ-ամերիկեան: Յետոյ ան այլեւս պարարտ հող չունի Կովկասի մէջ, նոյն ինքը Ազըրպէյճանի մէջ, նոյնիսկ Վրաստանի մէջ, որպէսզի կարենայ դիւրաւ շարժիլ, քանի որ այդ բանալիները իրեն տուողը ռուսն էր, իսկ ռուսը հիմա շատ մեծ խնդիրներ ունենալուն պատճառով քիչ մը կմկմացումի մէջ է: Ռուսն էր որ Թուրքիան բերաւ, օրինակ, Աղդամ եւ իբրեւ յենակէտ նստեցուց այնտեղ: Հիմա ռուսն ալ անշուշտ շատ պէտք ունի Թուրքիոյ բայց, կը կարծեմ, պիտի չաշխատի առաջուայ թափով եւ խանդավառութեամբ:

**Ս. Ա. – Իսկ այդ դրուածքով, մեզի համար օգտակա՞ր է աւելի արեւմտամէտ Թուրքիա մը, որ փոխարինէ Ռուսիոյ հետ մեղրալուսնային յարաբերութեան:**

Տ. Գ. – Այո, կարծեմ աւելի լաւ է: Որովհետեւ Թուրքիան սանձուած ու կաղապարուած կ՚ըլլայ երբ գտնուի Արեւմտեան անջրպետի մէջ: Արեւմուտքն ալ մեզի հանդէպ թշնամանք չունի: Մենք պէտք է միշտ ասիկա միտքերնիս ունենանք, մենք պէտք չէ տրամադրուինք եւ մենք մեզի թշնամացնենք Արեւմուտքին հետ:

***Առաջին լրատուական***

Եու-Թիւպով պատկերասփռուած հարցազրոյցին գրառումը՝ Ա.: Ներկայացուած է աննշան յապաւումներով:

## 3 ԱՐՏԱՔԻՆ ՎԱՒԵՐԱՑՈՒՄ ՈՒՐԻՇԷ ԿԱՄ ՈՒՐԻՇԻ ՕՐԻՆԱԿԱՆԱՑՈՒՄԸ...

ձեւով, խաբուսիկ է: Ան ժամանակաւոր է, ազդեցութիւնը շուտով կը վերանայ եւ մարդ կը սպասէ աւելին դուրսէն: Աւելի գնահատանք, աւելի ուժեղ գովասանք, բան մը՝ որ տեղի չունենար եւ մարդը կ՚իյնայ հոգեկան ճնշուածութեան տակ, քանի որ չի ստանար ակնկալածը:

Կ՚ակնկալենք ուրիշէն, մեր անձը խեղաթիւրած ըլլալու ատիճան: Իմ ինքնութիւնս ես եմ: Ես եմ իմ ինքնուրոյնութիւնս:

Այդքան անվստահ է արդի մարդը ինքզինքին նկատմամբ:

Արտաքինն ու ուրիշը չշփոթենք փոխներթափանցային յարաբերութիւններու եւ առնչութիւններու հետ, համակեցային գոյակցութիւններու հետ, որոնք բոլորովին տարբեր հասկացողութիւններ են այսօրուայ տարածուած վերոյիշեալ (ոչ-)յարաբերութիւններէն:

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1946 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 17 ՕԳՈՍՏՈՍ 2023 *ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀԿ.* عدد رقم ١٩٤٦ الخميس ١٧ أغسطس ٢٠٢٣

# «ԱՐԵԱՆ ԴՐԱՄ»-Ի ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆ. ԻՆՉՊԷՍ ՓՏԱԾՈՒԹԻՒՆԸ ԽԱԹԱՐԵՑ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԶՈՀԵՐՈՒՆ ՀԱՏՈՒՑՈՒՄՆԵՐԸ

Ասիկա իմ խորագիրս չէ: *Լոս Անճելըս Թայմս*ինն է:

Այնտեղ ուր դրամ կայ, կը բարձրանայ փտածութեան (corruption) կարելիութեան աստիճանը: Սփիւռքը լեցուն է նման օրինակներով, բայց շահերու համընկնումը, հետախուզական լուրջ ու անկախ մարմիններու բացակայութիւնը (նկատի չունիմ հայհոյող, վարկաբեկող, իմաստները տարափոխելով զոհեր որոնող մարդիկ), ինչպէս նաեւ սփիւռքահայ մեծամասնութեան անտարբերութիւնը սփիւռքեան հարցերու նկատմամբ, պատճառ կը հանդիսանան՝ որ փտածութեան գործողութիւնները մնան առանց արձանագրութեան, մինչեւ որ օտար հետախուզութիւն մը բարեհաճի իր ձեռքը վերցնել բացայայտումի գործողութիւնը:

2000-ականներու սկիզբը, ամերիկահայ փաստաբան Վարդգէս Եղիայեան, իր հետ վերցնելով երկու այլ ամերիկահայ փաստաբաններ՝ Մարք Կիրակոս եւ Պռայըն Քապաթէք, դատ կը բանան երկու ապահովագրական ընկերութիւններու դէմ՝ առիթ տալու համար Ցեղասպանութեան զոհերու ժառանգորդներուն գանձել իրենց նախնիներու ապահովագրած գումարները:

Գաղափարը յղացողը եւ գործադրութեան մէջ դնողը Եղիայեանն էր: Ան ունէր տեսլական մը: Նիւթական հատուցումը չէր վերջնական նպատակը, այլ ամերիկեան դատարանի կողմէ Ցեղասպանութեան դիտարկումը իբրեւ փաստ: Եւ յաջողեցաւ:

Այսպէս, երեք փաստաբանները դատի կու տան New York Life եւ ապա ֆրանսական AXA ապահովագրական ընկերութիւնները, եւ կը յաջողին ստանալ դատավճիռ ընդհանուր 37,5 միլիոն տոլլարի հատուցումով, New York Life՝ 20 միլիոն, AXA՝ 17,5 միլիոն:

Երկու ընկերութիւններուն յանձնարարութիւն կը տրուի գումարին մեծ մասը յատկացնել ժառանգորդներուն, իսկ երեք միլիոն տոլլար եւ յատկացումներէն աւելցած գումարը բարեգործական նպատակներով տրամադրել հայ գաղութին:

New York Life-ի գործողութիւնները կ'ընթանան բնականոն: Լոս Անճելըսի հայերը կը կազմեն յանձնախումբ մը քննելու համար ժառանգորդներուն ներկայացուցած փաստաթուղթերը: Յանձնախումբը կը վաւերացնէ ԱՄՆ-էն, Հայաստանէն, Ֆրանսայէն, Լիբանանէն եւ այլ երկիրներէ ներկայացուած դիմումներուն 44%-ը:

AXA-ի գործողութիւնները, սակայն, կը պսակուին փտածութեան յայտնաբերումով: Այս փտածութիւնը կը վաւերագրեն *Լոս Անճելըս Թայմս*ի երկու հետախուզող լրագրողներ՝ Հարիէթ Ռայըն եւ Մաթ Համիլթըն, 2022 Մարտ 23-ին հրապարակելով ահազդու յօդուած մը՝ 'A 'blood money' betrayal: How corruption spoiled reparations for Armenian genocide victims', (https://www.latimes.com/california/story/2022-03-23/fraud-los-angeles-cheated-armenian-genocide-victims):

Ապրիլ 1-ին, *Լոս Անճելըս Թայմս*ի կայքէջին վրայ կը տեղադրուի յօդուածին արեւելահայերէն թարգմանութիւնը՝ կատարուած Աստղիկ Յակոբեանի կողմէ (https://www.latimes.com/california/story/2022-04-01/դավաճանություն-և-արյան-փող-թե-ինչպես-խարդախությունը-լոս-անջելեսում-խաբեց-հայոց-ցեղասպանության-զոհերին): Նոյնպէս Ապրիլ 1-ին, *Armenian Life* ամերիկահայ կայքը կը տեղադրէ անոր արեւմտահայերէն թարգմանութիւնը՝ կայքի խմբագիր Աբօ Ջափարեանի կողմէ (http://www.armenianlife.com/2022/04/01/արեան-փողի-դաւաճանութիւն-ինչպէս-կո/): Ստանալով *Թայմս*ի արտօնութիւնը, Հայաստանի *Հետք* հետախուզական կայքը Ապրիլ 9-ին կը վերահրապարակէ Յակոբեանի թարգմանութիւնը (https://hetq.am/hy/article/143231):

*Թայմս*ի հետախուզութիւնը բաւական երկար է՝ մանրամասն փաստագրութիւններով: Պիտի բաւարարուիմ ընդհանուր դրոյթներու ակնարկումով:

AXA-ն ֆրանսական ապահովագրական հսկայ անդրազգային ընկերութիւն մըն է, որուն գլխաւոր գրասենեակը կը գտնուի Փարիզ: Ըստ համաձայնութեան եւ դատական որոշումներուն, դիմորդներուն իրաւասութիւնը պիտի քննուի Փարիզի մէջ՝ երեք ֆրանսահայ ականաւոր դէմքերու կողմէ: Նախքան ֆրանսահայ յանձնախումբին կազմութիւնը, Քապաթէք, Եղիայեան եւ Կիրակոս վաւերացումի ընթացքին կարեւոր մասերը կը հաստատեն Լոս Անճելըսի մէջ, կարգաւորումի վերակացու (դիմումներու ընթացքի համակարգող) կարգելով դատարանի թարգմանիչ մը՝ Բարսեղ Գարթալեան [նախկին աղեքսանդրահայ երգիչ, դերասան, Տիգրան Երկաթի հասարակական գործիչ, ապա՝ Հ.Բ.Ը.Մ.ի եւ Թէքէեան Մշակութային Միութեան ղեկավարներէն, Արեւմըտեան Թեմի մօտիկ անձնաւորութիւն, Ա.], անոր յանձնարարելով կազմել անձնակազմ մը եւ սկսիլ գործողութիւնները որոշեալ գրասենեակի մը մէջ: Մաքրագործումէն ետք է որ ընդունուած դիմումները պիտի ղրկուին Փարիզի յանձնախումբին՝ վերջնական վաւերացումի համար, քանի որ ըստ համաձայնութեան, Փարիզի յանձնախումբի վաւերացումին վրայ է որ ֆրանսական AXA-ն պիտի կատարէ յատկացումները:

Փարիզի յանձնախումբին համար գրեթէ անկարելի կը դառնայ 9 հազար քիլոմեթր հեռաւորութեան վրայ հետեւիլ եւ իրազեկ դառնալ նախնական գործունէութեան: Արդիւնքը կ'ըլլայ այն՝ որ Լոս Անճելըսի գրասենեակը անկանոն հիմքի վրայ կ'ընդունի դիմումնագիրներուն միայն 8%-ը: 13,856 դիմումներէն 12,795-ը կը մերժուին:

Կը մերժուին անձեր՝ որոնք բոլոր փաստաթուղթերը ներկայացուցած են ապահովագրեալի օրինաւոր ժառանգորդները ըլլալու:

Երկուորեակ քոյրեր եւ իրենց եղբայրը Հայաստանէն կը ղրկեն նոյն փաստաթուղթերը պարունակող երեք դիմումնագիրներ, կ'ընդունուի միայն քոյրերէն մէկը:

Վեց զարմիկներ կը ղրկեն միեւնոյն թուղթերը, կ'ընդունուին երեքը:

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ԱՏԵԱՆՈՒՄ ԸՆԴԳԾՈՒԵՑ ԼԱՉԻՆԻ ՄԻՋԱՆՑՔԻ ՓԱԿ ԼԻՆԵԼԸ. ՎԱՐՉԱՊԵՏ

Լեռնային Ղարաբաղում հումանիտար ճգնաժամի վերաբերեալ Օգոստոսի 17-ի ՄԱԿ-ի Անվտանգութեան Խորհրդում տեղի ունեցած քննարկումն ամփոփելով «կարող ենք արձանագրել հետեւեալը. առաջին՝ միջազգային բարձրագոյն ատեանում ընդգծուեց Լաչինի միջանցքի փակ լինելը», Օգոստոսի 18-ի կառավարութեան նիստի ժամանակ յայտարարեց Հայաստանի վարչապետը:

«Իհարկէ, Հայաստանի հանրութեանը կարող է տարօրինակ թուալ, որ սա արձանագրում եմ որպէս Անվտանգութեան Խորհրդում տեղի ունեցած քննարկման արդիւնք, բայց չպէտք է մոռանալ, որ Ադրբէջանը անընդհատ եւ շարունակաբար պնդում է, թէ Լաչինի միջանցքը փակ չէ», - ընդգծեց Նիկոլ Փաշինեանը:

«Երկրորդ՝ ՄԱԿ-ի Անվտանգութեան Խորհրդում տեղի ունեցած քննարկումը հաստատեց Լեռնային Ղարաբաղում հումանիտար ճգնաժամի առկայութիւնը եւ այն, որ Լեռնային Ղարաբաղի 120 հազար բնակչութեան կեանքն ու անվտանգութիւնը դրուած են կասկածի տակ», - շարունակեց վարչապետը:

«Երրորդ՝ ընդգծուեց, որ Արդարադատութեան Միջազգային Դատարանի որոշումը Լաչինի միջանցքով անձանց, տրանսպորտային միջոցների եւ բեռների՝ երկու ուղղութիւններով անխափան տեղաշարժն ապահովելու վերաբերեալ Ադրբէջանի կողմից չի կատարուել», - ասաց Փաշինեանը:

«Այժմ կարող ենք արձանագրել, որ միջազգային բարձրագոյն ատեանում ճշմարտութիւնը Լաչինի միջանցքի ապօրինի արգելափակման եւ դրա հետեւանքով Լեռնային Ղարաբաղում հաստատուած հումանիտար ճգնաժամի վերաբերեալ բարձրաձայնուած է:

«Նաեւ միջազգային հանրութեան կողմից հաւաքական կոչ է հնչել Ադրբէջանին՝ վերացնել Լաչինի միջանցքի ապօրինի արգելափակումը», - յայտարարեց Հայաստանի վարչապետը:

ԱՐՑԱԽ

# ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏԸ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ Է ԼԱՒՐՈՎԻ ԱՌԱՋԱՐԿԻՆ

Արցախի ԱԳՆ-ը պատասխանել է ռուսական *Կոմերսանտ* պարբերականում Լաչինի միջանցքի շուրջ իրավիճակի յանգուցալուծման բանակցութիւններին վերաբերող արտահոսքին, ըստ որի, Ռուսաստանի ԱԳ նախարար Սերգէյ Լաւրովի առաջարկով իբրեւ թէ պայմանաւորուածութիւն է ձեռք բերուել Կարմիր Խաչի Միջազգային Կոմիտէի միջոցով Աղդամով օգնութիւն տեղափոխել Արցախ, իսկ դրանից 24 ժամ յետոյ բացել Լաչինի միջանցքը, սակայն Ստեփանակերտը պնդել է երկու ճանապարհների միաժամանակեայ բացման, եւ Աղդամով ադրբէջանական ծագման Արցախ մուտք գործելու արգելքի վրայ, ինչի պատճառով պայմանաւորուածութիւնը չի կայացել: Այս առնչութեամբ Արցախի ԱԳՆ-ն յայտարարել է.

«Ադրբէջանի կողմից Լաչինի միջանցքի անօրինական արգելափակման պատճառով առաջացած սուր հումանիտար ճգնաժամի յանգուցալուծման հարցում Արցախի Հանրապետութիւնը միշտ ունեցել եւ շարունակում է ունենալ հետեւողական դիրքորոշում: Այդ դիրքորոշումը հիմնուած է ինչպէս 2020 թ. Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեան վրայ, որի 6-րդ կէտը յստակ կերպով նախատեսում է Լաչինի միջանցքի գործունէութեան պարամետրերն ու կանոնակարգը, այնպէս էլ՝ միջազգային հումանիտար իրաւունքի սկզբունքների վրայ:

«Այս համատեքստում ցանկացած նախաձեռնութիւն, որը Լաչինի միջանցքի օգտագործումը, այն էլ ծայրաստիճան սահմանափակ ռեժիմով կապում է այլ հարցերի եւ այլընտրանքային երթուղիների հետ, այդ թւում նաեւ՝ Աղդամով, իրականում հանդիսանում է Ադրբէջանի կողմից Լաչինի միջանցքի

↳ 4

# ԽՄԲԱՎԱՐ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԸ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

1953-ին Փարիզի Սիփան-Կոմիտաս երգչախումբին խմբավարութիւնը կը ստանձնէր եգիպտահայ Կարպիս Ափրիկեան (ծն. 1926, Աղեքսանդրիա): 47 տարի վարելէ ետք, 2009-ին ան երգչախումբին ղեկը կը փոխանցէր ուրիշ եգիպտահայու մը՝ Հայկ Սարգիսեանին (ծն. 1955, Գահիրէ):

Երկու եգիպտահայերը, արդարեւ, այնտեղ կը հասնէին բոլորովին տարբեր անցեալէ մը սերած: Մինչ Ափրիկեան 27 տարեկան էր երբ կը հեռանար Եգիպտոսէն, ունենալով 14 տարուայ եգիպտահայ փորձառութիւն՝ ամբողջապէս ինքնուս, առանց ֆորմալ կրթութեան, եւ շուտով կը ստանձնէր Սիփան-Կոմիտասի պատասխանատուութիւնը, Սարգիսեան Փարիզ կը հաստատուէր 37 տարեկանին (1992), երբ իր ետեւը ունէր Երեւանի Արամ Խաչատրեանի անուան Երաժշտական Ուսումնարանի եւ Կոմիտասի անուան Կոնսերվատորիայի վկայականները, եգիպտահայ Կռունկ ու Գուսան երգչախումբերու տասնամեայ գործունէութիւն մը, ինչպէս նաեւ Փարիզի Գողթան երգչախումբի շուրջ 17-ամեայ փառաւոր ուղի մը եւ բազմաթիւ այլ գործունէութիւններ, իսկ Սիփան-Կոմիտասի պատասխանատուութիւնը կը ստանձնէր 54 տարեկանին՝ Փարիզ բնակելէ 17 տարի ետք:

Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի շրջանը որոշ չափով ուսումնասիրուած է(1), մինչդեռ Ափրիկեանինը թաղուած կը մնայ մամուլին մէջ:

Ստորեւ փորձ մըն է ամփոփելով մամուլի տեղեկութիւնները, ուրուագծել Ափրիկեանի եգիպտահայ շրջանի գործունէութեան գլխաւոր կէտերը:

**Նախամուտք**

Կոփուած Դաշնակցական, Ափրիկեան 1939-ին՝ 13 տարեկանին, Դաշնակցական Հայ Արիներու Խումբի անդամ էր, 1941-ին՝ Խումբին փոխ-առաջնորդը, նոյն տարին՝ կուսակցական ընկեր:

Եգիպտոսի մէջ, իր երաժշտական ասպարէզը կը սկսի եւ կը հասուննայ կուսակցութեան Աղեքսանդրիոյ մասնաճիւղի միաւորներուն ընդմէջէն, խմբավարական թեքնիքը ձեռք բերելով կենդանի փորձառութեան վրայ, առանց ֆորմալ կրթութեան: Կուսակցութեան եւ անհատի յարմարաւէտ փոխյարաբերութեան կատարեալ նմոյշ մը:

Իր սկզբնաւորութիւնը եղած է երգով, երբ 13 տարեկանին մեներգած է Երուանդ Ալեքսանեանի Քնար Երգչախումբ-Նուագախումբի (Յառաջդիմասէրէն հովանաւորեալ) նուագահանդէսին:

1945-էն (19 տարեկան) սկսեալ խմբավարած է Աղեքսանդրիոյ Յառաջդիմասէրի անդամներէն բաղկացած երգչախումբեր, 1948-ին կազմած է Երիտասարդաց Միութեան Երգչախումբը (Յառաջդիմասէրի)՝ զոր վարած է մինչեւ 1949, 1950-ին կազմած-վարած է Յառաջդիմասէրի Երգչախումբ-Նուագախումբը, 1952-1953՝ Համազգային Երգչախումբը:

1949-ին Յառաջդիմասէր կազմակերպած է Ափրիկեանի առաջին անհատական ձեռնարկը՝ *Հեքիաթ* օփերայի բեմադրութիւնը, ուր ան ստանձնած է երաժշտութեան պատասխանատուութիւնը՝ մշակելով օփերայի նիւթն ու երաժշտութիւնը, ղեկավարելով նուագախումբն ու երգչախումբը:

Ափրիկեանի անդրանիկ խմբավարական համերգը կայացած է իր կազմած Համազգային Երգչախումբին հետ՝ 1952 Մայիս 4, Աղեքսանդրիոյ Մոհամմատ Ալի թատերասրահին մէջ, նուագախումբի մասնակցութեամբ:

1941-ին սկսած է մարզել Պօղոսեան Ազգային Վարժարանի երգչախումբը, 1943-1953-ին եղած է դպրոցի երաժշտութեան դասատուն՝ յաջորդելով Աշոտ Պատմագրեանին:

1953-ին, Դաշնակցութեան Աղեքսանդրիոյ մասնաճիւղի նիւթական աջակցութեամբ մեկնած է Փարիզ երաժշտական կրթութիւն ստանալու համար, հեռանկար դրուելով Եգիպտոս վերադառնալ եւ կենդանացնել եգիպտահայ երաժշտական կեանքը: Ափրիկեան երբեք չի վերադառնար Եգիպտոս:

**Բացատրական**

Քանի որ Ափրիկեանի երաժշտական գործունէութեան գլխաւոր մասը կայացած է կուսակցական ծիրէն ներս, յօդուածիս առաջին եւ գլխաւոր մասը պիտի տեղադրեմ «Կուսակցական միաւորներէն ներս» վերտառութեան տակ, զայն բաժնելով հինգ ենթամասերու՝ «Սկզբնական շրջան (1939-1949)», «*Հեքիաթ* օփերա եւ առաջին անհատական ձեռնարկ (1949)», «Յառաջդիմասէրի Երգչախումբ-Նուագախումբ (1950)», «Համազգային Երգչախումբ (1952-1953)» եւ «Այլ գործունէութիւններ (1950-1953)»:

Ասոր պիտի յաջորդէ Պօղոսեան Ազգային Վարժարանի գործունէութիւնը եւ ապա մեկնումը Եգիպտոսէն:

Պիտի աւելցնեմ «Ընդհանուր ակնարկներ»-ը, փորձելու համար գնահատել Ափրիկեանի երգչախմբային նուագացանկը եւ իր սեփական ստեղծագործութիւնները:

* * *

## Ա. ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՄԻԱՒՈՐՆԵՐԷՆ ՆԵՐՍ

### 1. ՍԿԶԲՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ (1939-1949)

**Երգ**

Գեղեցիկ ձայնով դեռահաս-պատանի մը, Ափրիկեան 13 տարեկանին մեներգներով իր մասնակցութիւնը կը սկսի բերել Աղեքսանդրիոյ հայկական կուսակցական ձեռնարկներուն:

Առաջին արձանագրուած ելոյթը կը կայանայ Հայ Կարմիր Խաչի նուագահանդէսին՝ 1939 Յունուար 21, Գահիրէի Լիսէ Ֆրանսէի սրահ, որուն գլխաւոր մասնակիցն էր Աղեքսանդրիայէն հրաւիրուած Երուանդ Ալեքսանեանի Քնար Երգչախումբ-Նուագախումբը(2): Ափրիկեան կ՚երգէ Ալեքսանեանի դաշնաւորած *Պետոյի յիշատակին* երգը: «Փոքրիկն Ափրիկեանի երգը (*Պետոյի երգը*) լսուեցաւ հաճոյքով ու հետաքրքրութեամբ», նշեց *Յուսաբեր*(3):

Նուագահանդէսը՝ որոշ փոփոխութիւններով, երեք ամիս ետք (1939 Ապրիլ 30) կը կրկնուի Աղեքսանդրիա, Լիսէ Ֆրանսէի Սրահ, ուր Ափրիկեան կը կատարէ նոյն երգը(4):

1939 Փետրուար 5, Աղեքսանդրիոյ Կամք, Հայ Արիներու Գ. Խումբի հանդէս-երեկոյթ: Կը զուգերգեն Հայ Արիներու Խումբի անդամներ Ափրիկեան եւ Նուպար Թընկըրեան, որ «ուշադրութեան արժանի» դարձաւ: Կը ներկայացուի *Արջն ու գիւղացին* հեքիաթը՝ օփերէթի վերածուած Շաւարշ Փափազեանի(5) կողմէ, որ նաեւ դերակատարներուն մարզողը եւ ներկայացումի վարիչն էր: Գիւղացիի գլխաւոր երգային-խաղարկային դերը կը յանձնուի Ափրիկեանին, որ «անմրցելի էր»(6):

1939 Դեկտեմբեր 24, Աղեքսանդրիոյ Յառաջդիմասէրի սրահ, Հ.Յ.Դ. օր, կը մեներգէ *Ալագեազը*(7):

1941 Մարտ 30, Յառաջդիմասէր, գեղարուեստական երեկոյ կազմակերպութեամբ Հ.Յ.Դ. Երիտասարդաց Միութեան պատանեկան Մհեր խումբին: Ընկ. Ափրիկեան կը մեներգէ *Հովերն առան*(8):

1941 Օգոստոս 10, Գահիրէի Էզպէքիէ թատրոն, նուագահանդէս ի նպաստ Աղեքսանդրիոյ աղէտեալներուն, կազմակերպութեամբ Գահիրէի Հայ Կարմիր Խաչին, մասնակցութեամբ Երուանդ Ալեքսանեանի Քնար Երգչախումբ-Նուագախումբին: Ալեքսանեանի մշակումով *Պետոյի յիշատակին* եռերգը կ՚երգեն Հ. Զիթճեան, Վ. Յարութիւնեան եւ Ափրիկեան, վերջինս փոխարինելով Բ. Զէքիճեանին, որ հիւանդութեան պատճառով չէր կրցած ներկայ գտնուիլ: Յետոյ Ափրիկեան կը մեներգէ Ռոմանոս Մելիքեանի *Սեւ կաքաւիկը*, «այնքան հարազատութեամբ ու քաղցրութեամբ, որ հասարակութիւնը խանդավառ ծափերով կրկնութիւնը պահանջեց: Փոքրիկ երգիչը պարզութեամբ ու համեստութեամբ, անգամ մը եւս երգեց, նոյն վայելքը պատճառելով բոլորին»: Նոյն նուագահանդէսին չորս մեներգներով ելոյթ կ՚ունենայ Գոհարիկ Խաչատուրեան՝ ապագայ Գոհար Գասպարեանը(9):

1941 Հոկտեմբեր 26, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. օր: «Ընկեր. Կ. Ափրիկեան գեղեցկօրէն մեներգեց *Հովերն առան*»(10):

1942 Յունիս 14, Յառաջդիմասէր, Մայիս 28-ի տօնակատարութիւն: Ընկ. Ափրիկեան կը մեներգէ Կոմիտաս Վարդապետի *Կռունկը*, դաշնակի նուագակցութեամբ ընկերուհի Սեդա Մխիթարեանի(11):

1944 Սեպտեմբեր 28, Յառաջդիմասէր, վիճաբանական երեկոյթ: Գեղարուեստական բաժինին մէջ Ափրիկեան կը մեներգէ Շուպերթի *Աւէ Մարիան*(12):

(Շար. 1)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. «Հայկ Սարգիսեան. խմբավար եւ երաժշտահան», *Ծիծեռնակ*, երաժշտական եռամսեայ, Գահիրէ, Ե. տարի, թիւ 2 (18), Ապրիլ 2005, էջ 3-28: *Խմբավար եւ երաժշտահան Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան ուրուագիծ (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, *Ջահակիր*, Յաւելուած Է. Գահիրէ, 2017:

2. *Յուսաբեր*, 14 Յունուար 1939:

3. Անդ: Ա. Ա., «Հ. Կ. Խաչի նուագահանդէսը», *Յուսաբեր*, 25 Յունուար 1939:

4. *Յուսաբեր*, 21 Ապրիլ 1939: Թղթակից, «Քնարի մեծ նուագահանդէսը», *Յուսաբեր*, 6 Մայիս 1939:

5. Եգիպտահայ երաժիշտ եւ խմբավար, յետագային՝ Ղեւոնդ Քհնյ. Փափազեան, Աղեքսանդրիոյ Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցիի երկարամեայ դպրապետ:

6. Հայ-Արի, «Կամքի Հայ Արիներու Գ. խումբի հանդէս-երեկոյթը», *Յուսաբեր*, 10 Փետրուար 1939:

7. *Յուսաբեր*, 19 Դեկտեմբեր 1939: Հ. Ա., «Հ.Յ.Դ. օրը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 4 Յունուար 1940:

8. *Յուսաբեր*, 25 Մարտ 1941:

9. *Յուսաբեր*, 9 Օգոստոս 1941: Ա., «Հ. Կ. Խաչի նուագահանդէսը», *Յուսաբեր*, 16 Օգոստոս 1941:

10. Թղթակից, «Հ.Յ.Դ. օր Աղեքսանդրիա», *Յուսաբեր*, 5 Նոյեմբեր 1941:

11. *Յուսաբեր*, 10 Յունիս 1942: Թղթակից, «Մայիս 28-ի տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 26 Յունիս 1942:

12. *Յուսաբեր*, 22 Սեպտեմբեր 1944:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԱԶԳԱՅԻՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՀԱՄԱԺՈՂՈՎԸ՝ ՍՓԻՒՌՔԻ ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐԻՆ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ ԿԱՊԵԼՈՒ ՕՂԱԿ. ՍԻՆԱՆԵԱՆԸ ԱՄՓՈՓԵԼ Է ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

Սփիւռքի երիտասարդների հայրենադարձութեանը նպաստելու նպատակով Հայաստանի Սփիւռքի գործերի գլխաւոր յանձնակատարի գրասենեակը իրականցրել է Ազգային Երիտասարդական Համաժողովը:

Սփիւռքի գործերի գլխաւոր յանձնակատար Զարեհ Սինանեանի համոզմամբ՝ եթէ Սփիւռքի երիտասարդները ընդունեն, որ Հայաստանը մի երկիր է, որտեղ իրենք ցանկանում են ապրել, նրանց ֆիզիկական հայրենադարձութիւնը կը դառնայ ժամանակի հարց:

«Նման համաժողով անցկացնելու միտքը առաջացել է նախորդ տարի Համահայկական Գագաթնաժողովի ժամանակ, քանի որ, բնականաբար, այնտեղ օրակարգը չէր ձեւաւորուել երիտասարդական խնդիրների շուրջ: Նաեւ, հաշուի առնելով, որ այն անցկացւում էր Հոկտեմբերին, բնական էր, որ երիտասարդական մի շարք կազմակերպութիւններ, ուսանողական միութիւններ հնարաւորութիւն չունէին մասնակցելու: Այս մասով մի շարք առաջարկներ եւ բողոքներ լսեցինք մեր գագաթնաժողովի եւ տարբեր համայնքային այցերի ընթացքում, ինչի արդիւնքում որոշեցինք եւ սկսեցինք համաժողովի աշխատանքները», - այս մասին Օգոստոսի 8-ին կայացած ասուլիսի ընթացքում ասաց Զարեհ Սինանեանը:

Նա ընդգծեց, որ համաժողովի նախապատրաստական աշխատանքներում, այդ թւում՝ օրակարգի մշակման եւ բանախօսների ընտրութեան գործընթացներում ներգրաւուած են եղել Հայաստանի եւ Սփիւռքի տարբեր շրջանակները ներկայացնող երիտասարդներ: Գրասենեակի փորձագէտներից եւ 12 երկրների երիտասարդներից կազմուած խորհրդատուական մարմինն ամիսներ շարունակ աշխատել է համաժողովի օրակարգային հարցերի մշակման ուղղութեամբ:

«Արդիւնքում՝ ունեցանք մի օրակարգ, որը շատ բազմազան էր՝ իր մէջ ներառելով ազգային անվտանգութեան խնդիրներից մինչեւ հայկական շահերի պաշտպանութիւն, կրթութիւն, մշակոյթ, երիտասարդական կազմակերպութիւնների զարգացում, Հայաստան-Սփիւռք գործակցութիւն եւ այլն», - նշեց Սինանեանը:

Համաժողովին մասնակցում էին աւելի քան 50 երկրներից 18-35 տարեկան 600 սփիւռքահայ երիտասարդներ. համայնքային, գիտական, կրթական, մշակութային եւ այլ շրջանակներից ↳ 3

## ՄԱԿ ԱԽ ՆԻՍՏԻ «ՀԱԿԱՌԱԿ ԵՐԵՍԸ»

**ՅԱԿՈԲ ԲԱԴԱԼԵԱՆ**

ՄԱԿ ԱԽ Օգոստոսի 17-ի արտահերթ նիստը, որտեղ քննարկւում էր Լաչինի միջանցքի եւ Արցախի շրջափակման հարցը, Հայաստանի հանրութեան շրջանում առաջացրել է նկատելի հիասթափութիւն, որոշակի յուսահատութիւն: Դա ամենավատն է, որ կարող է տեղի ունենալ հանրութեան հետ, առաւել եւս՝ Արցախում: Այսօր հայկական հանրային օրգանիզմին, հետեւաբար նաեւ հայկական պետականութեանը, ու առաւել եւս Արցախում դիմակայող եւ լուծումների սպասող հանրութեանը պէտք է լիովին հակառակ տրամադրուածութիւն: Ի վերջոյ, դիւանագիտական աշխատանքի յաջողութիւնը էապէս կախուած է նաեւ Արցախի դիմակայունութիւնից, ինչը իր հերթին կախուած է հանրութեան տրամադրուածութիւնից, որը թոյլ կը տայ նաեւ առաւել բարձր արդիւնաւէտութեան հասցնել ներքին, եղած ռեսուրսների տնօրինումը, կազմակերպումը, բաշխումը, այդ կերպ նաեւ բարձրացնելով դիւանագիտական արդիւնաւէտութեան հնարաւորութիւնը: Այդ իմաստով, ՄԱԿ ԱԽ նիստն իր բովանդակութեամբ եւ արդիւնքով ամենեւին ոգեւորող չէր, սակայն արժէ գուցէ իրավիճակը դիտարկել նաեւ փոքր ինչ այլ դիտանկիւնից, այսպէս ասած՝ «հակառակ երեսից», որտեղ առաջիններից մէկը նշմարւում է թերեւս այն, որ արտահերթ նիստում կարծես թէ ականատես չեղանք աշխարհաքաղաքական յամենայն դէպս բաց դիմակայութեան՝ Արեւմուտքի եւ Ռուսաստանի, կամ ԱՄՆ եւ Ռուսաստանի միջեւ:

Անկասկած է, որ ՄԱԿ ԱԽ նիստը, եւ ընդհանրապէս միջազգային որեւէ հարթակ, այսօր առնուազն տողատակում, համատեքստում, կուլիսներում պարունակում է այդ դիմակայութիւնը, կրում է դրա ազդեցութիւնը, սակայն ուշագրաւ էր, որ ՄԱԿ ԱԽ նիստում չկար դրա բաց դրսեւորում: Սա իհարկէ չպէտք է դառնայ հերթական պատրանքային սպասումների առիթ, չպէտք է բերի հեռուն տանող եզրայանգումների, թէ խոշոր դերակատարների միջեւ կարող է ձեւաւորուել համատեղ աշխատանքի, այլ կերպ ասած՝ դէ իւրէ, թէ դէ ֆակտօ Մինսկի խմբի համանախագահութեան ձեւաչափի վերականգնման կամ վերստեղծման իրական ընդհանուր մտայնութիւն եւ աշխատանք: Բայց, կրկնեմ, հանգամանքը, որ նրանք առնուազն ձեռնպահ մնացին Արցախի ապաշրջափակման թեմայով ՄԱԿ ԱԽ նիստը միմեանց միջեւ բաց դիմակայութեան, բանավէճի, պոլեմիկայի դաշտի վերածելուց, ուշադրութեան արժանի հանգամանք է եւ կարող է լինել Հայաստանի դիւանագիտական աշխատանքի շարունակութեան դաշտ: Իսկ հանգամանքը ուշագրաւ է յատկապէս այն իրողութեան ֆոնին, որ արձանագրուել է Յուլիսի 8-ին եւրոպական մայրաքաղաքներից մէկում, երբ ուկրաինական պատերազմով պայմանաւորուած երկարատեւ դադարից յետոյ մէկտեղ հաւաքուել են ամերիկացի եւ ռուս համանախագահները՝ Բոնոն եւ Խովաեւը, նաեւ Եւրամիութեան ներկայացուցիչը, ու քննարկել հայ-ադրբէջանական հակամարտութիւնում հաղորդակցութիւն պահպանելու հետ կապուած հարցեր:

↳ 4

2 ↳

### ԱԶԳԱՅԻՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՀԱՄԱԺՈՂՈՎԸ՝ ...

ունէինք 20 մասնակիցներ Լեռնային Ղարաբաղից, ովքեր միացան առցանց, եւ 50 մասնակից Հայաստանից եւ մօտ 100 բանախօս 15 երկրներից:

«Մեր նպատակներից էր, ինչը, յոյս ունեմ, իրագործուեց, որ կարողանայինք աւելի իրատեսական պատկերացում ստեղծել Հայաստանի այսօրուայ խնդիրների եւ իրավիճակի մասին ու Սփիւռքի մեր երիտասարդներին ներկայացնել Հայաստանում առկայ հնարաւորութիւնները: Միասին քննարկեցինք հայրենադարձութեան խնդիրներն ու հնարաւորութիւնները, ապագայ համագործակցութիւնների նոր ճանապարհները, ինչպէս նաեւ համագործակցութիւնն Սփիւռքի տարբեր համայնքների երիտասարդների միջեւ: Ամէն ջանք գործադրեցինք, որպէսզի երիտասարդները կարողանան ձեւաւորել աւելի ցանցային համագործակցութիւն ե՛ւ մեզ հետ, ե՛ւ միմեանց միջեւ», - հաւաստեց Սփիւռքի գործերի գլխաւոր յանձնակատարը:

Սինանեանը նշեց, որ մօտ ապագայում ակնկալում են մասնակիցների կողմից նոր առաջարկներ, որոնք ծնուել են այս համաժողովից: Ինչպէս նաեւ անցկացնելու են տարբեր երիտասարդական խմբերի հետ առցանց հանդիպումներ, որպէսզի նրանց կարծիքների հիման վրայ կարողանան ճիշտ կողմնորոշուել յետագայ անելիքների հարցում:

«Շատ դիմումներ ունենք մեր մասնակիցներից, որ նման համաժողովներ տեղի ունենան ամէն տարի: Սփիւռքի երիտասարդների ցանկութիւնը միշտ շատ մեծ է եղել՝ տարբեր ձեւաչափերով աշխատել յանուն իրենց պատմական Հայրենիքի, բայց այս պահին՝ համաժողովից յետոյ, իրենք աւելի իրատեսական պատկերացում ունեն, թէ ինչ կարելի է անել, եւ ինչ հնարաւոր չէ անել», - ասաց նա:

Սինանեանը նշեց, որ համաժողովի ընթացքում Սփիւռքի երիտասարդներին ամենայուզող հարցերից էին անվտանգային խնդիրները, որոնք քննարկուել են. «Դրանք արժանացան ամենաշատ ուշադրութեանը. երիտասարդներին յուզում էր, թէ իրենք ինչ ունեն անելու այս իրավիճակում, եւ մենք բոլորս ապագայում ակնկալում ենք, որ այդ ուղղութեամբ գործուն քայլեր կը տեսնենք», - ընդգծեց Սինանեանը:

**ԽՈՀԵՐ**

## ԱՏՐԻՆԷ ՏԱՏՐԵԱՆ ԿԸ ԽՕՍԻ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

1958 Ապրիլ 17-ին, սփիւռքահայ անուանի արձակագրուհի, բանաստեղծուհի եւ թատերագրուհի Ատրինէ Տատրեան կը բանախօսէ Գահիրէի Հայ Գեղարուեստասիրաց Միութեան մէջ:

Նիւթն էր՝ *Հայ գրողին ողբերգական վիճակը Սփիւռքի մէջ*, զոր *Արեւ* օրաթերթ (19 Ապրիլ 1958) անմիջապէս կը համառօտագրէ իր էջերուն մէջ: Ներկայ «Խոհեր»-ը ամբողջապէս հիմնուած է այս համառօտագրութեան վրայ:

Հայ գրողի ողբերգական վիճակը Տատրեան բաժնած է երեք մասերու՝ նիւթական, բարոյական եւ կուսակցական:

**Նիւթական**

Միտք բանին՝ հայերէն գրողը Սփիւռքի մէջ չի կրնար ապրուստը ապահովել գրելով: Մեծահարուստը դրամ կու տայ եկեղեցի կառուցելու՝ իր անունը փառաւորելու համար, դրամ չի տար հայերէն գիրք տպելու: Հայերէն գիրքը երբ տպագրուի՝ չի վաճառուիր, քանի որ հայ ընթերցողը կը նախընտրէ գնել օտար գիրք:

Տատրեան միաժամանակ յառաջ կը բերէ քանի մը իրերահիւսուած հարցեր:

Նախ, հարուստի բազմաչարչար տիպարը: Մինչեւ այսօր անընդհատ կը կրկնենք նոյն բանը՝ թէ հարուստը դրամ չի տար հայ մշակոյթի համար, կամ հարուստը դրամ չի տրամադրեր հայկական արուեստը օտարին ներկայացնելու եւ միջազգային բեմահարթակներէն տարածելու համար, կամ հարուստը դրամ չի տար Հայաստանի բանակին՝ զայն հզօրացնելու համար, եւլն., եւլն.:

Եկէք բառերը աւելի ճշգրիտ գործածենք: Կ՚ապրինք դրամատիրութեան շրջանը: Ընդհանուր անուանումի տակ հարուստ կոչածնիս դրամատէրն է: Իսկ դրամատէրը ունի գործելու ճշգրիտ մեթոտաբանութիւն: Ունի «բարեգործութեան» ծրագրուած կարգ, որուն արդիւնքով պէտք է պայծառանայ իր դէմքը այնպէս՝ որ բազմանայ իր շահոյթը: Ոչ մէկ դրամատէր (հարուստ) պիտի շեղի այս սկզբունքէն:

Դարձեալ խօսքը վաճառքի մասին է՝ դրամատիրական աշխարհին մէջ: Դրամ կայ հարցին մէջ: Շահութաբեր դրամ ստանալու համար սպառողական շուկայ է պէտք, տիրապետում այդ շուկային վրայ զանգուածային միջոցներով՝ հիմնուած ազդի եւ շուկայացումի (marketing) օրէնքներուն վրայ: Գիրքը՝ գոհացուցիչ եկամուտ բերելու համար, պիտի ենթարկուի դրամատիրական ապրանքի ողջ կացութեան: Մէկ, երկու կամ երեք հարուստի նուիրատուութեամբ չի լուծուիր հարցը: Եթէ նոյնիսկ քանի մը անհատական կարեւոր նուիրատուութիւններ ըլլան, ինչ պիտի ըլլայ ուրիշ գիրքերու ճակատագիրը:

Բոլոր վաճառող հրատարակչատուները շահութաբեր դրամատիրական ձեռնարկութիւններ են՝ Fayard, Cambridge, եւլն.: Գիրքը կը ծախեն այնքան՝ որ շահին իրենք եւ վճարեն գրողին: Եթէ տուեալ գիրք մը ունենայ շուկայական շարունակական յաջողութիւն, հեղինակը կրնայ հանգիստ ապահովել ապրուստը: Արդ, վաճառքի քանակը շատ կարեւոր է: Հիմա եթէ նոյն մակարդակով մտածենք հայ գրողի մասին, ենթադրեալ հայ հրատարակչատուն մը քանի՞ գիրք պիտի ծախէ՝ շահութաբեր ըլլալու եւ գրողին բաւարար վճարելու համար: Մարդու մը ապրուստին անհրաժեշտ գումարը նոյնն է ֆրանսացիին եւ հայուն համար: Երկուքն ալ նոյն չափը կ՚ուտեն: Եթէ աշխարհի մէջ կը գտնուի աւելի քան 300 միլիոն ֆրանսախօս անձ (98 միլիոնը՝ իբրեւ մայրենի լեզու), ուրեմն ֆրանսերէն գիրքի վաճառքի քանակը անհամեմատօրէն աւելի բարձր պիտի ըլլայ հայերէն գիրքէն, երբ հայերուն քանակը աշխարհի մէջ կարելի հաշուել 10 միլիոնէն քիչ մը աւելի, որոնցմէ չեմ գիտեր քանի միլիոնն ալ հայերէն չի խօսիր:

Ուրեմն, կը կարծեմ, որ գիրքի վաճառքէն եկած եկամուտով ապրելու կարելիութիւնը հայ գրողին համար բաւական բարդ խնդիր մըն է:

Տատրեանի եւ իմ խօսքս դրամատիրական բուրժուական հասարակարգի մասին է որուն մէջ կ՚ապրինք երկու դար շարունակ: Ազատական ընկերվարական համակարգ մը (այժմ գոյութիւն չունեցող, բայց շատ դիւրութեամբ կիրարկելի՝ եթէ մեզմէ իւրաքանչիւրս ներքնապէս համոզուի համակեցային համակարգի սկզբունքին) բոլորովին ուրիշ արդիւնքներ պիտի ունենար:

Արդ, կը կարծեմ, Տատրեանի միտք բանին՝ թէ սփիւռքահայ գրողը չի կրնար գրելով իր ապրուստը ապահովել, ճիշդ է, բայց քիչ մը անգործադրելի կը գտնեմ երեւոյթին տուն տուող հարուստի պատճառաբանութիւնը:

Արդարեւ, Տատրեան հիմնարար կարծիք մը կը յայտնէ, երբ կը նշէ հայ ընթերցողին նախասիրութիւնը օտար գրականութեան: Հայ ընթերցողէն աւելի ընդարձակ խնդիր մըն է ասիկա, հայ կարեւոր զանգուածի մը հոգեբանութիւնն է՝ դէպի օտարը, դէպի անգլերէնն ու ֆրանսերէնը: Կայ աւելին. երբեմն հայկականն ու հայերէնը կը դառնուին օտարէն դէպի հայկականի անցումի միջոցով: Այս ուղղութիւնը Սփիւռքի մէջ տիրական, բայց ոչ անպայմանօրէն քանակապէս ամենաշատ, խումբ մը կը ներկայացնէ: Ոչ միայն աւելի դրամ կը յատկացուի հայ մշակոյթը օտարին ներկայացնողներուն, ոչ միայն անգլիագիր հայ գրողները հայերուն կողմէ աւելի գնահատուած են քան հայագիրները, այլեւ, որոշ տեղեր, արաբերէն կամ անգլերէն լեզուով օտարին ներկայացուող գրականութիւնը, բանասիրութիւնն ու պատմագրութիւնը կ՚ընդունուին իբրեւ ինքնին հայ մշակոյթ: Այստեղ արդէն վտանգ կայ: Անոնք, որքան ալ կարեւոր ըլլան, ՀԱՅ մշակոյթ չեն եւ չեն կրնար փոխարինել ՀԱՅ մշակոյթին:

**Բարոյական**

Դժբախտաբար, *Արեւ*ի անանուն համառօտագրողը գրեթէ չ՚անդրադառնար Տատրեանի բարոյական գաղափարին վրայ, բաւարարուելով գրել. «Հայ գրողը, ըստ բանախօսուհին, ո՛չ միայն նիւթապէս չի քաջալերուիր, այլեւ բարոյապէս ալ»: Այսքան: Հետեւաբար, «Խոհեր»-ը կ՚ուզէ արտայայտել իր սեփական մտածումը այս մասին:

Դարձեալ պիտի նախընտրէի ուրիշ բառ գործածել «բարոյական»-ի փոխարէն: Բարոյական գնահատանքը կ՚ենթադրէ ուժային մէկ ուղղութեամբ յարաբերութիւն՝ մէկ անձէ մը կամ հիմնարկէ մը դէպի ուրիշը: Անիկա տակաւին գիտելիքը չի տարածեր, չունի զայն տարածելու ներունակութիւն, այլ գրողին կու տայ արտաքին բաւարարուածութիւն: Մինչդեռ մտաւորականի մը փափաքը պէտք է ըլլայ միտքի շրջանառութիւնը, որ արմատապէս կը բացակայի Սփիւռքի մէջ: Այդ շրջանառութեան թերեւս ամենասովորականը գրախօսականն է: Սփիւռքի սակաւաթիւ գրախօսականներուն գրեթէ մեծամասնութիւնը (շատ քիչ բացառութեամբ) կուսակցութիւն-բարեկամ-ծանօթի սկզբունքով կը կիրարկուին, հետեւաբար, կը սպառին իրենք իրենց մէջ:

Կան նաեւ միտքի շրջանառութեան այլ միջոցներ՝ գրաքննադատութիւն, միտքի մշակում ուրիշի կողմէ, գաղափարի ծանօթագրեալ ներառում ուրիշի գրութեան մէջ, հանրային քննարկում, եւ այլն, որոնք չկան ու չկան Սփիւռքի մէջ:

**Կուսակցութիւն**

Տատրեանի երրորդ կէտն է կուսակցութիւնը: *Արեւ* կը համառօտագրէ. «Իսկ կուսակցական գետնի վրայ, շատ արժէքաւոր գրողներ կ՚արհամարհուին, որովհետեւ այդ կուսակցու-

↳ 4

# ՋԱՀԱԿԻՐ

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ-ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ
## ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, Վարժարանիս 2022-2023 ուսումնական տարեշրջանի Գ. Երկրորդականի Պետական քննութեանց արդիւնքները:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

**Թուաբանական ճիւղ**

Մանուէլ Եուսէֆ Գէորգեան 79.87%

**Գիտական ճիւղ**

Դիա Պերճօ Տէր Ներսէսեան 75.24%

Տանիէլ Սարգիս Ջերտելեան 68.17%

Լորին Լորիս Քէօհնէլեան 65.36%

Ժանօ Ժորժ Սապպաղ 60.36%

**Գրական ճիւղ**

Նատա Րաաֆադ Նասիֆ 67.19%

**Ջերծ արաբական նիւթերէ՝**

**Գիտական ճիւղ**

Դարա Մարիա Հայկ Զաղալանեան 72.58%

Վարժարանի Տնօրէնութիւնը եւ ուսուցչական կազմը ջերմօրէն կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ աշակերտները իրենց յաջողութեան առթիւ:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## 1 «ԱՐԵԱՆ ԴՐԱՄ»-Ի ԴԱՒԱՃԱՆՈՒԹԻՒՆ. ԻՆՉՊԷՍ ՓՏԱԾՈՒԹԻՒՆԸ ԽԱԹԱՐԵՑ...

Սուրիայէն ոմն Զաւէն Հալէպլեան կը ստանայ բոլորէն աւելի՝ 574,425 ամերիկեան տոլար: Ֆրանսայի յանձնախումբը Հալէպի մէջ կը գտնէ Հալէպլեանը եւ կը պարզէ՝ որ ան ո՛չ լսած է AXA-ի մասին, ո՛չ ալ դիմում ղրկած: Կը բացայայտուի, որ Հալէպլեանի մանկական ընկերը՝ Պերճ Պօյաճեան, Լոս Անճելըսի պանքայի մէջ հաշիւ բացած է Հալէպլեանի անունով՝ առանց անոր գիտակցութեան, եւ անոր անունով գրուած կէս միլիոնի չէք մը տեղադրած այնտեղ: Պօյաճեան Պեւերլի Հիլսի փաստաբան մըն է, որ գործած է New York Life-ի դիմումներու խորհուրդին մէջ:

400 հազար տոլարի հինգ չէքեր կը գրուին Աշոտ Մխիթարեանի մը անունով, որ ենթադրաբար կը բնակի Պաղտատ: Արձանագրուած հասցէին Մխիթարեան անունով մարդ չի յայտնաբերուիր: Հասցէին կ՚առաքուի անձ մը, որ կը պարզէ թէ դրացիներէն ոչ ոք ծանօթ է Մխիթարեանին:

Բարսեղ Գարթալեան աւելի քան 300 հազար տոլարի չէքեր կը գրէ իր ազգականներուն անունով, ներառեալ կնոջ եւ զոքանչին:

2010-ին խնդիրը կը դառնայ հանրային: Եղիայեան կը մեղադրէ Քապաթէքն ու Կիրակոսը դրամի մսխումի մէջ անձնական նպատակներով: Ֆրանսահայ յանձնախումբը կու գայ Լոս Անճելըս եւ կը յաջողի յայտնաբերել բազում անկանոնութիւններ: Եղիայեան եւ ֆրանսահայ յանձնախումբը կը սկսին համագործակցիլ, բացայայտելով, ի միջի այլոց, վերոյիշեալները:

Անոնք կը հետախուզեն նաեւ պանքայի գաղտնի հաշիւ մը: Քապաթէք եւ Կիրակոս ֆրանսահայ յանձնախումբին եւ ապա դատաւորին տրամադրած են Pacific Western Bank-ի տեղեկագիր մը, որ ցոյց կու տայ թէ AXA-ի գումարէն մնացած է ընդամէնը 346 հազար տոլար: Իսկ երբ յանձնախումբը կը յաջողի մուտք ունենալ կարգաւորումի դրամական արձանագրութիւններուն, Կիրակոս եւ Քապաթէք դատաւորին կը յանձնեն Comerica Bank-ի երկրորդ հաշիւ մը՝ յաւելեալ երկու ու կէս միլիոն տոլարի, զոր, բնականաբար, նպատակ ունէին իւրացնել:

Աւելի քան մէկ միլիոն 100 հազար տոլար ուղղուած է կեղծ պահանջատէրերու եւ պանքայի հաշիւներու՝ վերահսկուած Պեւերլի Հիլսի փաստաբան Պերճ Պօյաճեանի կողմէ, առանց պաշտօնական դեր ունենալու AXA-ի հարցին մէջ:

Կը մնայ բարեգործութեան յատկացուելիք գումարը: Այդ գումարը, առաւել հատուցումներէն աւելցածը, պէտք էր երթային բարեգործական միութիւններու: Ֆրանսական հիմնադրամ մը՝ որ ենթադրուած էր միլիոններ բաժնել բարեգործութեան համար, երբեք չի հիմնուիր: Շուրջ մէկ միլիոն տոլար յայտնուեցաւ Լոս Անճելըսի Լոյոլա Իրաւաբանական Համալսարանին՝ Կիրակոսի եւ Քապաթէքի ուսումնավայրը: 450 հազար տոլար տրուած է Ֆրանսայի Հայ Առաքելական Եկեղեցիին, որ երբեք տեղ չէ հասած:

Կ՚ընթանան դատեր առանց կտրուկ վճիռներու, կը մերժուին կարեւոր հայցեր, եւ ԱՄՆ շրջանային դատաւոր Քրիսթինա Սնայտըր 2016-ին գործը կը յայտարարէ փակուած: Երկու տարի ետք, Փաստաբաններու Հայկական Միութեան անունով Քապաթէք պարգեւ մը կը շնորհէ Սնայտըրին:

Ա.

## 1 ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏԸ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ Է ԼԱՒՐՈՎԻ ...

վերաբերեալ իր միջազգային պարտաւորութիւնների խախտումն օրինականացնելու եւ այդ երկրի նախագահի կողմից ստորագրուած 2020 թ. Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութիւնը վերանայելու փորձ: Ադրբէջանի կողմից յամառօրէն առաջարկուող նման մօտեցումը կանխամտածուած կերպով խախտում է Արցախի ժողովրդի իրաւունքներն ու նսեմացնում արժանապատուութիւնը, ինչպէս նաեւ հակասում է միջազգային հումանիտար իրաւունքի եւ մարդու իրաւունքների միջազգային իրաւունքի նորմերին:

«Կրկին ընդգծում ենք, որ այլընտրանքային տրանսպորտային երթուղիների օգտագործման վերաբերեալ առաջարկութիւնն Ադրբէջանի քաղաքականութեան մի մասն է՝ ուղղուած իր իսկ հրահրած հումանիտար աղէտի եւ սովահարութեան սպառնալիքի օգտագործմանը որպէս զէնք եւ Արցախի ու նրա ժողովրդի բռնի հպատակեցման միջոց:

«Անհրաժեշտ է նաեւ ընդգծել, որ ադրբէջանական կողմի առաջարկը յանգում է նրան, որպէսզի Լաչինի միջանցքն օգտագործուի բացառապէս Հայաստանում բուժում ստանալու կարիք ունեցող մարդկանց բժշկական տարհանման եւ գուցէ, Արցախից Հայաստան ծայրայեղ սահմանափակ ապրանքների տեղափոխման համար՝ Բաքուի համաձայնութիւնը ստանալուց յետոյ: Հրաժարուելով լիովին ապահովել Լաչինի միջանցքով մարդկանց, տրանսպորտային միջոցների եւ բեռների ազատ ու անվտանգ տեղաշարժը եւ առաջարկելով այլընտրանքային երթուղիներ, ադրբէջանական կողմը հետեւողականօրէն փորձում է կտրել Հայաստանի եւ Արցախի ժողովրդի միջեւ գոյութիւն ունեցող խորը կապերը, նրան զրկել ինքնութիւնից, ինքնաբաւութիւնից ու զարգանալու հնարաւորութիւնից: Տուեալ նախաձեռնութիւնը միտուած է նաեւ Լաչինի միջանցքի հայեցակարգի ապամոնտաժմանը, որը հակամարտութեան համապարփակ, արդար եւ արժանապատիւ կարգաւորման առանցքային տարրն է:

«Աւելորդ չի լինի ընդգծել, որ 2020 թուականի Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեան դրոյթները եւ ՄԱԿ-ի միջազգային դատարանի 2023 թուականի Փետրուարի 22-ի ու Յուլիսի 6-ի որոշումները չեն նախատեսում Ադրբէջանի որեւէ ներկայութիւն Լաչինի միջանցքում կամ մարդկանց, տրանսպորտային միջոցների եւ բեռների երկու ուղղութեամբ տեղաշարժի սահմանափակում: Յատկանշական է, որ Ռուսաստանի ԱԳ նախարարը, գտնուելով Բաքւում, 2023 թուականի Փետրուարի 28-ին հաստատել է, որ Լաչինի միջանցքում հսկիչ-անցակէտերի տեղադրումը եռակողմ յայտարարութեամբ նախատեսուած չէ»:

## 3 ԱՏՐԻՆԷ ՏԱՏՐԵԱՆ ԿԸ ԽՕՍԻ

թեան չեն պատկանիր անոնք. այդպէս եղած է պարագան շատ մը գրագէտներու՝ *Դար մը գրականութեան* մէջ»:

*Դար մը գրականութիւնը*, արդարեւ, ճիգ մըն է կուսակցական *չըլլալու*, եւ այդ *չըլլալու* հանգամանքը կարմիր թելի նման կ՚անցնի ամբողջ երկու հատորներուն մէջէն: Որքա՞ն կարելի է *չըլլալ*, երբ հեղինակի գաղափարական կանխամիտքը եւ տասնամեակներու նախապատրաստութիւնը *ըլլալն* է:

Կուսակցութեան եւ մտաւորականութեան յարաբերութիւններուն, անտեսումներուն, ներառումներուն մասին քանիցս անդրադարձած է *Ջահակիր*: Առայժմ կը բաւէ:

**Վերջին պատգամ**

Տատրեան կ՚աւարտէ բանախօսութիւնը հետեւեալ պատգամով. «Մեր գրողները պէտք է մօտենան ժողովուրդին, բարձր պահելով հանդերձ գեղարուեստական վարպետութիւնը. պէտք է առնեն հասարակական լայն նշանակութիւն ունեցող նիւթեր. պէտք է արտայայտեն արդի մարդուն զգացումներուն եւ մտքերուն աշխարհը. պէտք է զօրաւոր ըլլան գրողներուն կապերը կեանքին հետ»:

Կեանքի ներգրաւուածութեան հարցը կը բարձրացուի այստեղ: Թէեւ չի ճշդուիր՝ մինչեւ ո՞ւր Տատրեան պատրաստ է տանիլ այս ներգրաւուածութիւնը: Պատրա՞ստ է ներգրաւուածութիւնը տանիլ մինչեւ գաղափարական պայքարի՝ յանուն հասարակութեան մտաւոր ազատագրութեան եւ կեանքի բարելաւութեան, թէ ընդամէնը գրականութիւնը դարձնել արտացոլում՝ ժողովուրդի իղձերուն: Ժողովուրդը ներառնել գրականութեա՞ն համար՝ եւ այդպէս ստեղծել բազմակողմանիօրէն պարփակուն գրականութիւն՝ միտքերով եւ պատկերներով հարուստ, թէ գրականութիւն-ժողովուրդ յարաբերութիւնը դիտել փոխներթափանցային հարթակի վրայ:

Թերեւս այս բոլորին մասին արտայայտուած ըլլայ յայտնի գրագիտուհին: Չենք գիտեր:

## 3 ՄԱԿ ԱԽ ՆԻՍՏԻ «ՀԱԿԱՌԱԿ ԵՐԵՍԸ»

Հէնց այդ հանգամանքն էր, ի դէպ մտահոգել նաեւ Ալիեւին, որը օկուպացուած Շուշիում մեդիաֆորումի ժամանակ յայտարարեց, թէ «իրենց հասնում են Մինսկի խմբի համանախագահութեան վերականգնման մասին խօսակցութիւններ», ինչը իրենց համար անընդունելի է: Այդ հեռանկարը՝ ԱՄՆ ու Ռուսաստանի որոշակի համատեղ, թէկուզ հաղորդակցուած աշխատանքի հեռանկարը, Ադրբէջանի համար թերեւս ամենամտահոգիչն է, եւ Բաքուն կ՚անի առաւելագոյնը՝ դրան իր կարողութեան սահմանում խանգարելու համար: Աւելորդ է ասել, որ հայկական կողմի խնդիրը լիովին հակառակն է, եւ ՄԱԿ ԱԽ նիստում վերը նշածս բաց դիմակայութեան բացակայութիւնը թոյլ է տալիս խնդրի ուղղութեամբ աշխատանքի հեռանկարը դիտարկել իրատեսական, որքան էլ իհարկէ մշուշոտ: Որովհետեւ, այստեղ անշուշտ ինքնին այդ երեւոյթն էլ ունի կամ կարող է ունենալ «հակառակ երես», երբ ԱՄՆ ու Ռուսաստանի «հաղորդակցութիւնը» լինի աւելի շուտ ադրբէջանական օրակարգի «հիման վրայ», քան դրա հակակշռման: Բայց, ներկայիս աշխարհաքաղաքական իրավիճակում առաւել եւս, չկան երեւոյթներ եւ իրողութիւններ, որոնք «միաբնոյթ» են, այսինքն պարունակում են լոկ հնարաւորութիւն, առանց լուրջ մարտահրաւէրների: Ըստ այդմ, այստեղ առաւել եւս կարեւոր է դառնում դիւանագիտական աշխատանքի որակը եւ յամառութիւնը:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1947 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 31 ՕԳՈՍՏՈՍ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դ.Կ. عدد رقم ١٩٤٧ الخميس ٣١ أغسطس ٢٠٢٣


## ՇԱՐՔԵՐ ՀԱՅԻ ՀԱՄԱՐ ԵՒ ԱՌԱՆՑ ԵՐԵԽԱՅԻ ԿԱԹԻ. ՄԱՅՐՈՒԹԻՒՆԸ ՇՐՋԱՓԱԿՈՒԱԾ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՄԷՋ

**ԼԻՒՍԻ ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ ԵՒ ՍԻՐԱՆՈՅՇ ՍԱՐԳՍԵԱՆ**

***Երեք հայ մայրեր կը պատմեն իրենց պայքարը՝ ութ ամիսներ Ազրպէյճանի արգելափակումներուն մէջ ապրելէ ետք***

Մարի Գրիգորեանի օրը կը սկսի երբ ելեկտրականութիւնը կը վերադառնայ, որով իր երեխաներու նախաճաշին համար կը կարողանայ տաքցնել առանց շաքարի թէյը:

Լեռնային Ղարաբաղի վիճելի տարածութիւնը՝ որ տասնամեակներ շարունակ եղած է Ազրպէյճանի եւ Հայաստանի միջեւ ձգձգուած դաժան պատերազմի կեդրոնը, կը դիմէ ուժանիւթի խիստ արդիւնաւէտօրէն սահմանափակուած գործածութեան եւ իւրաքանչիւր թաղամաս յաջորդաբար հոսանք կը ստանայ համաձայն ցուցակի: Օր մը ելեկտրականութիւնը կրնայ սկսիլ առաւօտեան ժամը 7-ին, ուրիշ օր մը՝ առաւօտեան 9-ին կամ 11-ին: Մէկ ամիս առաջ դադրեցաւ կազի սպասարկութիւնը:

Իբրեւ մանկական վիրաբոյժ՝ թերի միջոցներով եւ անձնակազմով գործող տեղական հիւանդանոցին մէջ իր աշխատանքային օրը աւարտելէ ետք, տուն վերադառնալու չորս քիլոմեթր ճանապարհին Գրիգորեան կը փորձէ սնունդ գտնել: Վառելանիւթի պակասը կը նշանակէ չկայ հանրային երթեւեկութիւն:

Ընթրիքը յաճախ բաղկացած է մէկ հացէ՝ զոր կրցած է ձեռք ձգել հացագործին մօտ ժամեր պոչ բռնելէ ետք, երբեմն նոյնիսկ ձեռնունայն հեռանալով: Եթէ Գրիգորեան բախտաւոր ըլլայ, կրնայ սուղ գինով մէկ քիլօ գետնախնձոր եւ լոլիկ կամ ձմերուկի մասեր գտնել, զանոնք բաժնելու համար իր, իր երկու զաւակներուն եւ ամուսինին միջեւ:

«Երբեմն կը մտածեմ վատ ծնողք եղած ըլլալ, քանի որ հիմնական արտադրութիւնները չպահեստաւորեցի ժամանակին, բայց նաեւ կը փորձենք չկեդրոնանալ ատոր վրայ», 42 տարեկան Գրիգորեան ըսաւ *openDemocracy*-ին: «Երեխաներուս հետ զրոյցներ կը կատարեմ, բացատրելու համար թէ մենք կը դիմանանք այս բոլոր զրկանքներուն՝ յանուն մեր հայրենիքին մէջ ապրելու իրաւունքին»:

Ըստ Հայաստանի մարդու իրաւունքներու պաշտպանի գրասենեակին, Լեռնային Ղարաբաղի մէջ կը գտնուին Ազրպէյճանի ութամսեայ շրջափակումին տակ ապրող տասնհազարաւոր մայրեր, որոնք կը ճգնին սնել իրենց երեխաներն ու ընտանիքը եւ խնամք տանիլ անոնց, չհաշուելով ինքզինքնին:

2022 Դեկտեմբեր 12-էն ի վեր Ազրպէյճան շրջափակած է Լաչինի միջանցքը՝ Լեռնային Ղարաբաղի էթնիք հայերը Հայաստանին եւ ողջ աշխարհին կապող միակ ճանապարհը: Մոսկուայի, Պաքուի եւ Երեւանի միջեւ 2020 Նոյեմբերին ստորագրուած եռակողմ համաձայնութիւն մը կը պայմանադրէ որ 5 քիլոմեթր միջանցքը պէտք է գտնուի ռուս խաղաղապահ ուժերու վերահսկողութեան տակ:

2020-ի Երկրորդ Ղարաբաղեան Պատերազմին Ազրպէյճան պարտութեան մատնեց Հայաստանը, եւ ռուսական միջնորդութեամբ ստորագրուած յայտարարութեան մէջ Լեռնային Ղարաբաղի (որուն սահմանները ճանաչուած են իբրեւ Ազրպէյճանի մաս) հայերուն կարգավիճակը մնաց չլուծուած:

Շրջափակումին տակ ճգնաժամը խորացաւ, երբ տարածաշրջանի միակ մարդասիրական օգնութեան կազմակերպութիւնը՝ Կարմիր Խաչի Միջազգային Յանձնախումբը (ICRC), ըսաւ թէ ազրպէյճանական իշխանութիւնները արգիլեցին սնունդ եւ դեղորայք փոխադրել Լաչինի միջանցքով կամ որեւէ ուրիշ ճանապարհով, ուր տարածուած են ռուս խաղաղապահները: Օգոստոս 16-ին Հայաստանի կողմէ հրաւիրուած Միացեալ Ազգերու Կազմակերպութեան Ապահովութեան Խորհուրդի (UNSC) արտակարգ նիստին, ՄԱԿ-ի մարդասիրական օգնութեան համակարգող Էտէմ Ուոսորնու հաստատեց վարկածը:

**Բժշկական ոլորտի խնդիրներ**

Թէեւ Կարմիր Խաչի Միջազգային Յանձնախումբը հաղորդեց՝ թէ կը շարունակէ բուժումի համար հիւանդներ փոխադրել Լեռնային Ղարաբաղէն Հայաստան, բայց ըստ Լեռնային Ղարաբաղի տէ ֆաքթօ առողջապահական նախարար Վարդան Թադէոսեանի *openDemocracy*-ին տուած տեղեկութեան՝ զանազան երիկամի հիւանդներ կը վախնան ձգել իրենց տուները այն բանէն ետք՝ երբ ազրպէյճանցի իշխանութիւնները Յուլիս 29-ին կալանաւորեցին Կարմիր Խաչի միջոցով փոխադրուող 68 տարեկան հիւանդ մը:

«Բոլոր բժշկական հիմնարկները ունին դեղի անբաւականութիւն, որ կը գնահատուի 50%-էն պակաս», Թուիթըրի վրայ Օգոստոս 18-ին արձանագրեց Արցախի մարդու իրաւունքներու պաշտպանը: «Եթէ շարունակուի այս կացութիւնը, Արցախի հանրային առողջութիւնը պիտի ենթարկուի հսկայ անկումի»:

Վառելանիւթի սակաւութիւնը ↳ 4

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԽՄՈՐՈՒՄՆԵՐ ԱՐՑԱԽՈՒՄ. Ի՞ՆՉ ՍՊԱՍԵԼ ՄՕՏԱԿԱՅ ՕՐԵՐԻՆ

**JAMnews**

*Արցախի ներկայ կացութեան մասին այս երկրորդ յօդուածը դիտաւորեալ հրատարակեցինք առաջինին (ձախին) զուգահեռ: Երկու յօդուածներ՝ նոյն տեղավայրը եւ ժամանակաշրջանը պարփակող: Առաջինը կը ներկայացնէ Արցախի բնակիչներուն անձնական զրկանքները՝ դիտուած ներսէն եւ վարէն, երկրորդը (այս մէկը)՝ Արցախի իշխանական օլիկարքներուն վերադաս պայքարը: Երկու աշխարհներ՝ որոնք կարծէք երբեք հանդիպած ըլլան իրարու:*

Ջ.

**Արցախի նախագահի հրաժարականի մասին**

Հայաստանեան հանրութիւնն ակտիւօրէն քննարկում է ներքաղաքական իրավիճակը Լեռնային Ղարաբաղում: Օրերս նախկին պետնախարար Ռուբէն Վարդանեանը պնդել էր, թէ Արցախի նախագահը խոստացել է հրաժարական տալ, բայց չի պահել խոստումը: Կառավարութիւնն այս յայտարարութիւնն անարձագանք է թողել: Արցախցի պատգամաւորները նշել են՝ Յարութիւնեանի հրաժարականի պահանջ չկայ, նման պնդումների «թիրախում երկրի նախագահն ու նախագահական ինստիտուտն են»:

Քաղաքագէտ Տիգրան Գրիգորեանի գնահատմամբ՝ Ռուբէն Վարդանեանի ուղերձը վերջին շրջանում Արցախում տեղի ունեցող ներքաղաքական բուռն զարգացումների հետեւանք է:

«Ամիսներով շարունակուող այս ներքաղաքական անկայունութիւնը ոչ միայն իշխանութեան համար պայքարի, այլեւ Արցախում ստեղծուած իրավիճակից ելքերի վերաբերեալ տարբերուող պատկերացումների մասին է», - նկատել է նա:

Կարծում է՝ խորացող հումանիտար ճգնաժամի ֆոնին «քաղաքական զարգացումները եւս կարող են անկանխատեսելի ընթացք ստանալ»:

**«Շաբաթուայ սկզբում ասում էիք, որ հրաժարական էք տալու». Վարդանեան**

Ֆէյսբուքեան ուղիղ եթերում նման յայտարարութիւն էր արել Արցախի նախկին պետնախարար Ռուբէն Վարդանեանը, ով պաշտօնից հեռանալուց յետոյ շարունակում է ապրել ԼՂ-ում եւ զբաղուել հասարակական-քաղաքական գործունէութեամբ:

Վարդանեանի փոխանցմամբ՝ նախագահ Յարութիւնեանն ասել է, թէ իրեն պէտք չէ համոզել, հեռանալու որոշումն արդէն կայացրել է.

«Առաջին անգամը չէր: 8 հոգուց, որ ներկայ էին այդ հանդիպմանը, մի մասն արդէն չէր հաւատում Ձեր խօսքին: Մի մասն էլ ասում էր՝ գուցէ այս անգամ ճի՞շտ է ասում»:

Այլ մանրամասներ նախկին պետնախարարը չի յայտնել: Նրա գնահատմամբ՝ վերջին շաբաթուայ ընթացքում գործող նախագահը հատել է այն «կարմիր գիծը, որ կար ազգի հետ» եւ «աշխարհազօրն ուժով մտել է Ազգային Ժողով»:

«Ես չգիտեմ՝ Դո՞ւք էք ուղեկցել, թէ՞ Դուք էք հրամայել, թէ՞ Ձեր տեղակալներն են տեղեակ եղել ու ասել, որ դա անեն: Միեւնոյն է, դա անընդունելի է: Դուք քանդում էք պետական ինստիտուտները: Դուք քանդում էք այն պետութիւնը, որը վատ, թէ լաւ, կառուցել են վերջին 30-35 տարում: Դուք դրա իրաւունքը չունէք», - ընդգծել է նա:

*Աւելի վաղ Արցախի ԱԺ ընդդիմադիր Արդարութիւն խմբակցութեան ղեկավար Դաւիթ Գալստեանն էր յայտնել, որ խորհրդարան են մտել աշխարհազօրի մի խումբ մարտիկներ, հարցով՝ այդ ո՞վ է այստեղ պահանջում Յարութիւնեանի հրաժարականը, յայտարարել, թէ նման պահանջ որեւէ պատգամաւոր չի կարող ներկայացնել:*

*Պաշտօնապէս հաղորդուել է, որ Արայիկ Յարութիւնեանը Օգոստոսի 17-ին հանդիպել է աշխարհազօրի մի խումբ մարտիկների հետ: Նախագահը ներկայացրել է Արցախի անվտանգութեան ապահովման, ցեղասպանութեան յետագայ ընթացքի կասեցման եւ հումանիտար աղէտի յաղթահարման ուղղութեամբ իրականացուող քայլերը: «Ընդգծուել է Արցախի առջեւ ծառացած մարտահրաւէրներին դիմակայելու համար բոլորի ջանքերի համախմբման եւ պետական համակարգի կայունութեան անհրաժեշտութիւնը», - յայտնում են ԼՂ-ից:*

**«Պետական ինստիտուտները ուղիղ թիրախաւորող կոչեր». պատգամաւորների կարծիքը**

Արցախի Ազգային Ժողովի իշխող Ազատ Հայրենիք-ՔՄԴ խմբակցութիւնը յայտարարութիւն է տարածել՝ արձագանքելով Ռուբէն Վարդանեանի պնդումներին: Շեշտւում է այն հանգամանքը, որ նա որեւէ պետական պաշտօն չի զբաղեցնում, ժողովրդի վստահութեան քուէն չի ստացել:

Խորհրդարանականները նախկին պետնախարարի ուղերձը դասում են «պոպուլիստական, պետական ինստիտուտները ուղիղ թիրախաւորող» կոչերի շարքին.

«Թէ ինչ քաղաքական հետեւանքներ եւ ինչպիսի զարգացումներ պիտի լինեն այդ հրաժարականից յետոյ, ↳ 3

# ԽՄԲԱՎԱՐ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԸ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Դաշնակ**

1941 Մարտ 30, Յառաջդիմասէրի վերոյիշեալ ձեռնարկին, 15 տարեկան ընկ. Ափրիկեան կը նուագէ Քլեմենթիի Սոնաթին մը կամ անկէ մէկ մաս մը(13):

1941 Նոյեմբեր 9, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. պատանիներու Մհեր խումբի թէյասեղան: Ընկ. Ափրիկեան «սահուն կերպով եւ զգացումով» կը նուագէ Ե. Ալեքսանեանի *Հովերու պէսը*(14):

1944 Յուլիս 30, Աղեքսանդրիոյ Պոտրոյի սրահ, Հայ Արիներու Միութեան պատուասեղան, եւ 1944 Օգոստոս, Հ.Յ.Դ. Երիտասարդաց Միութեան տարեդարձի հանդէս: Կը նուագէ Ափրիկեան(15):

1944 Հոկտեմբեր 26, յիշատակի երեկոյ նուիրուած Թարգմանիչներուն, կազմակերպութեամբ Համազգայինի: Կը նուագէ Ափրիկեան(16):

1944 Հոկտեմբեր 15, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. 54-րդ տարեդարձ: Դաշնակի վրայ կը նուագէ *Մշակ բանուորը*, եւ «իր նախասիրած մէկ կտորը մեծապէս տպաւորելով բոլոր ներկաները»(17):

1944 Նոյեմբեր 5, Յառաջդիմասէր, Թէյասեղան: Կը նուագէ Պախի Ֆիւկ մը: «Այս երիտասարդ անդամը արժանացաւ ջերմ ծափերու եւ «պիս»ի, ինչ որ լաւ փաստ մըն էր սրահիս անդամներու ճաշակի մասին»: Կը նուագակցի նաեւ պարիթօն Սարգիս Սարգիսեանի մեներգին՝ *Հէքիաթ օրեր*(18):

1944 Նոյեմբեր 26, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. Երիտասարդաց Միութեան Աղեքսանդրիոյ մասնաճիւղի Սօսէ խումբի 4-րդ տարեդարձի հանդէս: Դանիէլ Վարուժանի *Մենաւորը* պատկերին դաշնակով կ'ուղեկցի Ափրիկեան(19):

1945 Յունուար, Յառաջդիմասէր, Ամանորի եւ Ս. Ծնունդի հանդէս-պարահանդէս: Կը նուագէ *Յառաջ նահատակ* եւ Պեթհովէնի Սոնաթ մը(20):

1945 Յունուար 28, Նաւասարդ Ակումբ, Գահիրէ, գեղարուեստական հանդէս, կազմակերպութեամբ Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ կազմերուն: Կը նուագէ Պախի Թոքաթա եւ Ֆիւկը, ինչպէս նաեւ իր հեղինակութիւնը՝ Փրելիւտ(21):

1945 Ապրիլ 28, Յառաջդիմասէր, ապրիլեան սգահանդէս: Մահերգի նուագը տրուած էր ընկ. Ափրիկեանին(22):

1945 Յունիս 28, Յառաջդիմասէր, գրական երեկոյթ նուիրուած Պետրոս Դուրեանի, կազմակերպութեամբ Համազգայինի: Դաշնակ՝ Ափրիկեան(23):

1945 Հոկտեմբեր 28, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. օրուան տօնակատարութիւն: Քառաձեռն դաշնակ՝ Մոցարթի *Օրիժինալ քոմփոզիսիոն*, ընկերուհի Արփինէ Գասապեանի եւ ընկ. Ափրիկեանի կատարումով, որ «Ճարտարութենէն անդին էր իր աշխոյժով ու երանգներով»: Ընկ. Ափրիկեան կը նուագէ Լիսթի *Ռափսոտի հոնկրուազ* թիւ 12-ը (անկասկած՝ ոչ-հեղինակային պարզեցուած տարբերակներէն մէկը): Կը նուագակցի մեներգիչ ընկ. Սարգիս Սարգիսեանին(24):

1945 Նոյեմբեր 15, Յառաջդիմասէր, Համազգային Ընկերութեան Աղեքսանդրիոյ մասնաճիւղի 3-րդ տարեշրջանի ձեռնարկ: Կը նուագէ Հայտընի Սոնաթ թիւ 7-ը(25):

1945 Նոյեմբեր 25, Յառաջդիմասէր, գեղարուեստական հանդէս, կազմակերպութեամբ Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան Սօսէ ընկերուհիներուն: Դաշնակ՝ ընկ. Ափրիկեան(26):

1945 Դեկտեմբեր 2, Գահիրէ, Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան տարեկան հանդէս: Քառաձեռն դաշնակ՝ Մոցարթի *Օրիժինալ քոմփոզիսիոն*, Արփինէ Գասապեան եւ Ափրիկեան: Ափրիկեան կը նուագակցի Օ. Օտապաշեանի մեներգին եւ ապա կը նուագէ Ռախմանինովի Փրելիւտ մը եւ Տիւրանի Վալսը, «Թողելով խոր տպաւորութիւն»(27):

1945 Դեկտեմբեր 28, Աղեքսանդրիոյ Լիսէ Ֆրանսէ, Երուանդ Ալեքսանեանի Քնար Երգչախումբ-Նուագախումբի նուագահանդէս: Ափրիկեան կը նուագակցի Ալեքսանեանի քսիլոֆոնի մենանուագին(28):

1946 Փետրուար 3, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան տարեկան գեղարուեստական հանդէս: Դաշնակի մենանուագով եւ Արփինէ Գասապեանի հետ քառաձեռն զուգանուագով ելոյթ կ'ունենայ ընկ. Ափրիկեան(29):

1946 Ապրիլ 24, Յառաջդիմասէր, Ապրիլեան Նահատակներու նուիրուած սգատօն, կազմակերպութեամբ Հ.Յ.Դ. Երիտասարդաց Միութեան: Կը նուագէ Շոփէնի մահերգը եւ Պախի Փրելիւտ մը(30):

1946 Ապրիլ 28, Շէքսփիրի *Օթելլո*յի բեմադրութիւն, Համազգայինի կազմակերպութեամբ: Հայկ Ստեփանեան ջութակով եւ Ափրիկեան դաշնակով կ'ուղեկցին ներկայացումին(31):

1946 Մայիս 26, Յառաջդիմասէր, պատանիներու Մհեր խումբի տարեկան հանդէս: Ընկ. Ափրիկեան կը նուագէ դաշնակի վրայ եւ կը նուագակցի ընկերուհի Ա. Ճէզայիրլեանի մեներգին(32):

1946 Յունիս 9, Կամքի դաշտ, Մայիս 28-ի տօնակատարութիւն: Ընկերուհի Արփինէ Գասապեանի հետ քառաձեռն կը նուագէ Հայտընի Սեմֆոնիի մը մասը: «Այս զոյգը երրորդ անգամն է որ միասնաբար կը նուագէ, եւ ամէն անգամ ալ աւելի՛ վարժ, աւելի լաւ եւ յաջող»: Մենանուագ՝ Ռախմանինովի Փրելիւտի մը, «արժանանալով գնահատական խօսքերու եւ ծափահարութիւններու»: Վերջապէս, նուագակցութիւն Երուանդ Ալեքսանեանի քսիլոֆոնին եւ Սարգիս Սարգիսեանի մեներգին(33):

1946 Յուլիս 27, Յառաջդիմասէր, Թէյասեղան ի պատիւ Հայ շրջանաւարտներու, կազմակերպութեամբ Սօսէ ընկերուհիներու խումբին: Դաշնակի վրայ նուագեց «մեր խոստմնալից ընկերներէն ընկ. Կ. Ափրիկեան», որ նաեւ նուագակցեցաւ Երուանդ Ալեքսանեանի քսիլոֆոնին(34):

1946 Հոկտեմբեր 13, Ֆրանսական Լիսէ, Քնար Երգչախումբ-Նուագախումբի նուագահանդէս: Նուագակցութիւն պարիթօն Սարգիս Սարգիսեանին(35):

1946 Հոկտեմբեր 25, Յառաջդիմասէր, Դաշնակցութեան Օր: Դաշնակցական քայլերգ եւ քառաձեռն նուագ Արփինէ Գասապեանի հետ(36):

1947 Մարտ 9, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան հանդէս: Ափրիկեան կը նուագակցի Օ. Օտապաշեանի մեներգին(37):

1947 Ապրիլ 19, Գահիրէի Ամերիկեան Համալսարանի Էուըրթ Մեմորիըլ Հոլ, Սպենդիարեան Երգչախումբ-Նուագախումբի առաջին համերգ, ղեկավար՝ Երուանդ Ալեքսանեան, կազմակերպութեամբ Հայկական Ընթերցասրահի: Ափրիկեան կը նուագակցի Ալեքսանեանի քսիլոֆոնի նուագին՝ *Պաղտատի խալիֆան*(38):

1947 Ապրիլ 24, Յառաջդիմասէր, Ապրիլ 24-ի սգահանդէս, կազմակերպութեամբ Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան: Ընկ. Ափրիկեան կը նուագէ Շոփէնի մահերգը եւ Պեթհովէնի 8-րդ Փրելիւտը(°), կը նուագակցի ընկ. Սարգիս Սարգիսեանի մեներգին, դաշնակով կ'ուղեկցի Կոստան Զարեանի *Ասացուած կախաղան բարձրացողի համար* պատկերին(39):

1947 Յունիս 1, Յառաջդիմասէր, Մայիս 28-ի տօնակատարութիւն: Ափրիկեան կը նուագակցի Օ. Օտապաշեանի մեներգին եւ Երուանդ Ալեքսանեանի հաւայեան կիթառին, որոնցմէ ետք «մեր խոստմնալից եւ համակրելի դաշնակահարը զգացումով նուագեց Շոփէնէն»(40):

1948 Դեկտեմբեր 19, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. Երիտասարդաց Միութեան Օր: Կը նուագէ *Մշակ բանուորը* եւ կը նուագակցի ջութակահար ընկ. Ե. Պասմաճեանին Մենտելսոնի կտորի մը մէջ(41):

(Շար. 2)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

13. *Յուսաբեր*, 25 Մարտ 1941:

14. Պ., «Մհեր խումբի թէյասեղանը», *Յուսաբեր*, 22 Նոյեմբեր 1941:

15. Ժ., «Արիներու պատուասեղանը», *Յուսաբեր*, 5 Օգոստոս 1944: Թղթակից, «Տարեկան հանդէս Հ. Յ. Դ. Ե. Միութեան», *Յուսաբեր*, 17 Օգոստոս 1944:

16. Պ[երճ] Մ[ոմճեան], «Յիշատակի երեկոյ նուիրուած Թարգմանիչներուն», *Յուսաբեր*, 11 Նոյեմբեր 1944:

17. Թղթակից, «Հ.Յ.Դ. օրուան տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 25 Հոկտեմբեր 1944:

18. Թղթակից, «Յառաջդիմասէրի թէյասեղանը», *Յուսաբեր*, 6 Դեկտեմբեր 1944:

19. «Սօսէի հանդէսը», *Յուսաբեր*, 9 Դեկտեմբեր 1944:

20. Թղթակից, «Հանդէս Յառաջդիմասէրի մէջ», *Յուսաբեր*, 25 Յունուար 1945:

21. *Յուսաբեր*, 26 Յունուար 1945: «Երիտասարդներու հանդէս-հաւաքոյթը», *Յուսաբեր*, 31 Յունուար 1945:

22. *Յուսաբեր*, 27 Ապրիլ 1945: Պ[երճ] Թ. Մ[ոմճեան], «Ապրիլ 24-ը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 16 Մայիս 1945:

23. *Յուսաբեր*, 26 Յունիս 1945:

24. *Յուսաբեր*, 25 Հոկտեմբեր 1945: Պ[երճ] Թ. Մ[ոմճեան], «Հ.Յ.Դ. օրը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 9 Նոյեմբեր 1945:

25. Պ[երճ] Թ. Մ[ոմճեան], «Համազգայինի զոյգ ձեռնարկները», *Յուսաբեր*, 23 Նոյեմբեր 1945:

26. *Յուսաբեր*, 21 Նոյեմբեր 1945: Պ[երճ] Թ. Մ[ոմճեան], «Սօսէի տարեկան հանդէսը», *Յուսաբեր*, 9 Յունուար 1946:

27. X., «Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան տարեկան հանդէսը», *Յուսաբեր*, 4 Դեկտեմբեր 1945:

28. Արա, «Քնարի համերգը», *Արաքս*, 29 Դեկտեմբեր 1945:

29. *Յուսաբեր*, 1 Փետրուար 1946:

30. Թղթակից, «Նահատակներու տօնը», *Յուսաբեր*, 22 Մայիս 1946:

31. Ա. Համար, «*Օթէլլո*ի ներկայացումը», *Յուսաբեր*, 18 Մայիս 1946:

32. Թղթակից, «Կեանքը Յառաջդիմասէրի մէջ», *Յուսաբեր*, 31 Մայիս 1946:

33. *Յուսաբեր*, 7 Յունիս 1946: Թղթակից, «Մայիս 28-ի աննախընթաց տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 15 Յունիս 1946:

34. Թղթակից, «Սօսէ ընկերուհիներու խումբի թէյասեղանը», *Յուսաբեր*, 12 Օգոստոս 1946:

35. «Քնարի երեկոյթը», *Արաքս*, 19 Հոկտեմբեր 1946:

36. Թղթակից, «Դաշնակցութեան Օրը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 8 Նոյեմբեր 1946:

37. Թղթակից, «Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան տարեկան գեղ. հանդէսը», *Յուսաբեր*, 20 Մարտ 1947:

38. Ա., «Ուշագրաւ համերգ մը», *Յուսաբեր*, 26 Ապրիլ 1947:

39. *Յուսաբեր*, 22 Ապրիլ 1947: Ա. Համար, «Ապրիլ 24-ը Յառաջդիմասէրի մէջ», *Յուսաբեր*, 3 Մայիս 1947:

40. Թղթակից, «Մայիս 28-ի տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 10 Յունիս 1947:

41. Թղթակից, «Հ.Յ.Դ. Ե. Միութեան Օրուան տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 30 Դեկտեմբեր 1948:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

# ԱՐՑԱԽՈՒՄ ԻՐԱՎԻՃԱԿԸ ՄՕՏ Է ԻՐԱԿԱՆ ՀՈՒՄԱՆԻՏԱՐ ԱՂԷՏԻ ՎԵՐԱԾՈՒԵԼՈՒՆ. ԱՐԱՐԱՏ ՄԻՐԶՈՅԵԱՆ

Հայաստանի արտաքին գործերի նախարար Արարատ Միրզոյեանը Օգոստոսի 21-ին հեռախօսազրոյց է ունեցել Պորտուգալիայի ԱԳ նախարար Ժուաու Գոմըշ Կռաւինիուի հետ, յայտնում են ԱԳՆ-ից:

Նախարար Միրզոյեանն իր գործընկերոջն է ներկայացրել Ադրբէջանի կողմից Լաչինի միջանցքի ապօրինի արգելափակման հետեւանքով Արցախում վատթարացող հումանիտար ճգնաժամի մանրամասները: Արարատ Միրզոյեանը շեշտել է յատկապէս խոցելի խմբերի՝ երեխաների, կանանց, տարեցների համար ստեղծուած ծանրագոյն պայմանները, ինչպէս նաեւ սննդի եւ դեղորայքի սուր պակասը:

Անդրադառնալով ՄԱԿ Անվտանգութեան Խորհրդի Օգոստոսի 16-ի քննարկմանը՝ ընդգծուել է Արդարադատութեան Միջազգային Դատարանի որոշումներին համապատասխան Լաչինի միջանցքի վերաբացման վերաբերեալ, այդ թւում՝ ԵՄ կողմից հնչած ուղերձների կեանքի կոչման հրատապութիւնը: Արարատ Միրզոյեանը շեշտել է, որ հակառակ դէպքում իրավիճակը մօտ է իրական հումանիտար աղէտի վերածուելուն:

Անդրադարձ է կատարուել նաեւ Հայաստանի եւ Պորտուգալիայի միջեւ յարաբերութիւնների երկկողմ օրակարգին, ինչպէս նաեւ Հայաստան-ԵՄ փոխգործակցութեան հարցերի, մասնաւորապէս Հայաստանում ԵՄ քաղաքացիական մշտադիտարկման առաքելութեան գործունէութեանը:

**ԱՐՑԱԽ**

## ԸՍՏ ՀԵՂԻՆԱԿԱՒՈՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ՝ ՍՏԵՂԾՈՒԱԾ ԻՐԱՎԻՃԱԿՈՒՄ ԼՂ-Ն ԿԱՐՈՂ Է ԻՆՔՆՈՐՇՈՒԵԼ «ԱՆՋԱՏՈՒՄ ՅԱՆՈՒՆ ՓՐԿՈՒԹԵԱՆ» ՍԿԶԲՈՒՆՔՈՎ

Ամերիկեան Public International Law & Policy Group (PILPG) խորհրդատուական կազմակերպութիւնը յուշագիր-զեկոյց է հրապարակել, որը վերնագրուած է *Լեռնային Ղարաբաղի ինքնորոշման իրաւունքը բերելով օրակարգ* (Nagorno-Karabakh’s Right to Self-Determination: Putting it on the Agenda): Հեղինակաւոր կազմակերպութեան մասնագէտները նշում են, որ խորհրդային ժամանակաշրջանում Լեռնային Ղարաբաղի՝ ինքնավար մարզի կարգավիճակի փաստը բանակցութիւնների օրակարգում ներառելու Ադրբէջանի մերժումը արտաքին ինքնորոշման հնարաւորութեան դուռ է բացում՝ անջատում յանուն փրկութեան սկզբունքի միջոցով:

Կազմակերպութեան տարածած հաղորդագրութիւնում նշւում է, որ յուշագրի նպատակն է ներկայացնել այն փաստարկը, որ Լեռնային Ղարաբաղի հայ ժողովուրդն ունի առնուազն ներքին ինքնորոշման իրաւունք, եւ որ ընթացիկ բանակցութիւնները պէտք է ապահովեն այդ իրաւունքի իմաստալից եւ արդիւնաւէտ պաշտպանութիւնը: Որպէս այդպիսին՝ Լեռնային Ղարաբաղի խորհրդային ժամանակաշրջանի ինքնավար կարգավիճակը պէտք է յենանիշ ծառայի Լեռնային Ղարաբաղի ժողովրդի ապագայ ճակատագրի եւ կարգավիճակի վերաբերեալ Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ քննարկումներում:

Կազմակերպութիւնը նաեւ ընդգծում է, որ յուշագիրը չպէտք է մեկնաբանուի որպէս Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ բանակցութիւնների կոնկրէտ արդիւնքի ջատագովութիւն, քանի որ դա որոշելը բանակցող կողմերի ու նախեւառաջ Լեռնային Ղարաբաղի ժողովրդի իրաւասութիւնն է:

**PILPG-ի ամփոփագիրը** (Executive Summary)

Ներկայում Հայաստանի եւ Լեռնային Ղարաբաղի ու Ադրբէջանի միջեւ հակամարտութիւնը լուծելու համար բանակցութիւններ են ընթանում, որոնք մի կողմից հիւրընկալւում են Եւրամիութիւնն ու ԱՄՆ-ը, միւս կողմից՝ Ռուսաստանը:

Բանակցութիւնների օրակարգը ներառում է՝ 1) սահմանազատում, 2) տրանսպորտային եւ տնտեսական կապերի ապաշրջափակում, 3) Լեռնային Ղարաբաղի ադրբէջանական պաշարման դադարեցում, 4) կալանաւորուած անձանց եւ ռազմագերիների ազատ արձակում ու անյայտ կորածների խնդրի հասցէագրում, 5) Լեռնային Ղարաբաղի բնակչութեան անվտանգութիւն եւ իրաւունքներ:

Մարդու իրաւունքների միջազգային սկզբունքներին համահունչ երկարատեւ խաղաղութիւն հաստատելու համար օրակարգում պէտք է ընդգրկուած լինի Լեռնային Ղարաբաղի ժողովրդի ինքնորոշման իրաւունքը: Այդ ժողովրդի՝ սոսկ «անվտանգութեան եւ իրաւունքների» քննարկումները՝ ինքնորոշման իրաւունքի համատեքստից եւ շրջանակից դուրս, ինչը նախատեսուած է ներկայիս օրակարգով, արժէք չունեն եւ պատրանքային են: Գոյութենական այդ հարցերի բովանդակալից քննարկումը կարող է տեղի ունենալ միայն Լեռնային Ղարաբաղի ժողովրդի ինքնորոշման անքակտելի իրաւունքի իրացման համատեքստում:

Ինքնորոշման սկզբունքը յստակ ամրագրուած է Միաւորուած Ազգերի կազմակերպութեան կանոնադրութիւնում, ՄԱԿ-ի Գլխաւոր Վեհաժողովի բազմաթիւ բանաձեւերում եւ միջազգային պայմանագրերում ու վերահաստատւում է Արդարադատութեան Միջազգային Դատարանի, ինչպէս նաեւ տարածաշրջանային եւ ներպետական դատարանների տարբեր որոշումներում:

Ինքնորոշման սկզբունքը կարող է իրականացուել ներքինից՝ աւելի մեծ պետութեան շրջանակում ինքնավարութեան միջոցով կամ արտաքինից՝ նոր պետութիւն ստեղծելու միջոցով: Թէեւ տարբեր տեսակէտներ կան, թէ արտաքին ինքնորոշումն արդեօք ներառում է անջատում յանուն փրկութեան սկզբունքը, բայց որեւէ հակասութիւն չկայ, որ ներքին ինքնորոշումը վերաբերելի է բոլոր ժողովուրդներին:

Որպէսզի խումբն ունենայ իր քաղաքական ճակատագիրը կոլեկտիւ որոշելու իրաւունք՝ այն պէտք է ունենայ ինքնութեան կենտրոն, որը բաւարար է նրան որպէս ժողովուրդ տարբերակելու համար: Լեռնային Ղարաբաղի հայերի դէպքում կան օբիեկտիւ եւ սուբիեկտիւ գործօնները, որոնք անհրաժեշտ են ինքնորոշման իրաւունքի իրացման համար:

Լեռնային Ղարաբաղի հայ ժողովուրդը դարեր շարունակ պահպանել է ամբողջական ինքնութիւն՝ որպէս Լեռնային Ղարաբաղի հողի հետ կապուած ժողովուրդ: Ժամանակ առ ժամանակ ենթարկուելով քաղաքական ոտնձգութեան՝ այս տարածքը Խորհրդային Միութեան ժամանակ ունեցել է ինքնավար մարզի կարգավիճակ, իսկ Խորհրդային Միութեան փլուզումից յետոյ այդ տարածքում իրականացրել է արդիւնաւէտ եւ օրինական կառավարում: 4

## ԵԹԷ ՄՈՍԿՈՒԱՆ ՑԱՆԿԱՆԱՅ ԻՐԱԿԱՆԱՑՆԵԼ ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՄԻՋԱՆՑՔԻ ԾՐԱԳԻՐԸ, ՀԱՅԱՍՏԱՆՆ ՉՈՒՆԻ ԴՐԱՆ ՀԱԿԱԶԴԵԼՈՒ ՌԵՍՈՒՐՍ

Էրդողանը երկու աթոռի վրայ է նստած. փորձում է Թուրքիային «պոկել» Արեւմուտքից: *Առաջին լրատուական*ի հետ զրոյցում նշեց Թուրքագէտ Նելլի Մինասեանը:

Թուրքագէտի կանխատեսմամբ՝ Սեպտեմբերի 4-ի Էրդողան-Պուտինի հանդիպումից յետոյ էլ զարգացումները կը շարունակուեն. «Սեպտեմբերի 4-ին հնարաւոր է քննարկուի Զանգեզուրի միջանցքի հարցը: Թուրքիան փորձում է օգտուել իրավիճակից եւ առաջ տանել կոմունիկացիաների իր պատկերացրած ծրագիրը: Զանգեզուրի միջանցքի ծրագիրը ռուս-թուրքական չէ, թուրքական Միջին միջանցք ծրագիրն է: Հայաստանը չունի հակազդելու ռեսուրս, որ եթէ Ռուսաստանը ցանկանայ իրականացնել Զանգեզուրի միջանցքի ծրագիրը»:

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԽՄՈՐՈՒՄՆԵՐ ԱՐՑԱԽՈՒՄ. Ի՞ՆՉ ՍՊԱՍԵԼ ՄՕՏԱԿԱՅ ՕՐԵՐԻՆ

1

եւ ինչպէս կը թիրախաւորուի պետականութիւնը նման պայմաններում՝ հասկանալի է ու պարզ բոլորի համար»:

Անհասկանալի են որակել «առանձին խմբերի նեղ խմբային շահեր սպասարկող» անհատների պատկերացումներն իշխանութեան, լիազօրութիւնների եւ պետութեան մասին: Նեղ խմբային շահը առաջ տանելն, ըստ նրանց, չի բխում Արցախի շահերից եւ ենթակայ է դատապարտման:

«Կոչ ենք անում բոլոր քաղաքական ուժերին ու դերակատարներին զերծ մնալ հակասահմանադրական եւ պետականաքանդ յայտարարութիւններից, լինել կոռեկտ ու զուսպ հայրենիքի համար այս ծանր ու դժուարութիւններով լի ժամանակահատուածում», - նշւում է յայտարարութեան մէջ:

Թեմային անդրադարձել է նաեւ ընդդիմադիր Միասնական Հայրենիք խմբակցութեան ղեկավար Մարսէլ Պետրոսեանն ու շեշտել՝ Յարութիւնեանի հրաժարականի պահանջ Արցախում չկայ: Նրա խօսքով՝ այդ միտքը շրջանառւում է միտումնաւոր՝ «հեռուն գնացող նպատակներով»:

**Ի՞նչ կը լինի, եթէ Արցախի նախագահը հրաժարական տայ**

Արցախի խորհրդարանը դեռեւս Յունիսին «Ազգային ժողով կանոնակարգ» օրէնքում լրացում է կատարել: Այն նախագահի կողմից ստորագրուել եւ ուժի մէջ է մտել Յուլիսի 14-ին:

Փոփոխութեամբ սահմանուել է նաեւ ռազմական դրութեան ժամանակ խորհրդարանի կողմից նախագահի ընտրութեան կարգը, որի համաձայն՝ «մինչեւ գործող նախագահի լիազօրութիւնների աւարտը նախագահի պաշտօնը թափուր մնալու դէպքում՝ ոչ շուտ, քան 7, ոչ ուշ, քան 10 օր յետոյ Ազգային Ժողովը խմբակցութիւնների առաջարկութեամբ ընտրում է նախագահ, որը պաշտօնավարում է մինչեւ գործող նախագահի լիազօրութիւնների ժամկէտի աւարտը»: Արցախում մինչ օրս ռազմական դրութիւն է յայտարարուած:

Ըստ այդմ՝ եթէ գործող նախագահը հրաժարական տայ, ԱԺ-ի կողմից ընտրուած նախագահը կը պաշտօնավարի մինչեւ Արայիկ Յարութիւնեանի պաշտօնավարման ժամկէտի աւարտը՝ 2025 թուականի Մայիս:

**Մեկնաբանութիւն**

Քաղաքագէտ Տիգրան Գրիգորեանի խօսքով՝ սկսել են հրապարակային դրսեւորումներ ստանալ ԼՂ-ում տեղի ունեցող «բուռն կուլիսային գործընթացները»: Յիշեցնում է՝ Ռուբէն Վարդանեանի տեսաուղերձից օրեր առաջ գործող նախագահի հնարաւոր հրաժարականի մասին գրել էր հայկական տելեգրամ ալիքներից մէկը:

Ինչ վերաբերում է նախկին պետնախարարին, ըստ Գրիգորեանի, վերջին ամիսներին նրան յաջողուել է համախմբել Արցախի նախկին նախագահներին, նրանց ազդեցութեան տակ գտնուող նախկին բարձրաստիճան ուժայիններին, Ազգային Ժողովի երեք ընդդիմադիր խմբակցութիւններին: Ասում է՝ տուեալ բեւեռը դարձել է Արցախի ներքաղաքական կեանքի հիմնական դերակատարներից մէկը: Այն ակտիւօրէն պայքարում է իշխանութեան համար, ինչպէս եւ ԼՂՀ ինքնապաշտպանական ուժերի նախկին գլխաւոր հրամանատար Սամուէլ Բաբայեանի թիմը.

«Արայիկ Յարութիւնեանը, որի իշխանութիւնը պատերազմի աւարտից յետոյ բաւականին երերուն է, ստիպուած է մանեւրել այս ուժերի միջեւ՝ երբեմն գնալով զիջումների, երբեմն էլ փորձելով ուժ ցուցադրել»:

*Civilnet.am*-ում հրապարակուած յօդուածում քաղաքագէտը գրում է, որ ուժի ցուցադրման դրուագներից էր նաեւ աշխահազօրայինների՝ ԱԺ մուտք գործելը: Կարծում է՝ Յարութիւնեանի կողմից նախօրօք պլանաւորուած քայլ էր, որը նպատակ ունէր ցոյց տալ բոլոր դերակատարներին, որ նա դեռեւս որոշակի լծակներ ու աջակցութիւն ունի, ինչպէս նաեւ «երկրորդ պլան մղել իր հրաժարականի օրակարգը»:

Շեշտում է՝ բոլոր դերակատարներն իրենց տեսակէտներն ունեն Արցախում ստեղծուած ճգնաժամի հնարաւոր լուծումների վերաբերեալ, մասնաւորապէս՝

- Սամուէլ Բաբայեանը եւ իր թիմը կողմնակից են Ադրբէջանի հետ ուղիղ, չմիջնորդաւորուած երկխօսութեանը,
- Յարութիւնեանը եւ իր կառավարութիւնը կողմ է Բաքուի հետ միջնորդաւորուած բանակցութիւններին՝ ոչ Ադրբէջանի տարածքում,
- Վարդանեանի եւ իր բեւեռի կարծիքը կարծես թէ այն է, որ բանակցութիւնները պէտք է տեղի ունենան միջազգային ձեւաչափով:

Սակայն հումանիտար ճգնաժամից ելքեր գտնելու հարցում յստակ լուծումների մասին չի խօսւում:

«Մօտակայ շաբաթների ընթացքում այս երեք հիմնական դերակատարների միջեւ ուժերի յարաբերակցութիւնից է կախուած լինելու, թէ որ մօտեցումներն են գերիշխող դառնալու Արցախում», - շեշտել է նա:

Չի բացառում, որ Արցախի իշխանութիւնները ստիպուած լինեն ընդունել հումանիտար ճգնաժամի հանգուցալուծման տարբերակ, որը կը ներառի նաեւ Աղդամի ճանապարհի գործարկումը.

«Հաւանական է, որ այդ ճանապարհով միջազգային կազմակերպութիւնների կողմից ոչ ադրբէջանական ծագման հումանիտար բեռներ են մատակարարուելու ԼՂ, Լաչինի միջանցքով եւս որոշակի փոխադրումներ են իրականացուելու»:

Նման առաջարկի ընդունումն, ըստ նրա, կարող է դառնալ ներքաղաքական սրացման հերթական պատճառը:

ՋԱՀԱԿԻՐ

## ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՄՐՑԱՆԱԿՆԵՐ

Գահիրէի ՀԲԸՄ-ի Սաթենիկ Չագըր Հիմնադրամը, 2022-2023 տաաշրջանին համար, դրամական մրցանակներ պիտի տրամադրէ Եգիպտահայ համայնքին պատկանող բոլոր այն ուսանողներուն, որոնք փայլուն արդիւնքներ բերած են որեւէ կրթական հանգրուանի աւարտական քննութիւններուն:

Այսպէս, մրցանակներ պիտի տրամադրուին աւարտական կարգերու՝ պետական կամ համազօր քննութիւններու ներկայացող բոլոր այն աշակերտներուն, որոնք 90% եւ աւելի արդիւնք բերած են պատրաստական բաժնին եւ 85% եւ աւելի արդիւնք բերած են երկրորդական բաժնին :

Դրամական մրցանակները իւրաքանչիւր կրթական հանգըրուանի համար են եւ պիտի տրամադրուին հետեւեալ ձեւով.

**Պատրաստական**
Աւարտական դասարան — Ե.Ո. 1000

**Երկրորդական**
Աւարտական դասարան — Ե.Ո. 2000

**Համալսարան**
Աւարտական տարի
Շատ լաւ — Ե.Ո. 3000
Գերազանց — Ե.Ո. 4000

Մագիստրոսական աստիճանի աւարտին **( 75-85% )** Ե.Ո. 3500

Մագիստրոսական աստիճանի աւարտին **( 85% եւ աւելի )** Ե.Ո. 5000

Դոկտորական աստիճանի աւարտին **( 75-85% )** Ե.Ո. 7500

Դոկտորական աստիճանի աւարտին **( 85% եւ աւելի )** Ե.Ո. 10000

Գահիրէի դիմորդները իրենց ձեռք բերած կրթական արդիւնքը հաստատող փաստաթուղթը եւ անկէ պատճէն մը պարտին ներկայացնել ՀԲԸՄ-ի Գահիրէի գրասենեակը:

Աղեքսանդրիոյ դիմորդները պարտին նոյները ներկայացնել Աղեքսանդրիոյ ՀԲԸՄ-ի գրասենեակը:

Բոլոր դիմումները ընդունելու վերջին պայմանաժամն է 31 Հոկտեմբեր 2023:

Մրցանակներու յանձնումը պիտի կայանայ հանդիսաւոր արարողութեամբ:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ԸՍՏ ՀԵՂԻՆԱԿԱՒՈՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ՝ ...

3

1991 թուականի Նոյեմբերին Ադրբէջանի Գերագոյն Խորհուրդը որոշում ընդունեց «Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի լուծարման մասին»: Այնուհետեւ՝ 1991 թուականի Նոյեմբերի 23-ին, Ադրբէջանի նախագահ Այազ Մութալիբովը ստորագրեց Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի լուծարման մասին օրէնքը: Բոլորովին վերջերս Ադրբէջանի ներկայիս նախագահ Իլհամ Ալիեւը հրապարակաւ յայտարարեց, որ Լեռնային Ղարաբաղի ժողովրդին կը տրուի «զրօ կարգավիճակ»:

Ադրբէջանը հայերի ինքնորոշման իրաւունքը ժխտելու երկար պատմութիւն ունի, եւ ամէն ինչ վկայում է այն մասին, որ առանց միջազգային հանրութեան հովանու ներքոյ բանակցուող համակողմանի եւ արդիւնաւէտ մեխանիզմների՝ կիրարկման էական գործիքակազմով, ոչ միայն կը մերժուի այդ իրաւունքը, այլեւ Լեռնային Ղարաբաղի հայ ժողովուրդը կը շարունակի ենթարկուել մարդու իրաւունքների կոպիտ խախտումների, այդ թւում՝ էթնիկ զտումների եւ բռնի տեղահանութեան: Ադրբէջանի մերժումը, որ խորհրդային ժամանակաշրջանում Լեռնային Ղարաբաղի ինքնավար կարգավիճակն ընթացիկ բանակցութիւնների օրակարգում ներառուի որպէս Լեռնային Ղարաբաղի ժողովրդի ինքնորոշման եւ Հայաստանի ու Ադրբէջանի միջեւ Լեռնային Ղարաբաղի ժողովրդի յետագայ ճակատագրի եւ կարգավիճակի վերաբերեալ քննարկումների յենանիշ, յստակ ազդանշան է, որ Լեռնային Ղարաբաղի ժողովրդի այդ իրաւունքը շարունակաբար մերժւում է, իսկ դա արտաքին ինքնորոշման հնարաւորութեան դուռ է բացում՝ անջատում յանուն փրկութեան սկզբունքի միջոցով:

*Սիվիլնէթ*

## ՇԱՐՔԵՐ ՀԱՑԻ ՀԱՄԱՐ ԵՒ ԱՌԱՆՑ ԵՐԵԽԱՅԻ ԿԱԹԻ. ՄԱՅՐՈՒԹԻՒՆԸ ՇՐՋԱՓԱԿՈՒԱԾ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՄԷՋ

1

եւս լուրջ խնդիրներ կը յարուցանէ բժշկական ոլորտին համար: Թադէոսեան ըսաւ՝ թէ ելեկտրըրածինները (generator) գործածելու համար հիւանդանոցները կը յենուին տիզելի վրայ, ինչպէս նաեւ օգտագործելի են շատ քիչ հիւանդակառքեր (ambulance): Հայաստանի մարդու իրաւունքներու պաշտպանը անցեալ շաբաթուայ յայտարարութեան մէջ նշեց՝ որ յղի կին մը վիժումի ենթարկուեցաւ, քանի որ չկար վինքը հիւանդանոց փոխադրող հիւանդակառք: Անկէ մէկ օր առաջ, Ստեփանակերտի մէջ 40 տարեկան մարդ մը մահացաւ իբր հետեւանք «քրոնիկ թերսնուցման, սպիտակուցաէներգետիկ անբաւարարութեան», շարունակեց յայտարարութիւնը:

Աւելին. ըստ Հայաստանի արտաքին գործոց փոխ նախարարի՝ Ազըրպէյճանի սահմանային վերահսկողութեան իշխանութիւնները Յուլիս 26-էն ի վեր կ'արգելափակեն Հայաստանի ղրկած 19 բեռնատարներ, որոնք կը պարունակեն աւելի քան 350 թոն սնունդ, դեղորայք, առողջապահական արտադրանքներ եւ այլ էական ապրանքներ:

Անցեալ շաբաթ, ՄԱԿ Ապահովութեան Խորհուրդի նիստին, Հայաստանի ՄԱԿ ներկայացուցիչը մէջբերաւ Միջազգային Քրէական Դատարանի նախկին գլխաւոր դատախազի մասնագիտական կարծիքը, ըստ որուն «կը գտնուի բաւարար հիմք հաւատալու համար ցեղասպանութեան իրագործումը» շրջափակումի հետեւանքով:

Ազըրպէյճանի ներկայացուցիչը պատասխանեց «կտրականապէս հերքելով Հայաստանի կողմէ իմ երկրիս դէմ տարածուած շրջափակումի կամ մարդասիրական ճգնաժամի բոլոր չհաստատուած եւ անհիմն մեղադրանքները»: Պաքուի դեսպան Եաշհար Ալիեւ մեղադրեց Հայաստանին ներգրաւուելու «հրահրիչ եւ անպատասխանատու քաղաքական քարոզարշաւի» մէջ՝ քայքայելու համար Ազըրպէյճանի ինքնիշխանութիւնը եւ տարածքային ամբողջականութիւնը:

Միեւնոյն ժամանակ, Լաչինի միջանցքը՝ հակառակ միջազգային ճնշումին եւ զայն բանալու համար Արդարադատութեան Միջազգային Դատարանի Փետրուարի պարտաւորեցնող հրամանին, կը մնայ փակ:

**Երեխայի կաթի եւ մանուկներու խնամքի պակաս**

Գայեանէ Այդինեան՝ 39 տարեկան դպրոցի ուսուցչուհի եւ մայր եռեակ զաւակներու՝ ծնած ութամեայ շրջափակումի ընթացքին, կ'ապրի երեխայի կաթն ու փամփերսը անգտանելի դառնալու վախով:

«Չեմ կրնար քնանալ», ըսաւ *open-Democracy*-ին: «Օրը 24 ժամ կ'ապրիմ այս միտքերով: Ի՞նչ պիտի ընենք եթէ կաթը սպառի: Չենք կրնար երեխաները ուրիշ բանով սնել»:

Ըստ առողջապահութեան նախարար Թադէոսեանի՝ երեխայի կաթը հազուագիւտ է եւ մեծ պահանջ կայ անոր նկատմամբ: «Ան նոյնիսկ աւելի կարեւոր է քան դեղը», ըսաւ ան: «Այս մատակարարումները ձեռք բերելու համար մենք ներգրաւուած ենք ամենօրեայ բանակցութիւններով եւ շարունակական ջանքերով»:

Բոլոր վիրահատութիւնները դադրած են հիւանդանոցներուն մէջ, բացի կենսափրկիչ գործողութիւններէն, աւելցուց Թադէոսեան: Եւ աճելի պակաս կայ ցաւազրկող, արիւնի ճնշումի եւ սրտանօթի դեղերու:

«Մանկաբուժական խնդիրներէն մէկը պատուաստանիւթերու պակասն է», ըսաւ մանկական վիրաբոյժ Գրիգորեան: «Կը դեղագրենք դեղեր՝ որոնք չեն գտնուիր հիւանդանոցներուն մէջ»: Ինսուլինի պակասը եւս մեծ մտահոգութիւն մըն է շաքարախտով հիւանդ մանուկներուն եւ չափահասներուն համար, ըսաւ Թադէոսեան, որ մտահոգուած է թէ մանուկները կրնան ենթարկուիլ «լուրջ առողջական խնդիրներու»:

Գալով Այդինեանի միւս երկու զաւակներուն՝ 10 եւ 13 տարեկան, շուտով Սեպտեմբերին պիտի վերսկսին դպրոց յաճախել, հակառակ ուտելիքի, կազի եւ ելեկտրականութեան պակասին:

«Դժուար է անոնց համար գտնել գրենական ապրանքի խանութ», ըսաւ պատմութեան ուսուցիչը, աւելցնելով որ երբեմն վրդովուած կը զգայ չկարենալու համար բաւարար չափով կեդրոնանալ իր տարեց զաւակներուն վրայ:

«Կը փորձենք բաւարարուիլ մեր ունեցածով», ըսաւ ան: «Նոյնիսկ չեմ մտածեր իմ տարեց զաւակներուս ցանկութիւններուն մասին: Անոնք ինծի կ'օգնեն հոգ տանելու փոքրերուն»:

**Վիժումներ**

Ութամսեայ շրջափակումը աւելցուց ճնշըւածութեան եւ թերսնուցումի մակարդակները, 90% աւելցնելով յղի կիներու անեմիան եւ եռապատկելով վիժումի քանակը, ըստ Արցախի առողջապահական նախարարութեան յայտարարութեան:

Յուլիսին՝ շրջափակումէն եօթը ամիս ետք, Ռուզաննան ենթարկուեցաւ վիժումի: «Իմ չծնած երեխաս զոհն է պաշարումի այս դաժան պայմաններուն», ըսաւ ան:

Ան կը կարծէ՝ որ վիժումէն ետք յայտնուած ոտքի ցաւերը եւս կապ ունին թերսնուցումի, յարատեւօրէն քալելու եւ նպարեղէնի երկար շարքեր կանգնելու հետ:

Միաժամանակ, Ռուզաննայի ամուսինը կարիք ունի բաց սիրտի գործողութեան, բայց կը մերժէ Կարմիր Խաչի կողմէ փոխադրուիլ Երեւան: Իսկ իր 15 տարեկան աղջիկը երեք ամիս է չէ ունեցած պարբերականութիւն: Նոյնիսկ եթէ սկսի իր դաշտանային շրջանը, դեղարաններուն մէջ չկան առողջապահական արտադրութիւններ, որոնց փոխարէն մարդիկ կը դիմեն հազուստէ կամ զուլպայէ պատռած կտորներու գործածութեան:

Երեւանը միակ վայրն է՝ ուր անոնցմէ ոեւէ մէկը կրնայ ամբողջապէս քննուիլ եւ բուժուիլ, իսկ անոնք չեն ուզեր ձգել իրենց տունը՝ վախնալով անկարող ըլլալ վերադառնալ:

«Ամէն օր կը դառնայ աւելի դժուար», կ'ըսէ Ռուզաննա: «Գլխաւոր մտահոգութիւնը ապահովութեան եւ գոյատեւումի հարցն է»:

**Ծանօթագրութիւն խմբագիրի.** Սիրանոյշ Սարգսեան գրեց Ստեփանակերտի իր բնակարանէն՝ շրջափակումի տակ:

*openDemocracy* (https://www. opendemocracy.net/en/5050/mothers-nagorno-karabakh-artsakh-armenia-azerbaijan-children/)

24 Օգոստոս 2023

*Թարգմանութիւն անգլերէնէ՝ Ա.*

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1948 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٤٨ الخميس ١٤ سبتمبر ٢٠٢٣


## ԱՆՎԵՐՋԱՆԱԼԻ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԻՒՆԸ

1994-էն ի վեր Ղարաբաղը կը գտնուի անվերջանալի պատերազմի (յետայսու՝ ԱՊ) ժամանակակից հասկացողութեան մէջ: Առաջին Պատերազմը՝ որ սկսաւ տարբեր տրամաբանութեան մէջ, 1994-ի զինադադարէն սկսեալ պարտադիր կերպով տեղափոխուեցաւ ԱՊ-ի ծիրին մէջ: Այն ինչ որ մենք կ՚անուանենք զինադադարի խախտում 1994-էն մինչեւ այսօր, անբաժան մասն է ԱՊ-ի: Իսկ այս տեսակ պատերազմներէն կ՚օգտուին ջնջին վերնախաւ մը եւ անդրազգային ընկերութիւններու քանի մը դրամատէրերը: Սպանուածներու, վիրաւորեալներու, տեղափոխեալներու, անտունի մնացածներուն թիւը կրնայ հասնիլ միլիոնի: Անանուն զոհերու զանգուած մը՝ ի դիմաց քանի մը բարբարոս դրամատէրերու:

Ղարաբաղի ԱՊ-ը դուրս է ազգային պատումի նեղ սահմանէն, ան մաս կը կազմէ Հայաստանէն եւ Ազըրպէյճանէն անդին գտնուող զինարտադրական եւ այլ անդրազգային ընկերութիւններու շահերու տիրապետութեան տակ: Նիւթէս դուրս է այս յարաբերութիւններուն մասին խօսիլ, *Ջահակիր* բազմիցս գրած է արդէն: Նիւթիս նպատակն է շատ ընդհանուր գիծերու մէջ ցոյց տալ ԱՊ-ի տրամաբանութիւնը:

Հին պատերազմները՝ ինչ որ հայոց պատմութեան դասագիրքերուն մէջ կը սորվինք, այլեւս երկու դար է դարձած են անգործադրելի, իսկ շուրջ մէկ դար է վերածուած են ԱՊ-ի:

Նախադրամատիրութեան շրջանի դասական պատերազմը ունէր յստակ նպատակ՝ գաւթել ուրիշ տարածութիւն, տիրանալ անոր բարիքներուն եւ զօրացնել ինքզինքը: Նպատակին հասնելէն կամ ձախողութենէն ետք, կը վերջանար պատերազմը: Կար նշանակէտ: Այս պատերազմներուն համար կը հնարուէին նոր զէնքեր, որոնք կը ստեղծուէին անմիջական գործածութեան համար:

19-րդ դարու դրամատիրութիւնը փոխեց ամէն բան: Պատերազմներ հրահրուեցան զէնք արտադրելու սպառողականութեան համար, այնպէս ինչպէս բոլոր ապրանքները: Եթէ նախապէս դրամը պէտք էր զէնք շինելու համար, հիմա արդէն զէնքը ինքը դարձաւ դրամ կուտակելու աղբիւր: Եւ ինչպիսի աղբիւր: Աշխարհի ամենաշահութաբերներէն մէկը: Եւ այս դրամագլուխի կուտակումը նուազ քան մէկ դար է արդէն պատերազմը վերածեց ԱՊ-ի:

Պաղ Պատերազմը նմոյշ մըն էր «դասական» դրամատիրութեան վերջին շրջանի ԱՊ-ին, ահաբեկչութեան դէմ պատերազմը՝ նէօլիպերալիզմի շրջանի: Առաջինը ունէր համեմատաբար յստակ ու կայուն թիրախաւորումներ, երկրորդը ամենուր է՝ խճճուած ու յարափոփոխ յարաբերութիւններով, առանց ժամանակի եւ տարածութեան սահմանափակումի: Երկուքն ալ ԱՊ-ներ էին:

Խճճուած, յարափոփոխ ու անկայուն յարաբերութիւններու ծիրին մէջ է Ղարաբաղի պատերազմը, որուն անվերջանալիութիւնը սկիզբ առաւ նէօլիպերալիզմի վերջնականացումի առաջին տարիներուն:

Լոկ քանի մը օրինակներ մինչեւ այսօր գործող ԱՊ-ներէն:

Բրիտանացիներուն կազմակերպած 1947 թուականի Հնդկական Անկախութեան Յայտարարագիրը բաժնեց Հնդկաստանը Հնդկաստանի եւ Փաքիսթանի միջեւ: Բրիտանացիները դիտաւորեալ խնդրահարոյց ձգեցին էթնիք-կրօնական խնդիրներով բռնկուն սահմանամերձ Քաշմիրը, այնտեղ ստեղծելու համար Հնդկաստան-Փաքիսթան յաւերժական բախումի հնարաւորութիւն: Եւ յաջողեցան: Այսօր Քաշմիրը կը հանդիսանայ աշխարհի ամենէն ռազմականացուած տարածութիւններէն մէկը(1):

Իսրայէլի պատերազմը Պաղեստինի դէմ սկսաւ 1948-ին եւ տակաւին անոր վերջը չ՚երեւիր: Այսօրուայ օրով, Համասի տիրապետութեան տակ գտնուող Կազան բացառիկ պատճառաբանութիւն մըն է Իսրայէլի համար շարունակելու պատերազմական կացութիւնը եւ պատերազմը: Ամենօրեայ դրութեամբ կը սպաննուին պաղեստինցիները՝ աշխարհի աչքին առջեւ, աշխարհի լուռ մեղսակցութեամբ: Իսրայէլ՝ մէկը աշխարհի հզօրագոյն բանակներէն եւ ուժեղագոյն գաղտնի գործակալութիւններէն, ամէն կարելիութիւն ունի վերջացնելու պատերազմը եւ հաստատելու վերջնական խաղաղութիւն: Եւ կրնայ վստահ ըլլալ, որ այդ պարագային ոչ մէկ համասցի «ահաբեկիչ» ինքզինք պիտի պայթեցնէ Թէլ Աւիւի ճաշարանի մը մէջ:

1963-էն մինչեւ այսօր շարունակուող Մարոքի եւ Ալճերիոյ սահմանի բախումները ուղղակի արդիւնքն են ֆրանսական գաղութատիրական խառնակիչ քաղաքականութիւններուն(2): Երբեք վերջանալու հեռանկար չունեցող հակամարտութիւն:

Մինչեւ 1960-ականներուն վերջը Աֆղանիստանի ժողովուրդը կ՚ապրէր խաղաղ ու հանդարտ: Յետոյ յեղաշրջեալ փոքր վերնախաւ մը իր գոյութիւնը ապահովեց Խորհրդային Միութեան ապահովագրութեամբ, Ամերիկայի գաղտնի գործակալութիւնը ստեղծեց Թալիպանները, եւ պատերազմ՝ Խորհրդային ուժերու դէմ, ապա Սեպտեմբեր 11 եւ պատերազմ Թալիպանի դէմ, ներաֆղանական թշնամութիւններ եւ կոտորածներ, մինչեւ որ Պայտըն որոշեց ամերիկեան զօրքերը հեռացնել այնտեղէն: Վերջացա՞ւ պատերազմը: Քաւ լիցի: Ամերիկեան զօրքերը փոխարինուեցան մեծապէս մարզուած հակահաբեկչական խումբերով, ապահովելու համար ամերիկեան տիրապետութիւնը այնտեղ՝ մինչ պահպանելով ստեղծուած քաոսային վիճակը, յետագայ հնարաւոր բռնկումներու համար(3): Իսկ Թալիպանի ներկայ գոյութիւնը իշխանութեան գլուխը ինքնին հրահրում մը կրնայ ըլլալ յետագայ բախումներու, ինչպէս կը համառօտագրէ Ամին Սայքալ. «Ոչ ոք կրնայ ակնկալել հակամարտութեան աւարտը շուտով: Թալիպանը ունի շարժիչ ուժը, բայց աֆղան ժողովուրդը, եթէ ոչ անոր քաղաքական առաջնորդները, շարունակաբար փաստած են դիմացկուն ըլլալ ձախողութեան դիմաց: Հիմա անոնք պէտք է ինքզինքնին պաշտպանեն միջնադարեան արմատականներուն դէմ»(4):

Արդեօ՞ք Իրաքի պատերազմը վերջացած է:

Ուաթսոն հաստատութիւնը կը ներկայացնէ Իրաքի 2001 թուականի պատերազմին ↳ 3

ԱՐՑԱԽ

## ԱՐՑԱԽԸ ՈՒՆԻ ՆՈՐ ՆԱԽԱԳԱՀ

Արցախի իշխանական պայքարի երկար թաւալումներէ ետք (տես *Ջահակիր*ի անցեալ թիւը), Սեպտեմբեր 1-ին նախագահ Արայիկ Յարութիւնեան Ազգային Ժողովին կը ներկայացնէ իր հրաժարականը, դիմումին մէջ գրելով. «Ղեկավարուելով Արցախի Հանրապետութեան Սահմանադրութեան 98-րդ յօդուածով՝ Արցախի Հանրապետութեան Ազգային Ժողով եմ ներկայացնում Հանրապետութեան Նախագահի պաշտօնից իմ հրաժարականը»:

Իր վերջին հրամանով, Յարութիւնեան փոխեց պետնախարար Գուրգէն Ներսիսեանը եւ փոխարէնը նշանակեց Ապահովութեան Խորհուրդի քարտուղար Սամուէլ Շահրամանեան:

Ըստ վերջերս փոփուած ԱԺ կանոնակարգի օրէնքին, ռազմական դրութեան ժամանակ Արցախի նախագահ կ՚ընտրէ Խորհրդարանը՝ խմբակցութիւններուն առաջադրած թեկնածուներէն, «մինչեւ գործող նախագահի լիազօրութիւնների աւարտը նախագահի պաշտօնը թափուր մնալու դէպքում՝ ոչ շուտ, քան 7, ոչ ուշ, քան 10 օր յետոյ»: Արցախի մէջ հիմա ռազմական դրութիւն է: ԱԺ-ի կողմէ ընտրուած նախագահը պիտի պաշտօնավարէ մինչեւ գործող նախագահի լիազօրութիւններուն աւարտը՝ այսինքն մինչեւ 2025 թուական:

Ըստ Արցախի Սահմանադրութեան՝ նախագահը Խորհրդարանին մէջ կ՚ընտրուի պատգամաւորներու 2/3 ձայներով: Առաջին փուլին նախագահ չընտրելու պարագային, ամենաշատ ձայներ հաւաքած երկու թեկնածուները կ՚անցնին երկրորդ փուլ եւ ընտրութիւնը տեղի կ՚ունենայ ձայներու պարզ մեծամասնութեամբ: ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԻՆՉ-ՈՐ ՇԱՏ ԱՂՕՏ ՓՈՐՁԵՐ ԵՆՔ ԱՆՈՒՄ ԴԻՎԵՐՍԻՖԻԿԱՑՆԵԼՈՒ ՄԵՐ ԱՆՎՏԱՆԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՂԵԿԱՎԱՐ

Հատուած Վարչապետ Նիկոլ Փաշինեանի *La Repubblica* թերթի լրագրող Լուկա Ստէյնմանին տուած հարցազրոյցից.

— Վերջերս մի հարցազրոյցներից մէկում, երբ լրագրողն ինձ հարց տուեց, եւ ես հասկանում եմ այդ հարցը, որովհետեւ դա տարածուած ընկալում է ոչ միայն մեր տարածաշրջանից դուրս, այլեւ հէնց մեր տարածաշրջանում, հէնց մեր երկրում, որովհետեւ մենք աշխարհը, կարծես, նաեւ քաղաքական քարտէզը սովոր ենք ընկալել Արեւմուտքի եւ Արեւելքի արանքում կամ Արեւմուտքի եւ Ռուսաստանի արանքում: Եւ լրագրողը հարցրեց՝ ինչպէ՞ս էք դիրքաւորւում կամ Դուք գտնւում էք Արեւմուտքի եւ Ռուսաստանի արանքում, ես ասացի, որ գիտէք, իրականում սխալ տպաւորութիւն է, որ մենք Ռուսաստանի եւ Արեւմուտքի արանքում ենք: Մենք իրականում Վրաստանի, Թուրքիայի, Իրանի եւ Ադրբէջանի արանքում ենք, եւ հետեւաբար՝ մեր պետութեան անվտանգութեան շահերն առաջին հերթին պարտադրում են, որպէսզի մենք կայուն եւ կարգաւորուած յարաբերութիւններ ունենանք մեր հարեւանների հետ, իհարկէ, որեւէ կերպ չնսեմացնելով աշխարհաքաղաքական կենտրոնների դերը, ազդեցութիւնը, նշանակութիւնը եւ կարեւորութիւնը մեր տարածաշրջանի եւ իհարկէ, նաեւ մեր երկրի համար:

Լրագրող Լուկա Ստէյնման — Կ՚ուզենայի մէջբերել Ձեր վերջերս արած յայտարարութիւնը Հայաստանի անկախութեան հռչակագրի օրուայ առթիւ, երբ Դուք ասացիք, որ «Մեր կառավարութեան կողմից որդեգրուած խաղաղութեան օրակարգն անկախութեան օրակարգն է, որովհետեւ եթէ ունենանք խաղաղութիւն, կ՚ունենանք անկախութիւն: Քանի դեռ չունենք խաղաղութիւն, ԽՍՀՄ ուրուականը թեւածելու է մեր երկնքում, մեր տարածաշրջանի երկնքում»: Կարելի՞ է ասել, որ այն, ինչ հիմա Դուք անում էք, որ փորձում էք հասնել խաղաղութեան, նաեւ միջոց է դառնալու աւելի անկախ Մոսկուայից:

Վարչապետ — Իսկ ի՞նչ է նշանակում լինել անկախ: Անկախ նշանակում է աւելի պակաս կախուածութիւն ունենալ, օրինակ, անվտանգութեան ոլորտում, կամ անվտանգութեան ոլորտի քաղաքականութիւնները դիվերսիֆիկացնել: ↳ 4

# ԽՄԲԱՎԱՐ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԸ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Խմբավարութիւն եւ նուագավարութիւն**

1945 Հոկտեմբեր 28, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. օրուան տօնակատարութիւն, կազմակերպութեամբ Աղեքսանդրիոյ Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան: Հանդէսը կը բացուի *Մշակ բանուորով*, Երիտասարդացի անդամներէն կազմուած երգչախումբի կատարումով, ընկ. Ափրիկեանի ղեկավարութեամբ(42): Առաջին արձանագրութիւն մը խմբավարութեան բնագաւառին մէջ, որ շուտով պիտի դառնար իր երաժշտական կենսագրութեան հիմնակորիզը:

1946 Յունուար 26, Աղեքսանդրիոյ Լիսէ Ֆրանսէ, գեղարուեստական երեկոյթ, կազմակերպութեամբ Հայ Արիներուն: Խմբերգները կը ղեկավարէ Ափրիկեան(43):

1947 Մարտ 9, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան հանդէս: Ափրիկեան կը ղեկավարէ Մաէսթրէօ Սանթոնոչիթոյի 10 հոգինոց նուագախումբը, կատարելով իր իսկ մշակած *Արշին ու գիւղացին* օփերէթը մեներգիչներու, երգչախումբի եւ նուագախումբի համար(44):

1948-ին կը հիմնէ Երիտասարդաց Միութեան Երգչախումբը (Դաշնակցութեան Երիտասարդաց Միութեան Աղեքսանդրիոյ մասնաճիւղին յարող), որ կ'արձանագրէ երկու երգահանդէսներ:

Առաջինը՝ 1948 Յուլիս 18, Յառաջդիմասէր, սգահանդէս նուիրուած ընկերներ Լիպարիտ Նազարեանցի, Նիկոլ Աղբալեանի, Համօ Օհանջանեանի եւ Աւետիս Ահարոնեանի: Երիտասարդաց Միութեան Երգչախումբը կ'երգէ *Ով մեծասքանչ* եւ *Լռեց ամպերը*, «խորունկ տպաւորութիւն թողլով ներկաներուն վրայ»(45):

Երկրորդը՝ 1949 Մայիս 29, Յառաջդիմասէր, Մայիս 28-ի տօնակատարութիւն: Նուագախումբը կը կատարէ եգիպտական քայլերգը, ապա Հ.Յ.Դ. Երիտասարդաց Միութեան 60 հոգինոց երգչախումբը, նուագախումբի նուագակցութեամբ, կ'երգէ *Յառաջ նահատակ*: Իսկ երգչախումբը կը կատարէ *Իբրեւ արծիւ*, *Հայ եղբայրներ*, *Գարուն ա* եւ *Թող կորնչին*: Հանդէսը կը փակուի նուագախումբ-երգչախումբի *Մշակ բանուորով*: Նուագախումբն ու երգչախումբը կը ղեկավարէ ընկ. Ափրիկեան(46):

Երկուքին միջեւ, 1949 Ապրիլ 24-ին, Յառաջդիմասէր, կը կայանայ Ապրիլ 24-ի սգահանդէս, ուր եռաձայն երգչախումբը (առանց անուանումի) կ'երգէ *Տէր, կեցո՛ դու զհայս*, *Մշոյ ողբը*, *Տէր ողորմեա* եւ *Մենք պէտք է կռուինք*, ղեկավարութեամբ ընկ. Ափրիկեանի(47):

**Ստեղծագործութիւն**

19 տարեկանէն կը սկսին ի յայտ գալ Ափրիկեանի յօրինումները: Առաջին արձանագրութեան մը կարելի է հանդիպիլ 1945 Յունուար 28-ի Գահիրէի Նաւասարդ Ակումբի գեղարուեստական հանդէսին, ուր դաշնակի վրայ կը նուագէ իր հեղինակած Փրելիւտը(48):

1947 Մարտ 9, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան հանդէս: Մաէսթրէօ Սանթոնոչիթոյի 10 հոգինոց նուագախումբը կը կատարէ ընկ. Ափրիկեանի Պարքարոլը, «արժանանալով երկարատեւ ծափահարութեանց»: Նոյն հանդէսին կը բեմադրուի Շաւարշ Փափազեանի երաժշտութեամբ *Արշին ու գիւղացին* օփերէթը (3 արար) երեք դերակատարներու, երգչախումբի եւ նուագախումբի համար, զոր դաշնաւորած եւ մշակած էր Ափրիկեան՝ «զայն դարձնելով հաճելի ու նորաձեւ»: Սանթոնոչիթոյի նուագախումբը կը վարէ Ափրիկեան: «Շատ յաջող էին թէ՛ օրքէսթրը, թէ՛ երգերը եւ թէ՛ խաղարկութիւնը», կ'արձանագրէ Ներսէս Ղազիկեան(49):

**Դասախօսութիւն եւ խօսք**

1941 Մայիս 14, Յառաջդիմասէր, դասախօսութիւն Հայ Արիներու փոխ-առաջնորդ Ափրիկեանի, նիւթ՝ *Հայ կեանքը 1860-էն մինչեւ մեր օրերը*: «Դեռատի ատենախօսը իր նիւթը երեք մասի բաժնեց ու զատ-զատ ներկայացուց 1860-1900, 1900-1920 եւ 1921-էն մինչեւ մեր օրերը յաջողութեամբ: Յուսալից ենք դպրոցական արիներէն»(50):

1946 Մարտ 28, Յառաջդիմասէր, գրական երեկոյ նուիրուած Միսաք Մեծարենցի, որուն կեանքը եւ գործը կը ներկայացնէ Ափրիկեան(51):

1946 Մայիս 26, Յառաջդիմասէր, պատանիներու Մհեր խումբի տարեկան հանդէս: Մայիս 28-ի փառաբանութեամբ խօսք կ'առնէ ընկ. Ափրիկեան(52):

**Այլ գործունէութիւններ**

Կուսակցական ծիրէն ներս կը մասնակցի այլ գործունէութիւններու:

1944 Հոկտեմբեր 15-ի Հ.Յ.Դ. 54-րդ տարեդարձին եւ 1944 Հոկտեմբեր 26-ի Թարգմանչաց երեկոյին կը մասնակցի կենդանի պատկերի պատրաստութեամբ(53):

1946 Փետրուար 3, Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան տարեկան գեղարուեստական հանդէսին (Յառաջդիմասէր) բեմադրուած Մոլիէրի *Բռնի ամուսնութիւն* միարար կատակերգութեան մէջ կը խաղայ Մանկասարի դերը(54):

## 2. *ՀԵՔԻԱԹ* ՕՓԵՐԱ ԵՒ ԱՌԱՋԻՆ ԱՆՀԱՏԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿ (1949)

*Հեքիաթ* օփերայի (օփերէ՞թ) բեմադրութիւնը հանդիսացաւ 23-ամեայ Ափրիկեանի կենսագրութեան առաջին անհատական ձեռնարկը: Ան մշակեց նիւթն ու յօրինեց երաժշտութիւնը, պատրաստեց ու ղեկավարեց նուագախումբն (15 հոգի) ու քառաձայն երգչախումբը (40 հոգի), եւ հանդիսացաւ երաժըշտական պատասխանատուն:

Աղեքսանդրիոյ Յառաջդիմասէրի մէջ տեղի կ'ունենան երկու բեմադրութիւններ՝ 1949 Սեպտեմբեր 10 եւ 11(55), որոնց յաջողութիւնը կը մղէ կազմակերպել երրորդ մը Սեպտեմբեր 18-ին(56):

Դերակատարներ՝ Սարգիս Սարգիսեան (իշխան), Անահիտ Յոխիկեան (որբուհի), Յովհաննէս Կանիմեան եւ Արա Խաչատուրեան (որսորդ եղբայրներ), Պր. Կ. Պասմաճեան եւ Պր. Ս. Մօզեան (փայտահատներ), Սիրվարդ Գապասագալեան (մենապարուհի): Բեմադրութիւն եւ ծպտում՝ Սարգիս Սարգիսեան, բեմայարդարանք՝ Երուանդ Ափրիկեան:

«Ներկայացման արդիւնքը մեզ բերաւ այն եզրակացութեան, թէ ղեկավարը՝ ընկ. Կ. Ափրիկեան, ո՛չ միայն աշխատած, այլ եւ տառապած է օփերային յաջողութիւնը ապահովելու համար: Երիտասարդ եւ արժէքաւոր երաժիշտ մըն է անկասկած, բայց պէտք է ըլլայ աւելի պաղարիւն», կը գնահատէ կուսակցական մամուլը(57):

## 3. ՅԱՌԱՋԴԻՄԱՍԷՐԻ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ-ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ (1950)

1950-ին Ափրիկեան կը կազմէ Յառաջդիմասէրի Երգչախումբ-Նուագախումբը, որ կ'ունենայ մէկ տարուայ գործունէութիւն:

Ան 1950 Մայիս 2-ին ելոյթ կ'ունենայ եգիպտական ռատիոյէն, հնչեցնելով Կոմիտաս Վարդապետի, Բարսեղ Կանաչեանի եւ Կարպիս Ափրիկեանի գործերը, ինչպէս նաեւ *Հեքիաթ* օփերայէն հատուածներ, մեներգողներ՝ Սարգիս Սարգիսեան եւ Անահիտ Յոխիկեան(58):

1950 Մայիս 28, Աղեքսանդրիոյ Լիսէ Ֆրանսէի սրահ, Մայիս 28-ի տօնակատարութիւն: Յառաջդիմասէրի Երգչախումբ-Նուագախումբը կը կատարէ՝ Եգիպտական քայլերգ, *Յառաջ նահատակ*, *Հայ եղբայրներ*, *Դիլբար ջան*, *Լորիկ* (մենակատարներ՝ Օր. Ի. Պրուսալեան եւ Արա Խաչատուրեան), *Թող կորնչին* եւ Կոմիտասէն երեք խմբերգներ՝ *Եար ջան արի*, *Էսօր Ուրբաթ*, *Ջար զընգը*: Նուագախումբը կը կատարէ Ռիմսքի-Քորսաքովի «Chanson hindou»-ն, Ափրիկեանի «Բարի եւ չար ոգիներու պարը» (*Հեքիաթ* օփերայէն), Անթոն Ռուպինշթէյնի *Trot de cavalerie*-ն, եւ սպանիական ***Olé*** *caramba*-ն: «Յառաջդիմասէրի երգչախումբ-նուագախումբը կրցաւ ոչ միայն հոծ բազմութիւնը պահել խոր երկիւղածութեան մէջ, այլ նաեւ եկաւ ցոյց տալու, որ ինք լաւագոյն երգչախումբն է»(59):

1950 Օգոստոս 6, Կամքի դաշտ, դաշտապարահանդէս: Յառաջդիմասէրի Երգչախումբ-Նուագախումբը կը կատարէ Կոմիտասի երգեր, ժողովրդական պարերգ մը, եւ Ափրիկեանի մշակած *Հեքիաթ* օփերէթէն որսորդներու բաժինը: «80 հոգինոց այս երգչախումբ-նուագախումբը, շնորհիւ իր տաղանդաւոր ղեկավարին, ոչ միայն խոր հիացում եւ խանդավառութիւն առաջ բերաւ ներկայ հասարակութեան մէջ, այլ եկաւ ցոյց տալու, թէ եգիպտահայ գաղութին մէջ առաջնակարգ տեղ մը կը գրաւէ ինք»(60):

1950 Նոյեմբեր 5, Լիսէ Ֆրանսէի սրահ, Հ.Յ.Դ. 60-ամեակի տօնակատարութիւն: Յառաջդիմասէրի Երգչախումբ-Նուագախումբը կ'երգէ Կոմիտասի *Ջիգ տու, քաշի* եւ *Սօնա եարը*, եւ Ափրիկեանի *Հօյ նարը* (մեներգիչներ՝ Օր. Վարձպետ եւ Լեւոն Սայլաքեան)(61):

(Շար. 3)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

42. *Յուսաբեր*, 25 Հոկտեմբեր 1945: «Դաշնակցութեան Օրը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 30 Հոկտեմբեր 1945:

43. «Սկաուտներու հանդէսը», *Արաքս*, 2 Փետրուար 1946:

44. Թղթակից, «Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան տարեկան գեղ. հանդէսը», *Յուսաբեր*, 20 Մարտ 1947: Փարոս [Ներսէս Ղազիկեան], «Հանդէս եւ ներկայացում», *Սաւառնակ*, 22 Մարտ 1947:

45. Թղթակից, «Սգահանդէս», *Յուսաբեր*, 28 Յուլիս 1948:

46. Թղթակից, «Մայիս 28-ի փառաշուք տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 4 Յունիս 1949:

47. Թղթակից, «Ապրիլ 24-ի սգահանդէսը Յառաջդիմասէրի մէջ», *Յուսաբեր*, 2 Մայիս 1949:

48. «Երիտասարդներու հանդէս-հաւաքոյթը», *Յուսաբեր*, 31 Յունուար 1945:

49. Թղթակից, «Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան տարեկան գեղ. հանդէսը», *Յուսաբեր*, 20 Մարտ 1947: Փարոս [Ներսէս Ղազիկեան], «Հանդէս եւ ներկայացում», *Սաւառնակ*, 22 Մարտ 1947:

50. Հայ Արի, «Աղեքսանդրիոյ Հայ Արիներու կեանքէն», *Յուսաբեր*, 7 Յունիս 1941:

51. *Յուսաբեր*, 22 Մարտ 1946:

52. Թղթակից, «Կեանքը Յառաջդիմասէրի մէջ», *Յուսաբեր*, 31 Մայիս 1946:

53. Թղթակից, «Հ.Յ.Դ. օրուան տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 25 Հոկտեմբեր 1944: Պ[երճ] Մ[ոմճեան], «Յիշատակի երեկոյ նուիրուած Թարգմանիչներուն», *Յուսաբեր*, 11 Նոյեմբեր 1944:

54. *Յուսաբեր*, 1 Փետրուար 1946:

55. *Յուսաբեր*, 1 Սեպտեմբեր 1949: Թղթակից, «*Հեքիաթ* օփերայի ներկայացումը», 17 Սեպտեմբեր 1949:

56. *Յուսաբեր*, 13 Սեպտեմբեր 1949: «*Հեքիաթ* օփերայի երրորդ ներկայացումը», *Յուսաբեր*, 8 Հոկտեմբեր 1949:

57. Թղթակից, «*Հեքիաթ* օփերայի ներկայացումը», *Յուսաբեր*, 17 Սեպտեմբեր 1949:

58. «Յառաջդիմասէրի Երգչախումբ-Նուագախումբը պետական ռատիոկայանէն», *Յուսաբեր*, 28 Ապրիլ 1950:

59. *Յուսաբեր*, 26 Մայիս 1950: Թղթակից, «Հայաստանի անկախութեան տարեդարձի տօնակատարութիւնը», *Յուսաբեր*, 6 Յունիս 1950:

60. *Յուսաբեր*, 21 Յուլիս 1950: Թղթակից, «Յառաջդիմասէրի կազմակերպած տարեկան մեծ ձեռնարկը ի նպաստ ուսանողաց ֆոնտին», *Յուսաբեր*, 18 Օգոստոս 1950:

61. *Յուսաբեր*, 31 Հոկտեմբեր 1950: Թղթակից, «Հ.Յ.Դ. վաթսունամեակի փառահեղ տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 20 Նոյեմբեր 1950:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱԴՐԲԷՋԱՆՆ Ի ՑՈՅՑ Է ԴՆՈՒՄ ԸՆԴԴԷՄ ԼՂ-Ի ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՈՐ ՌԱԶՄԱԿԱՆ ՍԱԴՐԱՆՔԻ ԻՐ ՄՏԱԴՐՈՒԹԻՒՆԸ. ՓԱՇԻՆԵԱՆ

Ադրբէջանն օրեր շարունակ զօրքեր է կուտակում Լեռնային Ղարաբաղի շփման գծի եւ Հայաստան-Ադրբէջան սահմանագծի երկայնքով, Սեպտեմբերի 7-ի կառավարութեան նիստի ժամանակ յայտարարեց վարչապետ Նիկոլ Փաշինեանը, շեշտելով՝ նախորդ շաբաթուայ ընթացքում ռազմաքաղաքական իրավիճակը տարածաշրջանում էականօրէն սրուել է:

Հայաստանի ինքնիշխան տարածքի նկատմամբ ոտնձգութիւնների քաղաքականութիւնը շարունակւում է, նաեւ ասաց գործադիրի ղեկավարը:

Յիշեցնելով Սեպտեմբերի 1-ի Սոթքի դէպքերը, որի հետեւանքով 3 հայ զինուոր զոհուեց, հրադադարի ռեժիմը խախտելու մասին լուրերի տարածումը Ադրբէջանի կողմից, Լաչինի միջանցքի արգելափակուած լինելը, Լեռնային Ղարաբաղում գագաթնակէտին հասած հումանիտար ճգնաժամը, Փաշինեանը շեշտեց՝ Ադրբէջանն այս գործողութիւններով ի ցոյց է դնում ընդդէմ Լեռնային Ղարաբաղի եւ Հայաստանի Հանրապետութեան նոր ռազմական սադրանք ձեռնարկելու իր մտադրութիւնը:

«Նման սադրանքը հիմնաւորելու համար շրջանառութեան մէջ են դրւում կեղծ եւ իրականութեանը չհամապատասխանող թէզեր», - ասաց գործադիրի ղեկավարը, չյստակեցնելով, թէ ինչ թէզերի մասին է խօսքը, սակայն յայտարարեց՝ իրավիճակն այնպիսին է, որ միջազգային հանրութիւնը, ՄԱԿ-ի ԱԽ անդամ երկրները պէտք է լրջագոյն միջոցներ ձեռնարկեն՝ տարածաշրջանում նոր պայթիւնը կանխելու համար:

Փաշինեանն ընդգծեց Հայաստանի հաւատարմութիւնը 2021-ի Դեկտեմբերի 14-ին Բրիւսէլում, 2022-ի Հոկտեմբերի 6-ին Պրահայում եւ 2023-ի Մայիսին Բրիւսէլում ձեռք բերուած պայմանաւորուածութիւններին, ինչպէս նաեւ 2020-ի Նոյեմբերի 9-ի եռակողմ յայտարարութեանը, էական համարեց ԼՂ հայութեան իրաւունքների եւ անվտանգութեան հասցէագրման համար Բաքու-Ստեփանակերտ երկխօսութիւնը՝ միջազգային մեխանիզմի շրջանակներում եւ Լաչինի միջանցքի ապաարգելափակումը՝ համաձայն Արդարադատութեան Միջազգային Դատարանի 2023-ի Փետրուարի 22-ի եւ Յուլիսի 6-ի որոշումների:

«Այս ամէնի հենքի վրայ Հայաստանի Հանրապետութիւնը պատրաստ է եւ ցանկանում է խաղաղութեան եւ յարաբերութիւնների կարգաւորման պայմանագիր կնքել Ադրբէջանի հետ, եւ մենք մեր հաւատարմութիւնն ենք արտայայտում խաղաղութեան օրակարգին», - եզրափակեց վարչապետը:

## ԹՈՒՄՈՆ ԸՆԴԼԱՅՆՒՈՒՄ Է ԵՐԵՒԱՆՈՒՄ. ԵՐԵՔ ՆՈՐ «ԹՈՒՄՕ ՏՈՒՓ» Է ԲԱՑՈՒԵԼ ՆՈՐ ՆՈՐՔՈՒՄ

Թումօ ստեղծարար տեխնոլոգիաների կենտրոնն ընդլայնւում է Երեւանում. Թումօ Հայաստան նախաձեռնութեան շրջանակում երեք «Թումօ տուփ» է տեղադրուել Նոր Նորքում՝ Շոպրոնի 77 հասցէում՝ Վազգէն Սարգսեանի անուան ռազմական համալսարանի տարածքում: Այստեղ յետագայում կը կառուցուի Երեւանի երկրորդ Թումօ կենտրոնը, որը կ՚ունենայ 6000 ուսանող ընդունելու հնարաւորութիւն:

Ինչպէս *Արմենպրէս*ին տեղեկացրին Թումօ ստեղծարար տեխնոլոգիաների կենտրոնից, Նոր Նորքի Թումօ կենտրոնը կ՚աւելացնի մայրաքաղաքում ուսանողների թիւը՝ կրճատելով պատանիների՝ գրանցումից մինչեւ առաջին դաս սպասման ժամանակահատուածը: Մինչ կենտրոնի կառուցումը այդ նպատակին կը ծառայեն նորաբաց տուփերը, որոնք այժմ ունեն 1200 ուսանող ընդունելու հնարաւորութիւն:

Թումօ Հայաստան նախաձեռնութեան միջոցով պլանաւորւում է կառուցել 110 տուփերի եւ 16 կենտրոնների ցանց, որը Թումոյի ծրագիրը հասանելի կը դարձնի Հայաստանի եւ Արցախի բոլոր երիտասարդներին:

## ԼԻԼԻԹ ՄԱԿՈՒՆՑԸ ԵՒ ԿԱՐՕ ՓԱՅԼԱՆԸ ՔՆՆԱՐԿԵԼ ԵՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԼՂ-Ի ԱՆՎՏԱՆԳԱՅԻՆ ԻՐԱՎԻՃԱԿԸ, ՀԱՅ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ԱՄՆ-ում Հայաստանի դեսպան Լիլիթ Մակունցը Սեպտեմբերի 8-ին հանդիպել է հայազգի քաղաքական գործիչ, Թուրքիայի խորհրդարանի նախկին պատգամաւոր Կարօ Փայլանի հետ:

*Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ այս մասին յայտնում են ԱՄՆ-ում Հայաստանի դեսպանութիւնից:

Հանդիպման ընթացքում զրուցակիցները մտքեր են փոխանակել Հայաստանի եւ Լեռնային Ղարաբաղի անվտանգային իրավիճակի, հայ-թուրքական յարաբերութիւնների, ինչպէս նաեւ տարածաշրջանային զարգացումների վերաբերեալ:

## ԱՄԵՆԱՇԱՏ ՀԱՅԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

*Խօսքը միայն Հայերու մասին է, միայն Եգիպտոսի մէջ:*

Ամենաշատ գրած մտաւորականները՝ **Միքայէլ Կիւրճեան, Վահան Թէքէեան, Արշակ Ալպօյաճեան, Աւետիս Եափուճեան** (եգիպտահայ մամուլ եւ գիրք):

Եգիպտահայ մամուլի ամենաշատ գրած կինը՝ **Վիքթորիա Արշարունի** (գրած՝ 1917-1971):

Եգիպտահայ մամուլի ամենէն երկարատեւ գրողը՝ **Միքայէլ Ս. Կիւրճեան** (գրած՝ 1901-1965):

Եգիպտահայ մամուլի մէջ ամենաշատ բանաստեղծութիւն տպագրած անձը՝ **Արսէն Երկաթ** (նկատի չունիմ անվերջանալի քանակութեամբ անմակարդակ «երգիծական» բանաստեղծութիւններու տպագրութիւնը):

Ամենաշատ արձակ գրականութիւն թարգմանած անձը՝ **Տ'Արգոս** (թարգմանած՝ 1925-1935):

Ամենաշատ բանաստեղծութիւն թարգմանած անձը՝ **Վարուժան Գազանճեան** (1980-էն մինչեւ այսօր, մեծ մասամբ անտիպ):

Ամենաշատ թատերգութիւն գրած անձը՝ **Վարուժան Գազանճեան** (մեծ մասամբ անտիպ):

Ամենաշատ բեմադրուած հայերէն թատերգութիւնը՝ Երուանդ Օտեանի եւ Միքայէլ Կիւրճեանի ***Չարշըլը Արթին աղա*** (*Ֆրանքօ-թրքական պատերազմ*):

Ամենաշատ ցուցադրած նկարիչ-նկարչուհին՝ **Աշոտ Զօրեան** (երկրորդը՝ **Բիւզանդ Կոճամանեան**, երրորդը՝ **Սիմոն Սամսոնեան**):

Ամենաշատ ցուցադրած նկարչուհին՝ **Արթէ (Արտեմիս) Թոփալեան**:

Ամենաշատ ելոյթ ունեցած դաշնակահարը՝ **Զաւէն Խաչատուրեան** (1927-1991):

Ամենաշատ ստեղծագործութիւններ յօրինած երաժշտահանը՝ **Ֆուատ Ալ-Զահէրի (Կարապետ Փանոսեան)**:

Եգիպտահայ մամուլին մէջ ամենաշատ յիշատակուած անունը՝ **Ալեքսանդր Սարուխան** (*Արեւ* օրաթերթ՝ 1923-1977, երգիծանկար, ինքնագիր յօդուած, ձեռնարկ):

Եգիպտահայութեան մէջ ամենախանդավառ ընդունելութիւն գտած այցելու բարձրաստիճան պաշտօնեան՝ **Ալեքսանդր Խատիսեան** (1920):

Եգիպտահայութեան մէջ ամենախանդավառ ընդունելութիւն գտած այցելու մտաւորականը կամ արուեստագէտը՝ **Սիլվա Կապուտիկեան** (1963):

Եգիպտահայութեան մէջ ամենախանդավառ ընդունելութիւն գտած այցելու խումբը՝ **Հայաստանի Երգի Պարի Համոյթ** (1959):

Ոչ-հայկական շրջանակներու մէջ ամենախանդավառ ընդունելութիւն գտած այցելու հայը՝ **Արամ Խաչատրեան** (1961):

Պատրաստեց՝ Հ. Ա.

1

## ԱՆՎԵՐՋԱՆԱԼԻ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԻՒՆԸ

շարունակուող ազդեցութիւնը քսան տարուայ թաւալքով. «Թէեւ ԱՄՆ կառավարութիւնը Իրաքի պատերազմը պաշտօնապէս վերջացուց 2011-ին, յարձակումի եւ գալթումի յետահարումները, ինչպէս նաեւ յետագայ եւ շարունակական ռազմական միջամտութիւնները ունեցան մարդկային, ընկերային, տնտեսական եւ բնապահպանական ահռելի ազդեցութիւն: 315,000 մարդ մահացաւ ուղղակի պատերազմի բռնութենէն Իրաքի մէջ, մինչ պատերազմի մահաբեր ազդեցութիւնը կը շարունակէ սպաննել եւ հիւանդութեան ենթարկել ուրիշ հարիւր հազարաւորներ»(5):

Պատերազմի արձագանգային մահաբեր ազդեցութիւնը շարունակութիւնն է պատերազմի: ԱՊ-ի բաղկացուցիչն է:

Պատերազմ, ուրեմն կործանում, ուրեմն վերականգնումի կարելիութիւն: Բայց ի՞նչն է որ կը վերականգնուի: Ուաթսոն հաստատութիւնը կը պատասխանէ. «Իրաքն ու Աֆղանիստանը վերականգնելու նպատակով ԱՄՆ կառավարութեան տրամադրած ֆինանսաւորումը յատկացուեցաւ սպառազինելու երկու երկիրներուն ապահովութեան (արեւելահայերէն՝ անվտանգութեան) ուժերը: Մարդասիրական օգնութեան եւ քաղաքացիական հասարակութեան վերակառուցումին համար սահմանուած դրամին մեծ մասը կորսուեցաւ խարդախութեան, վատնումի եւ չարաշահումի մէջ»(6): Կը նշանակէ, վերականգնում պատերազմական ուժերու՝ նոր պատերազմի համար:

Սուրիա եւ Եմէն, ահաւասիկ երկու ուրիշ ցայտուն ու ահաւոր օրինակներ ԱՊ-ի:

Իմփերիալ ուժերը օգտուեցան Սուրիոյ եւ Եմէնի մէջ յառաջացած յեղափոխական նախնական շարժումներէն՝ իբրեւ 2011-ի արաբական յեղափոխութիւններու մաս, տապալելու համար այդ յեղափոխութիւնները՝ ոչ ի նպաստ իշխող արաբ բռնակալներուն, այլ ի նպաստ իրենց, յառաջացնելով մինչեւ այսօր շարունակուող ԱՊ: Փոխհամաձայնութեամբ, բայց մրցակցային ոչ-բարեկամական հողի վրայ, ԱՄՆ-ը, Ռուսաստանը, Թուրքիան եւ Իսրայէլը ռմբակոծեցին Սուրիան, այնտեղ հաստատելէ եւ բռնկեցնելէ ետք իսլամական ծայրայեղականները:

Եմէնի խաղին մէջ մտան Արաբական Սէուտիան, Իրանը, իրենց ետեւը ունենալով այլ ուժեր:

Տակաւին չենք խօսիր սեւ Ափրիկէի պատերազմներուն մասին, սեփականացնելու համար անոր շատ հարուստ ընդերքը արեւմտեան, ռուսական եւ չինական անդրազգային ընկերութիւններու կողմէ, միջնորդութեամբ եւ աջակցութեամբ ափրիկեան պետութիւններու փտացած առաջնորդներու՝ որոնք տեղադրուած են Ֆրանսայի, Ռուսաստանի եւ այլոց կողմէ: Ռուսաստան, օրինակ, Վակնէր Խումբի 5000 անդամներ ունի Ափրիկէի մէջ (Կեդրոնական Ափրիկէի Հանրապետութիւն, Լիպիա, Մալի, Սուտան, եւ այլն)՝ որոնք տեղական իշխանութիւններուն կը մատակարարեն «ապահովութեան» ծառայութիւններ, ապահովելու համար Ռուսաստանի տիրապետութիւնը հանքային հումքերու(7): Ապահովութեան ծառայութիւնը ուրիշ բան չէ եթէ ոչ զէնք, կռիւ, պատերազմի պատրաստութիւն: Ֆրանսական յետգաղութատիրական միջամտութիւնները Ափրիկէի ռազմական եւ «ապահովութեան» գործերու մէջ յայտնի են բոլորին:

Աւելի քան երբեք, Ամերիկան, Ռուսաստանը եւ ուրիշ քանի մը «հզօր»-ներ այսօր մնայուն ռազմակայաններ ունին տարբեր երկիրներու մէջ: Մնայուն՝ այլ ոչ ժամանակաւոր: Ի՞նչ կ'ընէ հզօր երկրի մը ռազմակայանը ուրիշ երկրի մը տարածութեան վրայ, եթէ ոչ հաստատել պատերազմի յաւերժականութիւնը գործնական նկատառումներով:

Պատերազմը ինքնին յառաջ կը բերէ ուրիշը. «Կատաղի ծայրայեղականութիւնը պիտի չվերջանայ «վատ մարդիկը սպաննելով»: Յաւելեալ ռմբակոծութիւնը պատճառ կը հանդիսանայ որ տեղական ժողովուրդները տրամադրուին Միացեալ Նահանգներուն դէմ, հրահրեն քարոզչութեան եւ

4

# ՑԱՆԱԿԻՐ

## 1 ԻՆՉ-ՈՐ ՇԱՏ ԱՂՕՏ ՓՈՐՁԵՐ ԵՆՔ ԱՆՈՒՄ...

Ես մի շատ կոնկրէտ օրինակ բերեմ, որը գուցէ այդ կոնտեքստով չի խօսւում, բայց մենք բոլորս եւ նաեւ Հայաստանի քաղաքացիները, ենթադրում եմ, գիտեն դրա մասին, բոլորը գիտեն, բայց երբ դրա մասին խօսւում է, դա այլ արժէք է ստանում:

Տեսէք, Հայաստանի անվտանգային ճարտարապետութիւնը 99,999 տոկոսով կապուած է եղել Ռուսաստանի հետ, այդ թւում՝ զէնքի, ռազմամթերքի ձեռքբերման տրամաբանութեան մէջ: Բայց այսօր, երբ Ռուսաստանը զէնք, զինամթերքի եւ ռազմամթերքի կարիք ունի, այս իրավիճակում հասկանալի է, որ եթէ ուզենայ էլ Ռուսաստանի Դաշնութիւնը չի կարող ապահովել Հայաստանի անվտանգութեան կարիքները: Այսինքն՝ այս օրինակը մեզ պէտք է ցոյց տայ, որ անվտանգային ոլորտում կախուածութիւն կամ կապուածութիւն ունենալ միայն մի տեղից, դա ինքնին ռազմավարական սխալ է: Եւ մենք պոստ ֆակտում այդ սխալի դառը պտուղները ճաշակելուց յետոյ է միայն, որ ինչ-որ շատ աղօտ փորձեր ենք անում դիվերսիֆիկացնելու մեր անվտանգային քաղաքականութիւնը, այդ թւում՝ այլ հայեացքով նայելով մեր տարածաշրջանին, որովհետեւ այլ բան է, երբ մենք մեր տարածաշրջանում ապրում ենք հետեւեալ տրամաբանութեամբ, որ մենք մեր հարեւանների հետ անընդհատ կոնֆրոնտացիոն տրամաբանութեան մէջ ենք, բայց ոչինչ, ինչ-որ մէկը մեր անվտանգութիւնը կ՚ապահովի: Երբ գալիս է գործնականում ինչ-որ մէկի կողմից մեր անվտանգութիւնն ապահովելու պահը, պարզւում է, որ ինչ-որ մէկը մեր անվտանգութիւնը կամ չի ուզում կամ չի կարողանում ապահովել...

Լրագրող – Կարծում եմ՝ շատ կարեւոր է հասկանալ, թէ որն է Ռուսաստանի՝ Լաչինի միջանցքի վերահսկողութիւնն Ադրբէջանին թողնելու քաղաքական դրդապատճառը: Երբ խօսում էիք Ձեր ռուս գործընկերների հետ, տեսնում էիք, որ ռուս խաղաղապահները չէին իրականացնում իրենց պարտականութիւնները, ի՞նչ էին նրանք Ձեզ ասում: Ձէ՞ք հարցրել նրանց, թէ ինչու են նրանք հնարաւորութիւն տալիս Ադրբէջանին դէ ֆակտո վերահսկել այս տարածքը, ի՞նչ է տեղի ունենում, ինչո՞ւ չէք միջամտում:

Վարչապետ – Գիտէք, իհարկէ, մենք խօսակցութիւն ունենում ենք այդ թեմայով մեր ռուս գործընկերների հետ: Եւ անկախ այդ խօսակցութիւնից, իհարկէ, մենք մեր վարկածներն ունենք: Եւ երբ խօսում ենք այդ վարկածների մասին, նաեւ Ռուսաստանում տեղի ունեցած մի շարք իրադարձութիւններ մեզ մղում են պատմական զուգահեռների:

Օրինակ, մեր տարածաշրջանը տեսել է այդպիսի իրավիճակ: Ըստ էութեան, արդէն բաւական երկար Ռուսաստանի Դաշնութիւնը մեր տարածաշրջանում է՝ Հարաւային Կովկասում: Բայց մենք տեսել ենք իրավիճակներ, երբ մի օրում, մի ամսում կամ մի տարում ուղղակի Ռուսաստանի Դաշնութիւնը թողել եւ հեռացել է Հարաւային Կովկասից: Օրինակ՝ հիմա շատ են Ռուսաստանի մեր գործընկերները խօսում այն մասին, որ արեւմըտեան երկրները Հայաստանի հետ աշխատում են կամ Հայաստանի կառավարութեանը դրդում են, որպէսզի Հայաստանի կառավարութիւնը միջոցներ ձեռնարկի, որոնց նպատակն է՝ Ռուսաստանին դուրս մղել մեր տարածաշրջանից:

Բայց մենք Ռուսաստանի մեր գործընկերների հետ խօսելիս երբեմն ասում ենք, բարձրաձայնում ենք մեր կարծիքը եւ մեր գնահատականը, որ ընդհակառակը, մենք տեսնում ենք, որ Ռուսաստանը հէնց իր կողմից ձեռնարկւող կամ չձեռնարկւող քայլերի բերումով ինքն է հեռանում տարածաշրջանից: Ի՞նչ պատճառներով, մենք դա չգիտենք: Մենք կարող ենք մեկնաբանութիւններ անել, բայց ես չեմ կարող պնդումներ անել: Ես կարող եմ վարկածներ առաջադրել, բայց հիմա չեմ անի դա: Բայց հասկանալի է, որ Ձեր նշած հարցը մեզ շատ է յուզում եւ հետաքրքրում, եւ դա նորութիւն չէ: Բայց կան պրոցէսներ, որոնք, իհարկէ, յանգեցնում են այդպիսի մտքի, որ կարող է նոյն սցենարը կրկնուել, որ մի օր ուղղակի արթնանանք եւ տեսնենք, որ Ռուսաստանն այստեղ չէ:

Նաեւ պիտի համաձայնուեմ Ձեր այն ձեւակերպման հետ, որ Լաչինի միջանցքը, որ պէտք է լինէր Ռուսաստանի խաղաղապահների հսկողութեան տակ, Ռուսաստանի խաղաղապահների հսկողութեան տակ չէ: Ինչո՞ւ: Կարող է երկու պատճառ լինել՝ կամ Ռուսաստանի Դաշնութիւնը չի կարողանում պահել հսկողութիւն Լաչինի միջանցքի նկատմամբ կամ չի ուզում: Երկուսն էլ մեր տեսակէտից խնդրահարոյց է:

Լրագրող – Իսկ Դուք ի՞նչ էք կարծում՝ չե՞ն ցանկանում, թէ՞ չեն կարողանում:

Վարչապետ – Ես կարծում եմ՝ տեղ-տեղ չեն ուզում, տեղ-տեղ չեն կարողանում...

## 3 ԱՆՎԵՐՋԱՆԱԼԻ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏՐԱՄԱԲԱՆՈՒԹԻՒՆԸ

ծայրայեղական խումբերու զինուորագրութեան ջանքերը, եւ մեզի պահեն անվերջանալի պատերազմի անյաղթելի շրջագիծի մէջ», կը նշէ Ազգային Օրէնսդրութեան Բարեկամներու Յանձնախումբը(8):

Երբ 1964-ին Մարթին Լութըր Քինկ կը ստանար Նոպէլի Խաղաղութեան Մրցանակը, իր ելոյթին մէջ կը շեշտէր՝ թէ բռնութիւնը «ոչ մէկ խնդիր կը լուծէ. ան պարզապէս կը ստեղծէ նոր եւ աւելի բարդ խնդիրներ»: Ճիշդ այս է որ կ՚ընէ այսօր աշխարհը. բռնութիւն, յարձակում, պատերազմ՝ նոր բռնութեան, յարձակումի եւ պատերազմի համար, եւ ասիկա՝ անվերջանալի շարունակութեամբ:

Ուիլլիամ Ռոպինսոն կը գործածէ «ռազմական կուտակում» արտայայտութիւնը՝ իբրեւ ներկայ տնտեսութեան կեդրոնական գործօն, համատեղ «դրամագլուխի կուտակում»-ի: Ռազմական կուտակում կը նշանակէ «անվերջանալի բարձր եւ ցած ուժգնութեամբ պատերազմներ, եռուն հակամարտութիւններ, քաղաքացիական հակամարտութիւն եւ ոստիկանացում»: Ռոպինսոն կը շեշտէ՝ որ համաշխարհային դրամատիրութիւնը սեփական յարատեւութեան համար կախեալ է պատերազմի կերտումէն: Կը բացատրէ. «Ռազմական կուտակումը կը յղէ կացութեան մը, ուր համաշխարհային պատերազմի տնտեսութիւնը կը հիմնուի պետութեան վրայ՝ կազմակերպելու համար պատերազմի կերտումը, հասարակական վերահսկողութիւնը եւ ճնշումը, որպէսզի կանգուն պահէ դրամագլուխի կուտակումը՝ ի դէմս համաշխարհային շուկաներու յարատեւ լճացումին եւ յագեցուածութեան: Այս պետականօրէն կազմակերպըւած գործադրութիւնները աւթսորսինկ կ՚ըլլան անդրազգային ընկերութենական դրամագլուխին, ընդգրկելով սեփականատիրական կուտակումին միաձուլումը պետական ռազմականացումին, պահպանելու համար դրամագլուխի կուտակումին ընթացքը: Կործանումի եւ վերակառուցումի շրջածիրերը (cycle) կը հայթայթեն շարունակական ելքեր գերկուտակուած դրամագլուխին համար, այսինքն, այս շրջածիրերը կը բանան նոր շահոյթ կազմելու հնարաւորութիւններ անդրազգային դրամատէրերու համար՝ որոնք շարունակական հնարաւորութիւններ կը փնտռեն շահութաբեր կերպով վերստին ներդրելու իրենց կուտակած հսկայ քանակութեամբ դրամը: Այս գործընթացին մէջ զուգամերձութիւն կայ հասարակութիւնը հսկելու եւ ճնշելու համաշխարհային դրամատիրութեան քաղաքական պահանջին՝ ի դէմս ողջ աշխարհի ժողովրդական ըժգոհութեան, եւ կուտակումը յաւերժացնելու իր տնտեսական պահանջին՝ ի դէմս լճացումին»(9):

Քանի մը թիւեր: Ռուս-ուքրաինական ներկայ պատերազմին առաջին երկու շաբաթները բարձրացան ռազմական ընկերութիւններու բաժնետոմսերը, Raytheon՝ 8%, General Dynamics՝ 12%, Lockheed Martin՝ 18%, Northrop Grumman՝ 22%, մինչ Եւրոպայի, Հնդկաստանի եւ այլուր պատերազմի բաժնետոմսերը նման բարձրացումներ արձանագրեցին՝ ակնկալելով համաշխարհային ռազմական ծախսումի բարձրացում(10):

ԱՊ-ը անբաժան բաղկացուցիչն է ներկայ նէօլիպերալ-դրամատիրութեան, կորիզն է անոր դրամաշրջանառութեան եւ դրամատիրական կուտակումին: Ղարաբաղի ԱՊ-ը՝ եւ անկէ բխած արդէն Հայաստան-Ազըրպէյճան ուղղակի սահմաններու բախումները, բարդ մասնիկներն են դրամատիրութեան արդի փուլին: Մնացածը՝ մանրամասնութիւն է, արձագանգ է:

Յաջորդ յօդուածներով պիտի խօսինք պատերազմի տրամաբանութեան բնականոնացումը զանգուածի գիտակցութեան մէջ եւ խաղաղութեան լուծումները:

Ա.

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Rani Singh, ‘Kashmir: the world’s most militarized zone, violence after years of comparative calm,’ *Forbes*, 12 July 2016, https://www.forbes.com/sites/ranisingh/2016/07/12/kashmir-in-the-worlds-most-militarized-zone-violence-after-years-of-comparative-calm/?sh=1b8124323124. ‘Kashmir, world’s most militarized zone in the world, re-militarized as India deploys more troops,’ *Kashmir Action*, 9 January 2023, https://www. kashmir-action.org/kashmir-worlds-most-militarized-zone-in-the-world-re-militarized-as-india-deploys-more-troops/

2. Alf Andrew Heggoy, ‘Colonial origins of the Algerian-Moroccan border conflict of October 1963,’ *African Studies Review*, Vol. 13, No. 1 (Apr., 1970), pp. 17-22.

3. Samuel Moyn, ‘How the US created a world of endless war,’ 31 August 2021, *The Guardian*, https://www.theguardian.com/us-news/2021/aug/31/how-the-us-created-a-world-of-endless-war

4. Amin Saikal, ‘Afghanistan: from peace to endless war,’ *The Strategist*, 10 August 2021, https://www.aspistrategist.org.au/afghanistan-from-peace-to-endless-war/

5. ‘Costs of war,’ Watson Institute for International and Public Affairs, https://watson.brown.edu/costsofwar/2022/IraqWarCosts

6. ‘Costs of war,’ Watson Institute for International and Public Affairs, https://watson .brown.edu/costsofwar/papers/summary

7. William Rampe ‘What is Russia’s Wagner Group doing in Africa?,’ Council on Foreign Relations, 23 May 2023, https://www.cfr.org/in-brief/what-russias-wagner-group-doing-africa

8. ‘Endless war,’ Friends Committee on National Legislation, https://www.fcnl.org/issues/us-wars-militarism/endless-war

9. William I. Robinson, ‘Global capitalism has become dependent on war-making to sustain itself,’ *Truthout*, 24 April 2022, https://truthout.org/articles/global-capitalism-has-become-dependent-on-war-making-to-sustain-itself/

10. Անդ:

## 1 ԱՐՑԱԽԸ ՈՒՆԻ ՆՈՐ ՆԱԽԱԳԱՀ

Արցախի նախագահի պաշտօնին կ՚առաջադրուի մէկ թեկնածու՝ պետնախարար Սամուէլ Շահրամանեան: Կը մերժուի Խորհրդարանի Միասնական Հայրենիք խմբակցութեան Սամուէլ Բաբայեանի թեկնածուական դիմումը՝ վերջին տասը տարիներուն Արցախի մէջ մշտապէս բնակելու տեղեկանքը չներկայացնելու պատճառով:

Սեպտեմբեր 9-ին Ազգային Ժողովը նախագահ կ՚ընտրէ միակ թեկնածուն՝ Սամուէլ Շահրամանեան, 22 կողմ եւ 1 դէմ ձայներով:

Եւրամիութեան արտաքին գործերու եւ ապահովութեան քաղաքականութեան հարցերով ներկայացուցիչի խօսնակի յայտարարութեամբ, ԵՄ-ն չի ճանչնար այն սահմանադրական եւ իրաւական շրջանակը, որուն մէջ տեղի ունեցաւ Արցախի նախագահի ընտրութիւնը, աւելցնելով. «Միեւնոյն ժամանակ ԵՄ-ն կը հաւատայ, որ Ղարաբաղի հայերուն համար կարեւոր է համախմբուիլ տէ ֆաքթօ ղեկավարութեան շուրջ, որ ի վիճակի ըլլայ եւ ցանկութիւն ունի ներգրաւուիլ Պաքուի հետ արդիւնաւէտ քննարկումներու: ԵՄ-ն յանձնառու է աջակցիլ այս գործընթացին»:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1949 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՍԵՊՏԵՄԲԵՐ 2023 ՀԱՏԸ ՋԵՌ.ԲԷ 75 Ե. ԴՀԿ. عدد رقم ١٩٤٩ الخميس ٢٨ سبتمبر ٢٠٢٣


# ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԸ՝ ՎԵՐՋԱՑԱ՞Ծ

### ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

Արցախի իշխանութիւններուն վրայ ռուս-ազրպէյճանական երկարատեւ ճնշումներէ ետք, վերջապէս Արցախի իշխանութիւնները կը համաձայնին Աղդամի ճանապարհով ընդունիլ ռուսական Կարմիր Խաչի մարդասիրական օգնութեան բեռնատարին մուտքը: Ազրպէյճան պայման դրած էր՝ որ միայն Աղդամի բացումի պարագային պիտի թոյլ տայ Լաչինի բացումը: Սեպտեմբեր 12-ին ռուսական բեռնատարը Աղդամով կը մտնէ Ստեփանակերտ: Միայն վեց օր ետք՝ Սեպտեմբեր 18-ին, Ազրպէյճանի իշխանութիւններու «բարեհաճ» թոյլատրութեամբ Լաչինի միջանցքով Արցախ կը մտնեն Կարմիր Խաչի Միջազգային Կազմակերպութեան բեռնատարները: Եւ ահաւասիկ ԱՄՆ-ը եւ ուրիշ «ժողովրդավար» երկիրներ կը գովերգեն Ազրպէյճանի մարդասիրութիւնը:

Սեպտեմբեր 18-ին Երեւանի քաղաքապետարանի ընտրութիւններն էին: Արտաքնապէս՝ քաղաքապետարան, որ պէտք չէ գործ ունենայ քաղաքականութեան եւ քաղաքական յայտարարութիւններու հետ, խորքին մէջ՝ կուսակցական-քաղաքական ենթաբնագիրներով ականաւորուած: Մասնակցող 14 քաղաքական ուժերէն իշխող Քաղաքացիական Պայմանագիր կուսակցութիւնը ստացաւ հանգիստ մեծամասնութիւն՝ 32,57%, ապա Ազգային Առաջընթաց՝ 18,89%, Մայր Հայաստան Դաշինք՝ 15,43%, Հանրապետութիւն Կուսակցութիւն՝ 11,32%, Հանրային Ձայն Կուսակցութիւն՝ 9,68%:

Վերջապէս, լրատուական փորձագէտ Սամուէլ Մարտիրոսեան իր ֆէյսպուքեան էջին վրայ (22 Սեպտեմբեր) կը տեղեկացնէ՝ որ Սեպտեմբերի կէսերուն Ազրպէյճան հաքերային յարձակում գործած է պետական կառոյցներուն եւ օդանաւակայանին դէմ:

### 19 ՍԵՊՏԵՄԲԵՐ

- Աղդամը բացուած, Կարմիր Խաչի օգնութիւնը Արցախ մտած, Երեւանի ընտրութիւնները վերջացած, հաքերային յարձակումը գործադրուած, Սեպտեմբեր 19 ժամը 13:00-ին Ազրպէյճան հրթիռահրետանային յարձակում կը սկսի Լեռնային Ղարաբաղի վրայ: Պաքու կու տայ արդէն սովորական դարձած յայտարարութիւնները՝ թէ կը թիրախաւորէ միայն ռազմական կէտերը եւ իր կատարածը հակահաբեկչական ձեռնարկ մըն է: Շուտով հրետակոծութիւնը կը տարածուի ամբողջ Ղարաբաղի տարածքով:

Մինչեւ կէս գիշեր, Ղարաբաղի Ասկերանի, Մարտակերտի, Մարտունիի եւ Շուշիի շրջաններու 16 համայնքներէն կը տարհանուին աւելի քան 7000 քաղաքացիներ (ահաբեկիչնե՞ր...):

- Ռիկայի մէջ կը գործէ *Meduza* ռուսական ընդդիմադիր լրատուամիջոցը: Իր ձեռքը կ՚անցնի Սեպտեմբեր 19-ի գիշերը Քրեմլինի տարածած յուշագիրը՝ ղրկուած ռուսական պետականօրէն վերահսկուած լրատուամիջոցներուն, ուր կը հրահանգուի ինչպէս հաղորդել Ազրպէյճանի ռազմական յարձակումը Ղարաբաղի վրայ (https://meduza.io/en/feature/2023/09/20/azerbaijan-s-business): Ըստ յուշագիրին, պէտք է շեշտել՝ որ յարձակումին համար ամէն բանի մէջ յանցաւոր է Հայաստանը եւ իր արեւմտեան գործընկերները: Խորհուրդ կը տրուի ամէն անգամ յիշատակել Նիկոլ Փաշինեանի Փրակի յայտարարութիւնները եւ ընդգծել, որ ռուս խաղաղապահները՝ որոնք կը կատարեն դիտորդական առաքելութիւն, հերոսաբար կը փրկեն Ղարաբաղի հայերը:

Եւ ռուսական լրատուամիջոցները կը սկսին իրենց յարձակումները, որոնք ալ աւելի կը սաստկանան յետագայ օրերուն, հարցը հասցնելով մինչեւ սպառնալիքներու Փաշինեանին դէմ, տարածելով կեղծ տեղեկութիւններու տարափ մը, եւ թէ իբր Հայաստանի իշխանութիւնները կը հրաժարին ընդունիլ տեղահանուած ղարաբաղցիները (https://epress.am/-2023/09/21/aliev-exuse-putin.html):

### 20 ՍԵՊՏԵՄԲԵՐ

- Ռուս խաղաղապահներու միջնորդութեամբ ձեռք կը բերուի ռազմական գործողութիւններու ամբողջական դադարեցում ժամը 13-ին:

Հայկական կողմէն կան աւելի քան 200 զոհեր, 400 վիրաւորներ, անյայտ կորսուածներ, հաւանաբար բոլորն ալ... «ահաբեկիչներ»: Ազրպէյճանի բանակը կը տեղաւորուի Ղարաբաղի զանազան վայրեր, այնպէս որ երթեւեկային կապը կը կտրուի գիւղերուն եւ քաղաքներուն միջեւ: Ամբողջապէս կը շրջափակուի Մարտակերտը, կը մեկուսանայ Մարտունիի շրջանը:

- Ազրպէյճանական վրիպումով կը զոհուին քանի մը ռուս խաղաղապահներ, եւ ասիկա լաւ առիթ կու տայ Ռուսաստանին կրկին բարձրաձայնելու Հայաստանի անշնորհակալութիւնը Ռուսաստանի նկատմամբ, ըսելով որ ահաւասիկ մենք զոհեր տուինք ձեզի համար եւ ցոյց տալով խաղաղապահներուն «նըւիրուածութիւն»-ը իրենց առաքելութեան: Ազրպէյճան ներողութիւն կը խնդրէ Ռուսաստանէն:

- Լեռնային Ղարաբաղի նախագահութիւնը կ՚ընդունի ռուս խաղաղապահներու միջնորդութեամբ Ազրպէյճանի բոլոր առաջարկները.

1. Արցախի մէջ Հայաստանի զինուած ուժերու մնացած ստորաբաժանումներուն եւ զինծառայողներուն դուրսբերում:

2. Լեռնային Ղարաբաղի զինուած կազմաւորումներուն [Բանակին] լուծարում եւ ամբողջական զինաթափում:

Պաշտօնական Երեւանը կը յայտարարէ՝ որ բանագիրի ձեւաւորումին մէջ ոչ մէկ մասնակցութիւն ունեցած է, չէ եղած քննարկումներու կողմ: Նիկոլ Փաշինեան կ՚անդրադառնայ Ղարաբաղի մէջ Հայաստանի զինուած ուժերու յիշատակութեան մասին, ըսելով որ այս կէտը այնքան ալ հասկնալի չէ՝ քանի որ 2021 Օգոստոսէն Հայաստանը բանակ չունի Ղարաբաղի մէջ:

Հասկնալի է՝ մեզի համար: Ստորագրելով փաստաթուղթին այս կէտը, Ղարաբաղի իշխանութիւնները ընդունած կ՚ըլլան Հայաստանի բանակի գոյութիւնը Ղարաբաղի մէջ եւ արդարացուցած Ազրպէյճանի պատրուակներէն մէկը՝ թէ յարձակումին պատճառներէն մէկն ալ Հայաստանն է, որ մերժած է ետ կանչել իր բանակը Ղարաբաղէն:

Անմիջապէս կը սկսի Արցախի բանակի ստորաբաժանումներու զէնք-զինամթերքի յանձնումը, ռուս խաղաղապահներու վերահսկողութեան տակ: Աւելի ուշ Ազրպէյճան պատկերահանելով հանրային կը դարձնէ այդ զէնքերը, ուր կը տեսնուին՝ T-72 թանքեր, ՕՍԱ զենիթահրթիռային համալիրներ, հակաթանքային հրթիռներ, ականանետեր, ծանր գնդացիրներ, հակաթանքային նռնականետեր, ԲՄՊ-2 հետեւակի մարտական ինքնաշարժներ, դիւրակիր զենիթահրթիռային համակարգեր, բեռնատար եւ մարդատար ինքնաշարժներ:

- Պաքուն կը հաղորդէ՝ որ Ղարաբաղի հայերուն ամբողջարկումին (integration) ծրագիրը պատրաստ է: Ալիեւ կը յայտարարէ՝ որ կը ճանչնայ Հայաստանի տարածքային ամբողջականութիւնը: Ինքնավար Հայաստանէն գրաւած տարածքներո՞վ:

- Հայաստան կը յայտարարէ՝ որ պատրաստ է ընդունիլ ու բնակեցնել արցախահայութիւնը, ռուսերը կեղծ լուրեր կը տարածեն Ստեփանակերտի մէջ՝ որ Հայաստանը կը հրաժարի ընդունիլ ղարաբաղցիները:

- Պաքուի մէջ Իլհամ Ալիեւ կը հանդիպի British Petroleum անդրազգային ընկերութեան խորհուրդի ներկայացուցիչ Հելկէ Լունտին: BP-ն կ՚ընդգծէ՝ որ հետաքրքրուած է Ազրպէյճանի քարիւղի, կազի եւ ուժարտադրութեան ոլորտներու ապագայ նախագիծերով: Լունտ կը նշէ՝ որ BP-ն հաստատակամ է համագործակցելու SOCAR-ի հետ, իրականացնելու համար վերականգնուող ուժարտադրութեան նախագիծեր: Ասիկա ուղղակի կապ ունի Սեպտեմբեր 19-ի պատերազմին հետ թէ ոչ՝ կարելի չէ ըսել: Բայց հաստատապէս կարելի է պնդել BP-ի նման անդրազգային ընկերութիւններուն խաղացած դերը 1994-էն անդին ծաւալուող անվերջանալի պատերազմին մէջ:

### 21 ՍԵՊՏԵՄԲԵՐ

- Սեպտեմբեր 21-ին Եւլախի մէջ առաջին անգամ կը հանդիպին Ազրպէյճանի պաշտօնատարները եւ Ղարաբաղի հայ բնակչութեան ներկայացուցիչները, ռուս խաղաղապահներու ուղեկցութեամբ: Ըստ Պաքուին՝ «Քննարկումներ են ծաւալուել ենթակառուցուածքների վերականգնման, Ղարաբաղի հայ բնակչութեան վերաինտեգրման եւ Ադրբէջանի սահմանադրութեան եւ օրէնքների հիման վրայ Ղարաբաղի հայ բնակչութեան գործունէութեան կազմակերպման վերաբերեալ»: Դարձեալ ըստ Պաքուին՝ ինք գոհացում կու տայ հայերու խնդրանքին մարդասիրական օգնութիւն մատակարարելու առնչութեամբ: Հայկական կողմը կը յայտարարէ՝ որ հանդիպումը անցած է գործնական մթնոլորտի մէջ: Ուրեմն, Ազրպէյճան կը բանակցի Ղարաբաղի հայերուն հետ՝ արդէն իբրեւ ազրպէյճանցի քաղաքացիներ:

- ՄԱԿ-ի Ապահովութեան Խորհուրդի նիստ, քննարկելու համար Ղարաբաղի հարցը: Գրեթէ բոլոր բանախօսները դատապարտեցին Լեռնային Ղարաբաղի վրայ Ազրպէյճանի վերջին յարձակումը եւ կոչ ըրին բանալ Լաչինի միջանցքը: Թուրքիոյ փոխ արտաքին գործոց նախարար Պուրաք Աքչափար խօսեցաւ Զանգեզուրի Միջանցքը բանալու անհրաժեշտութեան մասին: Իսկ ռուս պաշտօնեան, բոլորովին նիստի բնաբանէն դուրս, իր սովորական մեծամըտութեամբ շեշտեց քանի մը ռուս խաղաղապահներուն մահը, առանց տալու սպանողին անունը, այլ ինքզինքը ներկայացնելով իբրեւ հայկական հարցին զոհը: Նիստը աւարտեցաւ առանց պաշտօնական փաստաթուղթի ընդունումին, ինչպէս կ՚ակնկալուէր:

### 22 ՍԵՊՏԵՄԲԵՐ

Ընդհանուր անորոշութիւն եւ անստոյգ տեղեկութիւններ ամէն բանի նկատմամբ:

### 23 ՍԵՊՏԵՄԲԵՐ

- Միջազգային Կարմիր Խաչը 70 թոն մարդասիրական օգնութիւն կը փոխադրէ Լաչինի միջանցքով: Ալիեւ ընտանիքի սեփականութիւնը հանդիսացող SOCAR ընկերութիւնը կը ղրկէ վառելիքի երկու թանքեր Բարդա-Աղդամ-Ասկերան-Ստեփանակերտ ճանապարհով: Ռուս խաղաղապահները կը փոխադրեն 50 թոն մարդասիրական օգնութիւն: Յանկարծ ինչքան դիւրացաւ մարդասիրական օգնութեան փոխադրութիւնը:

↳ 3

# ԱՐԻՒՆԱԼԻ ՓԵՏՐՈՒԱՐԷՆ ՄԻՆՉԵՒ ԱՐԻՒՆԱԼԻ ՍԵՊՏԵՄԲԵՐ ԿԱՄ ԻՆՉՈՒ ԶՈՀԵՐԸ ԿՐՆԱՆ ԴԱՌՆԱԼ ԶԱՒԹԻՉՆԵՐ

ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՖԵՄԻՆԻՍԹԱԿԱՆ ՀԱՒԱՔԱԿԱՆ

*2020-ին ազրպէյճանցի տեղացի ֆեմինիսթներ կը հիմնեն Խաղաղութեան Ֆեմինիսթական Հաւաքականը (Feminist Peace Collective), ի պատասխան եւ քննադատութիւն Ղարաբաղի երկրորդ պատերազմին, նպատակ ունենալով բացայայտել խաղաղութեան, հակամարտութեան, միլիթարիզմի, իմփերիալիզմի, ազգայնականութեան, սեռականութեան, առնականութեան հասկացողութիւնները եւ այլ յարակից հարցեր, ներկայացնելու համար ֆեմինիսթական խաղաղութեան տրամասացութիւնը (discourse) հասարակութեան մէջ: Սեպտեմբեր 23-ին, իրենց պաշտօնական կայքէջին վրայ կ’արձագանգեն Սեպտեմբեր 19-20-ի պատերազմին (https://www.feministpeacecollective.com/en/post/from-bloody-february-to-bloody-septembers-or-why-as-victims-we-can-still-be-agressors): Յօդուածը, ինչպէս ամբողջ կայքը, ներկայացուած է երկու լեզուներով՝ անգլերէն եւ ազրպէյճաներէն: Ստորեւ զայն ամբողջութեամբ կը թարգմանենք անգլերէն բնագիրէն:*

Ա.

Այս ամիս կը նշանաւորէ հայերու եւ ազրպէյճանցիներու արիւնահեղութեամբ արատաւորուած համատեղ ողբերգական պատմութեան յաջորդական երրորդ Սեպտեմբերը (2020, 2022 եւ այժմ 2023): 2023 Սեպտեմբեր 19-ին, Ազրպէյճան նախաձեռնեց յարձակում Ղարաբաղ/Արցախի վրայ՝ «հակահաբեկչական գործողութեան» քօղին տակ, անխղճօրէն նախապատուութիւն տալով իր շահերուն, ի հաշիւ տարածաշրջանի մարդկային կեանքերուն: Գործողութեան նպատակն էր ստիպել Արցախ/Ղարաբաղի իշխանութիւններուն նստիլ բանակցութեան սեղանին եւ համաձայնիլ անձնատուութեան (capitulation) պայմաններուն: Բանակցութիւնները չտուին ակընկալուած արդիւնքները եւ, հակառակ զինադադարի եւ զինաթափումի համաձայնութեան, շարունակուեցան կրակոցները եւ յարձակումը:

Այս օրերս, մինչ Ստեփանակերտ/Խոջալու օդանաւակայանին մէջ մարդիկ յուսահատ կը սպասեն տարհանուիլ դէպի Հայաստան, ազրպէյճանցիները տօնեցին սնամէջ յաղթանակ մը, քարասրտութեամբ ուրախանալով հայերու տառապանքով եւ այս տառապանքը համատեղելով Խոջալուի կոտորածի պատմական արդարութեան հետ: Կատարեալ անտարբերութեան եւ ատելութեան ներկայ պահուն, կարեւոր է մենք մեզի յիշեցնենք՝ որ անգամ մը զոհ դառնալը մեզի զերծ չի պահեր զաւթիչ ըլլալէ: Մենք թակարդուած ենք զոհ/զաւթիչ կեղծ երկուութեան մէջ, որ արիւնալի Փետրուարի (յատկապէս Խոջալուի կոտորածի) շրջագիծը անցուց նոյնքան խոժոռ սեպտեմբերներու: Անարդարութեան, ցնցումի եւ զոհուածութեան յարատեւ զգացողութիւնները չեն արդարացներ Ազրպէյճանին դառնալու յարձակող: Հայերուն այսօրուայ էթնիքական մաքրագործումը, բռնի տեղահանումը, ցաւն ու տառապանքը նոյնքան անիրաւացի եւ անարդար են որքան 30 տարի առաջուայ ազրպէյճանցիներուն ցաւը, տառապանքը, բռնի տեղահանումը եւ էթնիքական մաքրագործումը: Այսպէս, չկան «յաղթող» կամ «պարտուող» ազգեր՝ երբ մենք երկուքս ալ տառապած ենք անհուն կորուստէ, եւ այս բռնութիւնը կը շարունակուի ազդել բոլորիս վրայ:

Լեռնային Ղարաբաղի վրայ յարձակումը արդարացնելու Ազրպէյճանի յամառ ջանքերը՝ սահմանադրական կարգը վերականգնելու պատճառաբանութեամբ, տագնապալից փորձ մըն է օրինականացնելու պետական ահաբեկչութիւնը: Միջազգային հանրութիւնը պէտք է հասկնայ՝ որ ասոր պիտակաւորումը իբրեւ հակահաբեկչական գործողութիւն ուրիշ բան չէ եթէ ոչ պետական ահաբեկչութեան նրբօրէն քօղարկուած գործողութիւն ընդդէմ խոցելի եւ աւելի տկար քաղաքական համայնքներու, ռազմավարութիւն մը՝ զոր պատմականօրէն կիրարկած են իմփերիալ պետութիւնները՝ ԱՄՆ, Ռուսաստան եւ Թուրքիա: Մինչ առաջինը այս ռազմավարութիւնը գործադրեց արդարացնելու համար Իրաքի եւ Աֆղանիստանի ռազմական միջամտութիւնները, երկրորդը զայն գործադրեց Չեչնիայի իսկ վերջերս նաեւ Ուքրաինայի դէմ, ճիշդ այնպէս ինչպէս ան կը գործադրուէր Թուրքիոյ մէջ քուրտերուն դէմ, խեղաթիւրելու համար իրականութիւնը եւ զօրաշարժելու դժգոհութիւնը, նպատակ ունենալով հնարել «արդար պատերազմ»-ի առասպելը:

Մենք կը մատնանշենք նաեւ միջազգային օրէնքի եւ կարգի անհամապատասխանութիւնը, որ ակամայ կ’օրինականացնէ պատերազմներու մէջ ներգրաւուած պետութիւնները՝ բացայայտելով ազգայնականութեան ողբերգական հետեւանքները որոնք մեզի հասցուցին այս կէտին եւ իշխեցին մեր անցեալի, ներկայի եւ հնարաւոր ապագայի հասկացողութեան վրայ: Այս տագնապալի տրամաբանութիւնը ունի աւելի ընդհանուր տարածում՝ թէ ինչպէս միջազգային օրինակարգը կը սահմանէ մարդկային կեանքի դրութիւնը: Անհատներուն դասակարգումը իբրեւ «ռազմական թիրախներ» եւ «քաղաքացիական անձեր» տեղի կու տայ երկիմաստութեան, թոյլ տալով Ազրպէյճանին շահարկել այս տարբերակումը իր սեփական շահերուն համար, ցուցաբերելով բացայայտ անտարբերութիւն մարդկային կեանքի նուիրականութեան նկատմամբ: Օրինակ, ազրպէյճանական պետութիւնը յայտարարած էր քաղաքացիական անձերու համար տրամադրել ապահով անցք, որմէ բացառեց բնակչութեան ստուար խումբ մը (ինչպէս տէ ֆաքթօ իշխանութիւններուն ազգականները, զէնք կրող ոեւէ անձ)՝ իբրեւ ոչ-քաղաքացիական անձեր, ինչ որ կարելի է հասկնալ այս անուանումին տակ:

Թակարդուած պատերազմի այս դաժան շրջանին մէջ, հրամայական կը դառնայ կրկնել՝ թէ ինչու մենք պէտք է կտրականապէս ընդդիմանանք պատերազմին ընդհանրապէս, յատկապէս այս երկարաձգուած յարձակումներուն: Մէկ դար շարունակ բռնութեան միջոցով գերիշխանութիւն հաստատելու փորձերը ընդամէնը յաւերժացուցին տառապանքը, ոչ մէկ յոյս թողելով դրական ապագայի համար: Չենք կրնար անտեսել այն փաստը՝ որ պետական ուժը եւ բռնութիւնը մեզի ուրիշ բան չեն բերած եթէ ոչ տառապանք, ցաւ եւ անորոշութիւն: Անոնք որոնք կը հաւատան այս պատերազմին եւ Ազրպէյճանի տարածած փաշական պատումներուն իբրեւ խաղաղութեան տանող ուղի, չեն ըմբռներ՝ որ ան մեզի աւելի ծուղակը կը ձգէ թշնամութեան երբեք չվերջացող շրջագիծին մէջ: Կամ անոնք որոնք կը հաւատան թէ այս ամբողջական յաղթանակով վերջացած է պատերազմը եւ հաստատուած խաղաղութիւնը, չեն հասկնար՝ թէ պետական բռնութիւնը տեւական է, թէ հակահաբեկչական գործողութիւնները պիտի շարունակեն թիրախաւորել որեւէ քաղաքականապէս աշխոյժ ըմբոստութիւն, եւ թէ խաղաղութիւնը պարզապէս ժամանակամիջոց մը պիտի ըլլայ՝ պատրաստելու համար յաջորդ պատերազմը:

Ողբերգութիւնը կը կայանայ ազգի եւ պետականաշինութեան անգութ հետապնդումին մէջ՝ խաղաղութեան եւ բարգաւաճումի հաշուին: Ազգային տրամասացութիւնը (discourse) եւ յարձակողական պետականաշինութիւնը մեզի առաջնորդեցին դէպի այս անողոք իրականութիւնը, ուր ազգայնականութեան թշուառութիւնը կը խափանէ սեփական կեանքերն ու ընտրութիւնները ազատօրէն որոշելու մեր կարողութիւնը իբրեւ անհատներ եւ համայնքներ, որոնք ազատօրէն չեն տնօրիներ հողն ու ջուրը (սեփականաշնորհում եւ ազգայնականութիւն), սեփական ժամանակը (դպրոցներ, բանտեր, վարձու աշխատանք, «ազատ ժամանակ»), սեփական մարմինները (վարձու աշխատանք, պատերազմ, գիտելիքի հասանելիութեան սահմանափակում): Հետեւաբար, ինչպէ՞ս կրնան մեզի կոչ ընել սիրել կամ պաշտպանել «մեր» ազգը, երբ իրականութեան մէջ ոչ մէկ բան մերն է սիրելու եւ պաշտպանելու համար: Հարցը այն է՝ թէ ինչ բանի համար կը մեռնինք, հողերո՞ւ՝ որոնց վրայ երբեք պիտի չկրնանք վարել ազատագրուած կեանք, հողերո՞ւ՝ ուր պիտի չկրնանք այցելել պատերազմին կորսնցուցած մեր սիրելիներուն հետ, հողերո՞ւ՝ ուր ազատօրէն այցելելու հագիւ թէ իրաւունք պիտի ունենանք, հողերո՞ւ՝ որոնց վրայ տակաւին պիտի շարունակեն մեզի ճնշել, ծեծել եւ նուաստացնել, որոնց վրայ պիտի լռեցուին մեր տարբեր տեսակէտներն ու կարծիքները՝ յանուն ազգի փրկութեան: Ազգ՝ որ հիմնուած է միայն ատելութեան եւ ուրիշ ազգը օտարելու վրայ:

Մենք կտրականապէս կը մերժենք ծուղակը դառնալ այս վարդապետութեան եւ կը բացասենք ժողովուրդին ստրկացումը՝ յանուն ատելութեան եւ օտարումի վրայ կառուցուած ազգի: Ազրպէյճանին կոչ կ’ընենք դադրեցնել իր ահաբեկչութիւնը Ղարաբաղի հայ բնակչութեան դէմ: Մեր խնդրանքը կ’ուղղուի Ազրպէյճանի ժողովուրդին, յորդորելով ճանչնալ իր սեփական բանականութիւնն ու կարեկցութիւնը, թոյլ չտալ որ իր վիշտը օգտագործուի վարչակարգի ազգային իղձերուն համար, եւ թոյլ չտալ որ իր մարմինը շահագործուի իր պետութեան եւ իշխող վերնախաւին դրամատիրական անյագութեան համար:

Միաժամանակ, իբրեւ մաս մը Ազրպէյճանի հասարակութեան եւ իբրեւ ազրպէյճանցի քաղաքացիներ, հարց կու տանք, եւ նոյնը կ’ակնկալենք ուրիշներէն, յատկապէս քաղաքականապէս աշխոյժ ըլլալու յաւակնորդներէն, մտածել հետեւեալ խնդիրներուն մասին: Իբրեւ ժողովուրդ կը հաւատանք՝ որ մենք պէտք է պահանջենք իրազեկ դառնալ այն ծրագիրներուն եւ պայմաններուն՝ զորս կառավարութիւնը կը պատրաստէ իր շահերուն համար, մեր ապագայ համակեցութեան պիտակին տակ:

1. Ինչպէ՞ս կառավարութիւնը կը ծրագրէ ամբողջարկել (integrate), այլ ոչ համաձուլել, Ղարաբաղ/Արցախի հայերը:

2. Ի՞նչ միջոցներ պիտի ձեռնարկուին ապահովելու Ղարաբաղ/Արցախի հայութեան ապահովութիւնը:

3. Արդեօ՞ք ռուսական բանակը պիտի շարունակէ իր ներկայութիւնը, եւ այս բոլորէն ետք կրնա՞յ ոեւէ մէկը վստահիլ անոր իբրեւ ապահովութեան յուսալի երաշխաւոր:

4. Կա՞յ արդեօք որեւէ ծրագիր վերացնելու Հայաստանի եւ հայերուն դէմ յաւերժական թշնամանքը: Կա՞յ կամեցողութիւն ներգրաւուելու թշնամութեան պատումը փոխելու միտուած տրամասացութեան մէջ:

5. Արդեօ՞ք Զանգեզուրի միջանցքը դեռ մաս կը կազմէ ծաւալապաշտական ազգայնական օրակարգին:

6. Արդեօք նախատեսուա՞ծ են համաներումներ, եւ ինչպէ՞ս մարդիկ պիտի հաշտուին եւ ներեն իրար:

7. Համայնքները, ժողովուրդը, աքթիւիսթները եւ կազմակերպութիւնները պիտի ունենա՞ն արդեօք կարելիութիւն ազատօրէն եւ բաց կերպով հաղորդակցելու՝ առանց սահմանափակումներու:

8. Արդեօ՞ք խաղաղութիւնը պաշտպանող եւ այդ ուղղութեամբ աշխուժօրէն գործող անհատները պիտի պիտակաւորուին իբրեւ ազգի թշնամիներ եւ դաւաճաններ, հետեւաբար դատապարտուին եւ բանտարկուին:

9. Պիտի վերջանա՞յ այս պատերազմը:

# ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԸ՝ ՎԵՐՋԱՑԱ՞Ծ

1

**24 ՍԵՊՏԵՄԲԵՐ**

- Մարտակերտէն դուրս կու գան վերջին բնակիչները՝ մօտ հազար ինքնաշարժներով, եւ երեկոյեան կը հասնին Ստեփանակերտ, անոնց մէջը ըլլալով քաղաքապետը Միշա Գիւրջեան: Մարտակերտը չկայ վերջնականապէս:

- Նոյնպէս Մեծ Շէնէն դուրս կու գայ վերջին բնակիչը՝ համայնքապետ Դաւիթ Դաւիթեան:

- Փաշինեան ուղերձ կը յղէ ժողովուրդին, շեշտելով՝ որ Ռուսաստանը այլեւս ինքզինքը սպառած է իբրեւ Հայաստանի ապահովութեան երաշխաւոր: Ան կ՚ըսէ. «Արտաքին անվտանգութեան այն համակարգերը, որոնցում ներգրաւուած ենք, արդիւնաւէտ չեն Հայաստանի Հանրապետութեան պետական շահերի եւ անվտանգութեան տեսակէտից»:

Դժուար չէ հասկնալ միտք բանին: 44-օրեայ պատերազմ, 2021 Մայիսի ու Նոյեմբերի եւ 2022 Սեպտեմբերի իրադարձութիւններ, եւլն.: Ռուսաստան, որ խստօրէն արգիլած է Հայաստանին փնտռել սեփական պաշտպանութեան այլընտրանքային աղբիւրներ եւ ամբողջութեամբ իր ձեռքը վերցուցած սահմաններուն պաշտպանութիւնը, թոյլ տուաւ Ազրպէյճանին գրոհել Հայաստանի ինքնավար տարածութիւններ, առանց ոչ մէկ խօսք կամ մեղադրանք արտայայտելու: Ասիկա՝ իբրեւ դաշնագրային ստորագրեալ պարտականութիւն: Բաց աստի, իբրեւ ՀԱՊԿ-ի անդամներ, Ռուսաստան մերժեց գործադրել այս անգամ ՀԱՊԿ-ի ստորագրեալ պարտականութիւնները: Դեռ աւելին: ՀԱՊԿ չղրկեց իր մարդիկը՝ հաստատելու եւ ամրագրելու Հայաստանի տարածքային գրաւումը, չուզելով նաեւ արձանագրել Հայաստանի բուն, ընդունուած սահմանները ընդհանրապէս:

Փաշինեան կը շարունակէ. «2020թ. Դեկտեմբերին Լեռնային Ղարաբաղի Խծաբերդի եւ Հին Թաղերի գրաւումն ու 60-ից աւելի հայ զինծառայողների գերեվարումը, Փառուխի դէպքերը, Լեռնային Ղարաբաղի հայ բնակչութեան ահաբեկման բազմաթիւ արտայայտութիւնները, Լաչինի միջանցքի ապօրինի արգելափակումը, Սեպտեմբերի 19-ի ագրեսիւ յարձակումը Լեռնային Ղարաբաղի վրայ՝ լրջագոյն հարցեր են բարձրացնում նաեւ Լեռնային Ղարաբաղում Ռուսաստանի Դաշնութեան խաղաղապահ զօրախմբի գործունէութեան նպատակների եւ մոտիվների մասին»:

Այս անգամ Նոյեմբեր 9-ի յայտարարութեան ուղղակի եւ դիտաւորեալ խախտում:

Շատ կարճ՝ ի՞նչ է կատարուածը: Այսօր, իր ամբողջ հզօրութեամբ կը գործէ Ռուսաստան-Թուրքիա-Իսրայէլ-Ազրպէյճան դաշինքները՝ փոխշահաւէտ հասկնալի պատճառներով, մինչ Ռուսաստան-Հայաստան դաշինքի Հայաստանի ի նպաստ կողմը դադրած է գործելէ, շարունակելով գործել դաշինքի ռուսական շահերու կողմը: Հայաստան մնացած է մինակ, քանի որ Հոկտեմբեր 27-ի ոճրագործութենէն ետք մեր առաջնորդ օլիկարքները իրենք իրենց ձեռքով վերջնականացուցին Ռուսաստանին ենթարկուելու եւ քաղաքական-տնտեսական-ռազմական գաղութ դառնալու գործընթացքը, որմէ ետք քաղաքական այլազանութիւն մտցնելու Փաշինեանի փորձերը բնականաբար պիտի յանդէին անյաջողութեան: Իսկ ե՞րբ Փաշինեան փորձեց այլազանել քաղաքականութիւնը: Միայն ու միայն երբ արդէն յստակօրէն Ռուսաստան լքեց Հայաստանը եւ արտօնեց Ազրպէյճանին կատարել ինչ որ կ՚ուզէ Հայաստանի սահմաններուն եւ Լաչինի միջանցքին կապակցութեամբ: Հայաստան դիմեց այլազանութեան՝ երբ Ռուսաստանը մերժեց իր աջակցութիւնը բերել ապահովութեան ամենաէական պարագաներուն: Միաժամանակ, այլազանութիւն բնաւ չի նշանակեր դուրս գալ ռուսական շրջածիրէն, ոչ ալ Փաշինեան երբեւէ նման միտումնաւորութիւն ունեցած է: Բայց գաղութացուած համայնքի մը համար գաղութատէրը արգիլած է նոյնիսկ մտածել այլազանումի ուղղութեամբ: Եւ տարօրինակօրէն, Ռուսաստան (չ)ընելով ընելիքը, մինչեւ այսօր անխախտ պահեց Հայաստանէն ստացող ԲՈԼՈՐ շահերը: Այս է հակասութիւնը:

Պէտք է անպայման շեշտել նաեւ՝ որ Փաշինեանի ելոյթը նաեւ հակազդեցութիւնն էր որոշ ժամանակէ ի վեր ռուսական լրատուամիջոցներու ձեռնարկած սանձարձակ ու հետեւողական յարձակումին իր սեփական անձին եւ ընդհանրապէս Հայաստանի դէմ, դիմելով ամէն տեսակ սնապարծ միջոցներու:

**ԵՐԿԱՐ 25 ՍԵՊՏԵՄԲԵՐԸ**

Երբեմն օրերն ալ կրնան երկարիլ:

- Հայաստան կը ժամանեն ԱՄՆ բարձրաստիճան պաշտօնատարներ՝ ԱՄՆ Միջազգային Զարգացումի Գործակալութեան (USAID) տնօրինուհի Սամանթա Փաուէր եւ ԱՄՆ Պետական Քարտուղարի Եւրոպայի եւ Եւրասիոյ հարցերով օգնական Եուրի Քիմ, հաստատելու համար ԱՄՆ-ի աջակցութիւնը Հայաստանի ինքնիշխանութեան, անկախութեան, տարածքային ամբողջականութեան, ժողովրդավարութեան, ինչպէս նաեւ քայլեր ձեռնարկելու Լեռնային Ղարաբաղի մէջ տեղի ունեցած վերջին բռնութիւններէն բխող մարդասիրական կարիքները բաւարարելու ուղղութեամբ:

Փաշինեանի հետ ունեցած հանդիպումին, Փաուէր կը փոխանցէ պատգամը. «Նախագահ Պայտէն զիս եւ իմ պատուիրակութեանս գործուղեց այստեղ՝ շեշտելու ԱՄՆ-ի խոր նուիրուածութիւնը Հայաստանի ինքնավարութեան, տարածքային ամբողջականութեան եւ ժողովրդավարութեան հանդէպ: Գիտեմ, որ ԱՄՆ Միջազգային Զարգացման Գործակալութիւնը կ՚աշխատի հայ ժողովուրդի հետ, եւ Հայաստանի կառավարութիւնը երբեք անվճռականութիւն չէ ցուցաբերած այս հարցին մէջ, եւ ասիկա շատ կարեւոր է»:

Նոյն խօսքերը կը կրկնէ մամուլի ասուլիսին:

Ասոնք ձեւական խօսքերու շարքը կրնանք ընդունիլ, բայց, միւս կողմէ, երբեք լսա՞ծ էք ռուս պաշտօնատար մը արտասանէ «Հայաստանի տարածքային ամբողջականութիւն» նախադասութիւնը:

Ասուլիսին ընթացքին նաեւ կը խօսի Լաչինի միջանցքի մասին, շեշտելով՝ որ ամիսներ շարունակ շրջափակուած էր ան, Ազրպէյճան թոյլ չէր տար օգնութիւն փոխադրել այնտեղէն եւ մենք տեղեակ էինք դժուար մարդասիրական վիճակի մասին: Դարձեալ, երբեք լսա՞ծ էք ռուս պաշտօնատար մը նշած ըլլայ Լաչինի շրջափակումը Ազրպէյճանի կողմէ: Ռուսաստան միշտ հարցը այնպէս կը ձեւակերպէր՝ որ հարցը պէտք ունի երկկողմանի բանակցութեան եւ համաձայնութեան, չուզելով անուանել բուն շրջափակողի եւ խոչընդոտողի անունը:

- Երեւան կու գայ ԱՄՆ-ի հակառակ կողմի ներկայացուցիչը՝ Ռուսաստանի Ներքին Գործոց նախարար Վլատիմիր Քոլոքոլցեւ: Հանդիպելով վարչապետին, վերջինս կը կարեւորէ երկու երկիրներու ՆԳՆ-ներու սերտ համագործակցութիւնը եւ հետեւողական աշխատանքները յանցաւորութեան դէմ պայքարին:

- Ղարաբաղէն Հայաստան կը փոխադրուի Արցախի Ապահովութեան Խորհուրդի նախկին քարտուղար, Միասնական Հայրենիք կուսակցութեան նախագահ Սամուէլ Բաբայեան, առանց ոեւէ խնդիր ունենալու անցակէտի ազրպէյճանցի հսկիչներուն հետ:

- Վերջապէս Ռուսաստան հանդէս կու գայ պատասխանելով Փաշինեանի նախորդ օրուայ ուղերձին, վարչապետին ուղղակիօրէն մեղադրելով անցնելու արեւմուտքի եւ ՆԱԹՕ-ի գիրկը, ինչպէս նաեւ այլ խեղաթիւրումներով վարկաբեկելով վարչապետն ու Հայաստանը:

- Բոլորովին պատահական չէ, որ այս տագնապալի օրերուն՝ Սեպտեմբեր 25-ին, Նախիջեւանի մէջ գերսիրալիր հանդիպում ունենան Էրտողան եւ Ալիեւ: Նախիջեւանը ուղղակիօրէն կապուած է Զանգեզուրի Միջանցքին հետ, որուն կը բաղձան Թուրքիա եւ Ռուսաստան: Ռուս-Թրքական վերջին մերձեցումին եւ միջանցքէն գալիք համատեղ շահերուն յետնախորքին վրայ, Հայաստանը կը մնայ մինակ այս հարցին մէջ եւս: Այստեղ եւս կրնայ լռեցուիլ բանակցութիւններուն ձայնը: Մինչդեռ արեւմուտքին համար այս միջանցքը ոչ մէկ կարեւորութիւն ունի՝ միջամտութիւն ցոյց տալու համար: Բայց այս հանդիպումին, Էրտողան նորութիւն մը կը մտցնէ, հանդիսա ոճով յայտարարելով՝ որ եթէ Հայաստան համաձայն չըլլայ միջանցքին, Իրան արդէն համաձայն է իր տարածութեան վրայով ապահովել Ազրպէյճան-Նախիջեւան ճանապարհը: Դիրքի զիջողանութի՞ւն, թէ այս պահու ժամանակաւոր դիւանագիտական մեղմացում: Շուտով կը յստակուի:

Յետադարձ արագ յիշեցում մը: Անցեալ տարուայ Նոյեմբեր 22-ի թիւին մէջ (թիւ 1927) *Ջահակիր* կը հարցնէր. «Ազրպէյճան կը պնդէ Զանգեզուրի Միջանցքը, երբ արդէն շինարարութեան մէջ է Ազրպէյճան-Նախիջեւան ճանապարհը Իրանի տարածքով՝ երկաթուղիով ամրացած: Պարզապէս վերջինս քիչ մը աւելի երկար պիտի ըլլայ, քանի որ պէտք է հասնիլ մինչեւ Իրան: Իրապէ՞ս երկու միջանցքներ կ՚ուզէ ունենալ Ազրպէյճանը, թէ Զանգեզուրինը պարզապէս խաղաղութեան կարելիութիւնը խափանելու յաջորդական միջոց մըն է»:

Անցնինք առաջ:

- Այս բոլորը բաւարար չէր, Ստեփանակերտ-Ասկերան ճանապարհի յարակից տարածքը գտնուող պենզինի պահեստին մէջ տեղի կ՚ունենայ ուժեղ պայթիւն, թողելով աւելի քան 200 ծանր եւ ծայրայեղ ծանր վիրաւորեալներ: Ազրպէյճան կը յայտարարէ՝ որ օգնութեան համար Ստեփանակերտ պիտի ղրկէ բժշկական օգնութիւն: Վիրաւորեալները արդէն Ազրպէյճանի քաղաքացիներ են եւ Ազրպէյճան կը կատարէ իր պետական պարտականութիւնները անոնց հանդէպ...: Բնական աղէտները յաճախ լաւ առիթներ են քաղաքական խաղաթուղթեր առաջ մղելու համար:

**26 ՍԵՊՏԵՄԲԵՐ**

- Սամանթա Փաուէր կ՚երթայ Սիւնիք, Գորիսի մէջ կը հանդիպի մարզպետ Ռոբերտ Ղուկասեանին, կը տեսնէ Ղարաբաղէն եկած ինքնաշարժներու եւ մարդոց խճողումները եւ կ՚ըսէ՝ թէ ոչ մէկ մարդասիրական օգնութիւն կրնայ սփոփել այն տառապանքը զոր տեսած են մարդիկ եւ որմէ կ՚անցնին այժմ:

Կոռնիձորի մէջ լրագրողներու հետ ունեցած զրոյցին կը յայտարարէ՝ որ տեղահանուածներուն համար ԱՄՆ կը յատկացնէ 11.5 միլիոն տոլլար եւ կ՚աւելցնէ. «Ծանր է լսել, տեսնել այս ընտանիքներուն կացութիւնը: Շատերը հրետակոծութեան տակ հեռացած են իրենց համայնքներէն, գիւղական բնակավայրերէն»: Կ՚ըսէ՝ որ իր ականատեսի վկայութիւնները պիտի փոխանցէ ԱՄՆ պաշտօնատար անձերուն, որպէսզի նախագահը եւ վարչակազմը ընտրեն Հայաստանին օգնելու լաւագոյն միջոցները:

Բնական է, որ Փաուէրի ներկայութիւնը եւ սփոփիչ խօսքերը զերծ չեն բնաւ ռուս-ամերիկեան ներկայ թշնամանքի բնաբանէն, երբ ԱՄՆ կը փորձէ պայքարի փոքր լծակ մը փոխադրել Հայաստան: Բայց դարձեալ նոյն հարցը: Ո՞վ էր որ առիթ տուաւ Հայաստանին դիմելու այս քայլին: Ինչո՞ւ այսպէս պիտի ըլլար՝ եթէ Ռուսաստան քիչ մը մարդկային վերաբերմունք ցուցաբերած ըլլար վերջին երեք տարիներու կատարուածներուն նկատմամբ, վերաբերմունք երկիրի մը նկատմամբ՝ որ 25 տարի մնաց անոր հաւատարիմ ծառայողը բոլոր ոլորտներուն մէջ:

- Ժամը 20-ի դրութեամբ Ղարաբաղէն Հայաստան մուտք գործած են բռնի տեղահանուած 28 հազար 120 անձեր:

**27 ՍԵՊՏԵՄԲԵՐ**

- Լուրեր կը հասնին՝ թէ Եղցահողը նոյնպէս ամբողջութեամբ պարպուած է եւ 150 բնակիչները արդէն լքած են գիւղը:

Համայնքապետ Արտակ Յակոբեան ապաստանած է Աբովեան քաղաքը, ուրկէ կը պատմէ. «Մարդիկ չկարողացան բացարձակ ոչինչ իրենց հետ վերցնել, նոյնիսկ մարդ կար մաշիկներով է դուրս եկել, գիւղը էնպիսի վիճակում էր... էս պահին ո՛չ մի հատ տուն կայ, ո՛չ փողոց կայ, ո՛չ դպրոց, ո՛չ համայնքապետարան: Ամէն տան վրայ 10 արկ է ընկել: Զինադադարը կնքուած էր, բայց մեր գիւղը դեռ 24 ժամ ռմբակոծւում էր: Ռուս խաղաղապահները ասում էին՝ մենք հրաման չունենք ձեզ օգնելու»:

Ահաւասիկ կամաց-կամաց կը բացայայտուին իրական լուրերը: Պէ՞տք է գիւղ մը ամբողջութեամբ հիմնայատակ ընել՝ Ղարաբաղը գրաւելու համար: Եւ ասիկա՝ զինադադարէն մէկ օր ետք եւ «անկարող» ռուսերու աչքին առջեւ: Տակաւին շատ ու շատ ականատեսներու վկայութիւններ ի յայտ պիտի գան: Պատմութիւն պիտի գրուի:

- Սամանթա Փաուէր եւ Եուրի Քիմ կը հասնին Պաքու: USAID-ի պաշտօնական յայտարարութեան մէջ նշուած է. «Իր այցելութեան ընթացքին

4

ՋԱՀԱԿԻՐ

## ՄԽԻԹԱՐ ԳՈՇԻ ԱՌԱԿՆԵՐԷՆ

**Խոհեմ մարդը եւ ծառերը**

Խոհեմ մարդ մը հարցուց ծառերուն.

– Ի՞նչն է պատճառը, որ ինչքան կը բարձրանաք, այնքան խոր արմատներ կը ձգէք:

Եւ անոնք կը պատասխանեն.

– Խոհեմ ըլլալով, ինչպէ՞ս չես գիտեր, որ մենք չենք կրնար այսքան ճիւղեր կրել եւ ընդդիմանալ հողմերու ճնշումին, եթէ խոր եւ բազմաճիւղ արմատներ չունենանք: Կը տեսնես մեր եղբայր հաճարի եւ փիճի ծառերը, որոնք թէեւ շատ ճիւղեր չունին, չեն կրնար դիմադրել, որովհետեւ չունին նաեւ խոր արմատներ:

3

# ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ՀԱՐՑԸ՝ ՎԵՐՋԱՑԱ՞Ծ

Փաշէր պիտի քննարկէ նաեւ Ազըրպէյճանի եւ Հայաստանի միջեւ կայուն խաղաղութեան հեռանկարները՝ հիմնուած ինքնիշխանութեան եւ տարածքային ամբողջականութեան փոխադարձ յարգանքի վրայ»:

- Կէսօրէ ետք ժամը 4-ի մօտերը, Լաչինէն Հայաստան տեղափոխութեան ժամանակ կը ձերբակալուի միլիառատէր օլիկարք Ռուբէն Վարդանեան եւ կը տեղափոխուի Պաքու: Անշուշտ իր փտածութեան (corruption) համար չէ որ կը ձերբակալուի: Հայաստանի կառավարութիւնը Վարդանեանի պաշտպանութեան համար անմիջապէս կը դիմէ Մարդու Իրաւունքներու Եւրոպական Դատարան (ՄԻԵԴ):

- Ազըրրպէյճան կ'անջատէ Ղարաբաղ Տելեկոմ բջիջային հեռախօսի կապը Ղարաբաղի մէջ, հաղորդելով՝ որ յետայսու հեռախօսային հաղորդակցութիւնը պիտի իրականացուի միայն Ազըրպէյճանի հեռահաղորդակցային միջոցներով:

- Ժամը 18-ի դրութեամբ Ղարաբաղէն Հայաստան մուտք գործած են բռնի տեղահանուած 53 հազար 629 անձեր:

**28 ՍԵՊՏԵՄԲԵՐ**

- Արցախի նախագահ Սամուէլ Շահրամանեան հրամանագիր կը ստորագրէ, ըստ որուն մինչեւ 2024 Յունուար 1-ը պէտք է լուծարուին Արցախի բոլոր պետական հիմնարկները եւ կազմակերպութիւնները, եւ Լեռնային Ղարաբաղի (Արցախի) Հանրապետութիւնը պիտի դադրի գոյութիւն ունենալէ: Հրամանագիրի բնագիրին կարելի չէ ծանօթանալ, քանի որ Արցախի նախագահի պաշտօնական կայքը այլեւս չի գործեր: Լուրը հրապարակած է Արցախի տեղեկատուական գրասենեակը:

- Պաքուի մէջ Ռուբէն Վարդանեանին կ'առաջադրուին արհեստական մեղադրանքներ եւ խափանումի միջոց կ'ընտրուի կալանքը՝ 4 ամիս ժամկէտով:

- Սամանթա Փաուէրի վերջին այցելութիւնները Երեւան եւ Պաքու կու տան իրենց պտուղները՝ ի շահ ԱՄՆ-ի: ԱՄՆ պետական նախարար Մաթիւ Միլլէր կը յայտնէ՝ որ Ազըրպէյճան ընդունեց միջազգային դիտորդական առաքելութիւն ընդունիլ Լեռնային Ղարաբաղի մէջ [իմա՝ Ազըրպէյճանի, Ա.] եւ յառաջիկայ օրերուն ԱՄՆ պիտի աշխատի այդ ուղղութեամբ: Արդեօ՞ք ասիկա սկիզբն է Ազըրպէյճանի մասնակի արհամարհանքին Ռուսաստանին:

- Արցախի արտաքին գործոց նախկին նախարար Դաւիթ Բաբայեան կը տեղեկացնէ՝ որ Ազըրպէյճան իրմէ պահանջած է հետաքննութեան համար ներկայանալ Պաքու: Այս նպատակով Սեպտեմբեր 28-ին Ստեփանակերտէն յօժարակամ կը մեկնի Շուշի ինքզինքը յանձնելու, քանի որ իր փախուստը կրնայ լուրջ վնաս հասցնել, իր խօսքերով՝ «մեր բազմաչարչար ժողովրդին, շատ ու շատ մարդկանց»:

- Ժամը 22-ի դրութեամբ Ղարաբաղէն Հայաստան մուտք գործած բռնի տեղահանուածներուն թիւը կը հասնի 78 հազար 354-ի:

**ՄԱՐԴԿԱՅԻՆ ԱՂԷՏ**

Հայաստան կ'ընդունի բռնի տեղահանուածներու զանգուած մը եւ կանգնած է մարդասիրական աղէտի առջեւ: Հայաստան հսկայական աշխատանք կը տանի զանոնք ընդունելու եւ տեղաւորելու համար:

Մարդիկ՝ յոգնած, յուսահատ, անօթի, որոնք ամէն բան կորսնցուցած նոր կեանք պիտի սկսին Հայաստանի մէջ, կեանք մը՝ որ երբեք պիտի չնմանի նախկինին: Մարդիկ՝ որոնց մէկ մասն ալ թերեւս յուսահատութեան գագաթնակէտին գաղթէ Հայաստանէն:

Սկսած են իրական մարդկային պատմութիւններ յայտնաբերուիլ, ըլլայ այսօրուայ հոգեբանական վիճակին հետ կապուած, կամ արդէն անցեալ դարձած ղարաբաղեան կեանքէն՝ յատկապէս ազէրիներու հետ միքրօ բախումներէն, որոնց գրանցումն ու տարածումը արգիլուած էր մինչեւ երէկ եւ որոնք կը ներկայացնեն ամենա(հակա)մարդկային կացութիւններ: Անոնց մասին ընկերաբանները հատորներ պիտի լեցնեն:

**ԸՆԴԴԻՄՈՒԹԻՒՆ**

Սեպտեմբեր 19-ին տեղի կ'ունենան զանգուածային անկարգութիւններ կառավարութեան շէնքին առջեւ, իսկ Սեպտեմբեր 20-էն մինչեւ այսօր՝ սակաւամարդ հանրահաւաքներ եւ բողոքացոյցեր, հակառակ մարդկային գործող ճգնաժամին եւ բոլորովին անտարբեր անկէ: Կիրք մը՝ որ ուղղուած է դէպի փողոց, փոխանակ ուղղուելու դէպի մարդը՝ դէպի անտունի ղարաբաղցին:

Մասնակցող խորհրդարանական ընդդիմութեան միակ նպատակն է կատարել իշխանական յեղաշրջում եւ վերադարձնել իր կորուսեալ բարիքները: Սփիւռքի փոքր բայց բարձրաձայն հատուած մը իր աջակցութիւնը կը ցուցաբերէ այս ժխորին:

*Epress.am* կը ներկայացնէ Սեպտեմբեր 20-ի պատկերը. «Նախկին նախագահների հետ փոխկապակցուած ընդդիմութիւնը հանրահաւաք է անում Հանրապետութեան Հրապարակում, խայտաբղետ խմբեր են հաւաքուել նաեւ Ռուսաստանի երեւանեան դեսպանատան մօտ: Սասնայ Ծռերից Ազգային Ժողովրդական Բեւեռի վերածուած «Հակառուսական ճակատը» մինչ այս Նիկոլ Փաշինեանի առանձնատան մօտ էր» (https://epress.am/2023/09/20/a-feast-in-time-of-plague.html):

Աւօ Պօղոսեան Սեպտեմբեր 25-ին *Ասպարէզի* կայքէջին վրայ կը գրէ. «Բարեբախտութիւն է որ մեր երկիրի պարագային, փողոցային կոշտ քայլերը, երթերը, անկարգութիւնները եւ բիրտ ուժի գործածութիւնը կը կատարուին առաւելաբար խորհրդարանական ընդդիմութեան կողմէ, որովհետեւ այդ ուժերը բարոյազրկուած են յաչս ժողովուրդին: Հետեւաբար, մեծաթիւ զանգուածներ փողոց հանելու կարողութիւնը չունին»:

Ասիկա բարեբախտութիւն կը նկատէ, որովհետեւ ժամանակը չէ նման գործողութիւններու, երբ երկիրը կանգնած է ճգնաժամի առջեւ. «Անշուշտ ասիկա չի նշանակեր, որ մնացեալ ժողովուրդը իշխանութեան բոլոր քայլերուն հետ համամիտ է, սակայն կը գիտակցի, որ այս հանգրուանին, պետականութեան պահպանումը կարմիր գիծ է. իսկ իշխանափոխութիւնը ուղղակի սպառնալիք է պետականութեան գոյութեան, որովհետեւ սահմանին թշնամին պատրաստ է ներխուժման եւ երկիրին մէջ անկայունութիւնը ի նպաստ իրեն է»:

Ցոյցերը կը շարունակուին՝ բռնութեան կոչերով: Փողոցի խօսքը ծայրայեղ փոփիւլիսթական է եւ վտանգաւոր:

**ԿԱՐՃ ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ**

1. Այսպէս վերջացա՞ւ Ղարաբաղի հարցը: Ղարաբաղի հարցը՝ երբեւ այդպիսին, վերջացաւ: Ղարաբաղի հարցը՝ որ մաս մըն է շատ աւելի ընդարձակ բնաբանի մը, որուն մէջ կը մտնեն անդրազգային ընկերութիւններու շահերը, համաշխարհային զինարտադրական արդիւնաբերութիւնը, դեռ երկար պիտի շարունակուի: Պիտի շարունակուի Ղաբաղաղի մէջ կամ անկէ դուրս՝ նայած ինչպէս պիտի վերջանայ կամ չվերջանայ Ղաբարաղէն հայերու տեղահանումի հարցը, կամ ինչպէս Թուրքիա-Ռուսաստան-Ազըրպէյճան-Իսրայէլ մերձեցումները պիտի շահագործեն Ղարաբաղի հարցին պատճառով կամ պատրուակով յառաջացած հայ-ազէրիական թշնամանքը հին ու նոր հարցեր տարածելու եւ վերատարածելու համար: Օրինակ՝ Զանգեզուրի Միջանցք կոչուածը, որ թէեւ տարածքային առումով կապ չունի Ղարաբաղի հետ, իրականութեան մէջ շահագործումն է անկէ արհեստականօրէն բայց կանխամտածուած դիտաւորութեամբ բխած կացութիւններուն: Կարելի է Զանգեզուրի փոխարէն ուրիշ խնդիր մը յառաջացնել: Կարելի է շատ դիւրութեամբ շարունակել մեծ ու փոքր կրակոցները Հայաստանի սահմաններուն, ինչ որ հայերս կ'անուանենք զինադադարի խախտում, ինչպէս տեղի կ'ունենար 1994-էն ի վեր, որ պատերազմական դրութիւնը վառ պահելու գործնական միջոց մըն է: Հիմա տեսանք նաեւ Արցախի ղեկավարներու ձերբակալութիւնը եւ կալանքը Պաքուի մէջ, որ շատ հաւանական է ըլլայ Հայաստանին վրայ ճնշելու յետագայ միջոցներէն մէկը: Տակաւին կան 44-օրեայի գերիները, զորս Ազըրպէյճան կը մերժէ վերադարձնել Հայաստանին: Ամէն պարագայի, դժուար չէ նոր հակամարտութիւն ստեղծել: Աշխարհը վարպետ է այս կէտին մէջ: Իսկ Պր. Ալիեւ որքա՞ն կրնայ յարատեւել երբեւ իր երկիրին առաջնորդը՝ եթէ խաղաղութիւն կնքուի Հայաստանի հետ: Չէ՞ որ իր բռնատիրական վարչակարգի գոյութեան գլխաւոր գործօնը հիմնուած է այլատեացութեան պատումին վրայ, որուն շնորհիւ ցարդ յաջողած է լռեցնել ընդդիմութեան եւ այլակարծութեան ու բազմակարծութեան ձայնը: Հայատեացութեան վերացումով Ալիեւ գերդաստանը կրնայ վտանգել իր իսկ գոյութիւնը Ազըրպէյճանի մէջ:

2. Ղարաբաղի հայութեան պարպումէն ետք, ինչպէ՞ս Ռուսաստան պիտի ապահովէ իր գոյութիւնը Ղարաբաղի մէջ կամ անոր շրջակայքը խաղաղապահներու անունին տակ: Ռուսական կորո՞ւստ մը պիտի ըլլայ ասիկա, թէ նոր խաղի մը սկիզբը: Մանաւանդ որ Ազըրպէյճան համաձայնեցաւ ԱՄՆ-ի հսկողութեամբ միջազգային դիտորդներ ընդունիլ Ղարաբաղի մէջ, որ կրնայ դիտուիլ երբեւ Ռուսաստանի փոքր նահանջ մը այդ տարածքէն:

3. Ուշադրութիւն պէտք է դարձնել Սեպտեմբեր 19-20-ի պատերազմի արձագանգներուն արեւմուտքի մէջ: Պատերազմը եւ անոր յաջորդող մարդասիրական ճգնաժամը աշխարհի լրատուամիջոցներուն կեդրոնն էր՝ ի տարբերութիւն 44-օրեայէն: Արեւմուտքի բազմաթիւ երկիրներ դատապարտեցին Ազըրպէյճանի յառաջացուցած մարդասիրական ճգնաժամը, յայտնեցին իրենց կարեկցութիւնը հայերուն նկատմամբ, Ազըրպէյճանէն պահանջեցին երաշխաւորել հայերուն ապահովութիւնը, նիւթական օգնութիւն ցուցաբերեցին տարհանուածներուն, բայց ոչ մէկը, ՈՉ ՄԷԿԸ, մեղադրեց Ղարաբաղին վերջնական անցումը Ազըրպէյճանին, ՈՉ ՄԷԿԸ վիճարկեց այս կէտը: ՄԱԿ-ի եւ ԵՄ-ի պաշտօնական դիրքը յստակ եղած է սկիզբէն ի վեր՝ Ղարաբաղը ինքնավար հանրապետութիւն մըն է Ազըրպէյճանի կազմին մէջ: Թէ ինչո՞ւ այս դիրքին վրայ կառչած մնացին, մինչ ուրիշ պարագաներու ցուցաբերած են փոփոխական մօտեցումներ (օրինակ՝ Քոսովոն), թէ ինչո՞ւ այս կէտը գործի դրուեցաւ՝ մինչ ուրիշ պարտաւորեցուցիչ բանաձեւեր չեն գործադրուիր (օրինակ՝ 1975 Դեկտեմբեր 5-ի թիւ 3414 եւ յաջորդող բանաձեւերը՝ որոնք կը պարտաւորեցնեն Իսրայէլին վերադառնալ 1967-ի տարածքները), ուրիշ հարց:

Ա.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1950 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 12 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٥٠ الخميس ١٢ أكتوبر ٢٠٢٣


# ՅԵՏԱՐՑԱԽԵԱՆ ՆՇԱՆՆԵՐ

## ԱՐՑԱԽԻ ՊԱՐՊՈՒՄ ԵՒ ՂԵԿԱՎԱՐՆԵՐՈՒ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆՆԵՐ

Հոկտեմբեր 4-ին կը յայտարարուի Արցախէն Հայաստան տեղահանուածներուն վերջնական թիւը՝ 100 հազար 632:

Նոյն օրը Հայաստան կը տեղափոխուի Արցախի նախագահ Սամուէլ Շահրամանեան:

Վերջացած է տեղահանութիւնը:

Սեպտեմբեր 27-ին, Լաչինի անցակէտին Ազըրպէյճան կը ձերբակալէ Արցախի նախկին պետնախարար, միլիառատէր օլիկարք Ռուբէն Վարդանեանին եւ կը փոխադրէ Պաքու:

Սեպտեմբեր 28-ի առաւօտեան, Արցախի նախկին արտաքին գործոց նախարար եւ նախագահի խորհրդական Դաւիթ Բաբայեան իր ֆէյսպուքեան էջին վրայ կ՚արձանագրէ, որ ընդգրկուած է Ազըրպէյճանի սեւ ցուցակին մէջ եւ Ազըրպէյճան կը պահանջէ իրմէ ժամանել Պաքու հետաքննութեան համար: «Որոշեցի այսօր Ստեփանակերտից մեկնել Շուշի», կը տեղեկացնէ: Շուշիի մէջ կը ձերբակալուի եւ կը փոխադրուի Պաքու:

Սեպտեմբեր 29-ին, նոյն անցակէտին կը ձերբակալուի Արցախի պաշտպանութեան նախկին նախարար, բանակի հրամանատար Լեւոն Մնացականեան եւ կը փոխադրուի Պաքու:

Նոյն օրը կը կալանաւորուի Արցախի Պաշտպանութեան Բանակի հրամանատարի նախկին տեղակալ Դաւիթ Մանուկեան՝ դաշնակցական Գեղամ Մանուկեանի եղբայրը, եւ կը փոխադրուի Պաքու:

Ըլլալով Պաքուի յայտարարուած ամբաստանեալներ, Արցախի երեք նախկին նախագահները՝ Արկադի Ղուկասեան, Բակօ Սահակեան եւ Արայիկ Յարութիւնեան կը շարունակեն մնալ Ստեփանակերտ, մինչեւ որ Հոկտեմբեր 3-ին կը ձերբակալուին եւ կը փոխադրուին Պաքու:

Կը վերջանայ Արցախի պաշտօնատարներու ձերբակալումի շղթան եւ կը սկսի հայկական լրատուամիջոցներու քաոսային մեկնաբանութիւնները, առանց իրազեկ ըլլալու Ազըրպէյճանի բուն դրդապատճառներուն: Ըսուեցաւ ամէն հնարաւոր եւ ոչ հնարաւոր բան: Ինչո՞ւ այս անձերը եւ ոչ ուրիշներ (ուրիշնե՞ր ալ կ՚ուզէինք ձերբակալուած տեսնել): Ինչո՞ւ բժշկական օգնութեան ուղղաթիռներով փախուստ չտուին. ուրեմն բան մը կայ ասոր ետեւը: Անոնք տարազուեցան իբրեւ Ազըրպէյճանի լրտես, Հայաստանի լրտես, Ռուսաստանի լրտես, համապատասխան որակաւորումներով: Կատարեալ լրատուական քաոս մը՝ որ, դժբախտաբար, յատուկ չէ միայն այս ձերբակալութիւններուն, այլ ողողած է ընդհանուր լրատուական դաշտը Հայաստանի եւ Սփիւռքի մէջ:

Ասիկա արդիւնքն է մամուլի ազատութեան, բայց ոչ ազատագրութեան, քանզի վերջինս ինքնահսկում է, ինքնագիտակցութիւն, ինքնակառավարում, դատողութեան մակարդակ, տրամաբանութեան գիտակցութիւն:

Անշուշտ Ազըրպէյճան ուղղակի նպատակ մը պիտի ունենար զանոնք ձերբակալելով: Չենք գիտեր այդ նպատակը: Բայց կրնանք վստահ ըլլալ, որ Հայաստանին նոր թակարդ պատրաստելու միջոց մըն է ան, հետապնդում թշնամանքի շարունակութեան, նոր խոչընդոտ խաղաղութեան համար:

## ԱԶԸՐՊԷՅՃԱՆ-ՆԱԽԻՋԵՒԱՆ ԱՊԱՇՐՋԱՓԱԿՈՒՄ

Գործածութենէ դուրս եկած 2020 Նոյեմբեր 9-ի եռակողմ յայտարարութեան 9-րդ կէտը բաւական յատակ է, երբ կը խօսի Ազըրպէյճանի ու Նախիջեւանի երթեւեկային ապաշրջափակումի մասին՝ Հայաստանի կողմէ ապահովութեան երաշխաւորումով, Ռուսաստանի սահմանապահներու վերահսկողութեամբ: Խօսք չկայ տարածքի յանձնումի մասին, ապահայկական տարածք հիմնելու մասին, նոյնիսկ միջանցքի մասին: Խօսք կայ անցում Հայաստանի սահմաններէն՝ ըստ երկիրի սահմանային օրէնքներուն:

Որոշ ժամանակ ետք Իլհամ Ալիեւ սկսաւ գործածել Զանգեզուրի Միջանցք եզրոյթը, եռակողմ յայտարարութեան մէջ նշուած Լաչինի Միջանցքի նմանողութեամբ: Այս տարուայ Յունուար 10-ին, հարցազրոյցի մը ընթացքին Ալիեւ բացայայտօրէն ընդունեց. «Այո, ես այդ եզրոյթը յետոյ մտցուցի աշխարհաքաղաքական բառապաշարին մէջ»:

Շնորհիւ Ալիեւի, Զանգեզուրի Միջանցք անուանումը ստացաւ նոր հնչեղութիւն, Արեւմուտքը մեքենայաբար սկսաւ գործածել այս եզրոյթը, հայ ընդդիմադիրներու համար դուռ բացուեցաւ Հայաստանի իշխանութիւններուն կրկին մեղադրելու ինքնավար տարածքներ յանձնելու համար:

Ներկայ իշխանութիւնները միանշանակ պնդեցին՝ որ ինքնավար տարածքներ յանձնելը կարմիր գիծ է Հայաստանի համար եւ հարցը դուրս է որեւէ օրակարգէ, իսկ ազըրպէյճանցիները կրնան հատել Հայաստանի սահմանը՝ ինչպէս ուեւէ ճամբորդ ու անցորդ, ըստ Հայաստանի սահմանային օրէնքներուն, եւ ըստ Նոյեմբեր 9-ի յայտարարութեան:

Սեպտեմբեր 19-20 եւ Ղարաբաղի ամբողջական գրաւում:

Սեպտեմբեր 25-ին Նախիջեւանի մէջ կը հանդիպին Էրտողանն ու Ալիեւը: Թուրքիոյ նախագահը հանդիսաւոր ոճով կը յայտարարէ՝ որ թէեւ Զանգեզուրի Միջանցքը ռազմավարական նշանակութիւն ունի Անքարայի եւ Պաքուի համար, բայց եթէ Հայաստան համաձայն չըլլայ, այդ ճանապարհը կրնայ անցնիլ Իրանի տարածքով: Պահանջի կտրուկ մեղմացում:

Լրագրողները կը պարզեն՝ որ մէկ տարի առաջ Պաքուի մէջ Էրտողան ըսած էր, որ «Իրանը աւելի մեծ խոչընդոտ է Զանգեզուրի Միջանցքի համար, քան Հայաստանը»:

Ազըրպէյճանի նախագահի օգնական, նախագահի աշխատակազմի արտաքին քաղաքականութեան բաժինի ղեկավար Հիքմէթ Հաճիեւ Սեպտեմբեր 27-ին կը հաղորդէ՝ որ Պաքուն մտադիր չէ որեւէ ուժային գործողութիւն ձեռնարկել Հայաստանի տարածքով դէպի Նախիջեւան ցամաքային միջանցք ստեղծելու համար, այլ կը փափաքի Հայաստանի տարածքով Նախիջեւանի հետ միայն երթեւեկային կապ ստեղծել: Դարձեալ պահանջի մեղմացում:

Սեպտեմբեր 29-ին Ալիեւ կը տեղեկացնէ՝ որ Ազըրպէյճանը Նախիջեւանին կապող Հորադիզ-Զանգելան երկաթուղիի կառուցումը աշխոյժ ընթացքի մէջ է, ինչ որ կարելի է հասկնալ ասկէ:

Պատերազմին յաջորդ օրը՝ Սեպտեմբեր 20-ին, Ալիեւ կը յայտարարէ իր ճանաչումը Հայաստանի տարածքային ամբողջականութեան, որ նշան մըն է Հայաստանի ինքնավար տուեալ երկայնքով երթեւեկելու կարելիութեան մասին՝ տարածքը մնալով Հայաստանի սեփականութիւնը:

Հայաստանի տարածքային ամբողջականութեան ընդունում, բայց ապահովութեան երաշխիքի պահանջ: Ասիկա կ՚ըլլայ Ազըրպէյճանի նախագահի յատուկ յանձնարարութիւններու գիծով ներկայացուցիչ Էլչին Ամիրպայովի յայտարարութիւնը Հոկտեմբեր 5-ին. «Մենք կ՚ընդունինք՝ որ ասիկա Հայաստանի ինքնիշխան տարածքն է»: Բայց, «մենք պիտի պնդենք՝ որ Հայաստանը մեզ յուսալի երաշխիքներ տրամադրէ Ազըրպէյճանի հիմնական հատուածէն Նախիջեւան գացող գնացք նստած իւրաքանչիւր ուղեւորի ապահովութեան համար»: Նոյնպէս կրկնելով, որ եթէ Հայաստանը որոշէ յետաձգել գործընթացը, ճամբան պիտի անցնի Իրանով: Այսքան պարզ:

Խօսքային կտրուկ մեղմացում մըն է, թէեւ, իրական հողի վրայ հարցերը կրնան շատ աւելի բարդ ըլլալ: Ինչ խաղ է ասիկա, շուտով կը պարզուի:

## ԶԻՆԱԴԱԴԱՐԻ ԽԱԽՏՈՒՄԸ՝ ԿԵՆԴԱՆԻ

Զինադադարի խախտումը միջոցներէն մէկն է վառ պահելու պատերազմական դրութիւնը:

Սեպտեմբեր 30-ին Ազըրպէյճանի Պաշտպանութեան Նախարարութիւնը կը հաղորդագրէ՝ որ կէսօրին Հայաստանի Զինուած Ուժերը կրակ բացին սահմանի արեւելեան հատուածը գտնուող Ազըրպէյճանի դիրքերուն ուղղութեամբ, որուն հետեւանքով զոհուեցաւ ազըրպէյճանցի զինուոր մը: Հայաստանի Պաշտպանութեան Նախարարութիւնը կը հերքէ լուրը: Ազըրպէյճանի ապատեղեկատուութիւնը քայլ մըն է թշնամանքը կենդանի պահելու ուղղութեամբ:

Հայաստանի Պաշտպանութեան Նախարարութիւնը կը տեղեկացնէ՝ որ Հոկտեմբեր 2-ին Ազըրպէյճան կրակեց Կութի մէջ տեղակայուած հայկական դիրքերու անձնակազմին համար սնունդ տեղափոխող ինքնաշարժի ուղղութեամբ, թողելով մէկ զոհ եւ երկու վիրաւորներ:

Դարձեալ, Հոկտեմբեր 5-ին, Ազըրպէյճան կը կրակէ Գեղարքունիքի մարզի Նորաբակի մէջ տեղակայուած հայկական դիրքերու անձնակազմին համար սնունդ մատակարարող ինքնաշարժին ուղղութեամբ:

Ահաւասիկ ինչպէս կարելի է խաղաղութիւն կնքել Հայաստանի եւ Ազըրպէյճանի միջեւ:

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ԿԱՐԵԼԻՈՒԹԻՒՆԸ՝ ԿԵՆԴԱՆԻ

Պրիւքսէլի մէջ Հոկտեմբերի վերջ կայանալիք Փաշինեան-Ալիեւ-Միշէլ եռակողմ հանդիպումը նախապատրաստող աշխատանքներու ծիրէն ներս, Եւրամիութեան Խորհուրդի նախագահ Շարլ Միշէլ Հոկտեմբեր 8-ին հեռախօսազրոյց կ՚ունենայ Ալիեւի հետ:

Վկայակոչելով Ազըրպէյճանի նախագահի գրասենեակը, ազըրպէյճանական *Turan* գործակալութիւնը կը նշէ, որ Ալիեւ ըսեր է Միշէլին՝ թէ Ֆրանսայի կողմէ Հայաստանին զէնք տրամադրելու մօտեցումը կը ծառայէ ոչ թէ խաղաղութեան, այլ նոր հակամարտութեան, աւելցնելով. «Իսկ եթէ տարածաշրջանին մէջ կրկին հակամարտութիւն սկսի, յանցաւորը պիտի ըլլայ Ֆրանսան»:

Յիշեցնենք, որ Հոկտեմբեր 3-ին Երեւան ժամանած էր Ֆրանսայի Եւրոպայի եւ Արտաքին Գործոց նախարարուհի Քաթրին Քոլոննա եւ յայտարարած Հայաստանին զէնք վաճառելու հնարաւոր գործարքի մասին:

Ուրեմն, Ալիեւ արդէն գտած է նոր, տակաւին չծագած հակամարտութեան մը պատասխանատուները՝ Ֆրանսա եւ Հայաստան:

Հակամարտութիւնն ալ պատրաստ կը թուի ըլլալ: Միշտ *Turan*-ի հաղորդագրութեամբ, Ալիեւ Միշէլին կը յիշեցնէ ութ միջերկիր (enclave) գիւղերու մասին՝ շեշտելով որ «անոնք տակաւին գրաւուած կը մնան Հայաստանի կողմէ», շեշտելով «անոնց ազատագրումի կարեւորութիւնը»:

Ո՞ւր մնաց տարածքային ամբողջականութեան ընդունումը:

## ՄԱԿ-Ի ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆ

Հոկտեմբեր 2-ին ՄԱԿ-ի առաքելութիւն մը մէկ ժամեայ այցելութիւն կու տայ արդէն Խանկենդ քաղաքը՝ նախկին Ստեփանակերտ, Պաքուի ներկայացուցիչներու ուղեկցութեամբ, արձանագրելու համար որ ամէն բան տեղն է՝ չկայ ենթակառուցուածքային վնաս, անվնաս են հիւանդանոցները, դպրոցները, բնակարանները, մշակութային եւ կրօնական վայրերը: Իրենց արգիլուած էր այցելել Ստեփանակերտէն դուրս, տեսնելու համար Սեպտեմբեր 19-20-ին ռմբակոծուած ու հիմնայատակ եղած գիւղերը:

Առաքելութիւնը կ՚արձանագրէ՝ որ բռնութեան ոչ մէկ տեղեկագիր կը ներկայացուի իրենց: Չկայ էթնիքական մաքրագործում:

ՄԱԿ-ը զարմացած է նաեւ՝ թէ ինչպէս այսքան արագ եւ դիւրին կերպով հայերը հեռացան Ղարաբաղէն, մոռնալով իննամսեայ շրջափակումը, եւ հիմա արդէն Ղարաբաղի մէջ ապրելու անկարելիութիւնը իբրեւ հայ:

## ԴԷՊԻ ԱՐԵՒՄՈՒՏՔ

Դէպի Արեւմուտք՝ քաղաքական այլազանութիւն որոնելու հետքերով, բայց ոչ ռուսական դաշնագրութենէն դուրս գալու նպատակով:

Դէպի Արեւմուտք՝ երբ Հայաստանի ամենա-

➪ 4

# ԱԿՆԱՐԿ ԵՐԵՍՆԱՄԵԱՅ ԱՐՑԱԽ/ՂԱՐԱԲԱՂԻՆ ՎՐԱՅ

**Հ. ԱՒԱԳԵԱՆ**

Ստորեւ փորձ մըն է ուրուագծել Ղարաբաղի հարցը երեսուն տարուայ թաւալքով, շօշափելով զանազան խնդիրներ, տեսնելով լուծումներ՝ բոլորովին այլ հարթութեան վրայ, համեմատութեան մէջ դնելով հայկական եւ ազերիական կեցուածքները՝ այնտեղ տեսնելով նմանութիւններ ու տարբերութիւններ, զանազանելով անկեղծ, ներքնաբուխ ու ներառական ազգայնականութիւնը՝ կեղծ, վերադիր, բացառապաշտ ու փաշական ազգայնականութենէն, շեշտելով՝ որ այսօր վերջինն է ամենազօրեղն ու ամենաձայնաւորը Հայաստանի եւ Սփիւռքի մէջ, այլեւ աղէտներու սկզբնաղբիւրը:

## ԱՌԱՋԻՆ ԵՒ ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐՈՒՆ ՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Առաջին պատերազմը կ՚անուանեմ անիշխանական (անարշիսթական)՝ բառիս համեմատական իմաստով:

Այս պարագային ի՞նչ նկատի ունիմ անիշխանականութեամբ:

Նախ՝ Խորհրդային Միութեան փլուզումը: Այնտեղ ապրողին համար ահռելի հասարակական փոփոխութիւն մըն էր տեղի ունեցածը: Հոգեկան վիճակը վախն էր, անորոշութիւնը, անտիրականութիւնը, խառնաշփոթութիւնը: Միաժամանակ, վերէն եկած իշխանական հրահանգին եւ տիրապետութեան տապալումը: Չկար կեդրոնական Մոսկուան՝ որ հրամայէր, չկար տակաւին հրամայող եւ արտաքին ու ներքին քաղաքականութեան ուղղութիւն տուող հայկական իշխանութիւն: Արուեստի մէջ, օրինակ, այդ տիրապետեալ գործողութիւններու բացակայութեան պայմաններուն մէջ, Հայաստանի մէջ ի յայտ եկան իրական աւան-կարտիսթական ուղղութիւններ, որոնցմէ թերեւս ամենայայտնին է 3-րդ յարկ նախաձեռնութիւնը: Այսինքն, մարդիկ ինքնակազմակերպուեցան, առանց վերէն եկած կողմնորոշումներու: Խօսքը ինքնակազմակերպութեան մասին է: Նոյնը կը կատարուէր նաեւ Ազրպէյճանի մէջ:

Անտիրականութեան մէջ յայտնուեցաւ Ղարաբաղը: Մակերես բարձրացաւ հին, թաքնուած խնդիրը՝ որո՞ւնն է Ղարաբաղը: Ան պէտք է յարմարէր ազգային-պետութեան (ազգ-պետութիւն, nation-state) տրամաբանութեան: Կամ իմս է, կամ քուկդ: Մեր երկուքինն է հասկացողութիւնը դուրս էր որեւէ ըմբռնումէ:

Կարեւոր հանգամանք մըն էր զինարտադրական արդիւնաբերական ընկերութիւններուն ուղղակի ներգրաւումին բացակայութիւնը: Երկու կողմերու ժողովուրդներն էին որոշողները՝ իրենց ձեռքը ունեցած զէնքերով, մեծ մասամբ խորհրդային շրջանէն ժառանգուած: Տակաւին տուեալ տարածութեան վրայ չկային այն հրէշային ընկերութիւնները՝ որոնք գիտեն ազդել պետութիւններու որոշումներուն վրայ, վերջիններս ալ իրենց կարգին գիտեն շարժել ժողովուրդները ըստ վերնախաւի եւ ընտրեալ դասակարգի կամքին եւ շահերուն: Ասիկա չկար առաջին պատերազմին: Խօսելով հայկական կողմի մասին, պետականօրէն կիսավերահսկուած բանակներու գոյութիւնը առիթ տուաւ հայկական արտասահմանեան եւ տեղական խումբերու եւ անձերու ինքնակամ մասնակցութիւնը պատերազմին՝ առանց մեծամիտ հայրենասիրական խօսքերու, այլ ուղղակի մասնակցութեամբ իրենց անձով, ուժեղ նպատակասլացութեամբ եւ մղուածութեամբ եւ գրեթէ ամբողջական ինքնակազմակերպումով: Ասիկա է զոր անուանեցի անիշխանականութիւն, այսինքն՝ ինքնակազմակերպութիւն:

Եւ այս է գլխաւոր տարբերութիւը երկու պատերազմներուն միջեւ:

Պատերազմը՝ որ բացասական գործողութիւն մըն է, միացաւ անիշխանական-ինքնակազմակերպութեան՝ որ դրական գործողութիւն մըն է: Վերը նշեցի՝ որ անիշխանականութիւնն այստեղ համեմատական էր, ոչ ամբողջական, երկու հիմնական պատճառներով: Նախ, որովհետեւ հարցը լուծուեցաւ պատերազմով՝ ուժով, զոհերով, մարդկային տառապանքով: Մինչդեռ անիշխանութեան հիմքը ոչ-ուժն է: Երկրորդ, եթէ անիշխանութիւնը ըլլար ամբողջական, հայն ու ազերին պիտի որոշէին ապրիլ միասին, համատեղ ղեկավարութեամբ, վարէն վեր կառավարուող ժողովրդավարութեամբ:

Ամէն պարագայի, առաջին պատերազմը վարէն բխած պատերազմ մըն էր՝ վերէն եկած եւ շատոնց արդէն արմատացած ազգային պետութեան հասկացողութեան մէջ:

Երկրորդ պատերազմին մէջ, գոնէ հայկական կողմը նկատի առնելով, ենթակայական համակեցութիւնը՝ որ անիշխանականութեան յատկանիշներէն մէկն է, չկար: Չկային արտաբանակային խումբեր եւ անձեր (չհաշուելով քանի մը հոգի), չկար համազգային նպատակասլացութիւն: Ամէն բան ձգուած էր պետութեան ու բանակին: Վերջապէս, չկային անիշխանական տարրեր:

1994-ի զինադադարէն ի վեր, Ղարաբաղի հարցը դարձած էր բազում արտաքին շահարկումներու խաղալիքը, Ղարաբաղի շրջակայքը վերածուած ամբարուած զէնքի վտանգաւոր տարածք մը՝ ի շահ համաշխարհային զինարտադրական արդիւնաբերութեան, մուտք գործած էին հանքարդիւնաբերական անդրազգային ընկերութիւններ, եւ այս բոլորը, ի վերջոյ, պիտի տնօրինէր 2020-ի պատերազմը, զայն դարձնելով ի վերուստ վերահսկուած: Այս բոլորը չկար առաջին պատերազմին:

Մէկ խօսքով, առաջինը վարէն վեր շարժում մըն էր, երկրորդը՝ վերէն վար:

## ԱՌԱՋԻՆ ԵՒ ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐՈՒՆ ՆՄԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Երկու պատերազմներն ալ կայացան ազգային պետութեան տրամաբանութեան մէջ՝ կամ ե՛ս, կամ դո՛ւն: Վերջապէս, երկուքն ալ պատերազմներ էին:

Անկախ քաղաքացիական անձի եւ զինուորականի արհեստածին տարբերութենէն՝ քանզի բոլորն ալ մարդ են, երկուքին մէջ ալ եղան մեծ քանակութեամբ զոհեր: Աւելի քան 40 հազար զոհ-սպանութիւն երկու կողմերէն՝ 1988-էն մինչեւ այսօր: Ասիկա բաւարար չէ՞ երկու պատերազմները նոյնանման համարելու համար: Մէկ ցեղի մը մարդիկ էին որոնք կ՚անյայտանային, եւ այդ ցեղը կը կոչուէր մարդ:

Երկու պատերազմներն ալ ունեցած են պարտուող կողմերու տեղահանուածներ: Այսօր ականատես եղանք աւելի քան 100 հազար հայերու տեղահանումը դէպի Հայաստան: Հայերս մոռցանք՝ որ առաջին պատերազմը եւս արտադրած էր բռնի տեղահանուածներ, այս անգամ Ազրպէյճանի կողմը, որոնց մասին միշտ նախընտրած ենք լռել: 1994-ին, իր պատմութեան մէջ առաջին անգամ ըլլալով Ղարաբաղը դարձաւ միաէթնիք՝ բառին ամբողջական իմաստով, այնինքն՝ այնտեղ նոյնիսկ չկային փոքրամասնութիւններ: 2023-ին ան եւս մնաց միաէթնիք՝ միւս կողմի համար: Միաէթնիքականութիւնը մնաց անփոփոխ:

Մարդը՝ մարդ է: Տեղահանուածը՝ տեղահանուած: Ոչ մէկ տեղահանում կ՚արդարացնէ միւսը: Վրէժխնդրային արդարացումներու շարքը ինքնին աղէտի ամենասոսկալիներէն է:

## ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՐՑԻՆ ԻՐԱԻԱԿԱՆ ԿՈՂՄԸ

Իրաւականութիւնը եւ օրէնքը ուժեր են ուժեղի ձեռքը: Նախ, ուժեղը իր համար կը ստեղծէ օրէնքը՝ իր շահերուն համեմատ, եւ մէյ մը որ կը ստեղծէ զայն՝ կը կառչի անկէ եւ անընդհատ կը խօսի անոր անունով: Կը խօսի օրէնքի անունով, իբր իրմէ անկախ գոյացած եւ գոյութիւն ունեցող գործօն: Իբր «ստիպուած» է ենթարկուիլ անոր, մինչ ինքն է զայն ստեղծողը:

Միջազգային կառոյցները՝ ՄԱԿ, ԵՄ, եւլն., 30 տարի շարունակ բանաձեւեցին՝ որ Ղարաբաղը ինքնավար հանրապետութիւն է Ազրպէյճանի մէջ: Ոչ մէկ հայ ղեկավար կրցաւ փոխել այս փաստաթղթային ամրագրումը: Կողմնակի նկրտումները, անկարեւոր ու ոչ-բանաձեւային խորհրդանային ընդունումները՝ թերեւս մեր կողմէ թիւրաբար ենթադրելով որ կուտակուելով կրնան դառնալ կարեւոր, ոչ մէկ իրաւական հենք ունեցան բան մը փոխելու համար: Եւ ահաւասիկ, նոյնիսկ Ղարաբաղի պարպումէն ետք, մենք հայերս ոչ մէկ յղում կրցանք կատարել այս կողմնակի «ընդունում»-ներուն, իմանալով անոնց ոչ-իրաւական բնոյթը: Բնականաբար, պիտի չկրնայինք իրաւական հենքի վրայ բողոք ներկայացնել միջազգային կառոյցներուն, քանի որ բոլորին համար Ղարաբաղը Ազրպէյճան էր: Հետեւաբար, բաւարարուեցանք բարձրաձայնելով մարդասիրական աղէտը՝ որ իրական էր ու ահռելի, հիմնուեցանք էթնիք զտումի գաղափարին վրայ՝ զոր անընդհատ կրկնեցինք վարչապետէն սկսեալ, բայց ոչ աւելի: Էթնիք զտումն ալ չգործեց, ՄԱԿ-ի ներկայացուցիչները Ղարաբաղ այցելելով յայտարարեցին՝ որ ամէն բան եղած է մաքուր: Ազրպէյճան այլեւս զերծ է էթնիք զտումի ամբաստանութենէն:

30 տարուայ ընթացքին Հայաստանը փորձեց իրաւական ելք գտնել միջազգային օրէնքի այլ կէտի վրայ՝ ազգերու ինքնորոշումի իրաւունքը: 30 տարի ասիկա ըսինք՝ անօգուտ: Կար առաջին պատերազմին ազրպէյճանցի տարհանուածներուն խնդիրը, որոնք իբր պէտք է վերադառնային միջազգայինօրէն ընդունուած ինքնորոշումի հանրաքուէ կայացնելու համար: Թէեւ գիտենք, որ նոյնիսկ եթէ վերադառնային (անկարելի բան մը), ինքնորոշումի կէտը պիտի ստորադասուէր տարածքային ամբողջականութենէն (Ազրպէյճանի):

Տարածքային ամբողջականութիւն՝ ընդդէմ ինքնորոշումի իրաւունք, ահաւասիկ միջազգային օրէնքի դիտաւորեալ գործող երկու հակասական կէտերը, որպէսզի անդամ երկիրները տարածութիւն ունենան որոշումներ կայացնել ըստ իրենց սեփական շահերուն:

Օրէնքը՝ մարդաստեղծ ուժ է: Ուժը օրէնք դառնալէ ետք, անոր կը տրուի սրբութեան բարձրագոյն հանգամանք: Կը մոռցուի՝ որ ան մարդաստեղծ է, հետեւաբար, փոփոխութեան ենթակայ: Միջազգային ցանկութեան պարագային, Ղարաբաղի հանգամանքը իբրեւ Ազրպէյճանի ինքնավար հանրապետութիւն, կրնար փոխուիլ: Չփոխուեցաւ, քանի որ չկար նման ցանկութիւն, մինչ հայկական լոպպինկը գտնուեցաւ բաւական տկար վիճակի մէջ: Բնականաբար, միայն լոպպինկով չէր որ հարցը կրնար շրջափոխուիլ: Կը գործէին մեծ ուժերու յարաբերութիւններ՝ որոնք վեր էին հայերու կարողութենէն:

Օրինակ, Ռուսաստան կրնար Հարաւային Օսեթիան, Ապխազիան եւ հիմա արեւելեան Ուքրանիան գրաւել ու միացնել իրեն՝ հակառակ ՄԱԿ-ի փաստաթղթային կողմնորոշումներուն իբրեւ վրացական եւ ուքրաինական տարածքներ, բայց նոյն Ռուսաստանը՝ թէ՛ ինքնուրոյնաբար եւ թէ իբրեւ ՄԱԿ-ի անդամ պիտի ընդունէր Ղարաբաղը իբրեւ Ազրպէյճանի մաս:

Լեւոն Տէր-Պետրոսեանի նախկին խորհրդական, հմուտ պատմաբան Ժիրայր Լիպարիտեան Սեպտեմբեր 12-ին կը դասախօսէ NAASR-ի մէջ, ուր, ի միջի այլոց, կը շեշտէ.

«Բոլոր այն բարեկամները ըսած էին մեզի՝ որ Ղարաբաղը անկախ պիտի չըլլայ: Մենք պիտի չճանչնանք անկախութիւնը եւ դուք մասն էք Ազրպէյճանին: Այս էր միջազգային համայնքին պատգամը, բայց մենք չլսեցինք անոնց, այլ լսեցինք մենք մեզի:

«ՄԱԿ Ապահովութեան Խորհուրդի հինգ անդամներ, որոնցմէ չորսն են Ռուսաստանը, Ֆրանսան, ԱՄՆ-ը եւ Բրիտանիան, ամէն օր կ՚ըսէին թէ իրենք մտահոգուած են Ղարաբաղի շրջափակումով, բայց նոյնիսկ չկրցան հասնիլ բանաձեւի, ընդամէնը բանաձեւի, ըսելու համար որ Ազրպէյճանը պէտք է բանայ ճամբան:

«Մենք չունինք շքեղութիւնը ըսելու՝ այսպէս կ՚ուզեմ կամ այնպէս կ՚ուզեմ»:

Լիպարիտեան անընդհատ կրկնած է այս միտքը՝ երկրորդ պատերազմէն շատ առաջ:

Այս էր իրաւական վերջնագիրը՝ զոր պարտաւոր էինք հաշուի առնել:

## ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՐՑԻՆ ՄԱՏՈՒՑՈՒՄԸ ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆ

Կար Ղարաբաղի հարց, եւ հարցը բաւական լուրջ էր: Գիտէինք շատ բան: Անոր խորքային կողմը, սակայն, մեզի համար կը մնար անտեսանելի: ↳ 3

2

## ԱԿՆԱՐԿ ԵՐԵՍՆԱՄԵԱՅ ԱՐՑԱԽ/ՂԱՐԱԲԱՂԻՆ ՎՐԱՅ

Չէինք իրազեկուած: Կը լսէինք Մինսքի Խումբի բոլոր հանդիպումներուն մասին՝ առանց տեղեակ ըլլալու բանակցութիւններու բովանդակութենէն, ուշացումով գիտցանք փուլային եւ փաթեթային լուծումներուն մասին, ուշացումով գիտցանք Մեղրիի տարբերակին եւ Մատրիտեան սկզբունքներուն մասին:

**1. Աշխարհի կարծիքը՝ բացակայ**

Միջազգային համայնքի իրական վերջնագիրը, ինչպէս նշեցի, Ղարաբաղի կարգավիճակն էր Ազրպէյճանի մէջ: Լաւ էր թէ վատ՝ այսպէս էր: Կ՚ընդունինք թէ չենք ընդունիր՝ այսպէս էր: Այս իրականութիւնը պէտք էր յստակօրէն ներկայացուէր հասարակութեան: Չներկայացուցինք, մենք մեզի համար ստեղծելով բացարձակապաշտ իրականութիւն մը, որ մեզմէ զատ ոչ ոք ուզեց ճանչնալ:

Ժիրայր Լիպարիտեան երբ կը փորձէր իրականութիւնը ներկայացնել, անմիջապէս կ՚անուանուէր դաւաճան: Հասարակութիւնը պէտք չէր իրազեկ դառնար՝ որ ամբողջ աշխարհը Ղարաբաղը կ՚ընդունէր իբրեւ Ազրպէյճանի ինքնավար հանրապետութիւն: Աշխարհի հիմնական ուղղութիւնը այսպէս էր:

Միակ առաջնորդը՝ որ կ՚ուզէր անպայմանօրէն հասարակութեան ներկայացնել խնդիրին էութիւնը՝ Լեւոն Տէր-Պետրոսեանն էր: Ան կը փորձէր այս շատ կարեւոր կէտը մատչելի դարձնել հայութեան:

Ռոբերտ Քոչարեան ամբողջապէս մերժեց միջազգային պաշտօնական կարծիքը իրազեկ դարձնել հայ ժողովուրդին:

Բայց աւելին: Քոչարեան ամենաբարձր մակարդակի հասցուց ազգայնականութիւնը, աւելի ուշ իբրեւ պետական գաղափարախօսութիւն առաջ նետելով Նժդեհեան ազգայնականութիւնը, որ շատ շուտով դարձուց համատարած եւ գրեթէ պարտադրիչ բոլորին: Ամբողջ զանգուածներ կլանուեցան քոչարեանական նժդեհականութեան մէջ: Գաղափարախօսային նժդեհականութիւնը իր գագաթնակէտին հասաւ Սերժ Սարգսեանի ժամանակ:

Ծիշդ այնպէս ինչպէս խորհրդային համայնավարութիւնը խեղաթիւրած էր մեծագոյն մտածող Քարլ Մարքսը, Քոչարեան-Սարգսեան՝ իրենց հետ ունենալով Սփիւռքէն փոքր մաս մը, խեղաթիւրեցին եւ անդամալուծեցին նոյնինքը Նժդեհը: Բայց ասիկա արդէն ուրիշ հարց:

Կարեւորը՝ վերադիր կեղծ ազգայնականութեան բարձրագոյն աղմուկի տակ կարելի չէր ներկայացնել միջազգային կարծիքը Ղարաբաղի մասին: Կար մէկ կարծիք՝ որ մերն էր, եւ մերը կը ներկայացնէր բարձրագոյն ճշմարտութիւնը: Իսկ մերը այն էր՝ որ Ղարաբաղը հայկական է, իրական առումով՝ Արցախի Հանրապետութիւն, իբրեւ ինքնուրոյն միաւոր: Նոյնիսկ եթէ ամբողջ աշխարհը դէմ էր ասոր:

Անշուշտ, Քոչարեան-Սարգսեանի ծայրայեղ ազգայնականութիւնը բնաւ ալ աննպատակ չէր: Անիկա քօղ մըն էր իրենց վարչակարգի կիսաբռնատիրական ուղղութեան, ամուր յենարան մը իշխանական ամրապնդումին, ծածկ մը քրէաօլիկարքական ներքին գործարքներուն:

Ընտրուած երկու նախագահները լուրջ խնդիր ունէին պահպանելու իրենց իշխանութիւնը: Այս առումով կեղծ ազգայնականութիւնը բաւական լաւ գործեց քսան տարի, ի հաշիւ Ղարաբաղի իրական վիճակի ներկայացումին եւ բացատրութեան:

Ժողովրդական յեղափոխութեամբ իշխանութեան գլուխ եկաւ Նիկոլ Փաշինեան, գերազգայնական մթնոլորտի գագաթնակէտային վիճակի տիրապետութեան տակ: Շատ աւելի բարդ եղաւ իր շրջանը՝ հանրութեան հարցին իրական պատկերը ներկայացնելու առումով:

Ան նախ եւ առաջ ուզեց մեղմացնել գերազգային հռետորաբանութիւնը (*Զահակիր*, թիւ 1822), հաւանաբար նպատակ ունենալով յետագային բացորոշ կերպով ներկայացնել իրականութիւնը, միաժամանակ, իր ելոյթներուն մէջ բազում խաղաղութեան կոչեր ուղղելով Ալիեւին: Իր տիկինը՝ Աննա Յակոբեան, նախաձեռնեց Կանայք Յանուն Խաղաղութեան արշաւը, եւ 2018 Յուլիս 24-ին, Մոսկուայի Թրեթիաքով պատկերասրահին մէջ խաղաղութեան ձեռք մեկնեց ազրպէյճանցի կիներուն (*Զահակիր*, թիւ 1822):

Գերազգայինէն դէպի բնական ազգայինի վերադարձի փորձերը, ինչպէս նաեւ խաղաղութեան կոչերը հանդիպեցան Հայաստանի եւ Սփիւռքի ահռելի հակառակութեան:

Հետաքրքրականը այն է, որ խաղաղութիւնը մերժող հայերուն մէկ կարեւոր մասը նախկին իշխանականներն էին, որոնք չէին համակերպած իրենց կորսնցուցած իշխանութեան, եւ իրենց նոյն ազգային սին պոռթկումներով կը փորձէին վերադառնալ իշխանութեան: Հակասութիւնը այն էր՝ թէ անոնք կը պոռային պատերազմ, մինչդեռ քաջ գիտէին՝ որ իրենց իսկ ձեւաւորած բանակը պատրաստ չէր երթալու պատերազմի: Բանակ մը՝ որ չի կրնար պատշաճ պատերազմիլ, բայց բանակի նախկին պատասխանատուներ՝ որոնք կը քարոզեն պատերազմ, անցնելով տրամաբանութեան բոլոր սահմանները եւ կարողանալով ամենէն անտրամաբանականը հնչեցնել ամենէն տրամաբանական:

Այս ձայներու ճնշումին տակ, որոնց միացան նաեւ քաղքենի դասակարգի եւ ղեկավար ակադեմականներու վերազգայնական ինքնակոչ պոռթկումները, 2019 Օգոստոսին Արցախի մէջ Փաշինեան կը յայտարարէ՝ «Արցախը Հայաստան է եւ վերջ»: Աւելի ինքնապաշտպանական բնոյթ ունեցող յայտարարութիւն մըն էր ասիկա: Պաշտպանողականութիւն՝ իր անձին դէմ ընդդիմութեան տարածած եւ հանրութեան մէջ կոյր հաւանութիւն գտնել սկսած դաւաճանական յորջորջումներէն: Այս նախադասութենէն ետք արդէն անկարելի էր հանրութեան ներկայացնել միջազգային հանրութեան իրական կարծիքը: Եւ զարմացանք 2020-ի պատերազմով: Զարմացանք նաեւ՝ որ աշխարհի ՈՉ ՄԷԿ երկիր դատապարտեց Ազրպէյճանի յարձակումը: Ուրիշ հարց, թէ այդ պատերազմը եւ մինչեւ այսօր ընթացող դէպքերը տեղի ունեցան Թուրքիա-Ազրպէյճան-Իսրայէլ-Ռուսաստան գործակցութեամբ՝ շատ աւելի լայն նպատակներ հետապնդելով քան զուտ պատերազմը եւ հողերու վերագրաւումը, մինչ Հայաստան-Ռուսաստան դաշինքը կը գործէր միայն մէկ ուղղութեամբ՝ ի շահ Ռուսաստանին: Ասոր մասին *Զահակիր* բազմիցս անդրադարձած է: Պատերազմը աւարտեցաւ եւ տակաւին մեր ընդհանրական գիտակցութեան մէջ տեղ չգտաւ միջազգային հանրութեան իրաւական դիրքաւորումը:

Պատերազմ, բնականաբար նաեւ հայրենասիրական պառումներ իշխանութեան կողմէ, դաւաճանական մեղադրանքներ իշխանութեան դէմ, կորստեան առիթի շահագործում ընդդիմադիրներուն կողմէ, եւ դարձեալ յետաձգում միջազգային իրաւական դիրքի բացայայտումը հայ հանրութեան առջեւ: Անկարելի բացայայտում մը, մինչեւ այն ժամանակ՝ երբ այլեւս բացայայտումը այլընտրանք չունէր:

2022 Ապրիլ 13, Ազգային Ժողովի նիստ, ուր ելոյթ կ՚ունենայ վարչապետը. «Վերջերս հարցազրոյցներից մէկում ակնարկել էի, որ եթէ ինձ ուզում են օբիեկտիւ մեղադրանք ուղղել, պէտք է մեղադրեն ոչ թէ հողեր յանձնելու, այլ հողեր չյանձնելու մէջ: Հիմա ուզում եմ խոստովանել, որ հնարաւոր է մեղաւոր եմ դրանում, մեղաւոր եմ, որ 2018-2019 թուականներին հանրութեան առաջ չեմ կանգնել ու բացայայտել, որ մեր բոլոր, կրկնում եմ մեր բոլոր բարեկամները մեզնից ակնկալում են, որ մենք այս կամ այն կոնֆիգուրացիայով Ադրբէջանին յանձնենք եօթ շրջանները եւ իջեցնենք Արցախի կարգավիճակի համար մեր սահմանած նշաձողը: Մեղաւոր եմ, որ մեր ժողովրդին չեմ ասել, որ միջազգային հանրութիւնը միանշանակօրէն ճանաչում է Ադրբէջանի տարածքային ամբողջականութիւնը, ակնկալում է, որ մենք էլ ճանաչենք, ակնկալում է նաեւ, որ Ղարաբաղից հեռացած ադրբէջանցիները լիարժէք ներգրաւուած լինեն ԼՂ ապագայի որոշման ու կառավարման հարցերում»:

Եւ դարձեալ յարձակում «դաւաճան» Փաշինեանի դէմ: Իրականութիւնը կարելի չէ ըսել: Իրականութիւնը պէտք չէ ըսել: Իրականութիւնը *արգիլուած* է ըսել:

Ապա Սեպտեմբեր 19-20 եւ Ղարաբաղի ամբողջական պարպում հայութենէ: Ոչ մէկ միջազգային մեղադրանք տարածքը Ազրպէյճանին անցնելու համար: Կողմնակի, ոչ-պարտաւորեցուցիչ մեղադրանքներ, բայց ոչ տարածքային փոխանցումի առումով:

**2. Տարածքներու վերադարձ**

Միջազգային իրաւական կողմը եւ տարածքներու յանձնում-վերադարձը թէեւ իրերահիւսուած երեւոյթներ են, բայց նախընտրեցի զանազանել զանոնք, որոշ կարեւոր նրբութիւններու համար:

Մինսքի Խումբի բանակցութիւններու անհաւատալի ու անհասկնալի երկարաձգումներէն եւ ապա Փաշինեանի շրջանի բանակցութիւնները նպատակասլաց կերպով տապալելու Ազրպէյճանի յաջող փորձերէն ետք, կրնամ վստահօրէն ըսել՝ որ ի սկզբանէ, 1990-ականներու երկրորդ տասնամեակէն սկսեալ, Ազրպէյճան որոշած էր Ղարաբաղը ետ վերցնել պատերազմով, առանց բանակցային փոխզիջումներու: Բանակցութիւնները իրեն համար լոկ ծածկ մըն էին աշխարհին առջեւ իր պատկերը փայլեցնելու եւ ապա բանակցութիւններու ձախողումի պատրուակով արդարացնելու համար պատերազմը: Ուղիղ գիծ մըն էր՝ որուն հետեւեցաւ Ազրպէյճան սկիզբէն մինչեւ վերջ: Ազրպէյճան մինակը չէր այս որոշումին մէջ, իրեն ռազմական աջակից ունենալով Թուրքիան եւ Իսրայէլը, որոնց յետագային միացաւ Ռուսաստանը: Եթէ մինակը ըլլար, ամենայն հաւանականութեամբ չէր համարձակեր նման որոշում կայացնել:

Ազրպէյճանական այս չյայտարարուած դիրքաւորումը շատ կարեւոր է, քանի որ անոր շուրջ պիտի դառնային հայկական կողմի կողմնորոշումները:

Տէր-Պետրոսեան յստակ կողմնակցն էր եօթը տարածքներու (երբեմն յայտնի իբրեւ 5 + 2 տարածքներ) վերադարձին՝ փոխան Ղարաբաղի կարգավիճակի եւ խաղաղութեան: Ան կ՚ուզէր ժամ առաջ իր լրումին հասցնել այս գործողութիւնը, քանի որ կը տեսնէր՝ թէ ինչպէս Ազրպէյճան սկսած էր աստիճանաբար հզօրանալ ռազմապէս, եւ համոզուած էր՝ թէ ինչ որ ալ ընէ Հայաստան, պիտի չկրնայ հասնիլ Ազրպէյճանի հզօրութեան: Ասիկա Տէր-Պետրոսեան յստակօրէն տեսած էր տակաւին 1997-1998-ին:

Հողեր վերադարձնելու քաղաքականութիւնը վերջապէս յանգեցուց Տէր-Պետրոսեանի հրաժարականին Վազգէն Սարգսեանի եւ Ռոբերտ Քոչարեանի պարտադրանքով: Վազգէն Սարգսեանի բուն նկատառութեան մասին դժուար է խօսիլ, բայց կը թուի թէ իր կեցուածքը հողեր չյանձնելու վերաբերեալ այդ ժամանակ կը համապատասխանէր իր քաղաքական համոզումին (յետագային քիչ մը փոխեց): Բան մը՝ որ կարելի չէ ըսել Քոչարեանի համար: Քոչարեան արդէն ստեղծած էր ուժային կեդրոն մը՝ նախագահ գալու մտադրութեամբ, եւ հողեր չյանձնելու դիրքաւորումը պատրուակ մըն էր պահանջելու Տէր-Պետրոսեանի հրաժարականը: Մինչ այդ, իբրեւ Ղարաբաղի նախագահ, ինքն էր Տէր-Պետրոսեանի գլխաւոր ընդդիմախօսը հողեր չյանձնելու տեսանկիւնէն: Ան գիտէր ուր կ՚երթար:

Սակայն Տէր-Պետրոսեան իր յայտարարութիւններուն մէջ կարեւոր կէտ մը բաց կը թողուր, հաւանաբար դիտաւորեալ կերպով: Եթէ Ազրպէյճան պիտի ուժեղանար եւ պիտի կրնար ստանալ առաւելագոյնը, ինչո՞ւ պիտի ընդունէր Ղարաբաղի հարցը լուծել բանակցութիւններով եւ փոխզիջումներով: Ասոր Տէր-Պետրոսեան արդէն պատասխան չունի: Իր նախկին խորհրդական Ժիրայր Լիպարիտեան յատկապէս վերջին տարիներս շարունակաբար կը կրկնէ բանակցութեան կարեւորութիւնը եւ կը քննադատէ Քոչարեանէն մինչեւ Փաշինեան՝ իրենց բանակցային անկարողութեան կամ թերացումին համար: Չի պատասխաներ միեւնոյն հարցումին: Ի՞նչ տեսակ բանակցութիւն կարելի էր զէնքի հրամայականին եւ ամենակարող ձայնին տակ, ինչո՞ւ հզօրացող պետութիւն մը պիտի ունկնդիր ըլլար բանակցութեան ձայնին:

Տէր-Պետրոսեան եօթը տարածքները կ՚անուանէր ապահովութեան գօտի, զանոնք օր մը վերադարձնելու հեռանկարով, փոխան կարգավիճակի լուծումի: Ի՞նչ կարգավիճակ՝ յստակ չէ: Քոչարեան եօթը տարածքներուն անուանումը փոխարինեց ազատագրեալ տարածքով: Ազատագրեալ՝ ուրեմն անզիջելի:

Ազատագրեալին համատեղ, ինչպէս վերը նշեցի, Քոչարեան առաջ տարաւ գերազգայնական հռետորաբանութիւն մը՝ որ յետագային դարձաւ նժդեհականութիւն եւ ընդունուեցաւ իբրեւ պետական գաղափարախօսութիւն: Կը նշանակէ՝ հողեր վերադարձնելու հարցը դուրս մնաց հանրային օրակարգէն:

4

# ՋԱՀԱԿԻՐ

## 1 ՑԵՏԱՐՑԱԽԵԱՆ ՆՇԱՆՆԵՐ

մերձաւոր դաշնակիցը մերժեց նոյնիսկ մէկ բառ արտասանել Հայաստանի ինքնավար տարածք կատարուած ազըրպէյճանական ներխուժումներուն մասին, մինչ ինք ստանձնած է Հայաստանի սահմաններու պաշտպանութեան պայմանագրային պարտականութիւնը:

Դէպի Արեւմուտք՝ երբ վերջապէս ռուս խաղաղապահները չմիջամտեցին Լաչինի Միջանցքի երթեւեկութեան արգելափակումին Ազըրպէյճանի կողմէ, մինչ Նոյեմբեր 9-ի յայտարարութեան մէջ յստակօրէն մատնանշուած էր անոնց պարտականութիւնը:

Լեւոն Տէր-Պետրոսեանէն ետք առաջին անգամ ըլլալով Հայաստանի իշխանութիւնները փորձեցին ճամբաներ որոնել Արեւմուտքի մէջ: Այս որոնումը Ռուսաստան արձագանգեց ամենայն կոշտութեամբ, ահռելի մեղադրանքներու եւ ապատեղեկատուութիւններու տարափով: Հայաստան իրաւունք չունի մէկ քայլ կատարել առանց Ռուսաստանի արտօնութեան: Բայց կատարեց: Ոչ երբեք Արեւմուտքի մէջ վերջնական լուծումներ գտնելու նպատակով, ոչ երբեք անկէ ակնկալելով կոյր աջակցութիւն, այլ իբրեւ դիւանագիտական այլազանութիւն՝ ի դիմաց Ռուսաստանի ինքնակամ նահանջին եւ դիրքափոխումին:

Հոկտեմբեր 3-ին, Ազգային Ժողովը 60 կողմ եւ 22 դէմ ձայներով ընդունեց Միջազգային Քրէական Դատարանի Կանոնադրութիւնը (Rome Statute) վաւերացնելու եւ յետադարձ ուժով իրաւազօրութիւնը ճանաչելու մասին յայտարարութեան օրէնքին նախագիծը:

Կանոնադրութիւնը հաստատած է չորս հիմնական միջազգային յանցագործութիւններ՝ ցեղասպանութիւն, մարդկութեան դէմ յանցագործութիւններ, պատերազմի յանցագործութիւններ եւ յարձակումի յանցագործութիւն:

Մտնել Հռոմի Կանոնադրութիւն չի նշանակեր ստանալ իրաւական բացարձակ լուծումներ կամ գտնել վերջնական ելքեր, այլ կը նշանակէ ունենալ խօսքի եւ իրաւունքի ներկայացումի նոր հարթակ: Շատ բան կախուած է Հայաստանի յետագայ գործողութիւններէն այնտեղ:

Հոկտեմբեր 5, եւ Եւրոպայի Խորհրդարանը 491 կողմ, 9 դէմ եւ 36 ձեռնպահ քուէարկութեամբ բանաձեւ կ՚ընդունի, կոչ ընելով Ազըրպէյճանի դէմ պատժամիջոցներ կիրարկել՝ Արցախի իրադարձութիւններուն կապակցութեամբ: Բանաձեւը չունի պարտադիր իրաւական ուժ:

Հոկտեմբեր 5-ին սպանիական Կրանատա քաղաքին մէջ տեղի կ՚ունենայ Եւրոպական Քաղաքական Համայնքի Երրորդ Գագաթնաժողովը, ուր նախատեսուած էր հնգակողմ հանդիպում Նիկոլ Փաշինեանի, Իլհամ Ալիեւի, Գերմանիոյ քանցլէր Օլաֆ Շոլցի, Ֆրանսայի նախագահ Էմանուէլ Մաքրոնի եւ ԵՄ Խորհուրդի նախագահ Շարլ Միշէլի: Վերջին պահուն Ալիեւ կը մերժէ մեկնիլ Կրանատա, առարկելով որ տուեալ ձեւաչափը ունի հակազըրպէյճանական մթնոլորտ, նկատի ունենալով Մաքրոնի ներկայութիւնը: Հանդիպումը կը կայանայ քառակողմ ձեւաչափով: Կ՚ընդունուի յայտարարութիւն, ուր Լեռնային Ղարաբաղի մէջ տեղի ունեցածը կը բնորոշուի իբրեւ զանգուածային տեղահանութիւն, կ՚ընդգծուի «իրենց անսասան աջակցութիւնը Հայաստանի անկախութեան, ինքնիշխանութեան, տարածքային ամբողջականութեան եւ սահմաններու անձեռնմխելիութեան», աջակցութիւն կը յայտնուի ամրապնդելու ԵՄ-Հայաստան յարաբերութիւնները:

Գագաթնաժողովի շրջանակներուն մէջ Փաշինեան կ՚ունենայ բազմաթիւ հանդիպումներ:

Խօսքեր, բայց ոչ քայլեր, թէեւ կարեւոր ճեղքումներ դէպի նախապէս բացական:

Արեւմտեան խաղեր, հայ-ազըրպէյճանական մրցակցութիւն Արեւմուտքի մէջ՝ դէպի Եւրոպա հոսող ազէրիական կազի պայմաններուն մէջ, Արեւմուտքի փորձեր Հայաստանի հետ՝ ռուս-ուքրաինական պատերազմի յետնախորքին վրայ ընթացող Արեւմուտք-Ռուսաստան մրցակցութեան մթնոլորտին մէջ:

Յիշենք, որ Լաչինի շրջափակումի ամբողջ ընթացքին Արեւմուտքը պահպանեց քար լռութիւն արցախցիներու սովի եւ տառապանքի նկատմամբ, հեռու մնաց յայտարարութիւններէ եւ մարդասիրական գործողութիւններէ: Գոնէ ձեւական կողմը եւ պատկերը շրջադարձուեցաւ Ղարաբաղը վերջնականապէս Ազըրպէյճանին անցնելէն ետք:

Հիմա Հայաստանի առիթն է աշխատելու՝ որ այդ ձեւականութիւնը փոխուի գործնականի: Դժուար է: Դիմացը կայ նաեւ Ազըրպէյճանը, որ շատոնց սկսած է նոյն բանը ընել: Ճամբան, սակայն, բացուած է: Եւ այս ճամբան փշոտ է:

Ա.

## 3 ԱԿՆԱՐԿ ԵՐԵՍՆԱՄԵԱՑ ԱՐՑԱԽ/ՂԱՐԱԲԱՂԻՆ ՎՐԱՅ

Շատ պարզ պատճառով: Եթէ հողեր պիտի վերադարձնես, նախ եւ առաջ պէտք է պատրաստես հասարակութիւնը: Ծայրայեղ ազգայնականութեամբ հողեր չես կրնար վերադարձնել բանակցային փոխհամաձայնութեամբ, բացի եթէ պատրաստ ըլլաս դառնալու «դաւաճան»՝ իր յայտնի ու անյայտ հետեւանքներով: Նժշդեհականութիւնը, հետեւաբար ազատագրեալ եօթը տարածքներու անձեռնմխելութիւնը, օրակարգ մնաց մինչեւ Սերժ Սարգսեանի վերջին օրը: Ասոր համատեղ, Քոչարեան-Սարգսեան Ազըրպէյճանի հետ բանակցութիւններ կը վարէին Մինսքի Խումբի շրջանակներուն մէջ, թուղթի վրայ համաձայնութեան նախագիծեր փնտռելով հողերու վերադարձի վերաբերեալ: Տարօրինակ հակասութիւն:

Ինչպէս նշեցի, հող վերադարձնելու համար նախ եւ առաջ պէտք է պատրաստել հանրային կարծիք: Քանի որ Քոչարեան-Սարգսեան ոչ միայն չձեւաւորեցին այդ կարծիքը, այլ ձեւաւորեցին ճիշդ հակառակը, ուրեմն իրականութեան մէջ անոնք կ՚ընթանային չվերադարձնելու ուղիով: Հետեւաբար, ինչո՞ւ բանակցութիւններ: Բանակցութիւն՝ բանակցութեան համար, ինչպէս կ՚ընէր Ազըրպէյճան, բոլորովին այլ նպատակով: Բայց Ազըրպէյճան այդպէս կ՚ընէր՝ վստահ ըլլալով որ օր մը պատերազմով պիտի հասնի նպատակին: Ապա ինչո՞ւ նոյնը կ՚ընէր Հայաստան: Պարզապէս թիւրաբար վստահ ըլլալով՝ որ Ազըրպէյճան պիտի չդիմէ պատերազմի, եւ տէ ֆաքթօ ստեղծուած վիճակը պիտի շարունակուի յաւիտեան: Չմոռնանք, որ սահմանադրական փոփոխութեամբ Սարգսեան նպատակ ունէր 10 տարի եւս իշխել երկիրը 2018-էն սկսեալ, եթէ վրայ չհասնէր յեղափոխութիւնը: Եթէ Սարգսեան մտածած ըլլար լայնածաւալ պատերազմի կարելիութեան մասին, ան հաստատաբար չէր դիմեր այս քայլին եւ ղեկը կը յանձնէր ուրիշին, խուսափելու համար պատասխանատուութենէ: Կամ կրնայ ըլլալ չափէն աւելի վստահ էր հայկական բանակին վրայ եւ անիրազեկ էր Ազըրպէյճանի իրական կարողութենէն: Թերեւս ասոր ապացոյցը ըլլայ իր վերջին օրերուն ազգ-բանակ շատ վտանգաւոր նախաձեռնութիւնը, երբ փորձեց ամբողջ ազգ մը դարձնել բանակի, ամբողջ բանակային-պատերազմական հոգեբանութիւն մը մտցնել հայութեան մէջ, առանց գործնականօրէն բարելաւելու բանակը: Բայց ազգ-բանակ կարգախօսին երեւան գալը Սարգսեանի վերջին օրերուն նաեւ կրնար հետապնդել ուրիշ նպատակ: Նախագահը գիտէր որ չէ ընտրուած ու պիտի մնայ չընտրուած իր յետագայ վարչապետի պաշտօնին մէջ: Բանակայնութեան համաժողովրդականացումը, նժդեհականութեան նման, կրնար նոր դուռ բանալ ալ աւելի սեղմելու ազատութիւնները եւ պատերազմի պատումի բարձրացումով լռեցնելու ընդդիմադիր ձայները: Կրնայ ըլլալ նոր, մեզի անյայտ տուեալներ յայտնաբերուելով այլ տեսանկիւններ յառաջանան: Բայց մէկ բան անվիճարկելի է՝ թէ իրականութեան մէջ Քոչարեան-Սարգսեան երբեք տարածքներ պիտի չզիջէին: Եւ բնաւ յստակ չէ թէ ո՞ւր կը մտածէին տանիլ երկիրը՝ պատերազմելու անպատրաստ բանակով:

Կու գայ Նիկոլ Փաշինեան եւ ինքզինք թակարդուած կը գտնէ իր սեփական համոզումներուն եւ արդէն արմատացած հայրենասիրական կեցուածքին միջեւ: Առաջինը կը համապատասխանէր Տէր-Պետրոսեանի մօտեցումին, երկրորդը անքակտելի ժառանգութիւնն էր նախորդ երկու նախագահներուն: Այս ծուղակէն չկրցաւ դուրս գալ մինչեւ այսօր: Նախորդներուն ձայնը շատ բարձր մնաց եւ գործողութիւնները դարձան խանգարիչ, իրենց տիրապետութեան տակ էին Հայաստանի եւ Սփիւռքի լրատուամիջոցներուն կարեւոր մասը:

2022 Ապրիլ 13-ին, երբ արդէն եօթը տարածքները աւելիով անցած էին Ազըրպէյճանին, Ազգային Ժողովի նիստին Փաշինեան բաւական ուշացումով պիտի ազդարարէր. «Այսօր միջազգային հանրութիւնը մեզ ասում է՝ մի փոքր իջեցրէք Լեռնային Ղարաբաղի կարգավիճակի հարցում ձեր նշաձողը եւ միջազգային մեծ կոնսոլիդացիա կ՚ապահովէք Հայաստանի եւ Արցախի շուրջ: Հակառակ դէպքում, ասում է միջազգային հանրութիւնը, խնդրում ենք մեզ վրայ յոյս չդնել, ոչ թէ այն պատճառով, որ մենք չենք ուզում ձեզ օգնել, այլ այն պատճառով, որ մենք չենք կարող ձեզ օգնել»:

Մեղմօրէն ձեւակերպուած խօսք մըն է, հայ հասարակութեան հասցնելու համար այն գաղափարը՝ թէ միջազգային հանրութիւնը Ղարաբաղը կ՚ընդունի իբրեւ Ազըրպէյճան: Ձեղաւ լսող ձայն:

2023 Հոկտեմբեր 4, Ազգային Ժողով, երբ արդէն Ղարաբաղը պարպուած էր հայութենէ. «Այո, մենք ԼՂ կարգավիճակի հարցում նշաձողը փորձեցինք ցածրացնել, մի գաղտնիք էլ ասեմ՝ ընդ որում՝ ԼՂ գործընկերների հետ համաձայնեցրած ձեւով, բայց փոխարէնն ի՞նչ տեղի ունեցաւ. մենք ցածրացրինք, ԼՂ-ն բարձրացրեց, ստեղ ա պրոբլէմը, եւ ԼՂ-ն բարձրացրեց... կը ներէք, ես դա չեմ ասում խոցելու համար, բայց արեց ձեր քաջալերմամբ», ըսաւ վարչապետը դիմելով խորհրդարանական ընդդիմութեան:

Շատ կարեւոր յայտարարութիւն մըն է ասիկա, ցոյց տալու համար ընդդիմութեան ձայնի վճռականութիւնը՝ կարեւորագոյն որոշումներ ընդունելու եւ հարցերը խառնակելու առումով, եւ մանաւանդ անոնց կենդանի գոյութիւնը Արցախի մէջ: Նաեւ, ցոյց տալու ներքին անկարելի արգելակումները, ի դէմս արտաքին պահանջներուն: Դարձեալ ու միշտ՝ միայն մենք:

Մեր միակութիւնը մէկ կողմ, Ազըրպէյճանի ծրագրածը միւս կողմ: Հիմա արդէն աւելի քան յայտնի է՝ որ ոչ մէկ բանակցութիւն կրնար ազդեցութիւն ունենալ զէնքի ձայնին տակ: Ազըրպէյճան շատոնց որոշած էր պատերազմը: Եթէ կրնար պատերազմով ստանալ առաւելագոյնը, ինչո՞ւ բանակցութիւններով ստանար նուազը:

Պիտի առարկուի: Ինչո՞ւ չկազմեցինք հզօր բանակ: Բացի բանակային մեր անձնական թերութիւններէն, բացի բանակաշինութեան բոլոր ոլորտներուն վրայ Ռուսաստանի վերահսկողութենէն՝ որ կը խանգարէր մտածել ու գործել ինքնուրոյնաբար, մենք երբեք չէինք կրնար հաւասարիլ Ազըրպէյճանին: Մեր մէկ բարելաւումին դիմաց Ազըրպէյճան ընդունակ էր տասնապատիկ բարելաւել իրը: Թուրքիսրայէլցի մասնագէտներն ու փորձագէտները այնտեղ էին: Ազըրպէյճան չէր կրնար մինակը կազմել կարող բանակ: Հայաստան եւս չէր կրնար մինակը կազմել բանակ: Ռուս մասնագէտները բոլորովին այլ նպատակներով կը գտնուէին Հայաստան: Անոնք աւելի արգելիչ հանգամանք կ՚ունենային քան վերանորոգիչ: Ասիկա, կը կրկնեմ, չի հերքեր բանակի հայաստանեղծ խնդիրները եւ շատ հարցերու նկատմամբ եղած անհոգութիւնը:

Հայաստանի առաջնորդը ըլլար Տէր-Պետրոսեան, Քոչարեան, Սարգսեան թէ Փաշինեան, 2020-ի պատերազմը տեղի պիտի ունենար՝ ի նպաստ Ազըրպէյճանին: 2023-ին ալ Ղարաբաղը պիտի անցնէր Ազըրպէյճանին: Ցատկապէս այսօր առաւել յստակութեամբ կրնանք պնդել ասիկա: Դէպքերուն ընթացքը եւ տրամաբանութիւնը այսպէս կը խօսին:

Ուրեմն, չկա՞ր ելք հայերուս համար: «Լուծումներ» բաժինը ստորեւ կ՚անդրադառնայ այս հարցին:

(Շար. 1)

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1951 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 26 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԻ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٥١ الخميس ٢٦ أكتوبر ٢٠٢٣


## ԻՆՉՊԷՍ ՀԱՄԱՅՆՔԸ ԳՈՅԱՏԵՒՈՒՄԻ ՊԱՅՔԱՐ ՄՂԵՑ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ՌՈՒՄԲԵՐՈՒՆ ՏԱԿ

**ՕԼԻՎԻԱ ՔԱԹՐԱՆՋԵԱՆ**
**ՍԻՐԱՆՈՅՇ ՍԱՐԳՍԵԱՆ**

*Ազըրպէյճան ըսաւ՝ որ հայերը Լեռնային Ղարաբաղէն հեռացան իրենց սեփական կամքով: Գիւղի մը պատմութիւնը ուրիշ բան կը բացայայտէ:*

Գուրգէնի համար Սեպտեմբեր 19-ի ուշ ամառնային դպրոցական երեկոյ մըն էր, երբ անսպասելի վայրագութեամբ ժայթքեցաւ կոտորածը: Եօթնամեայ երեխան դեռ նոր վերադարձած էր դասերէն, երբ պայթիւններ լսուեցան Սառնաղբիւրի մէջ՝ Հարաւային Կովկասի Լեռնային Ղարաբաղի (հայերուն յայտնի իբրեւ Արցախ) վիճելի տարածքին վրայ գտնուող փոքրիկ գիւղը:

Ազըրպէյճան՝ որ աւելի քան ինն ամիս շրջափակած էր Լեռնային Ղարաբաղը, սովի մատնելով 120 հազար էթնիք հայ բնակիչները, զանգուածային յարձակում ձեռնարկեց տարածաշրջանին վրայ, որ կը գտնուի Հայաստանին ճիշդ արեւելքը, Ազըրպէյճանի պաշտօնական սահմաններուն մէջ: Յարձակումին հետեւանքով փախուստ կու տան 100 հազար մարդիկ, իսկ Եւրամիութեան պատգամաւորները կը յայտարարեն՝ որ յարձակումը հաւասարազօր է էթնիք զտումի:

Սառնաղբիւրի գիւղապետ Գարիկ Ալեքսանեան փորձեց գիւղին մէջ վերահսկել կացութիւնը եւ կասեցնել խուճապը, բնակիչները առաջնորդելով դէպի բլուրին եռեւը գտնուող իր կարծիքով ապահով վայր մը, յոյս ունենալով խուսափիլ քանի մը քիլոմեթր հեռաւորութեան վրայ գտնուող ազըրպէյճանական դիրքերու ռմբակոծութենէն:

«Երեք շատ մեծ ռումբեր պայթեցան, մեր ոտքերուն տակէն ամբողջ գետինը օդը նետելով», ըսաւ Գուրգէն՝ իր գիւղէն 30 քմ. հեռու գտնուող շրջանային մայրաքաղաք Ստեփանակերտի հիւանդանոցի անկողինէն: Իր մօրը արտօնութեամբ խօսելով *openDemocracy*-ին, ան չափազանց հանդարտութեամբ ցուցադրեց ռումբի պայթիւնը:

Բեկոր մը կը ճեղքէ Գուրգէնին ձեռքը, ոտքը եւ ճակատը: Իր շուրջը գտնուող երեխաներ նոյնիսկ աւելի ծանր կը վիրաւորուին: Կը մահանայ իր մօրաքոյրը:

«Բեկորը կը մխուի Ռոզիկի այտերուն եւ կը վնասէ Աշոտին աչքերը», ըսաւ ան, խօսելով երկու ուրիշ երեխաներու մասին: «Միքայէլի կոկորդը ծանրօրէն կը վնասուի, իսկ բեկորը կը խոցէ գիւղապետի որդիին քիթը: Գոհար մօրաքրոջ քիթը ծանրօրէն կը վնասուի բեկորէն եւ կը մահանայ»:

Գիւղապետ Ալեքսանեան հեռացաւ խումբէն՝ փորձելու համար հեռախօսի ծառայութիւն գտնել. ռմբակոծութիւնը անողոք էր եւ գիւղացիները չունէին փախչելու կարելիութիւն: Ան կ'ուզէր Ստեփանակերտի պաշտօնատարներէն խնդրել անմիջական օգնութիւն: Բայց հեռախօսի գիծերը անջատուած էին:

«Երբ վերադարձայ, դարձեալ ռմբակոծուած տեսայ գիւղացիները: Այնտեղ գտայ արիւնահոս որդիս», ըսաւ Ալեքսանեան, որ գտաւ նաեւ իր մահացած կեսուրն ու հայրը եւ վիրաւորեալ կինն ու դուստրը:

Միջերկիրը (enclave) շրջապատող Ազըրպէյճանի կողմէ գործադրուած իննամսեայ շրջափակումէն ետք, միայն գիւղապետը բաւարար վառելանիւթ ունէր ինքնաշարժը մինչեւ հիւանդանոց վարելու համար: Ուստի Ալեքսանեան իր ինքնաշարժին մէջ կը հաւաքէ 15-ամեայ որդին եւ միւս վիրաւորեալ երեխաները:

Հակառակ վիրաւորուած ըլլալուն, Գուրգէն օգնեց իր կրտսեր քոյրերն ու եղբայրները նստիլ ինքնաշարժ: «Նախ վերցուցի քոյրս, ապա եղբայրս», ըսաւ հպարտութեամբ:

Գիւղապետի որդիին վիճակը այնքան ծանր էր՝ որ ժամանակ չկար հասնիլ Ստեփանակերտի ամենամեծ հիւանդանոցը: Փոխարէնը, Ալեքսանեան զինք կը փոխադրէ Ազըրպէյճանի սահմանի երկայնքին գտնուող Ասկերան քաղաքի ամենամօտ հիւանդանոցը, յոյս ունենալով որ թերաշխատակիցներով եւ ուժասպառ հաստատութեան մէջ ստանայ արագ խնամք:

«Խոստացան վիրահատել որդիս եւ ետ բերել զինքը», ըսաւ Ալեքսանեան:

Որդին թողելով Ասկերանի հիւանդանոցը, Ալեքսանեան կը շարունակէ ճամբան անդադրում ռմբակոծութիւններու, մարած հրդեհներու եւ այրած ինքնաշարժներու մէջէն, դէպի Ստեփանակերտի շատ աւելի լաւ սարքաւորուած հիւանդանոցը, շուրջ 20 քմ. արեւելք, ուր կը յանձնէ վիրաւորեալները:

«Այդ պահուն տեղեկացայ՝ որ ոչ եւս է որդիս», ցնցուած ըսաւ Ալեքսանեան, դատարկահունչ ձայնով մը:

Սառնաղբիւրի վրայ յարձակելու մեթոտները կիրարկուեցան նաեւ Լեռնային Ղարաբաղի ուրիշ գիւղերու համար: Լեռնային տարածք մըն է Ղարաբաղը, որ Հայաստանի եւ Ազըրպէյճանի 1990-ականներու պատերազմէն ի վեր կը գործէր իբրեւ ինքնակառավարուող միաւոր: 2020-ի 44-օրեայ պատերազմին Ազըրպէյճան գրաւեց տարածութենէն մաս մը, որմէ ետք տեղադրուեցան ռուս խաղաղապահները: Բայց ասիկա չխանգարեց Ազըրպէյճանին յարձակումներ կատարել ժամանակ առ ժամանակ:

2022 Դեկտեմբերէն սկսեալ Ազըրպէյճան շրջափակած էր ինքնավար միջերկիրին մնացած մասը, կտրելով սնունդի, դեղօրայքի, վառելիքի եւ առաջին անհրաժեշտութեան ապրանքներու մատակարարումը: Այս գործողութիւնը՝ որուն նպատակն էր սովի միջոցով բնակչութեան ստիպել յանձնուիլ կամ փախչիլ, ցեղասպանութեան մեղադրանքներ յարուցեց միջազգային փորձագէտներու եւ դիտորդական խումբերու կողմէ:

Սեպտեմբեր 19-ին Ազըրպէյճան լայնածաւալ յարձակում սկսաւ Լեռնային Ղարաբաղի վրայ: Ազըրպէյճանի պաշտպանութեան նախարարը իր յայտարարութեան մէջ ըսաւ՝ որ այսպէս կոչուած «հակահաբեկչական գործողութիւնը» կը թիրախաւորէ «միայն օրինական ռազմական կառոյցները եւ ենթակառուցուածքները», «գործածելով բարձր ճշգրտութեան զէնքեր»:

↳ 4

## ԿԱԶԱՆ՝ ԴԻՄԱԴՐՈՒԹԵԱՆ ՕՐՐԱՆ

1947-էն մինչեւ այսօր կը շարունակուի պաղեստինցիներուն էթնիքական մաքրագործումը Իսրայէլի կողմէ: Իսրայէլցի-հրեայ գաղթական պատմաբան Իլան Փափէ հարցը մանրամասնօրէն քննարկած է իր ռահանցքային աշխատութեան մէջ՝ *The Ethnic Cleansing of Palestine* (Oxford: Oneworld, 2006): Շատեր մանրամասնած են այս հարցը, ներառեալ անուանի հրեաներ:

Էթնիքական մաքրագործումը նաեւ կը շարունակուի միքրօ մակարդակով, գրեթէ ամէն օր սպաննուելով պաղեստինցի մը, առանց լրատուամիջոցներու ուշադրութիւնը գրաւելու:

Իսրայէլ Կազան դարձուցած էր բացօթեայ բանտ մը, երբ Հոկտեմբեր 7-ին Համաս որոշեց շուրջ 3000 հրթիռներ արձակել Իսրայէլի վրայ, սպաննելով 1400 իսրայէլցի բնակիչներ: Իսրայէլ անմիջապէս կը փոխադարձէ յարձակումը՝ անհամաչափ գրոհ կազմակերպելով Կազայի վրայ: Առաջին ժամերուն հիմնայատակ կ'ընէ Կազայի երկրորդ ամենաբարձր շէնքը՝ բնակելի տնաշարք մը, իբրեւ նախաբան ամբողջ շրջակայքի ոչնչացումին: Ընդամէնը երկու օրուայ ռմբակոծութենէ ետք, Իսրայէլ կը կործանէ մզկիթներ, կը հարուածէ առնուազն երկու հիւանդանոցներ, Պաղեստինի Կարմիր Խաչի երկու կեդրոններ, երկու դպրոցներ՝ ուր պաղեստինցի գաղթականներ գտած էին ապաստան: Կը ռմբակոծէ նաեւ Արեւմտեան Ափը եւ Լիբանանի սահմանը Հեզպուլլահի վրայ: Հոկտեմբեր 18-ի դրութեամբ արդէն սպաննըւած էին աւելի քան 3000 պաղեստինցիներ, վիրաւորեալներուն թիւը անցնելով 10 հազարը: Յարձակումը կը շարունակուի ամենայն կատաղութեամբ:

Իսրայէլ կը պարտադրէ Կազայի ամբողջական շրջափակում, կ'անջատէ ջուրը, կազը եւ ելեկտրականութիւնը, կ'արգիլէ սնունդի մուտքը, յառաջ կը բերէ շուրջ մէկ միլիոն ներքին գաղթականներ (Կազայի բնակչութեան գրեթէ կէսը)՝ որոնց առջեւ փակ են Կազայէն դուրս գալու բոլոր սահմանները:

Իսրայէլի կործանարար հակայարձակումը, ինչպէս կը սպասուէր, կը ստանայ ԱՄՆ-ի եւ ԵՄ-ի կարեկցութիւնը եւ ամբողջական աջակցութիւնը:

Համասի յարձակումէն անմիջապէս ետք Եգիպտոս յայտարարեց՝ որ տեղեկութիւններ ունէր նման գործողութեան մասին եւ իրազեկ պահած էր Իսրայէլին: Ուրեմն, ինչո՞ւ Իսրայէլ չէր ձեռնարկած պաշտպանութեան, կամ դարձած նախայարձակ:

Կայ նաեւ կարեւոր կէտ մը: Իսրայէլ կը հանդիսանայ աշխարհի ամենէն ապահովագրեալ երկիրներէն մէկը, անոր բոլոր մուտքերը ապահովագրուած են ամենաբարձր թեքնոլոճիով եւ արբանեակային վերահսկողութեամբ, ըլլայ ծովէն թէ ցամաքէն: Համաս չի կրնար Կազա մտցնել նման տարողութեամբ հրթիռներ, առանց Իսրայէլի ուշադրութիւնը գրաւելու, ոչ ալ կարող է իր մօտ արտադրել զանոնք: Կարելի չէ հաւատալ:

Կ'ըսուի՝ իսրայէլա-պաղեստինեան հակամարտութիւն, երկու կողմերը դրուելով հաւասար հարթութեան վրայ: Աշխարհի ամենաուժեղ բանակն ու գաղտնի գործակալութիւնը՝ գրեթէ գոյութիւն չունեցող բանակի եւ գործակալութեան դէմ: Իսրայէլի ձեռքն է հարցին վերջնական լուծումը, եթէ դադրեցնէ անընդհատ աճող բնակավայրերու կառուցումը պաղեստինեան հողերու վրայ եւ ընդունի երկու անկախ պետութիւններու սկզբունքը: Պաղեստինցիները ստիպողաբար պիտի ընդունին նաեւ 1967-ի սահմաններէն աւելի փոքր տարածութիւն, միայն ունենան իրենց սեփական պետութիւնը եւ վերջացնեն հարցը: Ամբողջ լուծումը Իսրայէլի՝ հզօր կողմի ձեռքն է: Բայց, ինչպէս Ազըրպէյճանը Հայաստանի նկատմամբ, այնպէս ալ Իսրայէլ պիտի չկրնայ ուռճացնել ապահովութեան հռետորաբանութիւնը, հետեւաբար՝ ռազմարդիւնաբերական համաշխարհային շուկայի շահաւէտութիւնը, եթէ լուծէ պաղեստինեան հարցը: Ի տարբերութիւն Ազըրպէյճանին, Իսրայէլ զինարտադրական պետութիւն մըն է, եւ ի տարբերութիւն աշխարհի որեւէ երկիրի՝ ան բացառիկ առիթ ունի իր նոր զէնքերը փորձարկելու կազացիներուն վրայ, աւելցնելով զինային ապրանքին որակն ու շուկայական արժէքը: Իսկ Ազըրպէյճան շատ կարեւոր շուկայ մըն է Իսրայէլի զէնքերուն համար, որոնք առատութեամբ տեղափոխուած են այնտեղ եւ բարձր կարողութեամբ գործածուեցան Ղարաբաղի երկրորդ եւ վերջին պատերազմներուն: Իսրայէլ նաեւ ռազմական խորհրդատուութեան արտածող մըն է: Իսրայէլցի խորհրդատուներ մշտաներկայ են Ազըրպէյճանի մէջ՝ ամենազդեցիկ մարզումներով, ի դիմաց Հայաստանի անգործունեայ ռուս խորհրդատուներուն:

Այնքան ալ տարբեր չեն Իսրայէլի վարչապետ Պենիամին Նեթանիահուի եւ Ազըրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւի

↳ 4

# ԱԿՆԱՐԿ ԵՐԵՍՆԱՄԵԱՅ ԱՐՑԱԽ/ՂԱՐԱԲԱՂԻՆ ՎՐԱՅ

Հ. ԱԽԱԳԵԱՆ

**ԼՈՒԾՈՒՄՆԵՐ**

Տարբեր վայրեր, տարբեր ժամանակներ, պետութիւններն ու պետական սահմանները վերասահմանուեցան ըստ ազգային պետութեան (nation-state) տրամաբանութեան, փոխարինելով գերդաստանային-թագաւորական պետութեան եւ պետական սահմաններուն:

Ընդհանուր առմամբ, ազգային պետութեան գծագրումը սկսաւ 18-րդ դարու վերջերը, դրամատիրութեան ամրապնդումին համատեղ, երբ փորձառութեան եւ միջավայրի հետ կապուած ազգայնականութեան տիրականօրէն աւելցաւ իշխանական վերադիր ազգայնականութիւնը, երբ եկաւ հայրենասիրական ազգայնականութիւնը, ուր նշանները խաղացին կարեւոր դեր՝ ազգային խորհրդանշաններ, հիմներ, առասպելներ, դրօշակներ, պատումներ: Այս բոլորը առաջնորդեցին վերէն եկող հռետորաբանական ազգայնականութեան, որ փոխարինեց միջավայրի փորձառութեան վրայ հիմնուած վարէն բխած ազգայնականութեան: Վստահաբար հին եւ նոր ազգայնականութիւններու տարբերութիւններուն մէջ կը մտնեն բազում նրբութիւններ եւ հեռու են կտրուկ ու բացարձակ ըլլալէ, բայց անոնց ընդհանուր տարբերութիւնը կարեւոր է մտաբերել՝ ուրուագծելու համար այսօրուայ կատարուածը Ղարաբաղի հետ:

Ազգային պետութիւնը կը ճանչնայ մէկ ազգ՝ միւս բոլորը փոքրամասնութիւններ են եւ կ՚ենթարկուին մեծամասնութեան դրած ու վաւերացուցած օրէնքներուն: Եւ եթէ փոքրամասնութիւններուն կը տրուին ազատութիւններ, տիրողի շնորհումն է անիկա: Խորհրդարաններու մէջ փոքրամասնութիւնները կը ներկայացուին ինչպէս որ կան, ուրեմն իրենց ձայնը չի կրնար վճռորոշ ըլլալ որոշումներու կայացումին մէջ:

**1. Լուծումը համակեցութեան մէջ**

Ազգային պետութեան միակեցական կառուցուածքին մէջ Ղարաբաղը ունի մէկ լուծում՝ կամ մերը, կամ ուրիշինը: Համակեցութիւնն ու բազմակեցութիւնը գոյութիւն չունին: Համակեցային բազմակիութիւնը դուրս է դրամատիրական մրցակցութեան տրամաբանութենէն, Սփիւռքի բոլոր կուսակցութիւններուն ըմբռնումէն, արդի ազգայնականութեան (ի տարբերութիւն նախադրամատիրական ազգայնականութեան) հասողութենէն:

Մինչդեռ համակեցութիւն-բազմակեցութեան մէջ կարելի է տեսնել բոլորովին այլ լուծումներ:

Այսինքն, հայն ու ազէրին կրնային ապրիլ քով քովի Ղարաբաղի մէջ: Ապրէին՝ իւրաքանչիւրը պահելով իր ինքնութիւնը, իր լեզուն ու կրօնքը, իր մշակոյթը, միաժամանակ ծանօթանալով փոխադարձ մշակոյթներուն: Ապրէին ՄԻԱՍԻՆ, առանց փոխադարձ վնասի: Հայաստանի ընկերաբաններ, որոնք 2010-ականներուն գրոյցներ վարած են սահմանի հայ գիւղացի-անասնապահներու հետ, արձանագրած են անոնց մտերիմ յիշողութիւնները ազէրիներուն հետ, ջերմ յարաբերութիւնները ազէրի դրացիներուն հետ, փոխադարձ հանդիպումներն ու համատեղ խրախճանքները: Միասին ապրիլ՝ համոզումով, ըմբռնումով, համակեցութեամբ:

Համակեցութեան հաստատումէն ետք իշխանութեան հարցը դժուար պիտի չըլլայ լուծել: Կան բազում միջոցներ: Օրինակ, նախագահն ու փոխնախագահը կրնան պարտադիր փոխադարձութեամբ ըլլալ հայ եւ ազէրի, պայմանով որ իշխանութեան եւ կազմակերպուածութեան իրական ուժը ըլլայ ժողովուրդին ձեռքը՝ ժողովրդային մասնակցողական ուղղակի ժողովրդավարութեան սկզբունքով, փոխանակ արդի տարածուած վերնախաւային ժողովրդավարութեան, որուն կը հետեւին աշխարհի ժողովրդավար երկիրները, ներառեալ Հայաստանը Թաւշեայ Յեղափոխութենէն ետք:

Ինչպէ՞ս կարելի է հասնիլ ասոր: Արդի զանգուածային մտածողութեամբ՝ անկարելի է, քանի որ մանկապարտէզէն մինչեւ հիմնահոսանքային լրատուամիջոցները կը քարոզեն միակեցութիւն՝ մէկ լուծում, մէկ սեփականութիւն, մէկ լեզու, մէկ ուղղագրութիւն, մէկ պատասխան: Դպրոցականը պարտաւոր է հարցումին տալ ՄԷԿ պատասխան, եթէ նոյնիսկ հարցումը կրնայ ունենալ բազմակի պատասխաններ: ՄԷԿ պատասխանով է որ աշակերտը կամ համալսարանական տոքթորը պիտի ստանայ բարձր թուանշան: Մէկ, եւ միայն մէկ: Ուրեմն, ազգային պետութիւն՝ մէկ տիրապետեալ ազգով: Պատմութեան գիրքերուն մէջ՝ դասագիրքէն մինչեւ ակադեմականը, դիմացի ազգի կամ պետութեան կարծիք գոյութիւն չունի: Կայ միայն մէկը՝ որ մերն է եւ ամենաճիշդը: Կեդրոնը՝ ՄԷԿ թիւն է: Զարմանալիօրէն, մէկի յաւակնորդը, այսինքն՝ սակաւ մտածողը, հասարակութեան մէջ կը դառնայ ընդունելի, սիրուած եւ մեծարուած, բազմազանութեան յաւակնորդը, այսինքն՝ շատ աւելի լայն ու խորատարած մտածողը, կը վանուի հասարակութենէն իբրեւ օտար տարր, նոյնիսկ եթէ այդ բազմազանութեան մաս կազմէ միեւնոյն մէկը՝ իբրեւ բաղադրիչներէն մէկը:

Բազմակեցութեան ընդունումին կարելի է հասնիլ, եթէ ամէն մարդ սկսի մտածել իր միտքով՝ եւ ոչ թէ դուրսէն ստացած դպրոցական-համալսարանական կամ լրատուային միտքով, ամէն մարդ շարժէ իր սեփական ենթակայականութիւնը, բայց ոչ եսապաշտութիւնը, նախ եւ առաջ ինքզինքին ընդունել տալու եւ ներքնականացնելու համար ուրիշը, որմէ շատ դիւրին կ՚ըլլայ շարժիլ դէպի հաւաքական ենթակայականութիւնը:

Ասոր կարելի է հասնիլ նաեւ եթէ իրական ընկերվարութիւն հաստատուի Կովկասի մէջ, առանց դրամատիրական ահռելի շահերուն՝ որուն մասին բազմիցս յիշատակուեցաւ սոյն յօդուածին մէջ:

2020 Նոյեմբեր 24-ին, երկրորդ պատերազմէն անմիջապէս ետք, *In Defence of Marxism* լրատուային կայքէջին վրայ Իվան Լոհ կը շեշտէր՝ որ Լեռնային Ղարաբաղի մէջ չի կրնար խաղաղութիւն գոյանալ դրամատիրութեան տակ. «Անդրկովկասի արիւնալի հակամարտութիւնները պիտի չվերջանան մինչեւ որ տարածաշրջանի բոլոր ժողովուրդները՝ վրացիներ, ազըրպէյճանցիներ, հայեր, ապխազներ, օսեթցիներ, լեզկիներ, աֆարներ, թալիշներ, թաթեր չձերբազատուին իրենց դրամատիրական կապանքներէն եւ չվերահաստատեն Անդրկովկասեան Խորհրդային Ընկերվարական Հանրապետութիւնը» (https://www.marxist.com/peace-in-nagorno-karabakh-no-stability-under-capitalism.htm):

Նկատի ունի 1922-1936-ին գործող Անդրկովկասի Խորհրդային Ընկերվարական Դաշնային Հանրապետութիւնը (Transcaucasian Socialist Federative Soviet Republic), որուն յատկապէս սկզբնական շրջանը՝ մինչեւ սթալինեան ուժի ներգործութիւնը, կը ներկայացնէր համակեցութեան կարելի վիճակ մը: Այս շրջանի յաւելեալ պատմական մեկնաբանութիւնը նոյն կայքէջին վրայ կու տայ Ֆրէտ Ուեսթըն Հոկտեմբեր 3-ին, վերջին պատերազմէն անմիջապէս ետք.

«Հին ցարական վարչակարգը տարածաշրջանը գալթեց 19-րդ դարու սկիզբները: Ինքն էր պատասխանատուն գրգռելու միջէթնիքական հակամարտութիւնները, գործածելով «բաժնել եւ իշխել» հին եւ փորձուած մեթոտը, հասնելով մինչեւ պարբերական ջարդերու եւ կոտորածներու: Այս բոլորին լուծումը եղաւ 1917 Հոկտեմբերի յեղափոխութիւնը, որ տապալեց հին ցարական վարչակարգը եւ սովետներու միջոցով հիմնեց աշխատաւորներու ուժը: Այս բնաբանով էր որ Հայաստան, Ազըրպէյճան եւ Վրաստան 1922 Դեկտեմբերին միացան Խորհրդային Միութեան իբրեւ Անդրկովկասեան Խորհրդային Ընկերվարական Հանրապետութիւն, յետագային դառնալով անջատ հանրապետութիւններ Միութեան մէջ:

«Այս բնաբանին մէջ, Լեռնային Ղարաբաղի տարածքին տրուեցաւ ինքնավարութիւն Խորհրդային Ազըրպէյճանի մէջ: Խորհրդային տարիներու սկզբնական օրերուն, նախքան իր պիւրոքրաթիք այլասերումը, աշխատաւորական ուժը՝ ազգային բաժանումներու ընդմէջէն, թոյլատրեց խաղաղ համակեցութիւնը ժողովուրդներուն միջեւ: Այլեւս աւատատիրական եւ դրամատիրական շահերը չէին Խորհրդային Միութեան ժողովուրդներուն ճակատագիրը որոշողները»:

Ապա Ֆրէտ Ուեսթըն կը քաղէ Թրոցքիի 1922 թուականի գիրքէն հատուած մը: Ահաւասիկ Թրոցքիի խօսքերը, որոնք կը վերաբերին Անդրկովկասի Խորհրդային Ընկերվարական Դաշնային Հանրապետութեան ամենասկզբնական փուլին.

«Թէ Կովկասի մէջ Խորհրդային քաղաքականութիւնը ճիշդ էր նաեւ ազգայինի տեսանկիւնէն, կու գան փաստել Անդրկովկասի ժողովուրդներուն միջեւ այսօր գոյութիւն ունեցող յարաբերութիւնները:

«Ցարիզմի դարաշրջանը կը յատկանշուէր ազգայնական բարբարոս ջարդերով Կովկասի մէջ, ուր պարբերական իրադարձութիւններ էին Հայ-Թաթարական սպանդները: Ցարիզմի երկաթեայ իշխանութեան տակ կատարուող այս արիւնարբու բռնկումները արտայայտութիւնն էին անդրկովկասեան ժողովուրդներու դարաւոր երկպառակտիչ կռիւներուն:

«Այսպէս կոչուած ժողովրդավարութեան ժամանակաշրջանը ազգային պայքարին տուաւ շատ աւելի շեշտադրուած եւ կազմակերպուած բնոյթ: Սկիզբը կազմուեցան թշնամական ազգայնական բանակներ, որոնք փոխադարձ յարձակումներ կը կատարէին: Պուրժուական դաշնային ժողովրդական անդրկովկասեան հանրապետութիւն մը [1918 թուական, Հ.Ա.] ստեղծելու փորձը եղաւ չարաբաստիկ ձախողութիւն մը: Իր սկզբնաւորութենէն հինգ ամիսներ ետք դաշնութիւնը բաժնուեցաւ կտորներու: Քանի մը ամիս «ժողովրդավար» դրացիները գրեթէ բացայայտ պատերազմի մէջ մտան իրարու դէմ: Այս փաստը միայն կը հաստատէ խնդիրը. եթէ ժողովրդավարութիւնն ու ցարիզմը անկարող էին պայմաններ ստեղծել անդրկովկասեան ժողովուրդներու խաղաղ համակեցութեան համար, ակնյայտօրէն հրամայական էր որդեգրել ուրիշ մեթոտներ:

«Միայն Խորհրդային ուժը հաստատեց խաղաղութիւն եւ ազգային հաղորդակցութիւն անոնց միջեւ: Սովետներու ընտրութեան ժամանակ, Պաքուի եւ Թիֆլիսի աշխատաւորները ընտրեցին թաթար մը, հայ մը, կամ վրացի մը, անկախ անոնց ազգութենէն: Անդրկովկասի մէջ իսլամը, հայը, վրացին եւ ռուսական կարմիր զօրագունդը կ՚ապրին քով քովի: Անոնք տոգորուած են այն համոզումով՝ որ մէկ բանակ են եւ երկրագունդի ոչ մէկ ուժ կրնայ զիրենք շարժել իրարու դէմ: Միւս կողմէ, անոնք պիտի պաշտպանեն Անդրկովկասը բոլոր արտաքին թշնամիներուն դէմ:

«Անդրկովկասի ազգային խաղաղացումը, որ ձեռք բերուեցաւ Խորհրդային յեղափոխութեամբ, ինքնին քաղաքական եւ մշակութային հսկայ նշանակութիւն ունի: Անոր մէջ արտայայտուած է իրական կեանքի միջազգայնականութիւն, զոր կրնանք ապահովապէս դնել ընդդէմ Երկրորդ Միջազգայինի հերոսներուն դատարկ խաղաղասէր տրամասացութիւններուն, որոնք ուրիշ բան չեն եթէ ոչ իր ազգային հատուածներուն շովինական գործողութիւններուն յաւելուածը»: (Լէոն Թրոցքի, *Կարմիրի եւ սպիտակի միջեւ*, 1922)

Ասիկա կը տեւէ մինչեւ սթալինեան պիւրոքրաթիք վերնախաւի ամրապնդումը, որ քանդեց համակեցութեան կարելիութիւնը, ինչպէս կը մեկնաբանէ Ֆրէտ Ուեսթըն.

«Խորհրդային հանրապետութիւններու միութեան մէջ, այսինքն՝ հանրապետութիւններ ուր իշխանութեան եկած են աշխատաւորները, ոչ մէկ շահ կար հրահրելու էթնիքական հակամարտութիւններ: Ընդհակառակը, բոլոր ազգութիւններու աշխատաւորներուն եւ գիւղացիներուն շահերէն կը բխէր միանալ՝ համատեղ ճիգով կառուցելու բոլորին մատակարարող տնտեսութիւն մը: Այսպէս, տարբեր լեզուներու եւ կրօնքներու ժողովուրդները երկար ժամանակ կրցան միասին ապրիլ խաղաղութեամբ եւ համագործակցութեամբ:

«Դժբախտաբար, մինչդեռ յեղափոխութիւնը մնաց մեկուսացած եւ միայնակ համեմատաբար թերզարգացած երկիրի մէջ, սկսաւ այլասերումի շրջան մը, որ տեսաւ արտօնեալ եւ պիւրոքրաթիք վերնախաւի ծագումը: Սթալինի հսկողութեամբ իշխանութեան հասած պիւրոքրաթական վերնախաւն էր որ ի վերջոյ պիտի վերաբորբոքէր էթնիքական լարումները» (https://www.marxist.com/nagorno-karabakh-victim-of-inter-imperialist-rivalry.htm):

Մէկ կողմ ձգելով յատկապէս Թրոցքիի անխուով լաւատեսութիւնը եւ այլ մանրամասնութիւններ, ընդհանուր առմամբ, պատմութեան յիշեալ ժամանակաշրջանը ցոյց կու տայ համակեցութեան կարելիութիւնը, շրջան մը՝ որուն մասին կը սիրենք լռել:

**2. Կիսալուծում**

Լուծումի կերպ մը կրնար ըլլալ նոյնինքը ազգային պետութեան միակութեան կիրարկումը՝ զիջողականութեան սկզբունքին վրայ, այլ ոչ համակեցային: Այսինքն, Ղարաբաղը բաժնուէր հաւասար երկուքի՝ մէկ կողմը ըլլար Հայաստան, միւս կողմը՝ Ազըրպէյճան, իւրաքանչիւրը իր համապատասխան պետութեան սահմաններով:

Համաձայնութիւնը պէտք է տային Հայաստանն ու Ազըրպէյճանը, սահմանազատումը պէտք է կատարէր երրորդ վստահելի եւ անկողմնակալ կողմ մը:

Ասիկա կարելի էր իրականանալ եթէ միայն երկու կողմերը ցոյց տային քաղաքական կամք եւ որոշէին չազդել երրորդ կողմի որոշումներուն վրայ: Միաժամանակ հրաժարէին իրենց թշնամական հռետորաբանութենէն՝ զայն փոխարինելով

➩ 3

2 ➪

# ԱԿՆԱՐԿ ԵՐԵՍՆԱՄԵԱՑ ԱՐՑԱԽ/ՂԱՐԱԲԱՂԻՆ ՎՐԱՑ

խաղաղութեան խօսոյթներով:

**3. Ոչ-լուծում**

Ոչ-լուծումը այն «լուծումն» է որուն մէջ կ'ապրինք առաջին պատերազմէն սկսեալ: Հայերս ըսինք՝ ամբողջութեամբ իմս է: Զմտածեցինք՝ որ դիմացի կողմն ալ ճիշդ նոյնը կ'ըսէ, եւ կ'ըսէ աւելի յամառութեամբ, աւելի ատելութեամբ, աւելի վճռականութեամբ:

Երբ պետութիւնները միեւնոյն գործողութեան կու տան տարբեր անուանումներ՝ հարցը չի կրնար լուծուած ըլլալ: Ղարաբաղի պատերազմներու հայ մասնակցողները ազատամարտիկներ են հայերուս համար, անջատողականներ (separatists)՝ արեւմուտքի համար, անջատողականներ, ահաբեկիչներ եւ ցեղասպաններ՝ Ազրպէյճանի համար:

Առաջին պատերազմին արդիւնքը եղաւ ազատագրեալ տարածք՝ հայերուս համար, գրաւեալ տարածք՝ Ազրպէյճանի եւ աշխարհի համար: Երկրորդ պատերազմին արդիւնքը եղաւ ազատագրեալ տարածք՝ Ազրպէյճանի համար, էթնիք զտում (բայց ոչ գրաւեալ տարածք)՝ հայերուս համար:

Նոյն գործողութեան հականշային անուանումները երբեք չեն կրնար տանիլ խաղաղութեան: Առաւելագոյնը իշխանական համաձայնագիրներ կրնան գոյանալ, վերջն թելադրուած ժամանակաւոր խաղաղութեամբ, տասնամեակներ ետք կրկին պատերազմը բռնկելու հնարաւորութեամբ:

Արդէն մեր նոր կուսակցականապետը գրեց՝ որ եղածը «ժամանակաւոր» է, իսկ բառին չակերտաւոր ներկայացումը չէր հետապնդեր պատկերաւորութիւն կամ իմաստային փոխակերպութիւն, քանի որ գրողը ըսել կ'ուզէր՝ թէ ինչ որ ալ ըլլայ իրականութիւնը, մենք երեւոյթը այդպէս կ'ուզենք տեսնել, իսկ եթէ այդպէս կ'ուզենք տեսնել՝ ուրեմն այդպէս է: Այսինքն՝ ժամանակաւոր:

**ԱՐՑԱԽ ԵՒ ՂԱՐԱԲԱՂ**

**1. Սրբացած Արցախ**

Ինծի նման անկարող գրողներս չենք գիտեր երբ գրել Արցախ, երբ գրել Լեռնային Ղարաբաղ, կամ կրճատ՝ Ղարաբաղ: Եւ վստահ ենք՝ թէ այս նախադասութեան մէջ ճիշդը Արցախն էր, միւս նախադասութեան մէջ՝ Ղարաբաղը: Ամբողջ աշխարհը կը ճանչնար Լեռնային Ղարաբաղ, մենք՝ Արցախ, պատշաճութեան համար՝ Ղարաբաղ:

Արցախ անունը նաեւ հայրենասիրութեան աղբիւր մը եղաւ: Սփիւռքի եւ Հայաստանի մէջ կարելի է գտնել Արցախ անունը կրող բազմաթիւ խումբեր եւ խմբաւորումներ՝ Արցախ Մշակութային Ակումբ, Արցախի Բարեկամներու Խումբ, Արցախ Երգչախումբ, Մշակութային Արցախ Նախաձեռնութիւն, եւլն., որոնք անունէն անդին ոչ մէկ կապ ունին Արցախի հետ:

Արցախը դարձած էր սրբութիւն՝ անձեռնմխելի, անքննադատելի, մինչ այնտեղ կ'աճէր օլիկարքութիւնը իր ամբողջ թափով՝ Քոչարեանէն սկսեալ մինչեւ Արայիկ Յարութիւնեան: Արցախեան օլիկարքութեան մասին պէտք չէ խօսուէր, քանի որ երկիրը վերածուած էր պաշտամունքային կուռքի:

Արցախի իշխանութիւնները երկիրը դարձուցած էին փակ տարածութիւն մը արտաքին աշխարհի առջեւ, ներառեալ հայերուն, բաց տեղեկատուութեան մատչելիութեան առումով: Շատ դժուար էր տեսնել հասարակութեան ներսը, իմանալ մարդոց մտահոգութիւնները մայրաքաղաքին մէջ, ալ ուր մնաց սակաւամարդ գիւղերը:

Արցախի մէջ մինչեւ վերջին օրը արգիլուած էր լուրջ քննադատութիւնը, ճնշուած էր ազատ խօսքը, այնտեղ չկար միտքի այլազանութիւն: Օլիկարք իշխանաւորները յաջողապէս ինքնապաշտպանուած էին այս տեսանկիւնէն:

Պէտք է ըսել, որ Սփիւռքի կուսակցական բարձրագոյն ներկայացուցիչներ էական ձեռնարկութիւններու մէջ ունէին կարեւոր բաժնետոմսեր, զորս ստացած էին օլիկարքական կարգով: Յատկապէս այնպիսի բանալի ձեռնարկութիւններու մէջ, որոնք պետութեան կողմէ կ'անուանուէին ապահովութեան (անվտանգային) միաւորներ, ինչպէս Արցախի ՀէԿ-երը: Այս մարդիկ հզօր տիրապետութիւն ունենալով իրենց աւանդական կուսակցութիւններուն վրայ, մէկ կողմէ՝ կը հսկէին Սփիւռքի լրատուական ցանցին, եղելութիւնները ներկայացնելով ի նպաստ օլիկարքական իշխանութիւններուն, իսկ Թաւշեայ Յեղափոխութենէն ետք՝ նոր իշխանութիւններուն դէմ, միւս կողմէ՝ ամուր յենարաններ էին օլիկարքական համակարգին:

Հայաստանի յեղափոխութենէն ետք Արցախ փոխադրուեցան իշխանութենէն վտարուածները կամ անոնց ներկայացուցիչները, այնտեղէն փորձելով հարուածելու միջոցներ որոնել ներկայ իշխանութիւններուն:

Եւ այս բոլորը՝ երբ Արցախը կը գտնուէր պատերազմի եւ կորուստի վտանգին տակ: Եւ այս բոլորը՝ արցախեան հայրենասիրութեան բարձրաղմուկ հռետորաբանութեան տակ: Դրամատիրական ծայրայեղ ազգայնապաշտութեան պատում մը կը տիրէր Արցախի նկատմամբ՝ անոր մէջ եւ անկէ դուրս, իբրեւ քօղարկում շահոյթի եւ գերշահոյթի գործողութիւններուն: Սրբացած Արցախը լաւագոյն վայր մըն էր շահոյթի:

Եւ այս բոլորը՝ երբ Արցախը պէտք ունէր նուիրեալ ու համոզեալ կերտողներու բոլոր բնագաւառներուն մէջ՝ տնտեսութիւն, առողջապահութիւն, քաղաքականութիւն, մշակոյթ, արուեստ: Կային այդ նուիրեալները, բայց շատ քիչ:

Հայաստանի յեղափոխութենէն ներշնչուած, ժողովրդային փորձեր եղան յեղափոխելու նաեւ Արցախը, արցախցիներ բնազդաբար իջան փողոց եւ հանրահաւաքներ կազմակերպեցին, առանց հասնելու յաջողութեան, իսկ անոնց ձայնը մնաց գրեթէ անլսելի Հայաստանի եւ Սփիւռքի մէջ:

Այս վերնախաւային աղմուկին տակ կ'ապրէր ժողովուրդ մը, որ չէր եղած միատարր: Կար դասակարգ մը, որ օդափոխութեան կրնար երթալ Հուրղատա եւ Շարմ Ալ-Շէյխ, ուրիշներ դժուարութեամբ կը վաստակէին իրենց օրապահիկը, կար քաղքենին, հողագործն ու անասնապահը: Բայց կար նաեւ միաւորող հանգամանք մը: Մայրաքաղաքը, առաւել եւս գիւղերը, ապահով տարածութիւններ էին առօրեայ բնակութեան համար՝ գողութեան եւ քրէականութեան նուազագոյն դէպքերով, որուն շնորհիւ նուազագոյն էր նաեւ ոստիկանական բռնութիւնը: Որոշ ծածկագրային համակեցութիւն մը կար, որ կրնար հասնիլ շատ աւելի բարձր եւ չեչտուած մակարդակներու՝ եթէ չըլլային շահագործող իշխանական օլիկարքները:

Եւ, ինչպէս յայտնի եղաւ Հայաստան տեղահանուածներու հաշուարկումէն, բնակչութեան թիւը 100 հազար էր, եւ ոչ թէ 120 հազար, ինչպէս անընդհատ կը յայտարարուէր պաշտօնապէս: 100 հազարը, կամ նոյնիսկ 120 հազարը, չափազանց քիչ թիւ մըն էր՝ ժողովրդագրական գործօնի մասնակցութեամբ պահելու լայնատարած Արցախը:

**2. Հայաստան-Արցախ յարաբերութիւններ**

Առաջին պատերազմէն ետք, 1994-ին կը ստեղծուի Արցախի նախագահութիւնը Ռոբերտ Քոչարեանի անմիջական միջամտութեամբ: Առաջին նախագահ կը դառնայ Քոչարեան, այնտեղ մնալով մինչեւ 1997, երբ արդէն Հայաստանի մէջ կազմելով անհրաժեշտ ուժային կեդրոնը, Տէր-Պետրոսեան կը ստիպուի զինքը նշանակել Հայաստանի վարչապետ:

Քոչարեան, գրեթէ անծանօթ մը 1994-ին, կը ստեղծէ ռուսական օլիկարքական նմանողութեամբ փտացած (corrupted) վերնախաւ մը Արցախի մէջ, Հայաստանէն անկախ ինքնուրոյն եւ ինքնավար ղեկավարական համակարգով:

Ղարաբաղեան հարցի առնչութեամբ, Տէր-Պետրոսեան մշտակայ կապի մնաց Արցախի ղեկավարներուն հետ, որոնց կարծիքը վճռական եղաւ Հայաստանի միջազգային բանակցութիւններուն մէջ: Յետագային Ժիրայր Լիպարիտեան պիտի խոստովանէր՝ որ բանակցութիւններուն ամենադժուարը Արցախի ղեկավարներուն հետ էր: Ասկէ կարելի՞ է հետեւցնել՝ որ Արցախի ձայնի ներգրաւումը բանակցութիւններուն մէջ պարտադրուած գործօն մըն էր Տէր-Պետրոսեանի համար: Թէ՞ Տէր-Պետրոսեանի համոզումն էր ներգաւել Արցախը, որպէսզի ստիճանաբար համոզէ աշխարհին հայկական Արցախի գոյութեան մասին եւ ըստ այնմ փորձէ կարգավիճակ տալ անոր: Ասոր պատասխանը միայն ինք կրնայ տալ: Թերեւս երկու գործօններն ալ ներկայ էին, այսինքն՝ պարտադրանքը եւ համոզումը:

Քոչարեան-Սարգսեանի ժամանակ Արցախի կարծիք գոյութիւն չունէր: Բանակցութիւններէն դուրս ձգուեցաւ ան, եւ ամէն որոշում կը կայացուէր Երեւանի մէջ: Ստեփանակերտի մէջ նստած ղեկավարները հանգիստ էին այսպէս, քանի որ դուրս մնալով լուսարձակէ՝ ոչ միայն զերծ մնացին քաղաքական առումով որեւէ հնարաւոր քննադատութենէ, այլ ընդհանրապէս քննադատութենէ՝ փտածութեան (corruption) տեսանկիւնէն:

Փաշինեան ուզեց բանակցութիւններու սեղանին վերադարձնել Արցախը: Գոնէ հաշուի առնել անոնց ձայնը բացայայտ եւ յայտարարուած հարթակով: Զյաջողեցաւ: Արցախի ղեկավարները պատրաստ չէին քաղաքականութեան, իսկ Թաւշեայ Յեղափոխութենէն ետք այնտեղ բոյն դրած նախկին իշխանականները աշխատեցան չկայացնել այս յարաբերութիւնը:

**ԱՐՑԱԽ-ՂԱՐԱԲԱՂԵԱՆ ԻՆՔՆՈՒԹԻՒՆ**

Վերջին 30 տարիներու թէ՛ Հայաստանի եւ թէ Ազրպէյճանի ազգային ինքնութիւնները հիմնըւեցան ղարաբաղեան հարցին վրայ: Մեծ մասամբ հարցը շահագործուեցաւ օլիկարքական վերնախաւին կողմէ՝ հայրենասիրական պատումի, վախցնելու, սպառնալու միջոցով պահպանելու ոչ-ժողովրդավար վարչակարգերը: Ասիկա Հայաստանի մէջ յստակ էր Քոչարեան-Սարգսեանի ժամանակաշրջանին:

Գալով Ազրպէյճանին, Ղարաբաղը դարձաւ կենաց-մահու հարց մէկ ընտանիքի՝ հայր ու զաւակ Ալիեւներու համար: Ղարաբաղը դարձնելով ազգային ինքնութեան հիմնական եւ միակ տարրը, անոնք կրցան ցարդ ապահովել իրենց իշխանութիւնը: Ինքնակալ-բռնակալ-միապետական վարչակարգ մը՝ կեդրոնացած Ալիեւ անձերուն շուրջ, պետութիւնը նոյնացաւ Ալիեւ անունին հետ: Ազրպէյճանի պետութիւնը այսօր կը ներկայացնէ մէկ անձ մը՝ որ կը կոչուի Իլհամ Ալիեւ: Զկայ պետութիւն, չկան կայացած հիմնարկներ, կայ կազ-քարիւղի հսկայ վաճառք, որուն եկամուտին մէկ մասը կը գրպանուի իշխանականներուն կողմէ, միւս մասը կը ծախսուի զէնքի վրայ, երրորդ պզտիկ մաս մըն ալ կը յատկացուի ժողովուրդի կարիքներուն՝ այն նուազագոյն աստիճանով, որ կարելի ըլլայ զանոնք պահել ապահովապէս կենդանի:

Ալիեւի համար ղարաբաղեան ազգային ինքնութիւնը կը հանդիսանայ իր ժողովուրդը վերահսկելու լաւագոյն եւ ամենադիւրին միջոցը:

Ազրպէյճանը այս առումով քիչ մը նման է Ռուսաստանի Վլատիմիր Փութինի ինքնակալ վարչակարգին: Փութինն ու պետութիւնը գրեթէ նոյնականացուած են այսօր: (Ոչ-)պետութիւն՝ հիմնուած բացառապէս քարիւղ-կազի վաճառքի վրայ, ուրիշ հարց եթէ Ազրպէյճանի աղբիւրները սահմանափակ ըլլան Ռուսաստանի համեմատութեամբ:

Կը յառաջանայ կարեւոր հարցում մը: Ղարաբաղի հարցի աւարտէն ետք, ինչպէ՞ս պիտի կարողանայ Ալիեւ պահպանել իր իշխանութիւնը: Բռնապետին համար անհրաժեշտ է գտնել նոր բախումներ՝ ոչ անպայմանօրէն Ղարաբաղի հարցի տարողութեամբ, այլ միքրօ մակարդակներով, այնքան որ վառ պահէ ատելութեան խօսքը հայերուն նկատմամբ, միաժամանակ ապրիլ յաղթանակի յոխորտանքով եւ յաղթանակի պատումին միջոցով կենդանի պահել ղարաբաղեան ազգայնական ինքնութիւնը: 1994-էն սկսեալ մենք եւս չապրեցա՞նք արդեօք նմանատիպ յոխորտանքով: Մեր յոխորտանքը հիմնուած էր տէ ֆաքթօյի վրայ, չկարողանալով զայն փոխել տէ եուրէի, Ազրպէյճանի յոխորտանքը պիտի հիմնուի տէ եուրէի վրայ:

Իսկ կա՞յ պետութիւն Հայաստանի մէջ: Առնըւազն, Հայաստան մէկ անձի պետութիւն չէ եղած՝ նոյնիսկ նախկիններու կիսաբռնապետական շրջանին: Սերժ Սարգսեան, փորձելով տասը տարի եւս ապահովել իր առաջնորդութիւնը, համատարած յեղափոխութեամբ ժողովուրդը անդելափակեց գործընթացքը:

Իսկ թէ ինչպէս կը գործեն հիմնարկները, բաւական երկար պատմութիւն է:

**ԿՈՐՈՒՍՏ**

Որքան ալ ըլլայինք գործնապաշտ, որքան ալ հասկցած ըլլայինք Ղարաբաղի հայկականացումի միջազգային պաշտօնականացումին գրեթէ անկարելիութիւնը, որքան ալ կանխատեսած ըլլայինք հնարաւոր կորուստը, որքան ալ համոզուած ըլլայինք որ վերջնական լուծումը համակեցային ընկերվարութիւնն է, այսօր կ'ապրինք միակեցական ազգային պետութեան դարաշրջանը, որուն մէջ իւրաքանչիւրս մխրճուած է՝ ուզէ կամ չուզէ, ընդունի կամ չընդունի: Երեսուն տարի գործնականօրէն Ղարաբաղը եղաւ հայկական, նոյնիսկ ամենայոռետեսին համար: Սեփականութեան ներքնականացուած ենթաբնազդային հոգեվիճակ մը գործեց մեր մէջ: Ազգային պետութեան ստեղծած եսին մէջ երեսուն տարի նստելով, նոյնիսկ բազմազգային համատեղութեան ամենաուժեղ աջակիցը վերջապէս ինքզինքը գգաց այդ եսի անուղղակի թելադրանքին տակ: Որմէ՝ կորուստի զգացողութիւնը:

Կորսուստ՝ երեսուն տարուայ փորձառութեան, ըլլայ մարմնապէս այնտեղ ապրածին համար, կամ հեռուէն հետեւածին: Անշուշտ, մարմնապէս ապրածտեղահանուածին ոչ մէկ կերպ կրնայ փոխարինել հեռակայ հետեւողը: Բայց կը միաւորէ համատեղ յիշողութիւնը:

➪ 4

# ՋԱՀԱԿԻՐ

## ԻՆՉՊԷՍ ՀԱՄԱՅՆՔԸ ԳՈՅԱՏԵՒՈՒՄԻ ՊԱՅՔԱՐ ՄՂԵՑ ԱԶԸՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ՌՈՒՄԲԵՐՈՒՆ ՏԱԿ

1

Բայց ըստ բնակիչներու եւ պատօնատարներու *openDemocracy*-ին հաղորդած ականատեսի վկայութիւններուն, Ազրպէյճանի ռազմական յարձակումը ընդգրկեց անկանոն հրետակոծութիւն ոչ միայն շփումի գիծին երկայնքով, այլեւ Ստեփանակերտի բնակելի թաղամասերը, ինչպէս նաեւ Լեռնային Ղարաբաղի քաղաքներն ու գիւղերը:

Մէկ օրուայ ընթացքին ազըրպէյճանական ուժերը արագօրէն ջախջախեցին տեղական պաշտպանութիւնը, սպաննելով աւելի քան 200 մարդ, ներառեալ քաքաղացիներ:

Ստորագրուեցաւ զինադադար, ուր Ազըրպէյճան համաձայնեցաւ դադրեցնել ռմբակոծութիւնը՝ եթէ տեղական չճանաչուած կառավարութիւնը յանձնուի եւ զինաթափուի: Օրեր ետք, առանց արտաքին ուժերու միջամտութեան, Լեռնային Ղարաբաղի նախագահ Սամուէլ Շահրամանեան կը ստիպուի հրամանագիր ստորագրել՝ մինչեւ տարեվերջ լուծարելու պետական հիմնարկները: Հրամանագիրին մէջ գրուած է՝ «Լեռնային Ղարաբաղի (Արցախի) Հանրապետութիւնը կը դադրի գոյութիւն ունենալէ»:

Ըստ տեղացի պաշտօնեաներու տեղեկութիւններուն, յարձակումին հետեւանքով Սառնաղբիւր գիւղի 76 բնակիչներէն հինգը կը սպաննուին, ներառեալ երեք երեխաներ, իսկ վիրաւորեալներուն թիւը կը հասնի 15-ի: Չորս անձեր կը կալանաւորուին, որոնց երեքը կիներ են:

Բռնի տեղահանուած հազարաւոր մարդիկ աւելի քան մէկ շաբաթ անցուցին Ստեփանակերտի փողոցները, քաղաքը վերածելով գաղթականներու բացօթեայ ճամբարի, ուր մարդիկ ուրուականներու պէս կը թափառէին անյայտութեան մէջ, յուսահատօրէն փնտռելով ուտելիք, բժշկական օգնութիւն եւ տաքցնող հագուստ: Առանց վառելիքի, բեռնատարները անկարող էին հաւաքել աղբը, եւ փողոցներէն կը մխար նեխած աղբի հոտը:

Վերջապէս, Սեպտեմբեր 24-ին, Ազըրպէյճան կը թոյլատրէ գաղթականներու առաջին խումբին մուտքը Հայաստան, որոնք օրեր շարունակ ճամբարած էին ռուսական ռազմակայաններէն դուրս: Ըստ Հայաստանի կառավարութեան պաշտօնատարներուն, Սեպտեմբեր 30-ի դրութեամբ Հայաստան տարհանուած էին 100,417 բռնի տեղահանուածներ՝ գրեթէ ամբողջ բնակչութիւնը:

Կարմիր Խաչի Միջազգային Յանձնախումբի օգնութեամբ, Ալեքսանեան կը տարհանուի Ստեփանակերտէն Գորիս (Հայաստան), իր հետ ունենալով վիրաւոր կինը եւ դուստրը, ինչպէս նաեւ կեսրոջ եւ որդիի դիակները:

Ազըրպէյճանի նախագահ Իլհամ Ալիեւ հրապարակայնօրէն խոստացած էր երաշխաւորել տարածաշրջանի էթնիք հայերուն իրաւունքներն ու ապահովութիւնը, պնդելով՝ որ բնակիչները իրենց սեփական ընտրութեամբ է որ փախուստի դիմեցին: Բայց եւ այնպէս միջազգային մասնագէտներ, ներառեալ Միջազգային Քրէական Դատարանի նախկին գլխաւոր դատախազ մը, ըսաւ որ կը գտնուին «հիմնաւոր հիմքեր հաւատալու՝ թէ ցեղասպանութիւն կը կատարուի» Լեռնային Ղարաբաղի հայերուն դէմ: Բազմաթիւ ղարաբաղցի հայերու նման, Գուրգէն բուռն կերպով կը փափաքի վերադառնալ իր գիւղը, բայց չի կրնար երեւակայել ապահով ապրիլ ազըրպէյճանական տիրապետութեան տակ:

30 ժամ տեւած ճամբորդութենէ ետք, Գուրգէն, իր մայրը եւ չորս քոյր-եղբայրները կը հասնին Գորիս, իրենց հետ ունենալով միայն այն հագուստները՝ զորս կը կրէին ռմբակոծութենէն փախչելու ժամանակ: Իբրեւ գաղթականներ, մօտակայ քաղաքի մը իջեւանատան մէջ անոնց կը տրամադրուի ժամանակաւոր բնակութիւն, Սառնաղբիւրի մէջ թողելէ ետք ամէն բան:

*openDemocracy*

12 Հոկտեմբեր 2023

Անգլերէնէ թարգմանեց՝ Ա.

### ԳԱՀԻՐԷ

## ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Գահիրէի եւ անոր պատկանող շրջաններուն մէջ բնակող եւ ընտրական իրաւունք ունեցող մեր ազգայիններուն ուշադրութեան կը յանձնենք հետեւեալ կէտերը.

Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւնները (24 հոգի) տեղի պիտի ունենան՝

**Ուրբաթ, 10 Նոյեմբեր 2023-ին, Ազգային Առաջնորդարանին մէջ,**

**Առաւօտեան ժամը 8:30-էն մինչեւ երեկոյեան ժամը 5:00:**

Ընտրութեան օրը ամէն ազգային կը ներկայացնէ իր ինքնութեան քարտին բնօրինակը ( Պըթաքա շախսէյա ) եւ կը ստանայ իր ընտրական քարտը:

Ինքնութեան քարտի լուսատիպ պատճէններով ներկայացողները պիտի չկարենան Առաջնորդարանի բակ մտնել, ուստի պիտի կորսնցնեն ընտրելու իրենց իրաւունքը:

Ընտրական քարտ ստացած ազգայինը, ընտրութիւններու տոմարին մէջ ստորագրելէ ետք կը ստանայ Առաջնորդարանին կնիքով կնքուած պարապ քուէաթուղթ եւ պահարան, ապա կ՛առանձնանայ ու քուէաթուղթին մէջ կը գրէ իր նախընտրած թեկնածուին անունը եւ մականունը (հայերէն, արաբերէն կամ անգլերէն):

Քուէները կը տրուին ընտրելու իրաւունք ունեցող եւ 30 (երեսուն) տարին լրացած 24 (քսանչորս) ազգայիններու միայն:

24 ընտրելիներէն աւելի անունները կը ջնջուին քուէաթուղթէն, եւ յաջորդական կարգով նկատի կ՛առնուին միայն պահանջուած թիւով անունները:

Մէկէ աւելի լրացուած քուէաթուղթ պարունակող պահարանները եւ քուէաթուղթերը ամբողջութեամբ անվաւեր կը համարուին:

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ԿԱԶԱՆ՝ ԴԻՄԱԴՐՈՒԹԵԱՆ ՕՐՐԱՆ

1

յայտարարութիւնները: Անցեալ տարուայ Դեկտեմբերին էր որ Նեթանիահու կը ներկայացնէր Լիքուտ կուսակցութեան քաղաքականութիւնը, ըստ որուն Իսրայէլ պիտի «առաջ քաշէ եւ զարգացնէ բնակավայրեր Իսրայէլի հողի բոլոր մասերուն վրայ՝ Գալիլէա, Նեկեւ, Կոլան, Հրէաստան եւ Սամարիա», գործածելով Արեւմտեան Ափի Աստուածաշունչի անունները:

Մինչ Ազըրպէյճան իր գործողութիւնները կատարեց հայերուն դէմ ծայրայեղ հայատեացութեան հռետորաբանութեան տակ, առնուազն պզտիկ տեղ մը ձգելով հայերուն իբրեւ մարդ՝ զանոնք ատելու համար, վերջին պատերազմին Իսրայէլ ուղղակիօրէն պաղեստինցիները համարեց գոյութիւն չունեցող ժողովուրդ: Հոկտեմբեր 9-ին, Իսրայէլի պաշտպանութեան նախարար Եոաւ Կալլանթ յայտարարեց. «Մենք կը կռուինք մարդկային անասուններու դէմ եւ ըստ այնմ կը գործենք»: *Sky News*-ի հարցազրուցավարը կը հարցնէ Իսրայէլի նախկին վարչապետ Նաֆթալի Պեննէթին. «Իսրայէլի կողմէ ելեկտրականութիւնը անջատելու պատճառով կտրեցաւ ինքուպաթորներու (incubator) մէջ գտնուող Կազայի երեխաներուն կեանքի աղբիւրը»: Պեննէթ կը հակահարուածէ. «Լրջօրէ՞ն կը հարցնես պաղեստինցի քաղաքացիներու մասին: Ի՞նչ պատահեցաւ քեզի»:

Անձնապէս ոչ մէկ համակրութիւն ունենալով Համասի կրօնական եւ զինուորագրային հռետորաբանութեան նկատմամբ, պէտք է արձանագրել, որ ան հիմնադրուած է 1987-ին՝ ծագելով առաջին ինթիֆիտայէն, իբրեւ դիմադրութիւն իսրայէլական պետութեան: Մինչեւ այսօր ան կը մնայ գլխաւոր դիմադրող ուժը իսրայէլեան յաւէտ աճող գաղութատիրական եւ մարդասպանային քաղաքականութեան:

Նոյնիսկ Համաս կ՛ընդունի երկու պետութիւններու տարբերակը՝ 1967-ի սահմաններով: Ուրեմն, ո՞վ է չընդունողը:

Վերջապէս, չէ՞ր կրնար նաեւ Ղարաբաղը ունենալ երկու պետութիւններու լուծում: Այս հարցը ո՛չ հայերը առաջ բերին, ո՛չ ազէրիները: Օրակարգէ դուրս էր:

Ջ.

## ԱԿՆԱՐԿ ԵՐԵՍՆԱՄԵԱՅ ԱՐՑԱԽ/ՂԱՐԱԲԱՂԻՆ ՎՐԱՅ

3

1994-ին կորուստ ապրեցան նաեւ ազէրիները: Ազըրպէյճանի իշխանութիւնները ժողովրդային կորուստի զգացողութիւնը վերածեցին դրամագլուխի՝ ծայրայեղ ատելութիւն սերմանելով հայերուն նկատմամբ, կանգնեցնելով Խուջալուի յուշարձանը՝ ուր ողջ կորուստի զգացողութիւն մը կը սառեցուէր Ալիեւներու տարեկան ցուցադրական այցելութիւններուն մէջ:

Մենք եւս Ցեղասպանութեան կորուստը շատ անգամներ վերածած ենք դրամագլուխի՝ ամբողջ անբացատրելի աղէտ մը կրճատելով, սեղմելով եւ ճնշելով միջազգային պայմանագիրի հինգ կէտերու մէջ, ստանալու համար ուղղահայեաց վճիռներ՝ զերծ մեկնողական որեւէ հնարաւորութենէ, չխօսելու համար լոպինկի ետեւէն եկած միլիոնաւոր տոլլարները յատուկ խումբերու համար:

Յոյսով եմ Ղարաբաղի կորուստը չենք վերածեր շահութաբեր դրամագլուխի, հակամեկնողական առարկաներու: Յոյսով եմ, բայց վստահ չեմ:

* * *

Վերջին դիտում մը՝ թէ ինչպէս այսօր կը գործէ ազգայնականութիւնը: Արցախ գռաւելով փողոցներ փակող Ծովասար հիւրանոցային համալիրի մեծահարուստ սեփականատէրը մերժեց իր պանդոկին մէջ ընդունիլ տեղահանուած արցախցիներուն: Ազգայնականութեան այս տեսակն է որ կը գործէ այսօր ամբողջ աշխարհի մէջ: Ծիշդ ասիկա է՝ որ ազգայնականութիւն չէ:

(Վերջ 2)

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.
TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1952 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 9 ՆՈՅԵՄԲԵՐ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. ԴՀկ. عدد رقم ١٩٥٢ الخميس ٩ نوفمبر ٢٠٢٣

# ՌՈՒՍԱՍՏԱՆ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԳԱՂՈՒԹԱՏԻՐԱԿԱՆ ՆԿՐՏՈՒՄՆԵՐԸ

**ՏՆՏԵՍԱԿԱՆ**

Հայաստանի մէջ «[գ]լխաւոր ներդրողը Ռուսաստանն է: Ժամանակի ընթացքին Ռուսաստանը գնեց Հայաստանի բոլոր կարեւոր աքթիւները: Հայաստանի եւ Ռուսաստանի ներկապուածութիւնը այնքան ամբողջական է՝ որ գրեթէ անկարելի է տարբերել դաշնակցութեան տնտեսական մասերը դիւանագիտականէն կամ ռազմականէն» (էջ 91):

Իսկ «Ղարաբաղի հարցով Մոսկուան երկու Հարաւ Կովկասեան պետութիւնները կը պահէր հակամարտային փականքի տակ, որպէսզի երկուքն ալ կախեալ ըլլային ռուսական զէնքէ» (էջ 63):

Ապահովութեան եւ արտաքին քաղաքականութեան հարցերու միջազգային խորհրդատու Ճէյմս Քոյլի հիմնական գաղափարներն են ասոնք, որոնց շուրջ կը դառնայ 2021-ին լոյս ընծայած անգլերէն հատորը՝ *Ռուսաստանի միջամտութիւնը էթնիք հակամարտութիւններուն. Հայաստանի եւ Ազըրպէյճանի պարագաները* (James J. Coyle, *Russia's Interventions in Ethnic Conflicts: The Case of Armenia and Azerbaijan*, Gewerbestrasse (Switzerland): Palgrave Macmillan, 2021):

Այս գիրքը շատ կարեւոր է հայերուս համար՝ իրազեկ դառնալու համար թէ մինչեւ ուր կրնայ երթալ «հզօր» երկիրի մը տնտեսական սարկացումը «փոքր» երկիրի մը:

Ռուսաստան սեփականացուցած է Հայաստանի գրեթէ բոլոր հիմնական ձեռնարկութիւններն ու կենսական մատակարարութիւնները: Անոր տնօրինութեան տակ կը գտնուին Հայաստանի առօրեայ կեանքն ու տնտեսութիւնը շարժող ամենաէական կէտերը՝ ուժանիւթը (վառելանիւթ, կազ, քարիւղ), հեռահաղորդակցութիւնը (անշարժ եւ բջիջային հեռախօս, համացանց), պանքային համակարգի կարեւոր մասը:

Ռուսաստան նաեւ արգիլեց Հայաստանին՝ բանալի ձեռնարկութիւններու առումով գործարքներ ունենալ Իրանի հետ:

Կարեւոր է հասկնալ՝ թէ ինչպէս Ռուսաստան կրցած է տնտեսական սպառնալիքը օգտագործել Հայաստանին պարտադրելու արտաքին քաղաքականութեան կողմնորոշումը:

Կարեւոր է հասկնալ նաեւ՝ թէ ինչպէս ամէն բան իր ձեռքը վերցնելէ ետք, Ռուսաստան նախընտրեց փոխել իր դաշնակցային յարաբերութիւնները եւ, ինչպէս ականատես եղանք, գործել ի վնաս Հայաստանի, միաժամանակ լիովին անխախտ պահելով տնտեսական շահոյթի ամբողջականութիւնը:

Եւ միայն այս բոլորի հիման վրայ է որ կարելի է հասկնալ Ռուսաստանի այսօրուայ մեծամիտ ամբաստանութիւնները Հայաստանի ներկայ իշխանութիւններուն, որոնց ըրածը ուրիշ բան չէ եթէ ոչ քաղաքական այլընտրանքային ելքեր գտնել Արեւմուտքի մէջ, հասկացողութեան եզրեր փնտռել անոր հետ, երբ արդէն (բաւական ուշ) յայտնի դարձաւ Ռուսաստանի հրաժարումը իր դաշնակցային պարտաւորութիւններու գործադրութենէն, նախապատուութիւն տալով Թուրքիոյ եւ Ազըրպէյճանին, ըստ տարածական նոր շահերու կազմաւորումին:

Աւելին. Ռուսաստանն է որ ուզած է վառ պահել հայ-ազըրպէյճանական հակամարտութիւնը, օգտուելու համար զէնքի վաճառքի բացառիկ հնարաւորութենէն:

Սոյն յօդուածիս տնտեսական մասը ամբողջութեամբ հիմնուած է Ճէյմս Քոյլի գիրքին վրայ: Բոլոր քաղուածքները կատարուած են այս գիրքէն:

**ՏՆՏԵՍՈՒԹԵԱՆ ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ՅԱՆՁՆՈՒՄ**

**Ատոմակայան եւ ջրաելեկտրական կայաններ**

Թէ՛ վարկերով եւ թէ դրամաշնորհներով Ռուսաստան ամէն ջանք գործադրած է գործածութեան մէջ պահել Մեծամօրի ատոմակայանը, իր ձեռքը վերցնելով ատոմակայանի գործողութեան համար անհրաժեշտ վառելանիւթի մատակարարութեան մենատիրութիւնը: Իսկ երբ Հայաստան ձախողած է վճարել վարկերը, դաշնակից Ռուսաստան հարցը լուծած է սեփականացնելով հինգ կարեւոր ջրաելեկտրականներ.

«Այնքան աղքատ էր երկիրը [Հայաստանը, Հ.Ա.] որ 1994-ին սկիզբ առած հիմնական տնտեսական քայլերը եղան հայկական աքթիւներու աժանագոյն վաճառքը: Փետրուարին ան ռուսերուն հետ երկկողմանի փոխանակութեան համաձայնագիր ստորագրեց կենսական աղբիւրներու համար: 1988-ի երկրաշարժէն ի վեր փակուած էր Մեծամօրի ատոմակայանը, քանի որ կը գտնուէր երկրաշարժի գօտիի վրայ: Հայաստանի ուժանիւթային կարիքի պատճառով ան կը վերաբացուի 1995-ին: Այս նպատակին հասնելու համար, Ռուսաստանն ու Հայաստանը 1994 Մարտին կը համաձայնին ատոմակայանի համատեղ գործողութիւն: Չորս ամիսներ ետք, Ռուսաստան Հայաստանին կու տայ 100 միլիառ ռուպլիի վարկ, մօտաւորապէս 35 միլիոն տոլլար, վերագործարկելու համար կայանը: Ապա Ռուսաստան վարկով կը տրամադրէ ատոմակայանին անհրաժեշտ վառելանիւթը: Երբ երկիրը անկարող կ՚ըլլայ վերադարձնել գումարը, 2003-ին ռուսական RAO Unified Energy Systems ուժանիւթի ընկերութիւնը իր ձեռքը կը վերցնէ Մեծամօրի ելեւմուտքը, ինչպէս նաեւ Հայաստանի հինգ ջրաելեկտրական կայաններու սեփականութիւնը: 2014 Մարտին Ռուսաստանը Հայաստանին կու տայ 270 միլիոն տոլլարի վարկ եւ 30 միլիոն տոլլարի պարգեւ՝ նորացնելու համար ատոմակայանին մէկ մասը եւ երկարելու անոր կեանքը» (էջ 92-93):

**Կազ**

Պետական սեփականութիւն հանդիսացող ռուսական ուժանիւթի անդրազգային ընկերութիւն Կազփրոմը 2014-ին դարձած էր Հայաստանի կազի խողովակներուն 100% սեփականատէրը (էջ 93):

Կը մնար պզտիկ կտոր մը եւս.

«2009-ին Ռուսաստանը Հայաստանին ուրիշ վարկ եւս կը տրամադրէ, օգնելու համար յաղթահարել համաշխարհային ճգնաժամը: Մասնագէտները վստահ չէին՝ եթէ Ռուսաստան հատուցումի համար պիտի պահանջէ աքթիւի փոխանակում, բայց, ինչպէս Հայաստանի կառավարութեան պաշտօնատար մը ըսաւ, ծախելու բան չէ մնացած: Բայց եւ այնպէս, 2015-ին կառավարութիւնը գտաւ բան մը, երբ Կազփրոմին ծախեց իրանական կազի արտահանումի խողովակին իր հատուածը (41 քիլոմեթր): Այս որոշումով, Մոսկուայի լիակատար վերահսկողութեան տակ անցան Հայաստանի բնական կազի մատակարարումին ուղիները» (էջ 94):

**Տիրապետութիւն ուժանիւթի 80%-ին վրայ**

Հակառակ քանի մը ռուս ընկերութիւններու վաճառքին, Ռուսաստան կը տիրապետէ Հայաստան մատակարարուող ուժանիւթի 80%-ին վրայ.

«Մէկ տասնամեակ տեւած սեփականութեան իրաւունքէ ետք, արդարեւ, որոշ ռուսական ընկերութիւններ որոշեցին դրամայնացնել իրենց ունեցուածքը: Inter RAO՝ RAO United Energy Systems-ի դուստր ընկերութիւնը, դուրս եկաւ 2015-ին, Հայաստանի ելեկտրական մատակարարութեան ցանցը ծախելով Տաշիր Խումբին: Ասիկա ընկերութիւններու խումբ մըն է՝ զոր կը վերահսկէ հայ միլիառատէր Սամուէլ Կարապետեան: Ամերիկեան Contour Global ընկերութիւնը RusHydro-էն կը վերցնէ երկիրի ամենամեծ ջրաելեկտրական համալիրը: Նոյնիսկ ընկերութիւններու սեփականատիրու-

4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԽԱՂԱՂԱՊԱՀՆԵՐՆ ԱՄԲՈՂՋ ԶԻՆՏԵԽՆԻԿԱՆ ՂԱՐԱԲԱՂԻՑ «ՆՈՐՈԳՄԱՆ ՀԱՄԱՐ» ՈՒՂԱՐԿԵԼ ԵՆ ՌՈՒՍԱՍՏԱՆ

Ռուս խաղաղապահներն աւարտել են Լեռնային Ղարաբաղից սպառազինութեան առաքումը Ռուսաստան՝ «վերանորոգման համար»:

«Աւարտուել է խաղաղապահ կոնտինգենտի անձնակազմի ռոտացիան, ինչպէս նաեւ սպառազինութեան եւ ռազմական տեխնիկայի փոխադրումը Ռուսաստան՝ պլանային նորոգման համար», - ասւում է Ռուսաստանի ՊՆ հաղորդագրութիւնում:

Ըստ Ռուսաստանի պաշտպանութեան նախարարութեան, վերահսկման համակարգի օպտիմալացման շրջանակում Շուշիի շրջանում փակուել է 1 դիտակէտ: Ընդհանուր առմամբ Սեպտեմբերի 19-ից փակուել է 10 մշտական եւ 16 ժամանակաւոր դիտակէտ:

## ՔԿ-Ն ԱՄՓՈՓՈՒՄ Է ԱՐՑԱԽԻ ՎԵՐՋԻՆ ՕՐԵՐԻ ԶՈՀԵՐԻ ՄԻՋԱՆԿԵԱԼ ՏՈՒԵԱԼՆԵՐԸ

64 արցախցի է մահացել բռնի տեղահանման ընթացքում՝ ճանապարհին սննդի, դեղորայքի, բուժօգնութեան բացակայութեան պայմաններում, ասել է Քննչական Կոմիտէի խօսնակ Գոռ Աբրահամեանը:

Պաշտօնեան տեղեկացրել է՝ Ադրբէջանի կողմից Լեռնային Ղարաբաղում իրականացուած էթնիկ զտումների վերաբերեալ քրէական գործով քննութիւնը շարունակւում է, հրապարակուող տուեալները վերջնական չեն:

Սեպտեմբերի 19-ի մարտական գործողութիւններից յետոյ մինչեւ այժմ 30 զինծառայող եւ 12 քաղաքացիական անձ անհետ կորած

3

## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՅՑԵԼԱԾ ԶԲՕՍԱՇՐՋԻԿՆԵՐԻ ԹԻՒԸ ՆԱԽՈՐԴ ՏԱՐՈՒԱՅ ՀԱՄԵՄԱՏ ԱՃԵԼ Է ԱՒԵԼԻ ՔԱՆ 48 ՏՈԿՈՍՈՎ

Ընթացիկ տարուայ Յունուար-Սեպտեմբեր ամիսներին Հայաստան է եկել 1 միլիոն 839 հազար 4 զբօսաշրջիկ՝ անցեալ տարուայ 1 մլն 239 հազար 394-ի փոխարէն:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ այս մասին տեղեկացնում են Հայաստանի վիճակագրական կոմիտէից՝ ներկայացնելով միջազգային զբօսաշրջութեան 2023 թուականի 9-ամսեայ ցուցանիշները:

Աղբիւրի տեղեկատուութեամբ՝ զբօսաշրջիկների թիւը հաշուետու ժամանակահատուածում նախորդ տարուայ համեմատ աճել է 48.4 տոկոսով:

Ըստ աշխարհագրութեան՝ 2023 թուականի 9 ամիսների ընթացքում Հայաստան այցելած զբօսաշրջիկների թւով առաջին տեղում Ռուսաստանից ժամանածներն են եղել, որոնք կազմել են ընդհանուրի 50.7 տոկոսը (931 հազար 695 մարդ), այնուհետեւ յաջորդում են Վրաստանից՝ 10.1 տոկոս (185,082 մարդ), Իրանից՝ 6.3 տոկոս (116,062 մարդ) այցելուները:

# ԽՄԲԱՎԱՐ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԸ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**4. ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ** (1952-1953)

1950 Նոյեմբերէն մինչեւ 1952 Մայիս, կուսակցութեան ծիրէն ներս Ափրիկեանի խմբավարական գործունէութիւն չէ արձանագրուած: Մայիսին երեւան կու գայ նորակազմ Համազգային Երգչախումբը, զոր կը վարէ մէկ ու կէս տարի՝ մինչեւ իր մեկնումը Եգիպտոսէն (այս երգչախումբը ոչ մէկ կապ ունի նախորդ ժամանակներու համանուն երգչախումբին հետ եւ այսքան երկար ընդհատումէ ետք կարելի չէ համարել անոր շարունակութիւնը):

**Անդրանիկ համերգ**

1952 Մայիս 4-ին, Աղեքսանդրիոյ Մոհամմատ Ալի Թատերասրահին մէջ կը կայանայ Համազգային Երգչախումբին առաջին համերգը, մասնակցութեամբ Սեմֆոնիք Նուագախումբի:

Յայտագիր.

Ա ՄԱՍ

1. Կոմիտաս, *Տէր, կեցո՛ դու զհայս* (երգչախումբ):

2. Դանիէլ Ղազարեան, ա. *Այ աղջիկ*, բ. *Դիլբար ջան* (երգչախումբ):

3. Բարսեղ Կանաչեան, *Օրօր* (մեներգ եւ երգչախումբ), մեներգ՝ Անահիտ Յոխիկեան:

4. Կոմիտաս, ա. *Լուսնակն անուշ*, բ. *Ամպել ա ձուն չի գալիս*, մեներգ՝ Սարգիս Սարգիսեան (երգչախումբ եւ մեներգ):

5. Կոմիտաս, ա. *Օրօր Աղինօ*, բ. *Սօնա եար* (երգչախումբ):

6. Կոմիտաս, ա. *Եկան եկան*, բ. *Մեր բաղը*, գ. *Իմ չինար եարին*, դ. *Իմ չինարի եարը* (երգչախումբ):

Բ. ՄԱՍ

1. Ալան Յովհաննէս, *Եար նազանի* (մեներգ), մեներգ՝ Սարգիս Սարգիսեան:

2. Կոմիտաս, *Կալի երգ* (երգչախումբ եւ մեներգ), մեներգողներ՝ Սարգիս Սարգիսեան, Անահիտ Յոխիկեան, Vanda Protano:

3. Բարսեղ Կանաչեան, *Դալիլօ* (երգչախումբ եւ մեներգ), մեներգողներ՝ Carmello Bartolo, Անահիտ Յոխիկեան, Vanda Protano:

4. Կարպիս Ափրիկեան, *Հօյ նար* (երգչախումբ):

5. Կարպիս Ափրիկեան, *Էս գիշեր համբարձում է* (երգչախումբ):

Նուագակցութիւնները կատարուեցան նուագախումբով, որուն բոլոր մշակում-գործիքաւորումները կատարած էր Ափրիկեան(62):

Մամուլի անստորագիր յօդուած մը կ՚արձագանգէ. «Հոգեպարար յուզումներու ի՜նչ ալիք էր ան որ յաջողեր էր պոռթկացող խանդավառութեան դրոշմը գետեղել անցեալ կիրակի կէսօր, Մոհամէտ Ալիի Թատրոնէն դուրս յորդող բազմութեան դէմքերուն վրայ: Ի՜նչ ճառագայթարձակ դէմքեր, անճառ խնդութեան ան ի՜նչ արբշռանք բոլորին մօտ: Հայ երգն էր, հայ երգը որ ամբողջ երկու ժամ թրթռացուցեր էր հոգեխռով սրտերը այդ բազմահարիւր հայորդիներուն»(63):

Անանուն Թղթակից մը կը գրէ. «Ո՛չ Գահիրէ եւ ոչ ալ Աղեքսանդրիա այսպիսի գեղարուեստական եւ մեր ազգային երաժշտութիւնը ցոլացնող յայտագրով երգչախումբ չէ ունեցած երկար ժամանակէ ի վեր»(64):

Երգահանդէսը՝ նոր երգերու յաւելումով, կը կրկնուի Գահիրէ, Մայիս 18-ին, Յուսաբերի սրահին մէջ: Ահաւասիկ նոր յայտագիրը.

Ա ՄԱՍ

1. Կոմիտաս, *Տէր, կեցո՛ դու զհայս* (երգչախումբ):

2. Դանիէլ Ղազարեան, ա. *Այ աղջիկ*, բ. *Դիլբար ջան* (երգչախումբ):

3. Կոմիտաս, ա. *Լուսնակն անուշ*, բ. *Ամպել ա ձուն չի գալիս* (երգչախումբ եւ մեներգ), մեներգ՝ Սարգիս Սարգիսեան:

4. Կոմիտաս, ա. *Օրօր Աղինօ*, բ. *Սօնա եար* (երգչախումբ):

5. Կոմիտաս, ա. *Եկան եկան*, բ. *Մեր բաղը*, գ. *Իմ չինար եարին*, դ. *Իմ չինարի եարը* (երգչախումբ):

6. «Գնանք եղբայրներ» (*Հեքիաթ* օփերայէն), մշակում՝ Կ. Ափրիկեան:

Բ. ՄԱՍ

1. Բարսեղ Կանաչեան, *Ուռին* (երգչախումբ):

2. Գուրգէն Ալէմշահ, *Նազեր* (մեներգ), մեներգ՝ Անահիտ Յոխիկեան:

3. Ալան Յովհաննէս, *Եար նազանի* (մեներգ), մեներգ՝ Սարգիս Սարգիսեան:

4. Մեհրապ, *Սիրուն աղջիկ* (մեներգ), մեներգ՝ Սարգիս Սարգիսեան:

5. Սայեաթ Նովա, *Մի խօսք ունեմ* (մեներգ), մշակում՝ Սարգիս Բարխուդարեան, մեներգ՝ Յ. Զիլինկիրեան:

Գ. ՄԱՍ

1. Բարսեղ Կանաչեան, *Օրօր* (մեներգ եւ երգչախումբ), մեներգ՝ Անահիտ Յոխիկեան:

2. Կոմիտաս, *Կալի երգ* (երգչախումբ եւ մեներգ), մեներգողներ՝ Սարգիս Սարգիսեան, Անահիտ Յոխիկեան, Vanda Protano:

3. Բարսեղ Կանաչեան, *Դալիլօ* (երգչախումբ եւ մեներգ), մեներգողներ՝ Carmello Bartolo, Անահիտ Յոխիկեան, Vanda Protano:

4. Կարպիս Ափրիկեան, *Հօյ նար* (երգչախումբ):

5. Կարպիս Ափրիկեան, *Էս գիշեր համբարձում է* (երգչախումբ):

Դաշնակ՝ Տիկ. Հ. Օհանեան(65):

Առաջին երգահանդէս, առաջին յաջողութիւն: Առաջինի մը առաւելութեան եւ թերութեան ծիրին մէջ կը դիտէ Կարօ Գէորգեան երգահանդէսը: Նախ, կը նշէ Ափրիկեանի երաժշտական ընդունակութիւնները.

«Ամէն տարակոյսէ վեր է, որ ընկ. Կ. Ափրիկեան շնորհալի արուեստագէտ մըն է եւ, առաւելապէս ինքնազարգացման գծով է, որ կրցած է հասնիլ իր այս սկզբնական յաջողութիւններուն: Սկզբնական կ՚ըսեմ, որովհետեւ, վստահօրէն պիտի ունենանք իրմէ, ապագային, աւելի կատարեալը եւ ապահովաբար ամբողջականը: Երբ առաջին քայլերը կը պսակուին այսպիսի յաջողութիւններով ոչ միայն խմբավարութեան այլեւ եղանակներու մշակման ու դաշնաւորման մէջ, ստեղծագործական գետնի վրայ, մեր վստահութիւնը դատարկ ակնկալութիւն մը չի մնար ապահովաբար:

«Կ. Ափրիկեան ունի երաժշտագէտէ մը պահանջըւած գլխաւոր յատկութիւնները, - հասկացողութիւն, ճաշակ, ոճ, ոգի, զգայնութիւն, արուեստի թէքնիք եւ յանդգնութիւն՝ ստեղծագործական մարզի մէջ եւ սորվեցնելու, երգի մը դժուարագոյն մասերն իսկ մարսելի դարձնելու եւ խումբը, անոր ընկերացող նուագախումբն ալ միասին, իր ճպոտի ծայրին ու երգուած կտորին դարձուածքները արտայայտող իր ապրումներուն ու շարժումներուն կապելով, զայն վարպետօրէն վարելու կարողութիւնները, իբրեւ խմբավար:

«Իբրեւ ստեղծագործող եւ սեփական կնիքով հրապարակ իջնող հեղինակ, յայտնութիւն մը եղաւ ան նախ իր դաշնաւորումներուն մէջ»(66):

Ապա, Գէորգեան կ՚արձանագրէ ձայներու քանակի անհաւասարակշռութիւնը, շեշտելով ալթօներուն եւ պասերուն սակաւութիւնը, հետեւաբար՝ անոնց անլսելիութիւնը սոփրանոներուն եւ թենորներուն նկատմամբ:

Այսպէս, քննախօսը անուղղակիօրէն բարձրացուցած կ՚ըլլայ սփիւռքահայ երգչախումբի մը մշտական խնդիրներէն մէկը: Սփիւռքահայ խմբավարը կարելիութիւն չունի ընտրել խումբին քանակը, կազմել հաւասարակշռութիւններ: Ան կը վերցնէ բոլոր դիմորդները՝ որոնք գոնէ ճիշդ լսողութիւն ունին: Նոյնիսկ Սիփան-Կոմիտասի նման հռչակաւոր երգչախումբ մը, որուն երկարատեւ խմբավարը պիտի դառնար Ափրիկեան, իր կարեւոր երգահանդէսներուն եւ ձայնագրութիւններուն համար անդամները վճարովի կը համալրէր ֆրանսացի մասնագէտ խմբերգիչներով:

Միւս կողմէ՝ ինչո՞ւ անպայման քառաձայն, եթէ ան պիտի խանգարէ որակը: Արդարեւ, փրոֆեսիոնալ աշխարհի առաջ նետած քառաձայնութեան պատկերը աւելի կարեւոր է քան արտադրուող որակը: Մասնագիտական երաժշտանոցները, ֆիլհարմոնիները, օփերայի թատրոնները կրնան չափանիշ ընդունիլ քառաձայնը: Քառաձայնային չափանիշը՝ եթէ մտածելու եւ աշխատելու դրական որակ մըն է նման հիմնարկներու համար, ապրանքանիշ դարձած արտաքին փայլք մըն է ուրիշներու համար: Ստորադասութիւն մը պիտի ըլլայ եռաձայնը, երկձայնը, չըսելու համար միաձայնը, նոյնիսկ եթէ անոնց կատարողական որակն ու արժէքը ըլլայ գերադաս: Սփիւռքի երգչախումբեր բաւական տուժած են իրենց «ապրանքանշային» նկրտումներէն եւ պատկերներու ներկայացումէն՝ որոնք իրենցը չեն:

**Համերգ ի նպաստ եգիպտական բանակին**

1952 Նոյեմբեր 16, Գահիրէի Յուսաբերի Թատրոն, համերգ Համազգային Երգչախումբին, ի նպաստ Պաղեստինի պատերազմի եգիպտական բանակի հաշմանդամներուն: Ներկայ էին վարչապետ Զօրավար Մոհամմատ Նակիպ իր պաշտօնական շքախումբով, յայտնի երաժշտահան-երգիչ Մոհամմատ Ապտէլ Ուահապ, եգիպտական մամուլի թղթակիցներ:

Յայտագիր.

Ա. ՄԱՍ

1. Եգիպտական քայլերգ:

2. Դանիէլ Ղազարեան, *Ծառխս տակը*:

3. Կոմիտաս, *Զիգ տու, քաշի*, *Գարնան գութան*, *Անձրեւն եկաւ*:

4. Բարսեղ Կանաչեան, *Դալիլօ*, մեներգողներ՝ Անահիտ Յոխիկեան, Vanda Protano, Ժանէթ Փափազեան, Սարգիս Սարգիսեան:

5. Իփոլիթով-Իվանով, *Զէյթունցիներ* (Esquisses caucasiennes), մշակում՝ Ափրիկեան:

Բ. ՄԱՍ

1. Բարսեղ Կանաչեան, *Ալվարդին երազը*:

2. Աշոտ Պատմագրեան, *Ել ու ել*, մեներգող՝ Սարգիս Սարգիսեան, ջութակ՝ Ժիրայր Գանթարճեան:

Գ. ՄԱՍ

1. *Նաշիտ ալ-Հօրրէյա*:

2. Կոմիտաս, *Կալի երգ*, մեներգողներ՝ Անահիտ Յոխիկեան, Vanda Protano, Սարգիս Սարգիսեան:

3. Բարսեղ Կանաչեան, *Նանօր*, մեներգողներ՝ Vanda Protano, Ժանէթ Փափազեան, Սարգիս Սարգիսեան, Մ. Շատախցեան:

4. Կարպիս Ափրիկեան, *Հօյ նար*, մեներգող՝ Ոսկի Պապիկեան(67):

Արեւելահայերէնով անստորագիր նկարագրականը՝ որ հաւանաբար Երուանդ Խաթանասեանի գրիչէն ելած ըլլայ, կը նշէ. «Համազգայինի Աղեքսանդրիոյ երգչախումբը երէկ գերազանցեց ինքն իրեն: Վարչապետ Նեկիպի ներկայութիւնը երգիչների հոգուն մէջ ներարկեց պատասխանատուութեան ծանրախոհութիւնը, զուսպ, բայց հրավառ թափ եւ լարուած ուշադրութիւն: Ծիգն ու տքնանքը բացայայտ էին խումբին մէջ, որ պահեց իր պաղարիւնը եւ լիովին արդարացրեց մեր յոյսն ու ակնկալութիւնը»(68):

Յօդուածը կ՚արձանագրէ եգիպտացի բարձրաստիճան պաշտօնեային եւ մեծագոյն երաժիշտին արտայայտած կարծիքները հայ երգին մասին, որոնք հիացականութենէ անդին չեն անցնիր:

(Շար. 4)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

62. *Յուսաբեր*, 29 Ապրիլ 1952: *Արաքս*, 3 Մայիս 1952: «Հայ երգին ոյժը», *Արաքս*, 10 Մայիս 1952: Թղթակից, «Համազգայինի երգչախումբին անդրանիկ համերգը», *Յուսաբեր*, 12 Մայիս 1952:

63. «Հայ երգին ոյժը», *Արաքս*, 10 Մայիս 1952:

64. Թղթակից, «Համազգայինի երգչախումբին անդրանիկ համերգը», *Յուսաբեր*, 12 Մայիս 1952:

65. *Յուսաբեր*, 13 Մայիս 1952: Կարօ Գէորգեան, «Համերգէն վերջ, համերգի մասին», *Յուսաբեր*, 22 Մայիս 1952:

66. Կարօ Գէորգեան, նշ. յօդ.ը:

67. *Յուսաբեր*, 7 Նոյեմբեր 1952: *Արաքս*, 15 Նոյեմբեր 1952: «Կիրակի օրուան մեծ համերգը», *Յուսաբեր*, 18 Նոյեմբեր 1952:

68. «Կիրակի օրուան մեծ համերգը», *Յուսաբեր*, 18 Նոյեմբեր 1952:

**ԳԱՀԻՐԷ**

# ԼՈՅՍ ՏԵՍԱՆ *ԶԱՀԱԿԻՐԻ* ԵՐԵՔ ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻՆ

*Զահակիրի* Յաւելուածներուն վերջին երեք յաջորդական թիւերը նուիրուած են Արամ Խաչատրեանի եգիպտական ընկալումներուն, երաժշտահանի ծննդեան 120-ամեակին առիթով:

Առաջինը՝ Յաւելուած ԾԳ. (53), *Արամ Խաչատրեանի Եգիպտոսի այցելութիւնը (1961)* (220 էջ):



ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ
ԾՆՆԴԵԱՆ 120-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ
Ա.

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ
ԵԳԻՊՏՈՍԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ
(1961)

ԶԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԾԳ. (53)

ԳԱՀԻՐԷ
2023

1961-ին Խաչատրեան պետական հրաւէրով կը գտնուէր Եգիպտոս, ղեկավարելու համար իր ստեղծագործութիւնները Գահիրէի Սեմֆոնիք Նուագախումբին հետ: Իր նուագահանդէսները դարձան իրադարձութիւններ Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ եգիպտական երաժշտութեան կենսագրութեան մէջ, գրաւեցին հասարակութեան լայն խաւեր եւ երկար ժամանակ մնացին յիշողութեան մէջ:

*Զահակիրի* ԻԳ. (23) Յաւելուածը՝ *Արամ Խաչատրեանի ընկալումը եգիպտական շրջանակներու մէջ. փոխուող յարացոյցներ*, համառօտ ներկայացուցած էր 1961-ի այցելութիւնը (էջ 11-44): Ներկայ Յաւելուածը այս նիւթը կը ներկայացնէ աւելի ընդարձակ մօտեցումով, ներառնելով բազմաթիւ նոր տուեալներ՝ յատկապէս եգիպտական մամուլի հետ կապուած:

Երկրորդը՝ Յաւելուած ԾԴ. (54), *Արամ Խաչատրեանի գործերուն կատարում-ները Եգիպտոսի մէջ (մինչեւ 1970 թուական)* (67 էջ):



ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ
ԾՆՆԴԵԱՆ 120-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ
Բ.

ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ ԳՈՐԾԵՐՈՒՆ
ԿԱՏԱՐՈՒՄՆԵՐԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ
(մինչեւ 1970 թուական)

Պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ԶԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԾԴ. (54)

ԳԱՀԻՐԷ
2023

Փորձ մըն է ցուցակագրելու Խաչատրեանի գործերուն կատարումները Եգիպտոսի մէջ մինչեւ 1970 թուական:

Եգիպտոսի մէջ Խաչատրեանի առաջին արձանագրուած կատարումը եղած է ջութակի եւ դաշնակի Պարը, սիրող ջութակահար Ալպէռ Քըրթեանի կատարումով, 1941 Մայիս 4-ին: Հաւանաբար այս կամ ուրիշ գործերու աւելի վաղ կատարումներ եւս եղած ըլլան, որոնց մասին տեղեկութիւններ կը պակսին տակաւին:

Առաջին կատարումներու վաւերական թուականներն են. Ջութակի Քոնչերթօ՝ 1945, Թոքաթա դաշնակի համար՝ 1946, Պար դաշնակի համար՝ 1952, Վալս-Քափրիս դաշնակի համար՝ 1952, *Գայեանէ*էն հատուածներ նուագախումբի համար՝ 1954 (նախապէս կատարուած են հատուածներ դաշնակի փոխադրութեամբ), Դաշնակի Քոնչերթօ՝ 1955, *Սպարտակ*էն հատուածներ նուագախումբի համար՝ 1961, *Դիմակահանդէս*՝ 1961, եւ Սեմֆոնի-Փոէմ (Սիմֆոնիա-Պոէմ)՝ 1961:

Ցուցակը կը բովանդակէ Եգիպտոսի մէջ կատարուած հետեւեալ գործերը. Վալս-Քափրիս (դաշնակի համար), Պար (դաշնակի համար), Պար (ջութակի եւ դաշնակի համար), *Մանկական տեսարաններ* (դաշնակի համար), Փոէմ (դաշնակի համար), Երգ-Փոէմ (ջութակի եւ դաշնակի համար), Առաջին Քայլերգ (փողային նուագախումբի համար), Թոքաթա (դաշնակի համար), Եռանուագ (քլարինէթի, ջութակի եւ դաշնակի համար), Պէպոյի երգը (*Պէպօ* ֆիլմէն), Քէօռօղլի (*Պէպօ* ֆիլմէն), Դաշնակի Քոնչերթօ, Ջութակի Քոնչերթօ, *Գայեանէ*, Ուրալուհին (մեներգ), *Դիմակահանդէս*, Խորհրդային Հայաստանի Հիմն, Սեմֆոնի-Փոէմ, *Երեւան* կամ *Գարուն Երեւան* (մեներգ), *Խնջոյքի երգ* (մեներգ), *Սպարտակ*, եւ Սոնաթին (դաշնակի համար):

Երրորդը՝ Յաւելուած ԾԵ. (55), *Սամհա Ալ-Խուլի Արամ Խաչատրեանի մասին* (46 էջ):



ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ
ԾՆՆԴԵԱՆ 120-ԱՄԵԱԿԻՆ ԱՌԻԹՈՎ
Գ.

ՍԱՄՀԱ ԱԼ-ԽՈՒԼԻ
ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ ՄԱՍԻՆ

Թարգմանեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ԶԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԾԵ. (55)

ԳԱՀԻՐԷ
2023

Եգիպտացի ամենակարեւոր երաժշտագիտուհիներէն մէկն է Սամհա Ալ-Խուլի (1925-2006): Խաչատրեանի մասին գրած է երեք անգամ, բոլորն ալ արաբերէն լեզուով:

Առաջինը երաժշտահանի 1961 թուականի Գահիրէի նուագահանդէսներուն երկար քննախօսականն է, հրատարակուած ամենալայն տարածում ունեցող *Ալ-Ահրամ* օրաթերթին մէջ, խորագիր՝ «Խաչատրեան՝ ինքնատպութեան եւ տօնականութեան միջեւ» (*Ալ-Ահրամ*, 5 Մայիս 1961, 87-րդ տարի, թիւ 27173):

Երկրորդը մահուան 10-րդ տարելիցին առիթով գրուած յօդուածն է Քուէյթի *Ալ-Արապի* ամսագիրին մէջ, խորագիր՝ «Արամ Խաչատրրեանի մահուան 10-րդ տարելիցին առիթով. Կովկասի երաժշտական ձայնը» (*Ալ-Արապի*, Յունուար 1989, 32-րդ տարի, թիւ 362, էջ 85-90):

Երրորդը մաս կը կազմէ իր ծաւալուն հատորին՝ *Ազգայինը 20-րդ դարու երաժշտութեան մէջ* (Քուէյթ, Ալամ Ալ-Մաարէֆա, 1992):

Գիրքը կը բովանդակէ երեք գրութիւններուն հայերէն թարգմանութիւնները:

Երեք գիրքերը կարելի է ազատ ներբեռնել՝
https://archive.org/details/@hav64?tab=uploads&sort=-date

**ՀԱՅԱՍՏԱՆ**

# ՕՎԵՐՉՈՒԿԸ ԲԱՑԱՅԱՅՏԵՑ «ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՄԻՋԱՆՑՔԻ» ԳԱՂՏՆԻՔԸ

**ՎԱՀՐԱՄ ԱԹԱՆԵՍԵԱՆ**

Հիւսիս-հարաւ միջազգային տրանսպորտային միջանցքի «Զանգեզուրի հատուածը» ներկայումս չի դիտարկւում: Այդ մասին յայտարարել է Ռուսաստանի փոխվարչապետ Օվերչուկը: Նրա գնահատմամբ՝ դա պայմանաւորուած է Հայաստանի «յստակ դիրքորոշման բացակայութեամբ»: Հայաստանի դիրքորոշումը յստակ է եւ հնչեցուել է բազմիցս. հաղորդակցութիւնները բացւում են փոխադարձութեան, դրանց նկատմամբ պետութիւնների ինքնիշխանութեան եւ գործարկումն ազգային օրէնսդրութեամբ կարգաւորելու սկզբունքների հիման վրայ:

Ընդհակառակը, յստակ չէ Ռուսաստանի՝ որպէս Նոյեմբերի 9-ի Յայտարարութեան կողմերից մէկի, դիրքորոշումը. Մոսկուան Հայաստանի միջազգային իրաւունքից եւ հանրաճանաչ պրակտիկայից բխող տեսակէ՞տն է պաշտպանում, թէ՞ ադրբեջանական արտատարածքային միջանցքի տարբերակը՝ իր հսկողութեամբ: Դա է սկզբունքային եւ աշխարհաքաղաքական նշանակութեան տարընթերցման պատճառը: Բայց Օվերչուկի յայտարարութիւնը գոնէ քաղաքական-հանրային լայն շրջանակների համար մի կարեւորագոյն «նրբութիւն» է բացում: Ադրբեջան-Նախիջեւան հաղորդակցութիւնը նա անուանում է «Հիւսիս-հարաւ միջազգային տրանսպորտային միջանցքի հատուած»:

Խօսքն, ամենայն հաւանականութեամբ, Ռուսաստան-Իրան-Պարսից Ծոց հաղորդակցութեան մասին է: Մինչեւ բոլորովին վերջերս այդ նախագծի երեք ուղղութիւն էր նշւում՝ արեւելեան, կենտրոնական եւ արեւմտեան: Առաջինը ենթադրում է Ռուսաստան-Ղազախըստան-Թուրքմենստան-Իրան երկաթուղային հաղորդակցութիւն, երկրորդը՝ Կասպից ծովով նաւարկութեան ընդլայնում, երրորդը՝ Մախաչկալա-Բաքու-ադրբեջանական Աստարա-իրանական Աստարա-Ռեշտ դարձեալ երկաթուղային կապ: Օվերչուկի խօսքերից հետեւում է, որ Ռուսաստանը եւ Ադրբեջանը ունեն նաեւ հաղորդակցութեան չորրորդ տարբերակը՝ Մախաչկալա-Բաքու-Հորադիզ-Ջուլֆա, որը կարող անցնել կամ Սիւնիքով, կամ՝ Իրանի տարածքով:

Սիւնիքի դէպքում երկաթուղու հատուածի երկարութիւնը՝ 42, իսկ Իրանի տարածքում 50 կմ. է: Գումարած, որ հարկ կը լինի կառուցել երկու կամուրջ:

Ռուսաստանը եւ Ադրբեջանը օրերս քննարկել են տրանսպորտային միջանցքի սահմանային եւ մաքսային կարգաւորումների հարցը: Ըստ երեւոյթին, կը համաձայնեցուի ինչ-որ պարզեցուած ընթացակարգ, անկնարկւում է մաքսային ձեւակերպումները փոխադարձաբար ճանաչելու մասին: Այսինքն, եթէ բեռները Ռուսաստանի մաքսային ծառայութիւնների կողմից արտօնուած են, ապա Ադրբեջանի հետ սահմանին միայն փաստաթղթային ստուգման կ'ենթարկուեն եւ՝ ընդհակառակը: Փաստացի Ռուսաստանի փոխվարչապետը նկատել է տալիս, որ տրանսպորտային միջանցքի «Զանգեզուրի հատուածում» էլ պէտք է նոյն սկզբունքը գործի: Եթէ Հայաստանը դրան չհամաձայնի, ապա երթուղին կ'անցնի Իրանի տարածքով:

Նոյնը Բաքուի ներկայացուցիչներն են ասում: Արտաքին քաղաքական հարցերով Իլհամ Ալիեւի օգնական Հաջիեւը նոյնիսկ ասել է, որ «Զանգեզուրի միջանցքն» Ադրբեջանի համար այլեւս գրաւիչ չէ: Հոկտեմբերի 16-ին, սակայն, Իլհամ Ալիեւը ֆիզուլիցիների հետ հանդիպմանը վստահեցրել է, որ իրենք «Զանգեզուր կը վերադառնան ոչ թէ տանկերով, այլ՝ աւտոմեքենաներով»: Չափազանց կարեւոր է Թուրքիայի մօտեցումը: Եթէ Ռուսաստանի համար «Զանգեզուրի հատուածը» Հիւսիս-հարաւ տրանսպորտային միջանցքի մաս է, ապա Թուրքիան այն դիտարկում է արեւելք-արեւմուտք աշխարհաքաղաքական առանցքի կտրուածքով:

Անկարան կը համաձայնի՞ Կենտրոնական Ասիայի հետ իր ռազմավարական նշանակութեան հաղորդակցու- ⇘ 4

# ՔԿ-Ն ԱՄՓՈՓՈՒՄ Է ԱՐՑԱԽԻ ՎԵՐՋԻՆ ՕՐԵՐԻ ԶՈՀԵՐԻ ՄԻՋԱՆԿԵԱԼ ՏՈՒԵԱԼՆԵՐԸ

1 ⇘

է համարւում: Ըստ նրա՝ մէկօրեայ պատերազմում զոհերի թիւը գերազանցում է 200-ը, սպանուել է 9 քաղաքացիական անձ, նրանցից 3-ը՝ երեխաներ: Վիրաւորուել է 231 զինծառայող ու 80 խաղաղ բնակիչ: Ադրբեջանցի զինուորականները 14 հոգու խոշտանգել են:

Աւելի վաղ՝ Հոկտեմբերի 5-ին, ԼՂ պետնախարարի նախկին խորհրդական Արտակ Բեգլարեանը գրել էր 220-ից աւել հաստատուած զոհերի մասին:

Հոկտեմբերի 16-ին ԼՂ ՆԳՆ խօսնակ Յունան Թադեւոսեանը տեղեկացրել էր՝ Սեպտեմբերի 25-ին Ստեփանակերտի մերձակայքում տեղի ունեցած բենզինի պայթիւնի հետեւանքով հաստատուած 220 մահուան դէպք կայ, նրանցից մօտ 150-ը անճանաչելի են: Կայ նաեւ 50-ից աւելի անհետ կորած: «Աճիւնները եւ մասունքները պայթիւնի տարածքից հանուել եւ տեղափոխուել են Երեւանի Դատաբժշկական փորձաքննութեան կենտրոն՝ ԴՆԹ թեստի միջոցով նոյնականացում իրականացնելու համար»:

Հոկտեմբերի 1-ի տուեալներով, Հայաստանի տարբեր հիւանդանոցներում բուժում է ստանում 363 բուժառու, 214-ը՝ պայթիւնից ստացուած վնասուածքների պատճառով, 114-ը ռազմական գործողութիւնների հետեւանքով վիրաւորուածներ. «Մեծ թիւ են կազմում ծանր կամ ծայրայեղ ծանր վիճակում գտնուող պացիենտները, որոնց մէջ կան նաեւ երեխաներ»:

Առողջապահութեան նախարար Անահիտ Աւանեսեանը Հոկտեմբերի 20-ին տեղեկացրել էր՝ Արցախում պայթիւնի ու ադրբեջանական ռազմական ագրեսիայի հետեւանքով զոհուած 40 մարդու աճիւն է նոյնականացուել, գործընթացը դեռ շարունակւում է:

ՋԱՀԱԿԻՐ

ԳԱՀԻՐԷ

## ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Գահիրէի եւ անոր պատկանող շրջաններուն մէջ բնակող եւ ընտրական իրաւունք ունեցող մեր ազգայիններուն ուշադրութեան կը յանձնենք հետեւեալ կէտերը.

Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւնները (24 հոգի) տեղի պիտի ունենան՝

**Ուրբաթ, 10 Նոյեմբեր 2023-ին, Ազգային Առաջնորդարանին մէջ,**

**Առաւօտեան ժամը 8:30-էն մինչեւ երեկոյեան ժամը 5:00:**

Ընտրութեան օրը ամէն ազգային կը ներկայացնէ իր ինքնութեան քարտին բնօրինակը ( Պըթաքա շախսէյա ) եւ կը ստանայ իր ընտրական քարտը:

Ինքնութեան քարտի լուսատիպ պատճէններով ներկայացողները պիտի չկարենան Առաջնորդարանի բակ մտնել, ուստի պիտի կորսնցնեն ընտրելու իրենց իրաւունքը:

Ընտրական քարտ ստացած ազգայինը, ընտրութիւններու տոմարին մէջ ստորագրելէ ետք կը ստանայ պարապ քուէաթուղթ եւ պահարան, ապա կ՚առանձնանայ ու քուէաթուղթին մէջ կը գրէ իր նախընտրած թեկնածուին անունը եւ մականունը (հայերէն, արաբերէն կամ անգլերէն):

Քուէները կը տրուին ընտրելու իրաւունք ունեցող եւ 30 (երեսուն) տարին լրացած 24 (քսանչորս) ազգայիններու միայն:

24 ընտրելիներէն աւելի անունները կը ջնջուին քուէաթուղթէն, եւ յաջորդական կարգով նկատի կ՚առնուին միայն պահանջուած թիւով անունները:

Մէկէ աւելի լրացուած քուէաթուղթ պարունակող պահարանները եւ քուէաթուղթերը ամբողջութեամբ անվաւեր կը համարուին:

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՕՎԵՐՉՈՒԿԸ ԲԱՑԱՅԱՅՏԵՑ «ԶԱՆԳԵԶՈՒՐԻ ՄԻՋԱՆՑՔԻ» ԳԱՂՏՆԻՔԸ

3

թիւնը միջնորդաւորել Իրանի ներգրաւուածութեամբ:

Իրանի տարածքով Ադրբէջան-Նախիջեւան հաղորդակցութիւնը նաեւ Ռուսաստանի ազդեցութիւնն է սահմանափակում: Չէ՞ որ Մոսկուան Նոյեմբերի 9-ի Յայտարարութեան 9-րդ կէտով ունի Ադրբէջանի արեւմտեան շրջաններ-Նախիջեւան հաղորդուղիների հսկողութեան երաշխիք: Օվերչուկի բացայայտումն այս իմաստով աւելի շատ նման է ոչ թէ խորհրդապահական քննարկումների գաղտնազերծման, այլ՝ բաց հաւաստիացման, որ «Զանգեզուրի հատուածն» ամէնից առաջ Ռուսաստանի խնդիրն է, եւ Մոսկուան է ակնկալում, որ Հայաստանը «դիրքորոշում յստակեցնի»: Հայաստանը շրջանցող երկաթգծի եւ աւտոմոբիլային ճանապարհի կառուցման շուրջ Մոսկուայի եւ Բաքուի տեղեկատուական հոսքերի ունիսոնը լրջօրէն մտահոգուելու տեղիք է տալիս:

## ՌՈՒՍԱՍՏԱՆ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԳԱՂՈՒԹԱՏԻՐԱԿԱՆ ՆԿՐՏՈՒՄՆԵՐԸ

1

թեան փոփոխութիւններով, Ռուսաստան կը շարունակէ մնալ երկիրի ուժանիւթային մատակարարութեան 80%-ի աղբիւրը» (էջ 94):

**Պանքային համակարգ**

Ռուսաստանը տիրապետութիւն ունի Հայաստանի պանքային համակարգի մօտաւորապէս կէսին վրայ.

«2005 Ապրիլին, իր պաշտօնավարութեան աւարտին տուած վերջին մամուլի ասուլիսին, Հայաստանի մէջ Ռուսաստանի դեսպան Անաթոլի Տրիւքով կը նշէ ռուսական դրամագլուխին մեծ ներհոսքը Հայաստան, ըսելով որ Ռուսաստանը Հայաստանի անկախութենէն ի վեր ներդրած է աւելի քան 300 միլիոն ամերիկեան տոլլար: Տրիւքով կը բացատրէ՝ որ Ռուսաստանի դրամագլուխը կանգնած է Հայաստանի 20 պանքաներէն 9-ի ետեւը եւ կազմած է Հայաստանի պանքային համակարգի ընդհանուր կանոնադրական դրամագլուխի պաշարին մէկ երրորդը: Տրիւքովի յիշատակած ներդրումներուն նշանակալի մասը իրականացուած է ռուսական ընկերութիւններու կողմէ, որոնք մեծ մասամբ պետական սեփականութիւններ են եւ խորհուրդի կազմին մէջ ունին ռուս կառավարութեան անդամներ» (էջ 93-94):

Իսկ 2006-ին, «Ռուսաստանի պետական սեփականութիւնը հանդիսացող Արտաքին Առեւտուրի Պանքան (Վնեշտորգբանկ) ձեռք բերաւ Հայխնայբանկի բաժնետոմսերուն 70%-ը, որ դարձաւ Վնեշտորգբանկ Հայաստան» (էջ 93):

**Հեռահաղորդակցութիւն**

Տիրապետութիւն անշարժ ու բջիջային հեռախօսներուն եւ համացանցին վրայ.

«2006-ին ռուսական հսկայ Վիմփելքոմը գնեց Արմենթէլ հեռահաղորդակցութեան ընկերութիւնը իր յոյն սեփականատէր Hellenic Telecommunications-էն: Այսպէս, ան վերահսկողութիւն ձեռք բերաւ Հայաստանի անշարժ հեռախօսի ցանցին վրայ, ինչպէս նաեւ բջիջային ցանցի 40–50%-ին: Ռուսական Comstar Telesystems-ը ձեռք բերաւ Հայաստանի CallNet հեռահաղորդակցութեան ընկերութեան եւ անոր դուստր ընկերութեան՝ համացանցի ծառայութիւն մատուցանող Cornet-ի վրայ, Հայաստանի երկրորդ ամենամեծ հեռահաղորդակցային խումբին» (էջ 93):

**ԵԱՏՄ**

Ճէյմս Քոյլ կը նկարագրէ՝ թէ ինչպէս մէկ ժամուայ հանդիպումով Հայաստան կը ստիպուի մտնել Եւրասիական Տնտեսական Միութիւն (ԵԱՏՄ).

«Քրեմլինի հանդէպ Հայաստանի տնտեսական լրիւ ենթարկուածութեան վերջին ցուցանիշն է այն փաստը՝ թէ ինչպէս Հայաստանը միացաւ Եւրասիական Տնտեսական Միութեան (ԵԱՏՄ): 2013 Յուլիսին, Եւրամիութեան (ԵՄ) հետ Երեւանը աւարտեց Խոր եւ Համապարփակ Ազատ Առեւտուրի Համաձայնագիրի (DCFTA) վերաբերեալ թեքնիքական խօսակցութիւնները: Բացի ազատ առեւտուրի համաձայնագիրէն, Հայաստանը կ՚աշխատէր միաւորումի համաձայնագիրի (association agreement) ստորագրութեան ուղղութեամբ, համագործակցութեան նախնական համաձայնութիւն մը՝ որ կը դիտուէր իբրեւ առաջին քայլ դէպի քաղաքական ամբողջարկում (integration) ԵՄ-ի հետ:

«Ուքրաինան եւս կ՚աշխատէր միաւորումի համաձայնագիրի եւ DCFTA-ի վրայ: Սակայն Օգոստոս 14-ին ռուս պաշտօնատարները յայտարարեցին մաքսային ստուգումներ ուքրաինական ապրանքներուն համար: Անոնք աւելցուցին՝ որ նման արգելքները կրնան տեւական դառնալ, եթէ Ուքրաինա ստորագրէ համաձայնութիւնը ԵՄ-ի հետ: Թէեւ ուղղակի սպառնալիքը ուղղուած էր Ուքրաինային, Հայաստանը եւս կրնար տեսնել ռուսական հնարաւոր վրիժառութիւնը եւրոպացիներուն հետ յարաբերութիւններու խիստ սերտացումի պարագային: Երկու շաբաթ ետք, Փութին խնդրեց հանդիպիլ նախագահ Սարգսեանին Մոսկուայի մէջ: Անյայտ կը մնայ՝ թէ ճշգրիտ ինչ խօսուած է հանդիպումին ընթացքին, բայց հանդիպումէն անմիջապէս ետք Սարգսեան յայտարարեց Հայաստանի միացումը ԵԱՏՄ-ին: Խուսափելու համար ասոր իբր հետեւանք ակնկալուող գիներու բարձրացումի անմիջական ազդեցութենէն, կառավարութիւնը ԵԱՏՄ-ի հետ կը բանակցի սկզբնական յաւելեալ շրջանի համար, որ սկսաւ 2015-ին եւ պիտի վերջանայ 2022-ին: Երեւանի համար գիներու բարձրացումէն աւելի դժուար հարց մըն էր Լեռնային Ղարաբաղը՝ որ չէր կրնար մտնել ԵԱՏՄ, քանի որ ո՛չ Հայաստանը եւ ոչ ալ անդամ երկիրները ճանչցած էին Լեռնային Ղարաբաղը իբրեւ պետութիւն:

«Նախորդ երեք տարիներու Հայաստանի կառավարութեան պաշտօնատարներուն բոլոր յայտարարութիւնները, սկսելով նախագահ Սարգսեանէն մինչեւ վարչապետ Տիգրան Սարգսեան, ինչպէս նաեւ Արտաքին Գործոց Նախարարութեան բազմաթիւ յայտարարութիւնները կը մատնանշէին Հայաստանի կողմէ ԵՄ միաւորումի համաձայնագիրի նախաստորագրումը: Աւելին. այս ընթացքին հայ օրէնսդիրները մշակեցին եւ ընդունեցին եւրոպական ֆինանսաւորումով բարեփոխումներ՝ ձգտելով բարձրացնել համապատասխանութիւնը ԵՄ միաւորումի համաձայնագիրի պահանջներուն հետ, բարեփոխումներ՝ որոնց ձեռնարկութիւնը սկսած էր արդէն: Նախագահ Փութինի հետ մէկ ժամուայ հանդիպումէ ետք Եւրոպայի հետ յարաբերութիւններէն հրաժարելու որոշումը անակնկալ մը եղաւ բոլորի համար, նոյնիսկ Սարգսեանի ամենամերձաւոր շրջանակին: Ըստ *Economist*-ին, ԵԱՏՄ միանալու որոշումը կայացած է ճնշումի տակ, քանի որ Ռուսաստան սպառնացած է վերանայիլ իր դաշինքը, եթէ Հայաստանը ստորագրէ Եւրամիութեան հետ միաւորումի համաձայնագիրը» (էջ 94-96):

**Վերահսկողութիւն Հայաստան-Իրան տնտեսական յարաբերութիւններուն վրայ**

Ռուսաստան դէմ կեցած է Հայաստան-Իրան տնտեսական յարաբերութիւններու սերտացումին.

«2005-ին առաջարկ կար Հայաստանը գործածել իբրեւ տարանցիկ երկիր՝ իրանական բնական կազը Վրաստանի եւ Ուքրաինայի տարածքով Եւրոպա փոխադրելու համար: Քրեմլինի ծանր ճնշումին տակ, Հայաստանի կառավարութիւնը մերժեց առաջարկը: Վարչապետ Անդրանիկ Մարգարեան բացայայտօրէն խոստովանեցաւ՝ որ կառավարութիւնը չի կրնար անտեսել Ռուսաստանի շահերը: Վստահ ըլլալու համար որ Իրան-Հայաստանի խողովակը չգործածուի տարանցիկ կազի համար, տրամագիծը նախատեսուած 142 սանթիմեթրէն նուազեցաւ 71-ի: Կառուցումը կը վերջանայ 2007-ին, որմէ ետք Հայաստան իր մասնաբաժինը կը ծախէ Ռուսաստանին, յաւելեալ յուսախաբութիւն պատճառելով Իրանին: Իբրեւ արդիւնք, խողովակին միայն 35%-ը գործածուեցաւ Իրանէն սահմանափակ քանակութեամբ կազի մատակարարութեան համար՝ փոխան ելեկտրականութեան: 2013-ին Հայաստանի կառավարութիւնը դարձեալ մերժեց Ռուսաստանէն աւելի աժան կազ ստանալու Իրանի առաջարկը եւ ստորագրեց ուրիշ համաձայնագիր մը՝ որ կ՚երաշխաւորէ Կազփրոմի մենաշնորհային դիրքը հայկական շուկային վրայ 30 տարուայ համար: 2015 Յունուարին, Իրանի արտաքին գործոց նախարար Մոհամմատ Ճաւատ Զարիֆ յայտարարեց՝ որ Իրան պատրաստ է ներդրումներ կատարել կառուցելու համար աւելի լայն տրամագիծով նոր կազի խողովակ, բայց հայերը չտուին յստակ պատասխան» (էջ 101-102):

Հայաստան-Իրան տնտեսական լուրջ յարաբերութիւնները թոյլատրելի են՝ եթէ Ռուսաստան ունենայ անմիջական շահոյթի եւ վերահսկողութեան իր բաժինը.

«Հայաստանը շարունակեց խորացնել իր տնտեսական յարաբերութիւնները Իրանի հետ, 2017 Դեկտեմբերին ազատ տնտեսական գօտի բանալով Մեղրիի մէջ, Իրանի սահմանին: Գործարարներ, ներառեալ իրանցի ներդրողներ, զերծ էին եկամուտի տուրքերէն, աւելցուած արժէքով տուրքերէն եւ մաքսային սակերէն: Տնտեսական գօտին բացուեցաւ Հայաստանի հովանաւոր Ռուսաստանի հաւանութեամբ: Երկու ամիս առաջ, Ռուսաստանի վարչապետ Տմիթրի Մետվետեւ ըսած էր՝ որ Ռուսաստան կը փափաքի մասնակցութիւն ունենալ ազատ առեւտուրի գօտիին: «Մենք լաւ յարաբերութիւններ ունինք Իրանի հետ», ըսաւ ան: «Հետեւաբար, մենք պատրաստ ենք ներգրաւուելու եթէ ԵԱՏՄ-ի մեր բարեկամներն ու գործընկերները ազատ տնտեսական գօտի ստեղծեն Իրանի հետ, այնտեղ հրաւիրելով նաեւ ռուսական ձեռնարկութիւնները» (էջ 103):

Ա.

(Շար. 1/2)

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.: (202) 24530327, Fax: (202) 24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ- ԹԻՒ 1953 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ՆՈՅԵՄԲԵՐ 2023 ՀԱՏԸ ՋԵՌ.ՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٥٣ الخميس ٢٣ نوفمبر ٢٠٢٣


## ՌՈՒՍԱՍՏԱՆ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԳԱՂՈՒԹԱՏԻՐԱԿԱՆ ՆԿՐՏՈՒՄՆԵՐԸ

**Տնտեսական պատիժ**

Տնտեսական ոլորտը տեղի կ՚ունենար, եւ կը շարունակուի տեղի ունենալ, երկկողմանի փտածութեան (corruption) միջավայրի մէջ: Թաւշեայ Յեղափոխութեան խոստումներէն մէկն էր պայքարը փտածութեան դէմ: Ռուսաստան ազդանշան ղրկեց Փաշինեանին՝ չմօտենալ ռուսական փտածութեան.

«Վարչապետ Փաշինեանի նախաձեռնած հակափտածութեան արշաւի ծիրէն ներս, Հայաստանի Պետական Եկամուտներու Կոմիտէն կը ստուգէ Կազփրոմ Արմենիան՝ Ռուսաստանի Կազփրոմի դուստր ընկերութիւնը: Ստուգումը կը բացայայտէ բազմաթիւ խախտումներ, որոնք վերջապէս կը դրդեն դատախազներուն տուրքերէ խուսափելու մեղադրանք առաջադրել ռուսական կազային հսկային դէմ: Որմէ ետք Ռուսաստանը կ՚աւելցնէ բնական կազին գինը մէկ խորանարդ մեթրի համար 150 տոլարէն (2018 թուական) 165 տոլարի (2019 թուական), յուսախաբութեան մատնելով Հայաստանի պաշտօնատարները, որոնք նախապէս յոյս յայտնած էին որ Ռուսաստանը իրականութեան մէջ կը նուազեցնէ բնական կազին արժէքը» (էջ 100):

**ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹԻՒՆԸ՝ Ի ՆՊԱՍՏ ՌՈՒՍԱԿԱՆ ԶԻՆԱՐՏԱԴՐՈՒԹԵԱՆ**

Հիմնուելով Ազգային եւ Միջազգային Հետազօտութիւններու Հայկական Կեդրոնի տնօրէն Սամուէլ Սարգսեանի կարծիքին վրայ, Ճէյմս Քոյլ համոզուած է՝ որ «Ղարաբաղի հարցով Մոսկուան երկու Հարաւ Կովկասեան պետութիւնները կը պահէր հակամարտային փականքի տակ, որպէսզի երկուքն ալ կախեալ ըլլային ռուսական զէնքէ» եւ ան «բաւական գոհ էր իր դերակատարութենէն՝ իբրեւ ղարաբաղեան հակամարտութեան երկու կողմերուն գլխաւոր զէնք մատակարարող» (էջ 63):

Ռուսաստան բաւական օգտուեցաւ հակամարտութենէն. «Ռուսական ռազմարդիւնաբերութիւնը հսկայական օգուտներ քաղեց ընթացող տագնապէն: Բացի 1990-ականներուն միլիառաւոր տոլարներու անօրինական զէնքերու փոխադրութենէն դէպի Հայաստան, Ռուսաստան 300 միլիոն տոլարի վարկ տուաւ Երեւանին ռուսական զէնք գնելու համար, եւ միլիառաւոր տոլարներու զէնք վաճառեց Ազրպէյճանին: Ռազմական հակամարտութեան պատճառով նուազեցաւ բնակչութեան քանակը այն տարածքին՝ զոր Հայաստան կը պնդէր փրկած ըլլալ, եւ պատճառ հանդիսացաւ որ Ազրպէյճան կորսնցնէ իշխանութիւնը իր ազգային տարածքի 16–20%-ին վրայ: Միակ օգտուող երկիրը եղաւ Ռուսաստանի Դաշնութիւնը» (էջ 64):

Այսօր բաւական տարածուած տեսակէտ մըն է՝ որ Ռուսաստանի ազրպէյճանամէտ քաղաքականութիւնը սկսաւ 2022-ի ռուս-ուքրաինական պատերազմին պատճառով, Ռուսաստանի դէմ Արեւմուտքի պարտադրած պատժամիջոցներուն հետեւանքով: Ճէյմս Քոյլ կ՚ուզէ ցոյց տալ, որ Պաքուի հետ դաշնակցութիւնը սկսած է շատ աւելի կանուխ՝ 2015-ին, երբ Մոսկուա սկսաւ իր ռազմական վաճառքը Ազրպէյճանին: Ան կը մէջբերէ Սամուէլ Սարգսեանի կարծիքը. «Ռուսաստան կը փորձէ իր լաւագոյնը ընել՝ վստահեցնելու համար թէ զէնքերու վաճառքը [Ազրպէյճանին] ընդամէնը պիզնէս է: Բայց վերջապէս յստակ դարձաւ՝ որ ասիկա Ռուսաստանի նոր ռազմավարութիւնն է», այսինքն, սկիզբն է աւելի ընդարձակ ռազմաքաղաքական դաշնակցութեան Պաքուի հետ (էջ 63):

**ՍՊԱՌՆԱԼԻՔ ՏՆՏԵՍՈՒԹԵԱՆ ՄԻՋՈՑՈՎ**

Ճէյմս Քոյլի տուեալներէն կարելի է դիւրութեամբ հետեւցնել՝ որ Ռուսաստան որեւէ ժամանակ կրնայ անդամալոյծ ընել Հայաստանը: Հազիւ թէ ան դիմէ ամբողջական խաւարումի, վերջնականապէս կորսնցնելով Հայաստանը, բայց բազմաթիւ առումներով կրնայ բանեցնել լուրջ տնտեսական ճնշումներ:

**ԱՐՏԱՀԱՆՈՒՄ**

Քոյլի գիրքէն անդին, պիտի փափաքէի աւելցնել հակիրճ դիտարկումներ:

Հայաստանի արտահանումներուն աւելի քան 50%-ը կ՚երթայ Ռուսաստան: Եւ այս արտահանումին շատ կարեւոր մասը կ՚անցնի Լարսով՝ Հայաստանէն Ռուսաստան հասնող միակ ճանապարհը: Կը բաւէ փակել Լարսը, եւ Հայաստանի տասնահազար քաղաքացիներ կը դառնան անգործ:

**ԼՐԱՏՈՒԱՄԻՋՈՑ**

Տնտեսականէն զատ, Ռուսաստան կ՚օգտագործէ լրատուային միջոցը: Պէտք է գիտնալ՝ որ ռուսական լրատուամիջոցը ոչ մէկ ազդեցութիւն ունի Արեւմուտքի մէջ, բայց տիրապետող է սահմանափակ երկիրներու մէջ, որոնցմէ մէկն է Հայաստանը: Ասկէ զատ, պարզապէս անհասկնալի է, թէ ինչպէս Ռուսաստանին պատկանող հեռատեսիլի կայաններ կը գործեն Հայաստանի հանրային բազմակայանէն (մուլտիպլեքս) ներս եւ պետական արտօնագրութեամբ (license) կը պատկերասփռեն Հայաստանէն: Անոնք կարեւոր ազդեցութիւն ունին Հայաստանի հանրային կարծիքը ձեւաւորելու մէջ: Արդարեւ, տնտեսականէն առաջ Ռուսաստան սկսած է գործածել լրատուային միջոցը՝ ուղղակիօրէն պայքարելու ներկայ իշխանութիւններուն դէմ, յատուկ եւ նախապատրաստուած թիրախաւորումներով վարչապետի անձին դէմ, ժողովրդավարութեան դէմ, ինչպէս նաեւ տարածելով կեղծ լուրեր (fake news):

**ՅԵՏԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹԻՒՆ ԱՌԱՆՑ ԱՊԱԳԱՂՈՒԹԱՑՈՒՄԻ**

Ռուսաստանի գաղութատիրական-իմփերիալիսթական նկրտումները Հայաստանի նկատմամբ նոր երեւոյթ չէ, Ռուսական Կայսրութիւնը ըլլալով դասական օրինակ մը: Որմէ ետք, գաղութատիրութիւն՝ իբրեւ Խորհրդային Միութիւն, յետգաղութատիրական (postcolonial) վիճակ՝ իբրեւ յետխորհրդային պետութիւններ: Նոյնականութիւններ չեն գաղութատի-

↳ 4

**ԳԱՀԻՐԷ**

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք, թէ Ուրբաթ, 10 Նոյեմբեր 2023-ին տեղի ունեցան Գահիրէի Պատկառելի Թեմական Ժողովի ամբողջական ընտրութիւնները: 531 ընտրելու իրաւունք ունեցողներէն մասնակցած են 197 հոգի, որոնց տուած ամենաբարձր քուէները ստացած են հետեւեալ 24 անձերը.

| | |
|---|---|
| Սիմոնեան Ճորճ Նուպար | 176 |
| Պըլըքտանեան Սարօ Օննիկ | 162 |
| Քէօհնէլեան Լորիս Վրէժ | 161 |
| Պալաեան Մարտիրոս Նուպար | 160 |
| Կրպոյեան Գառնիկ Յակոբ | 159 |
| Ջամքէրթէնեան Սիմոն Սարգիս | 159 |
| Դելփեան Լեւոն Վահագն | 152 |
| Կէվրէկեան Վահրամ Ռուբէն | 146 |
| Տեփոյեան Սիմոն Ժիրայր | 144 |
| Բլատեան Վահէ Լեւոն | 137 |
| Վարժապետեան Կարօ Վահէ | 135 |
| Գազանճեան Գէորգ Ուանիս | 131 |
| Քիւրքճեան Դանիէլ Նուրհան | 127 |
| Երզնկացեան Գէորգ Անդրանիկ | 126 |
| Կապէյեան Շանթ Արթին | 123 |
| Կարսեան Գեղամ Զօհրապ | 122 |
| Գազանճեան Վարդան Սեպուհ | 120 |
| Թուլումպաճեան Կարէն Պերճ | 117 |
| Եանըգեան Կարէն Սարգիս | 116 |
| Մազլումեան Արմէն Գէորգ | 115 |
| Գալընեան Խորէն Ալպէռ | 115 |
| Զաքարեան Այգ Թովմաս | 114 |
| Պալթայեան Արմէն Մարտիկ | 108 |
| Գույումճեան Գէորգ Հայկ | 104 |

**ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ**

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
## ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ՊԱՏԿԱՌԵԼԻ ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ Բ. ՆԻՍՏ

Այսու կը տեղեկացնենք, թէ Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովը իր Բ. նիստը գումարեց, Կիրակի 12 Նոյեմբեր 2023-ին, երեկոյեան ժամը 7:00-ին, Ազգային Առաջնորդարանին մէջ, նախագահութեամբ Եգիպտոսի Հայոց Թեմի Բարեխնամ Առաջնորդ Գերաշնորհ Տ. Աշոտ Եպս. Մնացականեանի եւ ներկայութեամբ 18 երեսփոխաններու:

Ժողովը բացուեցաւ Տէրունական Աղօթքով, որմէ ետք Սրբազան Հայրը «Հոգւոց» արտասանեց Թեմական Ժողովի նորոգ հանգուցեալ Փոխ-Ատենապետ Ողբ. Տոկտ.-Բրօֆ.Պերճ Ճէպէճեանի հոգւոյն ի հանգիստ:

Այնուհետեւ, ըստ նշուած օրակարգի, տեղի ունեցաւ Քաղաքական Ժողովի ընտրութիւնը, որմէ ետք նորընտիր անդամները իրենց առաջին նիստը գումարեցին Առաջնորդ Սրբազան Հօր նախագահութեամբ եւ ընտրեցին դիւանը.

| | |
|---|---|
| Տիար Ալեքսանեան Տիգրան | Ատենապետ |
| Տիար Մարտիկեան Հրայր | Փոխ-Ատենապետ |
| Տիար Ճուճուեան Կարպիս | Ատենադպիր |
| Տիար Կանիմեան Կարէն- | Գանձապահ |

Խորհրդականներ՝

Տոքթ. Արթինեան Վահէ
Տիար Խանցեան Արթին
Տիար ԽանցեանԿարօ

Ժողովը փակուեցաւ Սրբազան Հօր «Պահպանիչ» աղօթքով:

Նորընտիր Քաղաքական Ժողովը իր գործունէութիւնը պիտի սկսի 24 Նոյեմբեր 2023-ին:

**ԴԻՒԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ**
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ**

# ԽՄԲԱՎԱՐ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԸ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Երկրորդ համերգ**

1952 Դեկտեմբեր 7, Մոհամմատ Ալի թատերասրահ, Համազգային Երգչախումբի (75 հոգի) երկրորդ համերգ, ուղեկցութեամբ նուագախումբի (20 հոգի):

Յայտագիր.

Ա. ՄԱՍ

Կոմիտաս, *Տէր, կեցո՛ դու զհայս*:

Մակար Եկմալեան, *Սուրբ, սուրբ*:

Կոմիտաս, *Գովեա Երուսաղէմ*:

Կոմիտաս, *Ձիգ տու, քաշի, Գարնան գութան, Անձրեւն եկաւ*:

Բարսեղ Կանաչեան, *Դալիլօ*:

Իփոլիթով-Իվանով, *Զէյթունցիներ*:

Կարպիս Ափրիկեան, *Հօյ նար*:

Բ. ՄԱՍ

*Նաշիտ ալ-Հորրէյա*:

Կոմիտաս, *Կալի երգ*:

Բարսեղ Կանաչեան, *Նանօր*:

Մեներգողներ՝ Սարգիս Սարգիսեան, Անահիտ Յոխիկեան, Vanda Protano, Ժանէթ Փափազեան, Ոսկի Պապիկեան, Տիկ. Մ. Թելլալեան, Պր. Մ. Շատախցեան(69):

Բիւզանդ Կռանեան խանդավառ է. «Համերգը իր ամբողջութեան մէջ յաղթանակ մըն էր հայկական երաժշտութեան եւ իր երիտասարդ ղեկավարին համար»(70):

*Լը Փրոկրէ էժիփսիէն* կ՛արձագանգէ. «Հայ ժողովրդական այս երգերը մասնաւոր կերպով յուզեցին ներկաները, որոնք ազդեցութեան տակն էին անոնցմէ բխող հայրենաբաղձութեան զգացումին»(71):

**Մասնակի մասնակցութիւններ**

1953 Մարտ 4, եգիպտական ռատիոյի Հայկական Ժամէն եւ ելոյթ կ՛ունենայ Համազգային Երգչախումբը(72):

1953 Յունիս 7, Աղեքսանդրիոյ Մոհամմատ Ալի թատրոն, Մայիս 28-ի տօնակատարութիւն: Համազգային Երգչախումբը կ՛երգէ՝ *Տէր կեցո*, *Այ աղջիկ*, *Ո՞րն է աշխարհ Հայաստան*, *Զէյթունցիներ*, *Էս գիշեր Համբարձում է*(73):

1953 Յուլիս 26, Մոհամմատ Ալի թատրոն, երեկոյթ նուիրուած Եգիպտոսի յեղափոխութեան Ա. տարելիցին, կազմակերպութեամբ Յառաջդիմասէրի: Համազգային Երգչախումբը եւ Նուագախումբը կը կատարեն՝ *Նաշիտ ալ-Թահրիր* (երգչախումբ, նուագախումբ), «Սուրերով պար» (նուագախումբ), *Դալիլօ* եւ այլ խմբերգներ(74): «Ափրիկեանը տաղանդաւոր է, որովհետեւ ներիմացումով օժտուած զգայուն մի երաժիշտ է: Նա ոչ թէ վարում է երգի ու նուագի խումբերը իր ճպոտի ցուցմունքներով, այլ իր ամբողջ մարմինով, որ վերածւում է զգայարանքների մի խուրձի: Ինք իր ամբողջ էութեամբ կարծես մի երգեհոն է, որից համասփռւում են դաշնաւորուած ձայները, որոնց արձագանգն է, որ լսում ենք երգչախումբին մէջ: Ափրիկեանը յաջողել է երգչախումբին հետ մի անբաժանելի ու ներդաշնակ միութիւն կազմել», կը գրէ Երուանդ Խաթանասեան(75):

**Հրաժեշտ եւ վերջին ելոյթ**

1953 Սեպտեմբեր 20, Աղեքսանդրիոյ Լիսէ Ֆրանսէի սրահ, հրաժեշտի հանդէս Ափրիկեանի Փարիզ մեկնումին առիթով, կազմակերպութեամբ Համազգայինի վարչութեան: Համազգային Երգչախումբը եւ Նուագախումբը կը կատարեն՝ *Շուշօ*, *Ես պուճուր*, *Կալի երգ* եւ *Նանօր*: Ի պատիւ Ափրիկեանին տեղի կ՛ունենան խօսք, պար եւ մեներգ(76):

## 5. ԱՅԼ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆՆԵՐ (1950-1953)

Մինչ Ափրիկեան կ՛արձանագրէր վերոյիշեալ յաջողութիւնները, ան կը շարունակէր իր ակումբային ելոյթները մեծ մասամբ իբրեւ դաշնակի նուագակցող, երբեմն նաեւ այլ մասնակցութիւններով:

1950 Փետրուար 18, Յառաջդիմասէր, Վարդանանցի նուիրուած հանդէս: Կը նուագակցի Նուպար Քիզիրեանի ջութակին եւ Ա. Ղազարեանի քլարինէթին, եւ Ժանէթ Փափազեանի հետ քառաձեռն դաշնակով կը նուագէ Մոցարթէն կտոր մը(77):

1950 Յուլիս 15, Յառաջդիմասէր, գրական երեկոյ նուիրուած Խաչատուր Աբովեանի: Կը նուագակցի Նուպար Քիրիզեանի ջութակին(78):

1950 Հոկտեմբեր 15, Աղեքսանդրիոյ Լիսէ Ֆրանսէի սրահ, յոբելինական հանդիսութիւն նուիրուած Ռեբեկա Զէյթունցեանի կրթական քառասնամեայ գործունէութեան, կազմակերպութեամբ Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեան: Կը նուագակցի Անահիտ Յոխիկեանի եւ Սարգիս Սարգիսեանի մեներգներուն(79):

1950 Նոյեմբեր 5, Լիսէ Ֆրանսէի սրահ, Հ.Յ.Դ. 60-ամեակի տօնակատարութիւն: Նուագակցութիւն պարիթոն Սարգիս Սարգիսեանի(80):

1951 Մայիս 26, Յառաջդիմասէր, վիճաբանական երեկոյ, նիւթ՝ Ֆեմինիզմ: Թեր կը խօսի՝ Ժագ Յովսէփեան, դէմ՝ ընկ. Ափրիկեան: Ահաւասիկ Ափրիկեանի կարծիքը կիներու մասին. «Կնոջ դերը պէտք է սահմանափակուի իր ընտանեկան յարկին մէջ, առտնին գործերով եւ զաւակներու խնամքով»(81):

1951 Յունիս 10, Յառաջդիմասէր, Մայիս 28-ի տօնակատարութիւն: Նուագակցութիւն Օր. Մ. Մինասեանի մեներգներուն եւ Պր. Զ. Եփրեմեանի ֆլիւթին(82):

1951 Յուլիս 28, Յառաջդիմասէր, Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան հանդէս: Կը նուագէ Եգիպտական քայլերգը եւ *Մշակ բանուորը*, եւ քառաձեռն դաշնակով ելոյթ կ՛ունենայ ընկերուհի Ն. Փիլիկեանի հետ(83):

1951 Նոյեմբեր 11, Լիսէ Ֆրանսէի սրահ, Հ. Յ. Դաշնակցութեան 61-րդ տարեդարձի տօնակատարութիւն: Կը նուագէ Արամ Խաչատրեանի Թոքաթան եւ կը նուագակցի Անահիտ Յոխիկեանի, Տիկ. Ա. Թարապուլսիի (Փափազեան) եւ Սարգիս Սարգիսեանի մեներգներուն(84):

1951 Դեկտեմբեր 15, Յառաջդիմասէր, երեկոյ նուիրուած Լեւոն Շանթի եւ Ռուբէն Տէր Մինասեանի: Կը նուագէ Շոփէնի մահերգը(85):

1952 Ապրիլ 24, Յառաջդիմասէր, նահատակաց սգատօն: Կը նուագակցի Սարգիս Սարգիսեանին(86):

1952 Օգոստոս 10, Կամքի դաշտ, Յառաջդիմասէրի տարեկան դաշտապարահանդէս ի նպաստ Ուսանողաց Ֆոնտին: Նուագակցութիւն Անայիս Ամիրիկեանի եւ Սարգիս Սարգիսեանի մեներգներուն(87):

1952 Հոկտեմբեր 15, Եգիպտոսի ռատիոկայանի Հայկական Ժամ, Սարգիս Սարգիսեան կը մեներգէ Ափրիկեանի *Լեգենդը*(88):

1952 Նոյեմբեր 2, Յառաջդիմասէր, Հ. Յ. Դաշնակցութեան 62-րդ տարեդարձի տօնակատարութիւն: Նուագակցութիւն Ոսկի Պապիկեանի եւ Սարգիս Սարգիսեանի մեներգներուն(89):

1953 Մայիս 30, Յառաջդիմասէր, Համազգայինի դասախօսութիւններէն մէկը: Տեղի կ՛ունենայ գեղարուեստական յայտագիր: Ափրիկեան եւ իր աշակերտուհի Նայիրի Փիլիկեան քառաձեռն դաշնակով կը նուագեն Մոցարթի Սոնաթ մը: Կը նուագակցի Վարդանոյշ Զատոյեանի մեներգին(90):

1953 Յունիս 7, Մոհամմատ Ալի թատրոն, Մայիս 28-ի տօնակատարութիւն: Նուագակցութիւն Սարգիս Սարգիսեանի եւ փոքրիկն Հրաչ Տէր Սարգիսեանի մեներգներուն(91):

(Շար. 5)

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

69. *Յուսաբեր*, 22 Նոյեմբեր 1952: *Արաքս*, 6 Դեկտեմբեր 1952: Թղթակից, «Հայ մշակոյթի եւ արուեստի պանծացման զոյգ ձեռնարկներ», *Յուսաբեր*, 10 Դեկտեմբեր 1952: Բիւզանդ Կռանեան, «Համազգայինի երգչախումբը», *Յուսաբեր*, 12 Դեկտեմբեր 1952: «Համազգայինի երգահանդէսը», *Արաքս*, 13 Դեկտեմբեր 1952: «Հայ ժողովրդական երգեր», *Յուսաբեր*, 13 Դեկտեմբեր 1952:

70. Բիւզանդ Կռանեան, նշ. յօդ.ը:

71. «Հայ ժողովրդական երգեր», *Յուսաբեր*, 13 Դեկտեմբեր 1952:

72. *Յուսաբեր*, 4 Մարտ 1953:

73. *Յուսաբեր*, 29 Մայիս 1953: Թղթակից, «Մայիս 28-ի տարեդարձը տօնակատարուեցաւ մեծ շուքով եւ ընդհ. խանդավառութեան մէջ», *Յուսաբեր*, 16 Յունիս 1953:

74. *Յուսաբեր*, 23 Յուլիս 1953: Ե[րուանդ] Խ[աթանասեան], «Յեղափոխութեան առաջին տարեդարձին փառահեղ տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 31 Յուլիս 1953, 1 Օգոստոս 1953:

75. Ե[րուանդ] Խ[աթանասեան], «Յեղափոխութեան առաջին տարեդարձին փառահեղ տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 1 Օգոստոս 1953:

76. *Յուսաբեր*, 19 Սեպտեմբեր 1953: Թղթակից, «Համազգայինի գեղարուեստական երեկոյթը», *Յուսաբեր*, 7 Հոկտեմբեր 1953:

77. Ա. Համար, «Վարդանանցի յիշատակի հանդէսը», *Յուսաբեր*, 21 Փետրուար 1950:

78. *Յուսաբեր*, 11 Յուլիս 1950: Ա. Համար, «Խաչատուր Աբովեանի նուիրուած երեկոյ», *Յուսաբեր*, 25 Յուլիս 1950:

79. *Արեւ*, 9 Հոկտեմբեր 1950: *Յուսաբեր*, 9 Հոկտեմբեր 1950: «Քառասնամեայ յոբելեան Տիկին Ռեբեկա Զէյթունցեանի», *Արաքս*, 21 Հոկտեմբեր 1950: Թղթակից, «Յոբելեանական մեծաշուք հանդիսութիւն Տիկ. Ռեբեկա Զէյթունցեանի», *Արեւ*, 23 Հոկտեմբեր 1950:

80. *Յուսաբեր*, 31 Հոկտեմբեր 1950: Թղթակից, «Հ.Յ.Դ. վաթսունամեակի փառահեղ տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 20 Նոյեմբեր 1950:

81. *Յուսաբեր*, 22 Մայիս 1951: Հ. Խ., «Գիշերային լսարան», *Յուսաբեր*, 3 Յուլիս 1951:

82. *Յուսաբեր*, 7 Յունիս 1951:

83. Տեղեկատու, «Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան ձեռնարկը», *Յուսաբեր*, 7 Օգոստոս 1951:

84. *Յուսաբեր*, 8 Նոյեմբեր 1951:

85. Թղթակից, «Լ. Շանթի եւ Ռուբէնի յիշատակին երեկոյ Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 18 Դեկտեմբեր 1951:

86. Թղթակից, «Ապրիլ 24-ի սգատօնը Յառաջդիմասէրի մէջ», *Յուսաբեր*, 2 Մայիս 1952:

87. Թղթակից, «Յառաջդիմասէրի մեծ դաշտապարահանդէսը ի նպաստ Ուսանողաց Ֆոնտին», *Յուսաբեր*, 27 Օգոստոս 1952:

88. «Հայկ. Ժամ պետական ռատիոկայանէն», *Յուսաբեր*, 14 Հոկտեմբեր 1952:

89. *Յուսաբեր*, 27 Հոկտեմբեր 1952: «Դաշնակցութեան 62-րդ տարեդարձի տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Յուսաբեր*, 19 Նոյեմբեր 1952:

90. Շ. Թ., «Համազգայինի դասախօսութիւնները», *Յուսաբեր*, 11 Յունիս 1953:

91. *Յուսաբեր*, 29 Մայիս 1953: Թղթակից, «Մայիս 28-ի տարեդարձը տօնակատարուեցաւ մեծ շուքով եւ ընդհ. խանդավառութեան մէջ», *Յուսաբեր*, 16 Յունիս 1953:

ԳԱՀԻՐԷ

# ՃԱՀԱԿԻՐԻ 56-ՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾԸ՝ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՆԿԱՐՉՈՒԹԵԱՆ ԵՒ ՔԱՆԴԱԿԱԳՐՈԾՈՒԹԵԱՆ

Լոյս տեսաւ *Ճահակիրի* ԾՁ. (56) Յաւելուածը՝ *Նիւթեր եգիպտահայ նկարչութեան եւ քանդակագործութեան մասին (մինչեւ 1970 թուական)* (242 էջ):



ՆԻՒԹԵՐ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՆԿԱՐՉՈՒԹԵԱՆ ԵՒ ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ
(մինչեւ 1970 թուական)

Պատրաստեց՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

ՃԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԾՁ. (56)

ԳԱՀԻՐԷ
2023

Գիրքին առաջին գլուխը կ՚ամփոփէ նախաեղեռնեան շրջանի եգիպտահայ նկարչութեան եւ քանդակագործութեան տուեալները եւ անձերը՝ Թէոդորոս Ռէսունցի (12-րդ դար), Եուհաննա Ալ-Արմանի (18-րդ դար), Յակոբ, Երուանդ Տէմիրճեան, Աննա Սքարչելլի, Արաքսի Առաքելեան, Տիրան Կարապետեան, Թաթէոս Պաղտասարեան, Ոսկան Շիմշիտեան, Շնորհք Երէցեան, ինչպէս նաեւ ցուցահանդէսներով հանդէս եկած այցելու նկարիչներ՝ Արսէն Շապանեան եւ Վարդան Մախոխեան: Ներշնչանքի եւ ուսումնասիրութեան համար Եգիպտոս այցելած են Յովհաննէս Այվազովսքի (1869), Արշակ Ֆէթվաճեան (1909) եւ Մարտիրոս Սարեան (1911), առանց մասնակցելու ցուցահանդէսներու կամ տեղական կեանքին:

Արդարեւ, եգիպտահայ գեղարուեստի վերելքային թափը սկսած է 1920-ականներուն, ինչպէս դիւրութեամբ կարելի է տեսնել ցուցահանդէսներու ժամանակագրութենէն՝ որ կը ներկայացնէ գիրքին երկրորդ գլուխը: Ան կը բովանդակէ 1902-1970-ին կատարուած 265 ցուցահանդէսներու տուեալներ, ներառնելով 158 անուններ:

20-րդ դարասկիզբէն եգիպտահայ նկարիչներ ունեցած են իրենց սեփական կալըրիները, որոնք գործած են տարբեր մակարդակներով եւ նպատակներով, կազմակերպելով եգիպտացի, եգիպտահայ, ինչպէս նաեւ օտար այցելու արուեստագէտներու գործերու ցուցադրութիւն եւ վաճառք: Կարելի է յիշել՝ Ոսկան Շիմշիտեան, Տիրան Կարապետեան - Շնորհք Երէցեան, Գրիգոր Մկրտիչեան (Կալըրի Կրեկուար), Տիգրան Անդրանիկեան (A.D.A.M.), Յովսէփ Եղոյեան (EGO ARTS) եւ Յասմիկ Պալլարեան (Կալըրի Ախնաթոն): Այս կալըրիներուն յատկացուած է երրորդ գլուխը:

1920-ականներու երկրորդ կէսէն սկսեալ եգիպտական եւ յատկապէս եգիպտահայ մամուլը կը բովանդակէ հայ նկարիչներու եւ քանդակագործներու գործերու սեւ-ճերմակ լուսանկարային վերարտադրութիւններ եւ մամուլի համար յատուկ պատրաստուած նկարներ ու երգիծանկարներ: Չորրորդ եւ վերջին գլուխը կը փորձէ մատենագրել զանոնք:

Գիրքը կարելի է կարդալ եւ բեռնել՝
https://archive.org/details/tchahagir-supplement-no.-56

ՀԱՅԱՍՏԱՆ

# ՀՌՈՄԻ ՍՏԱՏՈՒՏԻ ՎԱՒԵՐԱՑՈՒՄԸ ՑՈՅՑ Է ՏԱԼԻՍ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՒԱՏԱՐՄՈՒԹԻՒՆԸ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԻՐԱՒՈՒՆՔԻՆ. ԲՈՐԷԼ

Հռոմի ստատուտի վաւերացումը ցոյց է տալիս Հայաստանի հաւատարմութիւնը միջազգային իրաւունքին եւ մարդու իրաւունքների պաշտպանութեանը:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ այս մասին X-ի իր միկրոբլոգում գրել է Եւրոպական Միութեան արտաքին յարաբերութիւնների եւ անվտանգութեան քաղաքականութեան գերագոյն ներկայացուցիչ Ժոզէպ Բորէլը.

«Իւրաքանչիւր նոր երկրի անդամակցումը մեզ աւելի է մօտեցնում համընդհանուր մասնակցութեանը եւ ամենածանր յանցագործութիւնների անպատժելիութեանը վերջ տալուն», - նշել է նա:

# ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՏԵՍԱՆԻՒԹՈՎ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ Է «ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԽԱՉՄԵՐՈՒԿ» ՆԱԽԱԳԻԾԸ

Հայաստանի Հանրապետութեան կառավարութիւնը տեսանիւթով ներկայացրել է «Խաղաղութեան խաչմերուկ» նախագիծը: Ինչպէս տեղեկացնում է *Արմենպրէս*ը, Կառավարութիւնը մշակել եւ ներկայացնում է «Խաղաղութեան խաչմերուկ» նախագիծը՝ որպէս խաղաղութեան օրակարգի կարեւոր մի մաս:

Այդ նախագծի առանցքային իմաստը Հայաստանի, Թուրքիայի, Ադրբէջանի, Իրանի Իսլամական Հանրապետութեան միջեւ կոմունիկացիաների զարգացումն է՝ ճանապարհներ, երկաթուղիներ, խողովակաշարեր, մալուխներ, էլեկտրահաղորդման գծեր նորոգելու, կառուցելու, գործարկելու միջոցով:

«Հայաստանի հարաւով եւ հիւսիսով անցնող երկաթուղիներն արդէն երեսուն տարի չեն գործում տարածաշրջանային առումով, չեն գործում նաեւ արեւելքն արեւմուտքին կապող բազմաթիւ աւտոճանապարհներ, մինչդեռ այդ ճանապարհների վերագործարկումը Կասպից Ծովը Միջերկրականին կապող կարճ եւ արդիւնաւէտ ուղի կը դառնար՝ թէ՛ երկաթուղային, թէ՛ աւտոմոբիլային:

Նոյն կերպ եւ այդ երկաթուղային եւ աւտոմոբիլային կոմունիկաց- 4

ԽՈՀԵՐ

# ՀԱՅԱՍՏԱՆ ՁԵՐԹԱՄ՝ ՉԿԱՅ ՀԱՅԱՍՏԱՆ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Կայ սփիւռքեան փոքր, բայց ձայնաւոր խումբ մը՝ «ընդդիմադիր» ինքնայորջորջումով: Ընդդիմադիր՝ Հայաստանին, բայց ոչ Սփիւռքին:

Այս խումբին ձայնը նոր հնչերանգներ ստացաւ Թաւշեայ Յեղափոխութենէն ետք, հասնելով ամենէն անտրամաբանականին:

Օրինակ, երբ Փաշինեան իր խօսքին մէջ «պիկ» բառը գործածեց՝ որ անշուշտ պէտք չէ գործածէր, անմիջապէս հրապարակումներ ըրին՝ թէ արեւելահայերէն լեզուն վտանգուած է: Այս հրապարակումները ընողները անոնք էին՝ որոնք պատասխանատու էին... արեւմըտահայերէն լեզուի վտանգումին:

Երբ Հայաստանի Ազգային Գրադարանի կայքէջը խաթարումի մը պատճառով երկու շաբաթ չգործեց, յայտարարեցին՝ որ Փաշինեանն է պատճառը: Անշուշտ, առանց բացատրութիւններ տալու:

Կ՚արժէ ասոնց ամբողջական ցանկը կազմել՝ բազմահարիւրի հասնող, եւ կ՚ունենանք երգիծական գրականութեան ամենահաճելի հատորներէն մէկը:

Իսկ մէկ տարի է արդէն կը լսուի՝ Հայաստանը չկայ, Երեւանը չկայ, վտանգաւոր է այցելել Երեւան: Համաձայնութիւն կայ այդ ձայնաւորներուն միջեւ բան մը չղրկել Հայաստան, յատկապէս դրամ, քանի որ Փաշինեանի շրջապատը պիտի գրպանէ զայն:

Բայց ոչ միայն դրամ: Վերջերս սխալմամբ կը խօսէի անոնցմէ մէկուն հետ եւ ըսի՝ որ նիւթեր եւ ձեռագիրներ ունիմ, որոնք պէտք է Երեւանի արխիւները փոխադրեմ: Առանց ժամանակ կորսընցընելու, առանց մտածելու ըսաւ. «Հայաստանը չկայ այլեւս, եթէ կ՚ուզես նիւթերդ կորսուին՝ ղրկէ՛»:

Մէկ տարի առաջ ըսուած էր ինծի. «Ծիչդ է, դուն Հայաստան կ՚երթաս – կու գաս, բայց Հայաստանը չկայ»: Բազմիմաստ արտայայտութիւն մը: Նախ, պախարակում մը յեղափոխութենէն ետք արտայայտած իմ համոզումներուս՝ որոնք հակառակ են խօսողի համոզումներուն, երկրորդ՝ խօսողի պատկերային ներկայացումը Հայաստանի անկումային վիճակին: Երրորդ՝ վերջին անգամ Հայաստան գացած եմ 2018-ին, նախավերջին անգամ՝ 2003-ին, երկու անգամն ալ 10 օրով: Այնպէս որ «կ՚երթաս – կու գաս»-ը ուրիշ իմաստ կը հետապնդէ:

Շնորհիւ այս ձայնաւորներուն, Հայաստանի նկատմամբ վախը անցած է անոնց սահմանները: Ազգային մը՝ որ ամէն օր հայրենասիրութիւն կը քարոզէ, չգնաց Երեւան, քանի որ իբր ցուցարարները փողոցները կը փակեն, իսկ ասիկա պիտի խանգարէ իր ազգային անդորրութիւնը:

Ասոնք Սփիւռքէն ելած ձայներ են, արտասանուած մարդոց կողմէ՝ որոնք հանդիստ նստած են իրենց գրասեղաններուն եւ համակարգիչներուն առջեւ, դիմացնին դրած են անուշահոտ սուրճը, կատարեալ ձեռնհասութեամբ կը շարունակեն վարել իրենց պիզնէսները՝ անխաթար պահելով իրենց անձնական դրամական կուտակումը:

Այս պատկերը՝ զոր ստեղծած են, աւելի քան իրական է իրենց համար: Կ՚ապրին ու կը շնչեն այս պատկերով:

Երեւանը չկա՞յ այսօր: Պէ՞տք է այնտեղ երթամ՝ հաստատելու կամ հերքելու համար ասիկա:

Աւելորդ է վերստին յիշեցնել հայութեան ապրած ցնցումները Ղարաբաղի Երկրորդ Պատերազմէն եւ Ղարաբաղի անկումէն ետք: Ասոնք հաստատապէս հոգեպէս աւելի ազդած են Հայաստանի բնակիչներուն վրայ քան սփիւռքահայերուս:

Հայաստանի սահմաններուն նկատմամբ վտանգն ալ իրական է, անկասկած:

Բայց Հայաստանի մէջ կը շարունակուի կեանքը:

Օփերա, նուագահանդէս, թատրոն, ներկայացում, ցուցահանդէս, սինեմա՝ բոլորն ալ կը գործեն թափով եւ նուիրուածութեամբ:

Գիրք, մամուլ, հրատարակութիւն՝ կը շարունակուին առանց ընդհատումի:

Հիմնարկներ՝ դպրոց, համալսարան, ակադեմիա, երաժշտանոց, գրադարան, մատենադարան, թանգարան՝ կը բանին ու կ՚արտադրեն առանց խափանումի:

Հիւսիսային Պողոտայի, այլեւ ամբողջ Երեւանի սրճարաններն ու ճաշարանները, ինչպէս միշտ, մարդաշատ են (դիտեցէ՛ք YouTube-ի վրայ տեղադրուած Երեւանի (Walking Yerevan) միայն վերջին երկու ամիսներու վիտէօները):

Այս բոլորը կայ ու պիտի մնայ, անկախ Փաշինեանէն եւ անկախ ուեւէ առաջնորդէ: Տխուր է, երբ մէկ անձ մը վարկաբեկելու համար, կամ անոր հետ համաձայն չըլլալու համար, ամբողջ երկիր մը երեւակայապէս կարգէ դուրս հանել: Ձըսելու համար՝ խիստ վտանգաւոր է: Լսա՞ծ էք երբեք Ֆրանսայի ընդդիմադիր կուսակցութիւն մը յայտարարէ երկիրի չգոյութեան մասին: Հիւանդագին բան մը կայ այստեղ:

# ԳՐԵԹԷ ԱՄԲՈՂՋՈՎԻՆ ՊԱՏՐԱՍՏ ԷՔ ԽԱՂԵՐԸ ՀԻՒՐԸՆԿԱԼԵԼՈՒՆ. ՖՐԱՆԿՈՖՈՆԻԱՅԻ ԽԱՂԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄԻՏԷԻ ՏՆՕՐԷՆԸ՝ ԿԳՄՍ ՆԱԽԱՐԱՐԻՆ

Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարար Ժաննա Անդրէասեանը Նոյեմբերի 17-ին ընդունել է Ֆրանկոֆոնիայի խաղերի միջազգային կոմիտէի տնօրէն Զէյնա Մինային: Հանդիպմանը ներկայ են եղել նաեւ ԿԳՄՍ նախարարի տեղակալներ Կարէն Գիլոյեանը, Արթուր Մարտիրոսեանը եւ Դանիէլ Դանիէլեանը:

Ինչպէս *Արմենպրէս*ին տեղեկացրին ԿԳՄՍ նախարարութիւնից, նախարար Ժաննա Անդրէասեանը ողջունել է Զէյնա Մինային եւ կարեւորել Ֆրանկոֆոնիայի 2027թ. խաղերը Հայաստանում հիւրընկալելու յայտին առնչուող հարցերը քննարկելու հնարաւորութիւնը:

«Ֆրանսերէնը եւ ֆրանկոֆոն արժէքները մէկ անբաժանելի ամբողջութիւն են: Մեզ համար կարեւոր է նաեւ ֆրանկոֆոն երկրների հետ համագործակցութեան փորձը, որ կուտակել ենք Հայաստանի՝ Ֆրանկոֆոնիայի միջազգային 4

# ՋԱՀԱԿԻՐ

## ԳՐԵԹԷ ԱՄԲՈՂՋՈՎԻՆ ՊԱՏՐԱՍՏ ԷՔ ԽԱՂԵՐԸ ՀԻՒՐԸՆԿԱԼԵԼՈՒՆ. ՖՐԱՆԿՈՖՈՆԻԱՅԻ ԽԱՂԵՐԻ...

3

կազմակերպութեան նախագահութեան տարիներին: Ամէն տարի Հայաստանում մեծ հանդիսաւորութեամբ է նշւում Ֆրանկոֆոնիայի միջազգային օրը, անցկացւում են տարբեր միջոցառումներ, որոնք նպաստում են ֆրանկոֆոն մշակոյթի եւ արժէքների տարածմանն ու լեզուի զարգացմանը: Սա մեր կեանքի մի մասն է կազմում: Անգամ եթէ մեզանից բոլորը չէ, որ խօսում են ֆրանսերէն, ֆրանկոֆոն ընտանիքին պատկանելու զգացումը եւ այդ ընտանիքի արժէքները կրելը հոգեհարազատ են մեր հասարակութեանը: Այս համատեքստում Ֆրանկոֆոնիայի 2027 թուականի խաղերը Հայաստանում հիւրընկալելու ցանկութիւնը տրամաբանական յաջորդ քայլն է մեզ համար», - ասել է Ժաննա Անդրէասեանը:

Ըստ աղբիւրի՝ Զէյնա Մինան շնորհակալութիւն է յայտնել Ֆրանկոֆոնիայի 2027թ. խաղերը Հայաստանում հիւրընկալելու յայտ ներկայացնելու համար եւ ընդգծել՝ այն, ինչ այս օրերին տեսել է մեր երկրում, բաւականին տպաւորիչ է:

«Հասցրել եմ լինել մի շարք մարզական եւ մշակութային հաստատութիւններում, Հայաստանի Հանրային հեռուստաընկերութիւնում: Իսկապէս, բաւականին զարգացած ենթակառուցւածքներ ունէք, եւ արդէն իսկ կարող եմ ասել՝ գրեթէ ամբողջովին պատրաստ էք խաղերը հիւրընկալելուն: Արդէն իսկ բաւականին լուրջ եւ տպաւորիչ յայտ էք ներկայացրել: Լինելով Հայաստանում ու տեսնելով Հայաստանի կառավարութեան վերաբերմունքը՝ աւելի քան վստահ ենք, որ ի զօրու էք յոբելեանական 10-րդ խաղերն անցկացնել ամենաբարձր մակարդակով», - նշել է Ֆրանկոֆոնիայի խաղերի միջազգային կոմիտէի տնօրէն Զէյնա Մինան:

Նշւում է, որ Ֆրանկոֆոնիայի խաղերի միջազգային կոմիտէի տնօրէնն ընդգծել է՝ 2027 թուականի խաղերն ընդունելու պատրաստակամութիւնը մշակոյթի եւ սպորտի ռազմավարական զարգացման՝ Հայաստանի կառավարութեան որդեգրած քաղաքականութեան տրամաբանական շարունակութիւնն է:

Հանդիպման ընթացքում կողմերը քննարկել են Հայաստանի յայտին եւ Ֆրանկոֆոնիայի խաղերը Հայաստանում անցկացընելուն առնչուող մի շարք հարցեր: Պատուիրակութեան անդամներն իրենց դիտարկումներն ու առաջարկութիւններն են ներկայացրել խաղերի կազմակերպման համար նախատեսուող վայրերի եւ դրանց պայմանների վերաբերեալ:

ԿԳՄՍ նախարարութեան տեղեկացմամբ՝ Ֆրանկոֆոնիայի խաղերի միջազգային կոմիտէի տնօրէն Զէյնա Մինան կարեւորել է նաեւ Հայաստանում ֆրանսերէն լեզուի հանդէպ հետաքրքրութիւնը: Նախարար Ժաննա Անդրէասեանը վստահութիւն է յայտնել՝ Ֆրանկոֆոնիայի 2027թ. խաղերը Հայաստանում անցկացնելու հնարաւորութիւնը թոյլ կը տայ էականօրէն աւելացնելու ֆրանսախօս անձանց թիւը մեր հասարակութիւնում:

*Դեկտեմբերի 14-ին Փարիզում կայանալիք կոնֆերանսին պաշտօնապէս կը նեկայացուեն Ֆրանկոֆոնիայի 2027թ. խաղերը հիւրընկալելու պատրաստակամութիւն յայտնած երկրների վերջնական յայտերը, ինչից յետոյ Ֆրանկոֆոնիայի խաղերի միջազգային կոմիտէն որոշում կը կայացնի խաղերի անցկացման վայրի վերաբերեալ:*

## ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՏԵՍԱՆԻՒԹՈՎ ՆԵՐԿԱՅԱՑՐԵԼ Է «ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԽԱՉՄԵՐՈՒԿ» ՆԱԽԱԳԻԾԸ

3

իաները կարող են Ծոցը Սեւ Ծովի, այդ թւում՝ վրացական նաւահանգիստներին կապող արդիւնաւէտ ճանապարհ դառնալ: Այս ծրագիրը հսկայական օգուտներ կը բերի մեր տարածաշրջանի բոլոր երկրներին, եւ ես ցանկանում եմ Կառավարութիւնների, մասնաւոր ներդրողների ուշադրութիւնը հրաւիրել այս հնարաւորութեան վրայ», - յայտարարել էր վարչապետ Նիկոլ Փաշինեանը Թբիլիսիում տեղի ունեցած «Մետաքսի ճանապարհ» միջազգային համաժողովին:

## ՌՈՒՍԱՍՏԱՆ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԿԱՏՄԱՄԲ...

1

րութիւնն ու Խորհրդայինը, ինչպէս նաեւ յետգաղութատիրութիւնն ու յետխորհրդայինը, բայց կրողներն են համատեղ շերտերու, ի թիւս տարբերութիւններու: Այս հարցերուն մասին լուրջ ու համակողմանի անդրադարձումներ ունեցած է մշակութաբան Հրաչ Բայադեան՝ յօդուածներով եւ պատկերասփռուած դասախօսութիւններով: Վերջիններս կարելի է գտնել YouTube-ի Ֆոկուս (նախկին Ուտոպիանա.ամ) կայան-կայքէջին վրայ:

Ֆոկուսի տեղադրած *Հակագաղութային դիմադրութիւն եւ մտաւորականութիւն (գրողներ, գիտնականներ, հետազօտողներ...)* խորագիրով դասախօսութեան մէջ (6 Յունիս 2014), օրինակ, Բայադեան կը շօշափէ մտաւորականութեան դիրքաւումները յետգաղութատիրութեան վերաբերեալ, արտայայտելով հետեւեալ գաղափարը.

Յետգաղութատիրական շրջանին, եւրոպացի եւ յատկապէս ֆրանսացի մտաւորականները հակուած էին գործ ունենալ երրորդ աշխարհի մտաւորականներուն հետ: Բաւարար է յիշեցնել՝ որ Ֆրանց Ֆանոնի երկու գիրքերուն Յառաջաբանը բարձր գնահատականներով եւ տրամադրութեամբ գրեց Ժան-Փօլ Սարթր: Յետգաղութային իրադրութեան մէջ կար այդ երկխօսութիւնը՝ որ կարեւորագոյն հանգամանք մըն էր գաղութային ժառանգութեան շուրջ խօսակցութիւն ձեւաւորելու համար: Երկխօսութեան կը մասնակցէին թէ՛ եւրոպացի եւ թէ գաղութացուած երկիրներու մտաւորականութիւնը: Այս բոլորը անկարելի է պատկերացնել յետխորհրդային շրջանին: Յետխորհրդային տարածքի մետրոպոլիտ ռուս մտաւորականները բացարձակապէս պատրաստ չեն նախկին գաղութներու մտաւորականներու հետ երկխօսելու, անոնք հետաքրքրուած չեն նման հարցերով եւ ոչ ալ պատրաստ են դիմելու նման քայլի: Կեդրոնը պատրաստ չէ նման խօսակցութեան:

Անկախ յետգաղութատիրական վիճակէն, Բայադեանի դիտարկումը մտաւորականներու մասին ճիշդ է լայն ոլորտներով՝ քաղաքականութիւն, արուեստ, լրատուութիւն, եւ այլն: Այսինք, ռուսերը պատրաստ չեն լսելու հայերուն:

Յետգաղութատիրութիւն պիտի նշանակէ ապագաղութացում, բայց վերջինս յստակ չէ Հայաստանի համար, քանի որ նոյնինքը Խորհրդային գաղութատիրութիւնը մաս չէ կազմած մտաւորական տրամասացութեան: Հայերը, յետխորհրդային բոլոր ժողովուրդներուն նման, չեն ունեցան Ֆրանց Ֆանոնի, Կայաթրի Սփիվաքի, Էտուարտ Սաիտի նման յետգաղութապաշտական (postcolonlialist) մտաւորականներ, հետեւաբար մտաւորական առումով ապագաղութացումի վիճակը չէ ներկայացուած: Ասկէ կարելի է հետեւցնել ռուսերուն ոչ-մասնակցութիւնը գործընթացքին: Թէեւ ասիկա պէտք չէ խանգարեր ռուս մտաւորականներուն խօսիլ իրենց նախկին գաղութներուն հետ: Մտաւորական այս բացակայութիւնը նաեւ գործիք մը եղաւ փութինեան իշխանութեան շատ դիւրութեամբ կարծիք ձեւաւորել Հայաստանի նկատմամբ, լաւագոյն պարագային՝ արեւելապաշտական (orientalist) պատկերներով, վատագոյն պարագային (ինչպէս հիմա)՝ հակահայկական ուղղակի պատումներով:

### ՄԻԱՅՆ ՌՈՒՍԱՍՏԱՆ

Ներկայ աշխարհաքաղաքական պայմաններուն մէջ Հայաստանի նման երկիր մը չի կրնար գոյատեւել մինակ: Շատ կարեւոր են արտաքին յարաբերութիւնները՝ քաղաքական, տնտեսական, մշակութային, եւ յատկապէս դիւանագիտական: Ասիկա չի նշանակեր ինքնավարութենէ հրաժարում կամ ազդեցութիւններու կոյր ընդունում, այլ գործելակերպի եւ տեսադաշտի ընդլայնում, պետական կարելիութիւններու ամրացում:

Հայաստան ամբողջապէս կախեալ եղաւ *միայն* մէկ երկիրէ՝ Ռուսաստանէն, կարծես վերջինս ըլլայ ամբողջ աշխարհ մը: Մինչդեռ երբ կը խօսուի Արեւմուտքի կամ այլ տարածութիւններու մասին, անոնք կը ներկայացնեն զանազան երկիրներ, այլազան քաղաքականութիւններ, բազմազան մշակոյթներ: Եւ Հայաստանի համար շատ վտանգաւոր եղաւ կախեալ մնալ միայն մէկ երկիրէ, որուն արդիւնքները կը տեսնենք այսօր, երբ այս երկիրը որոշեց լքել Հայաստանը, հրահրել հայ-ազէրիական պատերազմները, լռել եւ մեղսակից ըլլալ Հայաստանի ինքնավար տարածքներու գրաւումին, միաժամանակ անխախտ պահելով Հայաստանէն ստացած տընտեսական եւ յետգաղութատիրական ԲՈԼՈՐ շահերն ու հասոյթները: Եւ տակաւին Հայաստան իրաւունք չունի փնտռել այլընտ-րանքներ, դիմել այլազանութեան, նուազեցնել ռուսական բացառիկութիւնը:

### ԱՆՁՆԱԿԱՆՆ ՈՒ ՊԵՏԱԿԱՆԸ ԽԱՌՆՈՒԱԾ

1999 Հոկտեմբեր 27-ով կը բնաջնջուէին Հայաստանի քաղաքական վերնախաւի գործունեայ շերտերը եւ կը նկատուէր Ռոբերտ Քոչարեան – Վլատիմիր Փութին յարաբերութիւններու աստիճանական սերտաճում, ուր պետականը կը խառնուէր անձնականին:

Առանց մտնելու մանրամասնութիւններու մէջ, կը բաւէ յիշել՝ որ Թաւշեայ Յեղափոխութենէն անմիջապէս ետք տեղի ունեցան Քոչարեանի եւ Հայաստանի մէջ Ռուսաստանի դեսպանի հանդիպումներ, Քոչարեան-Փութին թաքուն եւ բացայայտուած հեռախօսազրոյցներ, Քոչարեան-Փութին հանդիպում Մոսկուայի մէջ (Յունիս 2018), Փութինի հանդիպումը Պելլա Քոչարեանին Երեւանի մէջ (Հոկտեմբեր 2019, երբ Ռոբերտ Քոչարեան արգելափակումի տակ էր Մարտ 1-ի գործով): Աւելի քան յստակ է, որ Փութին-Քոչարեան յարաբերութիւնները վեր եղած են պետական յարաբերութիւններէն, ուր պետութիւնը ոչ միայն օգտագործուած է իբրեւ ծածկոյթ, այլ պետութեան շահերը ենթարկուած գերանձնականին:

Երբեք կրնա՞ք երեւակայել, օրինակ, որ Միացեալ Նահանգներու այսօրուայ նախագահ Ճօ Պայտըն պաշտօնական այցելութեան մեկնի Ֆրանսա եւ հանդիպում ունենայ նախկին նախագահ Ֆրանսուա Օլլանտի հետ: Կամ Օլլանտ անձնական այցելութիւն կատարէ ԱՄՆ եւ հանդիպի Պայտընին: Կամ անոնք անընդհատ հեռախօսազրոյց ունենան:

Արդարեւ, Հոկտեմբեր 27-ի հետեւանքները, Քոչարեան-Փութին անձնական յարաբերութիւնները, ինչպէս նաեւ Քոյլի վերոյիշեալ թուականները կրնան շատ բան ցոյց տալ՝ թէ յատկապէս երբ կորուկ գործադրութեան մէջ մտաւ նորագոյն ժամանակներու ռուսական գաղութացումը:

Նոր շրջանի գաղութացում, ուրեմն, նոր գաղութատիրութիւն՝ յետխորհրդային-յետգաղութային բնաբանի մէջ, յետգաղութայնութիւն՝ չապագաղութացուած մտաւոր եւ տրամասացային (discoursive) մտաւոր վիճակի մէջ: Բարդ տիալեքթիք մը, որ գործուն է այսօր ռուս-հայկական յարաբերութիւններուն մէջ:

Ա.

(Վերջ 2)

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1954 ՀԻՆԳՇԱԲԹԻ 7 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2023 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 75 Ե. Դհկ. عدد رقم ١٩٥٤ الخميس ٧ ديسمبر ٢٠٢٣


## «ՈՐՈՇՈՒՄ ԿԱՅԱՑՆԵԼՈՒ ԿԱՄՔ ԿԱՅ». ՓԱՇԻՆԵԱՆԸ՝ ՀԱՊԿ-ԻՑ ԴՈՒՐՍ ԳԱԼՈՒ ՄԱՍԻՆ

**JAMnews**

Հայաստանի վարչապետը Նոյեմբերի 24-ին աւելի քան ութ ժամ շարունակ առցանց ասուլիս է անցկացրել, այս անգամ նոր ձեւաչափով՝ պատասխանելով ոչ թէ լրագրողների, այլ քաղաքացիների հարցերին, որոնք վերաբերուել են ամենատարբեր ոլորտների՝ մինչեւ անգամ անձնական առողջական կամ սոցիալական խնդիրների: Փաշինեանն անդրադարձել է նաեւ Հայաստանի անվտանգային խնդիրներին, Ադրբէջանի հետ խաղաղութեան պայմանագրի կնքմանն ու հայ-ռուսական յարաբերութիւններին: Այս անգամ եւս չի յստակեցրել՝ Հայաստանը կայացրե՞լ է Ռուսաստանի հովանու ներքոյ գործող ՀԱՊԿ ռազմական դաշինքից դուրս գալու որոշում, թէ՞ ոչ:

«Ուզում ենք մինչեւ վերջին հնարաւորութիւնը անել ամէն ինչ ՀԱՊԿ-ին լիարժէք հասկանալու եւ մեր դիրքորոշումը ռազմական դաշինքին հասկանալի դարձնելու համար», - յայտարարել է վարչապետ Նիկոլ Փաշինեանը:

Նրա խօսքով՝ եթէ այդ ճանապարհին սպառուած համարեն ամբողջ պոտենցիալը, հայ հանրութիւնն է հարցնելու՝ ինչո՞ւ էք մնացել կառոյցում, եթէ այն Հայաստանին ոչինչ չի տալիս, ընդհակառակը՝ լրացուցիչ խնդիրներ է առաջացնում անվտանգային համակարգի համար: Շեշտել է՝ կառավարութիւնն ունի երկրի շահերից բխող որոշումներ կայացնելու քաղաքական կամք ու յաւելել, որ եթէ այդ կամքը չլինէր, չէին լինի նաեւ դաշինքի գործունէութեան վերաբերեալ Երեւանից հնչող քննադատական յայտարարութիւնները:

Վարչապետը յայտարարել է՝ ՀԱՊԿ-ի դէ ֆակտօ գործողութիւնները կամ անգործութիւնը չեն հաւաստագրում Հայաստանի նկատմամբ նրա ունեցած պարտաւորութիւնները, համապատասխան չեն Հայաստանի շահերին:

Ստորեւ ներկայացնում ենք ասուլիսի կարեւոր դրուագները.

**Երեւանն այդպէս էլ Ռուսաստանից զէնք չի ստացել. ո՞րն է ելքը**

Տեւական ժամանակ է, ինչ Հայաստանի բարձրաստիճան պաշտօնեաները խօսում են այն մասին, որ ռուսական կողմին միլիարդաւոր դոլարներ են վճարուել, սակայն սպառազինութիւն այդպէս էլ չի մատակարարուել: Կառավարութեան ղեկավարին հարց տուեց քաղաքացին՝ ո՞րն է ելքը: Փաշինեանի խօսքով՝ այժմ էլ տեղի են ունենում քննարկումներ, թէ ինչ մեխանիզմներով այդ խնդիրը լուծել.

«Օրինակ՝ տարբերակներից մէկը կարող է լինել վճարուած գումարների չափով Հայաստանի՝ Ռուսաստանից ունեցած պարտքից նուազեցումը»:

Վարչապետն ասել է, թէ «Ռուսաստանն ինքը սպառազինութեան կարիք ունի» եւ յաւելել, որ հայկական կողմը աշխատանքային է տրամադրուած, յոյս ունի՝ քննարկումները կը բերեն «կոնկրէտ արդիւնքների»:

**«Խնդիրներ արձանագրուել են». ռուսական հեռուստաալիքների մասին**

Քաղաքացիները հետաքրքրուել են՝ արդեօ՞ք կառավարութիւնը նախատեսում է եթերազրկել ռուսական հեռուստաալիքներին՝ կապուած վերջին շրջանում դրանցում տեղ գտած հակահայկական բովանդակութեան հետ:

Յղում անելով երկու երկրների միջեւ ստորագրուած համաձայնագրին՝ վարչապետն ասել է, որ Հայաստանի պետական կառոյցները վերջին ամիսներին արձանագրել են խախտումներ:

«Կայ յստակ կարգաւորում, որ երկրի ներքին գործերին միջամտելու, ներքաղաքական իրավիճակը ապակայունացնելու ուղղութեամբ ջանքեր չպէտք է գործադրուեն», - շեշտել է նա:

Տեղեկացրել է՝ հաշուի առնելով Ռուսաստանի հետ ունեցած բարեկամական յարաբերութիւններն ու առկայ իրողութիւնները՝ Բարձր Տեխնոլոգիական Արդիւնաբերութեան նախարարութիւնը ռուսական կողմին պաշտօնապէս հրաւիրել է խորհրդակցութիւնների՝ «ելքերը հասկանալու»:

«Յոյս ունեմ, որ այդ խորհրդակցութիւնները տեղի կ'ունենան հնարաւորինս արագ, որպէսզի կարողանանք այս հարցը նորմալ՝ աշխատանքային, բարեկամական մթնոլորտում կարգաւորել», - ասել է նա:

**Կա՞յ ապակայունացման վտանգ Հայաստանի հարաւում**

Մեղրի քաղաքից նման հարց են ուղղել վարչապետին: Փաշինեանը նշել է, որ կառավարութիւնը չի առանձնացնում Սիւնիքի մարզը՝ որպէս անվտանգային խոցելի գօտի.

«Տաւուշում, Գեղարքունիքում, Արարատում, Վայոց Ձորում էլ կան անվտանգային խնդիրներ: Այդ խնդիրներն ակնյայտ են, պէտք չէ դրանք ոչ թերագնահատել, ոչ գերագնահատել»:

Վարչապետի դիտարկմամբ՝ Սիւնիքը երկրի տնտեսապէս ամենաակտիւ հատուածներից մէկն է: Բացի այդ, վերջին 5 տարիներին գործադիրը մարզում 100 մլրդ դրամից աւելի ներդրումներ է արել: Յիշատակել է իրականացուող մի շարք այլ ծրագրեր, մասնաւորապէս՝

- ԵՄ աջակցութեամբ Հայաստան-Իրանի սահմանի մաքսակէտի վերակառուցումը:
- Հիւսիս-հարաւ մայրուղու Ագարակ-Քաջարան հատուածի կառուցման մեկնարկը:
- Սիւնիքի դիմակայունութեան բարձրացմանն ուղղուած ԵՄ յատկացումները:
- Կապանի օդանաւակայանի գործարկումը:
- Մարզում 60 կրթահամալիրների կառուցումը:

«Այս ամէնն արւում է յղելու համար յստակ քաղաքական ուղերձ՝ Սիւնիքի հետ կապուած մեր բոլոր պլանները կապւում են ռազմավարական զարգացման, բարեկեցութեան, տնտեսական ակտիւութեան հետ»:

Նկատել է՝ Մեղրիի հետ է կապւում նաեւ Հայաստանի տրանսպորտային համակարգերի զարգացման տեսլականը, որը ձեւակերպուել է որպէս «Խաղաղութեան խաչմերուկ» նախագիծ:

**«Վերադարձը ԼՂ այս պահին իրատեսական չէ»**

Պատճառն, ըստ վարչապետի, այն է, որ Ադրբէջանի էթնիկ զտման քաղաքականութիւնը չի փոխուել:

Նրա խօսքով՝ այն պայմաններում, երբ բռնի տեղահանուածներն իրենց ծննդավայր վերադառնալու հնարաւորութիւն չունեն,

↳ 4

## ՀԱՅ-ԵԳԻՊՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐ

- Նոյեմբեր 29-ին, Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեան ընդունեց եգիպտացի միլիառատէր գործարար Նակիպ Սաուիրէսին: Վարչապետը ողջունեց գործարարին այցելութիւնը Հայաստան եւ նշեց, որ Հայաստանի կառավարութիւնը պատրաստ է համագործակցիլ՝ տարբեր ծրագիրներ իրականացնելու նպատակով:

- Դեկտեմբեր 2-ին, Հայաստանի նախագահ Վահագն Խաչատուրեան Տուպայի մէջ հանդիպում ունեցաւ Եգիպտոսի նախագահ Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսիի հետ: Հանդիպումը կայացաւ ՄԱԿ-ի Կլիմայի Փոփոխութեան 28-րդ Համաժողովի ծիրէն ներս: Հայկական կողմէն հանդիպումին մասնակցեցաւ նաեւ Հայաստանի Շրջակայ Միջավայրի նախարար Յակոբ Սիմիդեան:

Նախագահ Խաչատուրեան Թուիթերի էջին վրայ արձանագրեց. «Շատ ջերմ հանդիպում ունեցայ Եգիպտոսի Ն.Վ. Ապտէլ Ֆաթթահ Ալ-Սիսիի հետ՝ ՄԱԿ-ի Կլիմայի Փոփոխութեան Համաժողովի շրջանակներուն մէջ: Շեշտուեցաւ հայ-եգիպտական յարաբերութիւններուն բարեկամական բնոյթը: Կարծիքներ փոխանակուեցան ներկայ օրակարգին, ինչպէս նաեւ փոխադարձ հետաքրքրութիւն ներկայացնող ոլորտներու բազմաբնոյթ շահաւէտ համագործակցութեան յետագայ ամրապնդումին շուրջ: Քննարկուեցաւ միջազգային եւ տարածաշրջանային հարցերու լայն շրջանակ մը, ներառեալ Հարաւային Կովկասի եւ Միջին Արեւելքի զարգացումները: Անհամբեր կը սպասենք ընդարձակելու փոխադարձ համագործակցութիւնը»:

Այս առիթով, Եգիպտոսի նախագահի պաշտօնական խօսնակ Ահմատ Ֆահմի յայտարարեց՝ որ երկու նախագահները շեշտեցին եգիպտական-հայկական յարաբերութիւններուն պատմական առանձնայատկութիւնը պաշտօնական թէ ժողովրդական մակարդակներով, աւելցնելով՝ որ նախագահները համաձայնեցան ամրապնդել եւ զարգացնել երկու երկիրներուն միջեւ եղած համագործակցութիւնը, յատկապէս զբօսաշրջիկային, մշակութային, առեւտրական, տնտեսական եւ ապահովութեան ոլորտներուն մէջ:

- Դեկտեմբեր 4-ին, Գահիրէի մէջ բացումը կատարուեցաւ EDEX 2023 պաշտպանական եւ ապահովութեան թեքնոլոժիի միջազգային ցուցահանդէսին, որուն մասնակցեցաւ Հայաստանի Բարձր Տեխնոլոգիական Արդիւնաբերութեան Նախարարութեան պատուիրակութիւնը՝ նախարար Ռոբերտ Խաչատրեանի գլխաւորութեամբ: Հայաստանի նախարարութեան աջակցութեամբ, հայկական 12 ընկերութիւններ «Հայաստան» միասնական տաղաւարին ներքեւ ներկայացուցին պաշտպանական եւ ապահովութեան ոլորտներու ընկերութիւններուն կողմէ առաջարկուող լուծումները եւ արտադրանքը:

- Գահիրէ այցելեց Երեւանի Արարատ ժողովրդական պարախումբը, ելոյթ ունենալու 12-19 տարեկան պատանիներու ժողովրդական պարի փառատօնին, որուն կը մասնակցին 36 երկիրներու խումբեր: Դեկտեմբեր 1-ին պարախումբը յատուկ ելոյթ ունեցաւ եգիպտահայ գաղութին համար Պըլըքտանեան Սրահին մէջ:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՄԻՐԶՈՅԵԱՆԸ ԼԱՒՐՈՎԻ ՀԵՏ ՀԱՆԴԻՊՄԱՆԸ ԿԻՍՈՒԵԼ Է ԶԳԱՅՈՒՆ ՀԱՐՑԵՐԻ ՇՈՒՐՋ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԴԻՐՔՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԸՆԿԱԼՈՒՄՆԵՐՈՎ

Ռուսաստանի արտգործնախարար Սերգէյ Լաւրովը վերջերս Սկոպիէում Հայաստանի ԱԳ նախարար Արարատ Միրզոյեանի հետ հանդիպմանը ներկայացրել է աշխարհաքաղաքական զարգացումների վերաբերեալ Ռուսաստանի տեսլականը, Միրզոյեանն էլ կիսուել է տարբեր զգայուն հարցերի շուրջ Ռուսաստանի դիրքորոշումների վերաբերեալ հայկական կողմի ընկալումներով:

*Արմենպրէս*ի փոխանցմամբ՝ Միրզոյեանն այս մասին ասաց ԱԺ-ում կառավարութեան անդամների հետ հարցուպատասխանին՝ անդրադառնալով Քաղաքացիական Պայմանագիր Խմբակցութեան պատգամաւոր Լիլիթ Մինասեանի հարցին:

Պատգամաւորը հարցրեց, թէ վերջերս Սկոպիէում ԵԱՀԿ նախարարական գագաթնաժողովի ընթացքում նաեւ Ռուսաստանի արտգործնախարար Սերգէյ Լաւրովի հետ հանդիպման թեման ո՞րն է եղել՝ հաշուի առնելով հայ-ռուսական

↳ 2

# ԽՄԲԱՎԱՐ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԸ

Հ. ԱԻԱԳԵԱՆ

**Բ. ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ**

1941 Յունիսին, պատերազմի ստեղծած անորոշ կացութեան պատճառով Աշոտ Պատմագրեան կը մեկնի Եգիպտոսէն: Ան 1936-էն սկսեալ Աղեքսանդրիոյ Պօղոսեան Ազգային Վարժարանի երաժշտութեան դասատուն էր, իր դպրոցական երգահանդէսներով աննախադէպ աշխուժութիւն մտցնելով դպրոցի երաժշտական կեանքին մէջ: Միաժամանակ, կազմակերպած էր երգչախումբի եւ նուագախումբի շատ յաջող նուագահանդէսներ Գահիրէ եւ Աղեքսանդրիա:

Պօղոսեան Վարժարանի աշակերտ էր Ափրիկեան: Ան յետագային պիտի յիշէր. «Պատերազմին ընթացքին, երբ գերմանական յարձակումի պատճառով, Պատմագրեան Եգիպտոսէն հեռանալու ստիպուեցաւ, մեկնումէն առաջ դպրոցին երգչախումբը ինծի յանձնեց: 14 տարեկան էի: 17 տարեկանիս դպրոցին երաժշտութեան դասատու նշանակուեցայ»(92):

Ուրեմն, 1941-1942 դպրոցական տարեշրջանէն սկսեալ Ափրիկեան մարզեց Պօղոսեանի երգչախումբը, 1943-էն սկսեալ մինչեւ իր մեկնումը եղաւ նաեւ երաժշտութեան դասատու:

Ափրիկեանի վարած դպրոցական երգչախումբին պարտականութիւնն էր մասնակցիլ տարեվերջի հանդէսներուն(93), յատուկ տօնակատարութիւններուն, օրինակ՝ Վարդանանց(94), Նոյեմբեր 29-ի տօնակատարութեան կատարել Խորհրդային Հայաստանի հիմնը(95):

Կը յիշատակուի՝ որ 1951 Յուլիս 1-ին, Լիսէ Ֆրանսէի սրահին մէջ կայացած ամավերջի հանդէսին, վարժարանի երգչախումբը կ'երգէ եգիպտական քայլերգը եւ Կանաչեանի դպրոցական քայլերգը: Բացի այդ, կը ներկայացուին երկու դասական պարեր, առաջինը՝ կախարդական անտառ մը պարախաղ պատկերով (պատրաստութիւն Սրբուհի Սարգիսեանի), երկրորդը՝ հայկական պար (պատրաստութիւն Գեղանոյշ Սէրթլեանի), որոնց կ'ուղեկցէր վարժարանի աշակերտներէն կազմած Ափրիկեանի նուագախումբը, իսկ երաժշտութիւնը յօրինումն էր Ափրիկեանի(96):

Մեծ խանդավառութիւն կը յառաջացնէ Պօղոսեան Ազգային Վարժարանի երգչախումբին երաժշտական երեկոյթը՝ 1953 Մայիս 3, Լիսէ Ֆրանսէի սրահ, նուագախումբի մասնակցութեամբ:

Դաշնակի նուագակցութիւն՝ Ժանէթ Փափազեան:

Բեմայարդարանք՝ Երուանդ Ափրիկեան:

Լուսաւորութիւն՝ Սթուտիօ Լասսաւ:

Յայտագիր.

1. Եգիպտական քայլերգ (նուագախումբ):
2. *Ազատութեան քայլերգ* (արաբերէն) (մեներգ, երգչախումբ, նուագախումբ), մեներգող՝ Հրաչ Տէր Սարգիսեան:
3. Բարսեղ Կանաչեան, *Դպրոցական քայլերգ* (երգչախումբ):
4. Աիմատ Շաուքի, *Պալատի*, արաբերէն արտասանութիւն՝ Կարօ Էսէրեան:
5. Դանիէլ Ղազարեան, *Ծառիս տակը* (երգչախումբ, նուագախումբ):
6. Բարսեղ Կանաչեան, *Թոկը* (մեներգ, երգչախումբ, նուագախումբ), մեներգող՝ Անահիտ Գալֆայեան:
7. Վահան Թէքէեան, *Հայու հոգին*, արտասանութիւն՝ Սոնա Տիւլկէրեան:
8. Արշակ Չօպանեան, *Երջանկութիւն*, արտասանութիւն՝ Սոնա Տիւլկէրեան:
9. Բարսեղ Կանաչեան, *Խաղաղ գիշեր* (զուգերգ), մեներգողներ՝ Վերոնիկ Աւագեան, Հրաչ Տէր Սարգիսեան:
10. Կոմիտաս, *Լուսնակն անուշ* (մեներգ, երգչախումբ), մեներգող՝ Հրաչ Տէր Սարգիսեան:
11. Անտոն Մայիլեան, *Լորիկ* (մեներգ, երգչախումբ), մեներգ՝ Վարդանոյշ Զատոյեան:
12. Դանիէլ Վարուժան, *Լոյսը*, արտասանութիւն՝ Նայիրի Կէօնճեան:
13. Կոմիտաս, *Մոկաց հարսներ* / *Մեր բաղը ծառ ա* / *Իմ չինար եարին* / *Իմ չինարի եարը* (մեներգ, երգչախումբ), մեներգողներ՝ Վարդանոյշ Զատոյեան, Շնորհիկ Չատրճեան:
14. Բարսեղ Կանաչեան, *Շուշօ* (երգչախումբ):
15. Բարսեղ Կանաչեան, *Խորոտիկ* (երգչախումբ):
16. Խօսք, տնօրէն՝ Բիւզանդ Չէքիճեան:

Բ. ՄԱՍ

17. Արամ Խաչատրեան, «Սուրերու պար» (խմբապար), պարադիր՝ Մարի Պապիկեան:

Գ. ՄԱՍ

18. Բարսեղ Կանաչեան եւ Կարպիս Ափրիկեան, *Ուխտագնացութիւն* (պատկեր-խմբապար), պարադիր՝ Գեղանոյշ Սէրթլեան:

Հանդէսէն ետք կարճ, յուզիչ ու ոգեւորիչ ելոյթ մը կ'ունենայ Արշակ Չօպանեան՝ որ Եգիպտոս կը գտնուէր իր յոբելինական հանդիսութեան համար(97):

«Խմբերգները եւ մեներգները ճարտարութեամբ ղեկավարեց Կարպիս Ափրիկեան: Բոլորն ալ երգուեցան արուեստով եւ աշխուժութեամբ, մեծ խանդավառութիւն ստեղծելով եւ ջերմ ծափեր խլելով», կը գրէ *Յուսաբեր* իր անստորագիր քննախօսականով(98):

«Երգչախումբ-նուագախումբը, ղեկավարութեամբ վարժարանին երաժշտութեան ուսուցիչ Պ. Կ. Ափրիկեանի, ներդաշնակ երգեցողութեամբ խանդավառեց հասարակութիւնը, անոր հոգիին հաղորդելով տոհմային երգերու ոգեւորիչ քաղցրութիւնը», կը նշէ այս անգամ *Արեւ*ի անստորագիր քննախօսը(99):

Վերջապէս, Ափրիկեանի վերջին ելոյթը Պօղոսեանի երգչախումբին հետ՝ 1953 Յունիս 28, Մոհամմատ Ալի թատրոն, ամավերջի հանդէսին: Վարժարանի երգչախումբը եւ նուագախումբը կը կատարեն՝ *Նաշիտ ալթահիրիր*, դպրոցական քայլերգ, Դանիէլ Ղազարեան՝ *Ծառիս տակը*, Բարսեղ Կանաչեան՝ *Թոկը* եւ *Շուշօ*, Կոմիտաս՝ *Եկան, եկան*, *Իմ չինարի եարը*, *Եար ջան արի*, *Էսօր Ուրբաթ* եւ *Զար զընգը*(100):

**ՄԵԿՆՈՒՄ**

1952 Դեկտեմբերին Բիւզանդ Կռանեան թեթեւօրէն կ'ակնարկէր Ափրիկեանի «ունեցած երաժշտական անբաւարար պատրաստութեան» մասին, եւ կը դնէր մասնագիտական կրթութիւն ստանալու անհրաժեշտութեան հարցը. «Մինչ այդ՝ գուրգուրացող հայեացքներ թող յառնին Կ. Ափրիկեանի վրայ: Եւ մեր մշակութային միութիւններն ու մշակոյթը սիրող անհատներ, թող անյապաղ գտնեն միջոցները, այս երիտասարդը ուղարկելու Եւրոպա, որպէսզի մեծ վարպետներու շունչին տակ զարգանայ, մշակուի ու հաստատուի իր արուեստին մէջ»(101):

Համազգայինի Աղեքսանդրիոյ մասնաճիւղի ջանքերով կարելի կ'ըլլայ հայթայթել կարեւոր յատկացում մը՝ Ափրիկեանին Փարիզ ղրկելու համար:

1953 Մայիս 3-ի Պօղոսեան Ազգային Վարժարանի երաժշտական երեկոյթի աւարտին, տնօրէն Բիւզանդ Չէքիճեան կը յայտարարէ Ափրիկեանի Փարիզ մեկնումը. «[Բիւզանդ Չէքիճեան] վերջին խօսքը կ'ուղղէ խմբավար պ. Կարպիս Ափրիկեանի եւ կ'աւելցնէ, թէ դպրոցական յաջորդ շրջանին թերեւս զրկուինք իր թանկագին ծառայութենէն, որովհետեւ միջոցներ ստեղծուած են զինքը Եւրոպա ղրկելու, երաժշտական իր ուսումը կատարելագործելու համար»(102):

1953 Սեպտեմբեր 20-ի հրաժեշտի երեկոյթին, Նշան Հէքիմեան կը ներկայացնէ. «Համազգայինի Աղեքսանդրիոյ մասնաճիւղը հպարտ է իր տարած աշխատանքներով, եւ այսօր ուրախութեամբ կը յայտարարէ, թէ ընկեր Կ. Ափրիկեանի տրուեցան դիւրութիւններ յառաջիկայ շաբաթ իսկ մեկնելու Եւրոպա, կատարելագործելու համար իր ուսումը երաժշտութեան ասպարէզին մէջ»(103):

Համազգայինի նախնական նպատակն էր Ափրիկեանի վերադարձով աշխուժացնել եգիպտահայ կեանքը:

1953 Հոկտեմբերին ան կը գտնուի Փարիզ, ուր, սակայն, կը հաստատուի վերջնականապէս: Ափրիկեան կ'արդարանայ. «Ինծի դիմեցին որ Սիփան-Կոմիտաս երգչախումբի խմբավարութիւնը յանձն առնեմ Գուրգէն Ալէմշահի եղերական մահէն ետք: Եգիպտոս Յուսաբերի [թէ՞ Համազգայինի, Հ.Ա.] պատասխանատուներուն դիմեցինք, քանի որ իրենց կրթաթոշակով եկած էի: Քաղաքական վիճակը անկայուն ըլլալով այնտեղ, իրենց հաւանութիւնը ստացայ: 1956-ին, 30 տարեկանիս հաստատուեցայ Փարիզ»(104):

(Շար. 6)

**ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ**

92. «Հարցազրոյց՝ Կարպիս Ափրիկեանի հետ», *Նոյեան տապան*, 4 Յուլիս 2013, https://nt.am/am/news/183536

93. Տես օրինակ՝ Գիմ-Գիմ-Է, «Ամավերջի հանդէս Աղեքսանդրիոյ Պօղոսեան Ազգ. Վրժ.ի եւ Մելքոնեան Մանկապարտէզի», *Զահակիր*, 15 Օգոստոս 1949:

94. Տես օրինակ՝ Թղթակից, «Վարդանանց յիշատակի հանդիսութիւնները Աղեքսանդրիոյ մէջ», *Արեւ*, 23 Փետրուար 1952:

95. Թղթակից, «Նոյեմբեր 29-ի մեծահանդէս տօնակատարութիւնը Աղեքսանդրիոյ մէջ», *Արեւ*, 6 Դեկտեմբեր 1947:Կ

96. Թղթակից, «Աղեքսանդրիոյ հայ վարժարաններու ամավերջի հանդէսները», *Յուսաբեր*, 11 Յուլիս 1951:

97. *Յուսաբեր*, 25 Ապրիլ 1953: *Արեւ*, 30 Ապրիլ 1953: Թղթակից, «Պօղոսեան Ազգ. Վարժարանի կազմակերպած գեղարուեստական մեծաշուք հանդէսը», *Յուսաբեր*, 11 Մայիս 1953, 12 Մայիս 1953: Թղթակից, «Պօղոսեան Ազգ. Վարժարանի գեղարուեստական շքեղ ձեռնարկը ուր ներկայ կ'ըլլայ եւ կը խօսի Արշակ Չօպանեան», *Արեւ*, 15 Մայիս 1953:

98. Թղթակից, «Պօղոսեան Ազգ. Վարժարանի կազմակերպած գեղարուեստական մեծաշուք հանդէսը», *Յուսաբեր*, 11 Մայիս 1953:

99. Թղթակից, «Պօղոսեան Ազգ. Վարժարանի գեղարուեստական շքեղ ձեռնարկը ուր ներկայ կ'ըլլայ եւ կը խօսի Արշակ Չօպանեան», *Արեւ*, 15 Մայիս 1953:

100. Թղթակից, «Պօղոսեան Ազգ. Վարժարանի ամավերջի հանդէսը», *Յուսաբեր*, 7 Յուլիս 1953:

101. Բիւզանդ Կռանեան, նշ. յօդ.ը:

102. Թղթակից, «Պօղոսեան Ազգ. Վարժարանի կազմակերպած գեղարուեստական մեծաշուք հանդէսը», *Յուսաբեր*, 11 Մայիս 1953:

103. Թղթակից, «Համազգայինի գեղարուեստական երեկոյթը», *Յուսաբեր*, 7 Հոկտեմբեր 1953:

104. «Հարցազրոյց՝ Կարպիս Ափրիկեանի հետ», *Նոյեան տապան*, 4 Յուլիս 2013, https://nt.am/am/news/183536

## ՄԻՐԶՈՅԵԱՆԸ ԼԱՒՐՈՎԻ ՀԵՏ ՀԱՆԴԻՊՄԱՆԸ ԿԻՍՈՒԵԼ Է ԶԳԱՅՈՒՆ ՀԱՐՑԵՐԻ ՇՈՒՐՋ ...

1

յարաբերութիւններում վերջերս առկայ բարդութիւնները:

Միրզոյեանն ասաց, որ Հայաստանի եւ Ռուսաստանի երկկողմ յարաբերութիւնների օրակարգը բազմաթիւ ոլորտներ եւ հարցեր է ընդգրկում, երկու երկրները նաեւ տարածաշրջանային հարցերում ունեն խաչուող հետաքրքրութիւններ, հետեւաբար՝ Ռուսաստանի հետ միշտ քննարկելու թեմա կայ:

«Եւ մենք մեծ հաճոյքով միշտ օգտագործում ենք առիթները՝ այդպիսի շփումների համար: Այս անգամ եւս Ռուսաստանի ԱԳ նախարարը մեզ ներկայացրեց վերջին որոշ իրադարձութիւնների կամ աշխարհաքաղաքական զարգացումների վերաբերեալ իրենց տեսլականը, մենք էլ կիսուեցինք իրենց դիրքորոշումների վերաբերեալ մեր ընկալումներով եւ տարբեր զգայուն հարցերի շուրջ Ռուսաստանի պահուածքի, դիրքորոշումների մեր ընկալումներով», - ասաց Միրզոյեանը՝ հանդիպումը գնահատելով արդիւնաւէտ:

Պատգամաւորը նկատեց, որ հանդիպումից յետոյ Ռուսաստանի ԱԳՆ-ն հրապարակել էր մի տեսանիւթ, որտեղ Սերգէյ Լաւրովը բողոքել է ԵԱՀԿ-ում Հայաստանի ներկայացուցչից: Մինասեանը հետաքրքրուեց խնդրով:

«Այո, ես տեսել եմ մեր հանդիպումից այդ կտորը, որը տարածուել էր Ռուսաստանի ԱԳՆ-ի կողմից: Ըստ ամենայնի, ինչ-որ թիւրիմացութեան մասին է խօսքը: Սերգէյ Լաւրովը կարծում էր, որ հանդիպման նախաձեռնութիւնը եղել է ԵԱՀԿ-ում մեր մշտական ներկայացուցչից, մինչդեռ իմ ունեցած տեղեկութիւններն ամենեւին այդպէս չէր: Ըստ ամենայնի՝ տեխնիկական թիւրիմացութիւն է եղել, որն արժանացել է Ռուսաստանի արտգործնախարարի ուշադրութեանը: Խօսակցութիւնն այն մասին էր, թէ ով է նախաձեռնել հանդիպումը, եւ ես ասում էի, որ մենք չենք նախաձեռնել», - ասաց Հայաստանի արտգործնախարարը:

ԳԱՀԻՐԷ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Այսու կը տեղեկացնենք որ 1 Դեկտեմբեր 2023-ին, Հելիոպոլսոյ «Պըլըքտանեան» հանդիսասրահին մէջ գումարուեցաւ 10 Նոյեմբեր 2023-ին կայացած Թեմական ամբողջական ընտրութիւններով կազմըւած Գահիրէի Պատկ. Թեմական Ժողովի անդրանիկ նիստը:

Ժողովը բացուեցաւ Գեր2. Տ. Աշոտ Եպիսկոպոս Մնացականեանի աղօթքով, որմէ ետք կատարուեցաւ ընտրութիւններու արդիւնքներուն արձանագրութիւնը: Սրբազան Հայրը շնորհաւորեց նորընտիր անդամները եւ շնորհակալութեան ու երախտագիտութեան իր խօսքը յայտնեց նախորդ Թեմական Ժողովի երկարամեայ այն անդամներուն, որոնք թէեւ նորընտիր Ժողովի անդամ չեն, սակայն տասնամեակներէ ի վեր նուիրեալ իրենց ծառայութիւնը բերած են Ազգային Առաջնորդարանի եւ անոր ենթակայ կառոյցներու, ինչպէս նաեւ եգիպտահայ ակումբներու, սրահներու եւ միութիւններու գործունէութեան:

Այնուհետեւ տեղի ունեցաւ Թեմական Ժողովի դիւանին ընտրութիւնը՝ հետեւեալ կազմով.

Տոքթ. Գէորգ Երզնկացեան Ատենապետ
Դոկտ. Ճորճ Սիմոնեան Փոխ-Ատենապետ
Տոքթ. Արմէն Մազլումեան Ատենադպիր

Ընտրուեցաւ նաեւ նոր Քաղաքական Ժողովը, որուն նորընտիր անդամները, Սրբազան Հօր նախագահութեամբ, իրենց անդրանիկ նիստը գումարեցին եւ կազմեցին դիւանը.

Տեարք՝ Վահէ Բլատեան Ատենապետ
Շանթ Կապէյեան Փոխ-Ատենապետ
Այգ Զաքարեան Ատենադպիր
Կարօ Վարժապետեան Գանձապահ
Գառնիկ Կրպոյեան Խորհրդական
Գէորգ Գույուճեան Խորհրդական
Կարէն Թուլումպաճեան Խորհրդական

Օրակարգի հարցերու քննարկումներու ժամանակ ներկայացուեցաւ աւարտական շրջանի Քաղաքական Ժողովի 2022 տարուան նիւթական համարատուութիւնը եւ գործունէութեան տեղեկագիրը:

Քննարկուեցան նաեւ բժշկական օժանդակութեան ծախսերու եւ «Կարապետ Աղա Գալուստ» Բարձրագոյն Ուսումի յատկացումներու կանոնագիրներուն մէջ փոփոխութիւններ կատարելու համար ներկայացուած առաջարկները:

**ԴԻՒԱՆ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՍԱՀՄԱՆԱԶԱՏՄԱՆ ՀԱՐՑԵՐՈՎ ՀԱՅ-ԱԴՐԲԷՋԱՆԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԸ ՀԱՄԱՁԱՅՆԵՑՐԵԼ ԵՆ ԱՇԽԱՏԱԿԱՐԳԻ ՏԵՔՍՏԸ

Հայաստանի ԱԳՆ-ից յայտնում են, որ Նոյեմբերի 30-ին Հայաստանի եւ Ադրբէջանի սահմանին տեղի է ունեցել Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ պետական սահմանի սահմանազատման ու սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովի եւ Ադրբէջանի եւ Հայաստանի միջեւ պետական սահմանի սահմանազատման պետական յանձնաժողովի հինգերորդ հանդիպումը՝ Հայաստանի փոխվարչապետ Միեր Գրիգորեանի եւ Ադրբէջանի փոխվարչապետ Շահին Մուստաֆաեւի նախագահութեամբ:

Կողմերը շարունակել են սահմանազատման հարցերի քննարկումը, անդրադարձել են կազմակերպչական եւ ընթացակարգային մի շարք հարցերի:

Կողմերը նախնական համաձայնեցրել են Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ պետական սահմանի սահմանազատման ու սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովի եւ Ադրբէջանի եւ Հայաստանի միջեւ պետական սահմանի սահմանազատման պետական յանձնաժողովի միջեւ նիստերի եւ համատեղ աշխատանքային հանդիպումների կազմակերպման եւ անցկացման աշխատակարգի տեքստը:

Կողմերը պայմանաւորուել են սկսել Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ պետական սահմանի սահմանազատման ու սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովի եւ Ադրբէջանի եւ Հայաստանի միջեւ պետական սահմանի սահմանազատման պետական յանձնաժողովի համատեղ գործունէութեան վերաբերեալ կանոնակարգի նախագծի համաձայնեցման աշխատանքները, ինչպէս նաեւ համաձայնութեան են եկել ակտիւացնել յանձնաժողովների հանդիպումների անցկացումը:

Կողմերը պայմանաւորուել են նաեւ աշխատանքային կարգով նախանշել յանձնաժողովների յաջորդ հանդիպման անցկացման ամսաթիւն ու վայրը:

ԽՈՀԵՐ

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Պատերազմ: Մարդկութեան «զարգացած» խաւը կը սիրէ խօսիլ պատերազմի մասին, պատերազմի անհրաժեշտութեան մասին, պատերազմի անխուսափելիութեան մասին: Երբ մէկ կողմը յաղթէ՝ կը գովերգէ նոյնինքը պատերազմը, անոր բացառիկութիւնը, երբ պարտուի՝ կ’անիծէ ոչ թէ պատերազմը, այլ պարտութիւնը, շեշտելով պատերազմին անհրաժեշտութիւնը վերականգնելու համար կորսուածը, կամ հանդէս գալով ինքնաքննադատութեամբ պատերազմին անպատրաստ եղած ըլլալուն համար՝ որ ինքնին հաստատումն է պատերազմի հասկացողութեան:

Տեսէ՛ք այսօրուայ հայերը: Այն ակադեմական պատմաբանները, փրոֆեսոր արուեստագէտները, սփիւռքահայ կուսակցականապետերը, մտովին զինուորագրուած կուսակցականները, որոնք գրասեղաններու ետեւը նստած կը գովերգեն պատերազմը, կը քննադատեն մեր պատերազմական անկարողութիւնը, թող նախ եւ առաջ իրենք երթային պատերազմելու Ղարաբաղը պաշտպանելու: Չեն երթար: Ես ալ չեմ երթար: Գործնական առումով մեռնիլ չենք ուզեր, բացի շատ, շատ քիչ բացառութենէ մը՝ որ 2020-ին կամաւոր գնաց պատերազմի:

Ամբողջ աշխարհի մարդկութեան մակարդակով, մարդիկ անձամբ չեն երթար պատերազմի, չեն ապրիր անոր ցնցումը, բայց կը փառաբանեն պատերազմը: Ուրիշն է որ պէտք է ապրի ցնցումը եւ մեռնի:

Ինչպէ՞ս կարելի է մարդկութիւնը հասցնել մտածողութեան այս աստիճանին՝ երբ կը գովերգէ անձնապէս իր չկատարածը, կը հաստատէ իր չկատարելիքը: Պատասխանը յստակ է: Պատերազմի պատումի զանգուայնացումի հետեւանքով:

Դպրոցական առաջին դասարանէն սկսեալ աշակերտին կ’ընտելացնեն պատերազմի հետ պատմութեան դասագիրքերուն միջոցով: Այս դասագիրքերու բովանդակութեան կարեւոր մասը ազգի մը մղած բարի պատերազմներն են չար ազգերուն դէմ՝ հերոսականութեամբ ու հայրենասիրութեամբ յագեցած յաղթական ելքերով: Կամ ազգին դէմ մղուած պատերազմներն են չար ուժերուն կողմէ՝ որոնք կը սիրեն կործանել, աւերել ու թալանել բարի ուժերը, մեզի՝ բարի մարդոցս դարձնելով զոհեր: Երկուքին միջեւ տարբերութիւն չկայ: Կեդրոնը պատերազմն է, պատերազմի պատումի ամրագրումն է՝ զայն դարձընելով պատմութեան խարիսխ եւ պատմական մտածողութեան հիմք: Դասագիրքերու տրամաբանութիւնը կը շարունակուի մինչեւ ակադեմական առաջին կարգի պատմագրութիւնը:

Յետոյ կու գայ լրատուամիջոցներու դաստիարակչական հրէշ-մեքենան: Լուրերու կարեւոր մասը կը կազմէ պատերազմը: Առանց պատերազմի լուրերը կը դառնան անհրապոյր: Մեծ գրաւչութեամբ կը ներկայացուի պատերազմը, բարձրագոյն հմտութեամբ եւ ամենէն ազդեցիկ անկիւններէ պատկերահանուած տեսարաններու այնպիսի մոնթաժումով՝ որ պատերազմական ահաւորութիւնը հաճոյք պատճառէ դիտորդին:

Պատերազմի գաղափարի զանգուայնացումին մէջ էական դեր կը խաղան բառերն ու եզրոյթները: Նոյնինքը Պաղ Պատերազմ եզրոյթը, իբրեւ աշխարհի ամենատարածուած եզրոյթներէն մէկը, գիտակցութեան մէջ կը հաստատէ պատերազմի գաղափարը եւ կ’օրինակացնէ զայն, «պատերազմ» բառի շնորհիւ: Ահաւասիկ, աշխարհի ամենաշատ գործածուող եզրոյթներէն մէկը պիտի բովանդակէր «պատերազմ» բառը: Բառի մը կրկնութիւնը ալ աւելի կ’արտադրէ տուեալ բառին իմաստը, մանաւանդ երբ այդ կրկնութիւնը կը դառնայ սովորական ու սովորապաշտ: Այսօր եւս, Բ. Համաշխարհային Պատերազմէն մինչեւ Խորհրդային Միութեան փլուզումը ինկած ամբողջ շրջանը կը նկարագրենք մէկ եզրոյթով՝ Պաղ Պատերազմ: Խօսոյթը կը՛ շարունակուի մինչեւ այսօր, եւ ուզուածն ալ այդ է: Չկա՞ր ուրի՞շ եզրոյթ այդ ժամանակաշրջանը բնութագրող: Կարելի չէ՞ր ուրիշ եզրոյթ գտնել Պաղ Պատերազմի փոխարէն: Կարելի էր: Զանգուածային լրատուամիջոցներուն մէջէն որեւէ եզրոյթ պիտի ամրանար մեր գիտակցութեան մէջ: Տուեալ ժամանակաշրջանի Արեւմուտք – Խորհրդային Միութիւն յարաբերութիւնը շատ աւելի տարբերակուած եւ բազմազանուած էր՝ լոկ պատերազմական տրամաբանութեան մէջ կարենալ տեղաւորուելու համար: Բայց՝ տեղաւորուեցաւ:

Պաղ Պատերազմէն ետք մեր ականջին սովորական դարձաւ Ահաբեկչութեան դէմ Պատերազմ (War on Terror) եզրոյթը, յատկապէս Սեպտեմբեր 11-էն ետք: Դարձեալ՝ պատերազմ: Ասիկա ալ վերջացաւ եւ հիմա կ’ապրինք Ռուս-Ուքրաինական Պատերազմի տրամաբանութեան մէջ, որուն մասին ամէն օր, ամէն ժամ պատմելիք ունին լրատուային տիրական գործակալութիւնները:

Պատերազմ բառը հանրութեան գիտակցութեան մէջ կը սրսկուի վտանգաւոր ընդլայնումներով՝ «Պատերազմ թմրանիւթի դէմ», «Պատերազմ աղքատութեան դէմ», եւլն.: ↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԷՋԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ԴԵԼԻՄԻՏԱՑԻԱՅԻ ԳՈՐԾԸՆԹԱՑԸ ԲԱՒԱԿԱՆԻՆ ԲԱՐԴ ՈՒ ԵՐԿԱՐ Է ԼԻՆԵԼՈՒ. ՓՈԽՎԱՐՉԱՊԵՏ

Հայաստանի եւ Ադրբէջանի սահմանների դելիմիտացիայի գործընթացը բաւականին բարդ ու երկար է լինելու: *Արմէնպրէս*ի փոխանցմամբ՝ այս մասին յայտարարեց Հայաստանի փոխվարչապետ Միեր Գրիգորեանը ԱԺ-ում կառավարութեան հետ հարցուպատասխանին՝ անդրադառնալով Հայաստան Խմբակցութեան պատգամաւոր Աննա Գրիգորեանի հարցին:

«Դելիմիտացիայի գործընթացը բաւականին բարդ ու երկար է լինելու, դա ակնյայտ է: Կարծես թէ, փոխադարձ ընկալում կայ, որ դելիմիտացիայի գործընթացն իրականացուելու է բացառապէս իրաւական նշանակութիւն ունեցող փաստաթղթերի հիման վրայ: Երկրորդը՝ մենք աշխատելու ենք քարտէզներով, որոնք ոչ թէ նկարներ կամ քարտէզի տիպի սխեմաներ են, այլ իրական տոպոգրաֆիկ քարտէզներ են: Օրինակ՝ 1975 թուականի քարտէզը, դա մանրակրկիտ պէտք է հետազօտուի: Չկայ դելիմիտացիայի որեւէ դիսկրէտ լուծում: Չի լինելու մի հանդիպում, որից յետոյ մենք գանք եւ յայտարարենք, որ դելիմիտացիայի գործընթացն աւարտուած է: Դա ուղղակի անհնարին է», - ասաց փոխվարչապետը:

Գրիգորեանը շատ կարեւորեց այն հանգամանքը, որ կողմերը միատեսակ են ընկալում այդ գործընթացը, դրա նշանակութիւնն ու աշխատանքի ձեւը:

Անդրադառնալով սահմանազատման հարցերով Հայաստանի եւ Ադրբէջանի յանձնաժողովների վերջին աշխատանքային հանդիպման արդիւնքներին՝ փոխվարչապետն ասաց, որ այս անգամ պայմանաւորուել են հաստատել աշխատակարգ, որը կը նկարագրի աշխատանքի ինստիտուցիոնալ ընթացքը:

«Կարծում եմ՝ մենք մօտ ժամանակներում այդ աշխատակարգը կը ներառենք կառավարութեան նիստի օրակարգ, որոշում կը կայացնենք եւ այդուհետ մեր հանդիպումներն աւելի ինստիտուցիոնալ կը լինեն», - ասաց Գրիգորեանը: ↳ 4

# ՋԱՀԱԿԻՐ

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ԱՐԴԱՐԱՑՈՒՄ

Առանք պատերազմներ չեն բնաւ: Ճիշդ է, բառերը կրնան կրկնիմաստներ, ենթիմաստներ ունենալ, ժամանակի ընթացքին կրնայ փոխուիլ անոնց իմաստը: Բայց այս պարագային «պատերազմ» բառի ընդլայնումը բնաւ պատահական չեմ նկատեր, ան դիտաւորեալ տարածուած է ոչ-պատերազմական ոլորտներու վրայ, հաստատելու համար անոր առաջնային իմաս տը:

Հիմնահոսանքային սինեման գլխաւոր մասնակից մըն է պատերազմին:

Հոլլիուուտը խճողուած էր Պաղ Պատերազմի պատումներով եւ ուղղակի պատերազմներով, իսկ Խորհրդային Միութեան փլուզումէն ետք անցաւ ահաբեկչական պատերազմներու, Իրաքի, Աֆղանիստանի պատերազմներուն:

Խորհրդային Միութիւնը լեցուն էր ֆաշիսթական եւ իմփերիալիսթական ուժերու դէմ մղուած պատերազմական ֆիլմերով: Ասիկա կարեւոր է հայերուս համար, քանի որ Հայաստանը ժառանգորդն է այդ ժամանակաշրջանին:

Պատերազմը ունի իմաստային յարակցութիւններ, օրինակ՝ արհաւիրք, յարձակողականութիւն: Այս իմաստներու ամրագրումով կը հաստատուի նաեւ պատերազմի գաղափարը:

Արհաւիրք: Լրատուամիջոցները ինչպիսի փութկոտութեամբ եւ պատկերաւոր մանրամասնութեամբ կը ներկայացնեն երկրաշարժները: Ի տարբերութիւն պատերազմէն, երկրաշարժը ոչ-մարդակերտ արհաւիրք մըն է: Բայց կործանումի պատկերաւոր ներկայացումը կը հաւասարի պատերազմական կործանումի պատկերին: Հաւասարը եւ առաջատարը կործանումն է, կործանումի պատումը:

Յարձակողականութիւն: Ի՞նչ է պատերազմը եթէ ոչ անձի մը յարձակողական տրամադրուածութիւնը ուրիշին նկատմամբ՝ թիւերու բազմապատկութեամբ: Հոլլիուուտեան հիմնահոսանքին կորիզը անհատական յարձակողականութիւնն է ուրիշին նկատմամբ՝ խօսակցական բռնութիւն, սպառնալիք, կռիւ, սպանութիւն: Խօսակցային բռնութիւնը առաջնային նշանակութիւն ունի: Հոլլիուուտեան ֆիլմի թատրերգականութիւնը ստեղծելու գլխաւոր միջոցներէն է երկխօսութեան հակադարձային ու բախումնային շարունակութիւնը՝ անհամաձայնութեան հիմքի վրայ: Ֆիլմերուն մէջ անհամաձայնութիւնները կը լուծուին ոչ թէ խօսքով այլ անձնական բռնութեամբ՝ զէնքով, սպանութեամբ (իբրեւ չար ուժերու): Բռնութիւնը կը լուծուի բռնութեամբ: Մինչդեռ երկխօսութիւնը՝ երբ ըլլայ տիալեքթիքական եւ տրամասացային (discoursive) հիմքի վրայ, կրնայ լուծել շատ բան: Տրամասացութիւնը հոլլիուուտեան ֆիլմերու գլխաւոր բացական է, որմէ՝ յարձակողականութեան արդարացումը:

21-րդ դարու սերունդը ծայրայեղ յարձակողականութեան մէջ մարզելու բացառիկ առիթ մը ընձեռեց համակարգիչը իր խաղերով, ինչպէս նաեւ PlayStation-ները, որոնք գրեթէ ամբողջութեամբ հիմնուած են յարձակումի եւ դիմացինը բնաջնջելու գաղափարին վրայ, երեխան, պատանին, երիտասարդը մտցնելով սպանութեան վիրթիւալ աշխարհին մէջ, այդ երեւակայութիւնը դարձնելով իր ներքնականացուած հոգեբանութեան մասը:

Վերջապէս, պատերազմի միջազգային համաձայնագիրները: Միջազգային օրէնքը շատոնց վաւերացուցած է պատերազմը՝ արգիլելով պատերազմական ոճիրը: Բայց չէ՞ որ պատերազմը ինքը ոճիրներուն ամենամեծն է: Վաւերացուցած է զինուորականները սպաննելու գործողութիւնը պատերազմի մէջ՝ կարծէք անոնք մարդիկ չըլլան, կրկին վաւերացուցած ըլլալու համար պատերազմը:

Աշխարհի անցեալ եւ ներկայ պատմութիւնը լեցուն է խաղաղութիւններով: Խաղաղ ժամանակաշրջաններուն վրայէն հարեւանցի կ'անցնի պատմութիւնը, բաւարարուելով նշել որ երկիրը բոլորեց բարգաւաճ շրջան մը: Եւ այսքան: Խաղաղ շրջաններուն նկատմամբ չկայ կիրք եւ գրական-բառային նուիրուածութիւն, մինչդեռ պատերազմները կը նկարագրուին ամենայն կիրքով, շռնդալից բառերով, գրաւիչ դէպքերով, հրաշալի պատկերներով, հերոսացումներով: Խաղաղութիւնը չունի իր հերոսները:

Իրօք, աւելի դժուար է պատմագրել խաղաղութիւնը՝ այսօրուայ պատմութեան ընդունուած դիւրին եւ կարծրատիպային բառապաշարներու տիրապետութեան տակ: Խաղաղութիւնը նախ եւ առաջ խումբերու եւ ազգերու հասարակական յարաբերութիւն է, ապրելակերպ, մտածելակերպ, գործելակերպ, որոնք չեն արտացոլուիր պատմութեան դասագիրքերու մէջ:

## «ՈՐՈՇՈՒՄ ԿԱՅԱՑՆԵԼՈՒ ԿԱՄՔ ԿԱՅ». ՓԱՇԻՆԵԱՆԸ՝ ՀԱՊԿ-ԻՑ ԴՈՒՐՍ ԳԱԼՈՒ ՄԱՍԻՆ

Հայաստանի կառավարութեան քաղաքականութիւնը հետեւեալն է՝ ամէն ինչ անել, որ նրանք մնան Հայաստանում եւ չարտագաղթեն:

Ասում է՝ Լեռնային Ղարաբաղի հայերի՝ Հայաստանից մեկնելու մեծ հոսք կար սկզբնական շրջանում: Սակայն վիճակագրութիւնը ցոյց է տալիս, որ նրանք գնացել էին հարազատներին տեսակցելու, այնուհետեւ վերադարձել:

«Շօշափելի արտագաղթային միտումներ չկան», - նկատել է Փաշինեանը:

**«Բացարձակ անվտանգութիւն գոյութիւն չունի»**

«Անվտանգային խնդիրը լուծելու համար Հայաստանի կառավարութիւնը որդեգրել է խաղաղութեան օրակարգ, նաեւ միջազգային բաւականին ուժեղ կոնսոլիդացիա ենք ապահովել Հայաստանի տարածքային ամբողջականութեան, ինքնիշխանութեան, անկախութեան եւ ժողովրդավարութեան պաշտպանութեան շուրջ», - ընդգծել է վարչապետը:

Փաշինեանն ընդգծել է՝ այսօրուայ աշխարհում բացարձակ անվտանգութիւն գոյութիւն չունի, պէտք է նոր միջավայրում յուսալի անվտանգային մեխանիզմներ ձեւաւորել: Նրա համոզմամբ՝ 100 տոկոսանոց անվտանգութիւն կարող է ապահովել միայն «տեւական, դէ իւրէ արձանագրուած եւ պարտադիր խաղաղութիւնը», որն էլ հայկական կողմը փորձում է ստանալ:

**Բաքուն պատրա՞ստ է գնալ խաղաղութեան**

Վարչապետի փոխանցմամբ՝ այս պահին դեռեւս ակնյայտ եւ պարզ չէ՝ Ադրբէջանը վերահաստատո՞ւմ է բրիւսէլեան ձեւաչափով համաձայնեցուած սկզբունքների հիման վրայ խաղաղութեան պայմանագիր կնքելու յանձնառութիւնը, թէ՞ հրաժարւում է:

«Չենք կարող վստահաբար պնդել, որ Ադրբէջանը հրաժարւում է այդ սկզբունքների հիման վրայ պայմանագիր կնքել, բայց նաեւ չենք կարող ասել, որ Բաքուն վերահաստատում է իր հաւատարմութիւնը այդ երեք սկզբունքներին», - յայտարարել է նա:

Փաշինեանի խօսքով՝ 2023 թ.-ի Մայիսի 14–ին եւ Յուլիսի 15–ին Բրիւսէլում տեղի ունեցած եռակողմ հանդիպումների ժամանակ Ադրբէջանի հետ համաձայնեցուել են երեք հիմնական սկզբունքներ.

«Հայաստանը եւ Ադրբէջանը ճանաչում են միմեանց տարածքային ամբողջականութիւնը, այն ըմբռնմամբ, որ Հայաստանի տարածքը 29.800 քառակուսի կմ է, իսկ Ադրբէջանի տարածքը 86.600 քառակուսի կմ:

«1991 թ.-ի Ալմա-Աթայի հռչակագիրը Հայաստանի եւ Ադրբէջանի միջեւ սահմանների դելիմիտացիայի քաղաքական հենքն է: Ըստ էութեան, կայ նաեւ ըմբռնում այն մասին, որ դելիմիտացիայի համար պէտք է օգտագործուեն Խորհրդային Միութեան զինուած ուժերի գլխաւոր շտաբի 1974-90 թուականների քարտէզները: Համաձայնեցուած է նաեւ հետեւեալը, որ Հայաստանը եւ Ադրբէջանը միմեանց նկատմամբ տարածքային պահանջներ չունեն եւ պարտաւորւում են ապագայում նոյնպէս նման պահանջներ առաջ չքաշել:

«Տարածաշրջանային կոմունիկացիաները պէտք է վերաբացուեն երկրների ինքնիշխանութեան, իրաւազօրութեան, փոխադարձութեան, հաւասարութեան հիման վրայ»:

Փաշինեանի խօսքով՝ առաջիկայ բանակցութիւնների ընթացքում կարիք կայ պարզաբանել այս հարցերն ու նրբութիւնները, ըստ այդմ՝ հետեւութիւններ անել.

«Չնայած Բաքուից հնչել է յայտարարութիւն, որ Ադրբէջանը ճանաչում է Հայաստանի տարածքային ամբողջականութիւնը, բայց կոնկրէտութիւններ են պէտք, թէ ինչ նկատի ունեն իրենք դա ասելով»:

**«Աշխատանքը բաւարար չէ, քանի դեռ բոլոր գերիները չեն վերադարձուել»**

Գործադիրի ղեկավարը յիշեցրել է՝ հայրենիք են վերադարձուել 100-ից աւելի գերիներ: Այնուամենայնիւ դժգոհ է, որ կան գերիներ, որոնց մասով արդիւնքներ չեն կարողացել արձանագրել: Նրա խօսքով՝ Բաքուն հումանիտար հարցն օգտագործում է քաղաքական նպատակներով, ինչը «տրամաբանական չէ»:

«Պատրաստակամութիւն ենք յայտնում ճկունութիւն ցուցաբերել եւ Ադրբէջանի հետ աշխատել, որպէսզի գերիները վերադառնան, նոյնիսկ Հայաստանում դատապարտուած ադրբէջանցիներին փոխանակել՝ բոլորը բոլորի դիմաց սկզբունքով: Շարունակում ենք աշխատանքը», - տեղեկացրել է նա:

Յիշեցրել է, որ բանակցութիւններին զուգահեռ Հայաստանն աշխատանք է տանում երկրորդ՝ իրաւական ուղղութեամբ՝ դիմելով ՄԻԵԴ եւ մի շարք այլ ատեաններ:

Հարցին, թէ ինչ է ձեռնարկում Հայաստանը ԼՂ-ից գերեվարուած պաշտօնեաների ազատ արձակման համար՝ Փաշինեանը չի պատասխանել:

**Հայաստանը «լիարժէք պաշտպանում է» Վրաստանի տարածքային ամբողջականութիւնը**

Հարցին, թե Հայաստանը պատրա՞ստ է Աբխազիան եւ Հարաւային Օսիան ճանաչել որպէս Ռուսաստանի կողմից օկուպացուած տարածքներ, Փաշինեանը պատասխանել է.

«Իմ հրապարակային յայտարարութիւններում ես բազմիցս յայտարարել եմ, որ մենք լիովին եւ միանշանակ աջակցում ենք Վրաստանի միասնականութեանն ու պետականութեանը: Իսկ մեր դիրքորոշումը հետեւեալն է՝ մենք լիարժէք եւ միանշանակօրէն պաշտպանում ենք Վրաստանի միասնականութիւնը, ինքնիշխանութիւնը, տարածքային ամբողջականութիւնը, անկախութիւնը եւ ժողովրդավարութիւնը»:

Նա նաեւ ասել է, որ այս հարցում Հայաստանի քուէարկութիւնները ՄԱԿ-ում 2019 թ.-ից առաջ եւ յետոյ էապէս տարբերւում են: Հայաստանը նախկինում դէմ է քուէարկել բանաձեւին, որը ճանաչում է բոլոր փախստականների եւ ներքին տեղահանուածների՝ Աբխազիա եւ Հարաւային Օսիա վերադառնալու իրաւունքը, իսկ 2019 թուականից Հայաստանն չի մասնակցում քուէարկութեանը: Եւ Վրաստանի ղեկավարութիւնն այս կապակցութեամբ գոհունակութիւն է յայտնել:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԷՋԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ԴԵԼԻՄԻՏԱՑԻԱՅԻ ԳՈՐԾԸՆԹԱՑԸ ԲԱՒԱԿԱՆԻՆ ԲԱՐԴ ՈՒ ԵՐԿԱՐ Է ԼԻՆԵԼՈՒ

Նա բովանդակային մանրամասներ չներկայացրեց վերջին հանդիպումից, քանի որ չի էլ քննարկուել՝ այդ թւում անկլաւների ու էքսկլաւների մասին:

Անդրադառնալով անկլաւների, էքսկլաւների վերաբերեալ հարցին՝ Գրիգորեանն ասաց. «Դժուար է ասել վերջնականապէս այդ հարցն ունի՞ որեւէ իրաւական նշանակութիւն ունեցող հիմք, թէ՞ չունի»: ԱԳՆ խօսնակ Անի Բադալեանը տեղեկացրեց, որ Հայաստանի ներկայացուցիչը չի մասնակցել այդ հանդիպմանը՝ չյայտնելով յաւելեալ մանրամասներ:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel.:(202)24530327,Fax:(202)24522282
E-mail: tchahagir@journalist.com

ՀԻՄՆՈՒԱԾ 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ-ԹԻՒ 1955 ՀԻՆԳՇԱԲԹԻ 21 ԴԵԿՏԵՄԲԵՐ 2023 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 75 Ե. Դհկ.

عدد رقم ١٩٥٥ الخميس ٢١ ديسمبر ٢٠٢٣


# ԱԶԳԱՅՆԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԿՈՎԿԱՍԻ ՄԷՋ

*Շուրջ 118 տարիներ առաջ, 1905 Յուլիսին, Փարիզի մէջ լոյս տեսնող Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Օրկան Հնչակ ամսագիրը կը հրատարակէր իր առաջնորդող յօդուածը՝ «Նացիօնալիզմը Կովկասում»:*

*1905 Փետրուարին Պաքուի մէջ տեղի ունեցած էր կովկասեան թաթարներու (այսօրուայ ազըրպէյճանցիներու) ձեռքով կատարուած հայկական ջարդը՝ ցարական իշխանութեան աշխոյժ միջամտութեամբ եւ գործակցութեամբ: Յօդուածը արձագանգն է այդ դէպքերուն: Պաքուի ջարդերը կը կրկնուին յօդուածի հրատարակութենէն ետք՝ Հոկտեմբեր 1905-ին:*

*Յօդուածը շատ կողմերով կը հնչէ այժմէական եւ կրնայ վերաբերիլ նաեւ այսօրուայ իրադարձութիւններուն: Օրինակ, արտայայտուած այն կարծիքը՝ որ ցարական իշխանութիւնը հրահրեց ու վառ պահեց ազգային հակամարտութիւնը՝ ամրացնելու համար իր սեփական իշխանութիւնը, կրնայ վերաբերիլ նաեւ այսօրուայ իրականութեան: Ինչպէս Ջահակիրի նախորդ թիւերուն մէջ (թիւ 1952-1953) նշած էինք՝ մէջբերելով Ճէյմս Քոյլի կարծիքը, վերջին 30 տարիներուն Ռուսաստանն է որ ուզած է վառ պահել հայ-ազըրպէյճանական հակամարտութիւնը, օգտուելու համար զէնքի վաճառքի բացառիկ հնարաւորութենէն:*

*Յօդուածին առանցքային քննադատութիւնն է ազգայնականութիւնը, իր բառով՝ նացիօնալիզմը: Ուշադրութիւն պէտք է դարձնել՝ թէ ինչ կը հասկնայ ազգայնականութեամբ: Յօդուածը «ազգային խզում»-ի դէմ է, այսինքն կը ճանչնայ եւ կը հաստատէ ազգայինը բայց կը մերժէ խզումը ազգայիններու միջեւ: «Կռուիլ յանուն ազգերու համերաշխութեան եւ համագործակցութեան», այսինքն, յօդուածագիրը կ՚ընդունի ազգերու եւ ազգայինի գոյութիւնը, բայց դէմ է ազգայնականութեան անունին տակ ազգերու միջեւ հրահրուած թշնամութեան: Յստակօրէն, իշխանական ազգայնականութիւնն է որ քննադատութեան տակ է այստեղ, վերէն սնուցուած ազգայնականութիւնը՝ որ բնորոշ եղաւ ԺԹ. դարուն, այլ ոչ թէ ազգայինը իբրեւ այդպիսին, իբրեւ մարդկային բնական կազմաւորումի արդիւնք:*

*Յօդուածը արեւելահայերէնէ վերածելով արեւմըտահայերէնի, կը ներկայացնենք մեր ընթերցողներուն:*

*Ա.*

Արդէն անհերքելի ճշմարտութիւն դարձած է՝ որ երկչոտ Նիքոլայի [Նիքոլայ Բ.՝ Ռուսական Կայսրութեան վերջին ցարը, Ա.] կառավարութիւնը կը ճգնի, վայրենի կամ խարդախ, բռնի կամ խաբեբայ միջոցներով, իրարու դէմ լարել, իրարու թշնամացնել, զինել կոտորել տալ այլ եւ այլ ազգերը Ռուսաստանի մէջ եւ այդպէսով փորձել յաղթանակել Յեղափոխութեան [Յունուար 1905, Սենթ-Փեթերսպուրկ, Ա.] լայնածաւալ հոսանքը եւ անվրէպ հարուածները: Կառավարութեան այդ քաղաքականութիւնը մասնաւոր ասպարէզ գտած է մեր մօտ, Կովկասի մէջ: Բայց նոր է այն երեւոյթը՝ որ կառավարութիւնը ջանալով մինչեւ այժմ թաքցնել իր այդ նենգամիտ քաղաքականութիւնը, այսօր այլեւս այդ ալ աւելորդ շքեղութիւն կը համարէ եւ անամօթաբար կը պատճառաբանէ՝ թէ պէտք է դիմել «*ամէն միջոցներու* տէրութեան խաղաղութիւնը պահպանելու համար խռովարար ժողովուրդներու ըմբոստ ոտնձգութիւններէն»: Այդ տրամաբանութեամբ կը պարզուի՝ որ պարսիկին ձեռքով կոտորել տալ հայերուն եւ խաւարամիտ ռուս ամբոխին ձեռքով՝ հրեաներուն, կը նշանակէ «տէրութեան խաղաղութիւնը պահպանել»: Այդ տրամաբանութիւնը իր պատճառաբանութիւններով ապացոյց է՝ որ ցարի կառավարութիւնը այլեւս գոյութիւն ունի միայն առերեւութապէս, որ ան այլեւս ինքզինքը անկարող կը գտնէ պահպանելու խաղաղութիւնը, եւ ազգերուն գրգռելով իրարու դէմ կ՚ուզէ անոնց ոսկորներէն կուտակել բուրգեր ու լեռներ, որոնց վրայ, անշուշտ, խաղաղութիւնը ցած կ՚իջնէ եւ ցար-միապետն ալ, բուի նման, կը թագաւորէ:

Բայց որքան ալ անամօթ խոստովանութիւն ըլլայ այդ «ամէն միջոցներու» ոճրային պատճառաբանութիւնը, անոր մէջ թաքնուած է նոյն քաղաքականութեան մէկ այլ կողմը, որ՝ թէկուզ ցոյց կու տայ ցարիզմի սնանկութիւնը, այնուամենայնիւ հիմնուած է այլ ազգերու պուրժուազիի, տիրող դասակարգերու երկչոտութեան վրայ: Արդարեւ, արդեօք այդ ոճրային պատճառաբանութիւնը միջոց մը չէ՞ կառավարութեան կողմէ երկիւղով պաշարելու կովկասեան ազգերու ազնուական եւ պուրժուա դասակարգերը, եւ զանոնք ներկայացնող մտաւորականութիւնը, այլեւ նոյնիսկ ժողովրդային խաւար խաւերը: Ցարիզմի համար առաջնակարգ վտանգ է ազգերու համերաշխութիւնն ու համագործակցութիւնը, ըլլայ յեղափոխական, ըլլայ նոյնիսկ լոկ դիմադրական կերպարանքի տակ: Բոլորին այսօր պարզ է, որ ցարիզմը կը ճգնի կտրել այդ կապը եւ ազգային կռիւներու լաբիւրինթոս ստեղծել այդ ազգերու կեանքէն: Խնդիրը աւելի մօտէն նայելով կը տեսնենք՝ որ ցարիզմը արդէն կը քաղէ իր ցանած սերմերէն հասած պտուղները:

Մեր խօսքը մասնաւորելով Կովկասին, մենք կը տեսնենք՝ որ այդ երկիրին մէջ ապրող ազգերու ազնուական եւ պուրժուա դասակարգերը, իրենք չըլլալով յեղափոխական, դէպքերու բերումով *հարկադրուած* ինկած են դիմադրական հողի վրայ ընդդէմ կառավարութեան, այդ հողը ինքն ըստ ինքեան ըլլալով անոնց դասակարգային տնտեսական եւ քաղաքական շահերու հողը: Նոյնպէս յեղափոխական դէպքերու բերումով, որոնց նախաձեռնողն ու գործադրողը գլխաւորապէս փրոլեթարիան է եւ առհասարակ աշխատաւոր ժողովուրդը, վերոյիշեալ պուրժուական դասակարգերը դարձեալ *հարկադրուեցան* ակամայ իրենց դիմադրականութեամբ թեքուիլ աւելի ժողովրդավարութեան կողմը: Որովհետեւ մէկ կողմէն սարսափելով ժողովրդային *ճահիճ*էն, որ կը բարձրանայ, որ բարձրացած է յեղափոխական բուռն ալիքներով, միւս կողմէն անոնք անկարող եւ անզօր են հասնելու իրենց «ռեֆորմներու» գործադրութեան *առանց* ժողովրդային յեղափոխական կռիւի, զոր, այդպէսով, կը կարծեն ծառայեցնել իրենց դասակարգային նպատակներուն: Բայց խնդիրը աւելի եւս կը բարդանայ, երբ այդ դրութեան հետ միասին այդ պուրժուական դասակարգերը կը ներկայանան նաեւ *ազգայնական*: Այդ «խնդրագիրը», զոր առանձինառանձին «մատուցած» են կառավարութեան մեր հայ պուրժուազիի «ժողովրդային պատգամաւորութիւնը», նոյնպէս վրացական ազնուականութիւնը, նոյնպէս պարսիկ պուրժուազին եւ հոգեւորականութիւնը, իւրաքանչիւրը առանձին եւ իրարու հակառակ, իւրաքանչիւրը յանուն իր «ազգային պահանջներուն», իւրաքանչիւրն ալ, հարկաւ, յանուն իր «ժողովուրդին», - անոնք պատմական ապացոյցներ են այն *ազգային խտրութեան* ու հակաշահութեան՝ զորս այդ պուրժուա դասակարգերը կը դնեն իրենց ազգերուն մէջ, անոնք պատմական ապացոյցներ են այն ազգայնական վարակիչ ոգիին՝ որմով համակուած են այդ դասակարգերը:

Կովկասեան ազգերու այդ դասակարգերուն ամբողջ ընթացքը մինչեւ այսօր աւելի լայն ասպարէզ բացած է այն ազգայնականութեան առջեւ՝ որ *ազգային կռիւներու* մէջ գլորած է այդ ազգերը: Ան պարզամիտ միտքերը մոլորեցուցած է ազգայնական

↳ 4

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՀԱՍՏԱՏԵՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԷՋԱՆԻ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՄԱՆ ՀԱՐՑԵՐՈՎ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ՆԻՍՏԵՐԻ ԱՆՑԿԱՑՄԱՆ ԱՇԽԱՏԱԿԱՐԳԸ

Կառավարութիւնը հաստատեց Հայաստանի եւ Ադրբէջանի պետական սահմանի սահմանազատման եւ սահմանային անվտանգութեան հարցերով յանձնաժողովների նիստերի եւ համատեղ աշխատանքային հանդիպումների կազմակերպման եւ անցկացման աշխատակարգը: Ինչպէս տեղեկացնում է *Արմենպրէս*ը՝ կառավարութեան Դեկտեմբերի 14-ի նիստին համապատասխան նախագիծը ներկայացրեց Արդարադատութեան նախարարի տեղակալ Արա Մկրտչեանը:

Նախարարի տեղակալի խօսքով՝ նախագծի ընդունման հիմքում ընկած է յանձնաժողովների միջեւ սոյն թուականի Նոյեմբերի 30-ին ձեռքբերուած եւ համաձայնեցուած աշխատակարգի տեքստը, որի համաձայն աշխատակարգը պէտք է հաստատուի երկու երկրների կառավարութիւնների կողմից:

«Աշխատակարգով սահմանւում են երկու պետութիւնների ստեղծած սահմանազատման յանձնաժողովների յարաբերութիւններն ու նիստերի անցկացման ու համատեղ աշխատանքային հանդիպումների կազմակերպման ընթացակարգերը: Մասնաւորապէս սահմանւում է, որ նիստերի անցկացման ամսաթիւը, ժամը եւ վայրը որոշւում են յանձնաժողովների նախագահների միջեւ համաձայնութեամբ: Նիստերը, որպէս կանոն, անցկացւում են յաջորդաբար Հայաստանի Հանրապետութեան կամ Ադրբէջանի Հանրապետութեան տարածքում, կամ Հայաստանի Հանրապետութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան սահմանին կամ երրորդ երկրների տարածքում, ինչպէս նաեւ տեսակոնֆերանսի ձեւաչափով:

↳ 4

## ՌՈՒՍԱՍՏԱՆ

### ՊՈՒՏԻՆԻ ՀԱՄՈԶՄԱՄԲ՝ ԵՐԵՒԱՆԻ ՇԱՀԵՐԻՑ ՉԻ ԲԽՈՒՄ ԱՊՀ-Ն, ԵԱՏՄ-Ն, ՀԱՊԿ-Ը ԼՔԵԼԸ

Ռուսաստանի նախագահ Վլադիմիր Պուտինը, մեկնաբանելով Հայաստանի իշխանութիւնների բացակայութիւնը Մոսկուայի գլխաւորած կազմակերպութիւնների հաւաքներին, յայտարարել է՝ չի կարծում, թէ Հայաստանի շահերից է բխում ԱՊՀ-ին, ՀԱՊԿ-ին ու ԵԱՏՄ-ին անդամակցութիւնը դադարեցնելը:

Կրեմլի ղեկավարը միաժամանակ յաւելել է. - «Վերջին հաշուով դա պետութեան ընտրութիւնն է»:

Ռուսաստանի առաջնորդի խօսքով՝ վարչապետ Փաշինեանի «բացակայութիւնները պայմանաւորուած են հայաստանեան գործընթացների հետ եւ կապուած չեն այդ ինտեգրացիոն միաւորումների հետ աշխատանքը չշարունակելու հետ»:

«Հայաստանում խորթին գործընթացներ են տեղի ունենում Ղարաբաղի հետ կապուած: Մենք հասկանում ենք այդ ամէնը, բայց մենք չէ, որ հրաժարուել ենք Ղարաբաղից, Հայաստանն է ճանաչել, որ Ղարաբաղը Ադրբէջանի մասն է հանդիսանում», - հերթական անգամ յայտարարել է Պուտինը՝ պնդելով, որ Երեւանն իր այդ նախաձեռնութեան մասին նոյնիսկ չէր տեղեկացրել Մոսկուային:

Պուտինն ուղիղ եթերում պատասխանում է քաղաքացիների եւ լրագրողների հարցերին:

# ԽՄԲԱՎԱՐ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵԳԻՊՏՈՍԻ ՇՐՋԱՆԸ

Հ. ԱՒԱԳԵԱՆ

### Դ. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱԿՆԱՐԿՆԵՐ

### 1. ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՆՈՒԱԳԱՑԱՆԿ

Սկիզբը՝ 1945-1949-ին, երբ կուսակցական ձեռնարկներու համար կը պատրաստէր խմբերգներ, թերեւս միաձայն, նուագացանկին վրայ կը գերիշխէին յեղափոխական եւ հայրենասիրական երգերը, այն երգերը՝ զորս կուսակցական անդամները վարժուած էին լսել իրենց ակումբներէն ներս, ինչպէս՝ *Մշակ բանուոր*, *Իբրեւ արծիւ*, *Հայ եղբայրներ*, *Մենք պէտք է կռուինք*, *Թող կորնչին* եւ *Մշոյ ողբը*։ Համատեղաբար, նոյն անդամներուն հետ Ափրիկեան կը սկսի մշակել «դասական» նուագացանկ մը՝ *Ով մեծասքանչ*, *Լռեց ամպերը*, *Գարուն ա*, *Տէր, կեցո՛ դու զհայս*, *Տէր ողորմեա*։ Այսպէս էր կացութիւնը 1948-1949-ին իր կազմած Երիտասարդաց Միութեան Երգչախումբին ժամանակ։

Յառաջդիմասէրի Երգչախումբ-Նուագախումբին կազմութեամբ 1950-ին, կը սահմանափակուի յեղափոխական երգերուն քանակը՝ *Յառաջ նահատակ*, *Հայ եղբայրներ*, *Թող կորնչին*, յատուկ տեղ կը տրուի Կոմիտասին՝ *Եար ջան արի*, *Էսօր Ուրբաթ*, *Ջար զընգը*, *Չիգ տու քաշի*, *Սօնա եար*, կը հնչեն Դանիէլ Ղազարեանի *Դիլբար ջանը*, Անտոն Մայիլեանի *Լորիկը*, Ափրիկեանի սեփական մշակում-յօրինումը՝ *Հօյ նար*։

Համազգային Երգչախումբի կազմութեամբ 1952-ին, կը վերանան յեղափոխական երգերը եւ նուագացանկը կը հիմնուի բացառապէս յօրինողական գործերու վրայ.

Կոմիտաս՝ *Կալի երգ*, *Անձրեւն եկաւ*, *Տէր, կեցո՛ դու զհայս*, *Օրօր Աղինօ*, *Սօնա եար*, *Եկան եկան*, *Մեր բաղը*, *Իմ չինար եարին*, *Իմ չինարի եարը*, *Լուսնակն անուշ*, *Ամպել ա ձուն չի գալիս*, *Գարնան զուգան*, *Գովեա Երուսաղէմ*։

Բարսեղ Կանաչեան՝ *Դալիլօ*, *Նանօր*, *Օրօր*, *Ուռին*, *Շուշօ*։

Դանիէլ Ղազարեան՝ *Այ աղջիկ*, *Դիլբար ջան*, *Ծառիս տակը*։

Մակար Եկմալեան, *Սուրբ, սուրբ*։

Կարպիս Ափրիկեան՝ *Հօյ նար*, *Էս գիշեր Համբարձում է*։

*Զէյթունցիներ*, մշակում՝ Իփոլիթով-Իվանով – Ափրիկեան։

Գալով Պօղոսեան Ազգային Վարժարանի աշակերտական երգչախումբին՝ կը պակսին տուեալները, բացի 1953 թուականէն (Ափրիկեանի վերջին տարին), երբ նուագացանկը եղած է այսպէս.

Կոմիտաս՝ *Լուսնակն անուշ*, *Մոկաց հարսներ*, *Մեր բաղը ծառ ա*, *Իմ չինար եարին*, *Իմ չինարի եարը*, *Եկան, եկան*, *Եար ջան արի*, *Էսօր Ուրբաթ*, *Ջար զընգը*։

Բարսեղ Կանաչեան՝ *Դպրոցական քայլերգ*, *Թոկը*, *Շուշօ*, *Խորոտիկ*։

Դանիէլ Ղազարեան՝ *Ծառիս տակը*։

Անտոն Մայիլեան՝ *Լորիկ*։

Բարսեղ Կանաչեան – Կարպիս Ափրիկեան, *Ուխտագնացութիւն* (պատկեր)։

Արդ, 1950-էն սկսեալ, Կոմիտասը կը գրաւէ քանակապէս ամենաշատ տեղը։

Բայց, ինչպէս Բիւզանդ Կոռնեան 1952-ին նկատած է՝ «Ափրիկեան մասնաւոր հակում մը ունի դէպի Կանաչեանը»(105)։ Իրօք, ան յատուկ գրաւչութիւն մը ունէր Կանաչեանի նկատմամբ, հմտութեամբ վեր կը հանէր անոր գունաւորումները, մինչեւ անգամ *Նանօր*ի հիման վրայ կազմած էր բեմադրական պատկեր մը։

Ափրիկեան առաջինն էր որ Եգիպտոսի մէջ հնչեցուց *Դալիլօ*ն (4 Մայիս 1952)։ *Յուսաբեր* պիտի անդրադառնար. «Իսկ Կանաչեանի սքանչելի *Դալիլօ*ն, աշխոյժ եւ զուարթ իր ելեւէջներով, առաջին անգամն էր, որ կը լսուէր մեր գաղութին մէջ, ներկաներուն տալով գեղարուեստական անխառն վայելքի պահ մը։ Իրապէս այնքան սիրուեցաւ այս երգը, որ երգչախումբը ստիպուեցաւ կրկնել անոր վերջին մասը»(106)։

Քանի մը ամիս ետք (7 Դեկտեմբեր 1952) դարձեալ կը հանդիպինք *Դալիլօ*ին, որուն ունկնդրութիւնը ոգեւորած է Բիւզանդ Կոռնեանին. «Հնչեց *Դալիլօ*ն, զուարթ, առողջ, լաւատես թէ՛ իբրեւ երաժշտայղացում եւ թէ իբրեւ արտայայտութիւն։ Ափրիկեան մասնաւոր հակում մը ունի դէպի Կանաչեանը։ Կոմիտասի այս տաղանդաւոր ու արժանաւոր աշակերտը, *Դալիլօ*ի մեներգներու, զուգերգներու եւ քառերգի մասերուն մէջ մանաւանդ, կը մտնէր բարդ ու կատարելագործուած համեմատութիւններու եւ հակադրութիւններու մէջ։ Գոյները դարձած էին թանձր եւ աւելի ուժեղ»(107)։

Առանձնապէս ուշադրութիւն գրաւած են *Նանօր*ի կատարումները։ 1952 Դեկտեմբեր 7-ի երգահանդէսին համար, Աղեքսանդրիոյ *Արաքս* շաբաթաթերթը Պոլսոյ*Մարմարա*յէն կ'արտատպէ Բարսեղ Կանաչեանի անձնական մեկնութիւնը *Նանօր*ին(108)։ Իսկ երգահանդէսէն ետք, *Արաքս* միայն այս գործին մասին է որ կ'անդրադառնայ. «Բազմաթիւ ծանօթ կտորներու կարգին այս անգամ յայտագրին մաս կը կազմէր Կանաչեանի ամենուրեք մեծ ընդունելութեան արժանացած *Նանօր*ը (Ուխտագնացութիւն) որուն նիւթը ամբողջութեամբ տուած էինք մեր նախանցեալ թիւով»(109)։

*Լը Փրոկրէ էժիփսիէն* համառօտ կը ներկայացնէ. «Կոմիտասի աշակերտներէն Կանաչեանի յօրինած *Դալիլօ*ն եւ *Նանօր*ը շատ հաւնուեցան իրենց կշռոյթին գեղեցկութեամբը»(110)։

Վերջապէս, Պօղոսեան Ազգային Վարժարանի աշակերտութեան համար Ափրիկեան *Նանօր*ը կը վերածէ պատկերի մը, որ Գեղանոյշ Սէրթլեանի պարադրութեամբ (choreography) կը ներկայացուի դպրոցի երաժշտահանդէսին, հանդիսանալով երեկոյթին բարձրանիշը.

«Իբրեւ նախերգանք՝ նուագախումբը մեղմօրէն կը նուագէ *Նանօր*ի ուխտագնացութեան եղանակը։

«Վարագոյրը կը բացուի, կը տեսնենք փառահեղ Մասիսը եւ սրբավայր մը՝ իր պատկառազդու գմբեթով։

«Ուխտագնացութեան օր է, կը հնչեն եկեղեցիին կոչնակները։

«Հայոց աշխարհի նազելի կանայք, ջէյրան աղջիկներ եւ նորահաս երիտասարդներ, ուխտի են եկած։ Լեցուն է եկեղեցին։ Արարողութիւններէն ետք, դպիրները թափօր կազմած, մոմ ի ձեռին, սրբազան եղանակներ երգելով դուրս կու գան տաճարէն։ Սարկաւագը կը խընկարկէ անդադար, բարեպաշտ ժողովուրդը կը խաչակնքէ երկիւղածութեամբ։ Կը սկսին երգն ու նուագը, կարգը եկած է խրախճանքին։ Ոգեւորութիւնը կը հասնի իր գագաթնակէտին։

«Տղայ ու աղջիկ պար կը բռնեն։ Ոսկեթել նախշուն հագուստներ արեւի ճառագայթներուն տակ աչք կը շլացնեն։ Պարիկներ կ'ոստոստեն։ Երգեցիկ խումբը իր ոգեւորիչ պարերգներով օդը կը թնդացնէ։ Ուրախութիւն, եռուզեռ ամէն տեղ։ Հմայիչ է տեսարանը։

«Վարագոյրը կ'իջնէ։ Աննկարագրելի է ոգեւորութիւնը հանդիսականներուն։ Որոտընդոստ ծափեր։

«Կը կրկնուին խմբապարերը»(111)։

Ափրիկեան ժամանակ չունեցաւ մշակել իր նուագացանկը, քանի որ 27 տարեկանին կը մեկնէր Փարիզ։ Բայց փարիզեան շրջանը՝ կեդրոնացած բացառապէս Սիփան-Կոմիտաս երգչախումբին շուրջ, եթէ ցոյց տուաւ նուագացանկի այլազանում, գրեթէ դուրս չեկաւ աւանդականութեան սահմաններէն՝ Կոմիտաս, Կանաչեան, Ալէմշահ, իր սեփական գործերը եւ քանի մը ուրիշներ։

### 2. ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ

Վերը ցանցառօրէն յիշատակուեցան Ափրիկեանի ստեղծագործութիւնները։ Ամփոփում մը անհրաժեշտ է աւելի յստակ պատկերացում կազմելու համար։

Քանի որ տեղեկութիւնները քաղուած են մամուլէն, պէտք է նշել՝ որ եգիպտահայ մամուլը, որուն համար սովորական դարձած էր գաղութային կուսակցական ձեռնարկներու նկարագրականները՝ երգ, նուագ, պար, արտասանութիւն, թատրոն եւ բանախօսութիւն, եւ որոնց համար յաճախ ունէր պատրաստ կաղապարներ, անվարժ էր երաժշտական հեղինակային ստեղծագործութիւններ նկարագրելու առումով։ Լիպարիտ Նազարեանց, որ ստեղծագործութիւն հասկացողութեան գիտակցութիւնը ունեցող քիչերէն էր, շատոնց արդէն վախճանած էր։ Արդ, Ափրիկեանի ստեղծագործական կողմին նկատմամբ շատ քիչ գնահատանք կը գտնուի։ Նոյնիսկ ծաւալուն գործերուն նկարագրականները, ինչպէս *Հէքիաթ* օփերան, անցան առանց յօրինողական կողմի բնութագրութեան։ Այլ պարագաներու, ինչպէս *Հօյ նար*ն ու *Էս գիշեր Համբարձում է* խմբերգները, կարեւոր շեշտադրութիւն դրուեցաւ ազգային ընդհանրացած օրինաչափութիւններու վրայ։

Ափրիկեանի առաջին յիշատակուած գործը 19 տարեկանի (1945) դաշնակի Փրելիւտ մըն է, զոր ինք անձամբ նուագած է Գահիրէի Նաւասարդ Ակումբին մէջ(112)։

21 տարեկանին (1947) երեւան կու գայ նուագախումբի Պարքարոլը, զոր կը կատարէ Սանթոնոչիթոյի 10 հոգինոց նուագախումբը(113)։

1939-ին Աղեքսանդրիոյ Կամքի մէջ բեմադրուած էր *Արջն ու գիւղացին* երեք արար օփերէթը, երաժշտութիւն Շաւարշ Փափազեանի, որուն մէջ 13-ամեայ Ափրիկեան ստանձնած էր գլխաւոր դերը(114)։ Ութ տարի ետք՝ 1947-ին, Ափրիկեան կը վերադաշնաւորէ ու կը մշակէ զայն եւ կը բեմադրէ Յառաջդիմասէրի բեմին վրայ, ղեկավարելով Սանթոնոչիթոյի 10 հոգինոց նուագախումբը(115)։

(Շար. 7)

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

105. Բիւզանդ Կոռնեան, նշ. յօդ.ը։

106. Թղթակից, «Համազգայինի երգչախումբին անդրանիկ համերգը», *Յուսաբեր*, 12 Մայիս 1952։

107. Բիւզանդ Կոռնեան, նշ. յօդ.ը։

108. Բ. Կանաչեան, «Նանօր նանօր (ուխտագնացութիւն)», *Արաքս*, 29 Նոյեմբեր 1952։

109. «Համազգայինի երգահանդէսը», *Արաքս*, 13 Դեկտեմբեր 1952։

110. «Հայ ժողովրդական երգեր», *Յուսաբեր*, 13 Դեկտեմբեր 1952։

111. Թղթակից, «Պօղոսեան Ազգ. Վարժարանի կազմակերպած գեղարուեստական մեծաշուք հանդէսը», *Յուսաբեր*, 12 Մայիս 1953։

112. «Երիտասարդներու հանդէս-հաւաքոյթը», *Յուսաբեր*, 31 Յունուար 1945։

113. Թղթակից, «Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան տարեկան գեղ. հանդէսը», *Յուսաբեր*, 20 Մարտ 1947։

114. Հայ-Արի, «Կամքի Հայ Արիներու Գ. խումբի հանդէս-երեկոյթը», *Յուսաբեր*, 10 Փետրուար 1939։

115. Թղթակից, «Հ.Յ.Դ. Երիտ. Միութեան տարեկան գեղ. հանդէսը», *Յուսաբեր*, 20 Մարտ 1947։ Փարոս [Ներսէս Ղազիկեան], «Հանդէս եւ ներկայացում», *Սաւառնակ*, 22 Մարտ 1947։

ՀԱՅԱՍՏԱՆ

## «ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԽԱՉՄԵՐՈՒԿ»-Ը ՈՉ ԹԷ ՄՐՑԱԿՑԵԼՈՒ Է ԼՈԳԻՍՏԻԿ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՀԵՏ, ԱՅԼ ԼՐԱՑՆԵԼՈՒ Է ԱՌԿԱՅ ՀՆԱՐԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ. ՄԻՐԶՈՅԵԱՆ

Հայաստանը շահագրգռուած է տարածաշրջանային հաղորդակցութեան բոլոր ուղիների բացման ու տրանսպորտային փոխկապակցուածութեան խթանման մէջ՝ համաձայն միջազգային իրաւունքի նորմերի եւ պետութիւնների ինքնիշխանութեան ու իրաւազօրութեան նկատմամբ լիակատար յարգանքի հիման վրայ։ Ինչպէս հաղորդում է *Արմենպրէս*ը, այս մասին ասել է Հայաստանի արտաքին գործերի նախարար Արարատ Միրզոյեանը՝ ելոյթ ունենալով դէպի ծով ելք չունեցող զարգացող երկրների նախարարական հանդիպմանը։

«Որպէս դէպի ծով ելք չունեցող զարգացող երկիր, որի սահմաններն արեւմուտքում եւ արեւելքում գտնւում են ցամաքային շրջափակման մէջ վերջին երեք տասնամեակների ընթացքում, Հայաստանը կենսականօրէն շահագրգռուած է տարածաշրջանային հաղորդակցութեան բոլոր ուղիների բացման ու տրանսպորտային փոխկապակցուածութեան խթանման մէջ՝ համաձայն միջազգային իրաւունքի նորմերի եւ պետութիւնների ինքնիշխանութեան ու իրաւազօրութեան նկատմամբ լիակատար յարգանքի հիման վրայ», - նշել է Միրզոյեանը։

Միրզոյեանն իր ելոյթում անդրադարձել է Հայաստանի կառավարութեան նախաձեռնած «Խաղաղութեան խաչմերուկ» նախագծին՝ ընդգծելով, որ դա հանդիսանում է Հարաւային Կովկասում խաղաղութեան եւ կայունութեան հաստատման Հայաստանի օրակարգի հիմնասիւներից մէկը։ «Դա նպատակ ունի իրար կապել արեւելքն ու արեւմուտքը, հիւսիսն ու հարաւը, եւ տնտեսական ու մշակութային առնչութիւնների ամրապնդման եւ մարդկանց միջեւ շփումների միջոցով նպաստել քաղաքական երկխօսութեան եւ հասնել տարածաշրջանում համապարփակ եւ կայուն 

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԲԱՆԱԿ, ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ, «ԱՐԵՒԵԼԵԱՆ ԶԱՆԳԵԶՈՒՐ». ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԷՋԱՆԻ ԳԱԼԻՔ ԾԱԽՍԵՐԸ

Հայաստանում 2024-ի պետական բիւջէի փոփոխուած նախագծով պաշտպանութեան նախարարութեան գծով ծախսերը կը կազմեն 554 միլիարդ դրամ՝ 7 տոկոսով գերազանցելով 2023-ի պետական բիւջէով սահմանուած պաշտպանութեան ոլորտին ուղղուող ծախսերը, Դեկտեմբերի 6-ին Ազգային Ժողովում յայտարարեց ֆինանսների նախարար Վահէ Յովհաննիսեանը:

«Արդիւնքում՝ 2024-ին պաշտպանութեան ծախսերը կը կազմեն ՀՆԱ-ի 5,3 տոկոսը՝ 2023 թուականի նկատմամբ նուազելով 0,3 տոկոսային կէտով», - ասաց նախարարը:

Նախարարը նաեւ նշեց, որ Սեպտեմբերի 19-ից յետոյ Լեռնային Ղարաբաղից բռնի տեղահանուած բնակչութեան համար նախատեսուել են օժանդակութեան ծրագրեր 47,3 մլրդ դրամի չափով:

Աւելի վաղ վարչապետ Նիկոլ Փաշինեանը յայտարարել էր, որ 2024-ի բիւջէով կրկնապատկւում են պաշտպանութեան ոլորտի ծախսերը՝ միաժամանակ վստահեցնելով՝ սա պատերազմի նախապատրաստութիւն չէ, այլ խաղաղութեան:

Ըստ վարչապետի՝ քաղաքացիների պաշտպանուածութեան զգացողութիւնը խաղաղութեան եւ կայունութեան ամենակարեւոր երաշխիքն է:

Ադրբէջանի նախագահ Իլհամ Ալիեւը յայտարարել է, թէ Բաքուն «ստիպուած է ռազմական բիւջէն ռեկորդային մակարդակի հասցնել, քանի որ նոյնիսկ պատերազմում պարտութիւնից յետոյ Հայաստանից վտանգ են տեսնում»:

Նա Հնդկաստանի դեսպանի հետ հանդիպման ժամանակ ասել է՝ «եթէ Հայաստանը խաղաղութիւն է ուզում, ապա ինչո՞ւ է հարիւր միլիոնաւոր դոլարների զէնք գնում»:

Դեկտեմբերի 5-ին Միլի Մէջլիսը ընդունեց 2024 թուականի պետբիւջէն 2,59 մլրդ մանաթ (1,5 մլրդ դոլար) դեֆիցիտով: Նախատեսւում է 34,173 մլրդ մանաթ (20 մլրդ դոլար) եկամուտ եւ 36,763 մլրդ մանաթ (22 մլրդ դոլար) ծախս: Եկամուտները հաշուարկւում են ելնելով նաւթի միջին՝ մէկ բարելի (159լ) համար 60 դոլար գնից:

Պաշտպանութեան եւ անվտանգութեան ոլորտին տրամադրուելու է 6,4 մլրդ, ↳ 4

## ՓԱՇԻՆԵԱՆԸ ՄԵՂԱՒՈՐ ՉԷ, ՆՐԱՆ ԱՅԴ ԱՄԷՆԸ ՈՐՊԷՍ ԺԱՌԱՆԳՈՒԹԻՒՆ ԷՐ ՀԱՍԵԼ. ԼՈՒԿԱՇԵՆԿՕ

Բելառուսի նախագահ Ալեքսանդր Լուկաշենկոն անդրադարձել է Հայաստանի եւ Ադրբէջանի հակամարտութեանը՝ նշելով, որ այդ կոնֆլիկտի համատեքստում վերջին իրադարձութիւնները չէին լինի, եթէ ժամանակին կողմերը լսէին այն, ինչ նրանց ասւում էր:

«Դա չէր լինի Հայաստանում եւ Ադրբէջանում, եթէ ժամանակին լսէին այն, ինչ ասւում էր: Եւ Փաշինեանը չի սրանում մեղաւոր: Նրան այս ամէնը որպէս ժառանգութիւն էր հասել, կը ներէք, որ ես սրա մասին խօսում եմ: Ես այն ժամանակ յայտնուել էի Իլհամ Ալիեւի եւ Սարգսեանի միջեւ եւ հրապարակային առաջարկում էի, որ պէտք է հարցը լուծել այնպէս, ինչպէս այդ պահին կարելի էր: Չարեցին: Ի՞նչ է, Հայաստանի համար աւելի լաւ եղա՞ւ, ոչ: Ադրբէջանի համար էլ հեշտ չէ», - *Արմենպրէսի* փոխանցմամբ՝ յայտարարել է Լուկաշենկոն՝ ելոյթ ունենալով ԱՊՀ անդամ երկրների անվտանգութեան օրգանների եւ հետախուզական ծառայութիւնների ղեկավարների հետ հանդիպմանը:

## ՎԵՑ ՀԱՐԻՒՐ ՏԱՐՈՒԱՅ ԴԵԳԵՐՈՒՄԻՑ ՅԵՏՈՅ ՀԱՅԱՍՏԱՆ ՎԵՐԱԴԱՐՁԱՒ 15-ՐԴ ԴԱՐԻ ՁԵՌԱԳԻՐ ՄԱՏԵԱՆԸ

Թշուրջ վեց հարիւր տարուայ դեգերումից յետոյ Հայաստան վերադարձաւ 15-րդ դարի մեծարժէք Աւետարանը, որը Մատենադարանին ընծայաբերելու հանդիսաւոր արարողութիւնը տեղի ունեցաւ Դեկտեմբերի 14-ին:

*Արմենպրէս*ի հաղորդմամբ՝ միջոցառմանը ներկայ Հայաստանի վարչապետ Նիկոլ Փաշինեանը շնորհաւորեց կարեւոր իրադարձութեան առթիւ: «Ուզում եմ շնորհակալութիւն յայտնել Հայաստանի բոլոր օրինապահ հարկ վճարողներին, որոնց վճարած գումարներից է Հայաստանի կառավարութիւնը հնարաւորութիւն ունենում նաեւ այսպիսի խնդիրներ լուծել: Սա ընդգծում եմ, որ Հայաստանի Հանրապետութեան հարկ վճարողները տեսնեն, որ իրենց կատարած վճարումները ծախսւում են նաեւ նման նպատակների համար», - նշեց Փաշինեանը:

Նա չի կարծում՝ պետական բիւջէի ծախսերը արդիւնաւէտ հասցրել են կատարեալի, սակայն մատեանի վերադարձը կարեւոր արձանագրում է համարում: «Մեր քաղաքականութիւնը յանգում է նրան, որ բարերարութեան տրամաբանութիւնը պէտք է փոխարինել օրինապահ հարկ վճարման տրամաբանութեան, որովհետեւ ամենամեծ բարերարներն իրենց հարկերը պարտաճանաչ վճարողներն են, որոնք ուժեղացնում են պետութիւնը, պետական ինստիտուտները, եւ պետութիւնն էլ իր հերթին հնարաւորութիւն է ստանում ուժեղացնել իր հոգեւոր, արժէքային ու մշակութային հիմքերը», - հաւաստիացրեց Նիկոլ Փաշինեանը:

Հայաստանի վարչապետն ընդգծեց՝ մեծ միջոցներ են տրամադրում Հայաստանում մշակութային յուշարձանները պահպանելուն, վերականգնելուն, գիտութեանը ֆինանսաւորելուն, որ այդ յուշարձանների հետազօտումը, պահպանումը, ուսումնասիրութիւնն աւելի ինստիտուցիոնալ հիմքի վրայ դրուի:

Մատենադարանի տնօրէն Արա Խզմալեանը ձեռագիր մատեանի ընծայաբերումը մեծագոյն տօն է համարում ե՛ւ Մեսրոպ Մաշտոցի անուան հին ձեռագրերի գիտահետազօտական ինստիտուտի, ե՛ւ հայագէտների համար:

«Ընդամէնը երկու ամիս առաջ հայագիտական միջազգային հարթակներում, ցանցերում յայտնուեց լուր, որ եւրոպական աճուրդում յայտնուել է մի ձեռագիր մատեան, որը բացառիկ հետաքրքրութիւն է ներկայացնում: Մտածեցինք՝ լաւ կը լինէր, որ այդ մատեանը հանգրուանէր Մատենադարանում: Կապուել եմ մատեանի սեփականատիրոջ հետ ու խնդրել մէկ շաբաթով այն աճուրդից հանել, յետոյ կապ եմ հաստատել Հայաստանի ԿԳՄՍ նախարար, Մատենադարանի հոգաբարձուների խորհրդի նախագահ Ժաննա Անդրէասեանի հետ: Այսօր ձեռագիրը Մատենադարանում է», - պատմեց Խզմալեանն ու շնորհակալութիւն յայտնեց Հայաստանի կառավարութեանը աջակցութեան համար:

Ըստ Արա Խզմալեանի՝ ձեռագիր մատեանի վերադարձով մեկնարկում է հաւաքչականութեան պետական քաղաքականութիւնը, ինչը գնահատելի է, քանի որ միջազգային շուկայում հայերէն ձեռագրերը շատ բարձր արժէք ունեն:

Ձեռագիրը Մատենադարանին յանձնեց Հայաստանի Կրթութեան, Գիտութեան, Մշակոյթի եւ Սպորտի նախարար Ժաննա Անդրէասեանը: Միջոցառումն ուղեկցուեց Հովեր պետական կամերային երգչախմբի կատարումներով:

ԽՈՀԵՐ

## ԲՈՒԹԻ ԲՌՆԱՏԻՐՈՒԹԻՒՆԸ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Նկատի ունիմ կէտադրութեան նշանը՝ բութը:

Յարաբերական հասկացողութիւն մըն է կէտադրութիւնը: Շատ կողմերով կապուած է գրողի ներքին ելեւէջային լսողութեան եւ մտաւոր ըմբռնողութեան հետ:

Արեւմտահայերէն գրական արդի լեզուն չի ներկայանար իբրեւ կեդրոնական միաւոր: Չի կրնար այդպէս ըլլալ: Ի տարբերութիւն ներկայ արեւելահայերէնին, որ ունի կեդրոն ու մայրաքաղաք Երեւանը: Ասիկա պիտի թելադրէր արեւմտահայերէնի լեզուական կանոններու, քերականութեան, կէտադրութեան, ուղղագրութեան, տողադարձութեան այլազանութիւն: Եւ այս այլազանութեան մէջ յանկարծ կը յայտնուին մարդիկ՝ որոնք ինքզինքնին կը ներկայացնեն իբրեւ բացառիկ լեզուագէտներ, կը ստեղծեն արեւմտահայերէնի իրենց սեփական քերականութիւնն ու կէտադրութիւնը, եւ աջ ու ձախ կը քննադատեն ոչ թէ լեզուական ուղղակի սխալները, այլ արեւմտահայերէնին մէջ գոյութիւն ունեցող այլընտրանքները, պարտադրելով իրենց իմացածը եւ զայն ներկայացնելով իբրեւ լեզուական *միակ* ճշմարտութիւն:

Մոռցէ՛ք որ մէկ անձ մը կամ մէկ կազմակերպութիւն մը կրնայ միօրինակութիւն մտցնել արեւմտահայերէնի օրէնքներուն մէջ, այն իմաստով՝ որ անոնք պարտադիր ըլլան բոլոր արեւմըտահայերուն համար: Ցնորականութեան նման բան մըն է ասիկա: Ի՞նչպէս պիտի պարտադրուի անոնց գործադրութիւնը, ո՞վ պիտի ենթարկուի միւսին, ինչո՞ւ պիտի ենթարկուի:

Անշուշտ լեզուի մէջ ամէն բան իր տեղը ունի: Կայ քերականութիւն, կայ ուղղագրութիւն, կայ կէտադրութիւն, իւրաքանչիւրն իր կանոններով: Վերի խօսքս չի վերաբերիր անգիտակ, հակականոնական, հակաբնական գործածութիւններուն: Խօսքս կարելիութիւնները մերժելու մասին է՝ լեզուէն բխած բազմազանութիւնները հերքելու, բազմազանութիւններ՝ որոնք գոյութիւն ունին արդի արեւմտահայերէնին մէջ, անոր ոչ-կեդրոնական իրավիճակին պատճառով (շնորհիւ):

Փոխանակ դիմելու անկարելի միօրինականացումներու, լեզուն պէտք է ընդունիլ ինչպէս որ կայ՝ իր քերականութեան եւ միւս գործօններուն տարբերակներով, քննադատութեան սլաքը ուղղելով լոկ ակնառու սխալներուն:

Արեւմտահայերէնի կէտադրութիւնը կը ներկայացնէ անվերջանալի այլազանութիւն մը, մինչ լեզուական սեփականատէրեր կը կարծեն ունենալ կէտադրութեան իրենց անձնական ճշմարտութիւնները՝ ամէն մէկը տարբեր միւսէն: Կը տպագրուին մահացած յայտնի գրողներու գիրքեր եւ ձեռագիրներ, որոնց նախաբաններուն մէջ խմբագիրները հաճոյքով կը շեշտեն՝ «անհրաժեշտ պարագային փոխեցինք կէտադրութիւնը», կամ պարզապէս՝ «փոխեցինք կէտադրութիւնը»: Վերաբերմունքը նոյնիսկ Երուանդ Օտեանի նման գրողներու նկատմամբ է, որոնց կէտադրութիւնը սերտօրէն կապուած է իրենց մշակած լեզուին եւ ոճին: Այդ անհրաժեշտ պարագաները բնաւ ալ անհրաժեշտութիւն չըլլալով, անոնք կը ներկայացնեն խմբագիրի սեփական ուժի ցուցադրութիւնը ծանօթ հեղինակի մը նկատմամբ, աւելի քան բնագիրի ներքին ծալքերէն բխած վերընթերցանութեան հաճոյքը:

Ասոր մէջ կը մտնէ բութը: Թէեւ գրաւոր կերպով չ'առանձնացուիր բութի դրութիւնը, բայց բանաւոր, ել-նամակային յարաբերութիւններուն մէջ «մասնագէտ»-ները պատրաստ են քննադատութիւնը սկսիլ բութով: Պզտիկուց կը լսէի դպրոցի հայերէն ուսուցիչներուս բնութագրութիւնները բութին՝ եւ *միայն* բութին. «հրաշալի է», «ազգային է», «շատ նուրբ է», «որքան գեղեցիկ է», «շատ զգոյշ պէտք է գործածել զայն», որ շարունակուեցաւ մինչեւ այսօր, առօրեայ յարաբերութիւններուն մէջ: Կարծէք ստորակէտն ու միջակէտը այդպէս չըլլան:

Կէտադրութիւնը՝ երբ դիտուի նախադասութեան ընդհանուր իմաստներէն կամ գրողի սեփական լեզուական կառուցուածքներէն եւ ոճէն դուրս, կը դառնայ բռնատիրութիւն, բութը՝ երբ դիտուի ընդհանուր կէտադրութեան ըմբռնումէն դուրս, կը դառնայ գերբռնատիրութիւն: Եւ այդ բռնատիրութիւններուն տակ ինքզինքնին հանգիստ կը զգան լեզուական ինքնասեփականատէրերը:

ՋԱՀԱԿԻՐ



### «ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԽԱՉՄԵՐՈՒԿ»-Ը ՈՉ ԹԷ ՄՐՑԱԿՑԵԼՈՒ Է ԼՈԳԻՍՏԻԿ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՀԵՏ, ԱՅԼ ԼՐԱՑՆԵԼՈՒ...

1

խաղաղութեան՝ յօգուտ բոլոր ժողովուրդների: Գիտակցելով աւելի լաւ տարածաշրջանային եւ միջազգային փոխկապակցուածութեան կարիքը՝ Հայաստանի կառավարութիւնը ձեռնարկում է եւ պատրաստ է շարունակել իր ակտիւ ջանքերը՝ արդիականացնելու առկայ հաղորդակցութեան եւ տրանսպորտային ուղիները եւ կառուցելու նորերը», - նշել է Միրզոյեանը:

Նրա խօսքով՝ դրա վառ օրինակն է Հիւսիս-հարաւ մայրուղու շինարարութիւնը, որը բարձր առաջնայնութիւն ունեցող ռազմավարական ծրագիր է Հայաստանի համար: «Այն ոչ միայն կ'ապահովի աւելի դիւրին հաղորդակցութիւն Հայաստանի հիւսիսային եւ հարաւային շրջանների միջեւ, այլեւ նշանակալի կերպով կը նպաստի Պարսից Ծոցի եւ Սեւ Ծովի միջեւ փոխկապակցուածութիւնը՝ դառնալով կարեւոր տարանցիկ հանգոյց արեւմտեան Ասիայի եւ արեւելեան Եւրոպայի միջեւ: Հայաստանը պատրաստ է վերակառուցել եւ գործարկել Գիւմրի-Կարս, Հրազդան-Կապան, Վանաձոր-Ազարակ, Երասխ-Նախիջեւան երկաթգծերը: «Խաղաղութեան խաչմերուկ»-ը գալիս է ոչ թէ մրցակցելու տարածաշրջանային այլ լոգիստիկ նախագծերի հետ, այլ լրացնելու առկայ հնարաւորութիւնները», - եզրափակել է Միրզոյեանը:

### ԲԱՆԱԿ, ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ, «ԱՐԵՒԵԼԵԱՆ ԶԱՆԳԵԶՈՒՐ»...

3

կրթութեանը՝ 4,5 մլրդ, սոցիալական ապահովմանը՝ 4,5 մլրդ, համապետական նպատակների համար՝ 4,8 մլրդ, ազրօարդիւնաբերական համալիր՝ 1,1 մլրդ, տնտեսական գործունէութեանը՝ 7,9 մլրդ, մնացածը՝ այլ նպատակների համար: Պետական պարտքի սպասարկմանը կը յատկացուի 1,972 մլրդ մանաթ:

4 միլիարդ մանաթ կը ծախսուի «Ղարաբաղում եւ Արեւելեան Զանգեզուրում վերականգնողական եւ շինարարական նախագծերի» վրայ:

***Epress.am***

### ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՀԱՍՏԱՏԵՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱԴՐԲԷՋԱՆԻ ՍԱՀՄԱՆԱԶԱՏՄԱՆ ...

1

Այն դէպքում, երբ նիստերն անցկացւում են յանձնաժողովներով ներկայացուած պետութիւններից մէկի տարածքում, ընդունող կողմը ստեղծում է դրանց անցկացման համար անհրաժեշտ բոլոր պայմանները, այդ թւում՝ ապահովում եւ երաշխաւորում է բոլոր մասնակիցների անվտանգութիւնը: Աշխատակարգը սահմանում է նաեւ այլ անհրաժեշտ կարգաւորումներ», - նշեց Մկրտչեանը:

Նախարարի տեղակալն ընդգծեց՝ նախագծի ընդունումը կարեւոր քայլ կը լինի յանձնաժողովների աշխատանքի կազմակերպման իրաւական հիմքերի ամրագրման գործում, որի վրայ յենուելով յանձնաժողովները կը կազմակերպեն իրենց յետագայ գործունէութիւնը:

«Աշխատակարգի ընդունման արդիւնքում Հայաստանի Հանրապետութեան եւ Ադրբէջանի Հանրապետութեան սահմանազատման յանձնաժողովների անդամներին հնարաւորութիւն է ընձեռնւում նիստերի անցկացման եւ համատեղ աշխատանքների իրականացման միջոցով ստեղծել հիմքեր սահմանազատման եւ սահմանագծման գործընթացների, դրանց իրաւական եւ տեխնիկական ասպեկտների մշակման համար, յետագայում երկու պետութիւնների միջեւ պետական սահմանի վերաբերեալ համապատասխան փաստաթուղթ մշակելու եւ ստորագրելու նպատակով», - եզրափակեց Մկրտչեանը:

### ԱԶԳԱՅՆԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԿՈՎԿԱՍԻ ՄԷՋ

1

խաբուսիկ պատրանքներով, թունաւորած է յափշտակուող երիտասարդութեան սիրտերը, իր շահասէր եւ աղիտալի ազդեցութեան գերի դարձուցած է ժողովրդային անգիտակ ընդհանրութիւնը, հիմնապէս արգելքներ յարուցած է համերաշխութեան եւ համագործակցութեան այն մեծ գործին առջեւ՝ զոր սոցիալ դեմոկրատիայի գործունէութեամբ շարունակ ջանք կը թափուի գլուխ բերել, իրարու աւելի եւ աւելի մօտեցնելով կովկասեան ազգերը՝ յանձին անոնց աշխատաւոր զանգուածներուն:

Ազգայնական ոգիի խաւարային թագաւորութեան մթնոլորտին մէջ, մեր պուրժուա դասակարգերը անտարակոյս շատ բան կը շահին եւ ճիշդ այդ դասակարգային շահու դրդումով է որ անոնք իրենց համար յատուկ մենաշնորհի դարձուցած են «ազգասիրութեան եւ ազգային ինքնապաշտպանութեան» շողշողուն ու շլացուցիչ պսակը՝ հիւսուած, սակայն, Ոսկի Հորթի մետաղով: Այդ ազգերէն իւրաքանչիւրի պուրժուազին կը շահի նախ այն՝ որ զատելով իր փրոլեթարիան միւս ազգի փրոլեթարիայէն, ան կ'անդամալուծէ բոլոր ազգերու փրոլեթարիական համախումբ գործունէութիւնը Կովկասի մէջ եւ իր «խնամքի» ու ազդեցութեան տակ կը նետէ աշխատաւոր դասակարգերը: Ապա, ան կը շահի այն՝ որ այդ դասակարգերու ոտքին տակ ստեղծելով զուտ *ազգային* հող, զանոնք կը խզէ եւ կը թշնամացնէ միւս ազգերու աշխատաւոր դասակարգերուն հետ. այդպէսով ան իր ազգի փրոլեթարիայի ձեռքով կ'ոչնչացնէ միւս ազգի փրոլեթարիայի դասակարգային տնտեսական եւ քաղաքական գործը, ուժը, նշանակութիւնը, գիտակցութիւնը: Այդ տեսակէտէն, կովկասեան ազգերու պուրժուազին այսօր կը հանդիսանայ *ազգայնական* par excellence: Երրորդ. պուրժուազին կը շահի այն՝ որ այդ եղանակով անդամալոյծ դարձնելով նոյն այն փրոլեթարիային, որուն կը շահագործէ տնտեսապէս, ան կ'անդամալուծէ իր մեծ թշնամին, եւ միաժամանակ այսօր, ուղղելով ժողովրդային յեղափոխական կռուող ուժերը դէպի ազգայնականութեան շաւիղը, փրոլեթարիան կը ծառայեցնէ եւ կը շահագործէ իր՝ պուրժուազիի ներկայ քաղաքական նպատակներուն համար: Եւ կովկասեան ազգերու պուրժուազիի այդօրինակ պուրժուա-ազգայնական ընթացքը կու գայ եւ այժմ կը յանգի այն կէտին՝ որ կովկասեան ազգերը, փոխանակ միանալու, իրենց միջեւ կը ստեղծեն ահագին վիհ, որ, շնորհիւ ցարիզմի ջանքերուն, շուտով կը հեղեղուի նոյն այդ ազգերուն արիւնով, եւ կը ցանուի նոյն այդ ազգերու զաւակներուն դիակներով:

Ահա այն վտանգաւոր եւ յետադիմական դերը, զոր այսօր կը կատարէ ազգայնականութիւնը Կովկասի մէջ՝ յանձին ազնուականութեան, պուրժուազիի եւ հոգեւորականութեան, յանձին այն մտաւորականութեան՝ որ ծառան ու արտայայտիչն է այդ դասակարգերուն, յանձին այն վրացական ու հայ մեծամոլ, թմբկահարող եւ տխմար կուսակցութիւններուն, որոնք իրենց յետադիմական գործն ու դերը կը թաքցնեն «յեղափոխական», այլեւ «սոցիալիստ-յեղափոխական» *պիտակներու* եւ փափախներու տակ:

Մեր այդ ազգայնական «գործիչներուն» առիթով ահա թէ ինչ կը կարդանք կովկասեան յօդուածի մը մէջ՝ զետեղուած Ռուսաստանի Ս. Դ. Բ. Կուսակցութեան *Սոցիալ դեմոկրատ* բանուորական թերթի թիւ 8-ին մէջ.

«Ո՛չ թուրք, ո՛չ հայ գործիչները կը փորձեն դուրս գալ իրենց ազգայնական բոյնէն եւ երկու ճնշուած ժողովուրդներուն ալ կռիւի կը հանեն ընդհանուր հողի վրայ: Միայն մէկ ուղի կայ նման ազգային միացումի համար. ան սոցիալ դեմոկրատական ուղին է: Միայն սոցիալ դեմոկրատական դրօշը կը յայտնուի միջազգային դրօշ եւ անոր հետեւողները ազգային խզում չեն ճանչնար...»:

Յօդուածագիրը այն կարծիքը կը յայտնէ՝ որ հայ ազգայնական կուսակցութիւնները «այնքան սահմանափակ են հայ գիւղացիներուն գիտակցութիւնը, որ անոնք ո՛չ մէկ մասնակցութիւն ունին ընդհանուր յեղափոխական շարժումին մէջ: Այդ ազգային ինքնասիրութիւնը հարազատ զաւակն է ազգային պուրժուազիի, եւ քանի որ հայ ազգայնականներն ալ մեծ մասամբ այդ դասակարգէն են, ուրեմն ալ ի՛նչ լաւ բան կարելի է սպասել անոնցմէ հայ գիւղացիներուն եւ բանուորներուն համար»:

Եւ ապա ամփոփելով իր խօսքը *Սոցիալ դեմոկրատ*ը կ'ըսէ. «Մէկ խօսքով, Անդրկովկասի մեծ մասը այսօր կը կատարէ ոչ թէ յեղափոխական այլ յետադիմական դեր: Հայու եւ թուրքի այդ խզումը եւ պառակտումը կը զօրացնէ միապետութեան ուժը եւ կը տկարացնէ սոցիալ դեմոկրատիան: Ասիկա մեր երկիրի ամենածանր խնդիրն է եւ ասոր վրայ կը դարձնենք մեր ընկերներուն ուշադրութիւնը: Մինչեւ որ թուրք եւ հայ գիւղացիներն ու բանուորները չմիանան կովկասեան սոցիալ դեմոկրատիային, ո՛չ մէկ վախճան կը գտնեն ազգային ընդհարումները եւ չի կրնար յաղթանակել սոցիալ դեմոկրատիան: Այդ ցաւի հետ ոչինչ կրնան ընել ազգայնականները, որովհետեւ այդ ցաւն ինքը ծնունդ է նոյնինքը ազգայնականութեան: Միայն սոցիալ դեմոկրատիան կրնայ հաշտեցնել եւ միացնել ամէն ազգերու բանուոր ժողովուրդին, բայց ճիշդ այդ բանի դէմ կը գործեն ազգայնականները... Վրացի ազգայնականները կը պահանջեն իրաւունքներ իրենց համար, հայ ազգայնականները՝ իրենց համար, կարծե՛ս թէ այդ ամէնքը կ'ապրին առանձին-առանձին կեանքով, բաժնուած իրարմէ եւ միւսներէն, կարծե՛ս թէ այդ ամէնքն ալ տէր են առանձին ազգային *տարածքներու*, աշխարհագրական սահմաններու: Անոնք չեն կրցած հասկնալ, որ Կովկասի բոլոր ժողովուրդները պէտք է առաջ երթան ձեռք ձեռքի տուած, պէտք է կռուին միեւնոյն ընդհանուր պահանջներու համար եւ ապրին համերաշխ կերպով: Իրենց բակէն անդին անոնք ոչինչ կ'ուզեն տեսնել եւ ասով հող կը պատրաստեն ամէն տեսակ ազգային խզումի եւ կռիւի...»:

Այսպէս կը մտածեն կովկասեան սոցիալ դեմոկրատիային պատկանող մեր ընկերները, եւ մենք նոյնքան մեծ հաճոյքով կ'ամփոփենք մեր յօդուածը, որքան ան թարգման է ճիշդ մեր հայեացքին՝ զոր քանիցս առիթ ունեցած ենք արտայայտել Հնչակեան մամուլին մէջ: Եւ կ'ուզենք մեր խօսքը աւարտել նոյն *Սոցիալ դեմոկրատիա*յի յօդուածին հետեւեալ վերջաբանով. «Սոցիալ դեմոկրատիայի գործն է, մանաւանդ մեր մօտ՝ Կովկասի մէջ, անդադար կռուիլ ազգայնականութեան դէմ եւ զայն ոչնչացնել արմատէն»:

Այո՛, կռուիլ ազգայնականութեան դէմ, կռուիլ անոր ամէն գոյնի ու տեսակի արտայայտութեան դէմ, կռուիլ յանուն ազգերու համերաշխութեան եւ համագործակցութեան՝ ցարիզմի տապալումի նպատակով, կռուիլ յանուն ժողովուրդի, փրոլեթարիայի եւ սոցիալիզմի:

***Հնչակ*, Փարիզ, Յուլիս 1905, 18-րդ տարի, թիւ 7, էջ 57-59**